# ՓՐԻԿ
# ԴԻՒԱՆ

ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ ՊՍԱԿՈՒԱԾ
ՌՈՒՍԱԿԱՆ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԿԱՃԱՌԻ ԿՈՂՄԻՑ

Ի ԼՈՅՍ ԸՆԾԱՅԵՑ
ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԲՆԱԳՐՈՎ, ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԵԱՄԲ,
ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ, ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐՈՎ ԵՒ ԲԱՌԱՐԱՆՈՎ

**ՏԻՐԱՅՐ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ**
Միաբան Մայր Աթոռի
Ս. Էջմիածնի

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ
ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ
ՄԵԼԳՈՆԵԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԻ
Նիւ Եորք
1952

«...Գրուածքն քարոյական խրատք են. սակայն սրտով սփռած»:

ԱԼԻՇԱՆ, Յուշիկք Հայրենեաց.

«Քերթողական այն գործը ունի... ինքնուրոյն համ մը եւ գոյն մը, արտայայտութեան մէջ ժողովրդական, բնական, անոյշ շեշտ մը, լեզու մը՝ պարզուկ, գունաւոր, գողտրիկ, շատ հարազատօրէն «աշուղական»... տողեր, ինքնեկ, սահուն, անբռնազբօսիկ»:

Ա. ՉՕՊԱՆԵԱՆ



*«Շատ մի հայերէն բաներ խորհրդով՝ դըրախտ ընկեցի,*
*Ցաքիցս աղբերացն ջուր քաշեցի, զինչ որ ըմպեցի:*
*Զիմ լերդս զինչ ըզհաց կերայ, ա՛յ եղբարք, ինչուր բուսուցի,*
*Երկու լոյսն ի մի դարձաւ գիշերին՝ ինչուր հասուցի:*
*Անկայ ի հոգոց ծովըն, երբ որ զայս բաներս յիշեցի,*
*Զիմ աչուերըս չափ արի ու զծովու ջուրըն չափեցի.*
*Զիմ միտըս լողնորդ արի ու'ի ծովու յատակն իջուցի,*
*Վասն այն մարգարտին համար, որ ծովու յատակըն լինի»:*

ՖՐԻԿ *ԻԴ. տող* 49–56.

*«Հանց մեծամեծ խորհուրդ արի,*
*որ յաւիտեան ո՛չ կատարի»*

*Ը. տող* 3.

*«Ես ան հաւերուն էի, որ դետինըն կուտ չուտէի,*
*Թըռչի երկնաւքն անցնէի, թէ սիրուն՝ ակնատ չընկնէի.*
*Ակնատն ի ծովուն կըղզին լարած էր 'ւ ես չի գիտէի,*
*Ամէն հաւ ոտաւքն ինկեր, ես ոտաւքս եւ թեւս աւելի»:*

*ԽԳ. տող* 23–26.

*«Այն բազային եմ նըմանի,*
*որ փոքր որսի ո՛չ հաւանի»:*

*Ը.* 13.

# FRIK
# THE DIVAN

AWARDED BY THE RUSSIAN ACADEMY OF SCIENCES
OF PETROGRAD

PUBLISHED FOR THE FIRST TIME
IN THE COMPLETE MANUSCRIPTS WITH ANNOTATIONS
AN INTRODUCTION, APPENDIX AND GLOSSARY
BY

ARCHBISHOP TIRAYRE
MEMBER OF THE CONGREGATION OF THE HOLY SEE
OF ST. ETCHMIADZIN

PUBLICATION
OF THE
ARMENIAN GENERAL BENEVOLENT UNION
MELKONIAN FUND
NEW YORK
1952

# FRIK

# LE DIVAN

OEUVRE COURONNÉE PAR L'ACADÉMIE DES SCIENCES
DE PETROGRADE

PUBLIÉE POUR LA PREMIERE FOIS
ANNOTÉE D'APRES PLUSIEURS MANUSCRITS ET PRÉCÉDÉE D'UNE
INTRODUCTION ET D'APPENDICES AVEC UN VOCABULAIRE.
PAR

ARCHEVÊQUE TIRAYRE
MEMBRE DE LA CONGREGATION DU ST. SIEGE
D'ETCHMIADZINE

PUBLICATION DE FONDS MELKONIAN
DE L'UNION GENERALE ARMENIENNE DE BIENFAISANCE
NEW YORK
1952



# Ձ Օ Ն

## Ի ՅՈՒՇ ԱՆՄԵՌ ԾՆՈՂԱՑ ԻՒՐՈՑ

*Լոյսդ Անմատոյց, Լուսոյդ յար ի Յոյս*
*Հեղցես ճառագայթ՝ շող, լոյս, յարացոյց*
*Ի հոգի ծնողացս եղեալ ի յանլոյս*
*Ի դամբարանի՝ Քեզ ակընկառոյց.*

*Ոյք հանգեան ի Քեզ՝ յուսով յետ մահու*
*Ի Քեզ տեսանել Լոյսն Առաւօտու.*
*Շնորհեա Յովսէփայ՝ հաւրն իմ շող Լուսոյն,*
*Մաւրն իմ Վարդուհւոյ՝ Յոյս անշէջ ի քուն.*

*Խնդրէ, Տէր, ի Քէն որդին անդադար*
*Պաշտաւնեայդ խոնարհ՝ յաղերս մըխիթար*

*ՏԻՐԱՅՐ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ*
(Ի Տոհմէն Մելիք Մուշկամբարեան)

# ՆԱԽԱԲԱՆ

Ուսումնասիրութեան նիւթը, իր նախնական ձեւով հրատարակուած է տարիներ առաջ Մայր Աթոռի պաշտօնաթերթի «Արարատ» ամսագրի մէջ (1918 Յունուար–Մարտ, էջ 264–288,— Ապրիլ–Դեկտ․, էջ 171–203)։

Ժամանակի ընթացքին նոր պրպտումներ, որոնումներ, տեղեկութիւններ, նոր տեսակէտներ, նոր փոխանակութիւններ մտքերի ու տեսակէտների, ինչպէս եւ նոր աղբիւրներ, նոր լոյսի տակ, առիթ դարձան ուսումնասիրութեանս ծաւալն ընդլայնելու եւ աւելի մանրամասնութիւններով ճոխացնելու, այն ձեւով, որ այժմ բանաստեղծի եւ Միջին դարերի մեր բանաստեղծութեան գնահատողների աչքին է ներկայանում։

Ուսումնասիրութեանս մէջ կան, թերեւս մասեր, որոնք սովորական ընթերցողի համար երկար պիտի երեւան եւ խճողուած մանրամասնութիւններով, սակայն միջին ընթերցողից աւելի մեծ աչքի առաջ են ունեցած բանասէրներին բաւարարելու միտումը, որոնց համար ամէն մի նոր մանրամասնութիւն՝ մի նոր աղբիւր է ծանօթանալու անցեալի մեր պատմութեան, համադրած օտար աղբիւրներից քաղած եւ հիւսած տուեալներով, մի էական նպատակ միայն ունենալով,— պարզել հնար եղած չափով այն միջավայրն ու պայմանները կենցաղի ու յարաբերութեան, որի մէջ վաղուց մոռացուած մեր երգիչն էր ապրում, որի անունը թէեւ պատահաբար տրւում էր սկսած ԺԹ․ դարու ուսումնական թուականներին, սակայն իւր դէմքն անծանօթ էր իբրեւ գրական արժէք եւ բանաստեղծի ձայն, նոյնիսկ նոցա համար, որոնք այդ անունն էին յիշում անցողակի։

Առաջին անգամն է, որ Ֆրիկն երեւում է իւր ամբողջ հասակով եւ տարողութեամբ հայ գրական աշխարհի մէջ,— իւր տուածները հնարաւորութեան չափով ի մի ժողովելով,— իբրեւ երգիչ– բանաստեղծ, իբրեւ մտածող եւ իբրեւ անխուսափելի ազդակ իւր միջավայրի մէջ եւ գալիք սերնդի համար։

Մեր միակ նպատակն է եղած ներկայացնել Ֆրիկն այնպէս՝ ինչպէս է,— իւր շնչով ու աւիւնով, բարբառով ու ոճաբանութեամբ՝ տուած հիմքերի սպառող համեմատութեան ամբողջ կառուցուածքով, որի համար ո՛չ ջանք ենք խնայած, ո՛չ ժամանակ եւ ո՛չ միջոցներ։

Որքա՛ն ենք յաջողած այդ կառուցուածքի առաղձներն ի մի բերելով, որքա՛ն ստոյգ են մեր տեսութիւնները, ուր շատ բան հիմնովին փոխած է անցեալի

տեսութիւնները, որքան ստոյգ է մեր վարկածն իր անձի մասին,— այս բոլորն այժմ դրւում է բանասէր մտքերի առաջ:

Տեսութեան տարբերութիւն, եզրակացութեան այլազանութիւն, խնդիրների լուսաբանութեան մէջ հայեացքների խտրութիւն,— այդ չէ եղած մեզ զբաղեցնող խնդիրը, այլ Փրիկի անձի պարագաների վրայ մի նոր լոյս սփռելու հոգն ու մտմտումները, դարերից փոփոխ բախտով նորա վրայ ժողովուած թանձր փոշու ցրումը եւ նորա գրաւիչ դէմքը երեւան բերելու հոգը:

Քննադատի, նոր ուսումնասիրողի նոր լոյսերն եթէ առիթ պիտի լինին նորա թագուն դէմքն ու գանձերն աւելի եւս լուսաւորելու,— առաջին հրճուող հոգին մերը պիտի լինի: Չէ՞ որ des choques des opinions jaillit la vérité.

ՏԻՐԱՅՐ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ



# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ
# ՖՐԻԿԻ

*ԿԵԱՆՔԻ, ԺԱՄԱՆԱԿԻ, ՄԻՋԱՎԱՅՐԻ ՊԱՅՄԱՆՆԵՐԻ
ԿՐԱԾ ԵՒ ԹՈՂԱԾ ԱԶԴԵՑՈՒԹԵԱՆ,
ԱՆՁԻ, ԵՐԿԵՐԻ ՆՇԱՆԱԿՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ*



## ՄԱՍՆ Ա.



### ԳԼՈՒԽ Ա.

§ 1.

ՀԱՅ տպագրութեան առաջին երախայրիքներից մէկում, Հայկական ՋԿԲ եւ Փրկչական 1513 թուականին, Վենետիկ տպագրուած «ՏԱՂԱՐԱՆ»ի մէջ, ուրիշ տաղերի շարքին, լոյս է տեսնում նաեւ «Է՞ր չես երթար ի միտ ի վար, է գերեվար մարդ ու տխմար»… Տաղը, որ կրում էր «Տաղ ի Ֆրկանէ ասացեալ» խորագիրը:

Տպագրութեան արուեստի գիւտից յետոյ տպագրական աշխարհում առաջ եկած գրքերի տարածման գործը մի անդամից կերպարանափոխ անող երեւոյթը չէր կարող եւ իւր հեռաւոր ազդեցութիւնը չունենալ Առաջաւոր Ասիայի քաղաքակրթութեան ռահվիրայ կազմող ժողովրդի վերայ, որի սակաւաթիւ, ցիր ու ցան ներկայացուցիչներն՝ ապաստանած հարուստ եւ արուեստների կենտրոն Վենետիկի մէջ, անտարբեր աչքով պիտի չդիտէին նոր ծնունդ առած եւ նոր–նոր միայն առաջին պտուղները տուող մեծ երեւոյթի,— տպագրութեան արուեստի առաջին, բայց խոշոր ու կենսունակ քայլերը: Նոցա, այդ փոքրիկ ժողովրդի համեստ ներկայացուցիչներին, շատ լաւ յայտնի էին այն ահագին դժուարութիւնները, որով գիրքը տարածւում էր իրենց հայրենի երկրում, ուր ժողովական կանոններ էին սահմանուած, որով «հրամայէ եպիսկոպոսն զսուրբ գիրս Եկեղեցւոյ գրել արուեստաւորաց ուղղափառաց եւ գիտնոց» միայն*: Ուստի իրենք եւս գիրք տարածելու գաղափարը միանգա–

* Կիրակոս Վարդապետի Գանձակեցւոյ «Պատմութիւն Հայոց». Հրատարակութիւն Ղուկասեան Մատենադարանի, Թիֆլիս. 1910. էջ 290:

մից ընդգրկելով՝ տալիս են, Վենետկի՝ նոյն իսկ դեռ այդ օրերին բազմաթիւ մանր տպարաններից մէկի արդիւնք, «Պարզատոմար» երեխայրիքը, եւ ապա, քիչ անցած, «Տաղարան»ը, ՋԿԲ=1514 թուին, մօտ 60 տարի անցած եւրոպական առաջին տպարանի արդիւնք Աստուածաշնչի տպագրութիւնից (1452) յետոյ:

§ 2. Աչքից չպէտք է թողնել մի էական հանգամանք, որ կարեւորութիւն է ստանում: Այդ այն է, որ 1513 թ.-ին տպագրուած «ՏԱՂԱՐԱՆ»-իս մէջ տաղերի շարքում գտնում ենք նաեւ Ֆրիկ-ի տաղերից մէկը:— Տպագրութեան առաջին երեխայրիքը, «Պարզատոմար»ը հանրութեան կարիքներին լայն չափով բաւականութիւն տալու բնոյթ կրող մի հրատարակութիւն էր դա մի տեսակ շուկայի պահանջի գոհացում տուող արտադրութիւն էր, որ անյայտ հրատարակիչը հրապարակ էր հանում, լաւ գիտենալով, որ այդ պահանջը լիուլի պիտի սպառուէ հեռաւոր արեւելքում: Անշուշտ, մի այդպիսի պահանջի արդիւնք պէտք է համարել նաեւ նորան հետեւող հրատարակութիւնը,— «Տաղարան»ը որ «մեղապարտ Յակոբ»ը ժողովրդական պահանջին բաւականութիւն տալու եւ ընդ առաջ գնալու համար, խրախուսուած իւր նախորդի, կամ թերեւս իւր իսկ, նախաձեռնութեամբ հրատարակած «Պարզատոմար»ի արագ սպառուելու օրինակից, չտապում է վաճառականի, առեւտրական հաշիւներից, թերեւս դրդուած չարժառիթներով հրապարակ հանել եւ «ՏԱՂԱՐԱՆ»ը:

Այս տեսակէտից նոր հրատարակուող «Տաղարան»ը բնականաբար իւր մէջ պիտի բովանդակէր այնպիսի տաղեր, որին ժողովուրդը վաղուց ծանօթ էր, որ նորա հոգուն ընտանի էին, նորա ուրախութեան ու տխրութեան, խոհերի ու մտորումների ժամերին ու պահին շատ անգամ էին լսուած ու հնչած նորա ականջին եւ կամ նորա բարոյական հասկացողութիւնների արձագանգն էին:

§ 3. Ֆրիկի տաղերից մէկն այդ «Տաղարան» ժողովածուի*) մէջ երեւալը, հետեւաբար, չպէտք է համարել արդիւնք պատահականութեան, այլ որ հրատարակիչը տալիս էր այդ երեխայրիք տպագրութեան բանաստեղծական ընտիր հատուածների շարքում, իսկապէս ժողովրդի լայն խաւերին շատ լաւ յայտնի, ծանօթ ու սիրուած եւ նորա հոգու հետ խօսող բանաստեղծների արտադրութիւնները: Անշուշտ, այստեղ մեծ նշանակութիւն ունէր նաեւ հրատարակչի ճաշակը եւ ընտրութեան հայեցակէտը, նորա անհատական ախոր-

* «ՏԱՂԱՐԱՆ»ս այժմ մատենական հազուագիւտ դարձած նմուշ գրքերից մէկն է, որից մի օրինակ ունէր Կեսարիոյ նախկին Առաջնորդ Տ. Տրդատ Եպիսկոպոս Պալեան (Զգիտենք վերջին աղէտների եւ տեղահանութեանց ժամանակ կարողացա՞ւ ազատել այն, թէ իւր մնացած բոլոր Ձեռագրների ու աշխատութիւնների հետ այն եւս անհետ կորաւ «քաղաքակրթութեան ռահվիրայ» Թիւրքերի ձեռքով): Երկու այլ օրինակ գտնւում են Ս. Երուսաղէմի Միաբանութեան Գրատան մէջ: Այլ օրինակ մեզ անյայտ է:— Երուսաղէմի օրինակից՝ նախկին Գրադարանապետ Տ. Սահակ Եպիսկոպոս Խապայեանի (Ապա Սսոյ Աթոռի Շնորհ. Կաթողիկոս) միջոցով մի օրինակ արտագրուած էր Նորայր Բիւզանդացու խնդրով եւ ուղարկուած իրեն, որի մօտ եւ տեսել ենք 1911 թ. աշնան, Տաղարանիս արտագրուած այդ ամբողջական օրի-

ժանքն ու ըմբռնումը, սակայն այդ ամէնի հետ հրատարակիչը պարտաւոր էր ի նկատի առնել եւ այն ժողովրդի, հասարակութեան ճաշակն եւս, որի մէջ մտադիր էր լայն չափերով տարածել իւր վաճառականական ձեռնարկ հրատարակութիւնը: Մասնաւոր անհատը լոկ իւր անձնական ճաշակին բաւարարելու համար կազմած մասնաւոր ժողովածուն կարող էր ունենալ իբր ձ ե ռ ա գ ի ր տաղարան, ուր նա կարող էր եւ իրաւունք ունէր հաւաքել եւ զետեղել իւր անձնական հասկացողութեան համապատասխանող կտորները եւ բանաստեղծները, իսկ տ պ ա գ ր ո ւ ա ծ տաղարանի մէջ, հրատարակիչն ակամայից պարտաւոր էր լռեցնել իւր ճաշակի եւ քմքի հաճոյքները, հանրութեան՝ ժողովրդի լայն խաւերի պահանջին ու ճաշակը բաւարարելու համար:

Այս տեսակէտով արդէն այդ ժամանակ, 1513 թուին, Ֆրիկն ա՛յն բանաստեղծների շարքին է պատկանում, որոնք ժողովրդական լայն ընդունելութիւն էին գտած, որը յայտնի է ու սիրուած եւ որի բանաստեղծական արտադրութիւններից մէկն ու մէկը նոր լոյս տեսնող «Տաղարան»ի մէջ զետեղուած լինելը՝ մի տեսակ պահանջ էր:

§ 4. Ո՞վ էր այդ ՖՐԻԿ անունով բանաստեղծը, որ այդքան յայտնի էր արդէն ԺԶ. դարու սկզբին, ինչպէս եւ նորանից էլ առաջ եւ որ յետոյ այնքան ա ն յ ա յ տ է մնում, որ այսօր իսկ գրական աշխարհում ա՛յնքան քիչ ծանօթ է եւ հայ գրականութեամբ զբաղող անհատներից շատերի սրտին ու մտքին այնքան էլ ծանօթ դէմքերից չէ: Մի բանաստեղծ, նուրբ ճաշակով ու ըմբոստ հոգով, որի տաղերն այս կամ այն Մատենադարանի փոշիների մէջ են ընկած դեռ եւս մի անկիւն, համարեա անյայտութեան մատնըւած, շատ քչերին ծանօթ, չափազանց քիչ հետաքրքրութիւն շարժած, չնայելով այն պարագային, որ իւր շրջանի եւ դարու խոշոր մեծութիւններից մէկն է, թէ՛ իւր արտադրութիւնների քանակութեամբ, թէ՛ այդ բանաստեղծական արտադրութիւնների մէջ արտայայտած մտքերով, խանդով ու աւիւնով, իւր սիրտն ու հոգին սփռելով այդ բոլորի վերայ շատ անգամ անգիտակից կերպով, որովհետեւ այդ ամէնն այնքան բնական է եւ իւր ներքին մարմու ամբողջ կարողութիւնից բխած:

Մինչեւ ԺԹ-րդ դարի 60–70-ական թուականների առաջին օրերը Ֆրիկն

նակը. (Այդ աշնան զբաղուած էինք Վենետիկի Մխիթարեան Հայրերի գրատան մէջ գտնուող Ֆրիկի տաղերի բնագիրը կազմելու աշխատութեամբ):

Ս. Էջմիածնի Մայր Աթոռի Մատենադարանի ՁՌ. Թիւ 1644 Գ. Տաղարանի մէջ գտնւում են ինչ-ինչ տպագրուած մասեր, հանուած մի տպագրուած Տաղարանից եւ կցուած ՁՌ-ին. այժմ ճշդութեամբ չենք կարող յիշել, թէ այդ մասերը 1513 թուին տպագրած «ՏԱՂԱՐԱՆ»ի մասերից է, թէ աւելի ուշ, 1568 թուականին տպագրած «ՏԱՂԱՐԱՆ»-ից հանած պատառիկներ են: Որքան յիշում ենք այս Տաղարանի տպագրութիւնը շատ նման է Օքսֆորդի համալսարանի. Բոդլէեան Գրատան (Bodleian Library, Oxford, England) Arm. 3. 365 Ձեռագրի «Ճալանոսի Հաքիմարան եւ Աղթարքի» տպագրութեան, (որի լուսանկար մի օրինակն ենք նուիրած 1909' թուին, Հայ Գրական մշակ բժ. Ց. Արթինեանին, Աշտարագարցի):

*խպառ մոռացութեան աշխարհին էր մատնուած․ ոչ ոք չէր հետաքրքրւում նորանով եւ ո՛չ հայ գրական աշխարհը եւ ո՛չ էլ այդ աշխարհի մէջ աշխատող մտքերն ու ձեռները կամենում էին լոյս աշխարհ հանել այդ մոռացուած աշխարհի Երգիչն ու իւր Տաղերը։ Եւ եթէ կային մի քանի ծանօթներ, նոքա եւս մատենադարանների ու հին, փոշեթաթախ Ձեռագրերի սիրահարներն էին։*

§ 5․ *Առաջին անգամ Ֆրիկի գոյութեան մասին տեղեկութիւն է հաղորդում Վենետիկի Մխիթարեան Հայրերից մէկը, ինքն եւս բանաստեղծ եւ բանաստեղծի կորստի մատնուելու վիշտն ու ցաւը հասկացող Հ․ Ղեւոնդ Ալիշան*, 1870 *թ․ին իւր* «Ցուցիկք Հայրենեաց» *գրական այլ եւ այլ խնդիրների մասին խօսող ժողովածուի մէջ։* «Ցուցիկներ»*–ի Բ․ հատորի մէջ զետեղած «Ազգային Վիպասանութիւն» յօղուածի մէջ Հ․ Ալիշանը մի չատ փոքր, անցողակի ծանօթութիւն է տալիս Ֆրիկի մասին հետեւեալ կարճ տողերի մէջ․*

*«․․․ Բարակ զգացմանց եւ ուղիղ մտաց տէր, նաեւ ճարտար տաղաչափ պէս պէս վանկերով նորանուն քերդող մը կայ Ֆրիկ, որդի Թագվոչի, եղբօրորդի Դողոնայի, որուն ժամանակն որոշակի յայտ չէ․ բայց այս դարէս (ԺԵ․) ետ ալ չէ․ գրուածքն բարոյական խրատք են, սակայն սրտով սփռած»*:*)

*Այսչափով եւ վերջանում է Հ․ Ալիշանի ամբողջ ծանօթութիւնը դարերով անյայտութեան մատնուած եւ իւր իսկ սրտին ու հոգուն խօսող մեր երգչի մասին իւր Ցուցիկների մէջ, դորանով եւ լրացած էր համարւում ընթերցողի ամբողջ հետաքրքրութիւնը նիւթի նկատմամբ։*

§ 6․ *Երուսաղէմ հրատարակուող «Սիոն» ամսագիրը, իւր* 1876 *թուի, թիւ* 1, էջ 13–14 *մէջ տալիս է «Մարդոյն երբ Դալէհն ու բուրջն ի Ֆալաքն չէ ըղորդած» վերնագրով երգը «Վասն Թալեհի եւ Պոճի․ ի Ֆրիկ երգչէ» խորագրով։*

*Տաղի վերջը, հրատարակիչն անկարող լինելով իրարից զատել Ֆրիկի բուն տաղը եւ նորան կցուած ձեռագրի արտագրող դրչի Ցիշատակարան քառատողը, տալիս է եւ այդ․*

*«Անճառ եւ անքնին Աստուած, որ Դու յոյս ես մեղաւորաց*
*«Մեղապարտ Սեբաստացուս լեր յաւուրն յետնում ողորմած․*
*Թէպէտ յանցաւոր եմ ես, Դու չնորհես ձիր պարգեւաց,*
*Արժանացո՛ ընդ նոսին, որք յաջակողմեան են դասած»։*

*Այս յաւելուած քառատողից յետոյ, որ երգչինը չէ, այլ Սեբաստացի դրչինը, խմբագրութիւնը տալիս է հետեւեալ ծանօթութիւնը․*

*«Սոյն ռամկական ոտանաւորս, որ օրինակուած է Աթոռոյս թանգարանի գրչագիրներէն, քանի ձեռագրաց մէջ կը գտնուի եւ ոմանց մէջ վերջին չորս տողերն կը պակսին, ուր* Սեբաստացի *անունն յիշատակուած է որ թերեւս օրինակողի անունն եւ յաւելուածը լինի, քան թէ հեղինակի։ Իսկ* Ֆրիկ *ա–*

* «Ցուցիկք Հայրենեաց», *Բ․ էջ* 125։

*նունն, յայտնի է թէ բանաստեղծական անուն է եւ հաւանական կը կարծուի, որ կամ* Յովհաննէս Պուլզ *Վարդապետինն է կամ* Խաչատուր Կեչառեցւոյն»:

§ 7. *Արիստակէս Վարդապետ Տեւկանց*, 1882 *թուին, Աբգար Յով-հաննիսեանի խմբագրութեամբ եւ աջակցութեամբ, հրատարակում է* «Հայերգ» *անունով բանաստեղծութիւնների մի փոքրիկ ժողովածու, հան-ուած զանազան ձեռագիրներից, որ յաջողել էր ժողովել այս ու այն վայրերի մէջ իւր երկար ասպանդական ճանապարհորդութիւնների շրջանում: Այդ ժո-ղովածուի մէջ մտած են նաեւ Ֆրիկի անունով յայտնի եւ կամ նորան վերա-գրած հետեւեալ տաղերը:*

1.— «Կուզես որ ազիզ կենաս, որ ամէն մարդ զքեզ սիրէ»... Տաղ Ֆրկանն ասացեալ» *վերնագրով: էջ* 32–38, *ցան ցիր:*

2.— «Տաղ Ֆրկանն *ասացեալ*, Սիրտ իմ ընդէր ես խռովեր»... *էջ* 137–141:

3.— «Աստուած արդար եւ յիրաւի եւ ողորմած յամենայնի»... Գանգատ ի Ֆրիկ գըրՃոյն» *խորագրով. էջ* 143–150:

4.— «Ով կու սիրէ կուժ ու կթխայ».... : *Առանց վերնագրի եւ երգչի անուան յիշատակութեան. էջ* 186:

*Հրատարակիչը բաւականանում է միայն առաջ բերելով այդ տաղերը, առանց որեւէ ծանօթութիւն տալու երգչի անձի, ժամանակի եւ այլ յարա-կից խնդիրների մասին:*

§ 8. *Կ. Պոլիս հրատարակուած* «Երկրագունդ» *ամսագիրն իւր* 1885 *թուականի, Ապրիլ ամսի համարի մէջ, էջ* 173–175, *տալիս է* «Կուզես որ ազիզ կենաս» *Տաղը,* «Տաղ հոգւոյ շահ» *վերնագրով, առանց հեղինակի անուան յիշատակութեան:* «Երկրագունդ»*ը, իբրեւ խմբագրական ծանօթութիւն, ա-ւելացնում է տաղի վերջը.*

*«Ի հաւաքծոյից Յովհաննէս Քահ. Մկրեանի: Անծանօթ մնացած է այս խրատական տաղի հեղինակն, բայց դարձեալ հնութիւն մի է, թերեւս ԺԷ. դարու գործ»:*

*Տաղս հրատարակուած է նոյն* «Երկրագունդ» *ամսագրի, միեւնոյն տարուայ, Դեկտեմբեր ամսուայ համարի մէջ, էջ* 572–573, *առանց ի նկատի ունենալու, որ Ապրիլին արդէն հրատարակուած էր. ունի դարձեալ նոյն «Ի հաւաքծոյ Յովհ. Քահ. Մկրեանի» խմբագրական ծանօթագրութիւնը:*

§ 9. *Սոքհոլմում*, 1888 *թ. Ապրիլ* 21, *հրատարակած խորագիրը, ձեռագիր տետրակի մէջ, որ կրում է* «Ցուցակ Մատենագրութեանց եւ Թարգ-մանութեանց ԺԲ—ԺԷ դարուց չեւ եւս հրատարակելոց»... *խորագիրը եւ ուղ-ղուած «Առ յարգոյապատիւ Տ. Ղեւոնդ վ. Յովնանեան Աթոռակալ Մխիթար-եան Ուխտին Վիեննայ», նոյն ժամանակի Հայ գրական աշխարհի մեծահմուտ*

հետաքննիչն ու սիրահար պրպտող միտքը՝ Ֆրիկի մասին տալիս է միայն մի շատ համառօտ յիշատակութիւն, ասելով.

«Ֆրիկ, որդի Թագվոչի, Եղբօրորդի Դողոնայի»:

— Տաղք.

«Իմ սիրտ վատին մի լքսել».

«Կուզես որ ազիզ կենաս»,—*

Ուր, ինչպէս յայտնի է, այս համառօտ կենսագրական տեղեկութեան իբրեւ աղբիւր ծառայել է, վերը յիշատակած, Հ. Ղեւոնդ վարդ. Ալիշանի «Յուշիկք Հայրենեաց»-ը, սակայն առանց աղբիւրի յիշատակութեան:

§ 10. «Նոր ժողովածու Միջնադարեան Հայոց տաղերի եւ ոտանաւորների»ի, Ա. պրակ, էջ 68–70 մէջ, հրատարակուած Կարապետ Կոստանեանի խմբագրութեամբ, 1892 թուականին, Տփխիսում, լոյս է տեսնում «Տաղ գեղեցիկ եւ ազնիւ» խորագրով «Աւաղ, մեզ հայել պիտի այն արեւն, որ լոյս կը ծագէ» տաղը, ուր ցրուած են Ֆրիկի, վերն յիշատակած, «Կուզես որ ազիզ կենաս» տաղի ինչ-ինչ քառեակներն առանց հեղինակի անուան եւ առանց որեւէ ծանօթագրութեան:

§ 11. Կ. Կոստանեանի խմբագրութեամբ եւ հրատարակութեամբ, 1896 թուականին, Տփխիս լոյս տեսած «Միջնադարեան Հայոց Տաղերի եւ Ոտանաւորների» Նոր Ժողովածու-ի մէջ, Գ. Պրակ, երեւում է Ֆրիկի տաղերից.—

1.— «Կուզես որ ազիզ կենաս» տաղը, էջ 35–40, որի մասին խմբագրողը տալիս է հետեւեալ ծանօթագրութիւնը.

«Այս տաղն օրինակեցինք 1617 թուին Կաֆայում գրուած Տաղարանից. տաղի վերնագիրն էր — «Ֆրկան ասացեալ զայս Տաղ». ուրեմն երգիչն է Ֆրիկ: Նոյն տաղը կար եւ մօտաւորապէս 1662-ին գրուած փոքրիկ երգարանում, որի մէջ նոյն վերնագիրն էր «Տաղ վասն Ադամայ», առանց յիշելու հեղինակի անունը»:

2.— «Վասն ողորմութեան» խորագրով «Յիշէ զքան Աւետարանին իմաստուն կուսանքն ի նման» տաղը, էջ 40–43, որի վերջը գրում է.—

«Այս տաղն օրինակուեցաւ 1617 թուին գրուած Տաղարանից, վերնագիրն է «Ֆրիկի ի նոյն բանն ասացեալ վասն ողորմութեան»: Այսպիսով նախընթաց տաղի եւ սորա հեղինակն է Ֆրիկ երգիչը: Բացի այս երկու տաղերից նոյն երգչի անունով «Հայերգ»ի մէջ լոյս են տեսել եւ հետեւեալները. առաջին «Սիրտ իմ ընդէր խռովես», եր. 137. երկրորդ՝ «Աստուած արդար եւ յիրաւի», եր. 143–150. եւ երրորդ «Ով կու սիրէ կուժ ու կթխայ», եր. 186»:

*) էջ 33, § 137:

*Սորանով եւ վերջանում է նորա, Հայ գրականութեան այդ վաստակաւորի եւ հմուտ հետախոյզի ամբողջ ծանօթագրութիւնն ու անելիքը Ֆրիկի մասին։*

§ 12· *Պր· Արշակ Չօպանեան* 1902 *թուին, Պարիզ հրատարակած իւր* «Նահապետ Քուչակի Դիւանն»*ի նախաբան* «*Քննական Ուսումնասիրութեան*» *մէջ, անցողակի յիշատակում է նաեւ Ֆրիկը·* (*էջ* 12·) *կասկածելով, որ* «Աստուած արդար եւ յիրաւի» *տաղը նորան կը պատկանէր, թէեւ չէ դանդաղում յայտնել, որ մի քանի Տաղարանների մէջ Ֆրիկի անունով է յայտնի այդ։*

*Իւր հրատարակութեամբ լոյս տեսած ԱՆԱՀԻՏ հանդէսի մէջ Պր· Չօպանեան առիթ է ունեցել պատեհին կանդ առնել Ֆրիկի, նորա տաղերի, բանաստեղծի արուեստի, նորա աշխարհայեցողութեան ու արտայայտութեան եղանակի նկատմամբ։* (*Տես ԱՆԱՀԻՏ*, 1905· *Ֆրիկի վերագրած* «Գանգատ»*ի առթիւ, այն է* «Աստուած արդար եւ իրաւի» *տաղը·— ԱՆԱՀԻՏ է· տարի, եւայլն*)։

*Դարձեալ պր· Չօպանեանի խմբագրութեամբ, թարգմանութեամբ ու հրատարակութեամբ* 1906 *թուականին, Պարիզում լոյս տեսած իւր* Les trouvères Arme'niens *հատորի մէջ, ուր մտած են Նահապետ Քուչակի, Պլուզ Վարդապետի, Կոստանդին Երզնկացու եւ ուրիշների հատընտիր թարգմանական երկերն ու երգերը, Հայ գրական աշխարհով ու Հայութեամբ հետաքրքրուող Եւրոպացիներին ճաշակ տալու մեր Միջնադարեան երգիչների ոճի ու զգացումների եւ արտայայտութեան ձեւի մասին,— այդ հատորի մէջ ի միջի այլոց մտել է նաեւ Ֆրիկին վերագրուած* «ԳԱՆԳԱՏ»*ը,* (*էջ* 123–133), *որի նախաբանի մէջ ասւում է·—*

«“Frik” est le pseudonyme, selon le Père Bodourian, du prêtre Khatchatour Kétcharetsi, né dans la deuxième moitié de XIII— e siècle et mort vers 1330 a Ketcharis...» /= *Ֆրիկ, ըստ Հայր Պօտուրեանի, կեղծ անունն է Խաչատուր Կեչառեցու, ծնուած ԺԳ–րդ դարու երկրորդ կիսին եւ վախճանուած մօտաւորապէս* 1330 *թուին, Կեչառիսում։*

*Եւ չնայելով որ Քուչակի ԴԻՒԱՆ–ի նախաբանի մէջ կասկածով էր վերաբերել այդ երգը Ֆրիկինը լինելու նկատմամբ, այստեղ չէ դանդաղում ասելու·*

«Tandis que la plupart des anciens écrivains de l'Arménie... attribuent les malheurs qui frappent des Arme'niens aux pe'che's commis par eux, Frik s'en prend à Dieu lui même et se plaint de son indifference à l'égard du peuple Arménien qu'il abandonne à la merci des assassins et des pillards...» /= *Մինչդեռ Հայոց աշխարհի հնագոյն մատենագիրների մեծագոյն մասը··· Հայերի գլխին եկած դժբաղդութիւնները վերագրում են նոցա մեղքերին, Ֆրիկն ըմբոստանում է նոյն իսկ Աստուծոյ դէմ եւ գանգատւում Նորա անտարբերութեան համար դէպի Հայ ժողովուրդը, որին Նա թողած*

*նորա սպանիչներին ու կողոպտողներին է մատնել։ (էջ 121, ինչպէս եւ 17)․ որով տաղս նորից* վերագրում *է Ֆրիկին*։

§ 13․ *Հ․ Արսէն Ղազիկեան, Վենետիկի Մխիթարեան Ուխտից*, 1909 *թուականին Վենետիկ հրատարակած իւր* «Հայկական Նոր Մատենագրութիւն եւ Հանրագիտարան Հայ Կեանքի» *աշխատութեան մէջ, Պրակ Ա․ էջ* 63, *Հ․ Ղեւոնդ Ալիշանի* անտիպ *գրուածների մասին հետեւեալն է գրում*․

«Երգարան»։*) *Իր անտիպ գրուածոց մէջ տպելու պատրաստ միակ դիւրին գործն սա կարելի է համարել։ Կազմուած է քանիվեց ութածալ թերթերէ, էջք միջադիր… կը բովանդակէ Մ․ Մ․ Միանսարեանցի* «Քնար Հայկական» *երգարանին նման ամէն տեսակ երգեր, որոնք հին աշուղներէ, տաղերգուներէ գրուած են եւ ժողովրդին մէջ լսուած են եւ երգուած… Հ․ Ալիշանի Երգարանին գլխաւոր աղբիւրներն են Ֆրիկ քերթողի ոտանաւորներն․* «Ոտանաւոր ասացեալ է ՖՐԻԿՆ որդի Թագվոշին, եղբօրորդի Դոդոնայի ի վերայ իւր մեղացն, ի վանս բանասիրաց»․ *այդ քերթողին ոտանաւորներու ցանկին վրայ այդ վերնագիրն կը կարդանք։ Ֆրիկի բանաստեղծութիւնք բարոյական, խրատական եւ կրօնական են։… Նոյնպէս իրեն աղբիւր եղած են մեր Մատենադարանի գրչագիր Մաշտոցներու եւ Ոսկեփորիկ անուանեալ հաւաքածոյներու մէջ գտնուած երգերը։ Ժողոված է Նաղաշի, Սալաձորեցւոյ, Խաչատուր Եթովպացւոյ, Թոխաթցի Ստեփանոսի, Աղթամարցի Գրիգորի, Գրիգոր Ծերենցի՝ աշակերտ Առաքել Վարդապետի, Ստեփաննոս Ուռպելեանի, Պետրոս Վարդ․ Ղափանցւոյ, Պետրոս Ջուղայեցւոյ, Յովնաթան Շոռեթեցւոյ, Յովհան Երզնկացւոյ զանազան երգերն։ Վաղեմի հանդէսից եւ օրագրաց մէջ ցանուցիր երգերն ալ իւր այս երգարանի աղբիւր եղած են*»։

§ 14․ *Պարիզ,* 1912 *թուին հրատարակած ստուար հատորով* «*ՀԱՅ ԷՋԵՐ*» *տիտղոսը կրող իւր երկի մէջ Պր․ Արշակ Չօպանեան բազմաթիւ յայտնի ու անյայտ երգիչների ու տաղասացների շարքում զետեղել է նաեւ ՖՐԻԿԻ մի քանի տաղերը*․—

1․— «Ֆրիկի ասացեալ վասն ողորմութեան․ Յիշէ զբան Աւետարանին, իմաստուն կուսանքն ի նըման…», *էջ* 35–37։

2․— «Տաղ Ֆրիկէ ասացեալ ի վերայ մեծատանն եւ աղքատ Ղազարին․ Է՛ր չես երթար ի միտ ի վայր, Է՛յ գերեվար մարդ ու տխմար…» *էջ* 38։

3․— «Ֆրիկ․ Ընդդէմ Ֆալաքին․ Էյ Ֆալաք երբ ծռիս մարդուն, զօրն ի բուն փորես նորա հոր…»։ *էջ* 39–40։

4․— «Ֆրիկի տաղն․ Յորժամ որ մահն մօտենայ մարդոյն…»։ *էջ* 41–42։

*) 1911 *թ․ աշնան, երբ Ս․ Ղազարի մենաստանի մատենադարանի մէջ զբաղուած էինք Ֆրիկի տաղերն ի մի ժողովելու գործով, մեր բազմաթիւ դիմումները՝ տեսնել այդ* Երգարանը, *մերժման միայն արժանացան․ ի վերջոյ «Կորսուած է» յայտարարուեցաւ մատենադարանապետ Հ․ Աթանասի կողմից, խնդիրը փակելու նպատակով*։

5 · — «Ֆրիկ · Այս է համասփիւռ ծաղիկն, որ թափէ ըզմարդն ի մահու · · ·» ։
*էջ* 42 ։

6 · — «Աղօթք · Քան զքեզ ծանօթ չունիմ · այս դըրանէս ո՞ւր հեռանամ · · ·» ։
*էջ* 42–43 ։

*Այս առանձին գրուած տաղը մի մասն է կազմում միայն Ֆրիկի* «Յիսուս անուն իմ գըթացար · · ·» *տաղի, որ գրուած է առանց ծանօթագրութեան եւ որ ենթադրել պիտի տար, թէ առանձին մի տաղ է ։*

*ՀԱՅ ԷՋԵՐ–ի ներածութեան մէջ Պր · Զօպանեան Ֆրիկին հետեւեալ տողերն է նուիրում, իբրեւ նոր ուսումնասիրութեան արդիւնք ·*

*« · · · Ֆրիկի չահեկան դէմքին վրայ ուշադրութիւն հրաւիրած եմ ԱՆԱՀԻՏ–ի Ե · տարեշրջանի առաջին թիւին մէջ հրատարակուած յօդուածով մը, նուիրուած այդ բանաստեղծին* «Գանգատ» *ըմբոստաշունչ քերթուածին · բաւական ստուար է քերթողական փունջը, որ մեզի հասած է այդ հեղինակէն · իր տաղերը շատ ժողովրդական եւ տարածուած պէտք է ըլլան վաղուց, որովհետեւ ինքը մէկն է այն միջնադարեան բանաստեղծներէն, որոնց տաղերը ամենէն աւելի յաճախ օրինակուած կը գտնենք ձեռագիր տաղարաններու մէջ · անոնցմէ փոքրիկ մաս մը տպուած է Արիստակէս վ · Տէվկանցի* Հայերգ*–ին մէջ եւ Պ · Կոստանեանցի հաւաքածոներուն մէջ, բայց դեռ ամենամեծ մասը կը մնայ անտիպ ։ Այս տաղերէն մի քանին միստիքական զգացմանց արտայայտութիւն, մին համբաւաւոր* «Գանգատ»*ը, աշխարհի անարդարութեան մասին բողոք մը առ Աստուած, իսկ մնացեալը բոլորն ալ խրատական բանաստեղծութիւններ են ։ Անհաւասար, յաճախ ոչ զերծ կրկնութիւններէ, տկարութիւններէ ու տափակութիւններէ, այդ քերթողական գործը ունի սակայն իր լաւ մասերուն մէջ, ինքնուրոյն համ մը եւ գոյն մը, արտայայտութեան մէջ ժողովրդական, բնական, անոյշ չեշտ մը, լեզու մը, պարզուկ, գունաւոր, գողտրիկ, շատ հարազատօրէն* «աշուղական», *յաճախ ազուոր տողեր, ինքնեկ, սահուն, անբռնազբօս, լաւ ձուլուած տաղեր, որ մերթ բարոյախօսական գաղափար մը գեղեցիկ եւ հմուտ կերպով կը խտացնեն, եւ առածի ձեւով կրնան յաւերժանալ · ու տեղ տեղ, կը գտնենք հատուածներ ուր կրօնական խոր ու բարձր ներշնչում մը քաղցր ու դաշն կերպով թարգմանուած է ։ Այդ գործը, որ միջնադարեան խրատական բանաստեղծութեան մէջ առաջնակարգ տեղերէն մին կը բռնէ, արժանի է ամբողջապէս հրատարակուելու եւ ուսումնասիրուելու ։ Հեղինակին անձն ալ կարօտ է ուսումնասիրուելու · «Ֆրիկ» կեղծանուն մըն է · ի՞նչ էր իր բուն անունը · ե՞րբ եւ ո՞ւր ապրած · չենք գիտեր դեռ ։ Հ · Պոտուրեան առենով ինձ գրած է, թէ «Ֆրիկ»ը Խաչատուր Կեչառեցւոյն կեղծանունը կը կարծէ ինք ։ Ասիկա վարկած մըն է, որ չէ ապացուցուած դեռ · պէտք է լուծել այս հանելուկը · · ·» ։ (էջ ԻԲ–ԻԳ ·)*

§ 15 · *Ֆրիկի մասին կարծիք ունի յայտնած նաեւ Պր · Պ · Մակինցեան, Մոսկուայի մէջ, Ռուսերէն լեզուով հրատարակած* Sbornik Armianskoy

Literatoori *անունով գրքի մէջ,* (*ՀԱՏԸՆՏԻՐՔ ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ*) *սակայն ոչ մի նորութիւն է տալիս։ էջ* LX.

§ 16․ *Հրանտ Ասատուրն եւս մի քանի տողեր ունի Ֆրիկի մասին, այս ձեւով․—*

*«ԺԲ․ դարէն ԺԷ․ դար կը հանդիպինք ռամկօրէն գրող բանաստեղծներու՝ ինչպէս Յովհաննէս Պլուզ, Կոստանդին Երզնկացի, Խաչատուր Կեչառեցի, որ* հաւանօրէն Ֆրիկն *է, Առաքել Սիւնեցի, Առաքել Բաղիշեցի, Մկրտիչ Նաղաշ Յովհաննէս Թուլկուրանցի, Գրիգոր Աղթամարցի, Խասպէկ Երէց, Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան եւ անոնց ամենէն ալ գերիվեր տաղանդաւոր աշուղ մը, Նահապետ Քուչակ․․․»,* (Դիմաստուերներ, Ներածութիւն)։

§ 17․ *Վերջին տարիներս, սկսած* 1915–16 *թուականներից, մի առանձին հետաքրքրութիւն էր զարթել դէպի Ֆրիկը Ռուսական Հայաստանի Հայ մտաւորական շրջանի մէջ, այն եւս շնորհիւ ոչ զուտ հայկական, այլ օտար ազդեցութեան։ Ռուս շնորհալի բանաստեղծ եւ գիտնական Վալերիյ* Բրիւսով, *իւր մի շարք դասախօսութիւնների շնորհիւ, որ ունեցաւ հայկական զանազան վայրերում,— սկսած Պետրոգրատից եւ Մոսկուայից մինչեւ Բագու, Տփխիս ու Երեւան, զարմանալի ինքնուրոյն շնորհք ու վարպետութեամբ հրահրեց այդ հետաքրքրութիւնը եւ Հայկական շրջաններին ծանօթ եւ նոյն իսկ սիրելի ու ընտանի դէմք դարձրեց մեր միջնադարեան՝ վաղուց մոռցուած Երգիչը, իսկ նորա տաղերը նոր հետաքրքրութեան անվերջ առարկայ։*

*Այդ օտար, բայց ազնիւ չարժառիթներից բխած, ազդեցութեան տակ եւ իբրեւ գեղեցիկ հարկ Հայ ժողովրդի կողմից դէպի իւր երգիչը, երեւում են քանի մի լրագրական յօդուածներ Կովկասեան Հայ եւ օտար պարբերականների մէջ։*

*Վ․ Բրիւսովի զարթեցրած աշխոյժ հետաքրքրութիւնն առաւել կենդանութիւն ստացաւ եւ Ֆրիկեան նոր մի զարկ առաւ, նորա խմբագրութեամբ եւ ղեկավարութեամբ,— սակայն հայկական գրական ամենալաւ ոյժերի կենդանի եւ գնհատական մասնակցութեամբ ու խորհրդով,— լոյս տեսած ստուարահատոր ժողովածուի* Poesia Armenii*), *ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ խորագիրը կրող երկի շնորհիւ, որտեղ թէ՛ մեր միջնադարեան, թէ՛ նախորդ ու յետին դարերի երգիչների, բանաստեղծների, տաղասացների ու աշուղների*

* Poesia Armenii s drevneyshikh vremion do nashikh dney, v perevode rooskikh poetov . . . pod redaktziey . . . Valeria Brussova. izdanie Moskovskavo Armianskavo Komiteta. 1916, Moskva.

== *ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ* հնագոյն շրջանից մինչեւ մեր օրերը․ *Թարգմանութեամբ Ռուս բանաստեղծների․․․ Խմբագրութեամբ․․․ Վալերիյ Բրիւսովի․ Հրատարակութիւն Մոսկուայի Հայկական Յանձնախմբի ·* 1918, *Մոսկուա։*

լաւագոյն երկերն ու երգերը, իւրաքանչիւրը իւր արժանի տեղն է գրաւած, հատընտիր ու զարմանալի յաջողութեամբ ի գլուխ հանած, Ռուսական գրական աշխարհի լաւագոյն բանաստեղծ–թարգմանիչների փոխադրութեամբ: Այդ տեղ բնականաբար մոռացուած չեն եւ մեր նորագոյն բանաստեղծները եւ երգիչները:

Այս ժողովածուի մէջ մտել են Ֆրիկի տաղերից երկուսը.—

1.— «Գանգատ», Jaloba, էջ 181–183. Жалоба.

2.— «Ընդդէմ Ֆալաքին», Kolesso Soodbi, էջ 183–184. Колесо Судьбы.

§ 18. Ժողովածուի խմբագիրը, Մեգնից ստացած տեղեկութեանց հիման վերայ, Ֆրիկին համարում է ԺԳ–ԺԴ դարում ապրած անձն (էջ 8) եւ նորա մասին տալիս է հետեւեալը, որ տալիս ենք թարգմանաբար.

«... Միջնադարեան քնարերգութիւնը սերտ կապ ունի նախորդ շրջանի կրօնական բանաստեղծութեան հետ եւ նորանից էլ առնում է իւր ծագումը: Սահմանապահ գծի վերայ է կանգնած Յովհաննէս Երզնկացին, որի Օրհնութիւնները տեղ են բռնել Շարականի մէջ, իսկ նորա վարդապետական–խրատական ոտանաւորներն ազատ բանաստեղծութեան շրջանի փոխանցման բնորոշ կնիքն են կրում, որոնց մէջ բանաստեղծը խօսում է այն ամէնի մասին, ինչ որ իւր ժամանակն ու շրջանը անմիջապէս յուզում ու զբաղեցնում էր նորան: Եւ այդ բանն աւելի աչքի է ընկնում Յովհաննէս Երզնկացու (†1326) ժամանակակից մի բանաստեղծի երկերի մէջ, եւ որ յայտնի է Ֆրիկ կեղծ անունով. (ԺԳ–ԺԴ դ. թերեւս †1330 թ.): Ո՞վ էր այդ Ֆրիկն, առ այժմ չպարզուած հարց է: Մի կարծիք նոյնացնում է նորան Խաչատուր Կեչառեցու հետ, որն ապրում էր այդ ժամանակ եւ նոյնպէս ոտանաւորներ է թողել: Այժմ այդ կարծիքը մի կողմ է թողնուած: Ֆրիկի անունով հասել են մեզ մի շարք ոտանաւորներ, որոնք դեռ եւս ամբողջովին չեն հրատարակուած: Մասամբ, այդ ոտանաւորները, գրուած դասական գրաբարով, մասամբ ժողովրդական լեզուով, նոյն ժամանակի կենդանի բարբառի, արտայայտութիւններով համեմուած լեզուով:... Ֆրիկի բանաստեղծութիւնները դեռ եւս խրատական են, սակայն արդէն համարձակ քայլերով հրատապ ժամանակակից հարցերին է անցնում: Ընդգրկելով բանաստեղծութեան այն հոսանքը, որ արտացոլում է Ողբ Եդեսիոյ, ինչպէս եւ նոյն կարգի պատմական յանգաւոր ոտանաւոր ժամանակագրութիւնների մէջ, Ֆրիկն իւր ոտանաւորների մէջ այն ամէնի մասին, որ իւր աչքով տեսել է, իբրեւ անմիջական դիտող, պատմում է իւր դարու, իւր շրջանի եւ իւր օրերի անցքերի եւ դէպքերի մասին: Շատ տեղ Ֆրիկի ոտանաւորները կարելի է երգիծաբանութիւն ընդունել,— այդ իմաստի լաւագոյն մտքով. բանաստեղծը դառնութեամբ է պատկերացնում մեր առաջ այն բացասական կողմերը իւր ժամանակակից կեանքի, որ չէ խուսափել իւր աչքից:... Սակայն, Ֆրիկը մի այլ կողմից, խզում է այն կապը, որ ունի իւր

նախորդների հետ։ «Այն ժամանակ,— ասում է Ար. Ղօրանեանը,— երբ Հայ հնագոյն հեղինակների մեծագոյն մասը, Բիբլիական մարգարէների նման եւ նոցա հետեւողութեամբ, Հայոց աշխարհին հասած դժբաղդութիւններն, իբրեւ հետեւանք էր համարում նոցա մեղքերի, Ֆրիկն ըմբոստանում է եւ դանդատ է ուղղում նոյն իսկ Աստուծոյ դէմ եւ Նորա դէպի ժողովուրդն ունեցած անարդարութեան դէմ բողոքում»։ Բանաստեղծը, կարծէք, ծանր դատ է սկսում Արարչի դէմ, մեղադրելով Նորան անարդար դատաստան կատարելու դէմ, ինչպէս եւ իրականութեան չութեան, «Ֆալաքի», Բաղդի դէմ»։

«Ոտանաւոր «Ընդդէմ Ֆալաքի»)։ Ազատ ու անկախ քննադատութեան ոգին առաջին անգամն է, որ բռնկւում է ԺԳ. դարու Հայ ազատամտի ոտանաւորների մէջ, այն դաւանական խոնարհամտութեան օրհներգներից յետոյ, որոնցով տարուած են Շարականի երգիչները։

«Յովհաննէս Երզնկացու եւ Ֆրիկի տաղերով հայ քնարերգութիւնն ազատւում է Բիբլիական պատկերացումների եւ Եկեղեցու կապանքներից։ Մընում էր միայն մի քայլ, որ պիտի անէր իսկական-առարկայական քնարերգութեան եւ այդ քայլն էլ անում է Յովհան Երզնկացու եւ Ֆրիկի կրտսեր ժամանակակիցը, Կոստանդին Երզնկացին (ԾՆ. ԺԳ. դարու վերջին եւ ԺԴ. դարու կէսերին)»։

§ 19. Պ. Արշակ Ջօպանեան հրատարակեց Ամերիկայի «Հայաստանի Կոչնակ» շաբաթաթերթին մէջ բաւական երկարաշունչ մի յօդուած, չահեկան քննադատական, ուսումնասիրական մասերով, Ֆրիկի մասին, վերադառնալով երբեմն իւր նախկին տեսութիւնների ուղղումներին եւ բաւական մեծ կոչումներ բերելով Ֆրիկի բանաստեղծութիւններից, եւ նոցա վերլուծումներով տարուելով։ (No. 1, 2, 34 — 1923 Թ.)

Արշակ Ջօպանեան ժամանակի նկատմամբ ընդունում է մեր ուսումնասիրութեան արդիւնք թուականը Ֆրիկի նկատմամբ։

«... Ֆրիկի անձին ու կեանքին վրայ ինչ որ գիտեմ, կը պարտիմ այն տեղեկութեանց զոր Տիրայր Վարդապետ ինծի հաղորդեց, քաղելով զանոնք բանաստեղծին ինչ ինչ տաղերէն զոր գտած է...... ձեռագրաց մէջ»,— եւ ապա համառօտակի տալիս է ունեցած տեղեկութիւնները, որ այս ուսումնասիրութեանս նիւթն է (էջ 20, Թիւ 1, 1923)։

«... Ցաւի ու սիրոյ... երերուն, հոգեկան յափշտակութեան... վերամբարձ սաղմոսներուն մէջ, Ֆրիկ կը հաւասարուի Կոստանդին Երզնկացւոյ եւ Քուչակի, արուեստով նուազ կատարեալ, քան անոնք, բայց նոյնքան խորունկ, նոյնքան անկեղծ ու բնական։... լեզուն պարզ, յաճախ անողորկ... բայց առոյգ, կենդանի, ժողովրդական յոյզով լեցուն։... իւր քնարերգութիւնը, լաւագոյն էջերուն մէջ ազնիւ ու խորունկ սրտի մը թրթռացող նուագն է, որ կեանքի ցաւագին աղբիւրէն կը թռչի դէպի գերագոյն տեսիլ մը արդարութեան ու մաքրութեան...» (էջ 137–138, Թիւ 5, 1923)։

§ 20․ Ահա այն բոլոր բանասէրների եւ նոցա անցողակի կերպով, Ֆրիկի մասին, յայտնած հատ ու կտոր կենսագրական, ժամանակի եւ նորա էութեան նկատմամբ եղած պատառիկները եւ գրական ու քննադատական տեղեկութիւնները, որ երեւացել են Հայ գրական էջերում 1513 թուականին տըպագրուած ՏԱՂԱՐԱՆ-ից յետոյ, եթէ հաշուելու չը լինինք ՊՂՆՁԷ ՔԱՂԱՔ-ի վերջը, իբրեւ Յաւելուած, դրուած «Աւաղ մեզ հայիլ պիտի յայն արեւն, որ լոյս կու ծագէ» տաղը, որն ունի իբրեւ ընդհանուր խորագիր «Բանք պիտանիք եւ օգտակարք ասացեալ յառաջնոց» ընդհանուր խորագրով եւ ուր խառն ի խուռն գտնում ենք Ֆրիկի «Կուզես որ ազիզ կենաս» տաղի ինչ-ինչ մասերը, Պլուզ Յովհաննէս Վարդապետի տաղերի կտորների հետ ի մի հիւսուած (ՊՂՆՁԷ ՔԱՂԱՔ, Տպ․ 1731, 1749, 1792, էջ 220–223․ 1803, 1807, 1834, 1850, 1861 եւայլն)։

§ 21․ Ամբողջ չորս հարիւր տարուայ ընթացքում միայն այսչափ չընչին ատաղձ Միջնադարեան մեր լաւագոյն ու շնորհալի Երգիչներից մէկի մասին, որ շատ աւելի իրաւունք ունէր յետնորդների կենդանի հետաքրքրութեան ու լուրջ ուսումնասիրութեան արժանանալու, իւր թողած գրական ժառանգութեան ծաւալի ու քանակի, որակի ու զգացումների բազմազան գունաւորումներով, իւր ինքնուրոյն ձուլուածքով եւ լեզուի ճոխութեամբ, ինքնաբոյս ու բնատուր տաղանդով, իւր ժամանակի պարագաների, դրութեան, եզակի յիշատակութիւններ եւ ժողովրդական յոյզ ու զգացումների առատ բերումներով։

Սակայն, այս անուշադրութեան ակամայ հարկն առաջ է եկած, ո՛չ այն հանգամանքից, որ հետախոյզ մտքեր, պրպտող ձեռքեր, ըղձայուն սրտեր ու հոգիներ պակաս են եղել, այլ որովհետեւ մի դժբաղդ պատահականութեան շնորհիւ ընկած է եղել վանքերի գրատան անկիւնը եւ իւր անձի, ժամանակի, կրթական ու կենսագրական տուիքների մասին չափազանց քիչ տեղեկութիւններ է ձգել անձնապէս եւ ժամանակակիցների կողմից եւ որ յաջորդող քաղաքական պայմանների մէջ բոլորովին մոռացութեան է մատնւում։

§ 22․ Մեզ, առ այժմ, հետաքրքրող հարցերը հետեւեալներն են․—

1․— Ո՞վ էր Ֆրիկը, ո՞րտեղացի եւ

2․— Ո՞ր ժամանակի անձն էր, ե՞րբ է ապրել ու մեռել։

Թողնում ենք առ այժմ երրորդ մեծ հարցը,— Ի՞նչ է տուել եւ ի՞նչ արժէք ունի այդ ամէնը մեզ՝ յետնորդներիս համար։

Առաջին հարցին իբրեւ պատասխան՝ ունինք այն չափազանց համառօտ տեղեկութիւնը, որ տալիս են Հ. Ալիշանը իւր «Յուշիկք»ի մէջ, Նորայր Բիւզանդացին, առաջնից առած տեղեկութեամբ եւ Հ. Ա. Ղազիկեան, Ալիշանի թողած անտիպ «Երգարան»-ի ճակատից առնելով Ֆրիկի փոքրիկ կենսագրականը, որոնցից՝ նախ տեղեկանում ենք, թէ ՖՐԻԿը «էր որդի Թագվոշին, եղ-

բօրորդի Դողանայի» եւ ապա, որ երգեր է ասել «ի վերայ իւր մեղացն, որ ի վանս բանասիրաց»:*

Նոյն հարցի, այն է անձի նկատմամբ, մինչեւ այժմ ունեցած տեղեկութիւններից երկրորդ իմանում ենք, որ ա)ՖՐԻԿը կեղծանուն է, եւ բ) այդ անձը ըստ ոմանց պէտք է լինի կամ Յովհաննէս Պլուզ Վարդապետ Երզնկացին կամ Տործորեցին (Սիօն), գ) կամ Խաչատուր Կեչառեցին (Սիօն), Հ. Պոտուրեան, եւ դ) անյայտ մի անձն, որի վերայ պէտք է լոյս սփռել եւ պարզել անոր ինքնութիւնը. (Ա. Ձօպանեան, Վ. Բրիւսով):

§ 23. Ժամանակի նկատմամբ ունեցած կարծիքները յանգում են այն ենթադրութեան, որ ա) ոմանք նորան ապրեցնում են ԺԳ–ԺԴ դարում (Հ. Պոտուրեան, Ա. Ձօպանեան, Վ. Բրիւսով, եւ բ) ոմանք եւս ԺԵ. դարուց ոչ ուշ (Հ. Ալիշան), իսկ գ) ուրիշները տանում, հասցնում են նորան մինչեւ ԺԷ. դար (Երկրագունդ):

§ 24. Կենսագրական այդ շատ սուղ տեղեկութիւնների մէջ ամենից գնահատելին է Հ. Ալիշանի անտիպ Երգարան–ի ճակատի խորագիրը, որով Ֆրիկի ծնողների մասին է տեղեկութեան մի նշոյլ տրւում: Թէ ո՞րտեղից է հանել Հ. Ալիշանն այդ հետաքրքրական տեղեկութիւնը, դժբաղդաբար յայտնի չէ (ոչ գիտական մի սովորութիւն, որ ունէր նա՝ իւր աղբիւրները գաղտնի պահել ընթերցողից եւ գիտական աշխարհից): Առիթ ունենալով, յատկապէս Ֆրիկի տաղերի ուսումնասիրութեան համար, անձամբ զբաղուելու Ս. Ղազարի Գրատան մէջ, 1911–ի աշնան, եւ աչքի անցնելու այնտեղ գտնուած բոլոր Տաղարաններն ու Գանձարանները, ինչպէս եւ այն բոլոր Ձեռագիրները, որոնց մէջ գեղեցիկ պատահականութեամբ կարող էին ամփոփուած լինել Ֆրիկի Տաղերը, ամբողջութեամբ կամ մասնակի, եւ կամ նորա մասին որեւէ կենսագրական ծանօթութիւն,— ո՛չ մի տեղ չհանդիպեցինք այդ տեսակ մի ծանօթութեան, ո՛չ այնտեղ, ո՛չ Օքսֆորդի Համալսարանի Բոդլէեան, ո՛չ Փարիզի Ազգային, ո՛չ Լոնդոնի Բրիտանական, ո՛չ Մանչեստրի Կրաւֆորդ Գրատան, եւ ոչ էլ Ս. Էջմիածնի Ձեռագրատան մէջ, ինչպէս նաեւ Վիէննայի Մխիթարեան եւ Կ. Պոլսի Անտօնեան հարց Գրադարանների մէջ կատարած մանրակրկիտ խուզումների ժամանակ: Երուսաղէմի Մատենադարանի Ձեռագիրներից եղած քաղուածների մէջ եւս այդպիսի բարեբաստիկ մի հետք ու նմուշի չը հանդիպեցինք:

*) Եթէ միայն «ի Վանս բանասիրաց» արտայայտութիւնը սխալ արտագրութեան արդիւնք չէ: Քանի որ թւում է, թէ կարող է արտագրողի մը գեղեցիկ սխալը լինել եւ նախնականը, գուցէ, պէտք է լինէր «որ վասն բանասիրաց»: Եւ եթէ «ի Վանս բանասիրաց» ձեւը, յիրաւի, անսխալ արտագրութեան եւ բնագրի տուեալն է, այն ժամանակ այդ տեղեկութիւնը շատ կարեւոր մի կռուան է մեզ համար Ֆրիկի ո՞ր տեղացի լինելու հարցը որոշելու նկատմամբ, որին պիտի դառնանք Ուսումնասիրութեանս ընթացքին, աւելի յետոյ: (Տես Գլ. Գ. § 50):

§ 25. Օգտուելով այն բոլոր նիւթերից, որ ի մի ենք բերել երկար տարիների ընթացքում, ինչպէս եւ Ֆրիկի Տաղերի ժողովածուից, որ արդէն պատրաստ է եւ լոյս է տեսնում մեր խմբագրութեամբ*, կը կամենայինք մի քանի նոր կենսագրական տեղեկութիւններ հաղորդել Ֆրիկի մասին եւ մանաւանդ որոշել նորա ապրած ժամանակի շրջանը, որ էական նշանակութիւն ունի ե՛ւ իւր ե՛ւ մեր մատենագրական պատմութեան համար: Մի հարց որ երկար անյայտութեան եւ անորոշութեան խնդիր էր եւ է մինչեւ այժմ իսկ մեր մէջ:

§ 26. Ս. Ղազարի Մատենադարանի ՁԻ. No. 1330, Դ. բ. էջ 403–407 տալիս է Ֆրիկի «Իմ սիրտ վատին մի լըսեր» տաղի մի փոփոխակը եւ որ կրում է հետեւեալ խորագիրը.— «Այլ տաղ վասն բարեգործութեան մարդկան ի Ֆիրիկէ ԱՇԽԱՐՀԱԿԱՆԷ ասացեալ»: Այս խորագիրը ՁԻ–ի մէջ կարմրադեղով է, այժմ եղծուած, հազիւ ընթեռնելի: Սակայն մի խնամոտ ձեռք նոյնութեամբ վերարտադրել է կարմրադեղի վերայ եւ յետնորդներիս ժառանգութիւն պահել կենսագրական այդ շատ կարեւոր պատառիկը: Այդ խնամոտ ձեռքը, ըստ բացատրութեան Մատենադարանապետ Հ. Աթանաս Տիրոյեանի, Հ. Ղեւոնդ Ալիշանինն է եղած:

§ 27. Որչափ առատաբան է Ֆրիկն իւր տաղերի մէջ, նոյնչափ եւ չափազանց սակաւախօս է իւր անձի նկատմամբ: (Նոյնը չէ՞ն առհասարակ բոլոր բանաստեղծներն իրենց նկատմամբ. եթէ չլինէին ժամանակակիցների տուած տեղեկութիւնները՝ մենք, յետնորդներս, նոցա մասին շատ քիչ բան պիտի իմանայինք): Եւ եթէ չլինէին այն հատ ու կտոր տեղեկութիւնները,

*) 1907–ին, երբ զբաղուած էինք Օքսֆորդի Համալսարանի Բոդլէեան Գրատան Հայ Ձեռագրերի ամբողջական ցուցակը պատրաստելով, Պարիզից Պր. Ա. Չոպանեանից մի նամակ ստացայ, որով խնդրում էր ուշադրութիւն դարձնել եւ աչքից չփախցնել Ֆրիկի տաղերի ՁԻ–ը եւ եթէ կարող էի՝ իւր համար արտագրէի այդ բոլոր Տաղերը: Գործիս ընթացքում բարեպատեհ բաղդով գտայ նոյն Գրատան մէջ Ֆրիկի տաղերի մի ամբողջական ժողովածու եւ ապա մի ուրիշն եւս, պակասաւոր, որ բնական է չզանղաղեցի արտագրել ամբողջովին: Նոյն ամառը Լոնդոնի British Museum–ի մէջ գտայ մի ուրիշ ՁԻ–ի մէջ Ֆրիկի մի քանի այլ Տաղեր եւ երբ աշնան Պարիզ վերադարձայ եւ երկու ստուար արտագրած տետրակներ ցոյց տուի Պր. Չօպանեանին, բոլորն էլ Ֆրիկի տաղեր եւ նորա տրամադրութեան տակ դրի, միաժամանակ յայտնելով նորան, որ ինձ համար եւս ցանկալի պիտի լինէր յատկապէս զբաղուիլ այդ գործով եւ ի մի հաւաքել Երգչի բոլոր տաղերն, ուր որ նոքա ցրըւած էլ լինէին եւ կազմել Ֆրիկի գիտական ուսումնասիրութեան արդիւնք բնագիրը, Բարեկամս սիրով ընդ առաջ գնաց ցանկութեանս ու գաղափարին եւ այնուհետեւ գործն ամբողջապէս մնաց մեզ վրայ:

Երկար որոնումների, մանրազնին համեմատութիւնների, անվերջ պրպտումների եւ երկար տարիների ծանր աշխատութեան արդիւնք ՖՐԻԿԻ ԴԻՒԱՆը վերաջպէս պատրաստ էր եւ հարկաւոր էր տպագրութեան յանձնել:

1912–ին գործը յանձնեցինք Ուսուցչապետ Ն. Ե. Մառին, որպէսզի Ռուսական Կայսերական Գիտութեանց Ճեմարանի կաճառին տանէ եւ նոցա հաւանութիւնն ստանայ, Կ. Գ. Ճեմարանի հաշուով տպագրել տալու համար: Կ. Գ. Ճ. Խորհուրդը իւր հաւանութիւնը արւեց եւ իբրեւ իրենց կողմից պսակեալ գործ՝ ստանձնեցին իրենց հաշուով տպագրել: Տպագրութիւնը սկսուեց 1917 թուականին եւ հազիւ առաջին չորս մամուլը տպագրուած էր Մ. Ա–

ակնարկներն ու հեռաւոր նմանութիւնները, որ գտնում ենք իւր բազմաթիւ տաղերի մէջ ցրուած, որ շատ անգամ կռահելու չափ մութ են, անցողակի,— առանց այն էլ շատ մութ մնացած այդ անձի մասին, այդ սակաւիկ ծանօթութիւններն իսկ պիտի չունենայինք: Մի առանձին բարեպատեհ հանգամանք է, որ Ֆրիկը, իւր շրջանի եւ դարի սովորութեան իբր հարկ բերելով, թողել է եւ իւր անունը իւր գրած տաղերի մէջ. սովորաբար տաղերի վերջը, որով մի մեծ դիւրութիւն է ընծայել մեզ, իւր յետնորդներին, ճշդելու իւր քնարի արտադրութիւնների քանակն ու սեփականութիւնը: Անշուշտ ամէն անգամ այդ սովորութեան չէ հետեւած Երգիչը, որով իւր տաղերից շատերն այսօր անյայտարարութեան մէջ են մնացած եւ կասկածի տակ եւ կամ այլ անձի վերագրուած, որով եւ ինքն եւս, ակամայից, իւր իսկ ցանկութեան հակառակ է գնացել: Իւր տաղերից մէկի մէջ Ֆրիկն, իբրեւ հոգացող հայր, իւր բանաւոր զաւակների կորուստն ապահովելու հոգածութեամբ տարուած, ասում է,—

«... Ով զիմ անունըս խափանէ, զիւրըն գըրէ պարծենալոյ,
«Աստէն շանէ ինք թողութիւն, անտէն զըրկի ինքն ի բարոյ:»
Ժ. 98–99:

§ 28. Ո՞վ գիտէ, թերեւս իւր իսկ կենդանութեան ժամանակ արդէն իւր երգերից մէկը կամ միւսը յայտնի կամ անյայտ մի երգիչ չէր սեփականացրել, բուն հեղինակն ու նորա անունն իսպառ մոռցնել տալու համար իւր անունը վրան դրոշմել, որով եւ Ֆրիկն առիթ է տուել, ակամայից, այս նը-

թուի Տպարանի մէջ, սկսուեց Առաջին Մեծ Պատերազմի շրջանի Ռուսական մեծ նահանջը եւ Ֆրիկի տպագրութիւնն եւս մատնուեց նահանջի:

Աչքի առաջ ունենալով այն տաժանակիր աշխատութիւնը, որով վերջապէս յաջողած ենք դարեր շարունակ մթութեան ու փոշիների միայն աւանդ մնացած մեր գեղեցիկ տաղասացներից մէկն ի լոյս բերելու, չխնայելով ո՛չ անձնական աշխատութեան, ո՛չ դրամական զոհոբերութիւններ՝ ու տեղեաւն բնագիրներն ուսումնասիրելու համար յաճախակի ճանապարհորդութեանց համար,— Օքսֆորդ, Լոնդոն, Մանչեստր, Բրիստլ, Վիեննա, Վենետիկ, Կ. Պոլիս ու Էջմիածին, երկար նամակագրութիւններ ունենալով որեւէ տեղից որեւէ մի կտորն ու տաղն ստանալու համար.— այս բոլորից յետոյ այժմ ՖՐԻԿի բնագիր ուսումնասիրութիւնը նորից դատապարտուած էր մնալ անյայտութեան մէջ, որովհետեւ դժբաղդաբար անձնական մեր միջոցները չէին արտօնում մեզ այդպիսի ծախքերի տակ մտնել: Տպագրուած առաջին չորս մամուլն, իւր ընդարձակ, մանրազննին հետախուզութեանց համեմատութիւններով, միայն երկու օրինակ մնում էր մեզ մօտ իբրեւ գեղեցիկ յիշատակ այն գեղեցիկ յոյսերի, թէ Ֆրիկը մի օր անյայտութիւնից պիտի ելնէր եւ ամէնքի սեփականութիւն դառնար:

Շատ ու շատ պիտի ուրախ լինէինք, եթէ Հայ մաքի ու բանասիրութեան սիրահար ու հայութեան քանքարը գնահատող մէկը հետաքրքրուէր եւ նորից-նոր Ֆրիկը, ո՛վ գիտէ որչափ երկար ժամանակ, գզրոցների փոշու չը մատնէր, այլ լոյս աշխարհ հանէր, տպագրել տալով պատրաստած բնագիրը: Եւ այդ գեղեցիկ մտքին ընդ առաջ գնաց Երուսաղէմի Սրբազան Պատրիարք Տ. Թորգոմ Արքեպիսկոպոսը, առաջարկելով տպագրել այն Երուսաղէմ, ի շարս Դուրեան Գրական Երկերի: Իսկ այս վերջին առաջարկի դրդիչն էր մեր միաբանակից Տ. Գարեգին Արքեպիսկոպոս Ցովսէփեանը: Սակայն իւր անակնկալ մահուան պատճառով տպագրութիւնը մնաց, իբր գեղեցիկ desiderata, յաջորդող Պատրիարքի մերժումով, որպէս «միջոցների պակասի» անհնարաւորութիւն:

զովքը դնել եւ իբր ժառանգութիւն թողնելով համանման փորձ անողների դէմ, այլոց ստեղծագործութիւնը իւրացնելու դէմ: Այդ նկատառմամբ իւր մասին որեւէ կասկած չտածելու համար նա մեզ համոզկեր չեշտով հաւատացնում է, որ

«... Տէր կենդանի է եւ օրհնեալ,
Որ չէ այլոց բանքս ասացած,
«Ձինչ ըզծաղիկ եմ ժողովել,
«Քան զմարգարիտ պայծառ շարած:
«Թէպէտ յերկար բան կու խաւսի,
«Ֆրրիկն ասել է ի մըտաց:»

ԺԱ. 264–269.

Եւ այդ խնամքով ժողոված ծաղիկներից կազմուած մարգարտէ շարաններից շատ շատերն այսօր անանուն ընկած են այս ու այն Ձեռագրի մէջ, որովհետեւ հնարաւորութիւն չկայ ճշդել ու որոշել, թէ Ֆրիկի՞նն են դոքա, թէ ոչ:

§ 29. Ֆրիկի արտադրութիւնների քանակը, բազմազան ճոխութիւնը, կրօնական բազմահմուտ գիտելիքների առատ պաշարը, որ ամէն քայլափոխի հանդիպում ենք չռայլօրէն սփռած ու ցանած նորա տաղերի մէջ, զգացումների նրբութիւնն ու գեղեցիկ նմանութիւնների ճոխութիւնը,— այդ ամէնը արտայայտելու վարպետութիւնը, լեզուի ճկուն, պարզ, սակայն դարու մտաւոր կնիքը վրան դրոշմուած լինելու պարագան՝ գունագեղ, հիւթեղ, համ ու հոտով, շատ անգամ գեղջուկ, սակայն կոկ ու վարպետի ձեռքով ճախարակուած եւ գունաւորում տուած պատկերաւոր խօսքերը, հակիրճ ու ձոյլ եւ առածի ոյժ ստանալու արժանի արտայայտութիւններն ի նկատի ունենալով, իրաւունք ունէինք ենթադրել, որ Ֆրիկն անցած պիտի լինի որոշ դպրոցական շրջան ու կեանք, որ նա որոշ դպրոցի արդիւնք պիտի եղած լինի, աշակերտած «առ ոտս մեծի» այս կամ այն անուն վարդապետի, ինչպէս մեր Միջնադարեան եւ իւր իսկ ժամանակակից անուանի երգիչներից շատերը,— Գլուզը, Կեչառեցին, Երզնկացին, Տարօնեցին: Ի զուր կը լինէր որոնել այդ ամէնը: Ի զուր կը լինէին եւ այդ բոլոր տեսակի ենթադրութիւնները: Ֆրիկի ուսման Վկայականի տակ ոչ մի ականաւոր ու «Մեծ վարդապետի» ստորագրութիւն տեսնել չենք կարող եւ ոչ էլ ժամանակակից մեծ «համալսարաններից» մէկի կամ միւսի փառաւոր կնիքը:

Թէեւ անցողակի, մի տեղ իւր տաղերից մէկի մէջ, նա ասում է, որ

«Ի մանկութենէ ի վեր
զիս ուսմանն խոցըն կու մաշէ...»

Սակայն դառն սրտով ու կսկիծով է խոստովանում իւր անձի նկատմամբ, թէ

«Ո՛չ ծառայել վարդապետի, ո՛չ կարդացել օրիկ մի ճա,
«Ո՛չ ի հաւրէ առել միրաթ...»

Է. 69–70:

՝որ, անշուշտ, մի տեսակ արդարացումն էր իւր ժամանակակիցների այն անարդար յարձակումների դէմ, որ թերեւս ուղղուած էին նորա բնատուր տաղանդի դէմ իւր շրջապատի կողմից: Թերեւս կային եւ այնպիսիները, ո- րոնք անձնապէս ճանաչելով Ֆրիկին եւ շատ լաւ իմանալով նորա անուսումն լինելն ու գրակարդաց իսկ չլինելը*), կասկածանքով էին վերաբերում նորա բնական քանքարի արդիւնք քնարի առատ ու առատաբան արտադրութիւննե- րին, որոնց վերայ, չեն կարող չխոստովանել, որ գրական ճաշակի, ճոխ ու ճկուն լեզուի, նուրբ ու զեղուն արտայայտութիւնների կնիքը կար դրոշմը- ւած: Եւ երեւի այդպիսի անարդար դատապարտիչ լեզուներին է ուղղուած նորա այնքան նուրբ ու դառն հեգնանքը, թէ

«Ֆըրիկն ինչ հող է կամ մոխիր,
որ հանց գոհար բան չարէ նա.
Ոչ ծառայել վարդապետի, ոչ կարդացել ուբիկ մի նա,
Ոչ ի հաւրէ առել միրաթ,
այլ յԱստուծոյ տուած նորա.
«Նա Ե՛րբ կարէ հանց բան ասել,
որ ով կարդայ աւրհնէ ըզնա:»

Է. 69–72:

§ 30. Անշուշտ հանգամանքների բերմունքն էր եղած եւ ոչ թէ իւր հօր մեղքը, որ անկարող էր եղել իւր որդուն տալ «ծառայել վարդապետի» կամ այլ խօսքով, այն ժամանակի հասկացողութեան ու արտայայտութեան ոճով, դպրոց ուղարկէր, ուսման տար ու կարդացնէր եւ կամ «միրաթ», դատխա- րակութիւն տար, որովհետեւ մի այլ տեղ Ֆրիկ որդին արդարացնում է իւր ծնողն, ասելով.—

«Ցիմ հաւրէն զայս լըսեցի,
թէ Քրիստոսի ըզճեզ կուտամ:»

Գ. 9:

*) Թէ Ֆրիկը կարդալ իսկ չը գիտէր, այդ պարագան մեզ զարմանք պիտի չը պատճա- ռէ: Վերջին ԺԸ. եւ ԺԹ. դարերի մէջ ապրող երգիչ-աշուղներից շատերը այդ նոյն վիճակի մէջ էին: Աւանդութեամբ Միսկին Բուրջին եւս անգրագէտ էր: ԺԹ. դարի կէսերին ապրող Վաղարշապատցի Աշուղ Նարիմանն եւս մէկն էր նորանից, որի երգիծական երգերից յայտնի էր մէկն.—

«Ախ, իմ տուած երեք մանէթ
Քեզ ինչ ասեմ, այ Ասանէթ...»

Պարսկահայ աշուղ Ղուլ Ցովհաննէսի մասին յայտնի է, որ «Նոր Ջուղայեցի ծերունի- ների ասելով Ղուլ Ցովհաննէսն անգրագէտ, բայց բանաստեղծական ձիրքով օժտուած աշուղ է լինում եւ առանձին յարգանքի եւ ուշադրութեան առարկայ դառնում իր միջավայրում»: (Արամ Երեմեան, «Աշուղ Ղուլ Ցովհաննէս», «Կեանք եւ Արուեստ», Տարեգիրք Ե. տարի 1935, Պարիզ, էջ 54. «Նոր Շարժում», Գահիրէ, 1923, թ. 38–39, 40–41, 42–43»): Աշուղ Ղուլ Ցովհաննէս ծնուած է շուրջ 1740 թ., մեռած 1834, Օգոստոս 16-ին, թաղուած Նոր Ջուղայի գերեզմանատան մէջ: Մանրամասնութիւնները տես «Կեանք եւ Արուեստ», էջ 53–62:

Եւ շատ բնական էր հօր ներքին իղձն ու ցանկութիւնը։ Անշուշտ հայրը շատ վաղ հասակից պիտի նկատած լինէր փոքրիկ Ֆրիկի այդ արտակարգ ընդունակութիւնը եւ իբրեւ հայր՝ ցանկացած պիտի լինէր իւր արիւնն ու զաւակը ժամանակակից աչքի ընկնող Վարդապետների շարքի մէջ տեսնել, մանաւանդ որ դարու ոգին ոչնչով հակառակ չէր զաւակների այդ ուղղութեամբ երթալու եւ կամ ծնողի կողմից դէպի այն մղելուն։

§ 31. Թէեւ հօր այդ իղձը հօր իսկ ձեռքով չէ կատարուել, բայց նորա կողմից որդու մտքի ու սրտի մէջ ձգած այդ սերմը չէ մեռել Ֆրիկի մէջ եւ «Քրիստոսի զքեզ կու տամ» խոստումը մի սեւեռամտածում է դառնում նորա ամբողջ կեանքի ընթացքում, որին նա ձգտում է իւր ամբողջ էութեամբ եւ որ նա այնպիսի քնքոյշ զգացումներով ողողուն ու գեղեցիկ համեմատութիւններով է արտայայտում.—

Բաց ի Քէն զոք չի գիտեմ, յաւազանէն
Քեզ հաւատամ,
Առաւօտ խաղաղութեան, դէմ Քո լուսոյդ
ես կը մընամ,
«Զինչ ըզձուկն յաղի ծովէս
քաղցըր ջըրիդ ի դէմ կու գամ.
«Ի վիմէդ Իսրայէլեան երաշտացեալս
ջուր կը ժըտամ...
«Ո՛չ ոսկոյ, ո՛չ արծաթոյ, ո՛չ աշխարհիս
կու ցանկանամ...»։

Գ. 12–17.

§ 32. Ուրեմն, թէեւ Ֆրիկը դպրոց չէ տեսել, անգրագէտ է, նոյն իսկ, սակայն ուսման ծարաւը, երաշտացած հոգու անվերջ տենչը դէպի զովացընող, յագուրդ տուող հոգեւոր ջուրը եւ նորա դալարին, նորա մէջ երբէ՛ք չէ հանգչում եւ նա գեղեցիկ համեմատութեամբ եւ սաւառնող խոյանքով երգում է.—

«Այն բազային եմ նըմանի,
Որ փոքր որսի ոչ հաւանի».

Բայց որ թերեւս նորան երբէք էլ չէ յաջողել հասնել այդ որսին, իւր գերագոյն նպատակին, ձեռք բերել իւր հոգեկան բաղձանքը, քանի որ ինքն է քիչ յետոյ խոստովանում ամենայն պարզութեամբ, թէ

«Հանց մեծամեծ խորհուրդ արի,
Որ յաւիտեան ոչ կատարի»։

Ը. 1.

Թէեւ այդ ձգտումն ու տենչանքը երբէք չէ մեռնում նորա հոգու մէջ, որը, ինչպէս ինքն է արտայայտում բանաստեղծական գեղեցիկ համեմատութեամբ.—

«Զինչ արեւու շողն ի ջըրին
Ի մէջ հողւոյս կը թավրայ»:

Թ. 74.

§ 33. Վանական կեանքին նուիրուելու այդ ներքին ձգտումը, իւր կեանքի այդ անվերջ փափաքը, որ փոքր հասակից նորա մէջ մի ide'e-fixe պիտի դարձած լինէր, թերեւս ենթադրել տար մեզ, որ Ֆրիկն աշխարհ չէր մտած, չէր ամուսնացած եւ չունէր ո՛չ տուն, ո՛չ տեղ, ո՛չ կին ու որդիք եւ աշխարհից բոլորովին կտրուած մէկն էր եղած: Թերեւս այդ եզրակացութեան յանգելու մեզ իրաւունք տային նորա տաղերից մէկի մէջ սպրդած հետեւեալ տողերը.—

«Աճապ ամ յէր կու դատիս
աշխարհիս երազ, դու Ֆըրիկ,
«Ո՛չ տունն, ո՛չ տեղիք ունիս,
եւ ո՛չ կին, ո՛չ դուստր ու որդիք...»

Ի. 36–37.

Սակայն այդ տողերը միայն մի յետահայեաց ակնարկ է իւր նախորդ կենսական վիճակի եւ կամ այդ տաղը գրուած է եղել ամուսնական կեանք ստեղծելուց առաջ: Տարիների շրջան բոլորելուց յետոյ նա կազմում է այդ տունն ու տեղը, ոչինչ չէ խնայել այդ բոյնը գրաւիչ դարձնելու, զարդարելու եւ ճոխացնելու եւ այժմ սրտի դառն կսկիծի մի զօրեղ թափ է, որ հնչում է նորա բերնից իւր աւերած եւ քար ու քանդ եղած ընտանեկան բոյնի աւերը յիշելիս եւ դառն հեգնանքով ու յուսաբեկ սրտի կսկիծով է դատափետում ինքն իրեն, երգելով.—

«Քանի ժողովես դու դանձ ու դումաշ
եւ շատ մի բարիք,
«Երբ վայելեցեր աշխարհս ի լըման
դու շատ մի տարիք...»

Ի. 40–41.

§ 34. «Շատ մի տարիք» աշխարհս կատարելապէս վայելած անձը, անշուշտ, պիտի ունենար եւ զաւակներ, եւ ընտանեկան յարկ, նորա բոլոր վայելչութիւնն ու քաղցրութիւնները զգացած, այն ինչ իւր տաղերից մի ուրիշի մէջ Ֆրիկն յուսահատ դանդատների ձայներ է հնչեցնում, ասելով.—

«Զի դիտեմ թ'ո՞ւր մեռանիմ,
Ո՛չ զոք ունիմ, որ թաղէ զիս,
Ո՛չ ունիմ տեղ հանգստեան,
Ո՛չ խընդացել եմ յիմ որդիս,
Ո՛չ եղբայր, ու'ոչ զոք ունիմ,
Որ աւաղէ, ափսոսայ զիս.
«Ո՛չ ծըլիմ, ո՛չ բուսանիմ,
դերդ զաղընձած սերմ եմ դերիս,

Թէ ունի ճորտ ու ծառայ
կամ կարեւոր յաստըւորիս,
«Մոքա այլ զիս ուրացան
եւ ատեցին աղքատ հոգիս»։

§ 35. Կեանքի հաճոյքները վայելած, ճորտ ու ծառաների տէր եղած, գանձ ու մետաքս տեսած Ֆրիկն այժմ իրեն է անխնայ մեղադրում եւ չարաչար կշտամբում, թէ մի ժամանակ

Զաւրըն կեր ու խում արիր,
Ը՛հանդար ի բուրդ, 'ի խաս մուշտակ».
ԻԵ. 21.

այժմ անոք-անօգնական, «ոչ զօք» ունի, որ գոնէ թաղէ նորան, երբ մահը վրայ հասնէ։ Իսկ այդ մահը շատ էլ հեռու չէր, որովհետեւ ծերութիւնը արդէն վրայ էր հասել.

«Միտ յիմար ը՛անգէտ էի,
այլ չէր եկեր ոտքս այս քարիս,
է, Ֆրիկ հանց գիտացեր,
թ՚ի ծերութեան չի՞ գըլորիս»։
Դ. 19-20.

§ 36. Ո՛չ այդ ծերութեան օրերին Բաղդից հարուածուիլն ու գլորուիլը, ո՛չ իւր փառքի օրերին ունեցած «ճորտ ու ծառայ» ու սրտակից «կարեւոր»-ից (բարեկամից) զրկուիլը, որոնք ամէնքն էլ ուրացան նեղութեան րոպէներին իրենց նախկին տէրն ու բարեկամը, մինչ այն աստիճան որ «ատեցին զաղքատ հոգին», այդ ամէնն այնքան չեն խոցոտում ծերունի հօր սիրտը, որչափ այն դառն յուշերը եւ բաւականութիւն չգտած զգացումները, թէ «ոչ խնդացել եմ յիմ որդիս»։

§ 37. Թէրեւս այս «Ոչ խնդացել եմ յիմ որդիս» արտայայտութիւնը կարող էինք ըմբռնել ինչպէս մի զուտ ու մաքուր, պլատոնական զգացում, առհասարակ իբրեւ զաւակ չունեցողի կամ ունենալու հնարաւորութիւնից, այս կամ այն պատճառով, զրկուած անձի բնական մի զգացում ու ափսոսանք, որ այդ ուրախութիւնը չէ վայելած։ Սակայն իւր մի այլ տաղի մէջ ծերունի Ֆրիկը, դառնացած ու հոգով ընկճուած երգում է «իւր որդու», հարազատ զաւակի կորստի մասին.

«Ո՛չ տուն, ո՛չ տեղ ունիմ,
կու խոցիմ ի յանհաւատնուն,
Կ՚ասեն, թէ գինի խըմէ,
որ լինիս դու պահ մի ի քուն.
Ուսկայ ի պարտուց յահուն,
կու դողամ զինչ ուռն ի քամուն,

Դըրի իմ որդին գըրաւ,
*ուստի ճուղապ գընալուն.*
*Միթէ՛ Թագաւորն երկնից՝*
*Նա* բերէ զիմ որդին ի տուն.
*Հազար ցեղ թապդիր կ՚ածեմ,*
*թէ բաներուս ելնեմ ի հուն,*
*Ժամ ժամ ի դէպ կապ կու գայ՝*
*չի ընկներ իմ ջուրն ի յառուն,...*
*Ցաւել թէ գինի խըմեմ,*
*Նա՛յ, ծըփամ զինչ նաւն ի յալուն.*
*Գընա, թող ի բաց զամէն,*
*ու* եղիր սիրող վաճերուն...»:
*Ժէ.* 6–16:

§ 38. «Սիրող վաճերուն» *լինելուն հակումն, հոգեկան տառապանքներից անդորրութիւն գտնելու ձգտումն առաջ է գալիս նորա, դէպի կեանքն ունեցած, չափազանց յոռետես, եթէ չասենք յուսահատ, հայեացքից, երբ անցած ու աւեր կեանքի մէջ բացի անվերջ դառնութիւններից ու տանջանքից նա համարեա՛ ոչ մի մխիթարական բան չէ ունեցած: Զրկուած իւր տուն ու տեղից, հալածուած ու խոցուած անհաւատներից, ճնշուած* պարտքերի տակ, *եւ ինչպէս ինքն է գեղեցիկ պատկերաւորութեամբ արտայայտում, դողալով այդ պարտքերի երկիւղից, ինչպէս «ուռենու դողդող ոստ», իւր հարազատ զաւակը* գերի տարուած *եւ որի փրկութիւնն իսկ, այնքան կասկածելի էր խորտակուած սրտի տէր Երգչի համար, որ նորա ազատութիւնն իբրեւ մի հրաշք միայն յաջողել կարող էր Երկնաւոր Թագաւորի միջոցով, տարուած անվերջ ալեծուփ յոյզերով, տանջող մտքերով, որոնց ծայրը միշտ նորանոր կապ ու մճիճի, անլուծելի հանգոյցների է յանգում,— Երգչի միտքը, իբրեւ նոր ապրումների կայան, ուղղւում է դէպի աշխարհային ամէն վիշտ ու նեղութիւններից ազատ, անդորր միջավայրը, սփոփիչ, կայանը դէպի վանքերի հոգեկան անդորրութիւն բաշխող հանգրուանը: Եւ նա, այդ* աշխարհիկ *կեանքով ու նորա* վայելքներով *շատ անգամ տարուած, շատ բան ճաշակած Երգիչը դառնում է* Սիրող Վաճերում,— *իրական կեանքից անցնում է մի նոր շրջան, դառնում է միստիկ, մի երազուն, հոգեկան վերապրումների աշխարհը թեւակոխող մի անձն:*

§ 39. *Ենթադրել, որ* Սիրող Վաճերուն *արտայայտութիւնը որոշ աշխարհագրական տեղի ու անուան ակնարկ է եւ որ Երգիչը թերեւս այդտեղ հանգիստ ու վայելք գտած մէկը, կրկին պիտի բաղձար իւր կեանքի վերջին մնացորդներ այդտեղ անցնել եւ այդ կարօտն է, որ չեչտուած է այստեղ — ենթադրական է, բայց ոչ հաւանական:*

*ՍՄԲԱՏ ԳՈՒՆԴՍՏԱԲԼ իւր* Պատմութեան *մէջ, նկարագրելով Լեւոն*

Բ.–ի թագադրութիւնը ՌԽԷ=1198 թ.) յիշատակում է թագադրութեան հանդիսին ներկայ եղած իշխանների եւ պետական պատուակալների շարքի մէջ, ի միջի այլոց, նաեւ Վասիլին. «Տէր Վանէրաց» տիտղոսով*). Հրատ. Մոսկուա, էջ 130) — Համեմատել նաեւ V. Langlois: Constitution Social et Politique de l'Arme'nie sous les rois de la dynastie Roupe'nienne. St. Peters. 1860. p. 55, 64.— Ed. Dulaurier իւր Recherches sur la Chronologie Arme'nienne, tecnique et historique... Paris, 1869 pp. 124, 165, յիշատակում է Լեւոն Թագաւորի կողմից Տաճարական Ասպետներին շնորհած արտօնութիւնների շարքի մէջ նաեւ, թէ... Le'on donne aux Hospitiliers le cazal Vanerium, dans le territoire de Me'lon... (= Լեւոնը շնորհեց Տաճարականներին Վաներաց բաժինը, որ գտնւում է Մլունի երկրամասի մէջ...) — Այս Վանէրը գտնւում էին Կիլիկիայում, Մլունի դաշտում, համանուն քաղաքի եւ բերդի մօտ, Ջիհան գետի ձախ ափի վերայ, Ատանայի հիւս.–արեւելեան կողմը։

Չենք կարծում, որ Ֆրիկի «Սիրող Վանէրաց» արտայայտութիւնը որեւէ ակնարկ բովանդակէ աշխարհագրական այդ վայրի նկատմամբ։

§ 40. Կեանքի դառնութիւններից ընկճուած եւ հոգեկան նոր վերապրումների նոր շրջան մտած Ֆրիկը ունի պարզապէս այն հոգեկան պահանջը, որ կը կամենար քաշուիլ խաղաղ մի անկիւն եւ այնտեղից արդէն դիտէր կեանքը իւր տեսակէտով ու ապրումներով։ Եւ այդ վայրը ամենից աւելի պիտի տար նորան Վանքերի հովանին։ Հասարակաց, ինչպէս եւ իւր, բաղդի վիճակը նկարագրելու եղանակաւորումների մէջ գտնում ենք նորանոր ակնարկներ այդ մասին։ Նա երգում է.—

«Զինչ Տէրն երետ՝ հերիք չածի,
    ա՛յլ մեծութեան սիրտ ունէի,
ժողովեցի շատ մի բարի,
    բոզակ արի զինէ զինէ թաթարի...»
Ը. 9–10.

«Զինչ մեծամեծ վաստակ արի,
    տանիլ տուի զինէ հեղեղի,
«Երբ ժամանակ մարդոյն ծըռի,
    երեսք ի վայր դէմ գըլորի,
Երթայ, դիպնի հանցեղ դարի,
    որ ինչուի մահ ո՛չ վըճարի,
Երբ Բաղդն ընկեր էր՝ մանեցի,
    հիմա ոլորն ի յետ կու ճակի»։
Ը. 16–19։

*) Լեւոն Բ.–ի կողմից հաստատուած արքայական Տան ու Պատուակալների աստիճանակարգութեան մէջ յիշատակուած է նաեւ Mareshal, որի առաջին պատուակալը լինում է Vasil Sefrie, Seign. de Vaner, (Langlois, p. 55).— Vasil, Seign. de Vaner, Marshal, Le Vanerium des Chartes. (Langlois, p.64).

§ 41․ Որպէսզի կատարելապէս ըմբռնել կարողանանք Ֆրիկի անձի եւ իւր ժամանակի հոգին, ինչպէս եւ իւր տաղերի մէջ ցրուած ակնարկները, անհրաժեշտ է մի փոքր պատմական յետահայեաց ակնարկ ձգել այն շրջանի վերայ, որ ըստ մեր կարծիքի, նորա իսկ կեանքի շրջանն ու ժամանակամիջոցն է կազմում։ Պատմական այս համառօտ ակնարկը շատ բան կը պարզէ, ինչպէս Ֆրիկն հասկանալու, նոյնպէս եւ Տաղերի ոգին ըմբռնելու անհրաժեշտութեան նկատմամբ։

§ 42․ Թաթարների*) արշաւանքի ժամանակակից եւ ականատես պատմիչ Կիրակոս Գանձակեցին, Թաթարների առաջին եւ ընդհանուր հարկահան Արղունի եւ ապա Հուլաւուի կողմից լրացրած հարկահանութեան վերաբերեալ կանոնների մասին այսպէս է գրում։

Արղունի գործակալներն սկսեցին «․․․ աշխարհագիր առնել յամենայն ազգս, որ ընդ ձեռամբ նոցա էին հնազանդեալ․․․ սկսեալ ի տասնամենից ի վեր ընդ գրով համարոյ արկանել ամենեսին, բա՛ց ի կանանց։ Եւ յամենեցունց պահանջեալ խստագոյն հարկս, աւելի քան զկար մարդոյն եւ սկսան չքաւորիլ․ եւ նեղէին անհնար կտտանօք եւ չարչարանօք դժնեօք․․․ եւ որ ոչ կարէր հատուցանել զսակն՝ զմանկունս նոցա առնուին ընդ պարտուցն․․․»։ Կիրակոս Պատմիչ․ էջ 348–49)։

Եւ ապա նոյն պատմիչը շարունակում է․

«․․․ բազում տառապանս հատուցանէին ամենայն աշխարհաց հարկապահանջութեամբ եւ յափշտակութեամբ։․․․ Եւ ի դրունս մահու հասուցին զամենայն ազգս։ Այլ եւ միւս ընդ ամենայն բազումսն, որ եղաւ յԱրղունէն (=1254 թ․) մալի եւ ղափչուրի*), եղաւ հրաման ի Հայլուէն պահանջման

*) Հայ պատմիչների ընդունած եղրն է Թաթար, ինչպէս է Արաբական պատմիչների Tatar, եւ Պարսիկ Տարեգիրների Tartar ձեւը։ Եւրոպական ձեւն է Tartar, որի մէջ կամեցել են պատկերացնել Tartarus—ը Տարտարոս,— Դժոխքը իր բոլոր չտեսութիւններով, որ ցուցադրում էին այդ հրոսակներն, իրենց դժոխային անգթութեամբ եւ անսիրտ արարքներով, ինչպէս նկատում է Ibn-ul Athir, Արաբ պատմիչը։ D. Ohsson: **Hist. des Mongols**, vol. I, p. 387․ E. G. Brown: **A Liter. Hist. of Persia**, vol. II ,p. 428.:

*) ԽԱՓՉՈՒՐ «Ոչխարի հարկ»․ «Այլ եւ միւս ընդ այլ բազումս նոր եղաւ (հարկ) յԱրղունէն՝ մալի եւ խափչուրի» (հրտր․ Մոսկ․ փախչուր)։ Նոյն բառն է ղփչուր ՄԱՂԱՔ․ ԱԲ․ 10․ «կալ ընդ հրամանաւ մեր եւ տալ մեզ տղղու եւ մալ եւ թաղար եւ ղփչուր»։ Աղաւաղեալ ձեւով գրուած (կամ տպուած) է ղափչուն (ս կարդա՛ ա)՝ Անիի անթուական մի արձանագրութեան մէջ (ՎԻՄ․ ՏԱՐ․ 221)․ «Զթաղար, զհեծել, զղափչուն»։

= Թթր․ qubjur «անասնահարկ», որ է մոնղոլ․ qobjur կամ qupcur «անասունների արօտատեղի»․ 2․ անասունների կամ արօտատեղիների վրայ դրուած հարկ» (Quartremere, Ըստ այսմ ուղիղ ձեւն է ղփչուր կամ (Будагов. 2. 68): Hist. des Mong. հտ․ I, էջ 256, խուփչուր։

ԱԼԻՇԱՆ․ հրտր․ ԿԻՐ․ 218 մեկնում է «անասնահա՞րկ» եւ այս առթիւ յիշում է Թթր․ ֆունչուր «անասունների հարիւրից մէկը՝ որ իբրեւ հարկ էր տրւում»։ Ուղիղ մեկնեց Պատկ․ հրտր․ Մաղաք․ աբ․, էջ 63։

ԳԻՒ․ Ալչ․ խամչուր «ոչխարի հարկ»․ կայ եւ խամչուռ «ոչխարի հա՛րկ» (Նոր Հոսանք, 1913, 792)։ (ՀՐ․ ԱՃԱՌԵԱՆ ԱՐՄ․ ԲՌՐՆ․ հտ․ Գ․ 450–51)։

*հարկին, զոր Թաղարն ասեն,** յամենայն գլխոյ, որ մտեալ է իր գիրն արքունի, պահանջէին հարիւր լիտր ցորեան, յիսուն լիտր գինի, երկու լիտր բրինձ եւ ծնծաւ, երեք տոպրակ, երկու չուան, մի սպիտակ, մի նետ, մի նալ՝ թող զայլ կաշառսն եւ քսան անասնոյն, մի անասուն եւ քսան սատակ․ եւ* ոյր ո՛չ գոյր, զուստերս եւ զդստերսն առնուին *ընդ պահանջմանն․ եւ այսպէս նեղեցաւ եւ տառապեցաւ ամենայն երկիր»*։ (*Կիրակ․ էջ* 359–60)։

§ 43․ *Հարկապահանջութեան այս ընդհանուր կանոններից ազատ ու ապահարկ էին միայն եկեղեցականները, որովհետեւ* «յեկեղեցականացն ո-չինչ առին հարկս», *ասում է Կիրակոս Գանձակեցին, «զի չունէին հրաման ի Ղանէն»*։ (*Կիրակ․ էջ* 350)։

*Բնական էր, որ «*Ֆրիկ աշխարհականն*»ը պիտի ենթարկուէր ընդհանուր հարկապահանջի ու հարկատուութեան օրէնքներին։ Եւ, անշուշտ, առաջին անգամը չէր, որ նա եւս «նեղացաւ եւ տառապեցաւ» դաժան ու անօրէն հարկահաններից։ Նախորդ հարկեր նա չէր կարողացել վճարել, իսկ այդ տեսակի անվճար պարտքեր նա շատ լաւ գիտէր, թէ ի՞նչ է նշանակում եւ ի՞նչ հետեւանքներ ունէին։ Այժմ մեզ համար հասկանալի պիտի լինի այն անցողակի արտայայտութիւնը, որ տեսանք նախորդ տողերից մէկում, երբ նա անվերապահ կերպով խոստովանում է, թէ «*Ի պարտուց տեհուն կու դողամ զինչ ունն ի քամուն*»։ Դա մեր Երգչի ամբողջ, հոգեկան տառապանքի, անձկութեան աղբիւրն է, պարզ պատկերացումը տառապող հօր։ Նորա աչքի առաջ պարզ պատկերանում էր այն դաժան հեռանկարը, թէ «*ոյր ոչ գոյր*» հարկ վճարելու միջոց, «*զուստերս եւ զդստերս առնուին*» նորա հարկերի փոխարէն։ Եւ այդ դժբաղդ հեռանկարը դառնում է ցաւալի իրականութիւն, որովհետեւ մօրմոքուող հօր խոստովանութիւնը, թէ «*դրի զիմ որդին գրաւ ուստի ճուղապ գնայուն*» համար,— այլ եւս կասկած չեն թողնում, որ «*ուստի ճուղապ*» գնացող, այսինքն իրենց նոր տէրերին, Թաթար իշխանաւոր–հարկապահանջներին պատասխան տալու,— անշուշտ յանդուգն պատասխան տալու եւ հակօրինա-*

***) ԹԱՂԱՐ «խեցեղէն զոգաւոր կամ կոնքաձեւ աման՝ մէջը թրջոց դնելու» (գրուած նաեւ* թեղար)․ *«հարկ, տուրք»․ ԿԻՐ․ էջ* 218, *Մաղաք․ Աբ․* 8, 10, 16։ *Անիի արձանագրութեանց մէջ էլ յաճախ յիշուած է* Եզին թաղար, կալի թաղար *եւն․ մէկ բառով էլ՝* կալաթաղար *«կալի տուրք», Վիմ․ Տար․* 226․— *արեւմտեան գրականում այժմ գործածւում է բառս «ծաղկաման» նշանակութեամբ։*

*Գիւթ․— Զղ․* թաղար *«խմորի տաշտ», Սլմ․* թաղար *«ներկի կարաս», Ախց․ Կր․ «Թոնրի կրակամանը, մանղալ, քուրսի», Երեւ․* թաղար *«10 լիտրանոց չափ», Ալշ․ Մշ․* թաղար *«հողէ մանղալ», Շլ․ Շմխ․ Տփ․* թաղար *«հատեղէնների չափ», Խրբ․* թաղար *«ցեխից շինուած լական», Ակն․* թաղառ *«ծաղկաման» (ըստ Մաքսուտեանի), Այն, Ասն․ Ռ․* թաղար *կամ Զթ․* թաղօր *«կօշկակարի աման կաշի թրջելու համար», Հճ․* թաղօյ *«հողէ գուռ՝ որ իբր ջրաման է գործածւում» կայ նաեւ Տիգ․* թաղար *ձեւը։* (*ՀՐ․ ԱՃԱՌԵԱՆ, ԱՐՄ․ ԲԱՌՆ․ Հտ․ Բ․* 1107)

կան ընդվզումն ցոյց տալու համար, ստիպուած է լինում «որդին գրաւ դնել», գերիների շարքը մէկով եւս աւելացնել, որովհետեւ ինքն այժմ, պարագաների բերումով, պատկանում էր այնպիսիների շարքին, որ եթէ «ոչ կարէր հատուցանել զսակն՝ զմանկունս նոցա առնուին անդ պարտուցն». (Կիր. 449):— «Վայիւ եւ աշխարով լցեալ զաշխարհս», որի արտայայտիչ պատկերն է Ֆրիկի վերն առաջ բերած տողերը:

Որդեկորոյս հօր համար միայն մի յոյս էր մնացել,—
«Միթէ Թագաւորն Երկնից
Նա բերէ զիմ որդին ի տուն».

Ուստի ամէն ինչ կորցրած, ամէն ինչ թողած, բոլոր տեղերից եւ իւր սրտի սիրելի «կարեւոր»ներից, բարեկամներից իսկ յուսակտուր՝ ընկնում է աշխարհ, իւր «սազն ու չոնգուրը» ձեռքին, որոնելու իւր որդին, տանջանքով ու ցաւով ընկճուած, յուսով ոգի առած: Եւ նա բռնում է այդ «անդարձ ուղին», ինչպէս հին հէքեաթական աշխարհի մէջ, «ոտքին երկաթէ տրեխ, ձեռքին պողպատէ գաւազան» իւր ցաւը աշխարհին հնչեցնելով, թէ,—

«Ո՛չ տուն, ո՛չ տեղ ունիմ,
կու խոցիմ ի յանհաւատնուն»:

§ 44. Նորան խորհուրդ են տալիս իւր ցաւը գինու գաւաթի ընկերակցութեամբ մոռանալ, «կթղային» յանձնել բոլոր իւր վշտերն ու հոգերը, գոնէ «Պահ մի քուն» լինել, մոռանալ իւր շուրջն անվերջ դարձող իրականութիւնն ու իւր ներսը կատարուող ծանր ողբերգութիւնը: Դրութիւնն աւելի էր ծանրացած որդեկորոյս ու յուսալքուած Երգչի համար, երբ աչքի առաջ ունենանք նորա, պարտքերի տակ ընկճուած՝ վիճակը, որ գեղեցիկ համեմատութեամբ, պատկերաւոր արտայայտութիւն է ստանում նորա քնարի լեզուի եւ բերանի մէջ, թէ «կու դողամ զինչ ուռն ի քամուն»: Սակայն ամէն ինչ հակառակ է գնում. քաղաքական ծանր պայմանները շարունակում են ճնշել Հայ ժողովրդը, ինչպէս եւ Ֆրիկին «ժամ ի ժամ ի դէպ» եկող պարագաներն արգելք են հանդիսանում յուսահատ հօր առաջ եւ նորա «Ջուրը չի ընկներ ի յառուն»: Գինու կթղան եւս չէ փրկում նորան իւր անել վիճակից, որովհետեւ ինքն եւս զգում է, թէ դորանով չէ, որ պիտի գտնէ իւր վշտերի դարմանը եւ պարզապէս խոստովանում է, «թէ գինի խմեմ, նա՛յ, ծփամ զինչ նաւն ի յալուն», այսինքն փոխանակ հոգեկան մխիթարական վիճակ գտնելու, աւելի են ալեկոծւում մտքերն ու խորհուրդները, ծայրայեղ զգայնանում սիրտն ու հոգին,— ուստի եւ փրկութեան ու հոգեկան անդորրութեան յուսով «սիրող վանէրուն» է դառնում, յաւէտ յուսոյ ու անդորրութեան այդ խաղաղ նաւահանգիստն ապաւինելով:

§ 45. Հակառակ այդ խոստովանութեան, գինու սէրը՝ իւր ցաւը գինու թմրեցնող ազդեցութեամբ բժշկելու թուլութիւնը մի պահանջ է դառնում

*ծերացած, կամքի ույժից տկարացած Ֆրիկի համար, որը իր տաղերի մէջ, առանց քաշուելու է արտայայտում, սակայն միշտ էլ խղճի մի ներքին խայթի գիտակցութեամբ։ Այսպէս ինքն իրեն յանդիմանելով նա երգում է,—*

*Թէ* խելք ու բասար ունիս
*եւ հոգուդ պաշար, դու Ֆրիկ,*
«Զգինին ի գըլխոյդ թափէ
*եւ չինէ անդէնն հայրենիք*»։
*Ի*. 46–47.

*Կամ մի այլ տաղի մէջ,*

*«Ֆըրիկ, քեզ ո՞րն կու պիտի,*
*քըննէ մըտօք իմանալի,*
*Գանձով գընած ես դու գերի,*
դու է՞ր խըմես զարբըն գինի»։
*Ը*. 46–47.

*Եւ մի այլ տեղ, նոյն անձնաձաղկանքով ու կշտամբանքով, երգում է,—*

*«Է՛, աւաղ, աւաղ, ափսոս կու լինի,*
Զիմ խելաց ոյժս յինէն գինին կու տանի,—
*Պարտական եմ հոգով՝ լեզուս կու կապի,*
*Թէ* չէ այլ շատ բաներ յառաջ հանէի...»
*ԼԹ*. 65–68.

§ 46. *Որ առհասարակ մեր գինեսէր, գինին ու սէրը գոված ու երգած տաղասածների ուրախ ու զուարթ, սէր ու խինդ, կին ու ծաղիկ, գարուն ու լուսին, գեփիւռ ու կուսին երգող Միջնադարեան մեր երգիչների ու աշուղների բոլոր երգերը կենսուրախ հոգուց պոռթկող արտայայտութիւններ չեն միշտ էլ, որ լսւում է նոցա քնարի մէջ, այլ շատ անգամ դառնացած սրտի, յուսահատ երգչի վիշտը մոռնալու վերջին միջոցին դիմելու ակամայ մի հարկ, դա շատ պարզ է եւ այդ մասին կասկածել պէտք չէ։ Թերեւս այդ երգիչներից շատ–շատերը եթէ տարուած չլինէին այդ թուլութեամբ, որն ամենից շատ իրենց էր յայտնի եւ սակայն ամէն մէկը չունէր այն հոգեկան արութիւնը, որ «ասէին եւ ոչ ամաչէին», ինչպէս մեր երգիչը, շատ առաւել բեղմնաւոր պիտի լինէր՝ նոցանից իւրաքանչիւրի քնարը, թէ արտայայտութեան քանակի եւ որակի տեսակէտից, պիտի «շատ այլ բաներ յառաջ հանէին»։*

§ 47. *Անձնական զգացումների, յոյզերի երգիչ չէ միայն Ֆրիկը։ Նորա տաղերն ու երգերը հանրական զգացումների, վերացական մտածողութիւնների, հոգեկան պատկերացումների, վարդապետական ու խրատական եղանակաւորումների մի զանգուած է ընդհանուր առումով։ Սակայն այդ հանրականի մէջ, ակամայից, շատ անգամ նա խառնում, դնում է անձնական զգացումներ։ Շատ քիչ են այդպիսի կայծեր նորա տաղերի մէջ եւ այդ պա–*

բաղան է իսկ, որ մեր աչքին աւելի եւս գնահատելի են դարձնում այդ առկայծող լոյսերը՝ նորա կեանքի խաւար ու անշող ուղիները լուսաւորելու համար։

Այդպիսի տաղերից մէկն է նաեւ «Վասն Դալէի եւ Բրջի» վերնագիրը կրող տաղը, որի մէջ Ֆրիկը գանգատուելով բաղդի փոփոխութեան եւ կեանքի չափազանց յեղյեղ դրութեան մասին, երգում է, թէ

«Մէկին զերութիւն հասնի
կամ կրտրին աւրաւք նա մեռած...
Շատ մանկտիք հասրաթով
գեմ կան ներքեւ ի հողին պառկած,
Մըտաւքս այս բանիս վերայ
չատ մի ժուկ ի հոգս եմ անկած,
Կ'ասեմ՝ այս է՞ր եղեր,
որ ամէնն հաւասար չէ զուգած.
Ամէն Ֆալաքին արարք,
մէկին՝ հաշտ, մէկին՝ խըռոված»։
Իթ. 26–31.

§ 48. Արդեօ՞ք գերութեան բաժին ընկած եւ թերեւս «կտրին օրօք մեռած» որդու կսկիծը չէր, որ որդեկորոյս եւ նոր վշտեր տանելու դատապարտուած հօր «չատ մի ժուկ» ծանր հոգ ու մտածութիւնների անդունդը տանող ալեկոծումները հիւսել են տալիս անձնական վշտի արտայայտութիւնները ընդհանուր պատկերացումների հետ։

Բանաստեղծը, շատ անգամ, երբ «անձնական» մի բան ունի ասելու եւ արտայայտելու, գիտակցաբար թողնում է առ բոլէ ականատեսի, ժամանակակցի, պատմողի դերը, որպէսզի ինքն իր ներքին աշխարհի թարգմանը լինի։ Այսպէս օրինակ Վիկտոր Հիւգոն իւր L'Epopée du Ver-ի մէջ ayant quelquechose à nous dire de «personnel», sort un moment de son rôle de temoin des Temps pour redevenir l'interprète de soi meme. Օրինակ հետեւեալ կտորը

Amant désespéré qui frappe à la porte
Redemandant ton bien et ta maîtresse morte
Et la chair de ta chair...
(Legende des Siècles).

«C'est ainsi qu'il s'inspire de la circonstance ou de l'occasion. Mais, d'une maniére générale, il est au-dessus ou en dehors de la circonstance; les «choses accomplies», celle que la Fortrne ou la Providence ont sauvées du naufrage de tout ce qui les entourait autrefois et fixe'es dans la me'moire des hommes, sont de'sormais les seules qui solicitent, qui e'meuvent, qui exaltent son imagination; il vit dans le passe' et dans la pense'e, «presque

absant de son corps», pour user de l'une de ses expressions...» — (Ferd. Brunetière: **Etude Critique... Evolution d'un poete.** Vol. VII. p. 213-214. Paris, 1905).

*(Վիկտոր Հիւգոն իւր «Որդի Դիւցազներգութեան» մէջ «անձնական» ըզգացումների արտայայտութիւններ ունենալով եւ անելիքներ, ելնում է մի բոպէ Դարերի վկայի դերից իւր սեփական եսի ու անձի թարգմանը դառնալու համար:... Այդ եղանակով է, որ նա ներշնչւում է պարագաներից ու դէպքերից: Սակայն, ընդհանուր առումով, նա միշտ էլ վեր եւ արտաքոյ է պարագաներից: «Կատարուած իրողութիւնները», որոնք փրկուած են Բաղդի (= կամ ըստ Ֆրիկի՝ Ֆալաքի) ու Նախախնամութեան միջոցով շրջապատն, ուր մի ժամանակ նոքա կեանք ունէին եւ որ այնքան ամուր ու անջնջելի կերպով տպաւորուել է մարդոց յիշողութեան մէջ, այդ «կատարուած իրողութիւններն» են, որոնք մղում ու դրդիչ են տալիս նորան այնուհետեւ եւ բորբոքում նորա երեւակայութիւնը. Նա ապրում է անցեալի մէջ, անցեալով ու մտքով միայն, «համարեա անջատ իւր սեփական անձից», ինչպէս ինքն է արտայայտում...):*

§ 49. *Ժամանակներն ու շրջանները փոխւում են, սակայն մարդկային մտածողութեան, եւ աւելին, մարդկային զգացումի եղանակը մնում է անփոփոխ ու անյեղ՝ մանաւանդ բանաստեղծի,* hոգով *ապրող, անցեալի յիշողութիւնների մէջ իրենց ամբողջ էութիւնը որոնող մարդոց համար: ԺԴ դարու սեմի վրայ յանդող Հայ բանաստեղծի եւ Ի դարի շէմքի առաջ յաւիտենականութեան դիմող Եւրոպական հռչակ ստացած հանճարեղ բանաստեղծի մտածութեան, զգալու եւ ընդհանուր դրութիւնների մէջ «անձնական»ը ցուցադրելու եղանակը նոյն է մնում: Զանազանութիւնը նոցա արտայայտութեան* ձեւի ու եղանակի *մէջ է, էութեամբ նոյնը մնալով: Եւ այդ է պատճառը, որ ընդհանուր դարձած աղէտի ծանրութեան տակ ընկճուած եւ ցանկալի վճիռը չգտնելով, իր միտքն ու հոգին տանջող, լլկող ու յուզող խնդիրների, շրջապատի առեղծուած դարձած կեանքի նոր պայմանների եւ յարաբերութեան, ընկերական ու հասարակական ապրումների՝ միայն ճակատագրականի (Բաղդ=Ֆալաք, Դալեհ կամ ինչ որ կ'ուզէք անուանեցէք) որոշման անխուսափելի փիլիսոփայութեան է յանգում նաեւ մեր Երգիչը, սփոփուելով այն յոռետես մտայնութեամբ, թէ*

«*Ամէն* **ՖԱԼԱՔԻՆ** արարք,
մէկին հաշտ, մէկին խռոված»:

§ 50. *Ո՞ւր էր տարել Ֆրիկին ճակատագրի, «Ֆալաքի արարքը» իւր որդուն որոնելու յուսահատ ճիգերի ժամանակ, մեզ յայտնի չէ:*

*Մի աղօտ լոյս, պատահարար ընկած նորա Տաղերից մէկի մէջ, մեզ ենթադրել է տալիս, որ նա պակաս ժամանակ չէ վատնել եւ քիչ տեղեր չէ որո-*

*նել, պատել ու թափառել*։ «Ցաղագս Փոշիմանութեան» *տաղի մէջ Ֆրիկն ասում է*.—

> *«Շատ մի դաղեցայ, եղբարք*,
> ի Հարգայ ես շատ մի տարի.
> *Ասցի թ՞իմ ջանաւքս առնեմ*
> *մեծութիւն, առանց հրամանի»*։
> *ԻԴ*. 9–10.

§ 51. *Օքսֆորդի Համալսարանի, Բոդլէեան Գրատան* F. 16 Arm. Ms. *եւ Լոնդոնի Բրիտանական Թանգարանի Օր*. 2622 *Ձեռագրներն «ի Հարգայ» անուան փոխարէն տալիս են «ի Հարջայ» փոփոխակը*։ *Այդ երկու անուններն եւս այսօր շա՛տ վաղուց մոռացուած անունների շարքին են պատկանում*։ *Ըստ իս «Հարգա» ընթերցումը շատ աւելի ճիշդ պիտի լինի, որ արտագրողի անուշադրութիւնից միայն եւ կամ անգիտութիւնից Ջ եւ Գ տառերի շփոթութեամբ «Հարջա» է դարձել*։

Հարգա*) *այսօր մի մոռացուած անուն է եւ շատերի համար իսկ կասկածելի. բայց մեր Միջնադարեան պատմութեան շրջանի մէջ նա յայտնի անուն էր, գործածական այսօրուայ, Կիլիկիայի*, Հաջին *քաղաքի համար, մնացած պատմական դէպքերի մէջ*։

*) Հարգա *անուան մօտ մի այլ անուն եւս ունինք, դարձեալ քաղաքի անուն, յիշատակուած Ս. Գրքի մէջ (Եսթեր, Տովբիթ,), բայց* Հռագայ *ձեւով, ուր* ռ *կարող էր դիւրութեամբ* ր–ի *փոխուիլ եւ յետ ու առաջ դասաւորուելով* Հռագան *դառնալ* Հարգա, *ինչպէս Ս. Գրքի մէջ է յիշատակուած* Հռագա, Հռագաւ, Հռագիւս *փոփոխակներով, որը հին օրերի* Raga = Ragha = Rages *քաղաքն է, ծաղկած Ջ.— Ի. դարին նախ քան Քրիստոս եւ որ մեծ դեր ու ազդեցութիւն էր ունեցած Իրանի անցեալ պատմութեան մէջ, ոչ նուազ փառօք քան Եկբատանը*։ *Ապագային այդ մեծ դերը չունէր, սակայն յաճախ յիշատակուած է Պատմութեան մէջ, Մոնղոլների արշաւանքի օրերին իսկ եւ յետոյ*։— *Տես* Ուսումն. *Ցաւել. Ի. էջ* 349։

*ԾԱՆՕԹ*.— *Պատմութեան այդ շրջանին յայտնի էր* Ռէյ *անունով* = Rei, Rey.— *Ենթադրե՞լ արդեօք, որ մեր ողբեկորոյս Երգչի թափառիկ ոտքերը հասան, իւր ողդին ոռոնելու եւ գտնելու յոյսերով, մինչեւ այժմեան Թեհրանի մօտերն, ուր* Ռէյն *էր գտնւում, (այժմ աւեր ու կործանուած)*։ *Արդեօ՞ք նոյն Ռէյը, որ ըստ հայ անուանակոչութեան պահած էր տակաւին իւր հնագոյն անունը Ռագայ*, Հռագա, *Ֆրիկի ապրած օրերին*։ *Նոր հա՞րց է այդ*։ *Ձենք կարծում, որովհետեւ Կիրակ. Գանձակեցուն յայտնի է այդ անունը* Ռէ *ձեւով արդէն*։ *«Ջարմա(ղա)ն Նուին չոգաւ ի վերայ Ջալալէդնին, որ իշխէր Խորասանայ եւ դաւառայն շուրջ զնովաւ... վանեաց զնա... առին եւ զմեծամեծ քաղաքսն եւ զհոյակապ ամենայնիւ լցեալ զՌէ եւ զՍպահան...»*։ *(Կիրակ. Գանձկ*. Պատմ. *Գլ. ԻԱ, էջ* 221)։

*Կիրակոսի Ռէ–ն Ստեփան. Օրբէլեանի մօտ դառնում է* Հռէ.— *«... գումարեալ զօրս բազումս Խուժլու շահն գնաց զկնի (Նաւռուզի)... զոր... Առաուած եա ի ձեռս զանիծեալն... անհետ կորստեամբ ջնջեաց զնա... կալան մեծ հրաշիւք ի Հռէ քաղաքի, որ անդր է քան զՄավր». (=այժմեան* Մերվ *քաղաքը, որ ըստ Պարսկ. կոչման էր* Մեվր, *եւ էր մայրաքաղաքը Խորասանի)*։— *Օրբ*. Պատմ. *Հա. Բ, Գլ. Հ, էջ* 233, *Փարիզ*, 1859։

Գրիգոր Է· Անաւարզեցի կաթողիկոսի մահից (†1307) յետոյ, Լեւոն Թագաւորի հրամանով Սիս գումարուած, կաթողիկոսական նոր ընտրութեան եւ Անաւարզեցու «Գիր Հաւատոյ» գրութեան քննութեան համար ժողովի եկած քառասուն եւ մէկ Թեմակալ եւ պաշտօնավարող եպիսկոպոսների շարքում, յիշատակւում է նաեւ Հարգա եպիսկոպոսը, իբրեւ ժողովական անդամ միւս հայրերի շարքում·

«... Եկին յայնժամ եւ գումարեցան յարքայանիստ քաղաքն Սիս քառասուն եւ մի եպիսկոպոսունք, յորոց բազումք յարեւմտեան կողմանցն էին եւ անուանք նոցա են այսոքիկ· Կոստանդին Եպիսկոպոս Կեսարու· Կոստանդին Եպիսկոպոս Սսոյ· Յովհաննէս Եպիսկոպոս Տարսոնի... Անդրէաս Եպիսկոպոս Հարգաճայ, Թորոս Եպիսկոպոս Մաշկեւորին... եւայլն» (Չամչեան, Պատմ· Հայոց, Հտ· Գ·, էջ 309)։

Ֆրիկի յիշատակած Հարգա անունն, անշուշտ, նոյն այս Հարգաճ անունն է, որով Հաջընի այսօրուայ մոռացուած անուանկոչութեան վերարտադրութեամբ, մօտաւոր մի հիմք է տրւում մեզ, ենթադրելու, որ «շատ մի տարի» Հարգայի մէջ դեգերող Ֆրիկը, թերեւս, իւր գերի տարուած որդու կորստեան հետքը բռնած՝ հասել էր Արեւելեան Հայաստանից Կիլիկիա եւ այդտեղ կամ շրջակայքում էր որոնում իւր կորուստը։ Եւ կամ, թերեւս, այդ անունը կարող է հիմք ծառայել մեզ համար նորա ո՞ր տեղացի եւ ո՞ր կողմերից լինելու հարցը որոշելու խնդրի նկատմամբ։ Անկախ այդ երկու հարցից այդ անունը մեզ համար մի դրական հիմք է նաեւ Ֆրիկի ժամանակի որոշման համար։ Այս մասին քիչ յետոյ։

§ 52· Ի՞նչ էր անում Ֆրիկը «ի Հարգայ շատ մի տարի»։— Ի՞նչ էր նշանակում այն «դատեցայ» դարձուածը, որի համար այդքան երկար տարիներ էին պահանջւում,— արդեօ՞ք սովորական տուր եւ առի գործ, թէ՛ թափառական երգչի անկայուն կեանքի դեգերումներ ու պրպտումներ, աշխատանք թափել,– որդին գտնելու,— մեզ պարզ յայտնի չէ։ Մեզ համար աւելի վերջինն էր, քան առաջինը· որովհետեւ աւելի հաւանական է, որ որդեկորոյս հայրը որոնումների, քան առեւտրական «դատումների» խնդրով էր տարուած։ Միւս կողմից այդ անցողակի ակնարկը պարզում է նաեւ այն խնդիրը, որ Ֆրիկը շարունակ Հարգայում չէ ապրել, այլ մի այլ տեղից է եկած այդտեղ եւ յետոյ ճորից թողել է Հարգան։

§ 53· «Ո՞րտեղից էր եկել» հարցը մեզ համար կարեւոր խնդիրներից մէկն է եւ աւելի կարեւոր, քան թերեւս ենթադրել կարելի է,— որովհետեւ դարանով է, որ պիտի որոշուի նորա հայրենիքն ու ծննդավայրը։ Դժբաղդաբար այդ էական խնդրի նկատմամբ նորա Տաղերից եւ ո՛չ մէկի մէջ ամենափոքր իսկ ուղղակի, թէ անուղղակի ակնարկ ենք գտնում։ Սակայն որոշ նախադրեալների,— մեծ մասամբ լեզուական ու բարբառագիտական,— արտածական (de'ductif) հետեւողականութեան իբր եզրակացութիւն, հակուած ենք

ենթադրելու, որ նա հաւանօրէն Արեւելեան Հայաստանից պիտի գաղթած կամ ժամանակաւոր այցելութեամբ եկած լինի Կիլիկեան սահմանները։ Երբ մեր երկրի Արեւելեան մասերը կատարեալ աւերի ու ասպատակութեան էին մատնուած Թաթարների երեսից՝ Ֆրիկը, հաւանօրէն, ապաստան է գտնում այդտեղ, Կիլիկիա, որ համեմատաբար շատ աւելի բարուոք վիճակի մէջ էր գտնւում՝ Բնաշխարհի նկատմամբ։

Այն աշխարհում, (Արեւելեան Հայաստանում), ուր սովորական մի վիճակ էր եւ առօրեայ կեանքի երեւոյթներ

«.... զօրացն... երթեալք ընդ կողմանս կողմանս աշխարհին աւերէին զաշխարհս եւ զգաւառս, բառնային զիշխանութիւնս,... առնուին զինչս եւ ստացուածս, զկանայս նորահասակս եւ զմանկունս գերի առեալ ի ծառայութիւն սարկութեան, էր զոր առաքէին ի հեռաւոր օտարութիւն...»։ (Կիրակ. 220) —

այդպիսի մի աշխարհում այլ եւս մնալու հնարաւորութիւն չկար շատ–շատերի համար։ Հաւանական է, որ պանդխտութեան ցուպը ձեռքն առած Ֆրիկն եւս պիտի դիմէր մի այլ աշխարհ, ուր Հայութեան մնացորդները դեռ կային ու գոյութիւն ունէին եւ ուր, թերեւս կարող լինէր «այլ շատ մի բաներ յառաջ հանել» ու երգել իւր «շատ մի հայերէն բաներ»ը եւ ուր, Կիլիկիայի մէջ ամուր հաստատութիւն գտած Հայ իշխանական Տունն աշխատում էր անդորրացնել երկիրը, խանգարուած ներքին կարգերը վերահաստատել, հասարակաց խաղաղութիւնն ապահովել, ինչպէս վկայում է այդ մասին ժամանակակից Պատմիչը, թէ

«... զամենայն վանորայս երկրին (Կիլիկիոյ) անհոգս (առնէին) յամենայն կողմանց... լցաւ երկիրն ամենայն բազմութեամբ մարդկան անարուեստից եւ արուեստաւորաց, որք ժողովեցան յամենայն կողմանց փախուցեալք յաւերմանէ Թաթարին, որ եկեալ... տապալեցին զաշխարհս ամենայն»։ (Կիրակ. 179)։

§ 54. Թաթարների արշաւանքի առաջին շրջանի (=1234) զօրեղ թափի օրերից յետոյ, սովորական դարձած աւերի երեսից, ամէն մարդ զգլուխն ազատելու էր ջանք դնում, — անշուշտ հետագայ աւելի մեղմ շրջանի մէջ նոյնը պիտի շարունակուէր։ Այդ մեծ գաղթականութեան, եթէ ոչ առաջին, գոնէ հետագայ, զոհերից մէկն եւ պիտի լինէր Ֆրիկը, որ հաւանօրէն երկար թափառումներից յետոյ Կիլիկիա անցաւ եւ Հարգայի մէջ «շատ մի տարի» ապաստան գտաւ, ի թիւս այն բազմաթիւ «անարուեստից եւ արուեստաւորաց», որ Կիլիկիան սիրով իւր ծոցն էր ընդունում, մի կողմից Հայութիւնը փրկելու խնամածութեամբ եւ միւս կողմից երկիրը սեփական, ազգային տարրերով զօրացնելու քաղաքականութեամբ, որի բնական հետեւանքը պիտի լինէր «արուեստաւորների» բազմութեան բնատուր ձիրքերով երկիրը շէնցնել, ծաղկե-

*ցրնելն եւ բնիկ տարրով ամրապնդել։ Անշուշտ այդ «արուեստաւորաց» շարքի մէջ տեղ գտաւ եւ մեր Երգիչը իւր «շատ մի հայերէն բաներ»ով եւ իւր գեղեցիկ արուեստի հարուստ արդիւնքը Կիլիկիայում թողնելու բաղդաւոր բերումով։*

§ 55. *Ֆրիկի՝* արեւելեան նախանձներից *լինելու մեր տեսութեան ու վարկածի հիմնաւորութեան նկատմամբ աչքից պէտք չէ՝ թողնել նաեւ հետեւեալ դրութիւնը.—*

*Թաթարների արշաւանքների պատմութեան մէջ մի մեծ քաղաքական-տնտեսական պարագայ կայ, որ նոյն ժամանակի Հայաստանի կացութեան, նորա տնտեսական վիճակի, երկրի մէջ հաստատուած ազգային իշխանութիւնների մնալու եւ կամ վերջանալու, ժողովրդի այլ եւ այլ խաւերի հոգեբանական մտածողութեան կերպի եւ ընդհանուր մտայնութեան վերայ թողել է իւր կնիքը։*

*Յայտնի է որ Թաթարների արշաւանքը բոլորովին այլ հետեւանքներ էր թողնում այլ եւ այլ աշխարհամասերի վերայ, նայելով թէ նոցանից իւրաքանչիւրն ինչ վերաբերում էր ցոյց տալիս նոր տիրապետող ոյժերին եւ նորա իշխանութեանն ու ներկայացուցիչ «տէրերին»։ Նոքա, որոնք ընդդիմացան Թաթարների գրոհներին, դիմադրեցին զէնքով եւ ոյժով, չկամեցան ճանաչել նոցա իշխանութիւնը,— այդպիսիների նկատմամբ Թաթարներն եղան անգիջող, դաժան եւ անգութ եւ զէնքի ոյժով, թալանով, աւերով, կոտորածով եւ գերութեամբ զսպեցին եւ իրենց իշխանութիւնը հաստատեցին, ինչպէս Սիւնիք, Վրաստան, եւն.։ Իսկ նոքա, որոնք, թէեւ ակամայից, համակերպեցին ընդունելու նոցա իշխանութիւնը, հարկեր վճարեցին, զէնքի չդիմեցին նոցա երկրից հանելու, այդպիսիները ո՛չ միայն համեմատաբար քիչ տուժեցին, այլ եւ խնամք եւ պաշտպանութիւն իսկ գտան նոցա կողմից։ Այսպէս Թաթարների արշաւանքի Կիլիկեան շրջանի հայ թագաւորներից Հեթումը քաղաքական հեռատեսութեամբ, պարագաների ճիշդ կռահումով եւ կշռադատումով, կարող եղաւ բարեկամական եւ քաղաքական բարեացակամ յարաբերութիւն ստեղծել եւ ապահովել Հուլաղու Խանի* (1265 *թ.*) *հովանաւորութիւնը, որով եւ Կիլիկեան հայ իշխանութիւնը եւ իւր ժողովուրդը անմասն մնացին արեւելեան նահանգների տոյժ ու աւերից եւ կործանումից.* (*Կիրակ.* 179)*։ Եւ այս երկուութիւնը միայն այն պատճառով, որ Թաթարական արշաւանքը միայն երկրի տիրապետութեան, առժամանակեայ հարստութեան եւ իշխանութեան հարց էր եւ ոչ յարատեւ հաստատուելու, երկիրը սեփականելու եւ ժողովուրդն իւր գրկի մէջ ձուլելու նպատակով։*

§ 56. *Քաղաքական այս դրութեան իբր հետեւանք եղաւ այն, որ այդ երկրամասի ժողովրդի մտայնութեան մէջ Թաթարն այն դաժան, խիստ, անողոք կեղեքիչը չէր, ինչպէս էր նա Արեւելեան Հայաստանի ժողովրդի աչքում։*

*Մտայնութեան այս վիճակը երեւում է ամենից աւելի ժողովրդի հոգին, մտածողութիւնը, զգացումները խտացնող իւր երգիչների տաղերի մէջ: Թողնելով Ֆրիկը, որի տաղերը բացորոշ ապացոյցներ են այդ վիճակի մասին, Թաթարների շրջանի մի այլ տաղասաց, Յովհաննէս անունով, իւր «Վասն Թռչնոց» տաղի մէջ հետեւեալ պատկերաւոր համեմատութիւնն է դնում Թաթարների եւ Ուրուրի մէջ.—*

*«Ուրուրն աւարէր զինչ Թաթար,*
*Ոչ ոք զմուէր ի չէնն երթայր.*
*Առնոյր զհաւի ձագըն գընայր,*
*Թէ հազար մարդ յետեւն գոռայր»:*

*Նոյն հոգեբանական մտայնութեան մենք չենք հանդիպում ժամանակակից եւ կամ քիչ յետոյ ապրած Կիլիկեան շրջանի երգիչների եւ տաղասացների երկերի մէջ: Յովհաննէս Թլկուրանցին, որ իւր ժամանակի լաւագոյն երգիչն է, իւր բոլոր երգերի մէջ, ոչնչով չէ արտայայտում այդ դառն իրականութեան, աւերի եւ ճնշումի, հոգեկան այդ ընկճուած, քայքայող դրութեան գոյութիւնը: Ընդհակառակը նորա բոլոր երգերն ու տաղերը սէր են շնչում— մի դրութիւն ,որ չէր կարող երգուիլ դառնութեան, հալածանքի, ճնշումների շրջանին, որովհետեւ իբր վանական իւր շուրջը տեսնում էր միայն «ապահով վանքեր», երկիրը լի «ամէն տեսակի արուեստաւոր մարդկանց բազմութեամբ», որոնք եկած էին եւ «փախուցեալք յաւերմանէ Թաթարին». (Կիրակ. 179):*

*Պարզ է, որ դանդատով լի մի հոգի, դառնութեան բաժակը բերանին մի երգիչ, Ֆալաքի դէմ ըմբոստացող մի ոգի, Աստուծոյ իսկ դէմ գլուխ բարձրացնող մի այլ բողոքարկու, չէր կարող լինել այլ աշխարհից՝ քան ուր աւերն էր թագաւորել եւ դաժան իրականութիւնը հաստատուել: Իսկ այդ երկիրն էր Արեւելեան Հայաստանը, ուր նա*

*«Ոչ տուն, ոչ տեղ ունիմ*
*Կու խոցիմ ի* յանհաւատնում»

*ասելու իրաւունքն ունէր:*

§ 57. *Այս վերջին պարագան եւս «անհաւատներ»ի չեշտումը նոյնքան զօրեղ մի ապացոյց է մեր տեսութեան, որովհետեւ յայտնի է, որ «ոչ-քրիստոնեայ»=անհաւատ Թաթարները Արեւելեան Հայաստանի տիրողներն էին, իսկ քրիստոնեայ Թաթարները Կիլիկիայի եւ այդ շրջանի տէրերն ու բարեկամներն, որոնք նոր կրօնի նախանձաւորութեամբ տարուած աւելի բարեկամական զգացումներով էին վերաբերում դէպի Կիլիկիայի հայութիւնը:*

§ 58. *Թէ ո՞րքան հիմնաւոր է մեր այն ենթադրութիւնը, որ Ֆրիկը պէտք է Արեւելեան Հայաստանից լինի, եւ շատ հաւանօրէն, այժմեան Ղարաբաղի շրջանից, դեռ եւս խնդրական մի կէտ է: Բայց մեր ենթադրութեան հա-*

ւանականութեան իբրեւ ատաղձ կարող են ծառայել այն բազմաթիւ բառերը, ոճերը, ասացուածքները, իւրատեսակ արտայայտութիւնները, որ ցրուած են այսօրուայ Ղարաբաղի ժողովրդական կենդանի խօսքի ու բարբառի մէջ եւ որ այնքան յաճախակի հանդիպում ենք Ֆրիկի Տաղերի մէջ:

Այդ հարկը, որ ենթադրում ենք, թէ Ֆրիկը թերեւս ակամայից հատուցել է իւր բնաշխարհի, իւր սեփական ծննդավայրի բարբառին այն սովորական եւ շատ բնական հարկն է, որ բանաստեղծը, որչափ էլ տիրապետող ու գիտակ սովորական գրական լեզուին, սակայն եւ այնպէս, ինչպէս բարձրագոյն հասկացողութեան ճաշակի տէր անձն, նա անկարող է իւր բարբառի մըթերքի մօտից անցնել, առանց այդ առատ դաշտի գեղեցկագոյն ծաղիկներից մի նոր եւ թարմութեամբ գեղուն ծաղկեփունջ մատուցանելու իւր Մուսային: Եւ այդ բնական շտեմարանն այնքան է ճոխ, բազմատեսակ, այնքա՜ն գրաւիչ, որ շատ անգամ Բանաստեղծի լաւագոյն արտադրութիւնների լաւագոյն զարդն ու գեղեցկութիւնները իւր բարբառի բառամթերքն է եւ ինքնուրոյն ոճերը: Եւ այս տեսութեան ամենից գեղեցիկ ապացոյց–օրինակներն են մեր այժմեան բանաստեղծական գրականութեան ամէնից աւելի սիրուած Երգիչները,— Յ· Յովհաննիսեան, Յ· Թումանեան ,Ա· Իսահակեան եւայլն: Եւ, եթէ բաղդի մի բերումով, Հայ գրականութիւնը զրկուէր այն տեղեկութիւնից, թէ մեր այդ Բանաստեղծներից ո՛րը ո՞ւր է ծնուած,— նոցա երգերի ու ստեղծագործութեան շտեմարանից կ'իմանայինք Արարատեան չէն ու ճոխ լեզուական մընացորդներից, Յովհաննիսեանի Արարատեան Դաշտի զաւակ լինելը, Լոռու գեղեցիկ բառամթերքի ծաղկեփնջով՝ Յ· Թումանեանի Լոռեցի լինելը եւ Շիրակի ինքնայատուկ ոճերի մթերքով Ա· Իսահակեանի՝ Շիրակեցի լինելու անվրէպ ցուցումը:

Միայն պէտք է, որ պրպտողն այդ աղբիւրների ակին ծանօթ լինի՝ մըտերմիկ լինելու չափով:

§ 59· Ֆրիկի նկատմամբ մեր այս ենթադրութիւնը մի վարկած է, որ ապացուցել ու պարզել կարելի է միայն Ֆրիկի ամբողջ Տաղերի հրատարակութիւնը, նորա յատուկ բառարանն աչքի առաջ ունենալով եւ մեր բարբառագէտ բանասէրների քննական ուսումնասիրութեամբ լուծումն ստանալով: Այս հարցի նկատմամբ իւր տեղը նորից առիթ կ'ունենանք նորանոր ապացոյցներ բերելու եւ ըստ հնարաւորութեան փաստեր ընձեռելու: Առ այժմ այսքան:

§ 60· Եզրակացութիւն.—

Մինչեւ այժմ մեր պարզած տուեալների հիման վերայ մնալով, Ֆրիկի անձի մասին յանգում ենք հետեւեալ եզրակացութեան, հետեւեալ կէտերով.—

ա.— Ֆրիկ անունը, հաւանօրէն, կեղծ անուն է: Ի՞նչ էր նորա իսկական անունը խնդրական է դեռ եւս ·

բ·— Նա է որդի Թագվոշի, եղբօրորդի Դողոնայի, որոնց անձնաւորութիւններն եւս անյայտ են·

գ·— Նա աշխարհական է, առանց որեւէ ուսման ու դպրոցական գիտութեան, օժտուած բնական տաղանդով ու ձիրքով· Հետեւաբար նոյնացնել նորան կամ Խաչատուր Կեչառեցու եւ կամ Յովհաննէս Պլուզ Վարդապետի հետ՝ ոչ մի հիմք կայ·

դ·— Աշխարհիկ լինելով ամուսնացած էր եւ ունէր որդիք, որոնցից դժբաղդ պատահարի շնորհիւ զրկուել էր·

ե·— Իբր հետեւանք՝ նորա թափառական կեանքն ու վիճակը·

զ·— Ո՞րտեղացի լինելու հարցը դեռ եւս լուծուած պիտի չհամարել, հաւանօրէն Արեւելեան Հայաստանից եւ երկար ապրած Կիլիկիայում։

§ 61· Անցնենք միւս կարեւոր երկու հարցին·

ա·— Ե՞րբ էր ապրել, ո՞ր ժամանակ·

բ·— Ի՞նչ է տուել։

# ԳԼՈՒԽ Բ.

§ 1. *Ֆրիկի ապրած դարն ու ժամանակը որոշելու նկատմամբ, ինչպէս տեսանք, մեր բանասէրների ու այդ Մոռացուած Երգչով փոքր ի շատէ հետաքրքրուող անձերի կարծիքները իրարից շատ ու շատ էին տարբերւում, որովհետեւ նոցանից եւ ո՛չ մէկը իսկական ուսումնասիրութեան հետեւանք կարծիք էր, որ յայտնում էր, այլ անձնական ենթադրութիւն ու* կռահումն *խնդրի: Բնական է, որ այդպիսի կռահումներից մէկն ու մէկը կարող էր իրապէս մօտենալ իսկութեան, սակայն իրական գիտական տեսակէտից դատելով՝ մնալ անարժէք, որովհետեւ հիմնուած չէ եղած* դրական փաստերի *վերայ:*

*Զանազան ժամանակ եւ զանազան բանասէրների կողմից արտայայտուած այդ կարծիքները յանգում էին այն կէտին, որ*

ա.— *Ոմանք համարում էին Ֆրիկը ԺԴ. դարու սկիզբը վախճանուած անձն* (1330 *թ.*), *ենթադրելով որ Ֆրիկը եւ Կեչառեցին նոյն անձն է.* (*Ըստ Հ. Գոտուրեանի, սակայն առանց որեւէ փաստի, այլ լոկ ենթադրութեամբ*):— *Սոյա կարգին է նաեւ Հայ ԵՐԳ ու ՏԱՂՈՎ հետաքրքրուող եւ տեսութիւններ ու քննդատութիւններ գրող Պր. Զիթունին, որ պարզապէս յայտնում է,— «Ահա Ֆրիկ Խաչատուր Կեչառեցին, ԺԴ.—ին»...**)

բ.— *Հ. Ղեւոնդ Ալիշան, որ* ենթադրում *է, թէ Ֆրիկն ապրած պիտի լինի ոչ ուշ, քան ԺԵ. դարն:*

*) *ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՉՆԱԿ*, 1922, *թ.* 4, *էջ* 112:

գ.— Կ. Պօլսոյ ԵՐԿՐԱԳՈՒՆՏը նոյնպէս ենթադրում է, «թերեւս ժէ. դարու» գործիչ:

§ 2. Արդ մի կողմ թողնենք այս բոլոր ենթադրութիւնները եւ կռահումները եւ տեսնենք այժմ, թէ Ֆրիկի իր իսկ Տաղերից որեւէ դրական ցուցում, ակնարկ չե՞նք կարող ունենալ, որով հնար լինի որոշել իր ապրած ժամանակաշրջանն ու դարը: Իր Տաղերի մէջ այս ու այն տեղը, պատահաբար, ցրուած հատ ու կտոր տեղեկութիւններից զատ, որոնք աւելի անհատական ու անձնական ապրումների ցուցումներ են եւ որ մեզ այնքան մեծ ծառայութիւն մատուցին, նախորդ գլխի մէջ, նորա անձի նկատմամբ, փոքր ի շատէ տեղեկութիւններ ստանալու,— բարեբաղդաբար իր Տաղերից մէկը, որ կրում է ՎԱՍՆ ԱՐՂՈՒՆ ՂԱՆԻՆ ԵՒ ԲՈՒՂԱՑԻՆ վերնագիրը, մեր առաջ այժմ դրած տեսակէտի նկատմամբ ներկայանում է իբրեւ ամենամեծ արժէք ունեցողը:

§ 3. Այդ Տաղը, մինչեւ այժմ մեզ յայտնի բազմաթիւ Ֆրիկեան Տաղարան Ձեռագրներից միայն մէկի մէջ է պահպանուած, մի բարեբաղդ դիպուածով, որի կորուստն եւս Հայ բանասիրութեան համար ամենամեծ կորուստներից մէկը պիտի լինէր եւ չափազանց զգալի,— ժամանակի հարցի լուծման տեսակէտից: Այդ Ձեռագիրն այժմ գտնւում է Օքսֆորդի Համալսարանի Բոդլէեան Գրատան մէջ եւ յայտնի է Ms. Arm. F. 16 համարով եւ որի 155a—169b էջերը բովանդակում են այդ տաղը:

§ 4. Աչքի առաջ ունենալով, որ այդ Տաղն անյայտ է շատ շատերին մեր բանասիրութեան մէջ, այլ եւ այն պարագան, որ մեր առաջ դրած ժամանակի խնդիրը լուծելու հաար բազմիցս կոչումներ անելու ստիպուած ենք այդ իսկ տեղից, իսկ մեզ համար ցանկալի է, որ ընթերցողն ինքը հնարաւորութիւն ունենայ մեզ հետեւելու մեր ուսումնասիրական պրպտումների պահերին,— ուստի ոչ միայն աւելորդ չենք համարում, այլ նոյն իսկ անհրաժեշտ ենք նկատում այդ Տաղն ամբողջապէս առաջ բերել իբրեւ մեր ապացոյցների հիմք:

### ՎԱՍՆ ԱՐՂՈՒՆ ՂԱՆԻՆ ԵՒ ԲՈՒՂԱՑԻՆ

Փառք Աստուծոյ միշտ կենդանոյն,
Արդար ու՜ իրաւ դատաւորին,
Տեսէ՛ք, թէ ինչ զարմանք եղեւ
Հետ Բուղային եւ Արուխին:

Բուղա՛, դու ո՞նց կամիր ննգել
Աստուածադիր թագաւորին,
Զոր քրիստոնեայքն ամէն հաւսար
Ի յԱստուծոյ կու խնդրէին:

Արղուն ղանըն Աստուած եղեր,
Ո՞վ է յաղթող Արղուն ղանին.
Արղունըն ի՞նչ վընաս գործեց,
Գիտեմ՝ որդին էր Աբաղին։
Այն որ ըզքեզ ի վեր քաշեց
Եւ քեզ երետ զամէն բարին,
Անոր փոխրէն զի՞նչ խորհեցար
Կամ ո՞վ լըսէր հանցեղ բանին։
Ով անմեղաց հոր կու փորէ՝
Ի՛նքն անկանի ի մէջ գըբին.
Սուլթան-աղան թող իմացաւ,
Ապա քո գործքն զքեզ սպանին։
Նոցա չի կայր իսկի գունահ,
Զինչ քո թերաց կոտորեցին.
Դու քան զԱրղունըն չ՜իր պակաս,
Ի քո յահէդ խիստ կու վախ՜ին։
Բուղա էիր՝ չինքան եղար,
Բէկլար-բէկի իր հեծելին.
Զգիտեմ թէ զի՞նչ կամիր լինել,
Դու չ՛իր որդին Ջանկըզ ղանին։
Զինչ ի վերուստ քեզ չէր տըւած,
Դու ե՞րբ կարիր հասնել բանին,
Զոհալըն խիստ ի վեր քաշէ,
Ցետեւ զարնէ խիստ ի գետին։
Մըտիկ դըրէք, աշխարհ ամէն,
Ըսքանչելեացն Երկնաւորին,
Տեսէք, թէ ի՛նչ արար Աստուած
Ի հատուցումըն հըզօրին։
Քակեց ըզբա՛րձրըն յաթոռոյ,
Ջախեց ըզգլո՛ւխըն վիշապին,
Ով կուռըն տայ թագաւորաց՝
Իւրըն բերէ կործանութիւն։
Գէմ Սատանայ զայն խորհեցաւ
Հետ Աստուծոյ իւր Ստեղծողին,
Որ ի փառաց անկաւ ի վայր,
Կործանեցաւ անդընդային։
Ցորժամ ձըգէ Աստուած յաչից
Ըզգործակից սատանային,
Հանց խայտառակ հրապարակէ,
Զինչ որ արար հետ Բուղային։

Տէրըն եզարկ յերկնից ի վայր
Ջընկայ Բուղին եւ Արուխին,
Նա՛յլ ամենայն գըլխաւորացն,
Զինչ որ մէկտեղ խորհուրդ արին։
Դու ես, Տէր, խընդրող վըրէժից,
Ի խոր նայիս անդընդային,
Լըսես ձայնի հառաչանաց
Եւ հեծութեանըն տընանկին։
Դու զըրկելոց ես ողորմած,
Որբերըն Քո՛ են եւ այրին.
Տէր, Դու տեսար յերկնից ի վայր,
Զինչ Քո ծառա՛յքըն քարշեցին։
Գէմ չի մընաց աղբիւր ու գետ,
Որ լացուցացքըս չի խմեցին,
Գէմ չի մընաց լեռներ ու դաշտք,
Որ Մասասչիքըն չի կոխեցին։
Զըմեռն յարան*) կերթին լալով,
Ւ՚Ամառն ի քո՛չըն քաշէին.
Քըսան տարի դար քաշեցաք,
Որ հալեցաւ ոսկր ու մորթի,
Լոկ չընչաւոր եմք մընացել,
Խելք, զգայարանք ի մեզ չերեւին,
Ջալալէդինն էր մընացել,
Նա կու զարնէր աքցի բանին։
Տէրըն սաստեց խոլոր աչօք
Ու ցըրուեցաւ տունն ու բարին.
Ց. . . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . .**)
Հանց փոխարէն արար Աստուած
Այն Գրիգորին եւ իւր ազգին,
Որ ամենայն մարդ վըկայեաց,
Թէ օրթախնին անիծեցին։
Սուրբ Յովհաննէսն իրեն խըռով
Այն անիծած Թուման–Ճուխին.
Իսկի չ՚ածեր զԱստուած ի միտ,
Զ՚ունէր երկիւղ ի յիւր սըրտին։

*) Համեմատել Կիրակոս Գանձակեցի, էջ 380. Գառնուց Դաշտի քաղաքը.— Օրբէլեան, Պատմ. էջ 215–216 Դարան Դաշտ (== տափ).— էջ 415, Դառն Դաշտ (== Ալա դաղ)։ Վարդան Պատմիչ.— Պատմ. Մաղաքիա Աբեղայի, Ռուսերէն Թարգմ. էջ 71–73, Գ.—

**) Բնագիրը պակասաւոր։

Հանց խորտակէ Աստուած ըզձա,
Որ իւր ազգովն ամէն ջընջին·
Տիրասըպան, Աստուածուրաց,
Լիրբ, ւ՚անամօթ այն չուն Սօֆին։
Հանչաք վազէ դըռնէ ի դուռն,
Մինչ որ անկնի ի մէջ գըբին·
Գէմ չ՚արարին հանչաք վընաս,
Որ հաւանէր Աստուած բանին։
Կու հրամայէ մեծըն Դաւիթ
Ժողովըրդեան Բաբիլոնին,
Թէ երանի, որ հարկանէ
Զորդիքն ի քա՛րըն չարկամին։
Մեք վա՜չ ասենք անձանց մերոց,
Թէ ո՞նց տեսանք ըզթըշնամին·
Գիտեմ, կային հանցեղ մարդիկ,
Որ ի մեր չա՛րըն խընդային։
Երբ նըստէաք ի հրապարակ,
Ամէնն ըզմեզ ծիծաղէին·
Հանց բարետես աչուի ուն՜ինք,
Որ նոքա այլ գըլխիվարին։
Թող չ՚յուսանայ մարդ ի դըրամ
Եւ ո՛չ ի զուր մարդ ծիծաղին·
Ցալաքըն տայ ժուկ մի դեկան,
Յետեւ հանէ խիստ ի քամին։

Ով յանմեղուց մարդ կու ճօչայ,
Դուք նայեցէք հետ իւր բանին·
Ապա զայս ալ կամիմ ասել,
Զինչ Մասասչիքըն գործեցին։

Խիստ յուսացան ի յանցաւորս
Եւ պարծեցան յիւրեանց մըտին·
Թէ մեք չինենք չատ մի թուման,
Երթանք կախենք զորըն ու այրին։
Հետ ընկերաց ծուռ են կացել,
Եւ չատ մարդկանց տուն քակեցին·
Խիստ ապիրատ բան խօսեցին,
Մեղօք զԱստուած բարկացուցին։
Զինչ որ տըւել էր Տէրն նոցա,
Զայն գոհութեամբ հերիք չարին·
Բարձի թողի արին զամէն,
Երթալ ըզհետ իւրեանց սըրտին։

Հանց խարզանաւ Տէրըն ծեծեց,
Որ չիմացան զինչ գործեցին.
Յորժամ զիտաց՝ թէ խրատեցան,
Եւ զըղջանան յիւրեանց մըտին,
Տէրըն դարձեալ ողորմեցաւ,
Փոխրէնք արար հակառակին.
Հանց սատակեաց Աստուած զնոսա,
Զինչ Մտասաչեց չար կամէին:

Իսրայէլի զօրիքն էաք,
Ձեռն ՚ինք ընկել ի Բուղային.
Ումեկ հատել էր ի սըրտէ,
Թէ զի՞նչ լինի ճար մեր բանին:
Դառն եւ ողորմ ՚ինք մընացել,
Թէ ե՞րբ հասնինք մեր մուրատին.
Յերկու դիմաց ՚ինք պարտական,
Մէկ ատէնիս, մէկ անդէնին:

Յիւրեանց բարեա՛ցըն զըրկեցան,
Դէմ յԱստուծոյ շատ մի լացին,
Գանգատ ասցին ի խոր սըրտէ,
Հառաչանօք զայս ասացին:
«Տէ՛ր, մի հաներ զմեզ ի կենացս,
Մինչ որ մեր պա՛րտքըս վըճարին»:
Զինչ Մտասա չի կան հաւատար
Ամենեքեան թող ժողովին,

Որ աղաչենք ըզՏէր Աստուած,
Որ ցուցընէ Արղուն ղանին,
Թէ չէ՛ աղէկ այն արտասունքն,
Որ թափեցին Օրղու-ղանին:
Կու հրամայէ հոգցող անուն,
Թաչար, Ղազան, Սաղաղօյին,
Թէ «Շուտ հոգցէք զիւրեանց բաներդ,
Թէ չէ ի հետ ձեզ պարապին»:

Անէծքըը չէ՛ ոչում բարի,
Շուտ կու բըռնէ զաղամորդին.
Աստուած յերկնից ականջ դըրել,
Խիստ կու լըսէ մեղաւորին:

Թէպէտ որ քիչ մի կու դատէ,
Բայց կու փորձէ զիւր սիրելին.
Տէր, որ զՅունեան տըւեր կիտին,
Հաներ արձակ հող ու՞ի դետին,

*Զայս մեղաւոր ծառայքս յետին*
*Մի՛ տար տանել մեղաց գետին.*
Ցըրիկն *երեսքն ի վայր դըրել*
*Եւ արտասուօք թանայր զգետին:*
*Տէր, մի՛ առներ ի մեր գործոյս*
*Մեզ հատուցո՛ւմըն չար բանին,*
*Դու ես անմեղ եւ անզալատ,*
*Հողն ո՞վ լինի, որ չմեղանչին:*
*Բաներս աղէկ ու գործքըս վատ,*
*Զիս մի դատել յիմ արժանին.*
*Բըժիշկըն չէ՛ ողջաց ի բան՝*
*Գէմ Դու եկիր վասն հիւանդին:*
*Ցերկնից ի վայր խոնարհեցար,*
*Վասըն միոյ մեղաւորին.*
*Ողորմութեանըդ կու մընամք,*
*Որ վերջք առնես Դու մեր ցաւին:*
*Աւուրքս անցաւ հետ ՄԱՍԱՍԻՍ*
*Եղըր չի կայ, հում չերեւին,*
*Ցաւս երկարեց ւ՚ի յոսկր անցաւ,*
*Այլ չի մընաց համբերութիւն:*
*Տէ՛ր, վասըն Քո Աստուածութեանդ*
*Ցօգըն հասիր մեզ յատենին,*
*Փըրկեա՛ զմեզ ի տանջանաց,*
*Երեւեցո՛, զերեսս Քոյին:*

§ 5. *Առաջ բերած այս տաղը, որ ժամանակակից դէպքերի եւ պատմական պարագաների մանրամասնութիւնների մի շարք է աւելի, քան բանաստեղծութիւն, մեզ համար շատ կարեւորութիւն է ստանում նոյն իսկ առջին հայեացքից, որով նոր ու շատ աւելի մանրամասնութիւններ է տալիս պատմական անցուդարձերի մէջ դեր ու բաժին ունեցած անձերի նկատմամբ, որը մի նոր վաւերագիր է մեր պատմական անցեալի համար: Տեղական ու մասնաւոր բնոյթ կրող այս ոտանաւոր—պատմութիւնն աւելի եւս արժէք է ստանում մեր աչքում, որովհետեւ մի կողմից նորա մէջ ենք գտնում մանրամասնութիւններ, խուսափած մեր պատմագրներից, զգացումներ բուն ժամանակակից անձերի եւ ժողովրդի տեսակէտ ու վերաբերումի, որ շատ բան է պարզում եւ միւս կողմից ակնարկներ դէպքերի, անձերի, դրութեան, որ այժմ մեզ անծանօթ են եւ վարագուրուած՝ բառերի, տիտղոսների, որոնք ժամանակի հարազատ կնիքն ունին եւ շատ պարզ ապացոյցներ են գրողի* ժամանակակից լինելու *անվիճելի հանգամանքի նկատմամբ: Ամբողջը մի տաղաչափուած ժամանակագրութիւն կամ տարեգրութիւն* (annales) *լինելով հանդերձ, շատ անգամ բուն բա-*

նաստեղծական աւիւնից զուրկ, սակայն մէջն ունի փոքրիկ կայծեր ջերմ զգացումների, որ կճիճն են կրում թաթարական արշաւանքի ամբողջ դաժանութեան ու տանջանքի, ուր «Եզր չի կայ, հուն չ'երեւի»:

§ 6. Տաղիս մէջ ցրուած պատմական ակնարկներն աւելի լաւ հասկանալու համար, կարեւոր ենք համարում համառօտակի վերարտադրել Թաթարական արշաւանքի շրջանի պատմական այն դէպքերը, որոնք կապուած են այդ ոտանաւորի մէջ յիշատակուած անունների ու անցքերի հետ:

Ինչպէս վերնագիրն եւս ցոյց է տալիս, խնդիրը վերաբերում է Արղուն Խանին եւ Բուղային:

§ 7. Թաթարաց արշաւանքի ժամանակակից դէպքերի ընթացքում երկու անգամ պատմութեան մէջ երեւում են Արղուն եւ Բուղա անուններն իրար հետ զուգընթաց:

Առաջին արշաւանքների զօրեղ պատերազմական թափն անցնելուց եւ Հայաստանն ու Վրաստանը գրաւելուց ու հարկատու դարձնելուց յետոյ Թաթարների Ուխաթա խանի մահից յետոյ, նորա գահը ժառանգող իւր որդի Գիուկ*) կամ Գայուկ խանը, 1246 թուին

«... առաքեաց արս հարկապահանջս եւ զօրս իւր, որ ի կողմանս եւ յաշխարհս, զորս հնազանդեցին... առնուլ տասանորդս յամենայն ստացուածոց զօրուն եւ հարկս ի գաւառաց եւ ի թագաւորացն, որ նուաճեալ էին նոցա... ի Հայոց եւ ի Վրաց եւ յԱղուանից... որոց գլխաւորքն էին հարկահաւաքացն արք խիստ եւ յափշտակողք, անուն միոյն Արղուն, որ ամենեցն իշխէր, եւ երկրորդին Բուղա...»: (Կիրակ. Պատմիչ, էջ 297):

§ 8. Ստեփաննոս, Սիւնեաց Մետրոպոլիտ, Օրբէլեանը յիշատակելով, որ Հայ իշխանները

«... ժողովեցան ի Տփղիս առ Արղունն, որ է վազիր եւ պասզագ*) (տեսուչ) կարգեալ ի մեծ ղանէն ի վերայ ամենայն աշխարհիս, այսինքն հրամանատար ամենեցուն եւ իշխեցող արքունի հարկացն եւ մեծ դիւանին, որ արար աշխարհագիր զաշխարհս ամենայն յ703 թուականին (=1254:» (Օրբ. էջ 412–13). եւ սակայն այստեղ յիշատակութիւն չկայ նորա օգնականի, Բուղայի մասին:

§ 9. Այս Բուղան յայտնի էր նաեւ Ղարա-Բուղա անունով**), որ պատմութեան մէջ ոչ պակաս չար անուն է թողել, քան Արաբացոց արշաւանքների առաջին չարաղէտ Բուղան: Զբաւականանալով սովորական հարկերով, աշխատում էր ձեռք ձգել երկրի իշխանները եւ կորզել, տանջանքով ու խոշ-

*) Տես Ցաւելուած Դ. «Առաջին Մոնղոլական Հարստութեան ծագումը, զարգացումը եւ անկումը», Հուլագուի եւ Քիթուբուղայի մասին:

**) Տես Ցաւելուած Դ.:

տանդանքով, ինչ որ հնարաւոր էր նոցանից,— ինչպէս արեց Արցախի Խաչէն գաւառի Հասան Ջալալ մեծ Իշխանին, որին «բազում պատժօք արկեալ», կործանեց նորա հայրենական ժառանգութիւն Խոյականայ, Դիտ եւ Ծիրանաքար բերդերը։

Նոյնը կամենում էր կատարել նաեւ Իւանէ Սպասալարի որդի Աւագ-Սարգսի հետ, բայց վերջինիս զինուորական պատրաստութեամբ նորա առաջ ելնելու հանգամանքով, խափանւում է Բուղայի նենգմիտ մտադրութիւնը։ Բարեբաղդաբար «ել վէրս ի փորս նորա … եւ հեղձամղձուկ» լինելով, մեռնում է 1246 թուին։ (Կիրակ․ 297–99․— Ջամչեան, Գ․ 221–22)։

§ 10․ Բուղայի մահից յետոյ, իբրեւ միակ հարկահան, մնում է միայն Արղունը, նաեւ Գիուկ Խանի մահից (=1252) յետոյ եւս նոր Թագաւորող Մանգու Խանի օրով եւս, որը 1254 Թուականին, ըստ ժամանակակից պատմիչի,—

«… առաքեաց … զայր մի ոստիկան Արղուն անուն, որ ի Գիուգ խանէն առեալ էր հրաման վերակացութեանն հարկացն արքունի … եւ զմիւս եւս ի գլխաւորաց … որում անուն էր Թօրա աղա, հանդերձ այլովք բազմօք, աշխարհագիր առնել…։ Եւ նոցա (հասեալ) յաշխարհս Հայոց եւ Վրաց եւ Աղուանից եւ որ շուրջ զնօքօք գաւառք, սկսեալ ի տասնամենից եւ ի վեր ընդ գրով համարոյ արկանել զամենեսին, բաց ի կանանց։ Եւ յամենեցունց պահանջեալ … հարկս … նեղէին … եւ որ ոչ կարէր հատուցանել զսակսն զմանկունս նոցա առնուին ընդ պարտուցն … բայց յեկեղեցականացն ոչինչ առին հարկս, զի չունէին հրաման ի Ղանէն …»։ (Կիրակ․ էջ 348–50)։ Այլեւ «… աւերէին զաշխարհս եւ զգաւառս, բառնային զիշխանութիւնս ազգաց, առնուին զինչն եւ զստացուածս, կանայս նորահասակս եւ զմանկունս գերի առեալ ի ծառայութիւն ստրկութեան, է՛ր զոր առաքէին անդէն ի հեռաւոր օտարութիւն յաշխարհին իւրեանց … է՛ր զոր առ իւրեանս կալեալ ի պէտս ծառայութեան …»։ (Կիրակ․ 220)։— Համմտ․ Կիր․ 245․—

§ 11․ Նոյնը հաստատում է Վարդան Բարձրաբերդցին, գրելով,—

«… Ցեօթն հարիւր եւ երկու թուին (=1253–54) Մանկու Ղանն հրաման ետ … հնազանդել աշխարհս (=հայոց) ընդ իւրով իշխանութեամբ ի ձեռն առն երեւելւոյ Արղուն կոչեցելոյ, եւ դնել հարկս ընդ գլխոյ արանց, բաց ի կանանց եւ ի բուն ծերոց եւ ի մատաղ տղայոց»։ (Վարդան Պատմիչ, էջ 195)։

§ 12․ Նուաճած երկրների ազգաբնակութիւնը գերի տանելու սովորութիւնը պատահական քմահաճոյքի արդիւնք չէր, այլ Մոնղոլ-Թաթարական տիրապետութեան քաղաքականութեան հիմնական գիծն էր, իբրեւ պետական պահանջ։ Այդ հիմնական գիծը երկու գլխաւոր նպատակների էր ձգտում։ Նախ «իրենց հեռաւոր աշխարհն էին ուղարկում», որպէսզի իրենց յետեւից աւեր

ու կործան, անմարդաբնակ դարձած աշխարհը կրկին լցնեն բազմութեամբ՝ երկիրը չհնցնող նոր ոյժեր բերելով, վաճառականութեան զարկ տալով, երկրի մեռած կեանքը վերակենդանացնելով եւ օտար երկիրների մշակոյթը, այդ օտար երկրներից իսկ բերած թարմ ոյժեր պատրաստեն այդ ընդարձակ անապատի մէջ հետզհետէ կանգնող նոր քաղաքներին՝ բնակչութիւն մատակարարելով:

Երկրորդ.— Մոնղոլ-Թաթարական ժողովուրդն ինքնին մեծ քանակութիւն չէր ներկայացնում եւ այն վայրագ արշաւանքները, կատաղի կռիւները, որ Թաթարներն էին մղում, պատերազմող ոյժերն անխնայ սպառելով,— Մոնղոլ-Թաթարական բուն ցեղերն ու ազգութիւնն անկարող էր այնքան արագօրէն լցնել, որքան անխնայ եւ արագօրէն սպառում էր: Պատերազմող պետերի սպառելու քանակը շատ աւելի մեծ էր, քան արտադրող ոյժի տուածը: Հետեւաբար անհրաժեշտ էր նոր բազմութիւն, մի քանի տարիներից յետոյ՝ գալիք նոր պատերազմների համար: Այդպիսի բազմութեան բնական աղբիւրը՝ նուաճած երկիրները դատարկելու քաղաքականութիւնն էր,— գերիների այն անծայր, անվերջ հոսանքը, որ դիմում էր Միջին Ասիայից դէպի Ծայրագոյն Արեւելքի սահմանները, Հայաստանից, Վրաստանից, Պարսկաստանից, Ասորիքից, Լեհաստանից, Ռուսաստանից դէպի այդ կլանող Անապատը:

Քաղաքականութեան այս երկրորդ գիծը մի հարուածով երկու նպատակների էր հասնում: Մի կողմից նուաճած երկիրների երիտասարդ, առոյգ ոյժերն արտահանելով՝ երկրի դիմադիր կարողութիւնն էին ջլատում. երիտասարդութիւնը եւ մանուկները դուրս հանելով առաջիններին անմիջապէս գործի լծելով, իբրեւ աշխատաւորներ*), եւ երկրորդներին պահելով իբրեւ ապագայ ռազմական ոյժերի պաշար, մի քանի տարիներից յետոյ, երբ իրենց բուն էութիւնը մոռացած կը լինէին, իբր օտար ազգութիւններ**): Երկրի բնական պաշտպանողական ոյժերից զրկելով նուաճած երկրամասը, երկիրն ինքնին մնում էր նուաճուած մնալու չար բախտի հարուածի տակ, որով տիրապետողներն այլեւս կարիք չունէին սեփական ոյժեր պահել նուաճած երկրների մէջ:

§ 13. Թէ այս քաղաքականութիւնը տեւական գիծ էր Թաթար տիրապետողների համար, երեւում է ո՛չ միայն մեր սեփական պատմիչների տուած տեղեկութիւններից, այլ եւ օտար աղբիւրներն նոյնն են պատմում:

Թաթարների առաջին արշաւանքի արհաւիրքներից յետոյ եւս նոյնն է շարունակուել եւ ապագային: Օտար ճանապարհորդներ, որոնք Եւրոպայից Ծայրագոյն Արեւելք էին դիմում կամ վաճառական-քաղաքագէտի ձեւով,

*) Տես Յաւելուած Դ.:

**) Նոյն մտայնութեան գործադրութիւնն էր Օսմանեան Հարստութեան ենիչէրիների դրութիւնը:

(ինչպէս Մարկոյ Պոլոն) եւ կամ բուն քաղաքական նպատակներով եւ ձըգտումներով Մոնղոլների աշխարհն ուղարկուած դեսպանութիւններ, շատ աւելի ուշ ժամանակ, նոյն իրողութեան առաջ են կանգնած տեսնում իրենց եւ իրենց թողած ճանապարհորդական Յուշերի մէջ հետաքրքրական մանրամասնութիւններ են պահած մեզ համար։

Այս վերջին տեսակի ճանապարհորդներից է ԺԵ․ դարի սկզբին (1403-1406 թ. թ.) իր թագաւորի, Սպանիայի Հենրիկոս Կաստիլիացու հրամանով Մոնղոլների տիրապետ Լենգ-Թեմուրի մօտ գնացած Կլավիխոն, իբրեւ գլուխ յատուկ դեսպանութեան, որը իւր ճանապարհորդութեան մասին թողած է շատ հետաքրքրական,— մանաւանդ Հայերիս համար,— մի երկ, սպաներէն լեզուով, որից եւ թարգմանուած է Ֆրանսերէն եւ Ռուսերէն (Ruy Gonzales de Clavijo: **Itineraire de l'Ambassade Espagnole à Samarcande,** en 1403-1406, Сборник Русск. Литературы, Императ. Академiи. С.П.Б. 1882, հրատարակուած I. Sreznevski-ի ձեռքով, Սպաներէն բնագրի հետ) նաեւ Անգլիերէն (Clavijo: **Embassy to Tamerlane,** 1403-1406, Transl. from the Spanish by Guy le Strange, with introduction, New York, London, Harper & Bros., 1928)։

Կլավիխոն իւր ճանապարհորդութիւնը կատարել է Հայաստանի միջով, Տրապիզոնից մինչեւ Խոյ, որ համարում է Հայաստանի սահմանագլուխը,— («Այս քաղաքից սկսւում է Մեծ Հայքը եւ վերջանում է Պարսիկների երկիրը», էջ 329)— եւ ապա դէպի Սամարղանդ՝ Պարսկաստանի միջով։ Թեմուրի եւ Աղ-Գոյուն Թաթար-Թուրքերի մէջ եղած պատերազմի մասին ասում է․—

...« (Թեմուրն) անյապաղ գրաւեց Դամասկոս քաղաքը գրոհով եւ քաղաքն աւարի տրուեց, որից յետոյ Դամասկոսի մէջ մեծաքանակ բազմութիւն ժողովեց գլխաւոր վաճառականներից եւ պահակների հսկողութեամբ ուղարկեց Սամարղանդ (որ այն տեղ բնակութիւն հաստատեն եւ տեղական վաճառականական գործը շարունակեն)։ Նոցա հետ միասին Թեմուրն ուղարկեց Աղ-Գոյուն Թուրքերից բաւական թւով մարդիկ, ինչպէս եւ Սվազ քաղաքից գերի տարուած բնակչութեան մեծ քանակութիւնը, որոնց մէջ կային նաեւ շատ հայեր՝ Քրիստոնեաներ, Սվազ քաղաքից եւ շրջակայքից...»։ (Clavijo: **Embassy**... էջ 134)։

§ 14․ Որքան դիւրին էր գերեվարութիւնը, իբրեւ միջոց տիրապետողի ամայացած երկիրը լեցնելու եւ շէնցնելու համար, նոյնքան եւ մեծ դժուարութիւնների հետ էր կապուած գերի ընկածների ազատութեան փորձը։ Ամէն դուռ փակուած էր նոցա առաջ, նոյն իսկ գետերի ընթացքը հսկողութեան տակ էր առնուած։

Թէ որքան մեծ դժուարութիւնների հետ էր կապուած այն, պիտի ծանօթանանք Կլավիխոյի ճանապարհորդութեան տուեալներից։ Թէեւ նկարագրութիւնը վերաբերում է ԺԵ․ դարի Թաթարական իշխանութեան, սակայն յայտնի է, որ Արեւելքը դիւրութեամբ չէ փոխում իւր ընդգրկածը եւ դարերն այն-

տեղ շատ քիչ արժէք ունին ընդունուած սովորոյթը եւ բռնած, որդեգրած գիծը փոխելու համար:

«Օքսուս — Oxus — գետից անցնելու ընդհանուր սովորութիւնը սահմանուած Թեմուրի կողմից, պատմում է Կլավիխոն, այս էր: Երբ Թեմուրն ինքն անցնում էր գետը, գետի վրայ ձգուած կամուրջը կործանւում էր իսկոյն իր յետեւից՝ իր հրամանով: Եւ ապա, քանի որ կամրջով անցնելու հնարաւորութիւն չկար, նաւակներ էին գործի դրւում, գետն անցնելու համար՝ մի ափից միւսը: Ոչ ոքի արտօնութիւն չէր տրւում Սամարղանդի շրջանից անցնել Օքսուս գետի հարաւային մասերն՝ առանց յատուկ թոյլտուութեան եւ վկայագրի: Այդպիսի անձերը պարտաւոր են յայտնել, թէ ե՞րբ են եկած (Սամարղանդ) եւ ո՞ւր են կամենում գնալ. այդպիսի արտօնագիրն անհրաժեշտ էր նոյնիսկ Սամարղանդ ծնուած ազատորեաների համար:... Բոլոր նաւերը, որ գետն անցնելու են սահմանուած, ունին յատուկ պահակներ՝ դըրուած յատուկ նաւերի եւ նաւակների վերայ, Թեմուրի հրամանով, անցորդները դիտելու եւ հսկելու անցուդարձի գործի վերայ: Եւ նաւավարն եւս բաւական մեծ գումար է պահանջում իբրեւ անցի սակ, նորանից, որոնք գետն անցնել են կամենում:

«Թէ ինչու այդ պահակները դրուած են (նաւերի վերայ) Թեմուրի կողմից, ինչպէս եւ այլ տեղեր եւս, ինչպէս կանխօրէն եւս բացատրած ենք, դորա բուն պատճառն այն է, թէ քանի որ իբրեւ հետեւանք իւր պատերազմների՝ մեծաքանակ գերիներ էին բերած Սամարղանդ... ստիպելով նոցա թողնել իրենց հայրենի երկիրը եւ գաղթել: Եւ այս արել էր որպէսզի Սամարղանդի երկրամասը կրկին նոր ազգաբնակչութեամբ լցնէ եւ որպէսզի յաջողէ այն, հրամայած էր, որ ոչ ոք պատեհութիւն ունենայ խուսափել (գերութիւնից) եւ վերադառնայ այն երկիրը, որտեղից բերուած էին (բռնօրէն):

«Եւ յիրաւի, երբ մեր ճանապարհորդութիւնն էինք կատարում, անցնելով Պարսկաստանի եւ Խորասանի — Khurassan — միջով, յաճախ էինք հանդիպում Թեմուրի կողմից ուղարկուած պաշտօնեաների, որոնք որոնում, որսում եւ ժողովում էին այն անձերը, որոնք կորցրել էին իրենց ծնողները, որոնք որբեր էին, նոյնպէս եւ այրեր ու կանայք, որ մնացել էին անտուն ու անտէր, թափառիկ կամ ապրուստի միջոցներից զուրկ: Այսպիսի անձերը, այդ պաշտօնեաների կողմից ի մի էին ժողովւում եւ բռնի — ո՛չ նոցա կամքով կամ ազատ ուղարկւում էին Սամարղանդի շրջանը, երկիրը բազմամարդ դարձնելու նպատակով:

«Պէտք էր տեսնել այդ բազմութիւնն իրենց ուղին կտրելիս, մէկն առաջը մի կով ձգած, միւսը՝ խեղճ մի էշ հեծած, ուրիշներն՝ ետեւից ընկած մի ոչխարի, միւսները՝ մի երկու ուլ ու մաքիի, այլք՝ այծի... Պատմում էին մեզ, թէ այս եղանակով, յիրաւի, Սամարղանդի շրջանի բնակչութիւնը վերջին ժամանակներս աճել էր մեծապէս (Թեմուրի) այդ կարգադրութեամբ, որով այժմ այնտեղ հաշւում է մինչեւ 100,000 հոգի եւ կամ, թերեւս, է՛լ աւելի

*մուտք գտած ժողովուրդ»*։ (Clavijo: **Embassy to Tamerlane**, 1403—1406, *էջ* 201–202)։

*Ինչ որ Թեմուր–Լանգի ժամանակն էր, ԺԵ. դարի սկզբին, նոյնն էր եւ Թաթարների առաջին արշաւանքի դաժան օրերին մեր երկրի մէջ ԺԳ. դարի կէսերին եւ յետոյ։ Նոյն անողորմ կեղեքումը, նոյն գերեվարութիւնը, նոյն տեղահանութիւններն ազգաբնակչութեան պակասը լցնելու եւ վաճառականութիւնը ծաղկեցնելու նոյն հոգը, որպէսզի հարկերի աղբիւրը չը ցամաքէր եւ ի հարկին, երբ ժողովուրդն անկարող լինէր հարկերի ուչութեամբ պետական ծախքերը հոգալ, անհատ–հարուստ վաճառականի «առատ տուրքը» կարող լինէր այդ անդունդը գոցել։ Նոյն պատկերն ենք տեսնում եւ Արեւելեան Հայքում «յեօթն հարիւր եւ երեք թուականին Հայոց», այն է* 1254 *թ. Փրկչի, երբ*

*«... Առաքեաց Մանգու Ղանն եւ մեծ զօրավարն Բաթու զայր մի ոստիկան, Արղուն անուն, որ ի Գիւուգ Ղանէն առեալ էր հրաման վերակացութեան հարկացն արքունի... եւ զմիւս եւս ի գլխաւորաց ... որում անուն էր Թօրա Աղա... աշխարհագիր առնել յամենայն ազգս, որ ընդ ձեռամբ նոցա... հասին եւ աշխարհն Հայոց և՛ւ Վրաց և՛ւ Աղուանից եւ որ շուրջ զնոքօք գաւառք՝ սկսեալք ի տասնամենից եւ ի վեր ընդ գրով համարոյ արկանել զամենեսին, բաց ի կանանց։ Եւ յամենեցունց պահանջեալ խստագոյն հարկս, աւելի քան զկար մարդոյն եւ սկսան չքաւորիլ եւ նեղէին անհնարին կտտանօք եւ չարչարանօք եւ գելոցօք եւ որ թագչէր՝ ըմբռնեալ սպանանէին... Այլ եւ իշխանքն տեարք գաւառացն նոցուն գործակից լեալ ի նեղելոցն եւ ի պահանջելն վասն իւրեանց շահելոյ... այլ եւ զամենայն արուեստաւորս... զամենեսեան ի հարկի կացուցին... զերկաթահանս, զդարբինս եւ զշապարարս... զամենայն դուռն շահից հատին ի մարդկանէ եւ ինքեանք միայն շահէին եւ զամենայն աղահանսն առին, որ ի Կողբ եւ որ յայլ կողմանս։*

*«Նաեւ ի վաճառականաց բազում ինչս շահեալ, կուտեցին զանձս սաստիկս ոսկւոյ եւ արծաթոյ եւ ականց պատուականաց եւ վայիւ եւ աշխարով լցեալ զաշխարհս, թողին չար ոստիկանս ի վերայ աշխարհացս զնոյն պահանջել յամենայն ամի...*

*«Բայց մեծարեցաւ ի նոցանէ այր մի մեծատուն վաճառական Ումեկ անուն, զոր ինքեանք* Ասիլ *կոչէին, այր բարեգործ... որ ապրեցաւ յաւերիլն Կարնոյ քաղաքի ի Թաթարացն հանդերձ որդւովքն Յովհաննու Ստեփանոսիւ եւ եղբարք իւրով եւ էր յայնժամ ի* Թիֆլիս *քաղաքի բնակութիւն կալեալ եւ հայր անուանեալ թագուորին Վրաց Դաւթի եւ մեծարեալ ի Ղանէն գրով եւ յամենայն աւագանւոյն։ Սա* առատ տուր ետ *Արղունին եւ որ ընդ նմա եւ մեծարեցաւ յոյժ ի նոցունց։... Նոյնպէս եւ որդիքն* Սարաւանին, *Շնորհաւորն եւ Մկրտիչն, ընչաւէտք եւ մեծատունք»։ (Կիրակ. Գանձկ. Պատմ., էջ* 348–50 — *Համեմտ. Գարեգին Արքեպ. Յովսէփեան — «Նիւթեր եւ Ուսումնասիրութիւն-*

ներ Հայ Արուեստի եւ Մշակոյթի Պատմութեան», Պրակ․ Ա․, «Վախտանգ Որդի Ումեկայ», էջ 8–12, Երուսաղէմ, 1935) —

Եթէ Մանազկերտցի Ումեկի սերունդը կարող էր 21,000 դրամով գնել Ջուայ գիւղը եւ Ստեփանոս՝ որդին Յովհաննու խոռակերտը եւ «զիր գեղեան զայգին որ ի Շղուեր», 10,000 «սպիտակ սուլթանի» վճարելով, որ շուրջ $15,000 է (Համեմա․ Clavijo: Embassy... էջ 232, 276, Ստ․ Օրբ․ էջ 493), ապա պէտք է երեւակայել թէ նորա «առատ տուրքը» որքան աւելի մեծագումար նուէր պիտի լինէր Արղունին։

§ 15․ Հայ իշխանների Սիւնեաց Սմբատ Օրբէլեանի դէմ լարած դաւերի պատճառով Սմբատն երկրորդ անգամ ստիպուած լինելով Մանգու Խանի դուռն երթալ, (1256 թուին) այնտեղ է գտնում նաեւ Արղունին «վասն մատնութեան ինչ... եւ կայր անդ ի կապանս», որովհետեւ Արղունին ամբաստանող «Սեւինճ բէկ ոմն եւ Շարափադին, դիւանն այսր աշխարհի, կամէին սպանանել զԱրղունն եւ ինքեանք գալ ի տեղի նորա»։ Սակայն, շնորհիւ Սմբատ Օրբէլեանի հաւատարիմների ու վկայութեան, Արղունն արդարանում է Մանգուի առաջ «Եւ հանեալ ի կապանաց... մեծարեաց արքայ զնա եւ ետ յառաջին գործն»*)։

§16․ Արղուն երկրորդ անգամ «առաւել պնդութեամբ» Հայաստան գալով, հարկահանութեան հետ ստանում է նաեւ նոր իշխանութիւն եւ դառնում է «Մեծ Ոստիկան», որով առիթ է ունենում խառնուելու նաեւ երկրի ներքին քաղաքականութեան եւ աշխատում է քաղաքական գործերի ղեկավար եւս լինել։ Այս նոր իշխանութեամբ եւ դիրքով առիթ է գտնում հետապնդելու Վրաց Շալայի որդի Դաւիթ թագաւորին (=1260 թ․), երբ վերջինս դառնացած Թաթարների կողմից դրուած անվերջ նորանոր հարկերից եւ նեղութիւններից, թողնում է Տփխիսը եւ հեռանում Ափխազների երկիրը եւ ամրանում Սուանէթ ամրոցի մէջ, իւր մանկահասակ որդու հետ։ Արղունը հետապնդում է փախուստի դիմած թագաւորը, նորան կալանաւորելու նպատակով, սակայն ժամանակին հասած մի խումբ Վրացիներից յաղթուելով, այլ եւս «ոչ իշխէր այնպէս համարձակ մտանել եւ խուզել զվայրսն»։ Ամօթահար եւ վրէժով լի եւ իբրեւ վրէժի լուծումն, նա թելադրում է Հուլաւուին եւ կալանաւորել է տալիս Դաւթի կինը՝ Գոնցա թագուհին, ինչպէս եւ «Զիշխանն մեծ Շահնշահ եւ զՋալալն Հասան, զտէրն Խաչենայ... պատճառանօք պարտուց եւ հարկի»։ Օգտուելով երկրի մէջ եղած ընդհանուր անկայուն վիճակից չարաչար տանջանքների է ենթարկել տալիս Խաչէնի Տիրոջ, Արցախի Իշխան մեծ Հասան Ջալալին, չնայելով, որ վերջինս հարազատ աղջիկը, Ռուզաքանը կամ Ռուզանը, Ջարմաղանի որդի Պորա Նուինի կինը, անձամբ ճանապարհ էր ընկած Հուլաւուի արքունիքը, նորա կնոջ միջնորդութեամբ, իւր հօր ազատութիւնը հայցելու Հուլաւուից։ Արղունը դէպքերն չտապեցնում է եւ որպէսզի Հասան

*) Պատմ․ Սիւնիքեան, հրատ․ Ղուկասեան Գրադարանի, Թիֆլիս, 1911, էջ 412–14։

*Ջալալի ազատութիւնն անհնար լինի, հրամայում է նահատակութեամբ վերջ դնել նորա կեանքին* (†1261 *թ.*)*:*)

*Նոյնպիսի դառն մահով Արղունն սպանել է տալիս նաեւ* (1261 *թ.*) *մեծ իշխան Շահնշահի որդի Զաքարէն***)*:

§ 17. *Արղունին վերջին անգամ պատմութեան մէջ հանդիպում ենք* 1282 *թուին, երբ Սիւնեաց Սմբատ Օրբէլեանը վախճանուելով անզաւակ, «որդիացուցեալ իւքեան» իւր եղբօրորդի Տարսայիճը, «գնաց ի մեծ Դիւանն արքունի առ Արղունն եւ Սահիպն ի Դաւրէժ... եւ անդ հիւանդացաւ... ուր եւ մեռաւ իսկ»* (1282 *թ.*)*: Սմբատը, մահից առաջ, իւր իշխանութիւնը յանձնում է Տարսայիճին, իսկ վերջինիս էլ յանձնարարում է իւր բարեկամ Արղունի խնամքի ու հովանաւորութեան:* (*Օրբէլ.* 419–420)*:*

§ 18. *Առաջ բերուած պատմական այս համառօտակի քաղուածների մէջ չատ քիչ բան կայ, որով կարելի լինի Ֆրիկի վերն առաջ բերած Տաղի հետ որեւէ առնչութիւն ունեցող պատմական դէպք բացատրել եւ կամ ժամանակի նկատմամբ մի յենակէտ գտնել, որոչելու այն, եթէ միայն աչքի առաջ չունենանք Արղուն եւ Բուղա անունները, որ հանդիպում ենք Տաղի վերնագրի եւ առաջ բերած կոչումների մէջ: Ուրեմն, այս տեսակէտից մեր վերն առաջ բերած պատմական կոչումները եւ բացատրութիւնները եւ էական իրադարձութիւնները տարբեր չեն:*

§ 19. *Այս երկու անունների միաժամանակ յիշատակութեան երկրորդ անգամ պատահում ենք Թաթարների արշաւանքի եւ նոցա տիրապետութեան հետագայ շրջանում, միաժամանակ այն բոլոր միւս պատմական անունների հետ, որոնց յիշատակութիւնը հանդիպում ենք Ֆրիկի այդ Տաղի մէջ:*

*Բուղայի եւ իւր գործակիցների դաւադրական գործերի մասին մեր ազգային Պատմիչների մէջ նոր տեղեկութիւններ չգտնելով այլեւս, դիմենք օտար աղբիւրների:*

*Մարկոյ Պոլոն* — Marco Polo — *Վենետիկցի յայտնի ճանապարհորդը, հետախոյզ եւ վաճառական, քաղաքագէտ եւ դիւանագէտ, որ* 1269 *թուին ելաւ Վենետիկից, անցաւ Հայաստանի միջով եւ դիմեց հեռաւոր Ծայրագոյն Արեւելք, Մոնղոլների իշխանութեան երկիրները, իւր ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԵԱՆ մէջ մի պատմուածք ունի Բուղայի մասին, որ հեռաւոր կապ կարող է ունենալ Ֆրիկի Տաղի մէջ յիշատակուած Բուղայի հետ:*

*Իւր* «Ճանապարհորդութեան» *Դ. գրքի մէջ, որ համառօտ տեղեկագրութիւն է Թաթար իշխանապետների ներքին պատերազմների, հետեւեալն է պատմում,—*

*«Աբաղան, Արեւելքի տէրը, ունէր բազմաթիւ նահանգներ եւ երկրամասեր, որոնք սահմանակից էին Քայդու թագաւորի* (*Խանի*) *հողերի հետ: Այս*

*) *Կիրակ. Պատմ. էջ* 373–75:— *Օրբէլեան, Պատմ. Սիսակ. էջ* 412–14:

**) *Կիրակ. Պատմիչ, էջ* 377:

հողերն ու երկիրները տարածւում էին դէպի Մենաւոր Ծառի կամ ըստ Աղէքսանդրի Գրքի Չոր Ծառի կողմերը*)... Եւ Աբաղան Քայդուի ժողովրդի կողմից ականկալուած ասպատակներին հսկելու համար ուղարկեց իւր որդի Արղունը, հեծեալների զօրեղ մի գնդի հետ, որպէսզի հսկէ եւ պահպանէ Չոր Ծառի եւ Ջոն (Jon) — գետի կապանն ու անցքը եւ այս պատճառով Արղունը մնաց այդտեղ իւր գնդի հետ բաւական ժամանակ*):

Քայդու Խանը ժողովեց մեծաքանակ մի բանակ եւ այդ զօրքի հրամանատար կարգեց իւր եղբայրը՝ Բարակ**) անունով, որը քաջ եւ խոհեմ մարդ էր, եւ բանակը իւր եղբօր գլխաւորութեամբ, ուղարկեց Արղունի դէմ կռուի...» (Գլ. Ե.):

Երբ Արղունը յաղթանակ տարաւ Քայդուի եղբօր Բարակի եւ նորա բանակի դէմ, շատ ժամանակ չանցաւ, որ նա տեղեկութիւն ստացաւ իւր հօր Աբաղայի մահուան մասին***), որը մեծ վիշտ պատճառեց նորան: Բանակը կարգաւորեց եւ ուղի ընկաւ իւր հօր Արքունիքը, ընդունելու պետութեան իշխանութիւնը, ինչ որ իւր իրաւունքն էր: Բայց քառասուն օրեր պէտք էին, որ նա տեղ հասնէր:

*) Սոյն — Կալլիսթենեայի «Պատմութիւն Աղէքսանդրի» վիպասանութի մէջ 'Pseudo-Callisth., ed. Muller, III, p. 177, E. A. Walls Budges: The Life and Exploits of Alexander the Great, Թրգմ. Եթովպական Սո. Կալիսթենէսի բնագրից, էջ 161–163, London, 1896, յիշատակուած է այդ պատմուածքը Արեւի եւ Լուսնի ծառերի անունով: Ըմանք այս ծառերի անունները կապում են Ս. Գրքի մէջ յիշատակուած — «Եւ ծանիցեն ամենայն փայտք դաշտի, թէ ես եմ... որ խոնարհեցուցանեմ զփայտ բարձրացեալ եւ բարձրացուցանեմ զփայտ խոնարհեալ եւ ցամաքեցուցանեմ զփայտ դալար եւ դալարեցուցանեմ զփայտ զօսացեալ» (Եզեկ. ԺԷ. 24) արտայայտութեան հետ: (Marco Polo, ed. H. Yule, Հրատրկ. Գ. 1929, N. Y., Scrabner's, էջ 134.— Հմմտ. նոյն էջի H. Cordier-ի ծննթ.):— Այս Չոր Ծառի մասին յիշատակւում է նաեւ Ֆիրդուսին «Արքայից Մատեան»ի մէջ՝ Դիդան Սիքենդար տիրախտ-ի-գայյարա=(Աղէքսանդրի խօսակցութիւնը խօսող ծառերի հետ) վերնագրով: (Livres des Rois, V. p. 229): Մենաւոր կամ Չոր Ծառի մասին մանրամասն տեղեկութիւն տես **The Book of Ser Marco Polo,** edit. by Coln. H. Yule, Vol. I, p. 134-145, London, 1875:

*) Պետութեան այս սահմանագիծն այն օրերին, Ղազուինից կամ Ռէյից — Rei=Kazwin — մինչեւ Օքսուս — Oxus — գետի եզերքը գտնւում էր, սովորաբար, Մոնղոլ Պարսկական իշխանապետների՝ իշխանների ձեռքին, որի կառավարիչն էր լինում թագաժառանգը: Ուստի եւ Հուլաղու Խանի օրով այդ երկրամասը գտնւում էր Աբաղայի ձեռքում, Աբաղայ Խանի ժամանակ՝ Արղունի եւ Արղուզ Խանի ժամանակ Խազանի ձեռքի տակ: (Hammer = Ilkhans, II, p. 143-144):

**) Բարակ կամ Բոռակ =Barak = Borrak — Քայդուի եղբայրը չէր. (Marco Polo, ed. H. Yule, Vol. I, p. 10, Prologue) այլ Ջաղաթայ ցեղի գլխաւորն էր, դաշնակից Քայդուի: Բարակի արշաւանքը դէպի Խորասան տեղի ունեցաւ 1260 թ. սկզբներին: Արղունն այդ ժամանակ 15 տարեկան էր եւ իւր հայրը, Աբաղայ-Խանն էր, որ հրամանատարութիւնը վարեց: Ճակատամարտը հաւանօրէն տեղի ունեցաւ Մուրղաբ գետի վերին հոսանքի մօտ Բադղիսի — Badghis — մօտ, Հերաթից հիւսիս: Բարակը երկար ժամանակ չը մնաց իշխանութեան գլուխ, ապստամբած Քայդուի մօտ: Մեռաւ 1270 թ.:

***) Աբաղայ-Խանը մեռաւ Համադանի մէջ, Ապրիլ 1, 1282 թուին, այն է Բարակի կամ Բոռակի պարտութիւնից տասներկու տարիներ յետոյ:

«Եւ այնպէս պատահեց, որ Արղունի հօրեղբայրը, որի անունն էր Ակոմատ—Acomat (=Ահմէդ) — Սուլթան, որ Սարակինոս էր դարձել *), երբ լսեց իւր եղբայր Աբաղայի մահը, մինչ իւր եղբօր որդի Արղունը տակաւին շատ հեռու էր, մտածեց, թէ մեծ պատեհութիւն էր իւր համար՝ իշխանութիւնը յափշտակելու։ Ուստի ժողովեց մեծաքանակ զօրք եւ դիմեց ուղիղ իւր եղբօր՝ Աբաղայի արքունիքը, բռնագրաւեց իշխանութիւնը եւ ինքն իրեն Խան հրատարակեց։ Յափշտակեց նոյնպէս եւ գանձը, որ շատ մեծ էր եւ անչափ։ Այս բոլորը կատարեց, իբրեւ մի խորամանկ սրիկայ. բաժանեց իշխանների եւ զօրքի մէջ, որպէսզի գրաւէ նոցա... իշխանները եւ զինուորները, երբ տէր դարձան նորա ձեռքով բաշխած առատ կողոպուտին, պատրաստ էին յայտարարել նորան իբրեւ լաւագոյնը խաներից... յայտնեցին, որ իրենց տէրը միայն նա է։ Բայց մի մեծ չար գործ եւս կատարեց**), որն ամէնքի կողմից պարսաւի էր արժանանում։ Իւր եղբայր Աբաղայի բոլոր կանայքն եւս առաւ եւ պահեց իւր համար, իբրեւ կին։

«Իշխանութիւնը բռնագրաւելուց յետոյ լուր ստացաւ, թէ իւր եղբօր որդին՝ Արղունը իւր բոլոր ուժերով գալիս է (իւր դէմ)։ Իսկոյն հրաւիրեց իւր իշխանները եւ ամբողջ ժողովուրդը եւ մի շաբաթուայ ընթացքին կազմակերպեց մի մեծ բանակ, Արղունին դիմաւորելու համար։ Ապա առաջ խաղաց թեթեւ սրտով, հաւատացած, որ պիտի յաղթէր... Յանկութիւն ունենալով միայն ձերբակալել Արղունը եւ սպանել դաժան մահով»։ (Գլ. Զ.)։

§ 20. Ապա պատմում է Ահմէդի յառաջ խաղալը 60,000 զինուորների բանակով, Արղունի կոչը իւր հաւատարիմներին, (Գլ. Է. Ը.), կողմնակիցների խոստումը հաւատարիմ մնալ նորան եւ դրդումը յառաջ շարժելու (Գլ. Թ.), Արղունի դեսպանութիւնը հօրեղբօր մօտ՝ գահը կամովին վերադարձնելու համար (Գլ. Ժ.), հօրեղբօր մերժումը (Գլ. ԺԱ.), պատերազմի պատ-

*) Տես քիչ յետոյ § 26.— Տես նաեւ Ցուցլուած Ա. Զ. Արտայայտութեան նոյն եղանակը եւ բանաձեւն ենք տեսնում նաեւ Հեթում Պատմիչի մէջ.— «Զկնի մահուան Ապաղայի ժողովեցան Թաթարք եւ կացուցին տէր ի վերայ իւրեանց զՏանգոտար զեղբայրն Ապաղայի։ Սա յաւուրս մանկութեան իւրոյ մկրտեալ էր եւ Նիկողայոս կոչեցեալ. բայց յետոյ առ կենաց կցորդ լինելոյր Սարակինոսաց՝ զորս սիրէր, սարակինոս եղեւ եւ կամեցաւ կոչիլ Մահումէտ Խան...»։ (Հեթում Պատմիչ Թաթարաց, յեղեալ ի լատին օրինակէ ի հայ բարբառ... Վենետ. 1842 — էջ 56)։

**) Այդ «չար գործ»ը սովորական մի երեւոյթ էր Մոնղոլական բարքերի տեսակէտով։ Մի այլ տեղ, ինքը, Մարկոյ Պոլոն՝ նկարագրելով Մոնղոլների սովորութիւնները եւ բարոյքի գծերը, ասում է, թէ «Երբ հայրը մեռնում էր, (աւագ) որդին իրաւունք ունէր եւ կարող էր իւր հօր կանանցից, որին կամենար, կնութեան առնէր իւր համար, բացի իսկական իւր մօրից»։ (Գիրք Ա. Գլ. ԾԲ. էջ 245, ed. H. Yule), հետեւաբար իբրեւ բարոյքի գիծ, ոչ ոքի «պարսաւին արժանանալ» չէր կարող այդ արարքը։— Մոնղոլ պատմութեան մէջ նշանաւոր Բուլուխան-խաթունը — Bulughan— յաջորդաբար կին դարձաւ Աբաղայի եւ սորա որդի Արղուն-Խանի, եւ վախճանուեց Կուր գետի ափին, 1286 թուին։ (Hammer: Ilkhans, Vol. I, p. 374 եւ.— Erdmann: Temudschin, p. 216)։

 բատութիւն, Արղունի բանակի պարտուիլը (Գլ. ԺԲ.) եւ փախուստ Արղունի.

«Եւ հետապնդումը Արղունը ձերբակալելու համար սկսուեց: Եւ երբ ձերբակալեցին... վերադարձան բանակը՝ լի ուրախութեամբ... Ակոմատը (=Ահմադը) նախ հրամայեց շղթայել իր եղբօր որդին եւ խիստ հսկողութեան տակ պահել եւ ապա, քանի որ չափազանց յայրատ մի անձն էր*)... (սկսեց) զուարճանալ արքունի գեղեցիկ եւ գրաւիչ կանանց հետ: Թողեց, որ մի մեծ Բելիկ**) հրամանատար լինի զօրքի, յանձնելով սորան նաեւ Արղունը, պահպանել նորան իբրեւ իւր սեփական կեանքը, իրաւունք տալով, որ զօրքն աւելի դանդաղ կայանքով յառաջանայ... Եւ այսպէս Ակոմատը (=Ահմէդ) ուղղի ընկաւ մեծ չքախմբով դէպի արքայական աթոռանիստը... Արղունը մնաց տակաւին շղթայակապ եւ այնքան տառապած սրտով, որ կամենում էր մեռնել***), (քան ապրիլ), (Գլ. ԺԲ.):

«Պատահեց այնպէս, որ այդ օրերին ապրում էր մի նշանաւոր թաթար իշխան, տարիքն առած եւ ծեր, որ խղճաց Արղունին եւ ասաց ինքն իրեն, թէ չար եւ ապօրէն գործ է իրենց օրինաւոր տիրոջն իբրեւ բանտարկեալ պահել, ուստի եւ որոշեց անել ամէն ինչ, որ հնարաւոր էր (Արղունի) ազատութեան համար: Չը դանդաղեց, այլ գնաց անվերջ միւս իշխանների մօտ եւ իւր միտքը յայտնեց նոցա, ասելով, որ շատ լաւ պիտի լինի, եթէ Արղունն ազատեն եւ իրենց տիրապետ կարգեն, քանի որ այդ արդէն իւր իրաւունքն էր: Եւ երբ միւս իշխաններն եւս լսեցին այն, ինչ որ առաջարկեց նոցա եւ, քանի որ նո-

* Մարկոս Պոլոն պատմելով Քուբլայ-Խանի կողմից Մոնղոլական Մանզի — Manzi — նահանգի գրաւման մասին (1268 Թ.), ասում է.— «Այդ երկրամասի ժողովուրդը ռազմիկ լինելուց աւելի մի այլ բան էր. նոցա ամբողջ հաճոյքը միայն կանանց մէջ էր. ուրիշ ոչինչ՝ բացի կին ու կանայք: Այդպէս եւ ինքը թագաւորն էր այդ երկրի եւ ամենից իսկ աւելի, որովհետեւ նորա մտածողութեան կեդրոնը միայն կանայք էին, եթէ երբեք աղքատներն եւս չյիշէր եւ ողորմութեան գործ չկատարէր»:— Marco Polo, edit. of Coln. H. Yule, Vol. II, p. 128, Book II, ch. LXV.— Տես յաջորդ էջի ծանօթութիւնն եւս:

**) Բելիկ = Belik, Արաբական Malik = Մելիք բառը, որ նշանակում է՝ տէր, իշխող, իշխանների մեծ—Մարկոս Պոլոյի բնագրի մէջ գտնւում է Belik, իսկ թարգմանիչը դրած է Malik:

***) Ահմադ Թաքուդար-օղլու, 1284 թուին արշաւում է գարնան օրերին, իւր եղբօր որդու՝ Արղունի դէմ: Ճակատամարտը տեղի է ունենում Ղազուինի մօտ Եղ-խոջայ կոչուած տեղը: Արղունի ուժերը շատ նուազ էին իւր հակառակորդի զօրքի թուի համեմատութեամբ եւ պարտուեց: Փախաւ Կալայ-աթ — Kala'at — ամրոցը, որ գտնւում էր Թուսից աւելի հեռու. սակայն մերձաւորները համոզեցին, որ անձնատուր լինի: Ահմէդ-Թագուդար Խանը վարուեց նորա հետ շատ մեղմ եւ գիջող եւ, չը նայած, որ իւր գլխաւոր խորհրդականներն ստիպում էին նորան սպանել տալ կալանաւոր եղբօր որդուն, բայց Ահմէդը միշտ էլ մերժում էր, որովհետեւ, ինչպէս պատմւում է, իւր ամբողջ ուշադրութիւնն ու մտքերը գրաւած էր իւր նոր կինը՝ Թուդայ — Tudai — Խանումը, իւր հրապոյրներով եւ գեղեցկութեամբ: (Marco Poo, 11, 469):

րան համարում էին իմաստունների մէջ իմաստնագոյն անձն եւ միւս կողմից եւս իւր առաջարկը ճշմարիտ էր եւ արդար, ամէնքն եւս համաձայնեցին... եւ ասացին, որ կը միանան նորան ամենայն սիրով: Այնպէս, որ երբ միւս իշխաններն եւս համաձայնեցին՝ Բողան — Boga — այսպէս էր այն անձի անունը, որ այս բոլոր գործը յղացել էր եւ առաջ էր տանում,— Բողան միացած Էլչիդայի — Elchidai,— Թողանի — Togan,— Թեգանայի — Tegana,— Թագաչարի — Tagachar,— Ուլաթայի — Ulatai — եւ Սամաղարի,— Samagar— հետ. ... ամէնքը միասին գնացին դէպի այն վրանն, ուր Արղունն էր բանտարկուած:

«Երբ հասան այնտեղ, Բողան, որ առաջնորդն էր գործի, առաջինը խօսեց այսպէս.— «Մեր բարի իշխան Արղուն, մենք շատ լաւ գիտենք, որ չար գործ կատարեցինք, քեզ կալանաւոր դարձնելով եւ եկանք յայտնելու, որ մեր ցանկութիւնն է Իրաւունքի եւ Արդարութեան ուղուն դառնալ:Ուստի եկանք քեզ ազատ արձակելու եւ քեզ մեր օրինաւոր տէրը դարձնելու, որին արդէն իսկ տէր ես իրաւունքով»: Ապա Բողան դադար առաւ եւ այլեւս խօսք չասաց»: (Գլ. ԺԳ.):

«Երբ Արղունը լսեց Բողայի խօսքերը, այդ բոլորն ընդունեց իբրեւ անպատեհ կատակ եւ հեգնանք եւ պատասխանեց դառնացած սրտով եւ հոգով: «Բարերար Աստուած, ուրեմն հեգնելու եկած էք այստեղ ինձ՝ այսպէս: Բաւական է, անշուշտ, այն չարիքը, որ դուք արդէն արել էք՝ մեծ անարդարութեամբ եւ ինձ, ձեր օրինաւոր իշխանին ու տէրոջ, կալանաւոր էք պահում շղթաների մէջ պրկուած: Ինքներդ էլ գիտէք, որ ձեր արածը չար եւ անիրաւ գործ է. ուստի պիտի խնդրեմ, որ ելնէք, հեռանաք եւ դադարէք ինձ ծաղրել եւ նախատելուց»: «Իմ բարի տէր եւ իշխան Արղուն», ասաց Բողան, «վստահ եղիր, որ նախատելու չենք եկած, այլ խնդրում ենք, տարուած ըդգաստ նախանձախնդրութեամբ, որի համար պատրաստ ենք երդուելու յանուն մեր Օրէնքի»:

«Ապա բոլոր իշխանները հաւատարմութիւն երդուեցին նորան, իբրեւ իրենց օրինաւոր տիրոջ եւ Արղունն եւս երդուեց նոցա, որ երբէք պիտի նկատի չառնէ, թէ նոքա էին, որ իրեն կալանաւորեցին եւ արգելափակ արին, այլ նոցա իւր սրտի սիրելիները պիտի համարէ, ինչպէս իւր սեփական հօր նկատմամբ կարող էր անել...:

«Եւ երբ այդ (փոխադարձ) երդումները կատարուեցին, ապա ջարդեցին Արղունի ոտնկապերն ու շղթաները եւ ցնծագին ողջունեցին, իբրեւ իրենց (օրինաւոր) տիրոջը: Ապա Արղունը կամեցաւ, որ նոքա նետերի մի համազարկ ուղղեն դէպի Բելիքի (=Մելիք) վրանը... որ սպանուի: Այս խօսքերը լսելով նոքա ամենեւին չը դանդաղեցին, այլ իսկոյն նետերի մեծաքանակ մի տարափ ուղղեցին դէպի վրանը եւ սպանեցին Բելիքը: Եւ երբ այս գործը կատարուեց, Արղունն ստանձնեց գերագոյն իշխանութիւնը... եւ ամէնքը հնազանդեցին նո-

րան… Եւ սպանուածը որին անուանեցինք Բելիք (=Մելիք)՝ Սուլթան — Soldan — էր, ամեամեծ իշխանը՝ Ահմեդից յետոյ։ Այսպիսով Արղունը վերըստացաւ իւր (օրինական) իշխանութիւնը» (Գլ. ԺԴ.)։

§ 21. Այնուհետեւ պատմւում է, թէ ինչպէս Ահմեդին տեղեկութիւն է տրւում Բելիքի՝ Սուլթանի սպանութեան, Արղունի ազատութեան եւ իշխանութիւնը գրաւելու մասին, ապա Ահմէտի փախուստը, ձերբակալումը (Գլ. ԺԵ.), Արղունի առաջ բերուիլը, Արղունի կողմից անէծքով ընդունուիլը — Il dit à son ongle qe il soit le mauvenu.— եւ նորան սպանելու հրաման տալը (Գլ. ԺԶ.)։ Արղունը դառնում է տիրապետ իւր իշխանութեան եւ գահի, որին հնազանդւում են միւս իշխանները։

«Եւ երբ Արղունը վերջնականապէս հաստատուեց իւր իշխանութեան մէջ ուղարկեց իւր որդի Խազանը — Casan—, 30,000 հեծելազօրով պահպանել Չոր Ծառի սահմանագիծը… Արղունն իւր իշխանութիւնն սկսեց 1286 Թուականին… Ահմադը թագաւորեց երկու տարի եւ Արղունը… վեց տարի … ոմանք ասում են հիւանդացաւ եւ մեռաւ*), իսկ ոմանք՝ թէ թունաւորեցին»։ (Գլ. ԺԷ)։ Տես The Book of Ser Marco Polo, the Venetian… Translated and edit. by Coln. Henry Yule, B. C., London, 1875, vol. II, pp. 464-473)։

§ 22. Ցրիկի «Վասն Արղունն Ղանին եւ Բուղային» տաղի մէջ յիշատակած Բուղայ անունը ամենայն հաւանականութեամբ պէտք է կապել Մար–

*) Արղունը մինչ կալանաւորի վիճակի մէջ էր գտնւում եւ սպասում էր շատ աւելի ծանր ելքի, միշտ իւր կնոջ, քաջասիրտ Բուլուղան — Bulughan — Խանումի կողմից էր սըրտապնդւում, որ իւր արգելափակ ընկերակիցն էր։ Եւ երբ Ահմէդը թողեց բանակը եւ հեռացաւ, արդէն Արղունին սպանելու հրամանն եւս տուած էր, որ պիտի գործադրուէր շուտով։ «Մահումէտ եւ զԱրղուն ի ձեռս գունդստապլի իւրոյ եւ մեծամեծաց իւրոց. եւ ինքն դարձ արարեալ 'ի Դավրէժ, ուր թողեալ էր զորդիս եւ զկանայս, պատուիրեաց գունդստապլի եւ մեծամեծաց իւրոց սպանանել զԱրղուն եւ զգլուխ նորա առ ինքն առաքել»։ (Հեթում Պատմ. Թաթարաց, Գլ. ԼԷ, էջ 58)։

Բուլուղանի անունը Մարկոս Պոլոն յիշատակում է մի այլ ձեւով եւս, այն է Բոլգանայ — Bolgana,— որի մահից յետոյ (1286 թուին), «Արղունն ուղարկում է իւր իշխաններից երեքին, այն է Ուլաթային — Oulatai—, Ապուսկային — Apuska — եւ Խոջային — Coja—, իբրեւ դեսպաններ մեծ Խանի մօտ,… որպէսզի Բոլգանայ-խանումի ցեղից մի այլ աղջիկ բերեն իւր համար, իբրեւ կին։… Խանն ընդունեց նոցա մեծ պատւով… եւ ուղարկեց մի օրիորդ Կոկաչին — Cocachin — անունով, որը հանդիսանում Բոլգանայ-խանումի ցեղից էր»։ (The Book of Marco Polo… edit. by Coln. II, Yule, I, Prologue, Գլ. ԺԷ. էջ 32)։— Արղունի ուղարկած դեսպանների անունները բոլորն եւս Մոնղոլական անուններ են։— Ռաշիդ-էդդին — Rashiduddin — յիշատակում է նոցա անունները իբրեւ Uladai, Apushka եւ Koja Ապուշկային համարում է Մոնղոլ Ուրնաուտ — Urnaut — ցեղից, որոնք բոլորն եւս դեր են ունեցած Մոնղոլական պատմութեան մէջ։ Ապուշկան որոշ դերով դեսպան էր ուղարկուած Մեծ Խանի մօտ, Պարսկաստանից, հաւանօրէն նոյն վերը յիշատակած անձը։ (Erdmann: Temudschin, p. 205) Խոջայի մասին յիշատակում է Ստեփ. Օրբէլեանը, էջ 426, հրատ. Ղուկ. մատենադարանի։ Հմմտ. այս գլխի § 23 ԾնԹ.։

կոյ Պոլոյի ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԵԱՆ մէջ յիշատակած եւ վերն առաջ բերած հատուածի Boga — Բողայ — անուան հետ: Այդ Boga անունը մի այլ առթիւ յիշատակուած է, Աբաղայ–Խանի մեծ զօրապետներից մէկը, որ հակառակութիւն եւ դժգոհութիւն ունէր Ահմէդ Թուքադար–օղլու խանի դէմ, ուստի եւ, ըստ այլ աղբիւրների, մասնակցում եւ ըստ Մարկոյ Պոլոյի գլուխ է կանգնում Ահմէդի դէմ կազմած դաւադրութեան եւ ազատում Արղունը կալանաւորի վիճակից: Հեթում Պատմիչն եւս, առանց անունը տալու, յիշատակում է Ահմէդի դէմ դաւադրութիւն կազմողին, ասելով.

«(Գտաւ այր) արդար, ազատարար, դաստիարակն Ապաղայ, հայրն Արղունի, այր քաջ, որոյ ի գութ շարժեալ դէն վերացոյց, եհար սատակեաց զգունդստապլն*) եւ զարքանեակս նորա սրով ի գիշերի եւ զԱրղունն զերծուցեալ ի մահուանէ, կացոյց տէր եւ վարիչ ի վերայ ամենեցուն. ուստի կէսք սիրով եւ կէսք առ ահի միաբանեալ ծանեան զնա տէր իւրեանց...»: (Հեթում Պատմիչ Թաթարաց, Վենետ. 1842, Գլ. ԼԷ, էջ 58):

Աբդուլլահ բեն Ֆէյզուլլահ Շիրազցին — Abdullah ben Fazlullah Shirazi,— յայտնի Վասսաֆ — Wassaf — մականունով, ունի յիշատակութիւն մի Buka — Բուկայի, որ անշուշտ Մարկոյ Պոլոյի Բողան է եւ մեր Ֆրիկի Բուղան: Վասսաֆը իւր «Պատմութեան» մէջ Արղունի պատմութիւնը շարունակելով, ասում է, թէ երբ Արղունը տեսաւ Ահմադը, իւր հօրեղբայրը, կալանաւոր բացականչեց Morio! — մի բառ, որ ըստ Վասսաֆի Մոնղոլ բառ էր եւ բացագանչութիւն յաջողակաձեռն աղեղնաւոր կանչելու համար, այսինքն նշան անմիջական սպանութեան, որ Մարկոյ Պոլոյի պատմութեան կրկնակն է — Il dit a son ungle qe il soit mauvenu! (Այսպիսի մի արտայայտութիւն ունի Մարկոյ Պոլոն մի այլ պատմութեան մէջ եւս, երբ Prester John գերի է բռնում Ոսկէ–Թագաւորը եւ դիմաւորում է նորան անէծքով, ասելով — Lui dist que il feust le mal venuzi — Հմմտ. հտ. II, 15):

Վասսաֆը պատմելով**) Ահմէդի դէմ եղած դաւադրութիւնը եւ Արղունի

*) Հեթումի այստեղ յիշատակած գունդստապլը ուրիշ այլ ոք է, քան Մարկոյ Պոլոյի յիշատակած Բեկլիք (= Մելիք) Սոլթանը, որն Ահմադ Խանից յետոյ ամենամեծ իշխանն էր, որ յիշատակւում է նաեւ Ալինախ — Alinak — անունով: Հմմտ. § 27, Marco Polo, p. 472, ծնթ. 1:

**) Յայտնի է, որ Պարսիկ Պատմիչներ՝ Ռաշիդ–էդդին — Rashiduddin եւ Wassaf, իրենց թողած պատմութիւնների մէջ շատ բան են փոխ առած, բերանացի լսելով Մարկոյ Պոլոյից, երբ վերջինս Պարսկաստան էր գտնւում, ամիսներ շարունակ, Թաւրիզի արքունիքի մէջ, ուր թէ՛ մէկը թէ՛ միւսը, հաւանօրէն միաժամանակ այնտեղ էին: Այդպիսի պատմութիւնների եւ լսած զրոյցների հետքեր են Գիւզերէթի Բամբակի Ծառի պատմութիւնը, Մաաբարի ձիերի վաճառքի, նոյն երկրամասի զոյգ եղբայր Թագաւորների, Նեկուվերամի — Necuveram — մերկ վայրենիների, Սումատրայի ժողովրդի,— որոնք իրենք իրենց մեծ Խանի հպատակներն էին համարում,— եւ այլ պատմութիւններ, որոնք այնքան զօրեղ նմանութիւններ ունին երեքի մէջ եւս, որ փոխառութիւնը ժխտել դժուար է: Տես Մարկոյ Պոլոյ, Vol. II, 383 եւ ծնթ. 324 եւ ծնթ., 289, 263, 274–75, 282 եւն.— Հմմտ. Vol. I, 117-118.— Hammer's **Wassaf**:

ազատուիլը, տալիս է Buka–ի անուան հետ եւ դաւադիրների անունները.— Եսուբուկա — Yesubuka—, Գուրգան — Gurgan—, Արուկ — Aruk—, Կուրմիշի — Kurmishi – եւ Արկասուն Նոյան — Arkasun Noian—, որոնք բոլորն եւս Մոնղոլ անուններ են, սակայն ոչ Մարկոյ Պոլոյի յիշատակած անունները — Էլչիդայ, Թողան — Tughan կամ Togan—, Թեգանայ, Թաղաչար — Tagachar կամ Tagajar—, Ուլաթայ եւ Սամաղար — Samaghar,— անուններ, որոնք բոլորն եւս յայտնի են, առաւել կամ նուազ չափով իրենց ժամանակակից, Մոնղոլական պատմութեան մէջ եւ յիշատակուած նոյնիսկ Պարսիկ պատմութեան մէջ:

§ 23. Ֆրիկի Տաղի մէջ դաւադիրների անունները տարբեր են, բացի Արղունի եւ Բուղայի անուններից: Տաղի մէջ յիշատակած անուններ են,— Արուխ, որ կարող ենք նոյնացնել Մարկոյ Պոլոյի Ark կամ Aroc–ի հետ. Թաչար, որ նոյնպէս կարող ենք նոյնացնել Մ. Պոլոյի Tagachar–ի եւ պատմութեան մէջ յիշատակուող Tagajar*)ի հետ: Տաղի մէջ յիշատակուած միւս անունը Սուլթան-աղայ, նոյնպէս դիւրութեամբ կարելի է նոյնացնել Մարկոյ Պոլոյի յիշատակած Belic (=Melik)–ի հետ, որ կրում էր նաեւ Suldan= Սուլթան տիտղոսը եւ որն իւր դիրքով Ահմէդից յետոյ առաջին անձն էր արքունիքի մէջ եւ որին Հեթում Պատմիչը յիշատակում է «գունդստապլ» տիտղոսով, առանց անունը տալու, մի տիտղոս, որ համապատասխան էր կամ ենթադրւում էր, թէ համապատասխան էր Սուլթան տիտղոսի հետ**):

Տաղի մէջ յիշատակուած անունների շարքում ունինք աղաւաղուած անուններ, որոնք դիւրութեամբ կարող էին Ղազանի, Սաղաղօլի եւ Սօֆի ա-

*) Թաղաչարը — Tagajar — նոյնիսկ Նիկողայոս Դ. Պապի (Փետր. 15, 1288 — Ապրիլ 14, 1292) յատուկ նամակին է արժանանում 1291 թուին, որով յորդորում էր նորան ընդունել Քրիստոնէութիւն, յղուած այն նամակների հետ, որ Պապն ուղղել էր Արղունին, Խազանին եւ կայսերական տան միւս անդամներին:— Թաղաչարը յիշատակուած է նաեւ Աբուլ Ֆարաջի — Abulfaraj–ի Պատմութեան շարունակողի կողմից, իբրեւ մէկն այն դաւադիրներից, որոնք կամենում էին գահընկեց անել Քայխաթուին — Kaikhatu:

Ուլաթայը, հաւանօրէն, նոյն անձն է, որ մի քանի տարիներից յետոյ Արղունի կողմից Կամբալուկ — Cambaluc — ուղարկուեց, Մեծ Խանի մօտ, նորա համար նոր հարսնացու բերելու: Դեսպանութեան միւս անդամներն էին Ապուսկան Apuska — եւ Խոջան: Հմմտ. M. Polo, Prologue, Vol. I, p. 32.— Տես վերը § 21 Ծնթ. Assemani, III pt. 2, 118.— Hammer: Ilkhans. Mosheim, p. 80):—

Աբուլ–Ֆարաջն առաջ է բերում Արղունի՝ Կուբլայ–Խանին ուղղած նամակի մի մասը, ուր բացատրում է Ահմէդին գահընկեց անելու պարագաները, ասելով որ «Ահմադը ուրացել էր մեր նախահայրերի օրէնքն ու կրօնը եւ ընդունել Արաբների կրօնը»: Assemani, ib., p. 116).— Նոյն պատմիչն ասում է, որ Ահմադը սիրալիր էր դէպի Քրիստոնեաները եւ ազատախոհ նոցա նկատմամբ :Հեթում Պատմիչն եւս ասում է, թէ Մահումէդ (=Ահմատ) «առաքեաց առ Թագաւորն Հայոց եւ առ Թագաւորն Վրաց եւ առ այլ քրիստոնեայս, զի անյապաղ ի նա մատչիցին. բայց քրիստոնեայք եդին հաստատութեամբ ի մտի կամակոր մեռանել, քան հնազանդիլ անօրէն հրամանաց...»: Հեթում Պատմիչ Թաթարաց, Վեննա. 1842, Գլ. Լէ, էջ 57:

**) Հեթում Պատմիչ Թաթարաց, Վենետիկ. 1842, Գլ. Լէ, էջ 58:

նունների*) վերածուել եւ որոնց համապատասխան կամ մօտաւոր անունների չենք հանդիպում ո՛չ մեր Պատմիչների եւ ո՛չ Մարկոյ Պոլոյի «ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԵԱՆ» մէջ: Մի պարագայ, որ աւելի շուտ Երգչի համար առաւելութիւն է, քան բացասական վերաբերում. այսինքն նորան յայտնի էին պատմական գործող անձերի անուններ, որոնք միւսներին անծանօթ էին կամ միւսների կողմից չէին յիշատակուած: Անունների յիշատակութեան մէջ տարբերութիւնը ոչնչով չէ նուազեցնում պատմական դէպքի վաւերականութեան հիմքը: Չէ՞ որ քիչ վերը տեսանք Մարկոյ Պոլոյի տուած անունների եւ Վասափի յիշատակածների տարբերութիւնը նոյն պատմական պարագայի նկատմամբ:

Ֆրիկի Տաղի մէջ յիշատակուած Սադադօլի աղաւաղուած անունը, նոյնը պիտի համարել Արղունի շրջանի մէջ դեր կատարած Սադ Ադ Դովլահ անուան հետ, որի մասին տեղեկութիւն է տալիս Աբուլ Ֆարաջը իւր «Ժամանակագրութեան» — պատմութեան մէջ:

Աբուլ Ֆարաջը պատմում է.—

«Երբ Աբաղայի — Abàkà — որդի Արղունի — Arghôn — թագաւորութիւնը հաստատուեց, Բուղան — Bôkà — գանձապահը, որ պատճառ էր եղած Արղունի ազատուելուն Ահմադի — Ahmàd — ձեռքից... յառաջացաւ մեծապէս եւ այնքան բարձր դիրք գրաւեց եւ զօրացաւ, որ նոյն իսկ իշխաններն ու իշխանուհիները... պետերը Մոնղոլ բանակի, սովորութիւն դարձրին գալ եւ խոնարհիլ նորա առաջ եւ կանգնիլ ու սպասել նորա դրան առջեւ՝ թոշակ խնդրելու նորանից: Եւ թագաւորութեան բոլոր վարիչ պաշտօնեաները ենթակայ էին նորան, իսկ Մոնղոլ Տան իշխանութեան ենթակայ դրսի աշխարհի եւ այլ երկրների թագաւորներն ու կառավարիչները չէին ճանաչում եւ հաստատում առանց նորա Պուղդանայի**)— Pukdànà – –եւ Բուղայի կարմրագեղ ստորագրութեան: Եւ այս Բուղան իւր եղբայր Արուքին — Arôk — Գլուխ եւ Ընդհանուր կառավարիչ նշանակեց Բաբիլոնի — Bàbîl—, Ատրպատականի — Adhôrbîjàn — եւ Միջագետքի — Bêth Nàhrïm, եւ այս անձը, որ սարսափ էր ազդում եւ սարսեցնող էր, պետն էր ամբողջ Մոնղոլ բանակի, (հրամայողը) թագաւորների եւ կառավարիչների եւ այդ երկրների մէջ գտնուող (պետական) քարտուղարների:

«Արդ այս երկու եղբայրները վարում էին Մոնղոլ պետութիւնը մեծ փառքով եւ աննկարագրելի չքեղութեամբ, վեց տարիներ շարունակ: Արքայից–Արքայ Արղունի գործերը տանում էին անփութութեամբ եւ իրենք ըզբաղուած էին ժողովելով հարստութիւն, գանձ, ձիեր, ոսկի ու արծաթ: Արդ Արղունը այլ էմիրներ — amîr — եւս նշանակեց իւր ծառայութեան գործի մէջ, որոնք ելնում, մտնում, ուտում–խմում էին, ձիավարում նորա հետ: Եւ

*) Տես քիչ յետոյ § 39:

**) Տես Յաւելուած Բ. Պայզաhի մասին:

ամէն ինչ, որ կատարւում էր ճամբարի մէջ եւ հեռաւոր երկրների սահմաններում կամ մերձաւոր աշխարհների մէջ, այդ մարդիկը կամաց–կամաց հաղորդում էին Արքայից–Արքային: Եւ (տեղեկացնում էին) թէ Բուղան ինքն իրան աւելի պերճ ու վսեմ էր համարում, քան միւս բոլոր ազնուականները, յոխորտում իւր ոյժ ու ազդեցութեամբ եւ իւր աննկուն կամքով ամէն ինչ էր անում կամ կամենում էր անել:

«Եւ այսպէս էմիրները, որոնք նորա հակառակորդներն էին, դիւրութեամբ կարողացան թիւր պատկերացնել բոլոր խնդիրներն Արքայից–Արքայի առաջ եւ մոլորեցնել նորա միտքն ամէն բանի նկատմամբ, որ Բուղան էր կատարում: Վերջապէս Բաղդադ — Bàghdâd — գտնուող երեք պատուաւոր անձեր Արքայական Ճամբարը գնացին եւ Արուքի դէմ ամբաստանութիւն արին: Եւ նոքա ցոյց տուին, թէ (Արուքը) աւեր էր կատարում եւ վնաս հասցնում իւր արարքով եւ մեծ հարստութիւն դիզում կեղեքումով: Այն ժամանակ Արքայից–Արքան հրամայեց, որ այդ երեք անձերը պահպանուէին պատուաւոր հըսկողութեան տակ, մինչեւ որ Արուքը Ճամբար հասնէր: (Բուղան) ուղարկեց մի նամակ, (գրելով) — «Կալանաւորիր այդ անձերը եւ երեքի գլուխներն էլ կտրիր առանց հարցափորձի եւ առանց դատաւորների քննութեան եւ դիտութեան»: Արդ վէսանքի (այս ցուցադրութիւնը) տեսանելի էր թագաւորութեան աչքին եւ այդ գործողութիւնը մեծ առիթ եղաւ երկու եղբայրների՝ Բուղայի — Bôkâ — եւ Արուքի — Arôk — հակառակորդների համար: Եւ սկսած այդ րոպէից, ամէն ինչ որ անւում էր նոցա դէմ, ընդունւում էր դիւրութեամբ եւ առանց որ եւ է կասկածի: Եւ իշխանները շատ վշտացած էին սպանուած մարդկանց համար եւ չափազանց սրտոդած: Ապա Բուղան — Bôkâ — հանգստացրեց իշխանների սիրտն (ու խիղճը) կաշառների միջոցով եւ թողեց ու մեկնեց:

«Եւ ապա շատ չանցած Հրէայի մէկը, որի անունն էր Սադ Ադ Դաւլահ — Sad Ad Dâwlâh — եւ որը Բաղդադի կառավարիչի անհերն էր,— այդ կառավարիչը նոր մեռած էր միայն,— եկաւ (Արքայական) Ճամբար եւ էմիրների ներկայութեամբ ասաց.— «Եթէ արգիլէք Արուքի Բաղդադ գնալը, նա ինքը (այսինքն ես ինքս) ամէն տարի Ճամբարից գնուած հարկադնի կրկնակի քանակը կը բերէ (Ճամբար): Եւ իսկոյն հրաման տրուեց, որ Արուքը կրկին Բաղդադ պիտի չերթայ եւ նա այլեւս (իրաւասութեան) արտօնութիւն չունէր (Բաղդադի) վերայ: Եւ (էմիրները) գործերը յանձնեցին Հրէային: Եւ նկատի առէք, որ այժմ Աբբասեան Տան գահի ընդհանուր ղեկավարն ու կառավարիչը մի Հրէայ է: Տեսէք, թէ Իսլամը մինչեւ ո՞ւր է իջած: Եւ (Մուսլըմները) ո՛չ դադարում են եւ ո՛չ հանգիստ գտնում իրենց չար արարքների եւ բռնակալութեան (գործերի) մէջ»:

«... Եւ Արքայից Արքան (նկատի ունենալով Արաբների կեղծ վերաբերումը եւ լպիրշ գործերը) հրամայեց իսկոյն (1290 թ.), որ Սադ Ադ Դաւ-

լան, Հրէան, որը կառավարիչ էր Բաղդադի, կարգուի գլխաւոր քարտուղար, այսինքն՝ Սահիբ–Դիւան — Sâhīb Dîvân — ամբողջ Թագաւորութեան տիրապետութեան մէջ եւ որ էմիրներն այլեւս երբեք, երբեք Արաբ քարտուղար պիտի չկարգէին, բացի Քրիստոնեայից ու Հրէայից...»:

Արաբների եւ Հրէաների յարաբերութիւնները սրւում են, ատելութիւնը սաստկանում եւ երբ 1291 թուին «Արղունը՝ Արքայից–Արքան հիւանդանում է, կաթուած ստանում ... Ճամբարի էմիրները, որոնք ատում եւ արհամարհում էին Հրէային... սկսեցին իբրեւ առիւծներ մռնչել... եւ երբ Արղունը մեռաւ (1291 թ. Յունուարին)... Աստուած իւր բարկութիւնը շարժեց Հրէաների դէմ եւ այս Սադ Ադ Դաւլահ (Հրէան), Սահիբ Դիւանին նոքա սպանեցին այնտեղ...»: Gregory Abûl Faraj Bar Hebraeus: **The Chronology,** trans. by Ern. A. Wallis Budge, from the Syriac, Oxf. Univ. Press, London, 1932, Vol. I, p. 477—78, 484, 491-92:

Այժմ ընթերցողի համար պարզ է, թէ ո՞վ էր Ֆրիկի ակնարկած Սադադօլին եւ ի՛նչ կապ ունէր Բուղայի եւ Արուքի հետ եւ ի՞նչ էր իւր դէրքը եւ թէ որքան խոր ծանօթութիւն ունէր Ֆրիկը պատմական անցուդարձի մասին:

§ 24. Կանգնած ենք մի դժուարութեան առաջ:

Ըստ Մարկոյ Պոլոյի Պատմութեան Արղունի դէմ եղածը դաւադրութիւն չէր, այլ ընդհակառակը բարեկամական վերաբերումի մի գործ էր դէպի Արղունը: Եւ եթէ դաւադրութեան խնդիր կար, այն եւս Բուղայի դաւադրութիւնն էր Ահմէդ Թուգադարի եւ ո՛չ Արղունի դէմ:

Այն ինչ ըստ Ֆրիկի Տաղի՝ Բուղայի դաւադրութիւնը ուղղուած էր Արղունի դէմ եւ ամբողջ Տաղի ոգին այդ է, մեղադրելով Բուղան եւ իր օրթախները:

Հանգոյցը դիւրաւ պիտի լուծուի, եթէ նկատի ունենանք ժամանակի պայմանները եւ դարի պարագաները: Մի դար, երբ երթեւեկը, լուրերի տեղից տեղ հասնելը եւ մանաւանդ ստուգելը երկար, շատ երկար ժամանակ էր պահանջում:: Պէտք է ենթադրել, որ մեր Երգիչը լսած էր Արղունի դէմ լարուած դաւը, հետը կապուած նաեւ Բուղայի եւ իւր ընկերակիցների անունները: Նորան, ինչպէս եւ իւր ժամանակակիցներին, յայտնի էին նոյն իսկ «դաւադիրների» պատուոյ տիտղոսները: Յայտնի էր նաեւ, որ Արղունը, որի դէմ «դաւադրութիւն» էր կազմակերպուած, «յոյժ սիրող քրիստոնէից եւ եկեղեցեաց (էր)... եւ բազում դիւրութիւն եւ ողորմութիւն առնէր նեղեալ ազգիս Հայոց»: (Օրբէլեան Պատմ. 426–27): Հետեւաբար, Երգիչն, իբրեւ արտայայտութիւն ժողովրդական ցասման իւր Տաղն է յօրինում «դաւադիրների» դէմ առանց դոյզն իսկ հնարաւորութիւն ունենալու ստուգելու պատմական այնքան հեռաւոր բեմի վերայ տեղի ունեցած պարագաները, իրողութիւնները, գործող անձերի կատարած բուն դերը եւ դաւին մասնակցելու բուն շարժառիթները:

Եթէ նոյն իսկ աւելի մօտենանք բուն պատմական իրողութեան կապակցական շղթային, շատ էլ պիտի չը մեղադրենք մեր Երգիչը, որ իւր Տաղը յօրինել է առանց պատմական պարագայական մանրամասնութիւններն ստուգելու: Եւ այն անձը, որ իբրեւ բարերար եւ ազատարար էր եղած Արղունի, այդ անձին՝ Բուղային դատապարտելով դատապարտում է, մանաւանդ արարքի բուն հեղինակներին եւ «չար գործի» մասնակից «օրթախներին», միաժամանակ հետաքրքրական է, որ մեր Երգիչը գիտէ նաեւ, որ Բուղան... «քան զԱրղուն չէր պակաս» իշխանութեամբ, «բէկլար-բէկի էր» հեծեալի, եւ «չինքսան»*) էր նոյն իսկ, տիտղոսներ, որոնց պահպանուելը մեր Երգչի Տաղի մէջ, ըստ ինքեան, արժէքաւոր է՝ իբրեւ յուշ պատմական անցեալի եւ որոշ պետական աստիճանակարգի եղրներ, որ մեր պատմագիրներից եւ ոչ մէկն ունի պահպանած այդ շրջանի պատմական տուեալների մէջ: Եւ մեր աչքի առաջ պարզւում են պարագաներ, դրութիւն, տիտղոսներ, դիրք, որ հաւանօրէն Բուղան ստացել էր՝ Արղունին իւր մեծ ծառայութիւնը մատուցանելուց յետոյ եւ կամ թերեւս նոյն իսկ Ահմէդ Թագուդարի օրով իսկ եւ որ կրկին հաստատուեց Արղունի ձեռքով, իբրեւ գնահատութիւն իւր ծառայութեան:

Թերեւս մեր Երգիչը որոշ իրաւունք իսկ ունէր իւր տեսակէտի մէջ, եթէ նկատի ունենանք նոյն իսկ Բուղայի բառերն, ըստ Մարկոյ Պոլոյի, որն ասում է Արղունին.—

«Մեր բարի իշխան Արղուն, մենք շատ լաւ գիտենք, որ չար գործ կատարեցինք, քեզ կալանաւոր դարձնելով եւ եկանք... Արդարութեան ուղուն դառնալու... քեզ ազատ արձակելու եւ մեր օրինաւոր տէրը դարձնելու...»: (Տես վերը § 20, էջ 55

*) Մարկոս Պոլոն Մոնղոլական-Չինական Մանզի — Manzi — երկրամասի նուաճման մասին պատմելով ասում է.—

«Քրիստոսի մարդեղութեան 1268 թուին, այժմ թագաւորող մեծ Խանը աչնտեղ ուղարկեց իւր իշխաններից մէկին, որ կոչւում էր Բայան Չինքսան Bayan Chincsan—, որ նշանակում է Բայան Հարիւրաչեայ»...: Մանզի երկրի թագաւորը իւր աղթարքը — horoscope — նայել տալու ժամանակ իմացել է, որ իւր թագաւորութիւնը երբեք պիտի չկորցնէր, բացի հարիւր աչք ունեցող մի մարդու միջամտութեամբ, ուստի իւր դիրքն անխախտ պահելու նըկատմամբ բոլորովին վստահ էր, քանի որ հաւատում էր, թէ հարիւրաչեայ մարդ գոյութիւն ունենալ չէր կարող»,— (Vol. II, p. 128), սակայն, երբ Բայան Չինքսանն է գալիս, թագաւորն ստիպուած խոնարհւում եւ իւր երկիրը յանձնում է նորան:

Բայան եւ Չինքսան՝ երկուսն եւս չինարէն բառեր են: Բայան նշանակում է մեծ, ազնիւ եւ պատուոյ տիտղոս էր հին, թափառական, վաչկատուն ցեղերի մէջ, որի հետքերը կարելի է նշմարել Աւարների Խաքան ցեղի մէջ, Զ. դարում:— Քուբլայ-Խանի այս Բայան իշխանը նշանաւոր զօրավար էր, ազնուական ծագումով, Մոնղոլական Բարին — Barin — կոչուած ցեղից: (Այդ կոչումից է եւ հաւանօրէն Ռուսերէն барин բարին բառը, իբրեւ փոխառութիւն Մոնղոլներից, որ նշանակում է ազնուական ծագում ունեցող անձն եւ ապա ըդհանրացումով՝ բառի իմաստն ու առումը նշանակում է «տէր, իշխող, հրամայող, վարիչ»): Երիտասարդ ժամանակ ծառայած էր Հուլաղու-Խանի ձեռքի տակ: Ըստ Ռաշիդ-էդդինի, 1265 թ. ուղարկուած էր Քաթայ — Cathay—, այլ դեսպանների հետ: Մեծ Խանը, Քուբլայը ընդունում է նորան սիրով, գրաււում նորա արտաքինով եւ տաղանդաւոր կարողութեամբ եւ նշանակում

Եւ քանի որ պատմական իրողութեան լուրը, թէեւ անստոյգ պարագաներով, Արղունին ակամայ կալանաւորած եւ չար գործ կատարած Բուղայի անունը հասած էր Մոնղոլների հեռաւոր աշխարհից Հայաստան, ամէն տեղ գովաբանուած Արղունի անունը կարող էր եւ մեր Երգչի ոգեւորութիւնը զարթեցնել, նոր թռիչք տալ, պարագաները յետ ու առաջ իսկ դասաւորելու գնով, ինչ որ իւր ժամանակի տուեալները էին ընձեռել նորան: Եւ մեր Երգչի մեղքը չէ, անշուշտ, որ բուն պատմական իրողութիւնների չարայարական կապակցական շղթան իրեն այդպէս էր հասած:

Ցրիկի, իբրեւ Երգչի, առաւելութիւններից մէկն էր այդ, որ իւր ժողովրդի վիշտն էր արտայայտում եւ իւր յոյզը հանրութեան յոյզ դարձնում պատմական մի բոպէի, մեզ բանալին տալով իւր ապրած օրերի ու դարի:

§ 25. Մանգու Խանի եղբայր Հուլաուն, որին Ստեփ. Օրբէլեան անուանում է «մեծ եւ բարեպաշտ արքայն աշխարհակալ, յոյսն եւ ակնկալութիւն քրիստոնէից»*), (Օրբ. 419) մեռնում է «ի 713 թուին» հայոց (=1264-65) եւ նորա տեղն է անցնում նորա որդին Ապաղա խանը կամ Աբաղա էլխանը**), որ տասն եւ ութ տարի «բարեյաջող յաջողութեամբ» խանութիւն անելուց յետոյ վախճանւում է «յ731 թուականին» (=1282), թողնելով իւր յետեւից յիշատակ իբրեւ «այր հեզ եւ բարի եւ խաղաղարար եւ սիրող քրիստոնէից», իւր որդի Արղունին: Սա կնութեան էր առած «զդուստրն կայսերն

զօրապետ իւր զօրքի: Մասնակցում է 1273 թ. Siang-Yang-ի գրաւման եւ ապա Քուբլայ-Խանը՝ վստահ նորա հմտութեան, ուղարկում է Քայդուի դէմ, որ Մոնգոլական սահմաններն էր ասպատակում: Ապա նշանակում է այլ արշաւանքի վարիչ, բայց նկատելով Բայանի դժգոհութիւնը՝ կարգւում է պետութեան վարիչ — chingsiang: Ժամանակակից մեր Պատմիչը, Ստեփ. Օրբէլեանը Չինֆսան բառի բացատրութիւնը տալիս է իբրեւ «աւագաց աւագ» կամ «տէր տէրանց», որ մօտաւոր նշանակութիւնն ունի բուն Չինական բառի իմաստի, այն է «ղեկավար պետական գործերի»,— chancelier de l'Etat. Տես քիչ յետոյ § 34:

Չինքսան տիտղոսը յաճախ թարգմանուած է «հարիւրաչեայ», չփոթելով Բայանի մերձեցումը Չինական Pe-yen բառի հետ, որ նշանակում է «հարիւր աչք». այն ինչ չինֆսան նշանակում է՝ «պետութեան վարիչ»: Չինքսան բառին հանդիպում ենք նաեւ Chyansam ձեւափոխութեան մէջ, Պապական Դիւանատան այն նամակում, որ Խանբալիղի — Khanbaligh — քրիստոնեաներին էր ուղղած. (Cathay, pp. 314-15): Բայան Չինքսանի եւ նորա հետ կապուած աւանդապատումի մասին պատմում է նաեւ Պարսիկ Պատմիչ Վասսաֆը. (Համմ. Wassaf, Hammer's edit., p. 41):— Մարկոս Պոլոյի Ramusian փոփոխակի մէջ եւս չփոթուած են այդ երկու բառերը, Volendo sapere come avea nome il Capitano nemico, le fudetto Chinsambaian, cioe cantoachi; (=կամենալով գիտենալ, թէ ինչ է թշնամի նաւապետի անունը, նորան ասացին, թէ Քինսամբաեան (=Չինսամբայեան) է, այսինքն՝ Հարիւրաչեայ»):

Թէ այդ երկու բառերն իրարից անկախ մօքեր են, պարզ երեւում է Ռաշիդ-էդ-դինի պատմութիւնից,— յիշատակելով Մոնգոլ իշխան եւ վարիչ Պուլադ Չինքսանի Pulad Chingsang— անունը, ուր նաեւ մեր Երգչի պատմական տուեալների հաւաստիութեան նոր ապացոյցն ունինք: (Համմ. M. Polo, ed. Yule, Vol. II, p. 131, 133, 202 եւն.):

*) Կիր. Պատմ. էջ 378.— Օրբէլ. 419. Չամչ. Գ. 261-62:
**) Օրբէլ. 470.— Չամչ. Գ. 263. Կիր. 382:

յունաց (զՄարիամ) Դեսպինա», նախապէս խոստացած լինելով «ընկալեալ զքրիստոնէութիւն՝ մկրտեսցի»։

§ 26․ Դեռ եւս Հուլաւուի կենդանութեան ժամանակ, նորա դէմ ծագած ընտանեկան ներքին երկպառակութեան կռիւները ճնշելու համար, Հուլաւուն 1262 թուին, իւր եղբօր Ապաղայի որդուն՝ Արղունին ուղարկում է Խորասան, ուր եւ վերջինս մնում է ոչ միայն մինչեւ հօրեղբօր մահը (=1265), այլ եւ հօր կենդանութեան ժամանակ իսկ։ (Կիր․ 379)։

Ապաղայի մահից յետոյ (1282) ներքին ընտանեկան երկպառակութիւնն ու կռիւները նորից գլուխ են բարձրացնում եւ, փոխանակ որդին հօրը գահը ժառանգելու, արքայական գահը

«․․․ Նստի Թագուտարն, եղբօրորդի նորին, Ղան ամենայն աշխարհին, որ եւ Ահմադ անուանեցաւ զինքն․ եւ խորհեցաւ առնել մըսլման զամենայն ազգ։ Եւ յերրորդում ամի տէրութեան իւրոյ (=1285 թ․) եսպան ի Մուղան զմիւս եղբայրն՝ զՂանղրաթայն եւ զսուլտան Հոռոմոց զԽիաթադինն եւ զերկուս որդիսն Ցագանին», (Օրբ․ 425), որպէսզի գահաժառանգութեան ուղին հարթուէր իւր անմիջական սերնդի համար․ բայց քանի որ դեռ եւս Ապաղայի անմիջական յաջորդը, որդին, կենդանի էր, ուստի

«․․․ ի գարնանային ժամանակին գնաց անհուն զօրօք ի Խորասան (1286) ի վերայ Արղունին, որդւոյ Ապաղա Խանին, զի սպանցէ զժառանգ թագաւորութեանն»։ (Օրբլ․ էջ 425)։

§ 27․ Այս արշաւանքի հետեւանքը շատ ծանր է լինում թագաւորութեան ժառանգի՝ Արղունի համար, որին Թագուտարը «կալեալ դարձաւ այրէն», այսինքն Արեւելեան Հայաստան, ասում է Օրբէլեան, որտեղից իւր արշաւանքն էր սկսել։

Պալատական մի ներքին, Արղունի համար անսպասելի, դաւադրութեան շնորհիւ, աւագանու համակրութիւնը եւ

«․․․ մեծամեծացն (դարձաւ) առ Արղունն, զոր հանեալ ի բանդէ կապանացն՝ թագաւորեցուցին եւ սուր ի վերայ եդեալ կոտորեցին զամենայն թշնամիս նորա։ Հասեալ զկնի սատակեցին զԱհմադն եւ զհամախոհս իւր՝

***) Տես Յաւելուած Ա․։

***) Տես Յաւելուած Գ․

զՀասան Մանլի չէխն†), զՍահիպ դիւանն)*) զԱլինախն եւ զայլ բազումս»։ (Օրբլ. 426)։

Ֆրիկը Սահիպ Դիւանու մասին յիշատակութիւն ունի մի այլ տեղ եւս իւր Տաղերից մէկի մէջ.—

Սահիպ Դիւանին ասեն, որ մըլքեց զերկիր նա բոլոր,
Հանցեղ սխասաթ ունէր, որ չունէր ոչ ոք թագաւոր.
Զինչ որ խանորայք կային՝ յափն ունէր զինչ մի խնձոր,
Ֆալաքն երբ ի սիրտ ելաւ, նա՜յ, արար զինքն երկու կըտոր։

Խէ. 32–35։

Մի հեռաւոր, պատահական ակնարկութիւն իւր չուրջը տեղի ունեցող պատմական մի դէպքի մասին, խտացած ձեւով, ինչ որ հաստատում է Մարկոյ Պոլոն իւր «Ճանապարհորդութեան» մէջ, աւելի մանրամասն պատմելով։

†)Մանլի–Շէխի մասին Կարապետ Վարդ. Շահնազարեան, իւր խմբագրութեամբ հրատարակած Օրբէլեանի Պատմութեան Ծանօթագրութիւնների մէջ տալիս է հետեւեալ տեղեկութիւնը. «Ցետ անկման Թագուդարայ Խօջայ–Շէմս – էդ – Դին,— Սահիպ–Դիւանն փախեաւ ի Լարիստան եւ կալեալ՝ կոտորահ եղաւ չամի 1284, յետ վարելոյ զվէզիրութիւնն ամս 20»։ (Պատմ. Սիսական, Հատ. Բ. էջ 172, 354, Փարիզ, 1859)։

*) «Սահիպ–Դիւանի» պաշտօնի կամ պատուոյ անուան մասին, որը ապագայում դառնում է իբրեւ յատուկ անուն,— յիշատակութիւնն ունինք նոյն շրջանի պատմութեան զանազան դէպքերի մէջ յիշատակուած։ Այսպէս,—

1.— Անիի «Տէրերի Վերակացու» կամ Պատրոնների շարքի (որ մեր Արքայական Տան մէջ պահպանուող Ոսկէ–Մատեանն էր, իշխանների եւ աւագանու անուններով, տիտղոսներով եւ բարձ ու պատուի յիշատակութեամբ),— այդ շարքի մէջ հագնիպում ենք «Սահիպ Դիւանի» (որդի Աւագայ, որդւոյ Իւանէի) անունով մէկին, իշխած 1263 թուին. (Ալիշան, ՇԻՐԱԿ, էջ 101ա.)։

2.— Նոյն 1263 թ. Անւոյ արձանագրութիւնների մէջ կարդում ենք,— «ՉԺԲ (=1263) Ելղանին։ Շնորհիւն Աստուծոյ մեք տաղմաճիfս վասն յերկար կենդանութեան եւ վասն Պատրոնաց մերոց Սահիպ Դիւանին եւ Սահմատին եւ Քարիմադինին բարձաք ի յԱնօ երիցանուս զբաժն...»։ (Ալիշան, ՇԻՐԱԿ, էջ 62ա.— Հ. Սարգսեան, ՏԵՂԵԿԱԳՐՈՒԹԻՒՆ, էջ 133.— Կ. Կոստանեան, ՎԻՄԱԿ. ՏԱՐԵԳԻՐՔ, էջ 106)։

3—. Բջնիի արձանագրութիւնների մէջ կարդում ենք,— «Ցուսովն անմահին Աստուծոյ ես Զաքարէ, որդի Սահիպ Դիւանին եւ պարոն Խաւշաքին, թոռ Աթաբակ Աւագին, որդւոյ Աթաբակ Իւանէին... ի վերայ կալայ, որ ի Բջնի այլ մարդոյ տիրութիւն չէլնի. եւ թողի զամէն հարկ զամիրհա(րկն, զհարսանէհակ (զհարսանէհարկ?), զկովայհամարն, զկալաթաղարն, զայլի ալն (սեպն թէ սապոնն?), զմահկանէն, եւ զաւտարականն քան զդաղմէն այլ իրք չտալ, յաղման չանէն...»։ (Ցովհ. Եպսկ. Շահխաթունեան, ՍՏՈՐԱԳՐ. § 484. § 183։ Կ. Կոստանեան, ՏԱՐԵԳՐ. էջ 226)։

4.— Անիի արձանագրութիւնների շարքում, հետագայ շրջանում, 1320 թ., դարձեալ պատահում ենք նոյն անուան յիշատակութեան հետեւեալ արձանագրութեան մէջ.— «Թվ. ՉԿԹ (=1320). ողորմութեամբն Աստուծոյ ես Խունդզէս ըուգալկից Աթաբակ Շահնշահի որ յայսմ ամի եղ չաշխարհէ եւ սրտմութիւն մեծ եղեւ մեզ եւ աշխարհիս արեւելից. ես ամուսին նորա դուստր Շամշադին Սահիպ Դիւանին...» թողնում է իւր հայրենի քաղաք Անիին «զկովերուն եւ զիշանուն զհամբարելէն եւ զդռնագիրն մեծի եւ փոքու...» ժառանգութիւն։ (Ալիշան, ՇԻՐԱԿ, 62)։

*Մի նոր ապացոյց եւս, թէ մեր Ցրիկը ապրած է Թաթարական արշաւանքնե-րի օրերին:*

*Պետական ղեկն իւր ձեռքն առնող Արղունի առաջին գործերից մէկն է լինում Արեւելեան Հայաստանի մէջ, ներքին երկպառակումների շնորհիւ, ծագած խռովութիւնները վերացնել, երկրի մէջ երկար արշաւանքների, անպատասխանատու պաշտօնեաների միջոցով տակնուվրայ եղած ներքին կարգն ամրացնել եւ միաժամանակ Հայ ու Վրացի եւ Աղուանից իշխաններին իւր կողմը գրաւել:*

*Այս նպատակով Դաւիթ Վրաց թագաւորի որդուն վերահաստատում է հայրենի իշխանութեան մէջ, Սիւնեաց Տէր Օրբէլեանի Տարսայիճ իշխանին տալիս է «զաթաբէկութիւն աշխարհիս Հայոց», իսկ ընդհանուր խնդիրների նկատմամբ իրեն ցոյց է տալիս*

«*... յոյժ սիրող քրիստոնէից եւ եկեղեցեաց... եւ բազում* դիւրութիւն *եւ ողորմութիւն առնէր նեղեալ ազգիս Հայոց: Եւ գնացեալ ի Տփխիս ետ բե-րել զդիւանն արքունի եւ ընթերցաւ զամենայն* դաւթարսն*, եւ զի էին գրեալք ի* դաւթարն *անուանք վանօրէից Հայոց ի ներքոյ հարկի եւ դիւանի կայցեն. եւ ապա ետ բերել* զծենկնաւպար**) աւագ դիւանապետութեանն եւ փոխեաց* զդաւթարն *եւ եհան զանուանս վանորէիցն աւելի քան զհարիւր եւ յիսուն, եւ զհինն այրեաց հրով. եւ այնպէս* ԱԶԱՏԵԱՑ ԶԱՄԵՆԱՅՆ ԵԿԵՂԵՑԻՍ»: (*Օրբլ.* 426–27):

§ 28. *Սոքա այնպիսի գնահատելի արժանիք ու առաքինութիւններ էին մի ժողովրդի աչքում, որը մինչ այդ՝ միայն հալածանք ու նեղութիւն, գե-րութիւն ու ստրկական վիճակ, հարկ ու վիշտ էր տեսել, հետն եւ որդիների բռնի գրաւում՝ հարկի փոխարէն եւ նոցա հեռաւոր երկրներ օտարութեան ուղարկելու անվերջ տուայտումներ նախորդ վարիչներից ու հարկահաննե-րից, որ միանգամից մի առանձին համակրութեամբ ու սիրով է տարւում դէպի Արղունը, որ անսպասելի կերպով «ողորմած եղեւ եւ գթած առ ամե-նեսեան» եւ նորա իշխանութեան հասնելը այլ կերպ չէր բացատրում, քան, որ «Աստուածն քրիստոնէից» էր դրդել աւագանին ապստամբելու Թագուտար-Ահմէդի դէմ եւ Արղունին իշխանութեան կոչելու,— թէեւ այդ առանձին հա-մակրութիւնն ու բարեացակամութեան շռայլումները իրենց մէջ զուտ քաղա-քական ու քաղաքագիտական խնդիրներ էին, որպէսզի քրիստոնեայ ազգերի համակրութիւնը կորցնելու կէտին հասած Թաթարական իշխանութիւնը կա-րողանայ կրկին այդ համակրութիւնը վերստանալ եւ նոցա օգնութեամբ իւր*

*) *Ծեկնաւպար կամ Ծիկնաւպար (Ստ. Օրբ. Հրատ. Կարապ. Վրդպտ. Շահնազարեանի, Հտ. Բ., էջ 173).— Դպիր, քարտուղար, դիւանապետ. «Հրամայէ աւագ* Ծիկնաւպարին *իւրոյ դիւանին՝ Ասնաֆրէ անուն»: (Ստեփ. Օրբլ. Պատմ. էջ 239).— «Եւ գնացեալ ի Տփղիս... ետ բերել զդիւանն արքունի... եւ ապա ետ բերել* զԾիկնաւպար, *աւագ դիւանադպրութեան: (էջ* 173, *Փարիզ,* 1859): *Վրց.* mdsicnobari *== մծիկնոբարի == քարտուղար, դիւանադպիր, ծագում է* dsidni *== ծիդնի == գիր, գրութիւն, գիրք բառից: Հ. Աճառեան — Հ. Ար-մատկ. Բառար. Հտ. Գ.,* 774:

Թշնամիներին՝ յատկապէս Սելջուկ Թուրքերին, ինչպէս եւ Եգիպտացիներին տիրել*):

Արղունն յատկապէս դէպի Հայերն ունեցած իւր համակրութիւնն աւելի եւս ընդգծելու համար, իւր Թեւարկեալի, Սմբատայ Տարսայիճ Աթաբէկի որդուն, Օրբէլեան Ստեփաննոս Մետրոպոլտին, ընդունում է առանձին մեծ պատուով (1287) եւ դէպի նա «յոյժ հաճեցաւ եւ հրամայեաց գրել նմա... եառլըխ. եւ հաստատեաց զամենայն եկեղեցիսն եւ զաշխարհն եւ զեպիսկոպոսունսն ի Տ. Ստեփաննոս. եւ ետ նմա այր ի դրանէն եւ փայիզա**) եւ այնպէս յուղարկեաց յաթոռ իւր»,— (Օրբլ. էջ 429), որպէսզի Սիւնիքի երկպառակուած աթոռը կառավարէ միահեծան իշխանութեամբ, որովհետեւ այդ աթոռը մինչեւ Ստեփաննոս Օրբէլեանի մետրապօլիտ կարգուիլը ու եպիսկոպոս ձեռնադրուիլը (1287 Թ.) Կիլիկիայի Կոստանդին Բ. կաթողիկոսի կողմից՝ բաժանուած էր մի քանի աթոռների,— Հայրապետ եւ Յովհաննէս արքեպիսկոպոսները գրաւած էին Տաթեւը, Սարգիս եւ Գրիգոր եպիսկոպոսները՝ Վայոց Ձորի աթոռը եւ ուրիշներն եւս՝ այլ տեղեր, որով «խանդացեալ եպիսկոպոսացն, որ ի Տաթեւ, գնացին առ այլազգիսն եւ բազում ոճիրս սերմանեցին (այսինքն մատնութիւններ արին) եւ յոլով վիշտս հասուցին եկեղեցւոյ եւ մինչ ի վախճան ինքեանց... Տ. Հայրապետին եւ Տ. Յովհաննիսին ոչ դադարեաց խազմն եւ խռովութիւնն (յեկեղեցի): (Օրբ. Պատմ. Հատ. Բ. էջ 157, Փարիզ, 1859): Բայց քիչ յետոյ, նոյն Օրբէլեանը հարկ մատուցանելով պատմութեան ճշմարտութեան՝ ասում է. «Այա յետ բազում աւուրց ծերական ալեօք եպիսկոպոսն բարեբարոյ Տ. Հայրապետ՝ յաղթեալ ի սիրոյ Տեառն իւրոյ՝ գնաց ի տեսութիւն աստուածակոխ տեղեացն Երուսաղէմի... եւ դառնայ առ աստուածապսակ Թագաւորն Լեւոն Հայոց: Եւ նորա ի վաղ ժամանակաց ցանկացող եղեալ միաբանութեան... գերափառ ուխտին Տաթեւոյ խրախճացաւ մեծապէս ընդ հանդիպումն եպիսկոպոսին...»: (Հտ. Բ. Գլ. ԿԷ. էջ 181):

§ 29. Առաջ բերած պատմական տուեալների վերայ այժմ մեզ համար հասկանալի կլինի Ֆրիկի «Վասն Արղուն Ղանին եւ Բուղային» տաղի մէջ ցրուած այլ եւ այլ պատմական անձերի, դէպքերի, քաղաքական անցքերի, տեղական-մասնաւոր համակրութեան եւ կամ անհամակրութեան զգացումները, որ ամէն քայլի հանդիպում ենք այդ Տաղի մէջ: Առաջին իսկ տողերից, պարզ երեւում է, որ Երգչի,— որն արտայայտիչն է ընդհանուր ժողովրդական զգացումների,— այդ համակրութիւնը որի՞ կողմն է: Դառնալով Բուղային նա հարցնում է,—

*) Հմմտ. Օրմանեան Մաղաքիա Ա. Եպսկ. ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, Կ. Պօլիս, 1914, Ա. Բ. հատ. էջ 1727–29:

**) Եառլըխ-ի եւ Փայիզայի մասին տես Ուսումնասիրութեան վերջն եղած Յաւելուած Բ.:

«Բուղա՛, դու ո՞նց կամիր նենգել
Աստուածադիր թագաւորին,
Զոր Քրիստոնեայքն ամէն հաւսար
Ի յԱստուծոյ կու խնդրէին»։

Որով երգիչը պատմական ճշդութեամբ այդ քառեակի մէջ արտայայտում է այն յոյսերի ամբողջութիւնը, որ «Քրիստոնեայք ամէն հաւսար», առանց հասակի ու դասակարգերի, ազգերի ու իշխանութիւնների խտրութեան՝ աղօթելով ու ճրագով էին որոնում այդպիսի մէկը։ Շատ հեռու չէր դեռ այն ժամանակը, ամէնքի յիշողութեան մէջ  ամուր դրոշմուած այն դառն ժամանակները, երբ Արղունի նախորդը խորհում էր «առնել մըսլման զամենայն ազգ», իսկ սա «յոյժ սիրող էր քրիստոնէից»։ Սորա օրով էր եւ ձեռքով, որ վանքերն ու եկեղեցիները ապահարկ են դառնում, կրօնաւորներն ազատւում են տուրքերից ու սակից, երկրի մէջ վերականգնում ու հաստատում է ներքին կարգ ու անդորրութիւն, ժողովրդին հնարաւորութիւն է տրւում  շունչ քաշելու, իշխանութիւններն ու կորած թագերը տէրերին են վերադարձնում, ազգերի մէջ քաղաքական հաւասարակշռութիւն դրւում։

§ 30. Անհնար էր, որ նոր կեանքով ապրող, նոր հոգի ստացող ժողովուրդը չ՚ասէր,—

«Արղուն ղանըն Աստուած եդիր,
Ո՞վ է յաղթող Արղուն ղանին.
Արղունըն ի՞նչ վընաս գործեց,
Գիտեմ, որդին էր Աբաղին»։

Վերջին տողերից, արդէն, երեւում է Ֆրիկի ժամանակակից անձն լինելու պարագան, որը «գիտէ», թէ ո՞վ էր Արղուն Խանը եւ որի՞ որդին էր, ոչ այն սովորական, խնդիրներին եւ պատմական տուեալներին ծանօթ լինելու ճոխութեամբ. այլ իբրեւ պատմական այդ օրերի անցուդարձի մէջ ապրած, այդ եռուզեռի ապրումների հետեւանքն իր անձի վրայ կրած մէկը։

§. 31. Այստեղից հետզհետէ առաջ են գալիս պատմական անցքերի այն երկար շարքի դէպքերը, որ հետեւողական կերպով տալիս է Տաղը եւ որ կ՚աշխատենք պարզել համառօտակի, մեր առաջ դրուած խնդրի պարզաբանութեան շրջանի մէջ։

«Այն, որը ըղքեզ ի վեր քաշեց
Եւ քեզ երետ զամէն բարին,
Այնոր փոխրէն զի՞նչ խորհեցար...»

Պալատական նոր զուգորդութիւնների շնորհիւ պէտք էր ապահովել իւր գահի յարատեւութիւնը, ինչպէս եւ իւր սեփական կեանքը, ապա թէ ոչ  իւր նախորդի պէս ինքն եւս կարող էր մի գիշերուայ մէջ գահազուրկ եւ կենազուրկ լինել։ Արղունն, ինչպէս երեւում է, համեմատաբար աննշան մարդոց շարքե-

րից էր «Վեր ֆաշել» թէ՛ Արուխին եւ թէ՛ Բուղային եւ նոցա նմաններին։ Երգիչը պատմական ճշմարտութեան հաւատարիմ մնալով, միաժամանակ եւ չէ թաքցնում իր հեղնանքը եւ անհամկրութիւնը, ասելով

«Դու քան զԱրղունըն չ՚իր պակաս,
Ի քո յահէղ խիստ կու վախին։
Բուղա էիր՝ չինֆան*) եղար,
Բէկլար-բէկի իւր հեծելին.
Զգիտեմ, թէ զի՞նչ կամիր լինել.
Դու չ՚իր որդի Չինկըզ խանին»։

Հետեւաբար պէտք էր բաւականանալ այն ամենազօր դրութեամբ, որին հասցրել էր քեզ Արղուն Խանը, քանի որ անձնական ազդեցութեան եւ ձեռք բերած պաշտօնի դիրքով

«Դու քան զԱրղունըն չ՚իր պակաս,
Ի քո յահէղ խիստ կու վախին»։

§ 32. Իբրեւ «ճակատագրական» տեսութեամբ տարուած անձն եւ Բաղդի նախորոշումներին հաւատացող, (որ մանաւանդ աւելի եւս աչքի է ընկնում իր «Վասն Ֆալաքին եւ Բուռջին» եւ «Ընդդէմ Ֆալաքին» տաղերի մէջ) Ֆրիկն ըմբոստանում է այն յաւակնութեան ու մտքի դէմ, թէ,—

«Զինչ ի վերուստ քեզ չէր տուած՝
Դու ե՞րբ կամիր հասնել բանին.
Զուհալն խիստ ի վեր ֆարշէ,
Ցետեւ զարնէ խիստ ի գետին»,—

որի օրինակը իւր աչքի առաջն էր եւ նա, առանց քաշուելու «աշխարհ ամէն» վկայ է կանչում, որոնց մտքից դեռ ելած չէր կարող լինել տեղի ունեցած դէպքերը, թէ՝

«Տեսէք թէ զի՛նչ արար Աստուած
Ի հատուցումըն հըզօրին»,—

ըմբոստացած, իւր սեփական ոյժերի վրայ չափազանց վստահացած եւ ամէն գնով Իշխանութիւնն իւր ձեռքն առնելու երազներով տարուած ստորադրեալին, որի չկշռուած մտադրութեան հետեւանքն այն է լինում, որ Զոհալը

«Քաշեց ըզբա՛րձրըն յաթոռոյ
Զախեց ըզգլո՛ւխըն վիշապին»,—

որովհետեւ ժողովրդական իմաստութիւնը, իբրեւ արդիւնք դարաւոր դառն փորձերի, նորան հասցրել էին այն անվրէպ ու խոր համոզման, թէ «Խիստ է ընդդէմ խթանի աքացել» եւ կամ թէ «Բզի գլխին բռնցքով տալ չի լինի», որը նա արտայայտում է այսպէս,—

*) Չինֆանի մասին տես § 24, Ծնթ.։

*Ով կուըն տայ՝ Թագաւորաց*),*
*Իւրըն բերէ կործանութիւն։*

*Եւ այդ «կործանութիւն»ը շատ չէ ուշանում այն անձի նկատմամբ, որին*

*«Յորժամ ձըգէ Աստուած յաչից…*
*Հանց խայտառակ հրապարակէ,*
*Զինչ որ արար հետ Բուղային.*

*Այն է,—*

*Տէրըն* եզարկ *յերկնից ի վայր*
Զընկսայ Բուղին *եւ* Արուխին,
*Նայ,* ամենայն գըլխաւորացն,
Զինչ ի մէկտեղ խորհուրդ արին»։

§ 33. *Այն, ինչ որ Արղունը իւր գահակալութեան իսկ առաջին օրերից էր նախատեսել եւ քաղաքագիտական միջոցներով ու դիւանագիտական յարաբերութիւնների շնորհիւ կամեցել էր առաջն առնել, շուտով երեւան է գալիս իւր իշխանութեան առաջին օրերից հազիւ 3–4 տարի անցած, իւր իսկ ձեռքով «ի վեր քաշած» մարդոց շնորհիւ, որովհետեւ*

*«…երկպառակեցան զօրքն Ղան Արղունին, եւ անկաւ չփոթութիւն մեծ ի մէջ մեծամեծացն գլխաւորաց…»։* (*Օրբլ.* 430)։

§ 34. *Այս չփոթութեան երեւան գալու մասին անտեղեակ չէր Արղունը, որ ի մօտոյ հսկում էր իւր համախոհների եւ պաշտօնների շնորհիւ համակիրների խումբ ստեղծած աւագանու վերայ, որոնցից մէկը, «Սուլթան–աղան… իմացաւ» տեղի ունենալիք չփոթութեան մասին, որի մէջ էական դեր ունէր իւր հեծելազօրքի հրամանատար Բուղան, ուստի եւ*

*«… հանին (ի ձեռն զօրացն) բազում արեան ճապաղիս. զի* կալաւ Արղունն *զմեծ զօրապետն* զԲուղայ չինքսանն, *որ կոչի աւագաց աւագ կամ տէրանց տէր, եւ* եսպան զնա. զի խորհուրդ նենգութեան էին խորհեալ *նմա եւ*

**) Մեր այժմեան հասկացողութեամբ «կուռն տալ», «ձեռք տալ», օգնութեան հասնելու գաղափար է արտայայտում, ինչ որ տեսնում ենք նաեւ բուն նախնեաց մատենագրութեան մէջ։ Սակայն այստեղ «կուռն տալ» բոլորովին տարբեր, նոյնիսկ, հակառակ իմաստով է գործ դրել Ֆրիկը։ «Կուռն տալ» այստեղ նշանակում է «դաւել, ընդդիմանալ, հակառակել, մեքենայութիւններ լարել» եւայլն։ Բուն գաւառական ոճ՛ է սա եւ մինչեւ այժմ եւս դեռ պահպանուած Ղարաբաղի բարբառի ոճաբանութեան մէջ «կօռնը տալ» եւ «վէննը տալ» արտայայտութեամբ, = «կուռն ալ», «ոտն տալ»։ Ըմբշամարտի ժամանակ, երբ թուլացած հակառակորդն այլ եւս յոյս չունի օրէնքի սահմանների մէջ ընդունուած եղանակով իւր զօրեղ մրցակիցը յաղթելու, նա աշխատում է «վէննը տալ» կամ «կոռնը տալ», այսինքն ոտքի եւ բազկի դաւաճան, ապօրինի շարժումներով կամ վայր ձգել հակառակորդը եւ կամ նորա գլուխը իւր թեւի տակն առնել, եւ այդպիսով յաղթահարել։ Զգիտենք այլ բարբառների մէջ այս ոճն իր այս իմաստը պահպանա՞ծ է, թէ ոչ։ Եթէ ոչ, ապա ուրեմն մի այլ ապացոյց եւս», թէ Ֆրիկն բնտանի էր Ղարաբաղի բարբառին։ (Տես* Բառարանը)։

ընդ նմա եւ զամենայն համախոհս նորին զՂազանն եւ զԹուխլուխ հազարապետն, զԱրուխն, զԱւճանն եւ այլ բազումս… եւ զրպարտեալ զԹագաւորն Վրաց Դեմետրէ բաղբաղելով եղին ի վերայ բարուրս մահու եւ տարեալ սպանին… ի մեծ դաշտին Մովկանայ, յեզր գետոյ Կուրայ, ի Թուին 738 (=1289)»: (Օրբլ. էջ 430):

§ 35. Ստեփաննոս Օրբէլեանի այս կոչումից երեւում է, որ Բուղայի եւ Արուխի հետ, իբրեւ նոցա համախոհ եւ դաւաճանութեան մասնակից՝ սպանուեցան ուրիշներն եւս, ինչպէս Ղազանը, Թուխլուխը, Աւճանը, աւելացնելով, որ դաւաճանների դատապարտուածների շարքն այդքանով չէր վերջանում, այլ մահ գտան «եւ այլ բազումս», առանց անունները յիշատակելու: Պատմիչի այդ անորոշ «եւ այլ բազումս» արտայայտութեան պակասը լրացնում է Ֆրիկը.

«Տէրըն սաստեց խոլոր աչքով»

դաւադրութիւն կազմողներին եւ

«Հանց փոխարէն արար Աստուած
Այն Գրիգորին եւ իւր ազգին»,

այսինքն Ս. Լուսաւորչի հովանին վայելող Հայոց ազգին,

«Որ ամենայն մարդ վըկայեաց,
Թէ օրթախնին անիծեցին»,

այլ խօսքով, թէ «օրթախները», ընկերշակ-դաւադիրները դատապարտութեան անէծքի արժանացան, որոնց նկատմամբ Թաթարների հովանաւոր Սուրբ Յովհաննէսն իսկ երես է դարձնում,

«Սուրբ Յովհաննէս իրեն խըռով
Այն անօրէն Թուման-ճուխին»,

Արդեօք Տաղիս մէջ յիշատակուած Թուման-ճուխը Չինգիզ-Խանին համանուն մի այլ ա՞նձն էր, որ մասնակցել էր ապստամբութեան եւ որին Թաթարների հովանաւոր Սուրբ Յովհաննէսը — Prester John — պիտի խռով մնար, այսինքն իր անէծքին արժանացնէր, թէ՞ հեռաւոր մի ակնարկ է Թաթարների առաջին պետ եւ կայսրութեան հիմնադրին՝ Չինգիզ-Խանին, որի բուն անունն էր Թեմուջին Թեմուչուխ, որ երգի մէջ դարձել է Թուման-ճուխ, որը սպանել տուեց Կերաիտ — Keraît — ցեղի խանին, որ կրում էր Ունչ-Խան տիտղոսը, եւ որն ընդունած էր Քրիստոնէութիւն եւ նահատակութիւնից յետոյ համարուեց իր ցեղի պաշտպան սուրբը՝ Յովհաննէս անունով եւ որը յայտնի էր Եւրոպայի քրիստոնեայ աշխարհին Prester John անունով:

Դժուարանում ենք որոշակի ասել: Աւելի շուտ համանուն, մասնակցող մի անձն էր: Մի բան միայն շատ պարզ է: Ֆրիկն իր ժամանակի պատմութեան բոլոր տուեալներին քաջ ծանօթ անձն էր, որին անյայտ չէին նոյն իսկ

հեռաւոր Թաթարստանի, Մոնղոլների բնաշխարհի, ազգային աւանդութիւնները*):

Եւ դաւադիրները (որոնց մէջ կար Թուման-ճուխ անունով մէկը կամ ոչ, ինչ որ էական չէ մեր հարցի նկատմամբ), մինչ այն աստիճան մոռացել էին իրենց եւ ամէն ինչ, որ

«Իսկի չ'ածեր զԱստուած ի միտ,
Զ'ունէր երկիւղ ի յիւր սրտին:
Հանց խորտակէ Աստուած ըզնա,
Որ իւր ազգո'վն ամէն ջընջին·
Տիրասըպան, Աստուածուրաց,
Լիրբ, ւ'անամօթ այն չուն Սօֆին»:

§ 36· Ֆրիկի թողած «Արղուն Ղանի եւ Բուղայի» Տաղի մէջ հանդիպում ենք մի քանի տողերի, որոնք պատմական ժամանակագրական մեծ արժէք ունին, նոյն իսկ իրենց սեղմ, համառօտ ակնարկներով: Նկարագրելով հայ ժողովրդի կրած տառապանքն ու տագնապը ձմեռուայ ու ամառուայ եղանակներին՝ շարունակում է երգել·—

«... Քըսան տարի դար քաշեցաք
Որ հալեցաւ ոսկր ու մորթի:
Լոկ շընչաւոր եմք մնացել,
Խելք, զգայարանք ի մեզ չերեւին·
Ջալալէդինն էր մընացել,
Նա կու զարնէր աքցի բանին:
Տէրըն սաստեց խոլոր աչօք
Ու ցըրուեցաւ տունն ու բարին»: 70–77:

Այս ութ տողերի մէջ Ֆրիկն ամփոփել է ե՛ւ ժամանակագրութեան ճըշդութիւն, ե՛ւ ժողովրդի յոյզ ու տագնապի եւ տանջանքի խտացում, ե՛ւ Թաթարների արշաւանքի նախնական շրջանի քաղաքական կացութեան արդար տեսութեան ըմբռնում եւ բնորոշում, ե՛ւ պատմական անցեալի հերոս անձի՝ Ջալալէդինի անունը եւ նորա ճշգրիտ հայելու դերը,— Թաթարների դէմ ունեցած մաքառման մէջ — երբ նա, յիրաւի, իւր արարքներով, յարձակումներով, երբեմն արիասիրտ, երբեմն յուսահատական պաշտպանութեամբ նոր ծրագրներով, ամէն քայլափոխի

«Կու զարնէ աքցի բանին»

անլուր ընդվզումներով, արհամարհելով հրամանները Թաթար արշաւախմբի ղեկավարների եւ նոցա ծրագրները ջուրը ձգելով շարունակ, մինչեւ որ իւր անդուլ ու անդադար տեղից-տեղ փոխուելու ռազմավարութեամբ, հակայարձակումներով՝ կարող եղաւ, գոնէ, առ ժամանակ դադարեցնել Թաթար

*) Տես Ցուեկլուած Դ·— «Առաջին Մոնղոլական Հարստութեան ծագումը, զարգացումը եւ անկումը»·— Prester **John**-ի մասին տես աւելի մանրամասն Hastings: Encycl. of **Religion and Ethics**, Vol. X, p. 272 շր·— Նաեւ Yule-ի Marco Polo-ի Հրատ· հատ· I, էջ 231–37, երկար ծանօթութիւնը:

արշաւանքի խոլ թափը, որ արտայայտւում է,—

«Տէրըն սաստեց խոլոր աչօք
Ու ցըրուեցաւ տունն ու բարին»

Ջալալ–էդ–դինի հրոսակ, հակարշաւ Թաթարների ձեռքով:

§ 37· Եւ որպէսզի մեզ համար կատարելապէս հասկանալի լինին այդ տողերը, պարտաւոր ենք դրահաշուական բանաձեւի եղանակով ստացած այդ ասացուածքի փակագիծը բանալ, այսինքն պարզել աւելի պատմական անցեալը եւ մթութեան քօղը բարձրացնել այդ տողերի վերայից:

Ամենից առաջ ծագում է մի հարց,—

«Ո՞վ էր այդ Ջալալէդդինը, որ «կու զարնէր աքցի»: Իբրեւ առակաւոր խօսք, գիտենք, թէ ով կարող է «աքցի զարկել»,— կենդանին, դրաստը, որ կամք ու ցանկութիւն չունի հնազանդելու բռնադատ ոյժի եւ ձեռքի եւ կամ պատմական մի անձնաւորութիւն, որ չէր կամենում իւր ազատ, ինքնիշխան վիճակը փոխել ստրկութեան եւ կամովին մտնել մի բիրտ, անգութ եւ ոչ օրինական իշխանութեան լծի տակ, որ ոչ ոքի խնայել գիտէր, սպանելով այր, կին, մեծ, մանուկ, յղի կանանց յափշտակելով, բռնաբարելով, արգանդները ճեղքելով եւ ծնունդ չառած մանուկները ոչնչացնելով··· տիրելով ստացուածների, սեփականութեան, քաղաքների, վարուելով բնակիչների հետ անգթութեան անօրինակ անսրտութեամբ»:*)

Եւ որպէսզի ծանօթանանք Ջալալ–էդ–դինի անձի եւ գործերի հետ, պարտաւոր պիտի լինինք յետահայեաց մի ակնարկ ձգել Խարազմեան Տան եւ հարստութեան անցեալի եւ նորա այս ներկայացուցչի վերայ:

Եւ որովհետեւ այդ պատմական բացատրութիւնը ըստ ինքեան պատմական կարեւոր մի էջ է, ուստի ընթերցողի ուշադրութեան պիտի յանձնենք ուսումնասիրութեանս «Յաւելուած»ի Է· գլուխը, իբրեւ ամփոփ հայեացք մեզ հետաքրքրող նիւթի մասին:

Միայն այստեղ պիտի շեշտենք, որ Ֆրիկի Տաղի մէջ առաջ բերուած այդ տողերը զարմանալի կերպով բիւրեղացած, ամփոփ վիճակն է պատմութեան ազգային զգացումների եւ յոյսերի եւ որ միայն ժամանակակից անձը՝ Երգիչը կարող է խտացնել պատմական շրջանի դէպքերը այդ մի քանի տողերի մէջ:

Եւ ապա,— մեր Երգիչն, իբրեւ պատմական տուեալների արձանագրող, պարագաներին նայում է զուտ առարկայական տեսակէտով, առանց ազգային ու անձնական տեսութիւններին ու յոյզերին տեղ տալու,— ինչպէս տեսնում ենք Կիրակոս Գանձակեցու մէջ,— Ջալալ–էդ–դինը ներկայացնելով այնպէս, ինչպէս պիտի ներկայացնէր անաչառ, անկանխակալ տեսութեան Պատմիչը:

*) D'Ohsson: Histoire des Mongols depuis Tchinguiz Khan Jusuqu'a Timour Bey ou Tamerlan, par baron C. D'Ohsson, Paris, 1834-35, չորս հատոր, Vol. I, p. 337.— Հմմտ. Ibn-ul Athir: History, A. D. 1220-21.

§ 38. Շնորհիւ Ֆրիկի մանրամասնութիւններն աչքից չթողնելու պարագային, Պատմագրի մտացուածը մասամբ լրանում է: Տաղիս մէջ յիշատակած երկու անուններ, իրենց բնորոշ մակդիրներով եւ նոցա ամբողջ հոգեբանական կազմուածը ընդգծող յատկանիշներով մէջ տեղ բերուած «Անօրէն Թուման-ճուխի» եւ «Անամօթ չուն Սօֆիի» անուններն եւս աւելանում են մեր պատմական կեղեքիչների այն շարքին, որոնք Հայ ժողովրդի ոսկր ու կաշին իսկ հալեցնելու ձգտման մէջ ո՛չ մի ջանք չեն խնայած: Այրուած սրտի, հոգեկան դառնութեան փոքր ինչ մխիթարութիւն էր այդպիսիների նկատմամբ, գոնէ, «Աստուծոյ դատաստանի» արագ հատուցումը Երգչի աչքում եւ նա իւր նուրբ երգիծանքով լի խօսքը, իւր թշնամիների հասցէին է ուղղում առանձին մի բաւականութեամբ անզօրի ու ընկճուածի սուր հեգնանքը, ներքին մի հաճոյքով, թէ

«Գիտեմ կային հանցեղ մարդիկ,
Որ ի մեր չա՛րըն խընդային.
Երբ նըստէաք ի հրապարակ,
Ամէնն ըզմեզ ծիծաղէին»,

Սակայն եւ այնպէս այդ դառն վիճակի մէջ այն ներքին չարախնդաց զգացումը, թէ

«Հանց բարետես աչուի ունինք,
Որ նոքա այլ գըլխիվայրին»,

ընկճուածներին յոյս ու կենդանութիւն է ներշնչում:

§ 39. Թէ «Աստուծոյ դատաստանը» կարող է չսպասածից աւելի «արագ հասնիլ»՝ այս գաղափարը միայն Ֆրիկի ճակատագրականին հաւատալու մտածումը չէ, այլ, համարեա դարու մտածողութեան, ոգու արտայայտութեան դրոշմն է, որ նկատում ենք նաեւ այլ ժամանակակից դէմքերի մէջ: Նոյն մտածողութեան եղանակն ենք նկատում նաեւ Ստ. Օրբէլեանի մէջ, երբ նա մի առանձին բաւականութեամբ է պատմում, թէ որպէս «փոյթ ընդ փոյթ էառ Աստուած զվրէժ պատուհասին... եւ խնդրեաց իրաւունս» (Օրբ. 443), երբ յիշատակում է իրեն Աթոռ եւ գահ տուող Կոստանդին Բ. Պրոնագործի դատապարտութիւնը եւ նորան յաջորդող Ստեփաննոս Դ. Կաթողիկոսի գերի վարուիլը դէպի Եգիպտոս. (1292 թ.):

§ 40. Ֆրիկի ապրած ժամանակի նկատմամբ, մինչեւ այստեղ, նորա Տաղի մէջ եղած պատմական տեղեկութիւններից հանուելիք տուեալներից երեւում է, որ Տաղս գրուած պիտի լինէր ոչ առաջ քան 1282 թուականը, եթէ ենթադրելու լինինք, որ Տաղս գրուած էր պատմական յեղաշրջումների անմիջական ազդեցութեան տակ:

Սակայն Տաղի մէջ ցրուած այլ տողեր, այդ պատմական-ժամանակագրական տեղեկութիւնների հիմքով, այդ թիւը աւելի են մօտեցնում դարավերջին:

Դուադիրների մահուան մասին եղած զանազան խորհրդածութիւններ դրդում են Երգչին բողոքել, ըստ իւր հայեցակէտի, մի անմեղի արիւնն ի զուր թափելու դէմ եւ որ կամենում է հրապարակով եւս պաշտպանել Արղուն խանի դէմ, ուստի եւ նա դիմում է հասարակական դատաստանի․

«Զինչ Մասաս չի կան՝ հաւասար
Ամենեքեան թող ժողովին,
Որ աղաչենք ըղՏէր Աստուած,
Որ ցուցանէ Արղու Ղանին,
Թէ չէ աղէկ այն արտասուքն,
Որ թափեցին Օրտուղանին:
Կու հրամայէ հոգցող*) անուն
Թաչար, Ղազան, Սաղաղօլին,
Թէ — «Շուտ հոգցէք զիւրեանց բաներդ,
Թէ չէ ի հետ ձեզ պարապին»:

§ 41․ Բնագիրն այս երկու քառեակի մէջ բաւական խառն է եւ աղճատուած: Պատմական անցքերին եւ գործող անձերին անծանօթ հետադայ դրիչը անկարող լինելով այդ անունները ճշդութեամբ գիտնալ, խառնել է եւ գրել իւր քմքի ու կարողութեան համաձայն: Այսպէս, օրինակ ՁՌ․ ունի «Որ թափեցին աւր թախընիք», որ յայտնապէս պէտք է կարդալ «Աւրդուխանին», եւ ապա շարունակում է արտագրել, առանց իրեն հաշիւ տալու, թէ ի՞նչ է կատարում․

«Սա հրամայէ հոգցող անուն
Թաղար, Ղուչան, սա՛ դադաւլին»,

որ պէտք է կարդալ իբրեւ պատմական անուններ Թաչար, Ղազան, Սադադալին, ուր Ղազան անունը ամենայն հեշտութեամբ կարող էր խեղաթիւրուիլ եւ Ղուչան դառնալ, ա եւ ու, դ եւ չ տառերի Ձեռագրական նմանութիւնից․ իսկ Սադադալին անունը սա՛ դադալին ոչ մի միտք չբովանդակող անմիտ ձեւակերպութիւնն ստանալ:

§ 42․ Ցրիկի ՁՌ–ի մէջ սպրդած այդ սխալներն իրենց պատմական արժէքին վերածելու իրաւունքն է տալիս մեզ Ստ․ Օրբէլեանը:

Պատմելով նոյն այս Արղուն Խանի մահը, պատմիչը գրում է,—

«... Եւ պատճառ մահու նորա եղեւ հարճ մի յոյժ սիրեցեալ, յորմէ

*) «Ի դուռն Ապաղայ Ղանին... տաճիկ ամիրայք էին հոզցողք եւ բեդեչիք Ղանին»: (Մաղաքիա Աբեղայ, Պատմ․ վասն Ազգին Նետողաց․ Ս․ Պետր․ 1870, էջ 45)․— Հոգացող բառը Ք․ Պատկանեան թարգմանում է приближенный, заботящийся о комънибудь. Հոգացող, հոգատար մէկի մասին․ (Ист. Монголов. Инока Магакии ...Перев. К. Патканова. С.П.Б., 1876. Стр. 104-105.

*դեղակուր լինի եւ վճարի ի դաշտին Մուղանայ ի տօնի Թէոդորոսի**) : *Որ եւ ի մահուան նորա լինի կոտորուած բազում մեծամեծ աւագանւոյն՝* խոջանին, *որ էր գանձապետ արքայի, եւ* Սուլտանին, *որ էր ի վերայ կերակրոցն եւ ըմպելեացն, եւ* Չիշուին *եւ* Աւրտուղանին, *որք էին ի վերայ դատաստանացն, եւ մեծ դիւանին* Սադադաւլին՝ *բարեբարոյ Ջհդին*†), *որ էր ի վերայ ամենայն հարկաց աշխարհիս… Զօրագլխացն եւ մեծամեծացն եղեալ յերկփեղկս՝ ոմաքն կոչէին զԲայտուն ի Բաղդատայ՝ ազգական Արղունին եւ ոմանք փութացուցանէին զեղբայր Արղունին՝ զՔեղաթուն ի Հոռոմոց : Որ եւ եկեալ նստաւ ի տախտն արքայութեան՝ Ղան ի վերայ ամենայն աշխարհի, ի թուականութեան Հայոց* 740 (=1291 *թ.*) : [*Օրբլ. էջ* 467–68]**)

§ 43. *Արղունի ազգական Բայտունի (որ Ապաղայի կին Մարիամ Դեսպինայի որդեգիրն էր) եւ Արղուն Խանի եղբայր Քեղաթունի*1) *մէջ ժառանգական իշխանութեան եւ գահակալական իրաւունքի համար պատերազմ ծագելով եւ իրար դէմ ելնելով խանական թախտը գրաւելու նպատակով,*

*‥ գայ ի Խորասանայ* Ղազանն, *որդի Արղունին, որդւոյ Ապաղային, … ի խնդիր հայրենական աթոռոյն, ամենայն զօրօքն Խորասանայ, … որոց զօրագլուխք… Խութլու շահն… եւ անյաղթն ի պատերազմունս եւ բազմահնարն* Նաւռուզ… որդի Արղունին2) *որ եկաց պետ եւ պասխազ ի վերայ ամենայն աշխարհիս եւ բազում ոճիրս գործեալ էր ապստամբութեամբ ընդ Արղունին եւ որդւոյ իւրոյ Ղազանին եւ այժմ միաբանեալ էր ընդ սմա… Յորմէ երկուցեալ մեծ բիւրապետին* Թաչարին *գնաց եւ խառնեցաւ ի* Նաւռուզն…» : (*Օրբլ.* (470–71) :

*Որի հետեւանքն է լինում Բայտունի յաղթուիլն ու գերի ընկնելը : Ղազանը տանում է վերջնական յաղթութիւնը, որին «եւ նստուցին… ի տախտ արքայութեան հօր իւրոյ Արղունին»*, 1295 *թուին* :

*) 1289 *թուին*, — *ՉԼԸ* — *Հեթում Պատմիչ Թաթարաց. Վենետիկ*, 1842, *էջ* 85.— *Օրմանեան*, Ազգապատում, *էջ* 1707, 1289, *Յունիս* 8:

†) *Հրէայ, բարեկամ քրիստոնեաների եւ հակառակորդ իսլամի, որոնց ձեռքով եւ սպանուեց : Երկար ժամանակ խաղաղութեամբ ու իմաստութեամբ վարեց Արղուն-Խանի ներքին վարչական գործերը, նորա շնորհիւ էր, որ Պարսկաստանը, Արաբիայի մասը, Ասորիքը, Հայաստանն ու Վրաստանը համեմատական անդորրութիւն վայելեցին : Սպանուեց* 1290 *թուին : Տես* § 23 *էջ* 58:

*Բայդու-Խանը թոռն էր Հուլաղու-Խանի. երկար չգահակալեց. սպանուեց Արղունի որդի Խազան-Խանի կողմից*, 1295 *թուին* :

**) *Տես Յաւելուած Ա.* :

1) *Հեթում Պատմ. էջ* 59, *անուանում է սորան նաեւ Իէդայիդ՝ էրշնի — Թուրշնի մականունով, որ նշանակում է* «գտաք զկորուսեալն» : *Օրբլ. էջ* 231. *հտ. Բ. Գլ. ՀԱ, Փարիզ* :

2) *Նախորդ հարկահաւաք Արղունի որդին, տես վերը : Օրբէլեանի* պասխազ *տիտղոսը աղաւաղումն է* պասզազ-*ի, որ արտագրողի սխալն է.* զ-*ն ընռնելով* դ *եւ* դ-*ն փոխելով* խ-*ի* : *Տես* § 8 *եւ Յաւելուած Բ.* պասզազ = պայզահի *մասին* :

§ 44․ Պատմական այս կոչումներից շատ պարզ է, որ ՁՌ–ի մէջ աղաւաղուած բառերը բուն բնագրի մէջ՝ որոշ պատմական անուններ էին եւ յայտնի դեր կատարած անձեր, որոնք Արղունի իշխանութեան ժամանակ պետական մեծ դիրք ունէին,— Օրղուխանը, իբր դատաւոր, Սադադօլին՝ իբր Սահիպ Դիւանի կամ «մեծ կամ գլխաւորը Դիւանի», որ 1286 թուականին, միւս Սահիպ–Դիւանի «մեծ խոջային» սպանելուց յետոյ (Օրբլ․ 426), հաւանօրէն նորա տեղն էր անցած,— Ղազանը, իբր Արղուն Խանի հարազատ որդի եւ Թաչարն, իբր բիւրապետ եւ հաւատարիմ յաղթական զօրական ու զօրավար, որ Արղունի մահից յետոյ պահ մը անցնում է նորա հակառակորդների շարքը, բայց հեռատեսութեամբ նորից վերադառնում է նորա որդու համակրողների շրջանը, ինչպէս եւ Նաւռուզը։

§ 45․ Թէեւ ակնարկով միայն անցնելով պատմական այս բոլոր եղելութիւնների վրայից, իբրեւ ամէնքին շատ լաւ ծանօթ դէպքերի ու անձերի մասին մի յիշատակութիւն, որոնց մասին փոքր ակնարկն իսկ բաւական էր իւր ժամանակակիցների համար,— պարզ ապացոյցներ են, որ Ֆրիկը շատ մօտ ծանօթ էր այդ բոլոր անցած–դարձածներին, անձնապէս ապրած այդ կեանքն ու շրջանը, համարեա այն չափով, ինչ չափով տեսնում ենք ժամանակակից պատմաբանի դերի մէջ Ստեփաննոս Օրբէլեանին։

Եզրակացութիւնը պարզ է,— Ֆրիկն ապրում էր այդ ժամանակամիջոցում եւ լաւ ծանօթ էր,— ականատեսի ծանօթութեան հասնող ճշդութեամբ, — Արղուն Խանի իշխանութեան բոլոր դէպքերին, այն է մինչեւ 1291 թուականի վերջը։

§ 46․ Ենթադրել, որ Ֆրիկն, իբրեւ հետագայ դարերում ապրած անձն հնար էր եւ կարող էր, լսած լինել այդ ամէնի մասին եւ պատմել իբր ականջալուր եւ կամ կարդացած կարող էր լինել այդ ամէնը եւ ապա իւր Տաղը երգած,— անհնար է։ Նախ, ինչպէս տեսանք, նա կարդալ չգիտէր․ երկրորդ, այդ ամէնից ականատեսի, այդ կեանքով ապրած մարդու ու երգչի տպաւորութիւնն անհերքելի է, որը միայն կարող էր տալ այդպիսի մանրամասնութիւններ, անսխալ ու որոշակի անուններ անձերի, դէպքերի մասին եւ միայն նոյն ժամանակն ապրած եւ նոյն տառապանքին ենթարկուած եւ այդ ցաւերն ապրած մարդու համար հնարաւոր էր այդ ամէնը, որի ապացոյցներն առատ են իւր այդ Տաղի մէջ։

§ 47․ Թէ Ֆրիկը ժամանակակից էր այդ բոլոր դէպքերին եւ այդ դարու անձն՝ մեզ համար կասկածի տեղիք չեն թողնում նոյնպէս եւ իւր բառարանի մէջ սպրդած այն քանի մի բառերը, որ իբրեւ ժամանակակից անձն ակամայից իւր հարկն է տալիս իւր դարու օտար ազդեցութեան եւ օտար քաղաքակրթութեան ընձեռած բառամթերքին։ Նոյն շրջանի շատ առաւել գիտութեամբ ու կրթութեամբ օժտուած եւ լեզուի ու կրթական դպրոց անցած անձեր, նոյն ակամայ թէ գիտակցական հարկն են տալիս եւ իրենց գրուածի մէջ եւ տի–

րող լեզուի հետքերը նշմարելի դարձնում, ինչպէս մենք այս շրջանի մէջ ապրողներս մեր տիրապետող քաղաքակրթութեան հետքերն ենք թողնում մեր գրութեան, խօսակցութեան մէջ: Այսպէս նորա բառամթերքի մէջ մենք հանդիպում ենք «Զինքաս, ղան, բէկլար-բէկի, սահիպ-դիւանի, հոդղոց» բառերին, որոնք նոյն շրջանի Թաթարական բառեր են, կամ բառացի թարգմանութիւն ունեալ եղրի՝ սպրդած նորա Տաղի մէջ,— ճիշդ այնպէս, ինչպէս Ստեփաննոս Օրբէլեանի մէջ, բերած կոչումների մէջ հանդիպում ենք «եառլեխ, փայիզա, պասխաղ, դաւթար, ծիկնաւպար» օտար ազդեցութեան արդիւնք բառերին, Շատանում ենք այս կարգի օրինակներ եւ ապացոյց առնելով միայն այդ Տաղի մէջ պատահած բառերով եւ նորա միւս տաղերի մէջ ցրուած բառամթերքն աւելորդ ենք համարում մէջ տեղ բերել, որ մեզ շատ հեռու կը տանէր:

Հետաքրքրուողների ուշադրութեան ենք յանձնում Ֆրիկի Դիւանի վերջը կցուած բառարանը, ուր ի մի ենք բերած այդ բոլոր տուեալները:

§ 48· Վերն առաջ բերած երկու քառատողն, ըստ իս, այսպէս պիտի հասկանանք: Օրղուխանն եւս, ինչպէս եւ Նաւռուզը, որոշ ժամանակ հակառակորդ են եղած Արղունին, ապա զանազան պատճառներից դրդուած եւ պարագաների թելադրութեամբ ստիպուած են եղել անցնել Արղունի կողմը: Վերջինիս սրտից, բնական էր, պիտի չփարատուէր կասկածը, որին իբրեւ հետեւանք, նեղել եւ տանջել էր տուել Օրղուխանին, որի համար եւ Երգիչը, իբրեւ հասարակական դատախազ, իւր առարկայական դիտողի դիրքից, դատապարտում է Արղունին «Թէ չէ աղէկ այն արտասուքն», որ թափել էր տուել Օրղուխանին: Ապագայում Արղունը, նորա հաւատարմութեան յայտնի գրաւականներ ստանալով, նշանակում է իբրեւ «դատաւոր» եւ որը իւր հաւատարմութեամբ տարուած դէպի Արղունը, իբրեւ «հոգցող անուն» զգուշացնում է բիւրապետ Թաչարին, դահաժառանգ Ղազանին եւ մեծ դատաւոր Սադադօլին, թէ

«Շուտ հոգցէք ըղձեր բաներդ,
Թէ չէ ի հետ ձեզ պարապին»·

այսինքն չինֆսան եղած Բուղայի եւ Արուխի պէս «ի վեր քաշած» եւ իրենց տիրոջ դէմ դաւաճանութիւն նիւթող եւ ապստամբութեան ենող անձեր, իրենք կարող են «ի հետ ձեզ պարապել», իրենց հաշիւները ձեզ հետ վերջացնել:

§ 49· Թէ Ֆրիկն ապրել է Թաթարների արշաւանքների ժամանակաշրջանում, մեզ համար որեւէ կասկածի տեղիք չեն թողնում այն հատ ու կտոր ակնարկները, որ ցրուած են նորա տաղերի մէջ:

Վերն արդէն տեսանք, որ նա իւր տաղերից մէկի մէջ դառնօրէն գանգատւում է, թէ

«Ոչ տուն, ոչ տեղ ունիմ,

կու խոցիմ ի յանհաւատնուն»,

որ պարզ ակնարկ է Թաթարների նկատմամբ։

Մի այլ տեղ, մարդու անձնական քաջութիւնը գովքի նիւթ դարձնելով, ասում է

«Ցորժամ մանկութիւն ցուցնէ,
ի Դանէն պարգեւք գըտանէ»։
ԺԹ. 23։

Իւր մի այլ տաղի մէջ Ֆրիկը գանգատւում է,—

Ես ի՞նչ գիտէի, եղբարք,
Թէ մեղաց դարըն հանց լինենայ,
Զինչ որ կու քաշեմք հիմիկ
շատ չարիս եւ վըճար չի կայ»,—

որ պարզ ակնարկ է իւր ժամանակի, Թաթարների տիրապետութեան օրերի, կրած նեղութիւններին, երբ անվերջ «չարիս» էին կրում եւ որին «վճար չի կայ», վերջ չկայ եւ որ համեմատելով «մեղաց դարի» հետ, որի մասին աղօտ գաղափար ունէր, կարծում էր, որ դորանից աւելի նեղութիւն եւ «չարիս» պիտի չ'կրէին մարդիկ։

§ 50. Իւր «Ընդդէմ Ֆալաքին» գեղեցիկ տաղի մէջ այդ նկատմամբ եղած ակնարկն աւելի պարզ է.

«Զանգէտ ու գնաքաս մարդըն
յաստընւորըս առնես ձեռնաւոր,
Զիմաստուն մարդկանց ըզհացն
կու ձգես ի սար կամ ի ձոր.
Հիմիկ դըժարեց բանըրըս,
որ եղաւ Թաթարն թագաւոր,
Զըրկեց զամենայն աշխարհս
ու զգողերն եդիր մեծաւոր.
Այլ չի մընայ հանցեղ
ու Ֆալաքն ոչում կարեւոր,
Զարնու եւ ձըգէ ի վայր,
չ՚համարէ զոչոք Թագաւոր»։
Իէ. 17–22։

Ֆրիկի ապրած ժամանակի ու շրջանի որոշման համար առանձին մի կարեւորութիւն են ստանում այդ հատ ու կտոր ակնարկները, մանաւանդ Տաղի առաջին տողերը, ուր գանգատուելով Բաղդի փոփոխական հաճոյքի խաղերի եւ անիրաւ իրականութեան դէմ, որը լոկ քմահաճոյքի բերումով «զիմաստուն մարդկանց զհացն ի սար կամ ի ձոր» է ձգում կամ «ի գիտուն մարդն» խոլոր ու խոժոռ նայում, որոնցից մէկն էր համարում, հաւանօրէն, նաեւ ինքն իրեն եւ դորա փոխարէն մարդու բանավարութեան ըմբռնումին անհաս հա-

չիւներով «զանգէտ ու գնաքաս մարդն յաստընուրս ձեռնաւոր» դարձնում։ Այս բոլոր անիրաւ կացութեան դէմ Ֆրիկն անյոյս զանգատի ձայն է բարձրացնում, ասելով՝

«Հիմիկ դժարեց բաներս,
 երբ Թաթարն եղաւ թագաւոր.
Զրկեց զամենայն աշխարհս
 ու զգողերն եդիր մեծաւոր»։

Այսքան պարզ ցուցում նորա ակնարկած ժամանակի նկատմամբ, այլ եւս ոչ մի տեղիք չեն թողնում կասկածի՝ նորա շրջանը որոշելու համար։

§ 51. Ֆրիկն իրաւունք ունէր դժգոհ լինելու Թաթարների ընդհանուր տիրապետութեան շրջանի կարգերից ընդհանրապէս՝ իբր իւր սիրած երկրի աւեր ու կործանման պատճառ, մասնաւորապէս՝ աւելի եւս պիտի զգար նորա սիրտը, կսկծար ու բողոքէր այդ տիրապետութեան դէմ, որովհետեւ իւր սեփական զաւակն էր «գրաւ դրած ուստի ճուղապ գնալուն» համար։ Հասկանալի էր, որ այդ բոլոր ամբարած դառնութիւնը պիտի արտայայտուէր նորա տաղերի մէջ եւ այդ դժգոհութիւնը հանրութեան բաժին դարձնէր, իբրեւ իւր ժամանակի «շրջուն լրագիր», քանի որ Երգչի էական դերերից մէկն էր նաեւ գաղափարների, յոյզերի, հանրական զգացումների թարգման լինելով, տարածել այն իւր խսկ բերնով ու շնչով։ Եւ այդ է պատճառը, որ լռիկ ու մնջիկ, բայց եւ առանց քաշուելու, նա պախարակում է այն տիրապետութիւնն ու կարգերը, ուր «գողերն են մեծաւոր» եւ որոնք առանց տատամսելու «զաշխարհ ամենայն» են զրկում։

§ 52. Թուի թէ Թաթար իշխաններն ու իշխանաւորներն եւս «բարեսրտ» աչքով չեն նայել այդ ըմբոստ հոգու վրայ, որի անձնական հոգեկան ըմբոստացումները եւ նոցա արտայայտութիւնները, իւր Տաղերի շնորհիւ, հանրային սեփականութիւն են դառնում, խուլ անկիւններում եւ հրապարակի վերայ անբաւականութիւն եւ լուռ ու զսպուած դժգոհութիւն սնուցանում իրեն լսող ու երգող ժողովրդի մէջ։

Հաւանօրէն, Թաթար իշխանաւորներն եւս նոյն դրամով էին հատուցանում իրենց համակրութեան ու հակակրութեան արտայայտութիւնները այդ «մեղաւոր եւ աղքատ», բայց եւ այնպէս «ուստի ճուղապ» տալու ընդունակ յանդուգն աշուղին եւ արգիլած պիտի լինէին Ֆրիկի տաղերի ազատ երգելն ու տարածումը։ Մանաւանդ, որ նորա այդ բողոքի վերջին երկտողը, ըմբոստացողի զօրեղ ձայնի հետ եւ հեռաւոր ապագայի յոյսերի մի նշոյլ է տալիս, թէ

«Այս չի մընայ հանցեղ
 ու Ֆալաքն ոչում կարեւոր,
Զարնու ու ձըգէ ի վայր
 չհամարէ զոչոք Թագաւոր։

§ 53· Այսպիսի մի ենթադրութեան յանգելու մեզ իրաւունք է տալիս այն հանգամանքը, որ նորա հոգեկան ըմբոստացման այդ բողոք տողերը մեր աչքի անցրած տաղարաններից մեծագոյն մասի մէջ գոյութիւն չունին, հան-ուած են եւ այդ «գրաքննական» արարքը թերեւս շատ կանուխ ժամանակի գործ է, որով եւ արտագրող գրիչները զուրկ են եղել այդ տողերը իրենց գրած տաղարանների մէջ մտցնելու հնարաւորութիւնից: Այսպէս, Երուսաղէմի Ս· Յակոբեան Գրատան No. 743, Վիէննայի Մխիթարեան Հայրերի մատենադարանի No. 797, Ս· Ղազարի No. 1823, Անտոնեան Միաբանութեան No. ԾԻԵ Ձեռագրները եւ վերջնից արտատպութիւն հրատարակածը «Սիօն»ի մէջ եւ Ա· Զոպանեանի «Հայ էջեր»ի մէջ մտած այդ բողոք–տողերը չը կան եւ միայն բարեբաղդ մի դիպուածով պահուած են Օքսփորդի Բոդլէեան Գրատան F. 16 Ms. Arm.–ի մէջ:

§ 54· Ֆրիկի «Ընդդէմ Ֆալաքին» տաղի մէջ մի ակնարկ եւս կայ, որով թէ տաղի գրութեան ժամանակը կարելի է որոշել մօտաւորապէս եւ թէ Թաթարների արշաւանքի ժամանակ ապրած լինելու մի այլ դրական ապացոյցը գտնել: Բաղդի, Ֆալաքի, փոփոխական ու յեղյեղուկ քմահաճոյքների նկատմամբ ասում է,—

«Յորժամ որ ի յետ քակիս
ու ձըգես ի յաչքըդ խոլոր,
Ոչ թուղթ, ոչ ղալամն օգնէ,
ու˘ ոչ հարիւր հազար ձիաւոր·
Տաս՝ ի վիզըն ու˘ ի վայր ձըգես,
չի մըռես զոք ոչ թագաւոր·
Հընցգուն քար ափով ածես
որ չօգնէ հազար ըռմբաւոր,
Սահիպ դիւանին ասէնք,
որ մըլքեց գերկիր նա բոլոր,
Հանցեղ սիասաթ ունէր,
որ չունէր ոչ ոք թագաւոր:
Իէ· 27–32·

§ 55· Ոչ միայն գաղափարի, այլ նոյն իսկ, համարեա նոյն բառերի դասաւորութեամբ, արտայայտութեան ենք պատահում ժամանակկից Պատմիչի հետեւեալ կոչումի մէջ:

Պատմելով Սիւնեաց իշխան Սմբատ Օրբէլեանի մասին, թէ Արղուն ստիկանը եւ հարկահաւաքը, իբրեւ արտայայտութիւն իւր երախտագիտութեան դէպի իւր բարեկամն ու թեւարկողը, Սիւնեաց երկրի իշխանութեան պատուի մէջ վերահաստատելով նորան եւ Աւագի իշխանութեան եւս տիրապետել տալով,— Ստեփաննոս Օրբէլեանը պատմում է,—

«... տայ զղուսար նորա (=Աւագի) զԽօշաքն ի կնութիւն մեծ խոջային, Սահիպ դիւանին, որ ունէր ի բուռն զամենայն աշխարհս տէրութեան Ապաղայ ղանին... եւ նա էր դիւանի գլուխ եւ վերակացու ամենայնին. եւ էր այս 1718 Թուին (=1269): Բայց... արքայն... Հուլաու ղան մեռանի յ713 (=1264) Թուին. ընդ նմին... եւ կին նորա... որք դեղակուր եղեն ի բազմահնար Խոջայէն, Սահիպէն...»: (Օրբէլ. 418–19.— Զամչ. Պատ. Գ. 259–60):

Ապա պատմելով Սմբատ Օրբէլեանի անզաւակ լինելու պարագաների մասին, իբր զաւակ որդեգրելով իւր եղբօր որդի Տարսայիճին, ասում է.—

«... գնաց ի մեծ դիւանն արքունի առ Արղուն եւ Սահիպն ի Դաւրէժ... անդ հիւանդացաւ... եւ մեռաւ (1273)... եւ տուեալ զամենայն իշխանութիւն իւր ի... Տարսայիճն յանձնի զնա Արղունին եւ Սահիպին...»: (Օրբէլեան (419–420):

Վերջին անգամ Սահիպին հանդիպելում ենք Ապաղայ Խանի որդու, Արղուն Խանի, իշխանութեան ժամանակ եւ նորա թշնամիների Թւում կոտորուածների մէջ յիշատակուած նաեւ «զՍահիպ դիւանն» 1286 Թուականին: (Օրբէլ. 426: Տես վերը, Հմմտ. Գլ. Բ. § 27):

§ 56. Այս բոլորի համադրութեամբ մօտաւորապէս մի որոշ թուական ենք ստանում «Ընդդէմ Ֆալաքին» տաղի գրելու (=ասելու) նկատմամբ, այն է՝ ո՛չ կանուխ (Terminus ad quem) քան 1286 Թուականը, երբ սպանւում է Սահիպ Դիւանին*), որ չնայելով

«... մըլքեց զերկիր նա բոլոր»,

եւ միաժամանակ նա

«Հանցեղ սիսաար**) ունէր,

որ չունէր ոչ ոք Թագաւոր»,

բայց եւ այնպէս Ֆալաքի յեղյեղուկ ու անորոշ երեսից նա եւս տուժում ու սպանւում է:

§ 57. Աչքի առաջ ունենալով, ինչպէս վերը տեսանք, որ Ֆրիկը ծանօԹ է 1291 Թուականին տեղի ունեցած պատմական իրադարձութիւններին եւ պարագաներին, փորձենք որոշել, Թէ ինքը, Երգիչը ե՞րբ կարող էր ծնուած եւ վախճանուած լինել:

Մի աղօտ լոյս այդ մասին գտնում ենք նոյն «Ընդդէմ Ֆալաքին» երգած տաղի մէջ: Ֆալաքից զանազան խնդիրների մասին լուծումն խնդրելով, նորան

«Ֆալաքն պացխուն կու տայ,—

«Մի՛ հաչեր, անգէտ հալեւոր,

Քանի ես Ֆալաք եմ ՝լել

չեմ տեսել քան զքեզ մոլոր»:

Իէ. 46–47:

*) Սահիպ Դիւանի պաշտօնի յիշատակութեան մասին տես վերը § 27 եւ ծանօԹ.:

**) Մաղաքիա Աբեղայի Պատմ. էջ 64, հանդիպում ենք նոյն բառին:

*Ուրեմն «Ֆալաքը» գրելու ժամանակ Ֆրիկն արդէն* հալեւոր *էր**)։

§ 58. *Մի այդպիսի ակնարկի հանդիպում ենք նաեւ* «Վասն Արղուն Ղանին եւ Բուղային» *տաղի մէջ, ուր երգիչը գանգատւում է,—*

«Աւուրfն անցաւ *հետ Մասսին,*
*Եղըր չի կայ, հուն չերեւին.*
*Ցաւս երկարեց, ւ'ի յոսկր անցաւ,*
*Այլ չի մընաց համբերութիւն»։*

*Արդ այս տաղը գրուած պիտի լինի* ո՛չ կանուխ, *քան 1291 թուականը եւ հաւանօրէն նոյն այդ թուին։ Եւ իւր տարիքի մասին արած ակնարկից տեղեկանում ենք, որ նորա* աւուրfն անցած են, *որ աւելի զօրեղ արտայայտութիւն է, քան* հալեւոր *եղըը։ Որի բնական եզրակացութիւնն է, թէ* «Ընդդէմ Ֆալաfին» *տաղն* աւելի կանուխ *էր գրուած, քան* «Վասն Արղուն Ղանին եւ Բուղային» *տաղը։*

*Արդ ենթադրելով, որ* «Ֆալաfն» *աւելի վաղ արտադրութիւն է, քան* «Արղուն խանի» *տաղը, որովհետեւ Արղունի տաղի մէջ նա աւելի լաւատես է, քան* «Ֆալաfի» *մէջ, որի յոռետեսութեան ակնարկների հիմը, թերեւս, 1286 թուականից առաջ տեղի ունեցած պատմական, յիրաւի յուսահատութեան մըղելու անցքերն էին եւ իբրեւ գրութեան եզր ընդունելով նաեւ Սահիպ դիւանի մահուան յիշատակութիւնը,— անվրէպ ենթադրութեան պիտի հասնենք, 1286 թուականը ընդունելով այդ երգի գրութեան վերջնական եզր,* Terminus ad quem։

§ 59. «Աւուրfն անցան *եղըը, ժողովրդական հասկացողութեան «օրերն անցած» եզրի հետ համադրելով, պիտի ընդունենք իբրեւ 75–80 տարեկան հասակի մի ակնարկ եւ այդ ելակէտով ուրեմն պէտք է ենթադրել, որ Ֆրիկը պիտի* ծնուած *ենթադրենք 1210–1220 թուականներին։ Եւ ենթադրելով, որ* հալեւոր *եւ* աւուրfն անցած *Ֆրիկը կարող էր* «սիրող վաներուն» *լինելուց յետոյ աւելի բարեբաստիկ օրեր ունեցած լինել եւ բնական կարգով ապրած լինել այլ եւս 10–20 տարի, ապա ուրեմն նորա* վախճանը *պիտի ենթադրենք ԺԳ.* դարու վերջը *եւ կամ ամենաուշը* (Terminus past quam non) *ԺԴ.րդ* դարու առաջին *տասնամեակի մէջ։*

§ 60. *Մեր* եզրակացութիւնն *այս նկատմամբ ենթադրական է, քանի որ չունինք ճշգրիտ տուեալներ եւ թուեր, սակայն* ոչ անհաւանական, *քանի որ կառուցուած է պատմական ակնարկների եւ դոցա հետ կապ ունեցող թուական տուեալների վերայ։*

*) *Եւ իբրեւ մարմնակազմ՝ նիհարկեկ, եթէ աչքի առաջ ունենաք իւր իսկ վկայութիւնը. «Ֆրիկ, մի լինիր ի քուն, ոչ մեղաց կենալ դու զապուն», ԺԸ. 11, որ անձնափետութեան հեգնանքի մի գեղեցիկ օրինակ է Երգչի բերանում։*

§ 61․ *Այսպիսով Կ․ Պոլսի «Երկրագնտի» կարծիքը, թէ Ֆրիկը ԺԷ–րդ դարու մէջ ապրած մէկը պիտի ենթադրել,* ո՛չ մի հիմք *ունենալ կարող է, քանի որ, ինչպէս տեսանք, եւ դրական փաստ է ՋԿԲ*=1513 *թուականին տպագրուած ՏԱՂԱՐԱՆ–ի մէջ մտած էր նորա տաղերից մէկը։*

*Նոյնպէս անհիմն է նաեւ Հ․ Ղ․ Ալիշանի կարծիքը, որ «ԺԵ․ դարէս եաք ալ չէ» ասելով է շատանում,— առանց փաստերի,— մի ամբողջ դարու տարբերութիւն մեր եզրակացութիւնից։*

*Աւելի մօտենում է Հ․ Պոտուրեանի կարծիքը, որ վախճանուած է դնում Ֆրիկը* 1330 *թուին, միայն այն անապացոյց ենթադրութեամբս, թէ* «Ֆրիկ» *անունը* Խաչատուր Կեչառեցու *կեղծ անունն էր։ Այդ եւս* ոչ մի հիմք ունի, *քանի որ տեսանք արդէն, որ Ֆրիկը ոչ վարդապետ էր եւ ոչ իսկ սովորական գրագէտ անձն։*

§ 62․ *Այժմ անցնենք մեզ հետաքրքրող մի այլ հարցի,— ի՞նչ է Ֆրիկ անունը, դորա հետ նաեւ մեր Երգչի անուան հետ կապուած այլ հարցերի լուծման խնդիրներին։*

## ԳԼՈՒԽ Գ.

§ 1. Երգչիս Ֆրիկ անուան նկատմամբ եղած կարծիքները հանգում են այն ենթադրութեան, որ դա կեղծ անուն պիտի լինի, ինչպէս տեսանք վերն առաջ բերած կոչումների մէջ (Հ. Պոտուրեան, Ա. Չօպանեան, «Սիօն» ամսագիր),— եւ որի իսկական անունը խնդրական հարց է։

Մենք եւս հակուած ենք ենթադրելու, որ ՖՐԻԿ երգչիս իսկական անունը չէ՛, այն հասկացողութեամբ, ինչպէս հայկական անուններն են հնչում. (Ինչպէս Կարապետ, Աւետիս, Համբարձում, Խաչատուր եւայլն), այլ կեղծանուան մօտեցած, գրական=գրչի անուան nome de plume — վերածուած մի անուան, (կրճատուա՞ծ ձեւով, ինչպէս Կարապետ=Կարօ, Աւետիս=Աւոյ, Աւտոյ, Համբարձում=Համոյ, Խաչատուր=Խէչոյ, Կոստանտին=Կոստոյ եւ այլն)։

§ 2. Եւ եթէ այդպէս է, բնական հարց է ծագում՝ ի՞նչ է նորա իսկական անունը։

Պէտք է նկատել, որ ՖՐԻԿ անունը ոչ միայն հազուադէպ մի անուն է մեր գրական աշխարհում, շատ օտար հնչող մի անուն՝ մեր ականջին այլ եւ մեր ժողովրդական անունների շարքում եւ ոչ ժողովրդի սիրած, անունների սովորական կրճատումների ցանկի մէջ։

§ 3. Ենթադրել, որ այդ անունն առաջ է եկել Եփրեմ, Եփրիկ անուններից,— աւելի կրճատումի ենթարկուելով,— դժուարանում ենք, թէեւ այդ հազուադէպ օտար ու եզակի մի անուն, որպիսին չենք հանդիպում նոյն իսկ

անունների հետ մի հեռաւոր ազգակցական-հնչական կապ ունենալու մղումն ունի եւ մի արձագանգ այդ անունների։

Մեր պատմական անցեալն եւս մեզ այդպիսի մի անուան ժառանգութիւն թողած չէ, եթէ ի նկատի չառնենք Կիլիկեան Հայ Հարստութեան օրերի եւ շրջանի անցեալը, երբ օտար ազդեցութեամբ այդպիսի անուններ գործածութեան մէջ մտած լինէին, այն եւս այնքան սակաւ գործածութեամբ, որ իբրեւ բացառիկ rareté, որ ոչ ժողովրդի բերանում եւ ոչ էլ գրական աշխարհի մէջ է մնացած, բացի մի անգամից, որ քիչ յետոյ կը տեսնենք։ Եւ եթէ Կիլիկեան շրջանի անունների շարքի կրճատման ձեւի մէջ կամենալու լինինք որոնել նորա ծագումը, ապա թերեւս Ֆրեդերիկ անուան հեռաւոր արձագանգը միայն գտնենք այնտեղ, իբրեւ աղճատում եւ կամ անուան նուազական կամ փաղաքշականը։

§ 4․ Արեւելեան Հայաստանի անունների շարքում պատահում ենք այդ անուան հեռաւոր մի նմանութիւն՝ բուն անուան կրճատումի ձեւով միայն՝ Փարսիի անունով, որ աղճատումն ու կրճատումն է Բարսեղ անուան։ Նոյն կրճատման ձեւն ունինք նաեւ մի այլ անուան մէջ, որ ամենեւին հայկական չէ թերեւս, սակայն հայկական լինելու չափ գործածական է դարձած Պարսկական սահմանների կից գաւառների մէջ, ինչպիսին է Փարսադան անունը, որ այնքան գործածական է այժմեան Զանգեզուրի եւ հազուադէպ Ղարաբաղի միւս գաւառներում, հին հայկական Սիւնիքի եւ Արցախի մէջ։

§ 5․ Մի այլ անուն եւս, բուն պարսկական, հեռաւոր հնչական մի արձագանգ պահած՝ վերափոխուած չէ՞ Ֆրիկի․— այն է պարսկական Ֆրէյդուն անունը, որի կրճատումը Ֆրեդ, Ֆերեդիկ, Ֆերեդ= Ֆերեկ= Ֆրի՞կ։

§ 6․ Համանման մի անուան հանդիպում ենք մեր Երգչի ապրած դարի շրջանի, Կիլիկեան տիրապետութեան միջավայրի անունների մէջ, իւր կրճատուած ձեւով եւ շատ մօտ մեր Երգչի անուան,— այն է Ֆտրկա ձեւով՝ սեռական հոլովով։

Լեւոն Ե․ 1331 Նոյեմբեր 24-ին Սիկիլիայի վաճառականներին շնորհած իւր հրովարտակի մէջ ունի հետեւեալ, մեզ համար շատ հետաքրքրական հատուածը․—

«․․․ Սիրեցեալ եւ ականաւոր բնակիչքն Սիծելոյ․․․ խնդրեցին պարգեւս ի շնորհս մերոյ թագաւորութենէս տարածել յիւրեանք առհասարակ․ Նայ վասն պայծառ եւ երեւելի իշխանին՝ շնորհաւքն Աստուծոյ թագաւորին եւ մեր պանծալի հաւրն Ըռէ Ֆտրկայ սիրոյն եւ հարկեցն՝ ընդունեցաք զիւրեանց խնդրուածքն․․․»,

որի Ֆրանսերէն թարգմանութիւնը տալիս է մեզ V. Langlois այսպէս․․․
"C'est ainsi que les chers et notables habitants de la Sicile, étant venus devant notre majesté, ont demandé que nous leur accordions des privilèges

et que nous étendions aussi à eux nos faveurs. C'est pourquoi nous avons accueilli leur demande, par amour pour l'illustre prince et roi, par la grâce de Dieu, notre excelant père Fréderic et ayant eu égard à leur requette, nous avons accordé ce qu'ils ont solicité. ···".— Victor Langlois: **Le Trésor** des Chartes d'Armenie ou **Cartulaire de la Chancellerie Royale des Roupéniens.** ··· Venise, 1863, p. 187.

Եւրոպական Ֆրեդերիկ անունը հայ հրովարտակի մէջ ստացել է Ռոէ Ֆտրկայ (=Roi Frederic) ձեւը, (սեռ. հոլով) ինչ որ նոյն օրերի սովորական դարձած, տարօրինակութեան հետք չկրող ձեւն էր Ֆրեդերիկ անուան, որ այնքան մօտ ու նման է մեր Երգչի անուան։ Եւ եթէ երկու անունները իրար մօտ դնենք իրենց սեռական հոլովի ձեւով,— Ֆրկայ, Ֆտրկայ, պիտի նկատենք, որ տարբերութիւնը միայն մի տառի՝ տիւն տառին մէջն է, որը ամենայն դիւրութեամբ կարող էր հալուիլ, ջնջուիլ ժողովրդի բերանի մէջ եւ Ֆտրկայ դառնալ Ֆրկայ եւ կամ Ֆետրեկ, Ֆտրիկ՝ դառնալ Ֆրիկ։

Կրճատման այս ձեւը զարմանալի եւ շատ էլ տարօրինակ պիտի չերեւայ, որովհետեւ ինչպէս Վ. Լանգլուան իսկ նկատել է, ոչ միայն Roi Fréderic–ը դարձել է Ռոէ Ֆտրկայ (= անշուշտ ուղղականը՝ Ֆտրիկ կամ Ֆետրիկ), այլ եւ այդ կրճատուած ձեւն աւելի եւս կրճատուել է Սմբատի «Ժամանակագրութիւն»ը շարունակողի կողմից եւ «Ռոէ Ֆտրկայ» դարձրել «Ռոէ Ֆտր»։

Մի խնդիր միայն։ Օտար Ֆրեդերիկ անունը ի՞նչպէս հասաւ, մտաւ Հայաստանի խորքերը եւ որդեգրուեց։ Պատասխանը պարզ է։ Դժուարն առաջին հանդրուանն էր,— Կիլիկիա հասնելուց յետոյ, այլեւս դժուարութիւնը լուծուած էր։ Չէ՞ որ նորաձեւութիւնները թեւ ու թռիչք ունին եւ միշտ էլ ունեցել են հմայք Հայի աչքին։ Եթէ Nicolas–ն կարող է դառնալ Նիկոլ, Նիկոյ, ինչո՞ւ զարմանալ, որ Ֆրեդերիկը դառնայ Ֆտրիկ, Ֆրիկ։

§ 7. Մօտաւոր նմանութիւն բերող մի անուան հանդիպում ենք Արեւելեան Հայաստանի սահմաններում, ԺԱ. դարի սկզբներից, Անիի Ս. Փրկիչ եկեղեցու (աւարտած 1033–34 թուականներին) ներսն եղած բազմաթիւ տամկանկարների (fresco) շարքում։ Մատթէոս Աւետարանչի պատկերի ներքեւ նկարուած է մէկը, ծնկաչոք աղօթելիս կամ Աւետարանչի բարեխօսութիւնը հայցելիս։ Եւ այդ ծունկի եկածի ներքեւ կարդացւում է «Սարգիս Ֆարշիկ» կամ Փարշիկ*)։ Այդ անունը մի հեռաւոր նմանութիւն չունի՞ արդեօք մեր ՖՐԻԿ անուան հետ, իւր այդ ձեւի մէջ իսկ, Հայ անուանակոչութեան հեռաւոր ու հազուադէպ օրինակներից մէկը լինելով, հաւանօրէն, օտարամուտ, թէեւ հայացած արդէն իւր իկ մասնիկով,— թէ՞ Փարշիկ բառը պիտի հասկանալ եւ ընդունել ոչ իբր յատուկ անուն, այլ իբր հասարակ գոյական՝ արհես–

*) Братская Помощь. ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՕԳՆՈՒԹԻՒՆ, Հրատ. Գր. Ջանշեանի, Մոսկ. Ուսուցչապետ Ն. Մառի յօդուածը ԱՆԻ–ի մասին. էջ 207։

Արիստակէս Արք–Եպիսկոպոս Սեդրակեան, Հայաստանեայց Եկեղեցու Պատկերայարգութիւն, ՍՊտրբ. 1904, էջ 93։

տի ցուցում, այսինքն փարշ անող, նկարազարդող, նկարիչ, սալարկող եւ այլն (ինչպէս ենթադրում էր մեր բարեկամ, Պետրոգրադի Համալսարանի նախկին–ուսուցչապետ եւ վերջերը Բրիւսէլի համալսարանի բիւզանդական գիտութեանց ուսուցչապետ հանգուցեալ Ն. Գ. Ադոնց),— ինչպէս նոյն շրջանի մի այլ արձանագրութեան մէջ հանդիպում ենք մի այլ «Սարգիս լաբաբար»ի*):

§ 8. Փարշիկ անուան մօտաւոր մի անուանակոչութեան ենք հանդիպում «Դիւան Հայոց Պատմութեան» հատոր Ժ–ի մէջ զետեղուած Մանր Պատմագիրներ–ի մէջ **) կարդում ենք.—

«Կուրավցին ալ (=Մշոյ Ս. Կարապետ Վանքի միաբան Մարտիրոս Եպիսկոպոս) ցորեն բերելու համար գնացած էր Մուշ, վերադարձաւ վանք: Եւ էմին փաշան ալ Քեչիշ Օղլիի տղաներով Բաղէշն էր. Կուրավցին Ֆըռըշիկ Դաւիթն յուղարկեց Բաղէշ, Քէշիշ Օղլենց մօտ (ՌՄՀԲ=1830 թ.ին), անոնցմէ տեղեկանալ, թէ ի՞նչ կայ ինչ չկայ...»:

Արդեօք յատուկ անո՞ւն է Ֆըռըշիկ, որ խիստ հազուադէպ անուն է եւ կրճատում, թէ՞ որեւէ արհեստի կամ պարապմունքի ցուցումն է, դժուարանում ենք ասել, սակայն հակամէտ ենք որոշ նմանութիւն տեսնելու Ֆըռըշիկ եւ վըռըշիկ կամ վըռշիկ (=Ռշտունեաց կամ Մոկաց երկրացի, Վանեցիների եւ այդ շրաջնի անձերի հանրածանօթ մակդիրը), որով Դաւիթ յատուկ անուան մի մակդիր է դառնում Ֆըռըշիկ բառը, իբրեւ նորա հայրենիքը մատնանշող մի բառ եւ ոչ բուն յատուկ անուն:

§ 9. Ֆրիկ անուան մօտաւոր մի այլ անուան հանդիպում ենք դարձեալ Արեւելեան Հայաստանի վանքերից մէկի արձանագրութիւնների մէջ, այն է Գօշ Մխիթարի Վանքի արձանագրութիւնների շարքում, 1231 թուականին գրուած, որով վանքի Միաբանութիւնը խոստանում է տալ ի յիշատակ «... զե խորանս Մարտիրոսի, Գրիգորի, Փիրաժի†), Թամարին, Նազխաթունին եւ Մատթէոսի անխափան... պատարագ†*):

*) Ալիշան, ՇԻՐԱԿ, էջ 53:

**) ԴԻՒԱՆ Հ. ՊԱՏՄ. հատ. Ժ. էջ 531: Հրատ. Գիւտ. տ. քհ. Աղանեան, Թիֆլիս:

†) Հետաքրքրական է արձանագրութեանս վերընթեռնումն ու վերստուգութիւնը, արդեօք Փիրաժ է, թէ Փիրակ այդ անունը, որով վերջինս աւելի մօտ կը լինէր մեր Երգչի անուան:

†*) «Ցուսովն Աստուծոյ, բ. եղբարքս Մարտիրոս եւ Գրիգոր եւ ամուսին Թամար միաբանեալ Եփրեմու շինեցաք զեկեղեցիս, վասն որոյ տնկեցաք զայգիսն. Տէր Յովհաննէս եւ միաբանքս ետուն նոցա պատարագ զեկեղեցիս (=յեկեղեցիս?) բ. տաւնն սրբոյն Գրիգորի զե. խորանս Մարտիրոսի, Գրիգորի, Փիրաժի, Թամարին, Նազխաթունին եւ Մատթէոսի անխափան, կատարիչքն աւրհնին յաստուծոյ. ՈՁ»: (=1231 թ.): — Բարխուդարեան Մակար Եպիսկոպոս, ԱՐՑԱԽ, Բագու, 1895. էջ 352.— Կ. Կոստանեանի ՎԻՄԱԿ, ՏԱՐԵԳԻՐ, Պետր. 1913, էջ 75:

§ 10. Նոյն անուան, առանց որեւէ փոփոխութեան, հանդիպում ենք Թաւրիզի Առաջնորդարանի Ձեռագրներից մէկի մէջ, որ մի ԺՈՂՈՎԱԾՈՒ է*) զանազան նիւթերի եւ գրուած Հայոց ՊԽ = 1391 թուականին եւ որի մէջ (էջ 1բ) պատահում ենք հետեւեալ փոքրիկ, մեզ համար չափազանց հետաքրքրական, յիշատակարանին:

«Ով որ Ֆրիկս յիշէ նայ (=յիշենայ=յիշէ) ձեռամբ Յօհանէս Մեղապարտի որդի Աթայպէի ով որ զողորմիսն պարգեւէ նայ հազարապատիքն առնուց ի Քս.է եւ Նմայ փառք յաւիտեանս զաւիտենից ամէն»:

Յիշատարականս, որ ըստ ինքեան մի առանձին հետաքրքրութիւն չունի և ոչ մի նոր տեղեկութիւն է տալիս մեզ հետաքրքրող բանաստեղծի անձի կամ ժամանակի նկատմամբ, բայց իւր առանձին նշանակութիւնն է ստանում մեզ համար լոկ այն տեսակէտից, որ մինչեւ այժմ ոչ մի տեղ հանդիպած այդ եզական անունը երեւում է Յիշատակարանիս մէջ ո՛չ աղաւաղուած ձեւով, այլ իւր բուն իսկական ձեւով:

§ 11. Մեզ համար այդ Յիշատակարանը մի նոր եւ առանձին գնահատութիւն է ստանում, ԺՈՂՈՎԱԾՈՒի մէջ գտնուած էջ 68բ մի այլ Յիշատակարանով, որ Աւետարանի Մեկնութեան հեղինակինն է.—

«(Ա)րդ ես վերջին սպասաօրաց բանին. եւ տրուպս բանասիրաց մԹ (=Մատթէոս) քհյ որ միայն անուամբ եւ ոչ արդեամբ տխեղծ մտօք եւ տարտամ լեզուաւ ձեռնարկեցի յայս գծ (=գործ) տեսուն. ոչ աւելի հոգացեալ, այլ ճշտուն. հետեւեալ... Արդ եղեւ զրաւ համառօտ բանիցս քարոզուն. ի Թուին հայոց. ՊԽ (=1391) առ ոտս արդիւնաբան մեծ հռետորին Գրիգորի մեծ. յերկիրս Երզնջակայ, ի վանս Ապրակունեաց: Որ եւ այս ի վանս ի նորին նշուլից շնորհացն առեալ գծագրեցի. առ ի յիշատակ առ յապայ եղելոց մանկանց եկեղեցեացդ հայստոց.: Այլ որ գաղափարէք դրեսջիք զսակաւ յիշատակիկս մեր ի վջք (= վերջք) գրոյս, զի եւ դուք յիշեալ լիջիք ի տէ...» (Fol. 68b.):

Նոյն ժողովածուի մէջ, էջ 118բ, Սաղմոսի Մեկնութեան Յիշատակարանի մէջ կարդում ենք, ի միջի այլոց,—

«... Ուստի եւ այս տուչութիւն սաղմոսի... ի գանձարան ճոխութեանց մանգանց... արկցի... եւ զպակասն... ներեսցի... եւ սրբեսցի խեղճ վտանգաւոր հոգոյս. ընդ որս եւ երիցս երջանիկ վարժապետին իմոյ. Յոհաննու Որոտնեցոյ յիշատակն աւհնուբ եղիցի, որ նախ երից ամաց փոխեցաւ առ... Քս. եւ զմեզ որբ թողեալ. կամք տարակուսեալ ի մէջ յոգնաթիւ չարեաց... կամ ժամանակիս դառնութեանց յորում ասպատակեալ հենք զօրաց կրկին խորազմ անուանեալ ազանց. կործանեցին զերկիր Հյաստանեայց. զվրաց. զպարսից եւ զայլ բազմաց... յորում ամի էր թիւն հայոյ (ՊԼԶ=1387). եւ մեք մազապուրծ

*) Հ. Աճառեան, Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Թաւրիզի, Վիեննա, 1910, էջ 46, Ցուցակ Ձեռագրաց Առաջնորդարանին Թաւրիզի, ՁՌ., No. 3:

գոլով· աստ· անդ· եւ շրջեաք եւ վր երկրի··· եւ դդրեալ սուղ ինչ աւուրք յապահովեցաք ի վանս Հրեշտակաբնակ առաքելական աթոռոյս Նստաթէի, ուր եւ աւարտեալ գրեցաք ի սմ ձեռամբ մթէս գրչի եւ աշակերտի: Այլ եւ աղաչեմ··· որ ընդօրինակէք ի սմանէ գրեսջիք եւ զսակաւ յիշատակս զայս···»: (Fol. 118b):

Յիշատակարանիս ուշադրութեան արժանի կէտը մեզ համար այն պարագան է, որ Փրիկ անուան յիշատակութեան հանդիպում ենք «յերկիրս Երընջակայ, ի վանս Ապրակունեաց», «յաթոռն Ստաթէի» շրջանի մէջ, այսինքն Արեւելեան Հայաստանի սահմանների մէջ, որ մեր վարկածներից մէկի նկատմամբ այնքան կարեւոր է: Այս մասին քիչ յետոյ:

§ 12· Փրիկ յատուկ անունը յիշեցնող հասարակ գոյական մի անուն ունինք, պահպանուած գաւառի հեռաւոր անկիւններում ապրող, մոռացուած ժողովրդի բերանի մէջ, որ թերեւս կարող լինի հանելուկը լուծելու նպաստել եւ կամ լուծման բանալին դառնալ:

Այդ բառն է փերիկ*), որ նշանակում է «նորահաս ցորենի հասկերից պատրաստած բովածք», որ ուտում են դաշտի մշակներն ու հօտաղները դուրսը՝ աղած կամ առանց աղի, իսկ տան մէջ՝ հետը կարագ խառնած: Այս բառը յայտնի է գաւառի մէջ այլ եւ այլ արտայայտութեան ձեւերով, իբրեւ խարման, եղան, եղի, էղա, ըղի, հեղի, էղիկ, յեղի (= Ղարաբաղի բարբառով): Ունինք նաեւ փրիկ ձեւով, ճիշդ այնպէս, ինչպէս մեր Երգչի անունն է, պահպանուած դարձեալ գաւառի մէջ: Այս վերջին փրիկ ձեւով յայտնի էր եւ մեր նշանաւոր Ամասիացի Ամիրդովլաթ բժշկին, որի ԱՆԳԻՏԱՑ ԱՆՊԷՏ-ի մէջ կարդում ենք.—

«Փրիկ, որ է եղի ցորենն, որ այրեն ի կրակն եւ ուտեն եւ թ(ուրքն) ութմա ասէ»: (Ամիրդովլաթ: ԱՆԳԻՏԱՑ ԱՆՊԷՏ, Հրատ. Կ. Յ. Բասմաջեան, Վիէն. 1926, էջ 623):

Ըստ երեւոյթին ոչ մի կապ փրիկ անուան եւ փերիկ բառի մէջ եւ ոչ մի առնչութիւն: Սակայն, եթէ մի քիչ աւելի մօտ նայինք, պիտի հեռու չլինինք այն ենթադրութիւն-տեսութիւնից, թէ երիտասարդ մեր Երգիչը իւր համար անուն որոնելու պահերին, ինքն իրեն համարելով նորահաս մէկը, որի մտքի ու սրտի յոյզերի պտուղները կամ տակաւին հասուն չէին, սակայն մի օր, թերեւս առոք հասկ լինելու հաւանականութիւնից եւ յոյսերից զուրկ պիտի չլինեին, ընտրում է այդ բառը եւ ինքն իրեն անուանում փրիկ (=փերիկ: Եւ կամ գուցէ մեր Երգիչը բանաստեղծի ասպարէզի նախնական շրջանում այնքան նորահաս էր ու անյայտ, իրենով հետաքրքրուողների թիւն այնքան քիչ,— սակայն, այդ սակաւներն իսկ տեսնում, զգում էին, որ իրենց առաջ կանգնած է՝ ապագայի համբաւն իւր մէջ ծուարող մի երիտասարդ, որի խօսքն ու երգը, Տաղերը, թէեւ նորահաս, այլ արդէն իսկ արժէք ունեին նոյն իսկ այդ

*) Տես մեր «Գաւառականի Բառարան» աշխատութիւնը:

նորահաս վիճակի մէջ, որի երգածն ու յօրինածն արդէն դրաւում է իր նեղ շրջանի բարեկամների հետաքրքրութիւնը,— հետեւաբար ապագայի մարդն է ու Երգիչը,— մի Երգիչ, որի խօսքն ու երգը, Տաղերն ու Համբաւը, թէեւ փերիկ կամ փրիկ, արդէն իսկ յեղի է, յղի ապագայ առոք հասկերի խոստումով եւ սակայն ինքն զգում է, թէ իր մէջ կան եւ գոյութիւն ունին յոյզ ու խինդի ոսկի հատիկների անունդի եւ կենսատու ոյժի տարրերը,— եւ թերեւս իրենք՝ բարեացակամները ընտրած լինին փերիկ ծածկանունը Ցոյսերի, որ յետոյ փոխակերպուելով դարձած է փրիկ, հոմանիշը նոյնն փրիկ բառի:

Այս ենթադրութիւն-տեսութիւնը շատ հեռու չենք համարում իրական լինելու հնարաւորութիւնից, քանի որ մեր իսկ օրերին ունէինք ժողովրդի սիրելի մի Երգիչ, մօտաւոր գաղափարաբանութեան ծածկանունի տակ թաքնըւած, այն է Աշուղ Ջիւանին, որ նշանակում է երիտասարդ, նորահաս, նորափթիթ, նոր ծաղկող Երգիչ, մի այլ փերիկ: Եւ եթէ դարերը հոլովուին եւ մեր գիրն ու գրականութիւնը չը պահպանէր նորա անունը, ապագայ որոնողի համար անհնարաւորութիւն պիտի լինէր Աշուղ Ջիւանի ծածկանունը միացընել Սերոբ Լեւոնեան անուան հետ: Կամ նոյն իսկ մեր օրերով՝ քանի՞ մարդ գիտէ թէ Աշուղ Ջիւանու բուն անունը՝ Սերոբ Լեւոնեան էր:

Կայ մի այլ ենթադրութիւն եւս: Արդեօ՞ք շրջապատի կողմից արհամարհական մի մակդիր չէր՝ վերագրուած նորահաս Երգչին, որի անունն անյայտ տակաւին, երգն ու խօսքը տհաս էին համարւում տակաւին՝ քննադատ ունկնդիրների կողմից: Եւ Երգիչը լրջօրէն ու հպարտանքով է ընդունում նետուած ձեռնոցը, անարգական մականուն մակդիրը Փերիկ դարձնելով այն՝ արժէքաւոր եւ աւելի ընդհանրացած, քան իր միւս գրչի անունը՝ Մասատ:

Եւ թէ այդպիսի մի վերաբերում անհաւանական չէր շրջապատի նախանձոտ միտք ու երգիծանքով լի լեզուների կողմից, այդ մասին արդէն ծանօթացանք վերը, երբ իր անիրաւ քննադատներին պատասխանում է իր արժէքն ու յարգն իմացող անձի գիտակցութեամբ, բայց դառնացած սրտի յորդումով, թէ ինքը յիրաւի

«Ոչ ծառայել վարդպատեհի, ոչ կարդացել օրիկ մի Եայ,
Ոչ ի հաւրէ առնել միրաթ.......»

(է. 69-70)

եւ թէ, թերեւս յոխորտացող, անբարեացակամ տնարոյս քննադատներն իրաւունք էին համարում ենթադրելու եւ ասել, թէ

«Փըրիկն ինչ հող է եւ կամ մոխիր,
որ հանց գոհար բան շարէ նա...»

Բայց այդ բոլորի համար եւ ամէնքի հանդէպ մի պատասխան ունէր նա տալու, թէ, չը նայած, որ

«Ոչ ի հաւրէ առել միրաթ,
այլ Աստուծոյ տուած նորա,

Նայ, երբ կարէ հանց բան ասել
որ ո՛վ կարդայ՝ աւրհնէ ըզնա*):

(էջ 69–72):

§ 13. Ֆրիկի այս տողերը մեզ յիշեցնում են՝ նորանից ժամանակով ոչ չատ բաժան եւ աւելի կրտսեր մի այլ Երգչի, Կոնստանդին Երզնկացու (ԺԴ. դ.) տողերը ուղղուած նոյնքան նախանձոտ եւ չարախօս լեզուների, ասելով,—

«Ոմանք չար են հետ ինձ
ու նախանձով են յիմ վերայ,
Վասն իմ գըրեալ բանիս՝
որ առ մարդիկ երեւենայ.
Ասեն, թէ ո՞նց գըրէ
բան քաղցրահամ ու մեզ կարդայ,
Որ ի մեր միջիս ընկեր
կամ համեմատ իւր (ըն) չի կայ»**)

Թէեւ Երզնկացի Կոստանդինը պատմում է, թէ, «Երբ հնգետասան ամաց էի մանուկ տղայ, ի վանք յուսումն էի» (Տաղ Ը., 4) եւ այդ պարագան, անշուշտ յայտնի էր ժամանակակից չարախօս նախանձաւորներին, բայց եւ այնպէս «կոյր... հոգով, աչօք, մտօք յիմար եւ անյիմայ» (Ը., 2) անձեր զարմանքով էին տեսնում, որ իրենց յայտնի «հողէ ամանը» այժմ «լցած կայ խաղինայ» եւ փոխանակ հաշտուելու իրողութեան հետ, չարախօսութեամբ էին կամենում խնդիրներ լուծել,— ուր մնաց Ֆրիկի նկատմամբ, որ «եւ ոչ մի օրիկ իսկ» կարդալու էր գնացած, հետեւաբար ծաղրն ու անդոսնանքը առաջին իսկ յաջողութեան օրից ընկեր պիտի եղած լինէին նորան, մինչեւ որ իւր համբաւն ու հմայքը այլ եւս նախանձոտ չարախօսների բերանը փակելու լաւագոյն զէնքը դառնար:

§ 14. Ֆրիկ անունով հետաքրքրուող մեր հետախոյզ բարեկամներից մէկը մեր ուշադրութիւնն է դարձրած Սկանդինաւեան դիցաբանութեան մէջ պատահող երկու մօտաւոր հնչիւն ունեցող անունների վերայ, ենթադրելով, թէ գուցէ հեռաւոր մի կապ ու առնչութիւն կարելի է գտնել այդ երկու անունների եւ մեր Երգչի անուան մէջ: Այդ երկու անուններն են Frigga եւ Freki:

Այս երկու անուններն եւս իրար հետ կապուած՝ հանդիպում են Սկանդինաւեան հին դիցաբանական զրոյցների եւ աւանդապատումների մէջ, Norse Saga ընդհանուր անունով յայտնի պատումների մէջ: Դիցաբանական

*) Տես վերը Գլ. Ա. § 29:

**) Կոստանդին Երզնկացի, ԺԴ. դարու ժողովրդական բանաստեղծ, հրատ. Հ. Մ. Պոտուրեանի, Վենետ. 1905, էջ 97.— Տաղի նախաբանի մէջ ասում է. «Ոմանք չարախօսեն զինէն վասն նախանձու, թէ որպէս խօսի սա այսպիսի բան, զի վարդապետի չէ աշակերտել, զի այլ է աշխատիլն եւ այլ է շնորհքն ի Հոգոյն»: (Ը. էջ 97):

մի ամբողջական կառուցուածք, որ վերաբերում է մի ժողովրդի, Norsemen ցեղին, որոնք բնակութիւն էին հաստատած Շուէտի, Դանիմարքի, Նորվեգիայի եւ Իսլանդիայի երկրամասերի վերայ եւ յետոյ աւելի յայտնի եղան այդ երկրների անուններով, իբրեւ Շուէտացի, Դանմարքացի, Նորվեգիացի եւ Իսլանդացի անուններով: Այդ՝ համարիւն, բայց տարբեր անուններով յայտնի ցեղերի դիցաբանական ամբողջ գիտութիւնն ու ուսումը իրենց մէջ են բովանդակում Ռունները, Սկալդեան վիպասանութիւնների բանաստեղծական դիւցազներգութիւնները — épopée — Էդդաները եւ Սագաները: (Հմմտ. Ch. Miles Gayley: **The Classic Myths in English Literature**, New York, 1893, p. 30-33):

Անցողաբար յիշատակենք, որ Սկանդինաւեան ժողովրդի կրօնական աւանդապատումների եւ հայկական կրօնական–ժողովրդական աւանդապատում գրոյցների մէջ շատ աւելի ներքին սերտ առնչութիւն եւ կապեր կարող ենք գտնել, քան թերեւս պիտի ենթադրէինք: Տարիներ առաջ, երբ Օքսֆորդի Բոդլէեան գրատան Հայ Ձեռագրների Ցուցակի կազմութեամբ էինք զբաղած, մեր ուշադրութիւնը գրաւեց մեր Ցայսմաւուրքի մէջ գտնուած «Վկայաբանութիւն Սրբոց Սուքիասանց Քօշիցն» պատմութեան մէջ (Նաւասարդի Ժէ, եւ Օգոստոս Իէ) մտած Ս. Թադէոսի կատարած մի հրաշքը, որով վայրի եղն մորթւում, ուտւում է զօրականների կողմից եւ Թադէոս առաքեալը հետեւեալ օրը ժողովել տալով եղան ոսկորները, «Զգեաց զմորթն ի վերայ ոսկերացն... եկեալ յաղօթս... կարդաց զանուն Յիսուսի Քրիստոսի եւ մերձեցան ոսկերքն առ միմեանս եւ կենդանացաւ անասունն... եւ սկսաւ գնալ... եւ ի գնալն կաղայր եղն», որովհետեւ «մի ոմն ի զինուորացն պահեաց գաղտ ոսկր մի եւ ոչ ետ ցառաքեալն»: Այդ պակաս ոսկրն եւս դնելով տեղը՝ «զօրացաւ եղն յընթացս եւ վազեաց խառնեցաւ յընկերսն»: Պատմութեան այս մասը, համարեա, բառացի նոյնն է Սկանդինաւեան Edda–ների մէջ գտնուող մի այլ պատմութեան ակնբախ նմանութեամբ, որ մտցրած ենք մեր ՕՔՍՖՈՐԴԻ ՀԱՅ ՁՌՌ–ի ՑՈՒՑԱԿԻ համապատասխան մասի մէջ եւ որ տակաւին լոյս չէ տեսած:

Սկանդինաւեան ժողովուրդների եւ Արեւելքի ազգերի, ինչպէս եւ Հայ ժողովրդի անցեալի ապրումների աղերսն աւելի նկատելի է նոցա կրօնական հաւատալիքների, վիպասանութիւնների, դիւցազներգութիւնների նմանութեան եւ իրար հետ այնքան սերտ առնչութիւն ունեցող կապերի մէջ, մինչ այն աստիճան, որ յաճախ ապշում ենք, թէ ինչպէ՞ս դարերի ընթացքի այդ երկար շրջաններն անգամ անզօր են եղած ջնջելու այդ հետքերը եւ զօրեղ կապերը: (Հմմտ. մեր մի այլ աշխատութեան՝ «Կամուրջը Շուշանի» Նախաբանի § 75–80 հտ):

§ 15. Ֆրիկի անուան հետ մօտաւոր նմանութիւն ունեցող փրիգգայ եւ փրեկի — Frigga, Freki,— անուններին հանդիպում ենք Սկանդինաւեան դիցաբանութեան Նորս աստուածների պատումների մէջ: Սակայն մանրազնին քննութիւնը այդ անունների հետ կապուած դիցաբանական պատումների հետ

մեզ համար կասկածի եւ ոչ մի տեղիք թողնելու առիթ է տալիս ասելու, որ այդ անուններից եւ ոչ մէկը կարող էր նոյն իսկ հեռաւոր առնչութիւն ունենալ մեր Երգչի անուան հետ, մի կողմ դնելով նոյն իսկ այն հեռաւոր ենթադրութիւնը, թէ մեր Ֆրիկը կարող էր որ եւ է ծանօթութիւն ունենալ հեռաւոր Սկանդինաւիայի ժողովրդի դիցաբանական պատումներին եւ իւր համար մի ծածկանուն ընտրել իւր հետ եւ ոչ մի կապ ունեցող հեռաւոր մի աշխարհի մի դիցուհու անուն, որ եթէ կամենայինք իբրեւ գաղափարաբանութիւն բացատրել, պիտի նշանակէր «խնամածու, հոգատար», որ ոչնչով չէր բացատրում Երգչի անուան առնչութեան կապը իւր դերի հետ։

§ 16. Շատ աւելի հետաքրքրական եւ մեր հարցի հետ անմիջական շահագրգռութիւն ունեցող մի նոր տեղեկութիւն ենք գտնում բանասէր մեր բըժիշկներից, Արմենակ Ալիխանեանի մի յօդուածի մէջ, հրատարակուած Րաֆֆու մահուան հարիւրամեակի առթիւ։

Նկարագրելով Րաֆֆու «Դաւիթ Բէկ»ի թագստոցի մէջ երկար պահուած եւ փչացած վիճակը, ասում է.—

«Կողերը (գրքի) մաշեր էին դրսի երկու անկիւններէն եւ բարեսիրտ ընթերցող մը ժանգառի չիլայ կտաւէ չապիկ մը հագուցեր էր անոր... Երբ զայն մեր տուն բերին, հողի փշուրներ եւ յարդի չիւղեր կային անոր... մէջ։ Նշան էր, որ ան պահուեր էր մերթ հողին տակ, մերթ մարագի մը յարդին խորը։ Ներսի կողմը բացած պահուն, աչքի կը զարնէին անվարժ ձեռքով գրուած չատ մը ասութիւններ։ Օրինակ.

«Վորն ուր կեարդայ՝ թող յիշա զՇատխու Գրէ Աւոն»։
«Զէս տողեր մրոտեց Շէնըքցի Օսմանի փրիկ խազար։
«Ձեռս գրէս յիջնայ ի հող, գիրս մնայ յիշատակող։
Փեղարայ յԱռաքել»։*)

Շնորհակալ պէտք է լինինք մեր բարեկամ՝ անցեալի յուշ ու խոյզերի սիրահար ու պրպտող բժշկին, որ իւր յիշողութեան մի ծալքի մէջ կարող է եղած պահպանել մեզ այնքան հետաքրքրող եւ այնքան մեր աչքին արժէքաւոր յիշատակարանը, ուր կարճ ու անցողակի յիշատակւում է փրիկ անունը՝ փրիկ փոփոխակի ձեւով։

Ո՞վ էր այդ Ֆրիկ խազարը։ Անյայտ է։ Ի՞նչ էր իւր զբաղումը,— նոյնպէս անյայտ։ Միայն մի լոյս կայ այդ տեղ, որ այս Ֆրիկ Խազարը Շէնըքցի էր։

Մեզ համար նոյն իսկ երկրորդական նշանակութիւն ունի այն պարագան, թէ «Շէնըքցի Օսմանի Ֆրիկ Խազար»ի անունը իրապէս դրոշմուա՞ծ էր հողի համ տեսած ու յարդով սնուած «Դաւիթ Բէկ»ի կողի վերայ,— այլ էականն այն է, որ Ֆրիկ անունը գոյութիւն ունի Տարօնի ժողովրդի անուն-

*) Մուսասիրցի, «Րաֆֆիի Հմայքը».— Հայրենիք օրաթերթ Բոստոն, 1938, Փետրուար 13, թիւ 7836, էջ ա, սիւն. 5։

ների շարքի մէջ, իբրեւ յատուկ անուն, (թէ մակդիր անուան, այդ եւս էական չէ։ Այլ այն, որ Ֆռիկ = Ֆրիկը ապրած է այն տեղ)։

Շէնիքը Սասնոյ լեռների վերայ թառած գիւղերից մէկն է, որի շուրջն են բոլորած Սէյմալ, Գելիէ-Գիւզան, Փիդար գիւղերը, բոլորն եւս յայտնի հայկական տառապանքի պատմութեան դարավերջի եւ դարուս սկզբների շըրջանին, իբրեւ ազատութեան կառչած ժողովրդի արծուի բոյներ։

Ըստ Բժիշկ Ա. Ալիխանեանի բերանացի բացատրութեան, Սասնոյ այդ շրջանի գիւղերի արանց անունների մէջ յաճախ պատահող անուն էր այդ Ֆռիկը, մինչեւ վերջին տեղահանութեան եւ խոշտանգանքի շրջանը եւ որ այդ անունը միշտ զուգորդուած էր մի այլ անուան հետ, ինչպէս այս դէպքում Ֆրիկ կամ Ֆռիկ Խազար (=Ղազար) ձեւով։ Ի՞նչ է նշանակում այդ Ֆռիկը՝ չը գիտէ։ Անուան կրճատո՞ւմ էր, թէ արտայայտիչ մի մակդիր՝ նոյնպէս դժուարանում է բացատրել։

Ենթադրում ենք, որ Ֆռիկ-ը յատուկ անուն չէ, այլ վերադիր, որակական մակդիր, որ անշուշտ իր նշանակութիւնն է ունեցել եւ որ այժմ մեզ համար անյայտ բառ է դարձել։ Արդեօ՞ք որ եւ է կապ ունի «փռռալ» բառի հետ, որ նշանակում է «պտտուիլ, թաւալուիլ իր առանցքի շուրջը, դառնալ, հոլովիլ անդադար»։ Եւ եթէ այս ենթադրութիւնը որ եւ է հիմք ունի, այն ժամանակ այդ բայանունը կարող է ստանալ որոշ միտք ու իմաստ, այսինքն՝ «փռռացող, պտտուող, դարձդարձիկ», մէկը, որ շատ էլ ամուր չէ իր համոզումների մէջ, «դիւրաթեք, դիւրաւ համոզուող եւ կամ արագաշարժ, արագոտն, ամէն տեղ հասնող, ամէնքի ցաւին դիւրահաս, ամոքիչ»։

Ֆռիկի մօտաւոր նմանութեամբ մի բառ ունինք գաւառաբարբառի մէջ։ այն է փռփռիկ, (Խարբերդի բարբառ) որ նշանակում է 1.— ցայգաթիթեռ, noctuelle, notuella (լտ.) — 2.— թեթեւ, անհոգ անձն, իր զուարճութեան յետեւից վազող. 3.— փոխաբերական մտքով՝ «թեթեւսոլիկ, դատարկ գըլխով մարդ». 4.— մի տեսակ խաղ, որի ժամանակ մանուկներն արագ-արագ պտտում, ֆռռում են մէկի շուրջը եւ վերջինս աշխատում է բռնել մէկն ու մէկին*)։ Թերեւս այս բառի երկրորդ իմաստը կարելի է զուգորդել Ֆռիկ անուան հետ, որի մակդիր լինելը յայտնի է այն պարագայից, որ կապուած է մի յատուկ անուան հետ,— «Օսմանի Ֆռիկ Խազար» բարդ ձեւով, որ յիշեցընում է մեր փռռիկ**) բառը (Ֆըրըլդաք), «հոլ, բուլդի» մանկական խաղի գործիքը, «չռնչան», toupie, top, peg-top, Ռուսերէնը՝ волчек իբրեւ մի իր, որ ֆռռալու, պտըտելու ընդունակ է։

Ինչ էլ լինի Ֆռիկը, յամենայն դէպս, ուրախալի է, որ մեր գաւառներից մէկը պահպանել է մեր Երգչի անուան կամ գրչի անուան հետքը, գոնէ։

*) Տես այդ բառը մեր «Գաւառականի Բառարան» աշխատութեան մէջ։

**) Տես նոյն բառը մեր «Գաւառականի Բառարան»ի մէջ։

§ 17. Վերը ենթադրութիւն էինք արած, որ դատելով Ֆրիկի տաղերի մէջ առատապէս ցրուած բառական ու ոճաբանական ատաղձի ճոխութիւնից, անհաւանական չէինք համարել, որ նա լինէր Արեւելեան Հայաստանից, այսինքն այն շրջանից, որ այժմ յայտնի է Ղարաբաղ անունով:— Հին Արցախը:

Թաւրիզի Հայոց Առաջնորդարանի No. 3 ՁՌ–ի մէջ պահպանուած անունը, ՖՐԻԿ, նոյնութեամբ, ինչպէս յայտնում է մեզ մեր հեղինակը եւ միւս կողմից այդ Ձեռագրի մէջ եղած Յիշատակարանները, որոնցից երեւում է, որ Ձեռագիրը գրուած է «Եւստաթէի» կամ Տաթեւի վանքում, 1387 թուին եւ որ ընկնում է հին Սիւնեաց աշխարհի մէջ,— եւ ապա Ապրակունեաց Երնջակի վանքում, 1391 թուին, որ այժմեան Հին–Նախիջեւանի շրջանի մէջ է ընկնում, մեզ մի նոր հիմք են տալիս ենթադրելու, որ յատկապէս Արեւելեան Հայաստանի մէջ պահպանուած այդ եզակի եւ ինքնուրոյն անունը կարող է մեզ տանել այն համոզման, որ թերեւս նոյն իսկ այժմեան Ղարաբաղի շրջանի ու կամ նորան սահմանակից մի գաւառից էր մեր Երգիչը եւ Ղարաբաղցի:

Ուշագրաւ մի հանգամանք է եւ այն, որ մեր ենթադրած ժամանակից,— թէ ե՞րբ էր ապրում մեր Երգիչը,— շատ էլ յետոյ չէ հանդիպում այդ անունը, որը հազիւ 60–70 տարու փոքր անջրպետով բաժանուած ժամանակից յետոյ մի այլ մէկն է կրում:

§ 18. Ֆրիկը Ղարաբաղի սահմանակից կամ այնտեղացի լինելու պարագան մեզ համար ենթադրականից հաստատականի անցնելու հաւանականութեան է մղում այն հանգամանքը, որ «Վասն Արղունի Ղանին եւ Բուղային» Տաղի մէջ նա տալիս է ա՛յնպիսի մանրամասնութիւններ, որ ժամանակակից Պատմիչն իսկ, Ստեփաննոս Օրբէլեան, որ յայտնի է իբր մանրամասնութիւնների սիրահար եւ գնահատող, նա իսկ չէ՛ տալիս այդ մանրամասնութիւնները: Այս պարագան, պարզ ապացոյցից աւելի արժէք է ստանում, թէ Ֆրիկն անձամբ շատ մօտ ծանօթ էր, թէ՛ Արղունի դէմ կատարուած ապստամբութեան պարագաներին եւ թէ այդ դաւադրութեան մէջ մասնակցողների անձերի դրութեան, որովհետեւ մանրակրկիտ պատմաբանից իսկ աւելի մանրամասնութիւններ է յիշատակում: Հեռուից, բերնէ–բերան լսած կամ ստացած տեղեկութիւնների ու ծանօթութիւնների տպաւորութիւն ենթադրել այդքան մանրամասնութիւնների յիշատակութիւնը, աւելի քան անհաւանական է. սակայն այդ բոլորի հետ՝ բացառիկ մանրամասնութիւններն ուշադրութեան արժանի պարագաներ լինելով՝ խնդիր է, որտեղի՞ց է քաղել այդ բոլորը, եթէ ժամանակակից չէր եւ քաղաքական իրադարձութիւնների հոլովման կեդրոնին աւելի մօտ չէր, ինչպէս էր Ղարաբաղը՝ բնական հարեւան երկիրը Պարսկաստանին:

Ենթադրել, որ Կիլիկիայի սահմանների մէջ ապրող մէկն էր եւ որ Արեւելեան Հայքի մէջ կատարուած դէպքերին այդչափ մօտ ծանօթ էր,— հնարաւոր չէ: Այդ ամէնը, եթէ ոչ նոյնիսկ ականատեսի, գոնէ ականատես վր-

կաների տուած անմիջական տեղեկութիւնների հիման վրայ կազմուած եւ այդ կեանքը ապրած մարդու ծանօթութիւնների կնիքն են կրում:

Իսկ ականատեսների վկայութիւն առնել կամ ականատես լինել հնար էր միայն այն ժամանակ, երբ ինքն ապրած լինէր այն միջավայրի մէջ, ուր դէպքերն են կատարուած: Իսկ թէ դէպքերը կատարուած են «Արեւելքում», այն է Փայտակարանի, Արցախի եւ Սիւնիքի սահմաններում,– դա ըստ ինքեան պարզ է: Վերը տեսանք, թէ Թագուտար–Ահմէդ Խանը, ըստ Օրբէլեանի յիշատակութեան, յարձակւում է Արղունի վերայ, արշաւում է Խորասան եւ «կալեալ զնա դարձաւ այսրէն». այսինքն այնտեղ, ուր ապրում էր ինքը, Օրբէլեանը, այն է Արեւելեան Հայաստան, Սիւնիք–Արցախ, այժմեան Ղարաբաղի գաւառը: (Տես մանրամասնութիւնները վերը, Գլ. Բ. § 34–35, V.):

§ 19. Անշուշտ այս ամէնը վարկածներ են, որոնց լուծումն ապագային է վերապահած, նոր տուեալների եւ փաստերի հիման վերայ կերտելով վախճանական վճիռը:

* * *

§ 20. Պէտք է նկատի առնել, որ Ֆրիկն առհասարակ իւր բոլոր Տաղերի մէջ իւր անուան յիշատակութիւնն է թողնում, որով եւ շատ մեծ դիւրութիւն է ընծայել յետնորդներիս իւր Տաղերի որոշման խնդրի նկատմամբ: Այդ տեսակի յիշատակութիւն, սովորաբար, մի անգամ է լինում իւրաքանչիւր տաղի մէջ: Սակայն պատահում է նաեւ, որ նոյն տաղի մէջ երբեմն երկու, նոյն իսկ երեք անգամ է յիշատակւում իւր անունը: Այդ սովորութիւնն ունին համարեա մեր բոլոր Միջնադարեան երգիչները, որ աւանդաբար եկել հասել է նոյն իսկ մեր շրջանը, ինչպէս անում էին նախորդ դարի եւ այժմեան աշուղները,— Սայաթ Նովա, Միսկին Բուրջին, Ազբար Աղամ, Շիրին, Աշուղ Թուրինջ, Շամչի, Սայաթ, Ծառուր (= Ջառուր–Ալի), Ջիւանի եւ շատ շատերը: Այդ սովորութիւնը մի տեսակ «Հեղինակի Իրաւունքի» = Copyright արտօնութիւն–կնիքն էր, որպէսզի անփեթակ պիծակները չմտնէին ժրաջան մեղուների փեթակները եւ նոցա պատրաստած մեղրը ամենայն հանգստութեամբ իւրացնէին:

Այդ սովորութիւնն անշուշտ շատ վաղուց գոյութիւն ունէր*) եւ Ֆրիկն իւր փեթակի մեղրը ապահովելու համար իւրաքանչիւր մեղրահացի վերայ դրոշմում է իւր կնիքը: Սակայն, երեւի նա իւր նախնական շրջանի բոլոր տաղերի մէջ չէ պահպանած այդ սովորութիւնը, որի հետեւանքը յետոյ է զգա-

*) Այդ սովորութիւնը, իբր հանրամարդկային մի գիծ, կար բոլոր ազգութիւնների մէջ: Լուդովիկոս ԺԴ–ի դատախազակը,— որի անունը վաղուց մոռացուած է,— Mothe le Vayer, ժէ–րդ դարում, նոյն խնդրի նկատմամբ ասում է.— «Ներելի է, եթէ մէկը բանագողութիւն անէ այնպէս, ինչպէս մեղուն է անում, առանց մէկին վնաս հասցնելու, միայն ծաղիկների միջից նոցա մեղրահիւթը հաւաքելով իւր թափառուն թռչկոտումների ժամանակ. բայց մրջիւնի կատարած գողութեան տեսակի բանագողութիւնն աններելի է, որը դիզած ու հասունցած հատիկներն է թալանում ամբողջովին»:

*ցել, թէ իւր բոլոր արտադրութիւնները, դժբաղդաբար, իրեն չեն պատկանում եւ ապագայի մտահոգութիւնն է, որ նորան ստիպել են տալիս ասելու,—*

«*Ով* զիմ անուներս խափանէ, զիւրըն գըրէ պարծենալոյ,
Աստէնս չառնէ ինք թողութիւն, անտէն զըրկի ինքն ի բարոյ»։

§ 21. *Իւր, իբր հեղինակի, անունն իւր տաղերի մէջ պահպանելու սովորութեան մի օրինակ ներկայանում է վերն առաջ բերած* «Վասն Արղուն Ղանին եւ Բուղային» *Տաղի մէջ, ուր Ֆրիկն ինքն իրեն յիշատակում է երկու անգամ, միայն տարբեր անունների տակ,— մի անգամ* սովորական ՖՐԻԿ *անունով, եւ միւս անգամ* անսովոր *ՄԱՍԱՍ անունով։*

*«Զայս մեղաւոր ծառայքս յետին,*
*Մի տար տանել մեղաց գետին.*
Ֆըրիկն երեսն ի վայր դըրել,
*Եւ արտասուօք թանայր գետին»*

(ԼԵ. 168–71).

*Եւ ապա քիչ յետոյ,—*

*«Աւուրքս անցաւ հետ ՄԱՍԱՍԻՍ,*
*Եզըր չի կայ, հուն չերեւին.*
*Ցաւս երկարեց, ու՜ի յոսկր անցաւ,*
*Այլ չի մընաց համբերութիւն»։*

(ԼԵ. 184–87).

§ 22. *Պարզ է, որ* այլ տեղ *ինքն իրեն երկու անգամ յիշատակելու սովորութիւն ունեցող Ֆրիկն, այստեղ եւս նոյն սովորութեան հետեւելով, նոյնն է արել եւ այստեղ, բայց այս անգամ մի բարեբաղդ զուգադիպութեան շնորհիւ տալիս է մեզ իւր գաղտնիքի բանալին։*

*Պարզենք.—*

§ 23. *Կ. Կոստանեանի խմբագրութեամբ հրատարակած* «Նոր ժողովածու Միջնադարեան Հայոց Տաղերի եւ Ոտանաւորների», *Գ. Պրակ, էջ* 40–43 *զետեղուած է մի տաղ* «Վասն Ողորմութեան» *վերնագրով եւ որ սկսւում է* «Յիշէ զբան Աւետրանին իմաստուն կուսանքն ի նըման» *բառերով։ Նոյնը հրատարակել է Ա. Չօպանեան, իւր* «Հայ էջեր» *հատորի մէջ*, 35–37, *նոյն խորագրով։ Հրատարակիչներից եւ ոչ մէկն է տալիս այն* հիմունքը, *թէ* ի՞նչու *այդ տաղը Ֆրիկին է* պատկանում *եւ կամ ինչո՞ւ հրատարակիչները այդ տաղը Ֆրիկին են* վերագրում,— *քանի որ ո՛չ վերնագրի, եւ ո՛չ էլ տաղի մէջ* ոչ մի *յիշատակութիւն կայ, թէ այդ տաղը Ֆրիկին է պատկանում։ Այդպիսի մի* հիմք չը կայ *նաեւ այն Ձեռագիր Տաղարանների մէջ, որոնցից հրատարակիչները հանած են այդ տաղը։ Բացի դորանից, նոցա աչքից* վրիպած *է այն հանգամանքը, որ տաղի տնագլուխ տառերը* (Acrostique) *կազմում են ՅՈՎԱՍԱՓ ՄԱՉԱՉ անունը, որի մէջ եւ ոչ մի նմանութիւն կայ Ֆրիկ անուան հետ, եւ որով սակայն երգիչը յայտնում է իւր ով լինելը։*

§ 24. Ո՞վ է այդ Ցովասաբ ՄԱԶԱԶԸ:

Ըստ հանգուցեալ Նորայր Բիւզանդացու կարծիքի այդ Ցովասաբ Մազգը նոյն անձն է, ինչ որ Ցովասափ Սեբաստացին*): Հետեւաբար, ըստ Ն. Բիւզանդացու, այդ տաղը չէ՛ պատկանում Ֆրիկին, այլ Սեբաստացուն, ուստի եւ պէտք է հանել Ֆրիկի Տաղերի շարքից, իբր նորան սխալմամբ վերագրած մի գործ, որ մի սխալի հետեւանքով մի անգամ մտած է սորա Տաղերի շարքի մէջ եւ այդպէս էլ առանց ուշադրութիւն գրաւելու արտագրողների կողմից անցել է նոր Տաղարանների մէջ եւ որ նոյն իսկ հրատարակիչները չեն նկատել այդ մեծ «անպատեհ» սխալը:

§ 25. Ըստ մեզ այդ Մազազ-ը նոյն անձն է, ինչ որ Մասաս-ը: Եւ որովհետեւ Մասասը եւ Ֆրիկը նոյնը համարելու վարկածն ունեցանք եւ փաստըն եւս առաջ բերինք, իւր իսկ ընձեռած հիմունքով, ուստի ՖՐԻԿ, ըստ մեր կարծեաց, պիտի նոյնանայ ՅՈՎԱՍԱՓ ՄԱԶԱԶ անուան հետ, ուր Մազաս ամենայն հեշտութեամբ կարող էր նոյնանալ Մազազ ձեւակերպութեան հետ, երգչի դիւրութեան համար, ինչպէս յաճախ ենք տեսնում Շնորհալի Հայրապետի Ներսէս-ը յաճախ Ե-ով հեգած:

§ 26. Արդէն այն պարագան, որ Ֆրիկի անունը չկրող այդ ոտանաւորը, իւր անանուն իբրեւ թէ դրութեամբ, մտել է Ֆրիկի Տաղերի շարքը, առանց ՖՐԻԿ անուան սովորական յիշատակութեան, ըստ ինքեան մի մեծ առհաւատչեայ է, եթէ ոչ կատարեալ նոր ապացոյց, որ թէ՛ հասարակութեան համար, որոնց գիտակից ներկայացուցիչներն էին «Զատացող գրոյս» պատւոյ տիտղոսի արժանացողները, եւ թէ՛ իրենց՝ արտագրողների համար աներկբայ ու ամէն կասկածից դուրս մի պարագայ էր, որ «Ցիշէ զբան Աւետրանին» տաղը իսկապէս Ֆրիկինն է, ապա թէ ոչ ո՛չ Տէրը, Ձեռագրի ապսպրողը, կ՚ընդունէր այդպիսի սխալ պարունակող Տաղարան եւ ո՛չ էլ արտագրող Գրիչը իւր արժանապատուութեան կը ներէր, այդչափ տգիտութիւնը: Եւ եթէ պատահաբար այդպիսի աններելի սխալ գործէր «տկար, փծուն, Թարմատար և տխեղծ» գրիչը, նա իսկոյն մի ծանօթութեամբ «ներող լինել յանցանաց իւրոց» կը հայցէր «յԱստուածասէր ընթերցողացն», որպէսզի ինքը, «տրուպն բանասիրաց» համեստ անուան տակ եղած քահանան, աբեղան կամ վարդապետը նոր պախարակումների առաջ կանգնած չլինի եւ իւր անունը, իբրեւ գրիչ,

*) Մի մասնաւոր տեսակցութեան պահուն արտայայտած կարծիք, 1911 Թուի աշնան, Վենետիկ, մեր գրական այլ եւ այլ խնդիրների մասին ունեցած խօսակցութեան ժամանակ, յատկապէս հետաքրքրուած լինելով այն պարագայով, որ յայտնած էինք իրեն թէ մտադիր էի շուտով Ֆրիկի քննական հրատարակութիւնը տալ: Եւ երբ իւր հետ անհամաձայն լինելով քննական այդ խնդրի նկատմամբ, իւր առաջ պարզեցինք մեր տեսակէտը, նա առ ժամ մի տատամսեց եւ ապա ասաց.— «Շատ ուրախ պիտի ըլլամ ի մօտոյ ճաշակելու Ֆրիկը եւ յատկապէս տեսութիւնդ, որ որչափ ալ հակառակ ցայժմ իմ կազմածիս, սակայն հեռու չեմ համարեր հաւանականութենէ»:

արտագրող, չը վարկաբեկուի: Սոքա բարքեր են ժամանակի, որ մեծ արժէք ունին բանասէր–քննադատի համար:

Այսպիսով նոցա, իւր ժամանակակիցների եւ յաջորդող հետնորդների համար պարզ էր այն, ինչ որ մեզ համար այսօր կասկածելի է եւ խնդրական, այն թէ Յովասափ Մասազ եւ Ֆրիկ Մասաս միեւնոյն անձի անուն է եւ այդ երկուքը նոյն երգիչն է:

§ 27. Յովասափ Սեբաստացին եւ Ֆրիկը նոյն անձը չը համարելու հիմունքներ շատ ունինք, որոնցից,—

ա.— Ժամանակի խնդիրը:— Յովասափ Սեբաստացին ապրում էր ԺԶ–րդ դարում: Իւր իսկ թողած մի ոտանաւորից, «Կաֆայ վասն Աղէկ Մանկանն Գրիգորի» վերնագրով, (այդ «աղէկ մանուկ Գրիգորը», Սեբաստացու հարազատ եղբայրն էր).— Գրիգորի մահուան թուականն այսպէս է որոշում.—

«Երեսուն եւ բ տարու վճարեց զկե(ա)նքն արեւուն
Ինն հարիւր եւ նասուն եւ էն, որ ի Հայոց թվուն
Զարխըն խոլըռեց եղբարս եւ կտրեց զարեւն յուրերուն
Ոչ խնայեց ծեր մաւրկան, ոչ եղբաւրն եւ ոչ որբերուն...»

Եղբօր մահուան թուականը Հայոց 997 = ՋՂԷ թուականը համապատասխան է Փրկչական 1538 թուին, իսկ Յովասափն աւելի աւագ էր, քան իւր եղբայրը, Գրիգորը, ծնուած 1516 թուին. ուրեմն Յովասափը ծնուած պիտի լինի ԺԶ–րդ դարի առաջին տասնամեակի շրջանին, հետեւաբար եւ իւր գրական համբաւն ու երկերը պատկանում են ԺԶ–րդ դարի առաջին երեք քառորդներին*):

Այն ինչ միւսը, մեր Երգիչ Ֆրիկն ապրում էր ԺԳ–րդ դարի վերջին երեք քառորդների շրջանին եւ, թերեւս, շատ–շատ ուշ՝ մեռած ԺԴ–րդ դարի առաջին տասնամեակին, ինչպէս տեսանք ուսումնասիրութեանս ընթացքին:

Հետեւաբար շուրջ երեք դարերով իրարից անջատ շրջանների մէջ ապրող այդ երկու երգիչները նոյնացնել, նոյն իսկ նկատի ունենալով, որ երկուսի անունն եւս Յովասափ է եղած,— անհնարին է:

բ.— Երկու երգիչների կրթութեան պարագաները:— Յովասափը դպրոց անցած, կարդալ–գրել իմացող եւ նոյն իսկ Ձեռագիրներ արտագրելու չափ վարժ ու հմուտ գրիչ էր: Յայտնի է, որ նա Թադէոս անունով քահանայի զաւակն էր. մօր անունն եւս յայտնի է մեզ՝ իբրեւ Շահ փաշայ, որի մասին տեղեկանում ենք Բերլինի Արքայական Մատենադարանի MS. Or. No. 805 Ձեռագրից, գրուած Յովասափի իսկ ձեռքով: Այդ ՁՌ–ը մի «Յայսմաւուրք» է, որ պատկանում էր Ամասիայի Ս. Յակոբ եկեղեցուն, որից տեղեկանում ենք, թէ «ի տղայութենէ (հայրն) սնեալ էր ի վանորայս սրբութեամբ»: Հմուտ էր «Հին եւ Նոր Կտակարանաց», արհեստով «գրագիր» էր, կամ ինչպէս ինքն

*) Մանրամասնութիւնների նկատմամբ տես Գարեգին Եպիսկ. Յովսէփեանի հմտալից յօդուածը, «Յովասափ Սեբաստացի», «Արարատ», 1918, Ապրիլ–Դեկտ., էջ 225–280:

է որակում իւր ժամանակի բառով «քարտուղիղ» էր, այսինքն Ձեռագիրներ արտագրող հմուտ Գրիչ: Ամասիայի այդ Ցայսմաւուրքի կէսը գրուած է Թա-դէոս քահանայի ձեռքով, իսկ շարունակութիւնն աւարտած է իւր որդին՝ Ցովասափ Գրիչն ու Երգիչը: Ցովասափն իւր ուսումն ստացել էր հօր ձեռքի տակ, անմիջապէս, եւ ապա վանական դպրոցի մէջ:

Բեռլինի MS. OR. No. 805, որ միաժամանակ եւ Ցովասափի Տաղերի ժողովածուն է՝ գրի է առնուած հեղինակի իսկ ձեռքով: Ուշադրութեան ար-ժանի է նաեւ այն պարագան, որ Ցովասափն իրեն անուանում է «դպիր» եւ «սարկաւագ», ուրեմն, որոշ կրթական դպրոց անցած եւ (ոչ-կուսակրօն) «սարկաւագի» աստիճանի արժանի մի անձն:

Այն ինչ, ինչպէս տեսանք, մեր Ֆրիկը —
«Ո՛չ ծառայել վարդապետի,
ո՛չ կարդացել աւրիկ մի ճայ»,
թէեւ յաճախ իւր հօրից լսած էր, թէ
«Քրիստոսի ըղքեզ կու տամ»,
ինչ որ հնար չէր կատարել, քանի որ ո՛չ ուսում ունէր եւ ո՛չ ընթերցանութեան պարզ կարողութիւն:

Հետեւաբար այս երկու տարբեր խմորի մարդիկն իրար հետ շփոթել, նոյնացնել, նոյն անձը համարել՝ ոչ հնարաւոր է, ոչ ներելի:

գ. — Երկու Երգիչների լեզուի, արտայայտութեան ձեւերի եւ եղանա-կի տարբերութիւնը:

Այս մասին այստեղ ծանրանալու հնարաւորութիւն չունինք: Ասենք մի-այն համառօտակի, որ բոլորովին տարբեր են նոցա երկուսի ոճը, կերտ-ուածքն ու կառուցուածքը, արտայայտութեան ձեւը, բառամթերքը, Տաղերի մէջ արտայայտուած գաղափարները, ապրումները յոյզերի, երազներն ու տենչերը, որոնց վերայ դրոշմուած է իրենց ապրած դարի ու շրջանի կնիքը: Եւ այդ ինքնուրոյն արտայայտութիւնների եւ երազանքների թռիչքներից կարելի է մակաբերել, թէ ո՞ր դարի եւ շրջանի երգիչ է նորանից իւրա-քանչիւրը, ինչ որ այնքան յստակ է, առ հասարակ, ամէն մի երգչի, բանաս-տեղծի ու վիպասանի:

§ 28. Բացի այս ընդհանուր տեսական յառաջադրեալներից ունինք մի աւելի հաստատուն հիմք, այդ այն է, որ «Ցիշէ զրան Աւետրանին» Տաղի եւ Ֆրիկի միւս Տաղերի ընդհանուր ոճն ու լեզուն, մտքերն ու խոհերը, դարձ-ուածներն ու արտայայտութիւնները, աշխարհահայեացքը իրար այնքան նման են, որ մեր վարկածն աւելի եւս հաւանականութիւն է ստանում այդ երկու ա-նունն իրար հետ նոյնացնելու եւ նոյն անձը լինելու ենթադրութիւնն անելու:

Ցովասափ Մազազի այդ Տաղի մէջ պատահող հետեւեալ տողերը, —
«Անուշ կեր ու խում արա,
յաշխարհիս չի կայ քեզ նըման,

Գընա, դու բըռէ զմարմինդ,
որ որդունքն ի հոն զօրանան»,

նոյն միտքն է ու համարեա նոյն դարձուածի փոխակերպութիւնները, ինչ որ տեսնում ենք Ֆրիկի «Է, անօրէն եւ անառակ» Տաղի հետեւեալ տողերի մէջ,—

«Ստամոքսըդ արձակ ես դու զուգել,
զինչ ըզձիու կամ ըզջորոյ,
Մարմինդ գէր է եւ քընքուշ,
հեշտ եւ անուշ զինքդ պահելոյ,
Սիրտն ու սակատն եւ փորոտին,
բարձր է պատել զեր ճըրագու,
Բըռած հաւով է սընուցած,
անուշ գինի տայր խըմելու...
Տեսնուլ ըզհո՛ւըրն բորբոքեալ,
մեծաց որդո՛ւնքն են ի հաչու,
Կ՚ասեն, թէ «Երբ գայ մեր ծընողն,
որ մենք ուտենք անուշ խաշու...»:

Ժ. 37, 39, 44–45, 71–72:

Թողնելով այլ նմանութիւնների եւ մտքերի յարադրութիւնների նոր կոչումներ երկու տաղից եւս կամ այլ տաղերից, անցնենք հետեւեալ խնդրին:

§ 29. Ի՞նչ է այդ ՄԱՍԱՍ անունը, որ Ֆրիկը գործ է դնում իւր անձի նկատմամբ:

Արդեօ՞ք դա մի պարզ ծածկանուն է, կապուած լոկ հեղինակի անուան ու անձի հետ, թէ մի ընդհանուր, աւելի լայն մտքով ու առումով գործածուած արտայայտութիւն է, որոշ գաղափարի:

Ֆրիկի «Արդունի Տաղի» մէջ պատահած ՄԱՍԱՍ բառի հետ ունինք մի քանի անգամ պատահող մի այլ ձեւակերպութիւն,— Մասասչիֆ արտայայտութեամբ եւ այնպիսի արտայայտութիւններով, որ մեզ տանում է այն ենթադրութեան, որ այդ երկու արտայայտութիւնը այդտեղ որոշ գաղափարների հակադրութեան, միեւնոյն եզրի դրական եւ բացասական կողմեր արտայայտող բառեր են: Եւ եթէ այդպէս է, արդեօ՞ք ՄԱՍԱՍ մի ընդունուած, պայմանական անուն չէ՞ր «հայ» գաղափարն արտայայտող եւ դորա հակադրութիւնը Մասասչիֆ արտայայտութեան մի ձեւ «ոչ Հայ, օտար» գաղափարի մի նշան, պայմանական մի արտայայտութիւն, ճիշդ այնպէս, ինչպէս այսօր եւս մեր ժողովրդի մէջ այդ պայմանական արտայայտութիւններն ունինք, որոշ գաղափարների համար: Օրինակ Ծանի = Թուրք, մահմետական, (Ղարաբաղի բարբառի մէջ:

Քաչալ (Կիլիկիայի շրջանի մէջ) նշանակում է Մահմետական: Քեռի (Վանի եւ Մշոյ բարբառի մէջ), Տափակ (Խարբերդի շրջանում) նշանակում է Ռուս, ինչպէս որ նոյն արտայայտութեան համար Կովկասեան Հայութիւնն

ունի Սոխ բառը։ Տիտօն (Գլս․) Ֆրանսիացի նշանակութեամբ, Դուայ կամ Դուկայ (Մուշի շրջանում)՝ նշանակում է Քիւրդ, եւն․— Արտայայտութեան եղրներ, իբրեւ ծածկանուններ, թէեւ յայտնի այժմ ամէնքին*)։

Անհաւանական չէ թւում մեզ այդ ենթադրութիւնը, որովհետեւ Ֆրիկի ապրած շրջանն իսկ մի այդպիսի պայմանական ծածկանուն է պահպանել եւ մեզ հասցրել, որով Մոնղոլները արքայուն*†) էին կոչում Հայերին եւ կամ ընդհանուր առումով քրիստոնեաներին։ (Օրբլ․ էջ 408–409, 410․— Զամչեան, Գ․ 262․— Վարդան Պատմ․ էջ 205**) եւ կամ ծաք, ծայք անունը, որ հաւանօրէն Հայ եկեղեցուց անջատուած անդամների նկատմամբ որոշ մակդիր էր կամ ծածկանուն եւ որը մի սովորական երեւոյթ է եւ միւս ազգերի մէջ, ինչպէս Հրէաների եւս, միջին դարերում, ոչ–հրէային, օտարին Գոյ էին անուանում***)։

§ 30․ Այսպիսով Յովասափ ՄԱՍԱՍ պէտք է նշանակէ Յովասափ ՀԱՅ, որ իբրեւ գաղափարի տեսական ըմբռնում, ideology, շատ էլ հեռու չէ Ֆրիկի անուան հետ կապուած «հայերէն» երգելու, չարադրելու եւ «հայ» գաղափարն, ընդարձակ առումով, իւրայինների շրջանում ընդհանրացնելու մըտքից ու ձգտումից։ Մէկը որ «Շատ մի հայերէն բաներ» է գրել, (ԻԴ․ 49), որի երգած բազմաթիւ «հայերէն մասալ ու առակ»ները (ԻԵ․ 51) յայտնի էին ամէնքին եւ տարածուած, որը չէ քաշւում յայտարարելու իւր նկատմամբ, թէ «Շատ մի հայերէն բաներ խորհրդով դրախտ տնկեցի» եւ կամ «շատ հայերէն

*) Տես մեր «Գաւառականի Բառարան» աշխատութեան մէջ համապատասխան բառերը։

*†) Տես Յաւել․ Զ․ «Արքայուն» բառի մասին։

**) Ն․ Մառ, Արքայունդ Մոնղոլների անուանակոչութիւնը Քրիստոնեաներին, կապուած Հայ–Քաղկեդոնիկների հարցի հետ․ 1905, Պետրբ․— Ն․ Ե․ Մառ, Արքայուն հարցի առթիւ, 1913, Պետր․։ Николай Я. Марр: Аркаун. Монгольское Название Христіан в связи с вопросом об Армянах-Халкедонитах. С.П.Б. 1905. Н. Я. Марр: К вопросу об Аркаунѣ, (Христ. Востокъ. I. II, в п. I. Стр. 144-145. С.П.Б. 1913).

Յարգելի գիտնականի այդ գրքերի հետ ծանօթացանք խնդրիս մասին մեր ինքնուրոյն կարծիքը կազմելուց յետոյ, որ նոյն եզրակացութեան է յանգում։†)

Исторія Монголов. Инока Магакіи. Пер. К. П. Патканова. С.П.Б. 1871 Стр. 105.

**) Ապագային, ԺԵ․ դ․ արքայուն մակդիրը դառնում է նոյն իսկ յատուկ անուն՝ հայ անունների շարքի մէջ․— «Աղաչեմ յիշել․․․ յաղաւթս ձեր․․․ զԱբրահամ․․․ քահանայն Մելտենցի եւ զծնողսն իւր զԱրքայունն՝ զհայրն եւ զԱստնմելիք՝ զմայրն․․․ իմ եւ զեղբայրն իւր զՔուրդամիրն։ Ձռ․ Երուղ․ Թիւ 2151, fol. 282 բ․— Արտաւազդ Արքեպս․ «Յովհ․ Եպիսկ․ Ղալամքեար», Սիոն, 1939, Թիւ 6, Յունիս, էջ 231 ա․։

**) Վարդան Բարձրաբերդցի, Պատմ․ Տիեզերական, Մոսկուա, էջ 20, 207․—

***) Թալմուդի մէջ հանդիպում ենք այսպիսի մի արտայայտութեան,— «Իւրաքանչիւր Գոյ — goy -- ոչ–Հրեայ—, որ ուսումնասիրում է Օրէնքը, եւ իւրաքանչիւր Հրեայ, որ նպաստում է նորան այդ գործի մէջ, արժանի են մահուան»․ կամ «Գոյի ամենից լաւն իսկ սպանիր»․— "Every Goy who studies the Talmud and every Jew who helps him in it, ought to die".— Sanhedryn,, Sga.-- Aboda Zora 8—6— Szagiga, 13.— Թալմուդի մէջ գրուած բոլոր մէջ–բերումները մեզ հեռու կը տանի։ Հետաքրքրուողը կարող է տեսնել,— Libr.

բաներ ասի» (ԻԸ. 36), որը մի խօսքով ներկայանում է par exellence ՀԱՅ գաղափարի քարոզողն ու տարածողը,— այսպիսի մէկին ներելի պիտի լինէր, նաեւ իւր համար ՀԱՅ անունն ընտրել, իբրեւ «գրչի անուն» կամ «գրական անուն» եւ այդ կեղծ,— կամ աւելի շիտակ՝ այդ իսկական,— անուան տակ ճանաչեցնել տալ ինքն իրեն, որ արտայայտւում է ՄԱՍԱՍ բառով:

Մի հարց եւս:

Իւր միւս Տաղերի մէջ Ֆրիկը սովորութիւն ունի իւր անունը յիշատակելու մի (եւ նոյն իսկ երկու երեք) անգամ, իբր ապացոյց Տաղի հեղինակի անձի. իսկ այս տեղ, բաւական երկար այս Տաղի մէջ, բացի ՄԱՍԻՍ անունից, յիշատակուած է մի անգամ ՖՐԻԿ անունը: Բացատրութիւնը, ենթադրում ենք, ժամանակակից քաղաքական պարագաների, հալածանքի եւ երկիւղի սարսափի ապրումների մէջ պէտք է որոնել:

Թէեւ Տաղն, ընդհանուր առումով, ի վնաս Թաթարների չէ, սակայն սկսած 60-րդ տողից, շատ էլ շոյող ոճ ու բովանդակութիւն չունի Թաթարների արարքների նկատմամբ. հետեւաբար, թերեւս իբրեւ յայտնի Երգիչ, զգուշացեալ է նոր հալածանքի դառնութիւնները ճաշակելու պատեհութիւն չստեղծել իւր համար եւ յիշատակուած է ՖՐԻԿ անունը մի անգամ միայն, որովհետեւ գրչի միւս անունը եւս — ՄԱՍԻՍ-ը անծանօթ չէր մերձաւորների շըրջանում:

Անշուշտ, այս ամէնը վարկածներ են եւ խնդրական կէտեր:

David, 37.— Szaaloth. The Book of Jore Dia, 17— Midrasch Taipisth, p. 225– L. Tosefia, Aboda Zara, 8, 5.— Schulchan Aruch, Choszen Hamispat, 227, 348.— Schulchan Aruch, նոյն, 28, Ari. 3, 4, 388.— Schulchan Aruch, Orach Chaim, 14, 20, 33, 39.— Talmud Jebomoth, 61.— Tosefia Erubin, VI. 1, եւն.:

Ոչ-քրիստոնեաներին կամ աւելի ճիշդ ոչ-Հրէային Գոյ անուանելը նոր խնդիր չէ: Այդ անունով օտարներին անուանակոչելը դեռ եւս իւր ծագումը Ծննդոց Գրքի մէջ է թողել: Ծննդ. ԺԴ. Գլխի մէջ պատմւում է «Եւ եղեւ ի թագաւորութեան Ամարփաղայ արքայի Սենաարայ, Արիովք արքայ Սելլասարայ եւ Քոդողոգոմոր արքայ Ելամայ, եւ Թարգաղ արքայ ազգաց եռուն պատերազմ ընդ Բալակայ արքայի Սոդոմացւոց...» (ԺԴ. 1–2): Մեր թարգմանութեան ազգաց բառի տեղ Եբրայական բնագիրն ունի Գոյիմ: Թարգաղ կամ Թագաաղ կամ Tidal Սեմական ժողովրդի գրաւած երկրի Հիւսիսային ազգերի իշխողն էր, Աբրահամի ժամանակի Քեռայի թագաւորներից մէկը: Սեմական ժողովրդի եւ Հիւսիսային ազգերի մէջ մեծ ատելութիւն կար, որովհետեւ վերջինները յաճախակի յարձակումներով հանգիստ չէին տալիս այդ վաչկատուն հովիւներին եւ վերջիններիս համար այդ «Ազգերը» բարբարոս «Գոյիմներ» էին, որոնց վերայ նայում էին արհամարհանքով եւ ատելութեամբ: Եւ այդ ատելութիւնը դեռ եւս Ք. Ա. 2000 թուականներին է հասնում:

(Հմմտ. Մ. Մինասեան, «Բնիկ Նախնիք Հայոց», 1922, Ֆրէզնօ, էջ 18, 42–43):

Օտարներին որոշ կամ գաղտնի անուններ տալ ամէն տեղ կայ. Տաճկահայաստանում Քրտերը Թիւրքերին անուանում են Ռօմ, որ անարգական մի մակդիր է. «Հայրենիք» Ամսագիր, (Բոստ.) 1923, Յունուար, էջ 33, Յուլիս, էջ 76). նոյն շրջանում Ռուսներին անուանում են Տափակ, իսկ վերջին ժամանակներս Քեռի, իսկ Տաճիկները Հայերին Ղամազ (=դաւաճան). Պոլսում Հայերը Յոյներին՝ Տռճան, Դոժան (=դաւաճան,) իսկ Ֆրանսիացուն՝ Տիտօն — Dit-on մակդիրներն են տալիս:

§ 31· Ինչ որ էլ լինի, յամենայն դէպս, յանձին Ֆրիկի ունինք ազգային գիտակցութիւն եւ ոգի զարթեցնող մի քնքոյշ երգիչ, համոզուած մի քարոզիչ գաղափարների, որ մի հակընթաց շարժում ու մղիչ հոսանք էր առաջել իւր ժամանակակիցների մտքի ու սրտի մէջ, մի շրջան երբ եւ որտեղ ամէն ինչ որ hայ անուան ու գաղափարի հետ հետ էր կապուած,— այդ ամէնը ջնջելու, ոտքի տակ տալու եւ ընդմիշտ աւերելու մի բուռն ձգտում կար, երբ Թաթարը իւր յեղուզակի բնութեան ու բնածին անքաղաքակիրթ բնազդին զոհ էր բերում երկար, դարաւոր մաքառումի յաղթանակ քաղաքակրթութեան պտուղներ տուած եւ այդ պտուղները վայելող մի ամբողջ ազգի բոլոր բարոյական, մտաւոր եւ ազատութեան ստացուածը, կարեւոր էր մի ազատ եւ ըմբոստ ոգի՝ մի նոր հակընթաց շարժումն, հակահոսանք — reaction — առաջ բերելու համար՝ եւ այդ մաքուր ոգին երեւում է մեր Երգչի մէջ: Եւ այդ ներքին բոցսէրը բարձր է ամէն սիրուց Ֆրիկի տանջուած եւ այդ տանջանքի մէջ իսկ մաքրութեան ու զտումի հասած, հոգու համար:

«Այս սէրըս, որ ի յիմ սիրտըս է
    բնակել, զայն նա գիտենայ,
Որ ինքըն հանց սէր ունի,
    որ նըմա ընկեր չունենայ·
Այս սէրըս աշխարհի սիրուն
    չէ նըման, որ զինքն իմանայ,
Այս սէրըս ի լուսոյ եկել,
    ով սիրէ՝ նա անմահանայ,
Երնէկ ես նորան կու տամ,
    որ ըզսէրըս ի սիրտ ունենայ:...»
ԻԸ· 28–32:

§ 32· Մի այլ տեղ նա վարպետ համեմատութեամբ այդ տեսակ սիրով տարուածների համար,— գաղափարը պաշտամունքի սեղանի ամէնից մեծ սրբութիւնը համարածների համար,— նա երգում է նոյնքան բարձրաթռիչ, որքան իւր ոգին, այդպիսի գեղեցիկ նմանութեան պատկերաւորումով.—

«Նըմանեցար արծուին,
    ու ի յօդն ելար շըփացար,
Ասցեր, թէ շատ մի դեկան զուգեմ,
    լինիմ կամօ ի կատար,
Նետով մի հանց խոցեցար,
    որ զինչ ըղկրակ վառեցար,
Երբ զաչքըդ ի նետըն ըրուիր,
    ի քո թեւըդ զինքըն տեսար,
Դու քո լեզուովդ ասացեր,
    թ՞իմ թեւէս չեղեւ ինձ հընար:
ԼԲ: 70–74:

§ 33․ Ցաւի ու տանջանքի, սիրոյ ու յափշտակութեան այդ որոնումների մէջ Ֆրիկը զգացումների նրբութեամբ, երբեմն հեռանում է իւր սովորական խրատական ոճից եւ դառնում անկեղծ զգայուն մի սիրտ ու որոնող հոգի, նոյնքան բնական եւ իրական, որչափ մեր Միջնադարեան լաւագոյն երգիչներից լաւագոյնը: Նա ոչնչով պակաս է, քան իւր ժամանակակից Կոստանդին Երզնկացին եւ երբեմն եւս մրցութեան պայքարի է մտնում Նահապետ Քուչակի հետ, որի քառեակների նախնականները իւր տաղերի մէջ ենք գտնում: Նա միշտ էլ իւր շրջապանից վեր է․ տառապանքը ու հոգեկան ցաւը նորան յուսահատութեան փոխարէն, նոր յոյսերի ներշնչումների թեւեր են տալիս եւ վստահացած իւր վերջնական յաղթանակի վերայ,— որ եւ գաղափարի յաղթանակն է,— երգում է,—

«Զինչ ըզգեստ աշխարհս բոլոր պիտի գամ,
Ու մըտնում ես՝ Ֆըրիկս ի ծով ու ծըփամ․
Ի յալեաց կոծոյն ես ի՞նչ վախենամ...
Երբ քըննէ մէկն զիս, թէ ո՞ւր կու գընամ,
Ես նորան պատեհի պատասխանի տամ․
«Թէ խնդրեմ զայն գոհարն, որ փարթամանամ․
Ու տեսնում իմ մըտաց աչօքս ու դողամ,
Ով բերէ զինքն առ իս, որ պահ մի խընդամ,
Կու քաղի շունչս յինէն, թէ ե՞րբ մօտենայ,
Եւ առնում պահ մի յափս եւ ուրախանամ,
Եւ հոգով եւ մարմնով ես անմահանամ»:

ԼԸ․ 64–71:

§34․ Նոյն այդ գաղափարը նորան հանգիստ չէ տալիս եւ մի այլ տեղ նա այսպիսի մաքուր զգացումների արտայայտութեան է վերածում բանաստեղծի գեղեցիկ ու մաքուր ըմբռնումները՝ համեմատութիւններով ճոխացած ու համեմած պատկերացումով, որ մի Dante Rossetti–ի իսկ պատիւ բերել կարող է, համեմատութեան նրբութեամբ եւ խորութեամբ, երբ երգում է,—

«Շատ մի հայերէն բաներ
　　խորհրդով՝ դըրախտ տնկեցի,
Ցաչիցս աղբերացն ջուր քաշեցի,
　　զինչ որ սընուցի,
Զիմ լերդըս զինչ ըզհաց կերայ,
　　ա՛յ եղբարք, ինչուր բուսուցի․
Երկու լոյսն ի մի դարձաւ,
　　գիշերին ինչուր հասուցի
Անկայ ես ի հողոց ծովն,
　　երբ զայս բաներս յիշեցի,

*Զիմ աչուերըս չափ արի*
*ու գծովու ջուրըն չափեցի,*
*Զիմ միտքըս լուղնորդ արի,*
*ու գծովու ջուրըն չափեցի,*)*
*Վասն այն մարգարտին համար,*
*որ ի ծովու յատակըն լինի**):*

§ 35. *Այս տողերի մէջ Ֆրիկի ամենագեղեցիկ յատկութիւններից մէկն է երեւան գալիս իւր բանաստեղծական շնորհի լաւագոյն չափով: Նա իւր անձնական թուլութիւնները, իւր տառապանքը, վիշտը, հոգեւին տանջանքները գեղեցկի եւ բարձրագոյնի ձեւափոխութեան ու կերտուածքի վերածելու* վարպետն *է ներկայանում մեր առաջ այդ կարճ, մի քանի տողի մէջ ամփոփուած իւր տաղանդի ու կարողութեան մեծ տարողութեամբ: Զգացումն ու երեւակայութիւնը, մտաւոր յուզումներն ու հոգեկան ապրումներն այն անհատական բարձրագոյն կարողութիւններն են, որով նա աչքի է ընկնում: Զգայուն սրտի, անհատական յոյզը հանրականի վերածելու կարողութեամբ տարուած ջերմ հոգու ծփծփուն ալիքներն են, որ նորան մերթ ծովի յատակն է իջեցնում իւր յուզուած սրտի հետ, երբեմն իբրեւ արծիւ խոյանում եթերքն իւր մտքի: Եւ այդ ամէնը ապաղայ Տեսիլքի, գեղեցիկ Երազանքների աշխարհը իրականութեան վերածում, Արդարութեան յաղթանակի մեղեդիով:*

*Թերեւս իւր բոլոր գործերի մէջ, իբրեւ զուտ ներշնչման արդիւնք, ամէնքն եւս մեր ցանկացած բարձրութեան եւ արուեստի նրբութեան յղկուած–*

*) *Նոյն գեղեցիկ պատկերների թախծոտ մի կտոր է նաեւ Վանի գեղեցկուհու բերանի մէջ եւ այս,—*

*«Ինդայ Թաղէ–Թաղ ախչէ1 մ' ճարեցի,*
*Տուի Թարաղէ2 մ' Թուխտիկ առեցի,*
*Աչիցս արտասուք Թանաք արեցի,*
*Ցողչողուն մատներս կալամ արեցի,*
*Սրտիս դարդերն իմ դաւթար3 արեցի,*
*Ստամբէօլ քաղաք եարոջս ճամխեցի»:*

1) *Ախչէ (ախչայ), Թրքական փոքր դրամ:*
2) *Թարաղէ (Թարաղայ) Թերթ, Թերթիկ:*
3) *Դաւթար, նամակ:*

**) *Համեմատական ի՞նչպիսի եզր ենք գտնում Ռոզետտի այս կտորների մէջ:*

⋆) I looked and saw your heart
In the shadow of your eyes,
As a seeker sees the gold
In the shadow of the stream...
"I looked and saw your love
In the shadow of your heart,
As a diver sees a pearl
In the Shadowes of the sea".

D. G. Rossetti: Three Shadows. The Poetical works, Lond. 1897, p. 321.

քի կաղապարով չէ, որ տեսնում ենք։ Սակայն այդ բոլորի հետ, չենք կարող չխոստովանել, որ նորա տաղերի լաւագոյն մասերը՝ ներշնչման իսկական կնիք են կրում իրենց վերայ։ Եւ եթէ պակաս կայ այդ ամէնի մէջ, ապա այդ անհարթութիւնները միայն իւր կրթութեան թերութեան եւ ոչ թէ իւր տաղանդի կարողութեան պիտի վերագրուի լոկ։

§ 36· Ֆրիկը երկուքի բաժանուած մի կարող հոգի է։ Երազանքների աշխարհի Բանաստեղծը եւ իրական աշխարհի Մարդը։ Իւր երազանքներն այնքան ճոխ են, որ մեզ իրականութեան վերածուած գաղափարների պատրանքն են տալիս։ Արթնութեան պահուն է, որ մենք հրաժեշտ ենք տալիս երազների թագաւորութեան։ Եւ որչափ էլ դառն իրականութիւնը, որի մէջ էր դրուած Ֆրիկն իւր ամբողջ էութեամբ, իբրեւ վատթարագոյն իրականութեան մէջ ապրող անձն, սակայն եւ այնպէս Ֆրիկն իւր գործնական մտաւորական կեանքի մէջ միշտ էլ մնաց Երազանքների Ապարանքների բնակիչ, ուր իսկական իրականը միայն իւր երազանքների գեղեցիկ մարմին առած տողերն են մեզ ժառանգութիւն թողնուած։

§ 37· Եւ այդ բոլորի մէջ ցոլանում է Ֆրիկի ամբողջ հոգին, նորա աւիւնի ամբողջ թափը, զգացումների ամբողջ ջերմութիւնը ու յստակութիւնը, տանջուած ու տանջուող, բայց միշտ էլ երազուն Երգչի ըղձերն ու յոյսերը՝ ձօյլ ու առինքնող, պարզ ու գրաւիչ։ Եւ եթէ դժբաղդ պատահարով կորչէին նորա բոլոր Տաղերն ու երգերը եւ մնային միայն վերն առաջ բերած քանի մի տողերը, հմայքու֊ գանձի այդ փոքրիկ ժառանգութիւնն իսկ պիտի բաւէր, որ մենք՝ ապագայ ժառանգներս յարգանքի յոյզ ու խռովքով գլուխ իջեցնէինք նորա մաքուր տաղանդի, ջինջ մտքերի եւ դէպի վեր, դէպի անհունն առաջնորդելու ատակ իւր կարողութեան առաջ,— եւ մոռացութեան չմատնէինք հոգով ապրող մեր տաղանդաւոր Երգիչը։

*

* *

§ 38· Ֆրիկին վերագրուած «ԳԱՆԳԱՏ», Բան վիճման ընդ Ամենազօրին Աստուծոյ վերտառութեամբ Տաղը մեր կարծիքով Ֆրիկինը չէ, ինչպէս յամառ կերպով պնդւում է ամէնքի կողմից եւ ամէն պատեհութեամբ։ Աւելին եւս. «ԳԱՆԳԱՏ–ի հեղինակի անունն եւս, բարեբախտաբար, ժամանակը պահել է մեզ համար։ Այդ երգի հեղինակը յայտնի է թէ ո՞վ է.— «Բարսեղ ոմն իմաստուն, որը, թւում է, թէ շատ բան չէ գրած եւ կամ որից շատ բան չէ մնացած մեզ իւր անունով։

Ֆրիկին չենք վերագրում այդ Տաղը, ա) որովհետեւ Ֆրիկն իւր բոլոր տաղերի վերջը կամ մէջ իւր անունը յիշատակելու սովորութիւնն ունի, ինչպէս բոլոր մեր միջնադարեան եւ յետոյ եկող երգիչները, ինչպէս տեսանք վերը (Գլ. Գ. 18), այն ինչ «ԳԱՆԳԱՏ»ի մէջ այդպիսի յիշատակութեան հետք իսկ

չը կայ Ֆրիկի անունով։ Բ) «ԳԱՆԳԱՏ»ի հեղինակն, ըստ ժամանակի սովորութեան իւր իսկական անունն է յիշատակում տաղի մէջ, ասելով,—

«Ամ, ցոյց թէ ո՞ր մ'է պիտանի,
Որ Բարսեղս այլ գիտուն լինի·
(Ցաւելուած Է· 59–60)։

նուրբ հեգնանքով, այսինքն աշխարհս ո՞ւր է հասել, որ ես՝ Բարսեղս եւս գիտակների, «գիտուն»ի կամ մտաւորականի շարքն եմ անցել։

Համեստ մի կարծիք անձնական արժանիքի, ինչ որ ամենեւին չէ նուազեցնում Երգչի բուն արժանիքը, իբր Երգիչ, իբրեւ դիտող աչք, զգայուն միտք, ժամանակի բարքերի ճշգրիտ պատկերն ուրուագծող՝ նուրբ հեգնանքով, թերեւս մի քիչ աւելի ընդգծուած, համեմունքով եւ կծու, սուր, թունալից խայթոցներով,— ինչ որ շատ հասկանալի է, քանի որ բարքերի անկումն այնքան խոշոր չափերով էր, որ նուրբ ու քնքոյշ գոյներով պատկերը, թերեւս, ոչ նկատելի պիտի լինէր եւ ոչ ազդեցութիւն ունեցող։

§ 39· Տաղս Ֆրիկին վերագրելու ամբողջ հիմքն այն է եղած միայն, որ ՁԹԹ–ից մէկի մէջ ունինք,— «ԳԱՆԳԱՏ· բան ի Ֆրիկ գրճոյն», այսինքն Ֆրիկի Տաղերի ժողովածու Տետրակից քաղուած մի տաղ «Գանգատ» անունով։ Եթէ արտագրող գրիչն ուշադրութիւն դարձնէր եւ կամ աչքի առաջ ունենար նաեւ մի այլ ՁԹ, ուր որոշ եւ պարզ ասուած է,— «Գանգատ»··· Բարսղի ումեմն մարդոյ կոխ եղեալ ընդ Աստուծոյ, կու մեղադրէ եւ յետոյ մեղայ Աստուծոյ» կ'ասէ, ո'չ արտագրողը պիտի սխալուէր եւ ո'չ էլ յետնորդներիս սխալ ուղղութեամբ առաջնորդուելու առիթը պիտի ընծայուէր։ Այս բոլորի հետ, դժբախտաբար, հրատարակիչների տպագրած օրինակները պակասաւոր լինելով, միշտ էլ պակաս է եղած բուն հեղինակի անունը յիշատակող վերն առաջ բերած երկտողը, որ ունի միայն Ս· Էջմիածնի թիւ 679 ՁԹ·ը։ Եւ իբրեւ հետեւանք սխալ հիմքերի եւ նախադրեալների, բնական է, սխալ եւ եզրակացութեան պիտի յանգէինք,— «ԳԱՆԳԱՏ»–ը վերագրելով Ֆրիկին՝ բուն հեղինակը մոռացութեան տալով։

Ֆրիկին վերագրելու, թերեւս մի թոյլ ու վարկածային հիմք կարող էինք ունենալ, եթէ Բարսեղ անուան կրճատուած Փարսի ձեւը հնար լինէր նոյնացնել Ֆրիկ անուան հետ· (տես վերը Գլ· Գ· 4), ինչ որ այնքան դըժուարին է։ Հետեւաբար կռահումներն իսկ անօգուտ համարելով «Բարսեղ գիտուն»ի ԳԱՆԳԱՏ–ի ամբողջ իրաւունքն իրեն վերապահենք եւ Ֆրիկին այդ «Գանգատ»ի հեղինակ լինելու պատիւը չվերագրենք։

§ 40· Բարսեղի այդ ԳԱՆԳԱՏ–ը, եթէ նմանութիւն չէ իւր օրերի կամ իրենից առաջ ապրած Եւրոպական տրուբադուրների համանման գրուածքի,— ինչ որ դժուար հաւանական է,— ապա ապահովաբար արդիւնք է իր սեփական դիտողութիւնների, ինչ որ ապացոյց է այդ «իմաստուն» տաղասացի սուր դիտողութեան, հասարակական բազմապիսի խաւերի ծանօթութեան, դա–

սակարգերի, անհատների, ազգերի փոխ–յարաբերութեան՝ լի նախանձի, ատելութեան եւ առերես սրտղեղ բարեկամութեան գծերով, դասակարգային անխիղճ ու անարդար պայքարի՝ աղքատն ու անզօրը ճնշուած, հարուստն եւ ուժեղը բարձր ի գլուխ, կեանքն անարդար իր բոլոր երեւոյթների ճշգրիտ պատկերով: Եւ այս բոլորն արդիւնք՝ դիտողի յոռետես փիլիսոփայութեան աշխարհահայեացքի, որի հիմքն է կազմում կեանքի կառուցուածքի յոռի եւ անարդար ըմբռնումն ու կազմը: Բարսեղ իմաստունի «Գանգատ»ը նոյն օրերի բարքերի այն տեսակ հայելիներից է, որի մէջ նայողը իր սեփական դէմքն է տեսնում ե՛ւ խեղուած, ե՛ւ այլանդակուած, ուր սակայն հայելին եւ ո՛չ մի մեղք ունէր:

«Գանգատ»ի հեղինակի ապրած ժամանակը շատ հեռու պիտի չը լինի Ֆրիկի օրերի եւ կեանքի շրջանից, դատելով այդ Տաղի մէջ երեւան բերած կեանքի պատկերի տխուր ու մռայլ, սեւ ներկերով գծած դիմագծերի առատութիւնից:

§ 41. «Գանգատ»ի այդ մռայլ գոյները մեզ յիշեցնում են Միջին Դարերի հասարակական կեանքը իր բոլոր երեւոյթներով, վերից–վար, Կայսր ու Թագաւորներից, Պապ ու Ծիրանաւորներից, իշխաններ ու տիրապետողներից, արհիներ ու եպիսկոպոսներից սկսած մինչեւ վանականն ու քաղքենին, շինականն ու աբեղան, կոյսերը վանքերի ու գեղջկուհին, իշխանուհին ու քաղքենի հարուստ ու ապահով, զեղխ ու անսիրտ կինը վաճառականի:

Անշուշտ այդ սեւ գոյների առատ զանգուածի պատկերների մէջ եւս կային գրաւիչ դէմքեր, լոյսի շողեր: Բոլոր Պապերն Իննովկենտիոս Դ. չէին կամ Յովհաննէս ԻԲ. բոլոր եպիսկոպոսներն էլ վայրագ չէին ու սանձակոտոր անառակներ, վանականներն ու մենուհիները բոլորն եւս կեղեքողներ չէին կամ անբարոյներ: Բազմաթիւ էր համարն այն վանական Տների, Նոցա վարիչների եւ այն տեղ բնակութիւն հաստատածների, ինչպէս եւ եպիսկոպոսների, համեստ քահանաների, որոնց միակ հոգն էր Տիրոջ լոյսը սփռել, Նորա այգին մշակել եւ գործը ուռճացնել, խաւարը փարատել, մոլորած հոգիները ուղղութեան հրաւիրել, Հօրը փարախն առաջնորդել, Գայլերը վանել եւ Կեանքը տանելի դարձնել՝ հնարաւորութեան ընձեռած չափով եւ տուեալ պայմանների ներող կարելիութեամբ եւ սահմանների մէջ: Բազմաթիւ էր քանակն այդպիսիների: Ամէնքը չէին Պիետրոյ Արետինոյի «Կրօնաւորների եւ Կոյսերի» ներկայացուցիչներ, այնպէս ինչպէս նկարագրուած ենք տեսնում Ragionamenti di Pietro Aretino–ի գրքի մէջ, մէկը միւսից հրէշ, մէկը միւսից զզուելի ու վանող դէմքեր ու նկարներ:

§ 42. Այսպէս էր ԺԲ. դարի եւ հետեւող ԺԳ. դարի կեանքը Եւրոպայում: ԺԲ. դարի լաւագոյն եւ լուսաւոր դէմքերից մէկն էր Ս. Բերնարդոսը եւ, սակայն, նա եւս չէ դադարում խարազանել շրջապատն անողոք լեզուով, մատնանշելով գոռոզամտութիւնը իր շուրջը, ագահութիւնն ու չարամտու–

թիւնը ամէն տեղ, ապերասան մոլուցքը հաճոյքի կեանքի, որ տիրող էր ամէնքի մէջ, ամէն տեղ, կայսրից մինչեւ չինականը, Պապից մինչեւ մոնթը:

Պիտեր Կանտորը — Peter Cantor — ԺԲ. դարի վերջերին ապրող, Արեւմտեան եկեղեցին նկարագրում է մինչեւ կոկորդ ու բերան լցուած կեղեքումի ախտով, անհոգութեամբ, ագահութեամբ, որկրամոլութեամբ, անբարոյ կենցաղ ու արարքներով, շռայլութեամբ ու շուայտութեամբ, շատ աւելի մեծագոյն չափերով ու վատթար կշռով, քան կեանքը աշխարհիկների: Եւ չէ՝ քաշւում մատնանշել, թէեւ ոչ մի բան այնքան նուաստացուցիչ եւ ջլատող է եկեղեցու հեղինակութեան համար, որքան աշխարհիկ տարրի գերազանց լինելն իբրեւ դասակարգ՝ քան հոգեւոր անձերը:

Նոյն Գանգատն ունի նաեւ Ժիլբեր դը-Ժամբլուր — Gilbert de Gemblours: Նոյն պատմութիւնն ենք լսում նաեւ նրա բերանից,— Եպիսկոպոսները մեծագոյն մասով, աթոռ են գրաւում, դիրք ստանում Եկեղեցու մէջ ո՛չ արժանիքով*) եւ ընտրութեամբ, այլ դրամով, իշխանների հովանաւորութեամբ ու քծինքով. նոքա եկեղեցի են մտնում ո՛չ սնելու, այլ սնուելու համար, ո՛չ պաշտօն՝ ծառայութիւն մատուցանելու, այլ պաշտուելու, ո՛չ սերմանելու, այլ չը սերմանածը հնձելու, ո՛չ թէ աշխատելու, այլ հանգստի գրկում մրափելու համար. ո՛չ թէ Հօտը գայլերից պաշտպանելու, այլ իբրեւ վատթարագոյն եւ անգութ գայլեր՝ Հօտը փողոտելու իրենց իսկ ձեռքերով:

Ս. Հիլդեգարդան — Ste. Hildegarda — իւր Մարգարէականների մէջ, որդեգրելով ժողովրդի՝ ոտքի տակ կոխան եղածների դատը եւ նոցա պաշտպանութիւնը նոյն օրերի կեղեքիչ հոգեւոր դասի դէմ, ասում էր,—

«... Եպիսկոպոսները եկեղեցու կողոպտիչներն են եւ աւարողները. Նոցա ագահութիւնը կլանում է ամէն ինչ, որ ի մի բերել կարելի է: Իրենց կեղեքումներով մեզ աղքատների ժողովածու են դարձրել. իրենք ապականուելով, մեզ էլ վարակելով...: Պատուաբեր եւ հնարաւո՞ր բան է, որ կուլակ**) — tonsura — կրողները շատ աւելի բազմաթիւ զինուորներ եւ մեծաքանակ զէնք ունենան, քան մենք: Պատշա՞ճ է, որ տիրացուն զինուոր եւ զինուորը՝

*) Միջին Դարերի սովորական, ընդհանրացած առած դարձած ասացուածներից մէկն էր,

"Au temps passé des siècles d'or,
Crosses de bois, évêque d'or ;
Maintenant changent les lois,
Crosses d'or, évêque de bois.
Antony Real: The Story of the Stick, p. 49.

«Այն օրերին՝ դարերի հին մեր ոսկի,
Մականն էր փայտ, եպիսկոպո՛սը ոսկի.
Մեր օրերին նոր օրէնքներ կան խօսքի,
Եպիսկոպո՛սը փայտէ, իսկ գաւազանն իր՝ ոսկի»:

**) կուլակ Մշի բարբառով նշանակում է Կաթոլիկ հոգեւորականների գագաթի գործուածք — tonsure, тонзура.

տիրացու դառնայ. Աստուած հրաման չտուեց, որ Իւր զաւակներից մէկն ունենայ ե՛ւ շապիկ, ե՛ւ բաճկոն եւ միւսը՝ մնայ մերկ, այլ պատուիրեց, շապիկը տալ մէկին եւ բաճկոնը՝ միւսին: Ապա, ուրեմն, թողէք, որ աշխարհիկ անձն ունենայ, գոնէ շապիկն իւր անթիւ հոգերի եւ աշխատութեան համար, իսկ հոգեւոր դասը ունենայ բաճկոնը, որ նոքա եւս զուրկ չմնան կարեւորից»:**)

§ 43. Սրբուհի Հիլդեգարդայի խօսքերն օդի մէջ կախուած բամբասանք չէին, թէ «Տիրացուն զինուոր եւ զինուորը վանական» է դառնում կամ կուլակ կրողները շատ աւելի «զէնք ունէին եւ զինուոր», քան աշխարհիկ իշխանները, այլ դոքա դարու ոգին եւ իրականութիւնն էր:

Այս երեւոյթն աւելի եւս աչքի էր ընկնում այդ օրերի Գերմանիայում, ուր եպիսկոպոսները, միաժամանակ ե՛ւ աշխարհիկ իշխաններ էին ե՛ւ քահանայ եւ ուր մի մեծ վանական հաստատութիւն, ինչպիսին էր St. Gall վանքը, միաժամանակ ե՛ւ աշխարհիկ տիրապետ էր եւ իշխանը St. Gall-ի եւ Appenzel գաւառների — canton—, մինչեւ որ ապագային կարող եղան ազատուիլ այդ լուծից երկար մաքառումներից յետոյ: Վանքի «Տարեգրութեան» Պատմիչը առանձին հպարտութեամբ է յիշատակում յաջորդող վանահայրերի ռազմական «առաքինութիւնները» եւ խօսելով Ուլրիկ Գ.րդ — Ulric — վանահօր մասին (†1117 թ.), ասում է «բազմաթիւ ճակատամարտների մէջ յաղթական եղաւ» եւ դժբախտաբար «խաղաղ մեռաւ»: Այս բոլորն արդիւնք էր ժամանակի արտառոց ըմբռումների՝ աշխարհիկ ազնուականութեան եւ Եկեղեցու եպիսկոպոսների:

Նոյնն էր եւ ամէն տեղ: 1224 թ. Կուտանսի, Աւրանշի, Լիզիոյի — Lisieux — եպիսկոպոսները թողեցին հեռացան Լուդովիկոս ԺԳ.ի բանակից, իրենց զինուորական ուժերով, որովհետեւ Տուրի—Tours—ժողովի մէջ թագաւորը որոշած էր, որ Նորմանդիայի եպիսկոպոսները պարտաւոր էին «անձամբ» ծառայել բանակի մէջ: Այս որոշումն ապագային պարտադիր դարձաւ: 1272 թ. Նոյն վայրերի եպիսկոպոսները Փիլիպ Ցանդուղն մականուանեալի բանակի մէջ էին ծառայում անձամբ, իրենց զօրքերով: Մի պարագայ, որ պատրուակ էր ծառայում զինուորական «առաքինութիւններով» օժտուած եպիսկոպոսներին յարձակուիլ խաղաղ հակումների տէր իշխանների դէմ: Գերոխ Ռայխսպերգը — Geroch von Reichesperg — իրաւամբ դառնապէս գանգատւում է, թէ ռազմասէր եպիսկոպոսներն անարդար պատերազմների անվերջ պատճառ են, յարձակուելով խաղաղ ժողովրդի վերայ, սպանելով եւ կոտորելով անխնայ, չը գթալով պատերազմական գերիներին, ո՛չ աշխարհիկ եւ ո՛չ եկեղեցական դասից, վատնելով եկեղեցու եկամուտները զէնքի եւ զինուորների վերայ, կեղեքելով շինականն ու անզօրը: Այսպիսի եպիսկոպոսներից

**) Honor. pp. III Epist. ad Archiep. Biturcens. (Martenee Collect, Amplis, I, 1149-1151.— Theesaur. Anectod. I, 875-877);— Fascic. Rev. Expetendarum et Fugiendarum, II, 251 (Ed. 1690).— W. Preger: Beitraege zur Geschichte der Waldesier, Muenchen, 1875, p. 64-67.

մէկն էր Վորմսի եպիսկոպոս Լուպոլդը — Lupold, որի դաժան վարմունքի դէմ իւր իսկ եղբայրը վրդոված՝ ասաց,— «Տէր եպիսկոպոս, աշխարհիկ անձերիս համար իսկ անպատուութիւն է քու սանձարձակ վարմունքը: Եպիսկոպոս լինելուց առաջ, գոնէ, երկիւղի նշոյլ ունէիր Աստծուց, այժմ այդ էլ է չքացել վրայիցդ անհետ»: Լեզուագար եպիսկոպոսը վրայ բերեց — «Երբ դժոխքի մէջ տեղ փոխելու կարիք ունենաս, տեղդ գրաւելու ինձ կը կանչես»:

Փիլիպ Ցանդուգնի եւ Օտտոյ Դ.—ի մէջ եղած կռիւների ժամանակ Լուպոլդն ինքն էր առաջնորդում իւր գնդերը, իբրեւ կողմնակից Փիլիպի եւ երբ իւր զինուորները խուսափում էին վանքերն ու եկեղեցիները կողոպտելուց, ասում էր, «Կարող են համարձակ անել այն, պայմանով, որ սպանուածների ոսկրները թողնեն այնտեղ՝ չահագործելու համար»:

Նոյնն ենք տեսնում եւ Անգլիայում՝ Ռիչարդի եւ Բովէի եպիսկոպոս Փիլիպ Դրեօյի — Dreux — մէջ, որ նոյնքան արի էր ու անսիրտ, որքան ժամանակի բարքերը եւ շրջապատը, որը յետոյ, երբ գերի ընկաւ պատերազմի ժամանակ, գանգատով դիմեց Կելեստինոս Գ.ին, իբրեւ «անարդար վերաբերում» Ռիչարդի կողմից, դէպի ինքը՝ իբրեւ եկեղեցական եւ արտօնեալ դասակարգի անդամ: Երբ Պապը յանդիմանելով եպիսկոպոսի ռազմական եռանդի «առաքինութիւնը» եւ հակամիտութիւնը, դիմեց Ռիչարդին, վերջինս ուղարկեց Պապին եպիսկոպոսի ռազմական վերատուր զգեստը, որի մէջ էր բռնուած նա, յիշեցնելով Պապին՝ Յովսէփի եղբայրների իրենց հօր՝ Յակոբին ուղղած խօսքերը,— «Ծանիր, եթէ որդւոյ քոյ իցէ զպատմուճանդ, թէ ոչ». (Ծննդ. Լէ, 32): Տարբեր պայմաններում, բայց նոյն բարքերի իբր արդիւնք, երբ Մոնֆերրայի — Monferrat — դուքս Թէոդորը գերի բռնեց պատերազմի ժամանակ Վերսելլիի եպիսկոպոս Էյմոնը — Aymon,— պապական նուիրակը — legate—, ծիրանաւոր Տելիաֆերոյ — Tegliaffero—, որ այդ ժամանակ Ժընեւ էր գտնւում, լսելով այդ «սրբապիղծ արարքի» մասին, գրով բողոքեց, յանդիմանելով եւ սպառնալով դուքսին, որը ճիշդ նոյն պատասխանը տուեց, ինչ որ Անգլիայի Ռիչարդը՝ ուղարկելով եպիսկոպոսի ռազմական զգեստը եւ արիւնթաթաւ սուրը: Սակայն եւ այնպէս՝ դուքսն անկարող եղաւ գլուխ ելնել իւր հոգեւոր ոսոխի դէմ, ո՛չ միայն ազատ արձակեց եպիսկոպոսը, այլ եւ պատերազմի առիթ դղեակն եւս նորան յանձնեց: Եւ այսպէս անվերջ ամէն տեղ:

Պատմւում է որ Կլէրվոյի — Clairvaux— վանահայր Ժօֆրուա տը Պերոնը — Geoffroi de Peronne — երբ ժողովրդի միահամուռ ցանկութեամբ եպիսկոպոս ընտրուեց Տուրնէ — Tournay — քաղաքի եւ Ս. Բերնարի, ինչպէս եւ Եւգենիոս Գ. Պապի կողմից յորդոր ստացաւ ընդունել ընտրութիւնը, նորընտիր թեկնածուն գետին տարածուեց, ողբագին աղաղակելով,— «Եթէ ինձ հանէք իմ վանքից, ես թափառաշրջիկ վանական կը դառնամ, բայց երբե՛ք եպիսկոպոս»:*)

*) P. Cantor: Verb. abbrev. Cap. LIV.—Pet. Blessens. CCXL.—Pet. Blessens. Tract. Quales sunt. p. II, IV.

§ 44․ *Լատերանի ժողովը*, 1215 *թուականին, հրաւիրելու մեծագոյն պատճառներից եւ ազդակներից մէկն էր հոգեւոր դասի մէջ սպրդած մոլութիւնների դէմ որոշումներ տալ, արմատախիլ անել այն եւ այդ դասակարգը բարեկարգել։ Եւ այդ ժողովի մէջ անցան բազմաթիւ կանոններ, որոնց անմիջական նպատակն էր* չարիքը մաքրել։ *Սակայն ի զուր։* Չարիքը *չափազանց խոր արմատ էր ձգած եւ լայնօրէն տարածուած, որ թղթի վրայ գրած որոշումներով վերանար։ Չորս տարի յետոյ Հոնորիոս Գ․ Պապը, Քրիստոնէութեան ուղղած իւր Ընդհանրականով, գանգատւում էր, որ «հետեւանքը չը տեսաւ տակաւին, ընդհակառակն Չարիքի աչքն աւելի էր այժմ, քան էր Եկեղեցու մէջ։ Ս․ Սեղանի պաշտօնեաները, շեշտում է նա, աւելի վատ են, քան անբան գազանները՝ տղմաթաւալ շաղախուած են իրենց մեղքերի ապականութիւն աղբի մէջ, ինչպէս Սոդոմի բնակիչները։ Ապականութեան ծուղակ են նոքա եւ թակարդ՝ իրենց դիմող ժողովրդի համար եւ կործանող ոյժ ամբողջ հօտի։ Բազմաթիւ եպիսկոպոսներ, վկայում է նա, անմտօրէն ծախսում են իրենց խնամքին յանձնուած եւ հաւատացած հանրային կայքն ու գանձը եւ Ս․ Սեղանի սրբութիւնների խանութներ են բաց անում ամէն հրապարակի վերայ․ առաջ են քաշում անարժանները, Եկեղեցու եկամուտները վատերի վրայ մսխում եւ Եկեղեցին իրենց մերձաւորների կայան դարձնում։ Վանականներն ու միանձնաւոր կոյսերն իրենց ուսերից պարտականութեան լուծն են թօթափում, կաշկանդող շղթաները փշրում եւ անկիւն նետում եւ իրենց անձը աղբակոյտի արժանի դարձնում»։ Եւ այդ պատճառով հերձուածն աւելի եւս իւր գլուխն է բարձրացնում։ Թող իւրաքանչիւրը ձեզնից, յորդորում է նա, «հոգեւոր սուրն իւր ազդրին ամուր կապէ եւ չը խնայէ ո՛չ իւր եղբայրը եւ ո՛չ մերձաւոր ազգակիցը»։*

*Եւրոպայի բարոյական անկման վիճակի մասին կարելի է աւելի ընդարձակ, բայց աւելի յուսախաբ, գաղափար կազմել Լինկոնի եպիսկոպոս Ռոբերտ Գրոստեստի* — Robert Grosseteste — *կազմած զեկուցումից, որ կարդաց Իննովկենտիոս Դ․ի եւ իւր ծիրանաւորների առաջ։ Մանրամասնութիւնները չափազանց ճնշող են։ Ասենք միայն, որ հոգեւոր դասը կատարեալ ապականութեան մէջ էր լողում ամէն տեղ․ «մի–մի դեւ էին՝ հրեշտակի լուսաւոր շապիկներ հագած», որոնք աղօթքի տունը աւազակների որջի էին վերածած**)։

*) *ԺԳ․ դարի կղերական մի յանգարան այսպէս է նկարագրում իւր օրերի եպիսկոպոսներին,—*

"Episcopy Cornuti
Conticuere muti;
Ad praedam ount parati
et indecenter coronati,
pro virga fecunt lanosam
pro infula galeam.

"Sicut fertes incedunt
et a Deo discedunt.
ut leones feroces
et ut aquilae veloces
ut apri frendentes
exacuere dentes".

Carmina Burana, p. 15 (Breslau, 1883)

*Եկեղեցին՝ եկեղեցականների իսկ վկայութեամբ, կենտրոն էր ողմի, ապականութեան, անկումի եւ փտումի: Եւ Եկեղեցին, ըստ նոյն օրերի հըռչակ հանած հաւատաքննիչ Պասանի* — Passan—, *որ դատախազն էր այդ Ատեանի, «անէծք էր հանրային, քաղաքական եւ բարոյական տեսակէտից, որ ոչնչով կարելի էր մեղմել»:*

§ 45· *Տեսնենք նոյն օրերի աշխարհիկ դասի տեսութիւնը Եկեղեցու պաշտօնեաների մասին: Ժամանակակիցներից մէկը՝ Վիլհելմ դը Պիւի–Լորան* William de Puy-Lorens — *չէ քաշւում ասելու,— «Աւելի շուտ քահանայ կը դառնամ, քան այդ բանը կ'անեմ», ճիշդ այնպէս, ինչպէս որ այսօր մէկն ասէր,— «Աւելի շուտ կը Թուրքանամ, քան այդ բանը կ'անեմ» կամ «Ջհուդ կը լինեմ, էդ չեմ անի»: Նոյն արհամարհական զգացման վերաբերումն ունէին քահանաները դէպի վանականները, որովհետեւ Անկինի վանահայր Էմերիկը վկայում է, թէ որ եւ է տիրացու իսկ չէր կամենայ կրկին ընկերակցել որ եւ է վանական անձի, որը մի անգամ առիթ էր ունեցել ընկերակցել Բենեդիկտեան սեւազգեստ մի վանականի: Սակայն վանականը, ինչպէս եւ քահանան, հաւասարպէս արհամարհելի էին եւ այպանելի, նոյն իսկ ատելի՝ հասարակ ժողովըրդի աչքին:*

*Այդ նոյն շրջանի մէջ ապրող Վալտեր Ֆոն դեր Ֆոգելվայդը* — Walter von der Vogelweide — *առաջ է բերում ժամանակակից ժողովրդական մի երգ, ուր երգիծանքով ու արհամարհանքով է խօսում հոգեւոր դասի մասին՝ սկըսած Պապից մինչեւ ստորին կարգերը,—*

*«Սուրբ Պետրոսի դահն բռնուած է այսօր,*
*Ինչպէս Գերբերդ կիւսն էր բռնել մոլոր·*
*Գերբերդն դժոխքի ինքն դարձաւ բաժին,*
*Այն ինչ այս պապն է տանջանքի նաժին*
*Դնում աշխարհն ողջ,*
*Մեռած, թէ առողջ:*

*Ինչո՞ւ է Երկինքն յապաղում բաժին*
*Պատժի ուղարկել գըլխին այս իժին.*
*Մինչեւ ե՞րբ պէտք է քընես, Տէ՛ր, անհոգ,*
*Խընամքիդ հոգծու թողնես մեզ կարօտ:*
*Զարթիր, Տէ՛ր, արագ,*
*Անկցի սատահակ:*

*Գործիդ ու խօսքիդ դարձել են խափանք,*
*Դըրել ամէնքի վերայ խիստ կապանք·*
*Պահնորդը Գանձիդ՝ գանձդ է անհաշիւ*
*Կողոպտում անհոգ, անխիղճ՝ գիշեր–տիւ,*
*Ձեռքովդ ամբարած*
*Եւ մէկ–մէկ համբրած:*

Քահանադ կարդած՝ գըրկում է մի տեղ,
Միւսը գողանում, սպանում այլ տեղ·
Քո Հօտի վերայ Գայլն է պահապան
Դարձել ու Հովիւ՝ դարեր անխափան
Խեղդում ամէն օր
Գառն, մաքի չոլոր»:

§ 46· Վալտերի առաջ բերած ժողովրդական այս երգի արձագանգն է լսում Եւրոպայի մի այլ ծայրից՝ Պրովանսի աշուղ Պետրոս Կարդինալի — Troubadour Pierre Cardinal — բերանով, որը նոյն նիւթն աւելի ընդարձակելով, ցոյց է տալիս, թէ այդ պարսաւն ու լուտանքը ժողովրդական շատ աւելի լայն խաւերի զգացում էր, որ միայն արտայայտութիւն էր հանրային արհամարհանքի դէպի եկեղեցու նոյն օրերի ներկայացուցիչները:

«Պապն եմ տեսնում ես պարտքը սրբազան
Մերժած ամէն օր գործով անարժան·
Հարուստը միշտ էլ չահել կարող է
Շնորհն իւր՝ ոսկով լի պտկով հողէ·
Այն ինչ աղքատին է մերժւում միշտ էլ
Իրաւունքն արդար, ասես, հին մթել:

«Գիշերը օրին խառնած անդադար
Ձգնում է գանձել ոսկի անարդար·
Բռնադատում է Հօտը Քրիստոսի
Լինել հնազանդ, կոյր, խուլ, անխօսի,
Որպէսզի ինքը պճնուի հուռ–դիպակ
Հանդերձով ոսկի ամէն ժամանակ:

«Վաճառորդ անարդ են ոսկով–գլխով
Բոլոր իւր գործի վարողներն Բախտով:
Մի ոսկու համար աթոռն երէցի
Տախել կարող են մորուքով էծի·
Կամ թէ վանահօր գահը՝ Սէր, Ցարգի
Եպիսկոպոսի խոյրը՝ անարգի:

«Ուղարկում է մեզ հտպիտ ու միմոս,
Որ մեզ ծախել են ճգնում գիր, նոմոս
Մեղքի քաւութեան,
Խղճի թողութեան·
Եւ խեղկատակներ, որ գիր ու նամակ
Տալով՝ Աստուծոյ մօտ են միշտ արագ
Ուղարկում անհոգ՝
Հոգին բաղմահոգ:

«Մեղքերն են քաւում տան ճիւ ու հաւի
Խրճթի, պալատի՝ մեղքեր վատ դաւի.
Գրեր թողութեան արժանի միայն
Շընորհողների մեղքերի խոր, լայն,
Հոգալով, որ շուտ քսակն մեր ոսկու
Թեթեւ գայ, քան քաշն մեղաւոր հոգու։

«Նոյն բանն է անում եւ Ծիրանաւորն
Ամէնքից յարգուած՝ գիշեր ու ողջ օրն.
Ժամանակն իրենց անցնում են անարգ
Ծըրագիրներով, թէ որի՞ն արագ
Լարեն որոգայթ, նոյն իսկ ընկերոջ
Կամ թէ օտարին՝ խաբկանքի որոջ։

«Այնպէս որ եթէ կարօտ ես բանի,
Կարեւոր խնդիր՝ տըգէտ անբանի,
Գըլխարկի կարմիր, մատանու, խոյրի,—
Գընել կարող ես բոլորն կոյր-կոյրի
Գընով քո ոսկու, որ աչքին նոցա
Գին չունի շատ մեծ՝ բայց իբրեւ ընծայ։

«Թող միտքդ, խիղճդ չը տանջուի երբեք
Թէ դու տգէտ ես, կաղ, կուզ, միջաբէկ,
Որին չէ երբեք Քրիստոսի Ծառայ
Արտօնուած լինել,— միայն անխնայ
Տուրքդ տուր ոսկու. եղիր բայց զգոյշ,
Ժլատին արգիլուած է խորտիկն անոյշ։

«Եպիսկոպոսներն մեր մխուած են նոյն
Մեղքի տղմի մէջ՝ մեծերի հանգոյն.
Որովհետեւ սուր զինուած մկրատով
Օր—գիշեր միտք են անում, թէ շուտով
Խուզեն ձեռքն ընկած քահանան հարուստ,
Որ ունի շըքեղ կեանք, հաճոյք, ապրուստ։

«Ոսկին առատբուռն նոցա մեծ կնիքն
Դընել կարող է տալ մեծ, ճապաղ, լիքն
Գըրածի ճիշդ տակն, ինչ խնդիր ու հարց
Լինի գրածի մէջ՝ վճիռ անդարձ
Դարձնել ամենից գործը անարդար,
Առաջ թէ ինքը գրուածքը կարդար։

«Աստուած է կարող վերջ տալ գործին լոկ
Վատ արարքների խիղճ, մտքի անհոգ·
Երբ օր ցերեկով կէս բուռ դենարի
Գընով է ծախում կարգը՝ տաւարի
Գըլխով խըմանի կամ միմոսի կուզ
Երեսն ածիլուած, մորուսով թէկուզ։

«Սխալ են տեսնում դատերն աշխարհի
Չի միմոսն իրեն կարծում է արհի,
Եւ դատաւորի բիրն անզօր իր դէմ,
Ցախուռն ստամբակն գործով իր դժխեմ
Ժանդախտ է սփռում, իսկ Եկեղեցին
Դարձնում որջ Չարի, մեր հոգին՝ անծին։

«Քահանաները, տիրացուքն անթիւ
Աստուած լոկ գիտէ, թէ ի՛նչ անհաշիւ
Դուռ են չարիքի, զի ամէնօրեայ
Գործերը իրենց, ոչ մէկն, համարեա,
Համապատասխան չէ խօսքին խօսած
Սեղանից Տիրոջ՝ գլխով խոնարհած։

«Նորանից մէկն իսկ հաղիւ թէ լաւ է
Թուրքից, որ ամէն օր մեզ կը դաւէ·
Թէեւ հնար է, որ խելք եւ ուսում
Ստանան, հետն էլ Աստուծոյ ցուցում,
Ինչ որ ինձ համար մի լուծ է ծանըր
Եւ չեմ հետեւում խօսքին իր մանըր։

«Գիտուն, թէ անգէտ ամէնքն են հաւասար
Հակուած սրբազան գործը դարձնել չար·
Աղբիւր վաճառքի է ամէն մի ծէս,
Շահի վերածուած անպատիւ կրկէս,
Նոյն իսկ Պատարագն սրբազան, ահեղ
Առարկայ ծախու՝ անպատիւ, տգեղ։

«Եւ նոյն իսկ, երբ որ խղճմիտ ու համեստ
Խոստովանորդին՝ նոցա խօսքին հեստ
Չէ ուզում պարպել քըսակն իւր ոսկու,
Նոքա, իբրեւ թէ, տարուած իւր հոգու
Փրկութեան գործով՝ տուգանք տուգանքի
Վերայ են բարդում, խղճով անարգի։

«Խոստովանուհու սասծներն անմեղ
Դարձնում են անվերջ չարք մեղքի ահեղ․
Գինը փրկութեան՝ պարզ է,— զոհ անձի։
Պարկեշտութիւնը երբեք նախանձի
Չէ տուած առիթ նոցա գործի մէջ,
Մեղաւորն չունի ելք իսկ սրնամէջ։

«Վանականները, ճիշդ է, վանքերի
Եւ աբեղաներն հետներն անթերի
Խստութեան կեանք են վարում կանոնով,
Սակայն ցոյցք է այն՝ հաւակնանքի հով․
Հաճոյքի հարցում նոքա կրկնակի
Կեանք են վարում միշտ՝ դէմքով երկակի։

«Ինչպէս որ տանը իրենց հայրենի,
Երբ միշտ ունէին երգ, կին ու գինի,
Քողն երեսներին վեղարի երկար
Ծածկոյթ է միայն մեղքի ծանրատար․
Կեղծ ցուցադրութիւն՝ լուծը գրկանքի
Իսկ տակը՝ գիտենք,— հաճոյքն հեշտանքի։

«Ո՛չ մի կեանք նոցա կեանքին չէ նման
Մանաւանդ Ուզուոր Եղբօրը խըման,
Որոնց լայն փեշերն ծածկոյթ են հազար
Մեղքի ցոփ, չուայտ՝ գործած յարէյար,
Վանքերին օգնելն՝ համեստ պատրուակ,
Առածը զաղել՝ խղճի հակառակ։

«Եւ այս պատճառով Կարգերն այլազան
Խայծ են, որ մտնէ մէջն ամէն գազան,
Մարդիկ անպիտան՝ ագահ չահի վատ,
Առածն հաճոյքի վատնող անընդհատ,
Խաբեբաներ սուտ, որ կողոպուտի
Դուռն են համարում յոյզերն Հաւատի»:*)

§ 47․ Եւ շատ բնական է, որ այդպիսի դասը հոգեւոր անձերի, իրենց բոլոր խաւերով եւ կարգերով միայն դժգոհութիւն, ատելութիւն, արհամարհանք պիտի յարուցանէր իւր դէմ եւ տեղի տար հեգնող երգիծաբան տողերի ու տաղերի, ծանր քննադատութեան, արդար կշտամբանքի, երբեմն քիչ էլ խտացած սեւ գոյներով եւ կծու համեմանքով, երգիծանքով, չորի հետ՝ թացն էլ վառելով,— լինէր այն Արեւմուտքում, թէ Արեւելքում, իւր Տաղա—

*) Տես Henry C. Lea: A History of the Inquisition, in eight volumes, 1922, McMillan, New York, p. 54-5 եւն. Թարգմանութիւնը մեր կողմից։

սացների, Troubadour-ների բերանով, միշտ «Գանգատի» հանդերձանքով, ուղղուած «Ամենազօր Աստուծոյ» դէմ, իբրեւ «Բան Վիճման», «Իմաստուն Բարսեղ»ների կողմից կամ մի ուրիշի, որոնց համար, իբրեւ առարկայական դիտողներ՝ լուսաւոր ճրագի մարիլն ըստ ինքեան ցաւ էր, հանրային շահերի տեսակէտից:

Մենք դիտմամբ քիչ աւելի մանրամասն կանգ առինք Արեւմուտքի բարքերի եւ հանրային կարգերի անկման վերայ, ցոյց տալու համար, թէ «Բարսեղ ումեմն Իմաստուն»ի գրած եւ սխալմամբ Ֆրիկին վերագրուած «ԳԱՆԳԱՏ»ը արտակարգ երեւոյթ չէր, իբրեւ բացառիկ պարագաների, ընդգըծուած անկումի ցուցադրութիւն, որ տեսնել կարելի էր միայն Հայ երկնքի տակ եւ Հայ իրականութեան մէջ,— այլ որ այդ հանրային բարոյքի անկումն էր ամէն տեղ էր եւ շատ աւելի զօրեղ, սեւ գծերով, Արեւմուտքում, քաղաքակրթուած Արեւմուտքում,— ուր իրաւունք ունէինք յուսալու, թէ ապականութիւնն այնքան խոր արմատացած պիտի չը լինէր:

Բարսեղի «Գանգատ»ի տարողութիւնն աւելի խոր չէ, քան Արեւմուտքից առաջ բերուածը, բայց պատկերներն այլազան են, քանի որ նորա պաստառի վերայ երեւում են Ֆրանկն ու Ջհուդը, Քուրդն ու Թաթարը, Մուղալն ու Ջաղաթան, Վենետն ու Ճենեցին, Հոռոմն ու Յոյնը, Ռուսն ու Հոնը, Սպանացին ու Հագարացին, Քանանացին ու Ափխազը, Արաբն ու Ասորին, Տաճիկն ու Հայը, Մահմետականն ու Քրիստոնեան,— այսինքն Արեւելքի այն փոքրիկ մասի հայելին, որ Առաջաւոր Ասիան է, նոյն օրերի քաղաքակրթութեան, ոյժի, շահերի, մաքառումների, յոյսերի, փառասիրութեան, տենչանքների, կրքերի, յոյզերի, կեղծ սիրոյ, անվերջ խոստումների, դաւի, դրժանքի խառնարանը եւ ձուլարանը — Melting Pot.— եւ այդ բոլորի մէջ զարմանալի նուրբ, անցողակի դիտողութիւնների հարստութիւն, հակիրճ բառերով արտայայտուած, բնոյթի ու նկարագրի զօրեղ վրձինի շարժումներ, երբեմն չափազանց անխնայ սեւով եւ երբեմն բարեացակամ վարպետի ժըպտուն արեւշողի մարմրուն ցոլքով օժտուն՝ անկատար մնացած գծեր, ըստուերներ, լոյսեր, բայց միշտ էլ ճշգրիտ պատկերներ Միջավայրի ու Դարի:

§ 48. Արեւմուտքի բարքերի անկման նկարագրին շատ աւելի մօտ է Ֆրիկի մի այլ Տաղի որոշ մասերը: Տաղը կրում է «Ողբանք, որ յարեան այլազգիքն ի վերայ Քրիստոնէից եւ աւար հարին զտեղին սրբութեանցն, վասն անմիաբանութեանն Քրիստոնէից» վերնագիրը եւ որն սկսւում է այսպէս,—

«Որք որ լըսեն այս ողբերգս, թող ըզմեզաց սուգըն պահեն,
Բաներ ասեմ հաւանական, որ դան գիտունք ականջ դնեն..
(Զ. 1–2).

Եւ ապա կարճ նախաբանից յետոյ սկսւում է «մասանց բանին» այն պախարակելի կողմերի եւ արարքների, որ ունէին շուրջ գտնուած ազգերը, դասակարգերն ու անձերը,— յիշատակելով մի առ մի այսպէս,—

«Ֆրանգըն խեւ եւ անթապդիր ըզպոռընկե՛լըն մեղք չասեն,
Հռո՛մըն խիստ ամբարտաւան, Հայուն՝ Ֆռանգին չուն կու ասեն.
Մէկ որոգայթ մեղք այլ ունին, որ չէ՛ պատեհ, որ յետ ասեն։
ըԹուսն արե՛նխում մարդասպան, գիւրեան զաւակ՛ըն կը ծախեն.
Թէ Աւսն ասեմ կամ զՋերքազն, այլուիկ յըԹո՛ւսըն նման են։
Վրացին է գող եւ հարամիկ, գդատ, զիրա՛ւունքն չեն գիտեր,
ըզՂպտին ասեմ եւ զՅակոբիկն՝ մէկ բնութիւն կու դաւանեն.
Բայց սոքա ա՛յլ մեծ մեղք ունեն, որ սարկաւագ սուրբ չը պահեն։
Նեստորակա՛նքըն չարագործ եւ անարժան պատարագեն,
Ղուպն ու Հաբաշն ու Գրիգորիկն յայս աշխարհէս խիստ ի զատ են.
Հընդուն, Զանգիկն են խիստ անգութ, Մուղալն որդիս գիւրով անցնեն.
Ո՛չ նոքա չեն առանց մեղաց, զաւըրըն զիրար կու կոտորեն։
Հայք բամբասողք ու՞ յիշոցնատուք, որ ամենայն ազգ կու ատեն
Ամէն ատողք են միմեանց, բեատէ ւտարք զմեզ կոխեն։
Գեմ Քրիստոնեայք մեծ մեղուց են, որ հանց երկար դար կու քաղեն,
Թող Թապայ յոր ազգի մեղաց զեկեղեցիքըն հալածեն.
Գեմ վասն այնոր այս կու լինի, որ մէկ զմէկ խիստ կու ատեն»։
(Չ. 6–26).

*Ազգերի այս բնորոշ բնոյթագծերը տալով՝ Ֆրիկը միայն հայելին է եղած իւր ժամանակի հայեացքի, որով Արեւելքի խառնարանի մէջ ի մի ժողովուած ազգութիւններն իրար են բնորոշել, հակիրճ եւ սուր չափանիշների առանձնայատուկ գծերով, սեւ ներկի շաղախով, որը հասկնալի է նեղ ասպարէզի մէջ մրցման լծուած շահերի տեսանկիւնով դատելով։*

*Այնուհետեւ Ֆրիկը տալիս է իւր չուրջն եղած դասակարգերի բնոյթագծերը, առանց երկար ժամանակ տալու եւ չունչ հատցնելու, ինչ որ տեսանք Արեւմուտքի երգիչների տուածների մէջ,— այլ համառօտ, սուր ու բնորոշ եզրներով, նկարչի վրձնի ճշգրտող զօրեղ մի գծով եւ աչքի զարնող գոյնի մի հպումով, դիմագծերի ներքինն արտայայտելով, առանց մանրամասնութիւնների վերայ ժամանակ սպառելու, որով,—*

«Հայրապետք արծաթասէր եւ յաւրինաց խիստ ի զատ են,
զՔրիստոսի արեամբ գնածքս՝ եպիսկոպո՛սքըն կու ծախեն.
Թագաւո՛րքըն չը հաշտին, հետ միմեանց ոխ կու պահեն.
Հանապազ զաւր ժողովեն եւ զմիմեա՛նս ի սուր քաշեն։
Եպիսկոպոսքն ըսպառնալեաւք երթան ի ժամ եւ զըրուցեն.
Բարըկութեամբ միշտ լցեալ են, խորհին թէ զում փիլոն հանեն։
Բարձով նըստին ի ժամատան, յորում հրեշտա՛կքըն կու սարսեն,
Ապա նոքա վասն կաշառաց զմարդ խիլայեն եւ զնդանեն։
Երբ որ հովիւքն են մոլորած զցրուեալ հա՛ւտն ո՞նց ժողովեն։
Քահանայքն են նախանձոտ, զաւտար երէ՛ցըն կու ատեն,

Երբ առաջ գան ի վէրք կարդալ, զերդ զհրեշտա՛կըս բարբառեն․
Նոքա գիտեն կանոն–աւրէնք եւ սրբութեան իսկի տէր չեն։
Վանականք ու միակեցք եւ ճգնաւորք՝ կրաւնաւոր են,
Բայց սատանայ զնոսա պատրէ, որ շատ ի շուրջ գան՝ մոլորեն․
Սատանայ յայն կու խնդայ, որ Քրիստոնեա՛յքըն ոխ պահեն…
Ժողովուրդքս են շուն ու լիրբ՝ զքահանա՛յքդ յանդիմանեն․
Նենգիժոտ ա՛զգըն Հայոց հետ տասնումէկկին չը սազեն․
Են թերի եւ ծուլացած, իսկի չունին ողորմութիւն․
Ապիրատ ՚ւամբարտաւան ծունր ի գետի՛նըն չի դընեն։
Գեմ այնով գայլքն զաւրացան, զանմեղ զառի՛նքըն պատառեն,
Վասըն այնոր շուտ կորընչին, լոկ մէկ ըզմէկ զաւրն անիծեն…»։
(Զ․ 26–48)․

Սեւ գոյներով, մութ ստուերներով նկարած այս պատկերը, առանց լոյս եւ արեւշողի, յատուկ չէր միայն այն աշխարհին, ուր մեր Երգիչն էր ապրում։ Այլ դա բարոյքի անկման այն ընդհանուր շղարշն էր խաւար ու սեւ, որ պատել էր նոյն օրերի մարդկութեան ամբողջ շրջանները, սկսած Արեւմուտքից մինչեւ Արեւելք։ Եթէ համեմատելու ձանձրոյթն յանձն առնելու լինինք Արեւմտեան Գանգատաւորների թողած երգիծանքի վերն առաջ բերած տողերը Ֆրիկի այս համառօտ նկարագրի հետ, պիտի զարմանքով նշմարենք, որ իրարից այնքան հեռաւորութեամբ զատուած աշխարհների երգիչները նոյն բացասական բարոյքի գծերն են դրոշմում ամէն ներկայացուցչի ճակատին, մէկը ճառելով երկար եւ ցաւոտ հոգու խնամքով մանրամանր նկարելով, միւսը՝ մի բառով, գոյնի մի չեչտ հպումով, կարծես ցաւոտ տեսարանի մըղձաւանջից հնար եղածի չափով շուտ ազատուելու աճապարանքով տարուած։ Եւ անշուշտ մեր Երգչի հոգեւոր աչքերի տեսութեան առաջ, իւր գծած այդ պատկերը մի հակոտնեայ էր այն լուսաւոր, արեւշող պատկերի, որի մէջ էին հոգեւոր վերածնունդի ռահվիրաներ այն վանականները, որ ապրում էին Արեւելեան Հայաստանում՝ Զաքարեան սպասալարների հովանաւոր աննկուն ձեռքի տակ, որ սկիզբ էր առել ԺԳ․ դարի կէսերից, Արեւելեան Հայքի երկու նշանաւոր վանական կեդրոնների, Սանահինի եւ Հաղպատի մէջ եւ նոցա շուրջը բոլորած մեծ ու փոքր վանական մշակոյթի աղբիւր վանքերում, ինչպիսին էր ժամանակի մեծ մտաւոր մշակոյթի կեդրոն՝ Գլաձորի վանքը իւր «Համալսարան»ով, որ յիրաւի «Վանք, կեդրոն էր Բանասիրաց» էր, ԺԳ․ դարի Հայ Կեանքի վերածնունդի լոյսի եւ մտքի օրրանը ծաղկած, իւր մի խումբ՝ գիտութեան աշակերտ վարդապետներով, ժամանակի պատուաբեր «մեծ դըպրատան» ուսուցիչ Նչեցի Եսայի վարդապետի առաջնորդութեամբ, որի «Երկրորդ Աթէնք պանծալի» դպրոցի աշակերտներն են եւ Դաւթի Հոգեւոր զաւակներ, Տարօնեցին Ներսէս, Կեչառեցին Խաչատուր, Երզնկացին Յովհաննէս կամ Ծործորեցին, Կիրակոսը Համշիրակ, Սիւնեցին Ստեփանոս, Գետկեցին Դաւիթ, Որոտնեցին Յովհան, որ Սիւնեաց «Դպրոց»ի հիմնադիրն եղաւ իւր

նշանաւոր յաջորդի՝ Տաթեւացի Գրիգորի հետ, եւ այլք, որոնցից իւրաքանչիւրը պատուոյ անուն է Հայ Եկեղեցու եւ իւր ժողովրդի,— եւ որոնց ծանօթ էր, անկասկած նաեւ մեր Երգիչն, իբրեւ Արեւելեան Հայաստանից եկած զաւակ։ (Համմտ. Գարեգին Արքեպիսկոպոս Յովսէփեանի «Խաղբակեանք Կամ Պռօշեանք Հայոց Պատմութեան մէջ», Ա. Բ. Գ. հտ. տուիքները, ԺԳ. տարի Հայ մշակոյթի պատմութեան մասին, մանրամասնութիւններն այն տեղ որոնելով)։

* * *

§ 49. Ֆրիկի Տաղարանի մեր կազմած բնագրի մէջ Տաղ. Ի.րդը, որ կրում է «Նորին Ֆրկանն ասացեալ» վերնագիրը եւ Տաղ «Խրատ» խորագիրն ունի, սկսւում է,—

«Եկայք ի բաց թողունք զայս խաբող կեանքս, որ չի խաբինք.
Երթանք զայն տեղիքն ուզենք, որ ունինք ումէտ, թէ ապրինք...»
(Ի. 1–2).

եւ վերջանում է,—

Ապա թէ չաւգտիս յիւրմէս, նայ, հաշուէ թէ ինքն է քամիք,
Ցիմար ու յանգէտն ի մաստ՝ սա չարժէ ափով մի թըրիք»։
(Ի. 62, 63).

Այս երկտողին անմիջապէս հետեւում է հետեւեալ քառեակը, Պարսկերէն,—

Ցարմուտ պախի էշխի ջուզն է քուրա նա՛քուշանդ.
Լաշար սիֆաթան ու ճիշտ խուրա նա՛ քուշանդ.
Գարաշիշ խաղեղի գի քուշտան
Մագրէզ. մուրդ. արպուաթ հանրանչի վա՛ իրա նա՛ քուշանդ։
(Ի. 64–67).

Օքսֆորդի Բոդլէեան Գրատան Ձեռագիրը (MS. Arm. F. 16, Bodl. Lib. fol. 119a-122a) միայն ունի այս քառեակը եւ տրուած է, իբրեւ անմիջական շարունակութիւն վերի տողերի, առանց բացատրութեան, թարգմանութեան եւ նկատողութեան։ Միայն ՁՌ–ի լուսանցքի մէջ «Պարսիկ Է» նկատողութիւնը կայ, մի ծանօթութիւն, որ անշուշտ հեղինակինը չէ, այլ արտագրող գրչի։

Անձամբ Պարսկերէն չիմանալով, յաճախ դիմած ենք Պարսիկ բանասէրների՝ նոցա օժանդակութիւնը խնդրելով, որ թարգմանեն քառեակը եւ, եթէ հնարաւոր է, ցոյց տան թէ ո՞ր հեղինակից է առնուած քառեակը։ Միշտ էլ ստացած պատասխանն է եղած, թէ «բնագիրը խաթարուած է» կամ «եթէ գրուածքը Պարսիկ գրով լինէր, թերեւս աւելի դիւրին պիտի լինէր իմաստը վերականգնել եւ տալ թարգմանութիւնը»։

Նիւ Եորքի յարգի բարեկամներիցս Պր. Միհրդատ Ց. Թիրեաքեան՝ Պարսիկ լեզուին ու գրականութեան հմուտ բանասէր, օգնութեան եկաւ այս խնդրի լուծման մէջ։ Բարեկամս յայտնում է, թէ «Ֆրիկի յիշած Պարսկերէն

քառեակը, բացի սկզբի երեք բառերէն, որոնցմէ չկրցայ իմաստ հանել, հետեւեալ կերպով պէտք է վերականգնել, ըստ իս,—

«................ Ջուզ նէքուրա նա՛քուշանդ,
Լաղար սիֆատան ու գիշտ խուրա նա՛քուշանդ.
Գյար աշիշի սաղեղի գի քուշտան ժագրիզ,
Մուրդար պուսադ հար անչի վախրա նա՛քուշանդ»:

Եւ այդ քառեակի իւր թարգմանութիւնն է տալիս՝ այսպէս,—

«................. լաւէն ի զատ մէկը չեն սպաներ.
Նկարագրէ զուրկ եւ անզգամ մարդը չեն սպաներ
Թէ որ անկեղծ սիրահար ես սպանուելէ մի փախչիր,
Գիղծ կը լինի այն (դիակը), որ չէ սպանուած»:

Թէ ո՞ր տեղից է առած Ֆրիկն այդ քառեակն իբրեւ կոչում, ո՞վ է քառեակի հեղինակը, ո՞ր դարի կամ ո՞ր շրջանի, արդեօք ակնյայտնի Պարսիկ բանաստեղծների՞ց կամ Պարսիկ աւանդավէպ-պատմուածների՞ց,— այդ հարցը մնում է անլոյծ, որովհետեւ բանասէր բարեկամս յայտնում է, թէ «Ո՛վ է քառեակիս հեղինակը, կը ցաւիմ որ ինձ յայտնի չէ»:

§50. Շնորհակալութիւն յայտնելով մեր հմուտ բանասէր բարեկամին իր բերած օժանդակութեան համար, այնու ամենայնիւ քառեակի հեղինակի էական հարցը մնում է անլոյծ, որ կարեւոր է ուսումնասիրութեանս համար: Անցնենք այդ քառեակի՝ Ֆրիկի տաղերի մէջ ի մուտ գտնելու հարցին:

Եթէ քառեակը աւելի յետին դարերի Գրչի արդիւնք է, քան այն դարի ու շրջանի, որի մէջ էր ապրում Ֆրիկը, այն ժամանակ կարեւոր մի խնդիր չէ այդ քառեակի յեռումը Ֆրիկի Տաղերի մէջ, որովհետեւ արտագրող գրիչներից մէկի,— Ֆրիկի դարից շատ աւելի յետոյ եկող դարերից մէկի մէջ ապրող մի գրչի,— քմածին յաւելումը համարելով այն՝ անուշադիր պիտի անցնէինք այդ քառեակի մօտից:

Խնդիրը բոլորովին փոխւում է, եթէ ենթադրենք, որ այդ յեռումը կատարուած է նոյն ինքն՝ Ֆրիկի ձեռքով, իրենից առաջ ապրող եւ կամ իւր ժամանակակից յայտնի մի բանաստեղծից առնելով այն եւ իբրեւ իւր մտքի ու զգացումների ներդաշնակ արտայայտիչ կոչում՝ դնէր իր տաղի վերջը:

Մենք հակուած ենք այս վերջին տեսութեան:

Այն պարագան, որ այդ քառեակի յեռումը իւր Տաղին՝ կատարուած է առանց թարգմանութիւնը դնելու կամ առանց որ եւ է նկատողութեան, ինքնին իսկ ապացոյց է, թէ այդպիսի յեռում այնքան բնական էր եւ այնքան դիւրըմբռնելի իւր ունկնդիրների, ընթերցողների համար, որ աւելորդ աշխատութիւն պիտի լինէր եւ համարուէր այդ թարգմանութիւնը դնել ընթերցողի կամ լսողի համար, քանի որ միջավայրին ա՛յդ լեզուն այնքան ծանօթ էր եւ ընտանի, որքան կոչումն առաջ բերող բանաստեղծի համար: Այդ միեւ-

նոյնը պիտի լինէր, եթէ պահանջուէր, որ Անգլիա ապրող Հայի համար Շէքսպիրից կամ Թենիսընից առաջ բերուած մի կոչում թարգմանուէր կամ Ռուսաստանի մէջ ապրողի համար՝ Պուշկինի, Լերմոնտովի մի այլ կոչումը յեղուէր Հայերէնի կամ Պարսկաստան ապրող Հայի համար Ֆիրդուսիի կամ Հաֆիզի ու Սաադիի մի քառեակը թարգմանուէր, ինչպէս եւ Ֆրանսայի մէջ ապրողի համար՝ Հիւգոյի կամ Ռոստանի մի քառեակը, կամ Գերմանիայում ապրող Հայի համար՝ Գէօթէի կամ Շիլլերի կամ Վիլանդի մի կոչումը:

Այդ քառեակը միայն մի ՁՌ–ի մէջ գտնուելու պարագան եւս ապացոյց է սոյն ենթադրութեան: Ֆրիկի ապրած օրերին կամ նորանից յետոյ եկող մօտաւոր դարերի շրջանին, ամենայն հաւանականութեամբ, այդ քառեակը գտնւում էր Ֆրիկի բոլոր Տաղարանների մէջ՝ առանց աղաւաղուելու եւ անխաթար: Շրջանը փոխուեց, փոխուեց նաեւ ունկնդիրների եւ ընթերցողների կազմը, յիշուած քառեակը եւ իւր լեզուն դարձան օտար եւ անհասկանալի եւ արտագրող Գրիչը, որովհետեւ իւր արտագրած քառեակի լեզուին անծանօթ էր կամ իսպառ հրաժարուեց արտագրել անհասկանալի տողերը եւ կամ անգիտակցական հարկը տալով եղածը սրբութեամբ եւ հաւատարմութեամբ արտագրելու սրբազան պարտականութեան՝ արտագրեց այն աղաւաղելով եւ պարտք համարելով լուսանցքի մէջ յաւելում դնելով «Պարսիկ է» նկատողութեան, որ «անմեղադիր» լինին իւր սխալանքին:

Երախտագիտութեան պարտք ունինք Բոդլէեան Գրատան մէջ գտնուած միակ Հայ ՁՌ–ի արտագրող Գրչի հանդէպ, որ խղճմտութիւնը կամ քմահաճոյքն ունեցած է այդ քառեակը պահելու, առանց հասկանալու իսկ քառեակի լեզուն, (որովհետեւ եթէ հասկանար, այդքան խաթարումով պիտի չը տար):

§ 51· Պարսկերէն այդ քառեակի յեռումը Ֆրիկին Տաղին՝ մեզ պարզ ու առանց վարանման պատմում է թէ,—

ա) Ֆրիկի ապրած շրջանի ընթացքին Հայ ժողովուրդին ընտանի էր Պարսիկ լեզուին, սիրում էր լսել այդ լեզուով արտասանած կամ երգած դիւցազներգակ պատմուածներ եւ բանաստեղծական գրաւիչ կտորներ·

բ) Հայ աշուղը,— առողջ — տարածողն էր այդ գեղահնչիւն, գրաւիչ, ոգի ներշնչող աւանդավէպերի, հէքիաթ ու սիրերգների, որոնք լսւում էին ունկնդիրների կողմից սիրով եւ, թերեւս, նոյնքան դիւրութեամբ, որքան Հայ լեզուով պատմածները եւ

գ) Ֆրիկին ծանօթ էր Պարսիկ գրականութիւնը, եթէ ոչ լայնօրէն, գոնէ լաւագոյնների նմոյշներով եւ որ Պարսիկ լեզուն ընտանի էր նորան:

Պէտք է ենթադրել, որ Ֆրիկի ընտանի լինելը Պարսիկ լեզուին ու գրականութեան՝ արտասովոր մի երեւոյթ չէր, եթէ նկատի ունենանք այն պարագան, որ Միջնադարեան մեր մտքի մշակոյթով տարուած անձերը, մեծ մասով հոգեւորականներ, ոչ միայն ծանօթ էին Պարսիկ լեզուին եւ գրականութեան, ոչ միայն հետաքրքրւում էին այդ գրականութեան լաւագոյն արտադրութեան

նմոյշներով, մինչ այն աստիճան, որ քաջատեղեակ քառեակների հեշտալուր եւ դաշն չափին, հետեւում էին այդ չափին իսկ յաճախ պահելու իրենց երկերի մէջ, (ինչպէս մեր Երգիչը, համա. Գլ. Դ. 4, Բ., Ե.) — այլ եւ մի տեսակ գիտակցական միջնորդներ էին՝ պատուաստելու իրենց օրերի օտար գեղեցիկ-դպրութեան լաւագոյն արտադրութիւններն իրենց սեփական ժողովրդին, արծարծելով նոցա մէջ սէր դէպի գեղեցիկը, անցեալի լաւագոյն յուշեր դիւ-ցազնավէպերը, հովուերգակ սիրավէպերը, քնարերգակ գեղոնները: Եւ թէ մեր հոգեւոր դասը գիտակից կերպով տարուած էր այդ մշակոյթի պատուաստումով իւր ժողովրդի մտքին, հոգուն ու սրտին, դորա ակնյայտնի օրինակն ունինք մեր Միջնադարեան երգիչներից մէկի, Կոստանդին Երզնկացու օրինակով, որը տարուած՝ գեղեցիկը պատուաստելու եւ հայրենի մշակոյթի դըրական ածուն ճոխացնելու հոգերով, գրում է մի ոտանաւոր Շահ-Նամէի չափով, որպէսզի երգուի կամ արտասանուի: Իբրեւ բացատրութիւն՝ Երգիչը կցել է իւր գրած ոտանաւորին մի ծանօթութիւն, թէ «Այր մի կայր, որ Շահ-Նամայ ասէր ձայնով: Հայ եղբայրք խնդրեցին, թէ ի Շահ-Նամայի ձայն մեզ ոտանաւոր ասայ. ես չինեցի զբանս զայս: Ի Շահ-Նամայի ձայն կարդացէք»: (Կոստանդին Երզնկացի. ԺԳ. դարու ժողովրդական բանաստեղծ եւ իւր քերթուածները. Հրատարակեց Հ. Մ. Պոտուրեան, Վենետիկ, 1905, էջ 128):

Պարզ է, որ Շահ-Նամէի դիւցազներգակ բանաստեղծութիւնը եւ նորա հերոսական բովանդակութիւնը մօտ էր Հայ ժողովրդի սրտին եւ, եթէ բուն ժողովուրդն անկարող էր կարդալ այն կամ բարձրաձայն երգելով արտասանել, սակայն, սիրում էր որ մի ուրիշը՝ աշուղը ասէր*) այն ձայնով, արտասանէր իբրեւ ասերգ — recitative: Եւ այդ աշուղին ժողովուրդն ընդունում էր սիրով, մեծ թէ փոքր, առանց սեռի խտրութեան նորա շուրջն էին բոլորում եւ լռիկ ու հոգեզմայլ լսում նորան, «նորա շրթներից կախւում», ինչպէս ժողովուրդն է ասում պատկերաւոր խօսքով, գերի դարձած, սրտատրոփ սպասելով հերոսամարտի գուպարի ելքին, հովուերգութեան սիրային երջանիկ վախճանին: Ռուստամն ու Զալը նոցա համար նոյնքան գրաւիչ էին ու ընտանի, որքան առինքնող երազ Մէջնունն ու Լէյլին կամ Բիժէն եւ Մինիժէն եւ կամ վիպապատում սիրերգ ապրումների Խոսրով ու Շիրինը, Շահ Սանամը, Ֆերհատն ու Շիրինը:

*) Ասել ձայնով չէ նշանակում միայն կարդալ = читать, lire, to read, այլ նաեւ երգել, ինչպէս ցոյց է տալիս Երզնկացու ծանօթութիւնն եւս,— «Ի Շահ-Նամայի ձայն կարդացէք «Ի Շահ-Նամայ Ձայն... ասա», «Շահ-Նամայ ասէր ձայնով» (Հ. Մ. Պոտուրեան. Կ. Երզնկ. էջ 128) «Շահ-Նամայի եղանակով երգեցէք»: Նոյնն է օգմազ, որ նշանակում է եւ կարդալ, եւ երգել: Էջմիածնի վանականները ժամում կարդում էին, այսինքն երգում. «ժամումը լաւ կարդում ա» = գեղեցիկ, քաղցրաձայն երգիչ է.— « «Կաքաւը տաւօտներն ա կարդում», նշանակում է երգում է:

§ 52. Վերն այն տեսակէտն էինք պաշտպանած, թէ Ծրիկը պիտի լինէր Արեւելեան Հայաստանից,— զուգէ այն երկրամասից, որ այսօր Ղարաբաղ անունն է կրում, հների Արցախը:

Աւելի վերը (Գլ. Ա. 22) տեսանք, Հ. Ալիշանի հաւաքած տեղեկութիւնից, որ Ծրիկը էր «որդի Թագվօշին, եղբօրորդի Գոգոնային», երգեր է ասել «ի վերայ իւր մեղացն, որ ի վանս բանասիրաց» եւ եղած է «սիրող վանեբուն». (Ա. 37, 38, 39). «Սիրող վանէրուն» մակդիրը, մի որոշակի յատկանիշ, անհատական գոյն ու կնիք չէ, որով հնար լինէր նորա ո՞ր տեղացի լինելը որոշելու համար: Սակայն միւս եզրը, որ նա երգել է «ի վանս բանասիրաց», որոշ ու դրական մի ցուցում է, որով կարծում ենք՝ հնարաւորութիւն ունինք կռահելու նորա հայրենիքը:

Հ. Ալիշանը, իւր սովորութեան համաձայն, չէ՛ մատնանշում այն աղբիւրը թէ ո՞ր տեղից է քաղել այնքան կարեւոր այս տեղեկութիւնը, որպէսզի ապագայ հետախոյզ-բանասէրի համար հնարաւորութեան դուռ բացուէր եւ դիւրանար «Բանասիրաց վանքը» որոնելու ուղին: Սակայն Պատմութիւնը տալիս է մեզ այդ անունը կրող մի վանքի անուն, ուր պիտի դիմենք այժմ:

«Բանասիրաց վանք» անունն էր կրում Վայոց Ձորի մէջ ապաստանած Մեծ Հայքի գիտութեան եւ ուսման կեդրոն, կրօնական կրթութեան մեծագոյն Դպրոցը ԺԳ.—ԺԴ. դարերի, Աղբերց Վանքը կամ Գայլեձորի «Համալսարանը»*), ինչպէս յայտնի էր ժամանակակիցներին, իւր եզական հռչակ ու համբաւով եւ իրական արժէքով եւ ազդեցութեամբ: Գայլեձորի Վանքը կամ Գլաձորի մենաստանը գտնւում էր Սրկղունք կամ ըստ հնագոյն անուան Սարկողովք**) գիւղի (=այժմեան Բաշ-Քենդը Դարալագեազի) արեւելեան կողմը, այժմ աւերակ, ոչ հեռու Բոլորաբերդից***):

Գլաձորի Ս. Ստեփանոս վանքը Խաղբակեան-Պռօշեան ազնուական-տիրապետ Տան իշխանների հովանաւորութիւնն էր վայելում եւ նոցա առատաձեռն օժանդակութեամբ էր իւր դիրքն ու մեծ ազդեցութիւնը ապահովում: Խաղբակեանները յիշատակւում են «Տէր եւ իշխեցող Ս. Մենաստանիս եւ տանս դպրոցական ժողովելոց», ուր Հայ մշակոյթի դաշտն էր հերկւում եւ սերման-

*) Հները Համալսարան բառը չէին հնչում մեզ պէս, այլ «Համալըսարան», այսինքն մի վայր ուր հնարաւոր էր լըսել համայն գիտութիւնների ամբողջականութիւնը իւր Եռեակ եւ Քառեակ բաժանումներովը = Trivium եւ Quadrium: Այսպէս էր հնչում ի Տէր Հանգուցեալ Մակար Ա. Կաթողիկոսը, որի առոգանութիւնը պահպանած էր դարերի ժառանգութիւնները, ուր շատ պարզ էր եւ որոշ Ե-ի եւ Է-ի, Օ-ի եւ Ո-ի տարբերութիւնը, ինչպէս այսօրուայ զուտ Մշեցու բերանում, Օր. Բժ. Արմ. Ալիխանեան, որի Ե եւ Է, Օ եւ Ո հնար չէ որ իրար հետ շփոթուէին:

**) Ստեփ. Օրբէլեան — Պատմ. տես էջ 263, Փարիզ, 1859:

***) Գարեգին Արքեպս. Յովսէփեան — «Խաղբակեանք կամ Պռօշեանք Հայոց Պատմութեան մէջ». Պատմա-Հնագիտական Ուսումնասիրութիւն. Մասն Ա. Վաղարշպ. 1928, էջ 39-40:

ւում լայն ու առատ ձեռքերով եւ արդասաւոր պտուղներ տալիս՝ Ներսէս Մշեցու, Եսայի Նչեցու եւ Դաւիթ Տարօնեցի վարդապետների,— «ուսուցչապետների» (ինչպէս ժամանակակիցներն են անուանում) անձանձրոյթ խնամքներով եւ ղեկավարութեամբ եւ Եկեղեցու կեանքի մէջ այնքան գործօն եւ ազդեցիկ դեր ունենում, մինչեւ ԺԴ. դարի կէսերը, համարեա*), երբ քաղաքական աննպաստ պայմանները խանգարում են****) վանքի անդորր մշակոյթի վիճակը եւ դպրոցական—գիտական կեանքին վերջ դնում:

Մի այսպիսի վայր, որ ամէն ուսումնասէր անձի ձգտման կենդրոնն էր եւ ուր ամէն կողմից էին դիմում աշակերտելու «Բանաստէրծներին», ինչպէս կոչում է Եսայի Նչեցու աշակերտներից Յունան Գրիչը**),— եւ անուանում վանական ուսուցչական կարգը եւ իր ուսուցչին — ուր հոգեկան կեանքի ապրումների մթնոլորտն էր տիրում, Ֆրիկի պէս «Սիրող Վաներուն» անձերի համար մի կատարեալ ապաստանարան կարող էր լինել, ամենալաւ հանդրուանը, ուր հնար պիտի ունենար մտքի ու սրտի ամէն բաւարարութիւն ստանալ եւ տրամադրութիւն գտնել՝ գրելու իւր «Ի Վերայ Մեղաց» Տաղերը, թիւը որոնց քիչ չէ իւր Դիւանի մէջ:

Ե՞րբ էր այդ միջավայրի մէջ ապաստան գտել մեր Երգիչը,— յայտնի չէ: Երիտասա՞րդ ժամանակ,— թերեւս: Հին օրերի հոգեկան տառապանքը, որ

«Ի մանկութենէ ի վեր գլխ ուսման խոցըն կու մաշէ»,

յաճախանքը, թերեւս երիտասարդութեան տարիքին մղիչն էր եղած՝ դիմելու դէպ «Ի Վանս Բանասիրաց», «Բանաստէրծների» չնչով շնչելու եւ նոցա ապրումներն ապրելու:

Սակայն միւս տեղեկութիւնը՝ թէ ինքը

«Ոչ ծառայել վարդապետաց, ոչ կարդացել օրէկ մի նայ»
է. 69–70,— Հմմտ. Գլ. Ա. § 29

հարկադրում է մեզ ենթադրել, որ հոգեկան այդ ծարաւի յագուրդը լրացընելու, այդ հակումը բաւարարելու պահանջը շատ աւելի յետոյ է տեղի ունե-

*) Նոյն, էջ 187, 199, 200, 202, 203, 206:

****) «Յարեաւ ամն անիծեալ Ղուռումչի, որ պատերազմեցաւ ընդ պարոն Ջալալին», որով երկիրը, եկեղեցիները, գրքերն ու սպասները կողոպտւում են եւ ծերեր, երեխաներ եւ ամէնքը «բնակութիւն աշխարհիս թողին, զինչս իւրեանց եւ ի ծերպս վիմաց ապաւինէին... ի յահէ անիծեալ Ղուռումչոյ... մինչեւ քաղցրացաւ Ած եւ առաքեաց զԲուսա(յ)իդ խանն եւ կոտորեաց զՂուռումչի եւ զաւրսն իւր եւ եղեւ խաղաղութիւն»... ի թվ. «ՉԿԹ եւ ՉԿԸ» (= 1319 — 20): Ձռ. Երեւ. Թանգարանի No. 88.— «Խաղբակեանք», 205:

**) «... ընդ որս եւ ես՝ յետինս ի յաշակերտաց բանասիրաց եւ կր(ա)սերս ի յընկերաց Յունան, գծող ապիկար, եկեալ առ ոտս մեծիս վարժապետաց եւ առաջինս յիմաստասիրաց Եսայի կոչեցեալ, որ յայսմ ժամանակի փայլէ իբրեւ զարեգակն, լուսաւորելով բանիւ իմաստից զազգս հայկազեան... ի թուին Հայոց ի չւեթն հարիւրերորդի ութսուներորդի եւ երրորդի (=1334 Թ. Փ.) ի ձորս վայրց ի յանապատիս մեծափառ Գայլէ ձոր կոչեցեալ... յիշխանութեան եւ տէրութեան համօրէն գաւառացս մեծ իշխանին Բուրթէլի եւ որդոց նորին Պէչգենի եւ Իւանէի»:— Գ. Արք. Յովսէփեան. «Խաղբակեանք», Ա., էջ 201:

ցած,— թերեւս Թաքարճնրի արշաւանքի տառապանքի օրերից յետոյ, երբ որդին որոնելու ջանքերն ապարդիւն էին անցած եւ իբրեւ հուսկ կայան՝ ապաստանել էր իւր հայրենի աշխարհի կրթական դպրոցի այդ մեծ կեդրոնը, իբրեւ տառապած հոգի, «Առաւօտ Խաղաղութեանն» իւր գտնելու եւ «Դէմ Քո լուսոյդ» ապրելու եւ կամ իւր մի այլ գեղեցիկ մաքի ու խօսքի պատկերաւոր համեմատութեամբ,—

«Զինչ գՁուկն յաղի Ծովէս քաղցըր Ջըրիդ ի դէմ կու գամ»․

որովհետեւ այժմ նա

«Ոչ ոսկոյ, ոչ արծաթոյ, ոչ աշխարհիս կու ցանկանամ»,

այլ տառապած հոգին անդորրելու յոյզի եւ տրամադրութեան զօրեղ հակումով էր տարուած։

Եւ ո՞ւր կարող էր գտնել ամենից աւելի այդ «քաղցր ջրերը», եթէ ոչ «ի Վաճս Բաճասիրաց» հռչակաւոր կենդրոնում՝ Գլաձորի «համալսարանի», «ուսուցչապետ» վարդապետների հմայող շրջանի մէջ։

Դժուար թէ մի օտար, ո՛չ Արեւելեան Հայքի զաւակ անձն, իւր քայլերն ուղղէր դէպի այդ միջավայրը։

§ 53․ Մի այլ կէտ եւս․

Հ․ Ղեւոնդ Ալիշանի տուած տեղեկութեան համաձայն՝ Ֆրիկը «էր որդի Թագվոշին»։

Այդ անուան մէջ մենք կամենում ենք տեսնել ոչ թէ հօր, այլ մօր անունը, առաջնորդուած հնչական տուեալից։ Ասենք նաեւ, որ Թագվոշ արական անուն՝ Ֆրիկի ապրած դարի այդ շրջանում յայտնի չէ մեզ*), իսկ Թագվոշ հընչիւնը յիշեցնում է մեզ Ղարաբաղի մէջ ընդհանրացած Թագուշ անունը, կըրճատուած ձեւը Թագուհի անուան։ Քաղքենի Թագուշ ձեւը գիւղերի մէջ ստացած է ռամկական Թագվուշ-ը, որ շատ հեռու չէ Թագուշ հնչիւնից եւ որը, թերեւս, ԺԳ․–ԺԴ․ դարերի հնչական մի ձեւն է այդ՝ պահպանուած Երգչի մօր անուան հետ։

Բայց ինչո՞ւ Ֆրիկը պէտք է յայտնի լինէր իւր մօր անունով եւ ոչ հօր։ Ըստ մեզ, բացատրութիւնը կարող է երկու լինել։ Կամ Ֆրիկի ընտանեկան յարկի տակ նորա մօր դերն ու ազդեցութիւնն աւելի մեծ է եղած եւ զգալի, որով եւ որդին իւրայինների, ինչպէս եւ այլոց, շրջանում յայտնի է եղած «Թագվուշի տղայ» անունով եւ կամ մեր Երգչի հայրը վախճանուած էր շատ

*) Եթէ չենթադրենք, թէ այդ անունը Պարսկաստանի ազդեցութեամբ մտած Tukush անունն է, ինչպէս կոչւում էր Ալփասլանի (Ծն. 1032/33, իշխ. 1063–1072) որդի նշանաւոր Մալիքշահի (1072–1092) եղբայրներից մէկը, կամ մի այլ Tukush Խուարազմի (=Խիւայի) Շահերի երկրորդ հարստութեան անդամներից մէկը (E. G. Brown: A Literary History of Persia, II, p. 167, 504) եւ որ այդ անուան հայ հնչիւնով դարձել էր Թագվոշ (որ դժուար ենթադրելի էր)։ Եւ եթէ այս ենթադրութիւնը կարող է ճշմարիտ լինել, դարձեալ հեռու չենք այն վարկածի ճշդութեան հնարաւորութիւնից, թէ Ֆրիկն արեւելեան Հայաստանից պիտի լինէր, այն է, Պարսկական ազդեցութեան մօտ շրջանից՝ Ղարաբաղից։

վաղուց, այն օրերին, երբ որդին դեռ եւս փոքր էր եւ տղան յայտնի էր եղած «Թագվուչի» տղայ կոչումով։ Այս վերջինը մեզ աւելի հաւանական է թւում, որովհետեւ ունինք նաեւ «Եղբօրորդի Դոդոնային» բացատրութիւնը եւս։ Տարօրինակ պիտի լինէր, որ մէկը յայտնի լինէր իւր հօրեղբօր ազգակցական կապով եւ կամ մօր անունով եւ ոչ թէ իւր հօր, եթէ այդ հայրը վաղուց մեռած չլինէր։

Այս վերջին պարագան եւս նկատելու արժանի կէտ է Ղարաբաղի բարքերի տեսակէտից, ուր հօրից զրկուած փոքրիկը կոչւում է կամ մօր անունով, օրինակ «Ագիւլին տղան» (= Վարդուհու զաւակը) եւ կամ հօրեղբօր անուան կապակցութեամբ։

Այս բոլոր կռահանքները դրական, անխախտ կռուաններ չեն Ֆրիկը Ղարաբաղցի դարձնելու անպատճառ։ Սակայն դոքա տարրերն են այն բազմաթիւ մանր, ըստ ինքեան աննշան համարուող պարագաների — circumstancial evidence-ի —, որոնք ի մի գումարելով՝ վարկածը հաւանականութեան է յանգում եւ համոզկեր լինելու չափ ընդունելի հիմք կազմում։

Գլաձորի «Բանասիրաց վանքը» հեռու չէր Ղարաբաղից եւ այդ երկու վայրերն իրարից բաժանող աշխարհագրական սահմանն այնքան նեղ է, որ դժուար չէ ենթադրել, թէ Ֆրիկն իւր հայրենիքից աւելի նախընտրելի է համարած այդ վայրը, իբրեւ հոգեկան ապրումների եւ կեանքի մի ուխտավայր, ապաւինած՝ կամ ժամանակաւորապէս եւ կամ յարատեւ իսկ, սպասելով իւր կեանքի վերջին օրերին, մինչեւ որ «Առաւօտ Խաղաղութեան»-ը ծագէր իւր համար։

§ 54. Լուծել դրական իմաստով անցեալի մթութեան քօղով պատած այս բոլոր հարցերը, հնարաւոր չէ։ Պարագայական տուեալների — circumstantial evidence — բազմաթիւ կէտերն են, որ ի մի բերած մեզ տանում են այդ ուղիով, ընդունելու այն հաւանական վարկածը եւ տեսակէտը, ուսումնասիրութեան ընթացքին, թէ Ֆրիկը պիտի լինէր Արեւելեան Հայաստանից, դուցէ եւ այն երկրամասից, որ այսօր Ղարաբաղ անունն է կրում։ Եւ եթէ հաւանական է մեր այդ վարկածը, իբրեւ տեսութիւն, ապա պէտք է ենթադրել, որ նա գիտէր Պարսկերէն, ծանօթ էր Պարսիկ գրականութեան, որովհետեւ Ղարաբաղն իւր աշխարհագրական դիրքով ընկնում էր ազդեցութեան այն գօտու մէջ, ուր Իրանի մշակոյթը, մանաւանդ գրական-բանաստեղծական մշակոյթը՝ ազդեցիկ էր, տիրապետող լինելու չափ։

Եթէ նոյն իսկ այդքան հեռու, մինչեւ Պարսկաստան իսկ չգնանք, Ֆրիկն ապրում էր մի շրջանում, այն է Արեւելքի վերարթնութեան դարերին, մանաւանդ Հայաստանում եւ նորա մօտաւոր դրացի Վրաստանի մօտաւոր վերապրումի շրջանին, ԺԲ.—ԺԳ. դարերին, երբ Հայաստանի մօտաւոր մի այլ վայր, այն է Շիրուանի շրջանը Պարսիկ գրականութեան աչքի ընկնող ծաղկած մի դար էր ապրում։ Շիրուանի Դպրոցի մի ականաւոր ներկայացուցիչ

էր Նիզամին, առաջինը՝ Ֆիրդուսուց յետոյ, Պարսիկ դիւցազներգակ-աւանդապատում Երգիչների մէջ, ապա նաեւ Խաքանին՝ Աբուլ-Ալան, Ֆալագին, Եխսիկետին եւ ուրիշներն, որոնց ազդեցութիւնն այնքան մեծ էր եղած մեր հարեւանների՝ Վրացի ժողովրդի բանաստեղծական գրականութեան վերայ՝ ԺԲ·–ԺԳ· դարերում: Այդ գրական ճաշակի ազդեցութեան մէջ առանձին դեր է ունեցած Վրաստանում՝ մանաւանդ Խաքանին: Վրաց Տարեգիրները նոյն իսկ յիշատակութիւնն են պահած Շիրվանի տիրապետի Թիֆլիս գալու, Նորա փառաւոր ընդունելութեան եւ ի պատիւ Նորա բանաստեղծների եւ երգիչների կազմած մրցութեան մասին:

Եւ եթէ Վրաց գրականութիւնն այդքան ազդուած էր Իրանի վիպապատումներից, անհնարին է, որ նոյն կեանքն ու կենցաղի պայմաններն ապրող Հայ ժողովրդի ծնունդ մեր Երգիչն անմասն մնար այդ հոգեկան մշակոյթի ազդեցութիւնից եւ անծանօթ լինէր ոչ միայն Ֆիրդուսու Արքայից Մատեանի դրուագներին, այլ եւ Նիզամիի Լէյլա եւ Մաջնունին կամ Խոսրով եւ Շիրինին, Ֆախր-ադ-Դինի Վիս եւ Ռամինին, Վամեք ու Ազրային (Անսուրի), Սալամանին եւայլն.— գրական եւ բանաստեղծական ժառանգութիւններ, որ ամէնքինն էին, արքայից մինչեւ չինականը, սկսած Իրանի խորքերից, մինչեւ Նորա մօտաւոր ազդեցութեան հեռաւոր շրջանները: Հետեւաբար զարմանալի չէ, որ Ֆրիկի տաղերից մէկի մէջ յեռուած ենք գտնում Պարսիկ բանաստեղծութեան մի կտոր (Տես վերը, Գլ· Գ· § 47):

Եւ եթէ, նոյն իսկ ենթադրենք, որ Ֆրիկն Արեւելեան Հայաստանից չէր, ապա Նորա Պարսկերէն գիտնալու պարագան կրկին կասկածի խնդիր պիտի չը յարուցանէ: Ասացինք, որ Միջնադարեան մեր հոգեւոր դասի ներկայացուցիչները հմուտ էին Պարսիկ լեզուին, ընտել Նորա գրական արժէքաւոր երկերին եւ հնչեղ ու թովիչ բանաստեղծութեան: Եւ Ֆրիկն եւս, իբրեւ «սիրող վաներու», այդ մթնոլորտի մէջ սնած, աճած, թրծուած, (ոչ փոքր տարիքի շրջանին, այլ հասակ առած ժամանակ),— հաւանականութեան սահմանից հեռացած պիտի չլինէինք, եթէ ասելու լինինք, թէ Նա Պարսիկ լեզուին ծանօթ էր եւ գիտէր այն: Եւ եթէ Կոստանդին Երզնկացին, որ Նորանից յետոյ էր ապրած, ԺԴ· դարում, գիտէր Պարսկերէն, չը նայած, որ Պարսկական մշակոյթի ազդեցութեան շրջանի գծից շատ աւելի հեռաւոր մի վայրի մէջ էր ապրում, ապա եւ ոչ մի հիմք ունինք ենթադրելու, որ Ֆրիկը զուրկ պիտի լինէր այդ ընդունակութիւնից:

Եւ եթէ ստոյգ է այս պարագան, ապա առաջ է գալիս, բնականօրէն, Նաեւ մի այլ հարց:

§ 55· Պարսիկ բանաստեղծութեան ծանօթ, Նորա դիւցազնական վիպապատումների հրաշալիքներին ընտել մի Երգիչ, անհնարին էր, որ այսպէս կամ այնպէս, ազդուած չը լինէր այդ մշակոյթից եւ այդ ազդեցութեան հետքերը չը կրէր իւր վերայ: Անմիջական ազդեցութեան հետքերն այժմ երեւան

բերել դժուար է մեզ համար, որովհետեւ համեմատութեան երկրորդ եզրին՝ Պարսկերէնին ծանօթ չենք: Հետեւաբար խնդիրը, իբրեւ զուտ գրական ազդեցութեան հարց, կը մնայ առ այժմ անլոյծ, մինչեւ Ֆրիկի Տաղերի ամբողջականութեան հրատարակուիլը եւ Պարսիկ բանաստեղծների հետ համեմատուիլը:

Թէ Ֆրիկն անպայման ծանօթ էր Ղարաբաղի սահմանակից Պարսիկ բանաստեղծների երկերին ու երգերին, թէ այդ երկերի ոգին նորա մէջ ապրող չունչ էր եւ ոգի, թէ այդ բանաստեղծութեան ազդեցութիւնը նորա վերա նոյնքան զօրեղ էր եղած, որքան Միջին Դարերի Պրովանսի Troubadour-ների երգերն ու տաղերը Իտալիայի վերածնունդի շրջանի մեծագոյն բանաստեղծների եւ հեղինակների վերայ (Տես Գլ. Դ. § 24–28), դորա մի փոքրիկ օրինակն ենք տեսնում նորա Տաղերից մէկի մէջ, ուր ասուած է,—

«Պուլպուլն ի թըփին նըստէ,
Ֆրէատու դատ կու կանչէ...».— (ԽԳ. 16, ԾՆԹ.)

ուր ոչ միայն Ֆրէատ բառն է Պարսկերէնի Ֆէրիադ = «բողոք, գանգատ» բառը, իբրեւ պարզ փոխառութիւն, այլ նոյն իսկ արտայայտութեան ձեւը — «Ֆէրիադ մի զէնեմ» պարսկերէն ասութեան ճիշդ թարգմանութիւնը՝ դատ եմ կանչում, ուր կրդիչը նոյն իսկ փոխելու, յարասութեան — paraphraser — դիմելու պէտք չէ զգացած, պարսկերէն ասացուածքը, ոճը թարգմանէր հայերէն, քանի որ առաջինը նոյնքան ընտանի էր իրեն, որքան վերջինը:

Ո՞վ կարող է երաշխաւորել, թէ Ֆրիկի հոգին չէր տարուած Սաադիի Գիւլիստանի եկրտողով կամ այդ mathnawi-ն (= couplet) կամ gita-ն (= կտոր, պատառիկ gasida-ի) այնքան ընտանի էր իւր հոգուն, որ նորա անբաժան սեփականութիւնն էր դարձած, երբ նա երգում էր իւր նշանաւոր

«Զիմ միտըս լողնորդ արի — ի ծովու յատակն իջուցի,
Վասն այն մարգարտին համար, որ ծովու յատակըն լինի.
ԻԴ. 55–56.

քանի որ Սաադիի տողերն եւս հեռու չեն նոյն մարգարիտը ձեռք բերելու համար յանդուգն որսորդ — լողնորդի գովքն անելուց,—

«Ղավվա՛ս գէր էնդիշէ
քո՛նադ քամ — ը — նըհանգ,
Հէր գէզ նէ քո՛նէդ
դուրրը գէրանմայէ՛ բէչանգ»:
(Գիւլիստան, Գլ. 3).

"Ghawwas gar andisha
kunad kam —i — nihang,
Hargiz na kunad
durri — i — giran maya bachang"
**(Gulistan, Ch. 3)*)**.

*) "At the ravening monster's jaw should the diver pause and gasp
He'd ne'er hold the precious pearl, the bright pearl in his grasp".

որի բառացի թարգմանութիւնն է, (ըստ Մ. Ց. Թիրեաքեանի).—

«Լուղորդը թէ որ վախենայ նհանգի երախէն
Երբէք ձեռք չի կարող բերել թանգագին մարգարիտը»:

Քանի՛ քանի՛ այսպիսի բանաստեղծական յարանման մտքերի, յոյզերի, խորհրդածութիւնների նմանութիւններ կան թաղնուած Ֆրիկի Դիւանի Տաղերի մէջ**), դժուար է ասել: Ապագան, ուսումնասիրութեան նոր թափն ու հետախոյզ պրպտողների մտքերն այդ ամէնը հրապարակ հանելու դժուարութիւնները պիտի չունենան:

Եթէ անմիջական ազդեցութեան հետքերն ու նմոյշները գտնելն ու առաջ բերելն առ այժմ դժուարին է, սակայն եւ այնպէս կայ այդ ազդեցութիւնը, որ ինքնին պարզ է եւ ակներեւ եւ դոքա են նոյն իսկ Ֆրիկի Տաղերի մէջ սպրդած ակնարկների սքօղուած հետքերը:

**) Ֆրիկի Դիւանի հետեւեալ տողերը

«Եղբայր, թէ դու շատ ուտես ու խըմես, նայ, շատ հառաչես,
Զասես, թէ դու մարդ ծնար. չիրաւի ի յէջ նըմանես».— Լ« 8-9.

յիշեցնում են Ֆիրդուսիի եւ Շահ-Մահմուդի մասին եղած պատմուածքը, ինչ որ ապացոյց է, թէ Ֆրիկը ծանօթ էր ո՛չ միայն Պարսիկ մեծ բանաստեղծի գործերին, այլ եւ նորա կեանքի մանր պարագաներին:

Պատմւում է, թէ Շահ-Մահմուդը չափազանց գոհ՝ իւր պալատական նոր Բանաստեղծից, գնահատել կամենալով նորա ձիրքն ու շնորհքի արդիւնք Շահ-Նամէի իր սրտին ու հոգուն խօսող կտորները, որ հետզհետէ Բանաստեղծը ներկայացնում էր իւր հովանաւորողին,— հրամայում է մի օր ճաշի հրաւիրել նորան, իբրեւ իւր սեղանակից: Ճաշի պահին, բացի այլ եւ այլ համադամներից, առատ ու ճոխ խորտիկներից, որոնց բոլորին Շահը իւր արքայական մեծարանքն էր մատուցանում առատօրէն ու անվերապահ, իսկ Ֆերդուսին գլուխն էր կորցրել, թէ այդ առատութեան սեղանից ո՞ր կտորն առնէր իւր համեստ ախորժակը յագեցնելու, սպասիկները բերում են մի մեծ, փուռը տուած ոչխար եւ դնում Շահի առաջ, հետոն էլ մի մեծ սինի փիլաւ: Իսկ Շահի դէմ առ դէմ նստած Ֆիրդուսու առաջ դնում մի փոքր գառն՝ կարմրացրած եւ մի ափսէ փիլաւ: Բանաստեղծը չուարուն նայում է ամբողջ գառան, տարակոյսի մէջ, թէ այդ բոլորն ի՞ւր համար էր: Բայց որովհետեւ միակ սեղանակիցն ինքն էր մեծ Արքայից-Արքայի, մի փոքր կտոր կտրելով գառնուկից սկսում է ուտել:

Շահը տարուած ամբողջովին իւր կորովի ոչխարի անհետացման գործով, մոռացած էր հիւրի ներկայութիւնը: Երբ ոչխարի ոսկրներն էին մնացած մաճմահու մէջ եւ սինու փիլաւն անհետացած, գլուխը բարձրացնում, տեսնում է, որ Ֆիրդուսիի գառնուկը, համարեա թէ անարատ մնացած է Բանաստեղծի առաջ, հրամայում է չվարանիլ եւ գառնուկն ու փիլաւը վերջացնել: Ֆիրդուսին խոնարհ ակնածանքով պատասխանում է, որ ինքն արդէն յագեցած է, չափազանց շատ ուտել արտօնելով իրեն: Շահը իւղոտ մատներով թաւ ընչացքը յարդարելով ծիծաղում է եւ ասում.—

— Այդքան կերածով ինչպէ՞ս պիտի ապրիս:

Ֆիրդուսին ակնածութեամբ պատասխանում է յանպատրաստից մի հնչեակով—

«Ով Ֆիրդուսու չափը տեսնէ կերածի,
Պիտի ասէ.— Սորա կըրողը ես եմ,
Ով Արքայիս տեսնէ չափը կերածի,
Պիտի ասէ.— Սորա կրող էշն ես եմ»:

§ 56․ Հնարաւոր չէ ենթադրել, որ Պարսիկ ստեղծագործութեան եւ գրական մշակոյթին ծանօթ մի անձն, այն եւս այնպիսին, «որին յԱստուծոյ տուած» էր (է․ 71), իւր ներքնաշխարհի մէջ չզգար, եթէ ոչ նմանն ստեղծագործելու նախանձաւոր ոգին, բայց գոնէ մօտաւորը տալու անզուսպ ձըգտումը չունենար։ Ամէն ոք, անշուշտ, Ֆիրդուսի չէ ծնւում, սակայն Ֆրիկներն ու Երզնկացիներն ու Քուչակներն եւս կարող էին տալ նմանը, սակայն հայեցի շնչով, զգացումով, ըմբռնումով եւ լեզուով։

Եւ այդ հայեցի շնչով յօրինուած, երգուած տաղերն ու երգերն էին, որ Միջնադարեան մեր երգիչների լեզուով, իբրեւ որոշիչ եզր, կոչւում էին հայերէն․ այսինքն բանաստեղծական կերտուածքներ, որոնց ոչ միայն լեզուն հայերէն էր, շունչը հայ հոգու արդիւնք, այլ եւ բովանդակութիւնը հայ կեանքից՝ անցեալի դիւցազներգութիւն (Դաւիթ եւ Մհեր, Սասմայ Ծռեր), աւանդապատում դարերի (Քաջաց Տուն), վիպերգութիւն–հովուերգութիւններ (Բեջան ու Մինիժէն եւ Սամուէլ Հովիկ), քնարերգութիւն ու սիրոյ տաղեր («Քուչակեան» կոչուած կազմ ու կերտուածքի տաղեր), Ակնայ մանիներ, այնքան ազդուած Պարսիկ գրական–բանաստեղծական աշխարհից, խրատական (Ֆրիկ, Երզնկացի, Սեբաստացի), հայրենի յոյզ եւ երազներ (Գր․ Աղթամարցի), սիրային երգ ու տաղեր (Յ․ Թլկուրանցի) եւ ապա շարքն այն սքանչելի ու աննման նրբութիւններով ու գունագեղ պէսպիսանքով յեռուն հիւսուածքի՝ Անտունիների, ուր հեռաւորի, օտարութիւն գնացած մերձաւորի մորմոքն է հրհրտկում կարօտի ու թաքնուած սիրոյ բոցերով, մորմոքով, յոյսերի ցօղերով եւ ապրումների նոր յոյզերով Տանը մնացածի հոգում՝ այդ բոլորն օծուն ցօղաշաղախ հայեցի մի նոր աշխարհի՝ աննման, հայադրոշմ ինքնուրոյնութեամբ։

Հետեւա՞նքը․— «Հայերէն բաներ» գրել։

«Հայերէն բաներ» գրելն արդիւնք էր նախ Երգչի սեփական ներքնաշխարհի պահանջքի։ Եւ երկրորդ՝ մի շարժում դէպի սեփականը, ազգայինը, ոչ նեղ ու ցաւոտ մոլուցքով տարուած, այլ սեփականն ունենալու եւ իւր իսկ յատուկ դրոշմով՝ լեզուով արտայայտելու անյագ տենչի մղումի, (ինչպէս՝ Քաջանց Տան պատմուածները, Սասմայ Ծռերը, մեր մէջ, Շոտա Ռուսթավելիի «Ընձենաւոր»ը, մեր հարեւան ժողովրդի, Վրացիների մէջ)։

Թէ ի՞նչ էր աղբիւրն այդ շարժման եւ մղիչը կեդրոնական՝ դժուար չէ կռահել։ Մի կողմից՝ օտար գրական երկերի գրաւիչ եւ գեղահնչիւն հերոսապաշտիկ բանաստեղծութեան նմանն ունենալու անյագ բաղձանքը, ինչպէս տեսանք վերը, Կոստանդին Երզնկացու պարագայի մէջ, երբ «Հայ եղբայրք խնդրեցին, թէ ի Շահ–Նամայի ձայն մեզ ոտանաւոր ասա» եւ Երզնկացին ընդառաջ գնաց այդ ջերմ ցանկութեան, որ հանրային էր, ազգայնական՝ նմանն ունենալու ի՛ւր իսկ լեզուով անյագ փափաքին։ Միւս կողմից այդ երեւոյթն արդիւնք է հակընթաց մի շարժման, մի նոր, սեփական, անդիմադրելի հոսանքի, որ միշտ էլ տեսնում ենք զօրեղ փոթորկալից, ամէն ինչ տակն ու

վրայ անող, խանդարող խռովանքից յետոյ, ինչպիսին էր Թաթարների արշաւանքը մեր աշխարհում եւ մեր կեանքի մէջ, երբ ապրում էր մեր Երգիչը, այնքան խռովք հոգով, վշտացած սրտով, դառնացած շրջապատի հարուածներից, անսփոփ եւ յուսակտուր ներքին աշխարհով: Այդպիսի մի հակադարձ հոսանք գտնել Ֆրիկի ներքին աշխարհում՝ դժուարին պիտի չը լինէր եւ այդ հակադարձ հոսանքի ժամանակ նորա հոգին ալեկոծող մտքերի եւ յոյզերի նաւակը հայրենի ափերին մօտենալու ցանկութիւնը ո՛չ անբնական, եւ ո՛չ էլ զարմանալի պիտի համարել:

Եւ այս նոր զգացումներն են, որ նորա մէջ առաջ են բերում «հայերէն բաներ» անելու ջերմ ու յախուռն ձգտումը: Երգիչն ինքն է տալիս մեզ իւր յոյզերի եւ ներքին ապրումների բանալին, ասելով,—

«Շատ մի հայերէն բաներ խորհրդով՝ դրախտ տընկեցի,
Ցաչիցս աղբերացն ջուր քաշեցի, զինչ որ սնուցի.
Զիմ լերդս զինչ ըզհաց կերայ, ա՛յ եղբարք, ինչուր բուսուցի,
Երկու լոյսն ի մի դարձաւ գիշերին՝ ինչուր հասուցի»:

(ԻԴ. 49–52).

Այդ «հայերէն բաները» նա գրել է «խորհրդով», այն է՝ գիտակցաբար, ներքին մղումով, իբրեւ պահանջ ներքին աշխարհի ապրումների եւ այդ գիտակցական յոյզ ու մտքերից նա «դրախտ է տընկել» մի այնպիսի միջավայրի մէջ, ուր, համարեա ամէն ինչ օտա՛ր էր իւր հոգուն՝ տիրապետողից սկըսած, մինչեւ իւր ականջին հնչող երգն ու տաղը, սիրերգն ու վիպական քերթուածը: «Դրախտ տնկելու» այդ նոր ձեռնարկը դիւրին գործ չէր, որն անվերջ խնամք էր պահանջում եւ սնունդ. իսկ այդ սնունդի համար Երգիչը իւր իսկ սեփական արցունքը չէ խնայում տալ: Նա պատրաստ է իւր սեփական մարմինն իսկ տալ,— ինչ որ արտայայտում է գեղեցիկ նմանութեամբ երգելով, թէ «զիմ լերդս զինչ ըզհաց կերայ»,— մինչեւ որ կարողանար իւր «խորհըրդով» տնկած դրախտը բուսուցանել, հասցնել: Եւ Երգչի այդ մի քանի տողերը (ԻԴ. 49–60) ոչ միայն նորա լաւագոյն տողերն են, այլ եւ բանալին նորա հոգեկան ապրումների: (Տես վերը Գլ. Գ. § 32–33):

Ֆրիկի «Դիւանի» վերջը դրած ենք՝ Յաւելուածների շարքում «Հայերէն» ընդհանուր վերնագրով Սիրոյ տաղեր: Սիրոյ տաղերի առաջին Երգիչը համարւում է մեր Միջնադարեան բանաստեղծների մէջ Նահապետ Քուչակը, որ մտած են «Նահապետ Քուչակի Դիւանի» այնքան ուշադրաւ հատընտիրքի մէջ, հրատարակուած Միջնադարեան Տաղասացների սիրահար, գնահատող, ըմբռնող ու հիացող Արշ. Չօպանեանի կողմից: Մեր Յաւելուածի՝ Դ.–ի մէջ առաջ բերած քառեակների մէջ եւ ոչ մի ակնարկ կայ, թէ դոքա Քուչակին չեն պատկանում, այն ինչ՝ այդ քառեակների մէջ կան մասեր (մտած Քուչակի «Դիւանի» մէջ) որ նորան չեն պատկանում: Տարօրինակ բախտով ու հաճութեամբ այդ քառեակները, ինչպէս եւ շատ ու շատ աւելի թուով արուեստի մարգարիտների շարքեր, վերագրուած են Ն. Քուչակին, իբրեւ հայ հան-

ճարի par excellence ներկայացուցիչ, սակայն առանց որ եւ է դրական ապացոյցի, սկսած Արիստակէս Վարդապետ Տեւկանցից։ (Ա. Չոպանեան «Յառաջաբան Քննակ. Ուսումնասիրութեան», էջ 115–116)։ Մեր խոր համոզումով Քուչակին վերագրուած այդ քառեակները նորանը չեն, այլ մեր Երգչին՝ Ֆրիկին։ Թեթեւակի մի համեմատութիւն իսկ բաւական է մեր քննական մտքի աչքերը բանալու։ «Դիւանի»ս բնագրի ԽԳ. 23–26 համապատասխանում են Յաւելուածի Ե. 10–13-ին,— ԽԳ. 43–46 — Ե. 14–17,— ԽԳ. 31–36 =Յաւել. Դ. 30–45, եւայլն։ Եւ այս բոլորի հետ մեր Յաւելուածի քառեակները գտնւում են Քուչակի Դիւանի մէջ, անվերապահ վերագրուած Քուչակի հանճարին։ Յայտնի է, որ Քուչակը ապրում էր շատ աւելի ուշ քան Ֆրիկը։ Եւ եթէ Ֆրիկի տաղերի մէջ տեսնում ենք նոյն եւ այլ բազմաթիւ քառեակներ, համարեա նոյն բառերով, կազմածով, յանգերով, բնական եզրակացութիւնն է, թէ Ֆրիկը չէ, որ փոխ է առել այն բոլորը Քուչակից։ Այլ... Քուչակն է, որ իբրեւ Աշուղ՝ երգել է Ֆրիկի տաղերը եւ ոչ յօրինել։ Եւ որովհետեւ երգել է, ուստի եւ այդ բոլոր գոհարների չար քառեակների յօրինելու պատիւը վերագրուած է՛ւ հների(?) է՛ւ նորերիս կողմից, (առանց ստուգելու) Քուչակին, իբրեւ սիրոյ Երգչի, քանի որ Ֆրիկը «Սիրոյ Երգիչ» չէր։ Գիտե՞նք։

Կոստանդին Երզնկացու մասին եւս երկար ժամանակ այն համոզումն էր տիրում, թէ միայն վարդապետական, խրատական քերթուածների բանաստեղծ էր։ Բայց, յետոյ երեւան եկաւ, որ այդ խրատաբան–վարդապետին եւս «ոմանք խնդրեցին... որ սիրոյ երգեր գրէ»։

«Եղբարք մի կան հետ մեզ սիրով,
Աշխարհի բան ուզեն գըրով.
Նայ, ես վասն այն յայտնի ձայնով,
Սիրու բաներս ասցի յոլով. (ԻԵ. 13, էջ 171).

(Հ. Մկրտ. Պոտուրեան, «Կոստ. Երզնկացի», էջ 184 եւն.)։ Եւ այսօր ունինք Երզնկացու «Սիրոյ Երգերի» նմուշները, շատերը տակաւին թագուն ու անյայտ։

Տեսանք որ «Հայերէն» երգելու, ասելու, յօրինելու, պարտադրելու առաքինութիւնը պատկանում է Ֆրիկին։ Եւ շատ ու շատ հայերէն խորագրի տակ եւ ուրիշների անուան վերագրուած քառեակների մէջ հայերէն երգելու առաջին Երգչի շունչն ու հանճարի հետքերը պիտի որոնենք, մինչեւ որ Ֆրիկի Տաղերի ամբողջական, լիակատար ժողովածուն ունենանք։

Իսկ մինչ այդ, կարծում ենք, որ Դիւանիս Յաւելուածների շարքի մէջ եղած Յաւելուած Ե. պատկանում է մեր Երգչին,—

«Ես աչք եմ դուն հոգի, առանց լոյս աչքըն խաւարի,
Ես ձուկ՝ դուն ջուր, հոգի, առանց ջուր ձուկըն մեռանի.
Երբ զձուկն ի ջըրէն հանեն 'ւի յայլ ջուր ձըգեն՝ կու ապրի,
Երբ զիս ի քենէ զատեն, քան զմեռնելն՝ այլ ճարակ չունի»,—

եւ այսպէս բոլոր շարքը այդ քառեակների, որոնց հոգին, ոճը, բառապաշարը, տաղաչափութեան կազմը, 7–3–5, որ այնքան ինքնայատուկ է Ֆրիկին մտքերը, արտայայտութեան suis generis եղանակը՝ ամբողջովին Ֆրիկինն են, որովհետեւ գլխովին Ֆրիկ է բուրում։

Ապացո՞յց։

Բաւական է միայն համեմատել Ցաւելուածիս երրորդ քառեակը Ֆրիկի ԽԳ. տաղի 23–26 տողերի հետ եւ մնացածներն եւս գրուած այլ եւ այլ տաղերի ու տողերի մէջ։ Եւ ահա մի այլ, նոր ապացոյց, որ Ֆրիկը զերծ չէր «Հայերէն Սիրոյ» տաղեր գրելու «աններելի» մեղքից։

«Հայերէն» նոր եզրը — terminus — ժամանակի ընթացքին աւելի յաճախ եւ մօտ է խօսում հայ երգիչների սրտին ու հոգուն, աւելի քնքոյշ յոյզերի աղբիւր է դառնում եւ եզրը վերածւում «հայրենիկ»–ի, ուր թւում է թէ թաղնուած է մի աւելի նրբին յոյզ։

«Հայրենիկ ասացեալ Թուրկուրանցու ի վերայ սիրոյ.

Երկինք որոտաց դողաց, աստղն իւր տեղն չի մընաց.
Իմ եարն այլ յիանէ գընաց, բիւր ու (= հազար) ծաղկունք հիդըրաց»...

«Տաղ Հայրենիկ ի վր. սիրոյ ասացեալ.
«Աշխարհս է արամ թարամ.
Քո էրաց ժամերն հարամ,
Որ տեղ ժամաղեղ տեսնամ...

Արտաւազդ արքեպ. «Ցուցակ Հայ ՁԹԹ–ց Հալէպի Ս. Քառասուն Մանկունք Եկղ.» 1935, Երսղմ. էջ 386, § 37, 38)։

§ 57. Մի այլ տեղ, իւր Տաղերի մէջ, ունինք մի այլ ակնարկ «Հայերէն բաներ» գրելու մասին, երբ Երգիչն ինքն իւր դէմ գանգատելով երգում է,—

«Կապի քո բըլբուլ լեզուդ՝ ի յաջէն լինիս դու լեզակ.
Ու՞ր են քո ամէն բաներն հայերէն՝ մասալ ու առակ.
(ԻԵ. 50–51)։

որից պարզ է, որ Ֆրիկը գրած էր, այսինքն ասած էր, ոչ միայն մեր ձեռքը հասած Տաղերը, այլ եւ բազմաթիւ առակաւոր բանք — fable,— «մասալ ու առակ», ժողովրդական արտայայտութեամբ, որոնք հասած չեն մեզ, գոնէ Ֆրիկի անունով եւ որոնք կամ ընդ միշտ կորած են եւ կամ տակաւին մեր ՁԹԹ–ի ծոցում պահուած՝ անյայտ եւ ծնողի անունն իսկ իրենց վրայ, թերեւս, չը կրող թափառիկներ։

Ֆրիկի ակնարկած «մասալ ու առակ»–ների շարքին է պատկանում անպատճառ նորա Տաղերից այն մէկը, որ կրում է «Վասն ի վերայ եղբայրասպանին» վերնագիրը եւ սկսւում է.—

«Աւրհնեալ անուն Արարողին՝
Թագաւորին, որ զմեզ արար,
Ֆրրկին երետ իմաստութիւն
Քանի մի բան ասէ ի չար...»:
(ԽԴ. 1–4).

որի բուն պատմուածքն, առակն սկսւում է այսպէս,—

«Դարպաս մի կայր Մըսրայ երկիրն,
Որ իւր նըման խօկի չի կայր.
Երկու եղբայր ի հոն կային
Ի մէկ հաւրէ, մաւրէ եղբայր»:
(ԽԴ. 9–12).

եւ անմխիթար խօսքով պատմում է աշխարհի կարգերի չափազանց յեղյեղուկ վիճակը, մի գոյավիճակից միւսը փոխանցուելու յարանցիկ շրջանը, որով մարդկային կեանքի մէջ ոտակալութեան զգացում պահելու միտումը համարում է անմիտ եւ անբնական մի յոյզ եւ իբրեւ խրատ վերջացնում է առակն, ասելով.—

«Ի սատանին ձին դու հեծար.
Վաղըն երբ դու յեղբայրդ նայիս՝
Սիրտդ ի փորիդ առնու գալար...
(ԽԴ. 94–96).

Նոյն առակաւոր խօսքն է, նոյն բովանդակութեամբ, որ տալիս է Ս. Ղազարի No. 1828, Գ. Է. ՁՌ–ը, վերագրելով այն «Աշըղ Քոչակ Վանեցի»–ին, «Առակ լաւ եւ պիտանի խորագրով, որն սկսւում է.—

«Այ սիրելիք ականջ դըրէք, Մըսրայ քաղքէն տամ ձեզ խաբար,
Քան ըզՄըսր քաղաք մեծ չկայ, չորեք կողմէն ճամփայ կու գայր...
Յաւելուած Թ. 1–2.

Թէ տաղս Քուչակինն է, կասկածի տեղ չի մնում, քանի որ առակ–ոտանաւորը վերջանում է Երգչի անուան սովորական յիշատակութեամբ, Տաղի վերջը,—

«Այս քանի բանս յիւրմէն ասեր՝
Աշըղ Քոչակըն գիւնահքեար»:
(Յաւել. Թ. 56).

Սակայն, չը նայած, որ Քոչակը յայտնում է, թէ «յիւրմէն ասեր» է, վերջինս ըստ ամենայնի հետեւողութիւն է նախորդ առակ–ոտանաւորի կազմի, պատմուածքի ձեւի, որով նախագաղափարի յղացումը եւ արտայայտութեան եղանակը պատկանում է Ֆրիկին, իբրեւ աւելի կանուխ ապրած Երգիչ եւ աւելի վաղ արտագրած երկ:

«Հայերէն բաներ» ասելու եւ երգելու նկատմամբ մի այլ տեղ եւս Երգիչն իւր համար վկայում է.—

«Շատ հայերէն բաներ ասի, ով լսէ ու զինքն իմանայ,
ըՋմարմինըն տաճար չինէ, որ Աստուած գայ՝ հանգչի ի նա»:
(ԻԸ. 36–37).

Արդեօք մեր ձեռքը հասած Տաղերի մասի՞ն է այդ ակնարկը, թէ նոր հայերէն բաներ են, որոնք յայտնութեան են սպասում:

Եւ այս «հայերէն բաներ» գրելու նոր հոսանքը, սկսուած Ֆրիկով, (ԺԳ) դարի կէսերից), շարունակւում է իւր յետնորդների կողմից, ինչպէս տեսանք՝ Կոստանդին Երզնկացու ձեռքով (ԺԴ. դ.), որը հայացնում է օտարինը կամ սեփականը՝ աւանդավէպ, առասպելապատումների Դարերի յուշ, օտարից փոխ առած ձեւով, այլ հայեցի կերտուածքով եւ ապա շարունակւում Ն. Քուչակի ձեռքով, շատ աւելի յետոյ (Հմմտ. Քուչակ ԽԳ. 92) եւ այդպիսով կերտւում մի կոկուած ուղի կամ «Կուպար յղէ» (ինչպէս Ղարաբաղն է ասում) եկող նոր սերունդների համար որոնց համար «Հայերէն բաներ» ասելու խնդիր այլ եւս չը կայ, քանի որ նախնական գաղափարը դարձել էր այլ եւս հանրային ապրում:

* * *

§ 58. Ուսումնասիրութեանս կցուած են ա) Տեղեկութիւններ Ֆրիկի Դիւանի Տաղերի աղբիւր ՁՌՌ–ի մասին, ուր հետաքրքրուողը գտնել կարող է այն անմիջական աղբիւրները, նոցա նկարագրութիւնը, ո՞ր տեղ եւ ի՞նչ ՁՌՌ–ի մէջ լինելը եւ թէ ո՞ր ՁՌ–ից ինչ Տաղ ենք արտագրած եւ նոցա օգնութեամբ Դիւանիս Տաղերի բնագիրը վերականգնած՝ մանրազնին համեմատութիւններով:

Բնագիրը վերականգնելը, ինչպէս ուսումնասիրողը պիտի տեսնէ, այն տաժանելի աշխատութիւններից է, որին յաղթել կարող էր միայն յամառ հետապնդումը եւ այն սէրը, որ վերականգնողն է ունեցած, աչքի առաՋ ունենալով միայն մի վերՋնական նպատակ՝ տալ Ֆրիկի գիտական հրատարակութեան անխաթար բնագիրը, հնար եղածի չափով:

Այդ աշխատութիւնը տարիների, յամառ հետապնդման արդիւնք է, ինչպէս եւ անդադար հետախոյզ որոնումների:

§ 59. Տեղեկութիւնների մի մասն ամփոփուած է մեր միւս մեծ աշխատութեան մէջ, որ կրում է «Մայր Ցուցակ Օքսֆորդի Բոդլէեան Գրատան Հայ Ձեռագիրների», կազմուած Հ. Ցակ. Տաշեանի ծրագրով, մանրամասն, լրիւ եւ յաճախ համեմատութեամբ միւս ցուցակների հետ: Այդ ստուար աշխատութիւնը մնում է տակաւին չը հրատարակուած, որ թողել ենք 1921 Թ. Ս. ԷՋմիածին, ի չարս մեր այլ երկերի: Եւ եթէ մի օր այդ Ցուցակն եւս լոյս տեսնէ, հաւատացած ենք, որ իւր պատուաւոր տեղը պիտի ունենայ, մինչեւ այժմ հրատարակուած միւս Ցուցակների հետ, առանց ստորադնհատման inferiority complex–ի զգացման:

Տեղեկութիւնների միւս մասերն ամփոփուած են մեր այլ աշխատութիւնների մէջ 1) «Մանչեստրի Հայ ՁՌ–ի քննական, մանրամասն ցուցակի» մէջ եւ 2) «Բրիւսէլի Արքայական Գրատան Հայ ՁՌ–ի Համանման Ցուցակի» մէջ: Միւսներն ամփոփուած են առանձին «Ժողովածու»ի մէջ, ուր նշանակուած են թէ ո՞ր Տաղը ո՞ր ՁՌ–ից, ո՞ր վայրի գրադարանից առնուած է եւ այժմ ի՞նչ վիճակի մէջ է գտնւում:

Դժբախտաբար հեռու լինելով Ս. Էջմիածնից, անկարող ենք կրկին աչքի անցնել Տեղեկութիւնների մասը, սակայն յոյս ունինք, որ իւր արդի վիճակի մէջ լրիւ գոհացում տալու պայմանի մէջ է:

§ 60. Ուսումնասիրութեանս կցուած է Յաւելուածների մի շարք, որ նպատակ ունի դիւրութիւններ տալ ուսումնասէր ընթերցողին որոշ, ամփոփ ծանօթութիւններ ունենալ այն դարի եւ շրջանի մասին, երբ մեր Երգիչն էր ապրում: Այդ Յաւելուածները վերաբերում են Թաթար–Մոնղոլ արշաւանքների ծագման, տարածման, տիրապետութեան սահմաններին, տիրող իշխանաւորին, նոցա փոխադարձ յարաբերութեան, ազդեցութեան, հարստութեան, աճման եւ անկման խնդիրներին, իբրեւ լուսաբանութիւն այն խնդրի, թէ ի՛նչ պայմանների մէջ էր ապրում, երգում եւ ազդում մեր Երգիչը: Ժամանակը, միջավայրը, շրջապատող պայմանները, քաղաքական կեանքի տուեալներն այն sine qua non դրութիւնն է, առանց որին ի մօտոյ ծանօթ լինելու, անկարող պիտի լինինք ըմբռնել Երգիչը եւ հասկնալ նորա ապրումներն ու ազդեցութիւնը իւր շրջանի վերայ:

§ 61. Փրիկի Դիւանի վերջը կցուած է «Բառարան» այն օտար ու հայ բառերի, որոնց հանդիպում ենք «Դիւանի Տաղերի» մէջ եւ որ անհասկանալի են: Բառարանի մէջ են մտած եւ որոշ ասացուածների, ոճերի, ինքնուրոյն դարձուածների հարուստ ատաղձի մասեր, որ մեր Երգիչն է գործ դնում իւր կառուցուածքի մէջ եւ յաճախ ինքնայատուկ դառնում: Բառարանը կարեւոր էր՝ իբրեւ բառերի բացատրութիւն, իբրեւ Միջնադարեան մեր լեզուի բառապաշար եւ իբրեւ ուղի, որով հնարաւոր պիտի լինէր, թերեւս, հետեւելով բառամթերքի ինքնայատուկ դրոշմին, գործադրութեան եղանակին եւ ոճաբանութեան՝ հետքը գտնել Երգչի ծագման, բնադաւառի որոշման, որ այնքան կարեւոր է: Եւ եթէ ճիշդ է, թէ Le style c'est l'homme, թերեւս հետեւողական է նաեւ ասել, թէ Le style c'est le pays et la région:

§ 62. Ուսումնասիրութեանս ընթացքին յայտնած ենք այն ենթադրութիւնը, որ մեր Երգիչը, հաւանօրէն, պէտք է լինէր Արեւելեան Հայաստանից եւ, թերեւս, Արեւելեան Հայաստանի այն մասից, որ յայտնի է այժմ Ղարաբաղ անունով: Այս ենթադրութեան ուղղակի ապացոյցներ չունինք Տաղերի մէջ, սակայն անուղղակի տուեալներ — բառեր, ոճեր, ասացուածներ, բառերի որոշ ըմբռնումներ, որոնք մնացած են այդ երկրամասի ժողովրդի բերանում — մեզ դրդում են հակուելու դէպի այդ ենթադրութիւնը:

Սովորական ընթերցողի համբերութիւնն ի չարը գործ դնելու չափազանցութեամբ, սակայն բուն բանասէրի համար այնքան կարեւոր այդ հարցը պարզաբանելու եւ ընդունելի դարձնելու մտքով տարուած՝ պիտի թոյլ տանք մեզ առաջ բերել այստեղ այդ բառերից, ոճերից նմոյշներ, առանց ամբողջականն առաջ բերելու հնարաւորութեան, ինչ որ որոնողը պիտի գտնէ «Բառաբան»ի բաժնի մէջ։

Այդ ոճաբանութեան եւ բառերի նմոյշների մէջ կան, բացի բուն հայ բառ ու ոճերից, նաեւ օտար բառեր, որոնք յատուկ են այդ երկրամասին, նոյն իսկ այսօր, որ ժողովուրդը պահել է դարերով անփոփոխ եւ կամ շատ քիչ փոփոխութեամբ։

Դոցանից են.—

Ազիզ (ԽԳ. 5). նոյնը եւ նոյն մտքով գործ է ածում Ղարաբաղը։ «Իւրան ջանը ազիզ ա ամմէն մարթիւ մըհար»։

Ակնատ (ԼԲ. 88) = Նոյն մտքով եւ Ղարաբաղում։ «Ակճատը սարքէ, վէր մօկնը թալակճ ընգնէ»։

Աղէկ (Ա. 88), «Քո աղէկդ ու՞ր մոռանամ (Գ. 29)։ Ղարաբաղցին ասում է։ «Քու աղէգտ յո՞ր մուռանամ»։

Աղէտ (ԺԶ. 50), սովորական իմաստով նշանակում է ցաւ, նեղութիւն, փորձանք, չարիք. բայց Ղարաբաղի բարբառով՝ «հող, խնամք, գուրգուրանք»,— «Ախճի, աղատդ շատ ինի», եւ այդ իմաստով գործ է ածում եւ մեր Երգիչը։

Աղընձած (Դ. 12) = ըղանձած։

Ամալ (ԻԳ. 9) = հնարք, միջոց. նոյն մտքով է եւ գործ դնում Ղարաբաղը. «Ամալ կեալի պէն չի», կամ օտար լեզուի ազդեցութեամբ՝ «ամալագեալան պէն չի»։

Անատակ (ԻԵ. 19), անյատակ եւ ոչ ան+ատակ = անկարող. «ընատակ ծովն ա ընգալ, կարում չի տիւս կեայ»։

Անդամն (Ժ. 73), նոյն իմաստով եւ Ղարաբաղում։

Անթապտիր (Զ. 10), ոչ ըստ բուն արաբ. աճթատպիր ձեւով, այլ ըստ Ղարաբաղի «աճթապտիր», որ հնչւում է աճթարդիր։

Անղալատ (Իէ. 61) = անսխալ, անմեղ։ «էս ըշխարհքումս անղալաթ մին ջուվար կա՞յ»։

Աննմանակ (Ե. 102) = «Մին աննըմանադ ախճիգ ա».— Միւս բարբառների մէջ հազուադէպ։

Անշառափ (Խէ. 18). Տես Շառափ.

Անուշ կանչել (ԼԶ. 30). նոյն մտքով նաեւ Ղարաբաղցին, «Խօխենք մի աճուշ կըճչեցէք, որ կինին անուշ ինի».

Առան (ԼԵ. 68) = Ձմերոց ոչխարների համար «վէխճարը սարան ա-ռան ըն տարալ»:

Առ իս (Ը. 40), այսօր եւս ճշդութեամբ նոյնը պահպանուած,= «ինձ մօտ, քովս» նշանակութեամբ:

Աստուծոյ հարած 'ւանիծած (ԻԹ. 15). Հարել = հարկանել, ծեծել, ըստ Ղարաբաղի բարբառի՝ թակել: Եւ Ղարաբաղցին գործ է ածում երկուսը միասին,— «Ըստըծու հարած-թակած ընէծվածն ա, 'վէր իւրան մընանը քը-թէնուալ չի կեալ»:

Արիւնը վրայ ձգել (Իէ. 50), նոյն արտայայտութիւնը եւ Ղարաբաղում. «Արիւնըտ ինձանաւ մէ քըցիլ» կամ «Արիւնըտ ինձանաւ մէ՛ տալ»:

Բախլել (Ծ. 41). = նախանձել. Ղարաբաղցին հնչում է փախլել:

Բանի զորդն ու ծուռն (ԻԹ. 60). ճիշդ նոյն ոճով եւ Ղարաբաղի բար-բառի մէջ. «Պէնէն զօրթն ու ծուռը հո՞ւ (ով) կը գիդայ»:

Բանն երկու ոչ լինենայ (Է. 63) = Խօսքը, ասելիքը կրկին չկրկնել. խօսքը գետին չձգել = յարգանօք վերաբերել: «Ընդրա ասած խօսկը էրկու չինիլ» = իսկոյն ասածը կը կատարուի:

Բարաթ (ԻԱ. 15). նոյն իմաստով եւ Ղարաբաղի բարբառի մէջ: «Մին բարաթ տըւաւ, վէր քինի Բեաքի (=Բագու) ապրանք օնէ» (=գնել):

Բէկլար (ԼԵ. 28). Բէկ բառի յոգնակի ձեւը: Բայլար (ըստ Ղրբղ.):

Բուխէրիկ (ԻԵ. 31) = Բուխարիդ (Ղրբղ.) կամ բուխարէգ.

Բռել (Ժ. 75 — ԾԲ. 23). = Նոյն իմաստով նաեւ Ղարաբաղի բարբա-ռի մէջ. «Մըչանք յըրա ա եկալ (= այնքան գիրացել է), վէր դեռալ ա բը-թած կօրտ (= կուրտ աքաղաղ): — «Օրը չուռուդինը (= ամբողջ օրը, մինչ երեկոյ) պըթիւմ ա»:

Գահալ (ԻԳ. 16). ծոյլ, անփոյթ. պահպանուած է միայն Ղարաբաղի բարբառի մէջ կհալ ձեւով, նոյն իմաստով:— «Կըհալ ծի (=ձի) ա» — «Կը-հալ ջուվարան (=մարդուց) իսկի հազ չըմ անել»:

Գլխավայրել (ԼԵ. 107). նոյն կազմութեամբ պահպանուած է Ղարա-բաղի բարբառի մէջ՝ կըլխըվէրել ձեւով: «Ջին վէննը (ոտը) բուդըրմիշ իլաւ (=սայթաքեց) կըլխըվէրից գիրայ ծեօրը»:

Գուլ լինել (Դ. 25). = Դէմ առնել, գդէմ ունել: Միայն Ղարաբաղի բարբառն է պահպանել այդ ոճը, այլ բարբառների մէջ անծանօթ է ինձ:— «Հացս աչքերըդ օնէ, կէրածըտ պըկումըտ կիւլ ինի»:

Գունահ (ԼԵ. 24). նոյն իմաստով եւ Ղարաբաղի բարբառի մէջ: «Նրա գինահը (= մեղք, յանցանք) հի՞նչ ա, վէր թակըմ ըս.» (= ծեծում ես):

Գուշ (ԽԸ. 9) = կիւշ ըստ Ղարաբաղի բարբառի.— «Մածունը կիւշն ածից, փըրթեօշ ըրաւ, կէրաւ»:

Դար քաշել (ՃՋ. 24). Նեղութեան, դժուարութեան ենթարկուել: Նոյն իմաստով է, որ մնացել է միայն Ղարաբաղի բարբառի մէջ. այլ բարբառների մէջ անծանօթ է ինձ: «Նրանց ծեռքան մրչանք դար ընք քաշալ, վէր ասուել չի կեալ» (= հնար չէ պատմել):

Դաւթար (ԻԱ. 12) = մատեան. Նոյն իմաստով եւ պահպանուած Ղարաբաղի բարբառի մէջ: «Օղըմ չըմ անումըս դեաւթար ընգնէ»:

Դեղել ջՋ. 42). Նոյն իմաստով եւ Ղարաբաղի բարբառի մէջ տեղել ձեւով. = թունաւորել, թոյն տալ:

Դիժար (ԽԸ. 6). պահպանուած տիժէր ձեւով: «Տղըմարթին մհար Ղարաբաղի բարբառում: «Ըչխարքիս պէնը դժար ա, դժար»: — «Թիթեւ պէնը ամմէն ջուվար (մարդ) կանէ, պէննն էն ա, վէր տիժէրն անիս»:

Դիժար (ԽԸ. 6). պահպանուած տիժէր ձեւով: Տղըմարթին մհար (= համար) տիժէր պէն չի կայ»):

Դիւան (ԻԱ. 12). = դատարանի մտքով կամ դատաստանի առումով պահպանուած Ղարաբաղի բարբառի մէջ: Վէչ Դիւան (խանայ) կը քինիմ, վէչ էլ դիւան կօղիմ»:

Դովլաթ (Իէ. 4). = հարստութիւն, նոյնը եւ Ղարաբաղ. «Վէչ Նրա դեօվլաթը կօղիմ, վէչ էլ իւրան փիս անումը» (=անունը):

Դօստ (ԽԴ. 42). = ծանօթ, բարեկամ. նոյն մտքով եւ Ղարաբաղի մէջ: «Դէ, ամմէն ջուվար (= մարդ) դօստ ու դիւշման օնէ, խէ՞ դիւդում չըս»:

Երեսս ձեր ոտից կոխան (Բ. 55). Նոյն իմաստը եւ նոյն արտայայտութեամբ նաեւ Ղարաբաղի բարբառի մէջ: «Իրեսըս ծեր (= ձեր) վէտանը տակը»:

Զահլէ (ԽԳ. 12). = զահլայ ձեւով:— «Մըչանք խօսից, վէր լոխճին (ամէնքի) զահլան տարաւ»:

Զնճիլ (ԽԳ. 11) = զինջիլ ձեւով: «Պօկը զինջիլ քըցած չօռ ար ածըմ»:

Զուգել (ԺԱ. 7, 14). = զարդարել, յարդարել: Նոյն իմաստով եւ Ղարաբաղում:— «Հարթնը (= հարսը) մի լաւ զիւքից, զըրթարից»:

Էգուց (Դ. 8) = վաղը: Նոյնը եւ Ղարաբաղի բարբառի մէջ: «Էքուց չէ, ալօր կը կեամ»:

Ըղորդ (Իէ. 14) Նոյն ձեւով եւ իմաստով նաեւ Ղարաբաղի բարբառի մէջ: — «Ըսըծնէդ ըղորդ պէներ ըն»:

Թալակ (ԼԴ. 99) նոյն իմաստով եւ նոյն ձեւով նաեւ Ղարաբաղի բարբառի մէջ: «Կիւլը (= գայլը) թալակն ար ընգալ, լօխ երըայ տէջէն՝ սպանին»:

Թամամ (ԽԴ. 61). Նոյն իմաստով:— «Դէ, հու դիւղըմ ըս թամամ խօսքը հի՞ւր (ում) կասին»:

Թամաշայ (ԺԱ. 102). նոյն իմաստով:— «Շէնին մաչին մարթ չի մը֊նաց. լօխ քէցէն թըմաշայ անին»:

Թապայ (Ջ. 25). ամենեւին, բնաւ. Ղարաբաղի բարբառի մէջ թօբայ ձեւով:— «Մըչանք դէրն (=քահանան) ասից, վէր խմելը թօբայ ըրաւ». (= վերջ տուեց):

Թապտիր (ԺՋ. 25, 26) = խրատ, հրահանգ. Նոյնը եւ Ղարաբաղի բարբառի մէջ: «Իւրան խուխոնցը լօխճին (=ամէնքին) էլ լաւ թարդիր ար տըւալ»:— «էս հինչ անթարդիր մարթիք ըն էս չէնէն խալխը»:

Թացան (ԽԱ. 56) = կաթնեղէն ուտելիք: Նոյնը, նոյն ձեւով եւ Ղա֊րաբաղ: «Տանը թընը — թացանը կըտըրուից, խօխէնքը մընացէն տիւզնը (=սո֊ված), տըռներն ընգած»:

Թափել (Ա. 103, 104) = ազատել: Նոյնը եւ Ղարաբաղում: «Շները երրայ տէռէն ուզօղէն երրայ, մարթիքն անջախ թըփէցէն նըրանցայ»:

Թեր (ԼԵ. 25). = կողմ մաքով այստեղ եւ Ղարաբաղում: «Բա, խէ, ծեր (= ձեր) թերան մարթ չի կա՞ր»:

Թերակ (ԼԴ. 187). = թերի, թերամնաց, կիսատ թողած (գործ). Ղրբ. հնչւում է թէրակ. ունի եւ թէրատ կամ թեհրատ: Երկուսի իմաստը թէեւ նոյն, բայց ունի նրբութիւն. «Պէնը թէրակ չը քըցել». «Ջափարը (ցան֊կապատ) թէրակ քըցեց, քինեց». «Կօժը թէրատ ա». կամ «թէրատ կօժը օս (= ուս) չըն օնէլ». չեն ասում «թէրակ կօժ» կամ «թէհրատ պէն»:

Թեւին տալ (ԺԳ. 56). = 1. թեւահարել. 2. աճապարել. «Ծիցեռնակը (=ծիծեռնակը) թէւէն տուած, երգինք իլաւ». (= բարձրացաւ):— «Մուքին թէւէն տըւած, չէնին տակաւը ըյէր իլաւ»:

Թեւն առնել (ԼՋ. 32). = թեւի վրայ առնել. նոյնը, նոյն արտայայ֊տութեամբ, միայն թեւի փոխարէն, բուն բարբառի կօռնը բառով:— «Ջօխան (= վերարկու) կօռնը (թեւն) կալած (առած) կըլխըվէրից դիպայ չէնին առաչկը» (կամ առաչքը):

Թխած (Ժ. 14) = «կարօտի» իմաստով, միայն կրաւորաբար թըխ֊ուած: «Ծեռքէն (= ձեռքի) խնձօրը տէսաւ, թխուած՝ օղից թա խըլի»:

Թուր (ԼԷ. 47). = սուր. Ղարաբաղի բարբառը չունի սուր, այլ միայն թուր ձեւը, ինչպէս եւ արտայայտութեան ու ոճի ձեւը: «Աշխարհքս թօրաւ ա կալալ». (գրաւել, ձեռք բերել): «Թօրաւ կ'ածեմ, կօնդը պուկիմ, (= թրով կը խփեմ, զարկեմ, գլուխը կը թռցնեմ):

Թուրաջ. Տես Տուճառ:

Թռքալ (Լ. 10). = արագ֊արագ վազել. միայն Ղարաբաղի բարբառի մէջ երեւում է «թռքին տալ» ձեւով:— «Կիւլը (գայլը) վէր տեսին, հըռնանց (= հեռուից) թռքէն տալաւ հէտան պըրծէն»:

Ժողովակ (ԼԴ․ 183)․ =խմբուած, ի մի գումարուած, իրար եկած․ Ղրբ․ ունի իբրեւ հոմանիշ՝ «հաւաք» (եկած), «վժողք» (իլած) = ժողովք։— «Ըստեղ տուք ժողովակ կացէք, էս ա՝ կեամ ըմ»։ «Ծէնը ժողովակ, հաւաք պըհեցէք, լիւ չը կենաք (չԹողնէք) չաղ կեան»։

Ժողով կենալ (ԻԳ․ 19․ = ամփոփուել, չցրուել, ի մի գալ․ նոյն իմաստով եւ նոյն ոճով նաեւ Ղարաբաղի բարբառի մէջ։— «Լոխճին ըսեցէք, ժողով կենան, չաղ չի կեան, էս ա հիչ տեղ վէրայ (=ուր որ է) կը կեան»։

Ժուկ (ԺԱ․ 96)․ ժամանակ․ պահ։— «Մին պատառ ժուկ չընցաւ, դէրը (= քահանան) նի հըսաւ»։

Ի բան գալ (Թ․ 34)․ =յարմարիլ, պիտանի լինել, ձեռնտու լինել»։ «Լեաւ ըս հրամայում, ամմա սասծդ պէնու չի կեալ մըզանում»։

Իմացք (ԼԷ․ 329․ =հնչւում է յիմացք, (ինչպէս յուսումարան) խելք, իմաստութիւն, ըմբռնում։— «Դէ, վէր (որ) Աստուծ նրան յիմացք չի տըւալ, ես հո՞ւնց (=ինչ) անիմ»։ Տես՝ յիմացք․

Ինչ կու նայիս (Ե․ 88)․ = Ֆրիկի մէջ «Ցինչ կու նայիս»․ նոյնը եւ Ղարաբաղի բարբառում․— «Ցի՞նչ ըս եչում»։

Իսկի (Դ․ 29, Ջ․ 38, 45, Է․ 24)․= ամենեւին, երբեք․— Նոյն ձեւով նաեւ Ղարաբաղի բարբառի մէջ․— «Իսկի մըննաս էլ անց չար կացալ»։

Իւրենըն (ԻԵ․ 65)․ Ղարաբաղի բարբառում իւրանը․ «Մերը մեզ տօ, իւրանը՝ իւրան»։

Լաւանալ (Գ․ 28)․ = առողջանալ, կազդուրուիլ։ Միեւնոյն իմաստով եւ Ղարաբաղի բարբառի մէջ։ «Ազատուն (=հիւանդը) լըւացալ, եր ար կացալ, չօռ ար կեամ»։

Լէքայ (Ծ․ 17)․ = բիծ․ նոյն մտքով, բայց լեաքայ ձեւով Ղարաբաղի բարբառում։ «Ծեօրերը (հագուստը) եխտուտ (=եկղոտ), լեաքեայ կալած»։

Լուլայ (ԽԴ․ 16, 17)․ = խողովակ, փողրակ․ նոյն ձեւ եւ իմաստով եւս Ղարաբ․ բարբառի մէջ։ «Քըրխընէն (=Թորան, Թորակ, alambic) ղըգղանէն լիւլան ճաքալ ար, քաշը կեամ չար»։

Խաբ տալ (Թ․ 32)․ Ղարաբ․ բարբառի մէջ խաբս տալ ձեւով։— «Վէրչանք (=որքան) ծէն տըւէ, խաբս տըւաւ, եկը վուչ կօչտըս»։

Լուկ (Ջ․ 48)․= լոկ, միայն․ նոյն ձեւով եւ Ղարաբաղի բարբառի մէջ։ «Խուխէս իրէսը լուկ մին տէսնամ, եոնան մէռնիմ»։

Լուսի լի՛նել (Ը․ 50)․= տեսնել, ի վիճակի լինել տեսնելու։ Նոյն մըտքով եւ Ղարաբաղի բարբառում։— «Հունց ըս, Այան (=մայրիկ), աչկըտ լիւսիւ ա՞․ (կամ՝ լի՞ւսի ա)․ կարի՞ս կար անէլ»։

Խալաս (ԽԱ․ 72)․ = զուտ, մաքուր, անխառն։ Պահպանուած է խալիս ձեւով․ «Խալիս պել (=խենԹ) ա իլալ, մունք գիդայիս վուչ»։

Խաշու (Ժ. 71, 72).= արգանակ, bouillon:— «Իփած էլ ինիս, խաշուատ կը ճինանչիմ քէ»:

Խապար (ԽԱ. 23). = լուր, տեղեկութիւն. պահպանուած է խաբար հնչմամբ, ըստ արաբ. խաբէր–ի: «Մերունց անա (= մերայիններից) էս մին տարէ կինի մի խաբար չօնինք»:

Խաս (ԻԵ. 21).= զուտ, անխառն, իսկական, ոչ–կեղծ: Նոյն իմաստով եւ հնչիւնով.— Կեցքէն (=հագին, վրան) հինչ վէր կաբ, խաս աբրիւշում ար»:

Խելքն ածել (ԻԸ. 22). յիմարանալ, խենթ ու խելառ բաներ անել, խելքը թռցնել: Ածել բառը Ղարաբ. բարբառի մէջ ունի բազմաթիւ իմաստներ, ի միջի այլոց նշանակում է եւ հարուածել, զարկել:— «Իրեւէղ մին սիլլայ (= ապտակ) կածիմ, աչկերտ կըծը–կրակէն կը տայ»: Այս իմաստով նշանակում է «գլխին զարկել, խելքը թռցնել»: «Խելքըղ ածա՞լ ըն, վէր (որ) իտի պեներ (= բան) ըս անում»:

Խելքը վրայ ածել (ԻԸ. 22). բուն Ղարաբաղի ոճ.

1. Խելքը կորցրած, յիմարացած լինել, յիմարութիւններ անել, խօսել:
2. Խելքը ժողովել, մտածել, խորհիլ, զգաստանալ:

«Խելքը երրայ ածած (=խելքը կորցրած) հինչու օնէ–չօնէ ծըխծըխորից»:

«Մին խելքըտ երրայ ածէ (=զգաստացիր) թա հիւր նըհէտ ըս խօսում»:

Խիալ (ԻԴ. 11). միտք, մտածում, հոգ: Նոյնը եւ Ղարաբաղի բարբառում, օտար ազդեցութեամբ:— «Հինչու ասին, տու քու պենէտ կաց, իսկի խիալըտ էլ մէ տինիլ»:

Խնդուզ (ԺԳ. 7). ուրախ, չէն–չող. 2— գրաւիչ, ակնապարար: Ղարաբաղի բարբառի մէջ գործ է դրւում առաջին իմաստով: «Օրախ (= ուրախ) խօխէնք ըն, խնդուզ, տօնը (տուն) չէն պահող, լօխճին (=ամէնքի) էլ հացը կեամ ա (=ամէնքին էլ հաճոյք պատճառող) նրանցա»:

Խնդրակ (ԻՋ. 74). հրաւիրակ. Ղարաբաղի բարբառը պահպանած է խնդրկու ձեւով:— «Հետատ (=տեւիցդ) խնդըրկու ինք զարկա՞լ, վէր (որ) եր կացեր, վազ տուեր, եկեր»:

Խռչակ (Ժ. 25). խռչափող. larynx. կոկորդ: Պահպանուած է նոյն ձեւով: «Հինչ քըթենում ա խըռչակն ա կօխում»:

Ծոռ (Իէ. 39). ծուռ, անարդար: Նոյն ձեւով եւ հնչիւնով ունի եւ Ղարաբաղը:— «Ըսըծնեղ լօխ (ամէնն) էլ ծոռ ա, մաչին մին դիւզ (ուղիղ) խօսկու պատառ չի կայ»:

Կաթնկեր (Թ. 16). մանուկ, տհաս, երեխայ: Նոյն մտքով, կըթ-ճըկեր

հնչիւնով Ղարաբաղի բարբառի մէջ: «Բալի (գուցէ) գիւղում ըս, թա կթնըկեր ըս քըթեալ (= գտել), կարի՞ս խաբիս»:

Կալ ու կաս անել (Ե․ 68)․ դանդաղիլ, յամենալ, ոտքը կախել: Նոյն մտքով եւ Ղարաբ․ բարբառի մէջ: «Դէ, տեղատ տըմբայ (= շարժուիր), մին տիւրուր եկ․ կալ ու կաս մէ անէլ, օրս մթնից, քինից»:

Կալել (Լէ․ 47)․ ունել, կալնուլ․ 2— գնել, գրաւել: Նոյն ձեւով իմաստով եւ Ղարաբ․ բարբառում: «Տօճին պերանը պէնդ կալ»: «Հինչու օղըմ ըս կօնիմ (=կը գնեմ), կը պիրիմ»:

Կապ (Ցաւ․ Է․ 87)․ չար, չարոց: «Խալխէն մին կապ չէօր լօբի էլ չի տալ»:

Կապ գալ (Ժէ․ 12)․ կապուիլ, դժուարութեան հանդիպիլ: «Պենէրս կապ ա եկալ․ գըլեօխ չի կեամ․ գիւղըմ չըմ թա հինչ ա կըլական»:

Կարդալ (Լթ․ 75)․ երգելու մտքով: «Ժամումը հանց լեաւ կարթում ա, վէր օղըմ չըս թայ պրծընէ»:

Կարկափել (Բ․ 26)․ լռել; ձայն չհանել: Ղարաբ․ բարբառը պահել է կուրկուփ ձեւով: «Տեղը կուրկուփ նստալ ար, վէչ խօսում ար, վէչ էլ տեղան տիւրուր ար կեամ»:

Կացք (Դ․ 23)․ նիստ ու կաց, վարմունք․ behaviour, conduite, maniére. «Էդ քու կացքէտ ես իսկի հաւան չըմ»: «Եա կացքըտ փոխէ, եա էլ մեր տօնը կեաս վուչ»:

Կոխել (Զ․ 23)․ գրաւել, տիրել: «Քեցէն, եըրայ տուլին, չէնը կուխէցեն»:

Կոտոր (Զ․ 26)․ հաց ի չոր պատառ: Նոյն մտքով, կուտուր ձեւով Ղարաբ․ բարբառի մէջ: «Ախճի, ուզեօղէն բա կուտուր կը տա՞ն, քինի մին էրկու պռօզ (= հացի մի տեսակն է) պեր, տօ իւրան»:

Կուման (Ե․ 19)․ տեղեկութիւն, լուր․ պրս․ գիւման, պահպանուել է գիւման ձեւով: «Ես իսկի գիւման չի, թա ծեր տնըցէք լօխ էլ քեցալ ըն, չէնը մարթ չի կայ»:

Կումաշ (Ժ․ 78)․ դիպակ, ղումաշ պրս․ ձեւով: Նրանց տանը խօխայ ըրախայ, մեծաւ պիծենաւ ղումաշ կը կենան» (հագնում, զգենուլ):

Կուտակ (ԼԴ․ 141)․ դիզուած, կուտակուած․ 2— փոքր դէզ (խոտի)․ պահպանուած կիւտակ ձեւով: «Մին կիւտակ խոտ ար հըւաքալ տըվարէն մըհար»:

Կուռն տալ (ԼԵ․ 42)․ Ղարաբաղի բարբառն է միայն, որ պահպանել է այս ոճի այն բուն իմաստը, որ Տաղերիս մէջ է արտայայտուած, այն է, ոչ թէ 1— ձեռնտու լինել, օգնել, օգնութեան հասնել, ձեռն տալ, ըստ նախնեաց, այլ 2— դաւել, հակառակել, խարդաւանել իմաստի ըմբռնումով: Այլ բարբառների մէջ յայտնի չէ ինձ այդ ոճը: Գործ է ածւում հակառակորդին յաղ-

*թելու, զգետնելու մաքառման ժամանակ։ «Վիտի (= Աւետիս), մին կօռնը տոյ, Աթիւնը պարանց քըցի» եւ կամ «կօռնը մէ տալ, վէննը տոյ, մաշկէն ըըրայ չօռ տոյ»։*

*Կտապել (ԼԳ. 31). մանր կտրտել, իրար մօտ դասաւորել, խճողել, որից եւ* կուտապ *= կտրտած, իրար հետ խառնած կանաչեղէնից պատրաստած խմորով թխուածք* — vegetable pie, пирог из овощей. Pàte, tarte aux légumes. *«Ծատ մէ՛ կըտապէլ»։*

*Հագինայ (ԺԲ. 114). գանձատուն, գանձ.* խազնայ *ձեւով (*խազանէ*, պրս.)։ «Նրանց խըզնէն մաչին հի՞նչ ասես, վէր կար վուչ»։*

*Հալալ (ԻԶ. 71). արդար, մաքուր, անարատ։ Նոյն ձեւով։ «Հալալ տօն (տուն), հալալ խէզան (կին) ա»։*

*Հալաւ (ԽԵ. 31). շապիկ (կանանց), ագանելիք։ 2— զգեստ, հագուստ։ Ղարաբ. բարբառը պահպանել է միայն առաջին իմաստը։ «Մին ծընգըլ (=մաշուած) հալաւ ար ուսերան կախ»։*

*Հալիւոր (Իէ. 47). ծեր. պահպանուել է* հըլեւուր *ձեւով։ «Մին հըլեւուր ա եկալ, քէ ա օղում»։*

*Հաղխաթ (ԺԷ. 19). ստոյգ, ճշմարտութիւն։ Նոյն ձեւով։ «Դրա հաղխաթը ես ըմ գիւղիմ, դու հի՞նչ կը գիդաս իտի պըներան»։*

*Հանգեամայ (ԺԱ. 103). արտակարգ վիճակ, արտասովոր (աղմուկ, ժողով, զրոյց)։ Նոյն ձեւով։ «Էդ հի՞նչ հեանգեամայ ըք սարքալ ըտէղ»։*

*Հանչաք (ԼԵ. 92). այնչափ, այնքան։ Պահպանուել է Ղարաբ. բարբառի մէջ* հընչանք *ձեւով։ «Հընչանք յետատ չօռ եկէն, վէր վըննըրներումը հալ (= ոյժ) չի մնաց»։*

*Հանց (Ա. 109, 110). այնպիսի։ «Հանց պէն ասից, մընացէ մաթ մնացած» (=յապուշ կրթիլ)։*

*Հասրաթ (Իթ. 28, 33). կարօտ (նիւթական, հոգեկան). անձկոտ, փափագ, իղձ։ «Օրը չըռուզիւն խուխէն հասրաթ ա»։ «Ամմէն հինչ օնիս, հինչու ըս հասրաթ, վէր խալխէն դըռներն ըս ընգալ»։ «Ամէն պէնու հասրաթ ըն մընացալ խօխէնքը»։*

*Հարած (Իթ. 15). Տես՝* Աստուծոյ հարած։

*Հարամի (ԽԳ. 47). Չարագործ, անիրաւ, թշնամի։ Ղարաբաղի բարբառը պահպանել է եւ* հարամ *= անսուրբ, պիղծ, անիրաւ եւ* հարաճի *ձեւերը։ «Հարամ մարթին պէնըրը հարամու ըրածան հի՞նչ ա պակաս»։*

*Հարամիկ (Զ. 15). չար, անիրաւ, անբարոյ։ Պահպանուած է* հարամէզ *ձեւով։ «Աղուեց տանան, խուխոնցան, հեռէ կաց, լօխ էլ հարամէզ մարթիք ըն»։*

*Հարբած ուղտ (Ժ. 19). կատաղի, անզուսպ, կրքոտ։ Պահպանուել է*

*Ղարաբ. բարբառի մէջ: «Հարփած օղտ ա տէռալ, ընգալ խալխէն մաչը. վէչ ասածն ա գիւղըմ, վէչ ըրածը»:*

*Հաւանական* (Զ. 6). *հաճելի, սիրուն, սիրելի: Նոյն ձեւով եւ Ղարաբ. բարբառում: «Շատ հաւանական պէներ ասից, քինից»: «Քու սրտէդ հաւանական ախճիդ ա»:*

*Հետ* (Բ. 46). *անգամ, երբեմն: «Օրանը քանէ հետ քէ ասիմ, վէր խելունք կաց»:*

*Հով* (Ցաւ. Ա. 99). *պաղ, սառն, զով: Պահպանուել է* հավ *ձեւով: «Ըտեղ նստել մէ, հավ ա»: «Ճիւրը հավ ա, պատառ կաց Թըխցընիմ, վէր ըրղանաս»:*

*Հունար* (Իէ. 41). *հնարք, միջոց. 2— շնորհք, կարողութիւն: Պահպանուել է* հիւնար *ձեւով: «Հինչ հիւնար ասիս՝ օնէ»:*

*Հրամել* (Ե. 87). *ասել: Պահպանուել է* հրամանք անել, հըրըմմայել *ձեւերով: «Լաւ ըս հրամանք անում, քինիմ, ծէն (ձայն) տամ, կեայ»: «Հըրամանքըս». (հրամայող ես):*

*Ղադր* (Ցաւել. Գ. 58, 144). *Երախտիք, արժէք, գին, արժանիք: Նոյն ձեւով: «Իմ ըրածէս ղադրը եռնան կը գիդաս»:*

*Ղալամ* (Իէ. 28). *գրիչ: Նոյն ձեւով: «Ղալամը ձեռքը կալաւ, լօխ կիրօտից, պրծաւ»: «Լեաւ ղալամ ածել ա գիւղըմ». (=գեղեցիկ գիր ունի):*

*Ղալատ* (ԽԳ. 43). *սխալ, վրիպանք. 2— մեղք: Նոյն եւ* ղալաթ *ձեւով: «Գիւղըմ ըս Թա հինչ մեծ ղալաթ ըրէր, վէր էն պէնը վէգ կալիր»:*

*Ղապուլ անել* (Ը. 28). *ընդունելի, հաճելի դարձնել: Նոյն իմաստով* ղաբուլ *ձեւով, (ըստ արաբ. հնչման): «Օղըմ ըս ըրածէտ ղաբո՞ւլ անիմ, փիս պէն չանիս»:*

*Ղարար* (ԽԴ. 30). *հանգիստ, խաղաղ: Նոյն իմաստով ու ձեւով: «Խօխէնք, մին պատառ ղարար ըրէք, տեսնանք հինչ ընք անում»:*

*Ղարիպ* (ԽԴ. 43). *Օտար, անծանօԹ: Նոյն իմաստ ու ձեւով: «Մին տեսէք հո՞ւ ա (= ով է) էն ղարիբ ջուվարը (= անձը), տեսէք հինչ ա օղըմ, տըւէք, յըղու տիրէք (=արկէք յուղի):*

*Ղարխ լինել* (ԼԸ. 68). *տնկուիլ, ամրանալ.* ղարղ (*պրս.*) *խորասոյզ լինել: «Փադը լըռուալ (= պնդիլ), ղարխ ա լալ մաչին, տիւս չի կեամ»:*

*Ղըլել* (ԻԲ. 4). ղաբուլ (*արբ.*) *բառից, հաճելի, ընդունելի լինել: Պահպանուել է* «ղաբուլ անել» *ձեւով եւ նոյն իմաստով: «Էդ ըրըծնէտ հի՞ւր (= ո՞ւմ) ա ղաբուլ:*

*Ղորդ* (ԻԹ. 1). *ուղիղ, ուղղորդ, ճշմարիտ: Պահպանուած է* ղորթ *կամ* ըղորթ *ձեւերով: «Պէնէն ղորԹն ու ծօռը տու կը գիտաս»: «Էն Աստուծը, ըղորԹ ըմ ասում»:*

Ղումաշ (ԺԲ․ 112)․ դիպակ, թանգագին գործուածք։ Պահպանուած է նոյն իմաստ ու ձեւով։ Տես կումաշ։ «Իւրանց հարթնենը (= հարսի) կեցածը (= զգեցած) խաս ու ղումաշ ա»։

Ղուսայ (ԽԳ․ 16, ԾՆԹ․)․ հոգ, վիշտ, ցաւ, նեղութիւն։ Նոյն իմաստով ու ձեւով պահպանուած։ «Նրանց տանը մըշանք ցաւ ու ղուսայ կայ, վէր քաշուիլ չի կեալ»։

Ղուաւաշ (ԼՁ․ 25)․ Սպասուհի, աղախին։ Պահպանուել է պրս․ ղարաւաշ ձեւով ու իմաստով։ «Դէ, մեծամեծաց խասխաթը կտրվի, ըռունց (=առանց) ղարաւաշու կարել չըն պէն տեսնան»։

Ճաղար (Ձ․ 133, Ցաւել․)․ կապոյտի եւ կանաչի խառն գոյնով աչք կամ աչք ունեցող։ «Քըչալան, ճըղարան, մին էլ քեօսայ մարթան հեռէ կաց»։

Ճարակ (Բ․ 28)․ միջոց, հնարք, ճար։ Նոյն իմաստով ու ձեւով։ «Տիժէրը (դժուարը) պէնէն ճարակ գթենալն ա»։

Ճորով (Ծ․ 24, 25)․ ուժով, բռնի, բռնադատ։ Նոյն իմաստով, ճօրաւ ձեւով։ «Օժաւ, գիւժաւ, ճօրաւ տօն (տուն) պերաւ (= բերեց), կեամ չար (= չէր գալիս)։

Ճորտ (Դ․ 13)․ ծառայ, մշակ, գործաւոր․ 2— բռնադատ ծառայող։ Առաջին իմաստով եւ ձեւով (Ղարաբ․)։ «Բա՛, քու հար լըհայ ճօրտաւ ար մըծացալ»։

Ճուապ (ԽԳ․ 33)․ պատասխան։ Պահպանուած նոյն իմաստով, ջօղաբ (պրս․ ջաւաբ) ձեւով։ «Մէծ ու պիծի չար ասել, լօխճին ջօղաբ ար տամ»։

Ճօշալ (ԼԵ․ 112)․ այպանել (ճօշ = բամբասանք, այպանանք), բամբասել, ծաղրել, հեգնել։ Նոյն մտքով ճեօշալ ձեւով։ «Օրը չուրը լիւս ճեօշում, փընովում ար լօխճին»։

Մարդախաբ (Ա․ 105, 106)․ խաբեբայ։ Պահպանուել է նոյն իմաստով մըրթըխա՛փի ձեւով։ «Մին մըրթըխափին ա, վէր մընանը (=նմանը) կայ վուչ»։

Մաղայ (ԺԱ․ 62)․ աղանդեր (խմելիքի)։ Նոյն իմաստով ու ձեւով։ «Խոնչայ տիւս պերեն փըսէն առաչքը, մաչին գինի, մաղայ, եղըծու»։

Մակար (Դ․ 41)․ մի՞թէ, ա՞րդեօք։ Պահպանուած է նոյն իմաստով, պարսկերէնի մագեար ձեւով։ «Ախճի, մունք ըստեղ նստած՝ օտըմ, խըմում ընք․ մաղեար իմ խօխաս հի՞նչ ա անում»։

Մահրում (Գ․ 9)․ զրկուած, անիրաւուած․ 2— խեղճ, թշուառ։ Նոյն իմաստով ու ձեւով պահպանուած (Ղարաբ․) «Մահրում նստիս տու»։ ԱՃԷԾՓ։

Մաճլիս (ԽԴ․ 49)․ ժողով, հաւաքոյթ, խնճոյք։ Նոյն իմաստով, մաժլիս ձեւով։ «Մաժլիսում վէր նստար, լօխճունքն էլ իւրան կը եչին» (կը նայէին)։

Մասալ (ԻԵ․ 51)․ պատմուածք, առակ․ conte, tale, story։ Պահպան-

ուած է նոյն իմաստով եւ պրս. մաայ ձեւով: «Մըչանք պընդըլ (=հանելուկ) ու մասալ ար գիւղըմ, վէր էլ հինչ ասիմ»:

Մաւայ (ԺԲ. 113)· ապաւէն, օգնութիւն: Նոյն իմաստ ու ձեւով: «Քէը եըրայ մաւայ կացած, քեցէ, անումըտ տըւէ, ամէն ինչ իլաւ»:

Միրաթ (Է. 71)· կրթութիւն, ուսում, դաստիարակութիւն: Նոյն իմաստով ու ձեւով: «Ասըմ ըն՝ քեցալ ա յուսում առալ, ամմա եըրան վէչ միրաթ կայ, վէչ էլ մըրթօ՛թուն»:

Մճուճ (ԻԵ. 19)· չփոթ, խառնակ վիճակ: Պահպանուել է նոյն իմաստով մճէճ ձեւով: «Օչկը (=ուչքը), մեռքը մճէճ ա. մարթ չի ճընանչում»: «Թիլը մըճէճ ա, կարում չըմ քանդիմ»:

Մորուս ոլորել (ԺԳ. 4, 5)· ձեռք առնել, բանի տեղ չը դնել (մէկին): Նոյն իմաստով: «Մըրօքը ձեռք ա քըցալ, հըլօր ա տամ, հունց վէր սէրտն ա օզիւմ»:

Մուլք (ԺԲ. 114)· կալուած, ստացուած (հող, այգի): Նոյն իմաստով եւ միւլf ձեւով: «Նրանց միւլքին վէչ զահման կար, վէչ սահրադ»:

Մուրատ (ԼԵ. 140)· բաղձանք, իղձ, փափագ: Նոյն իմաստով եւ մուրադ ձեւով, նման պարսկերէնի (մորադ): «Շատ տէս տէն ընկաւ խեղճը, ամմա ախրը մուրադին նի հըսաւ»:

Մռել (Իէ. 29)· լսել, մտիկ անել (ասածի)· անսալ (խօսքի): Նոյն իմաստով ու ձեւով: «Ջուվարու (= ոչ ոքի) մըռել չի. իւրան գիդացածը կանէ»:

Ցիմացք (ԽԱ. 54) = Ղրբ. եւս յիմացf է հնչում եւ ոչ իմացք: Տես իմացf: «Է, խելք ու յիմացք չարի, որ յերակ առ իս կու կենաս», տողիս մէջ «յիմացf» եւ «առ իս» բուն Ղրբ. ոճաբանութիւն է եւ արտայայտութեան ձեւ:

Ցինչ կու նայիս (Ե. 33)· Ղարաբաղի բարբառի մէջ,— «Ցի՞նչ ըս եչում (= աչել, նայել): Նոյն նախդիրով նաեւ «Ցինչու մըհար (=համար) ըս եկալ, յինչ ըս օզըմ»:

Ցիշոցնատու (Զ. 22)· հայհոյող, յիշոց տուող: Նոյն իմաստով, ուշունցատու ձեւով: «Էն չէնին խալխէն մընան (= նման) ուշունցատու չըմ տէսալ ըշխարքումըս»:

Ցիշոց տալ (Ժ. 21)· Հայհոյել, յիշոց տալ: Ղարաբաղի բարբառի մէջ չկայ hայհոյել բառը, այլ ուշունց տալ ձեւն է պահպանուած կամ օշունց տալ: «Նրանց հանց օշունց ա տամ վէր, ասիս թա օրթնանք ա ածըմ» (= օրհնութիւն է թափում):

Նամուս (ԺԳ. 24)· պատիւ, յարգ: Նոյն իմաստով եւ ձեւով եւս պահպանուած: «Մին նամուս ունէ, վէր չան առաչքը քըցին՝ չօնը ուտէլ չի»:

Շալակ (ԻԹ. 42)· մէջք, կռնակ.— 2— կռնակով կրած բեռ, ծանրութիւն: Պահպանուել է նոյն կրկնակ իմաստով եւ շէլակ ձեւով: «Ապէր, չէլակդ

ծռալ ա»։ (Կրկին իմաստով․— Եւ կռնակդ է ծռուել» եւ միաժամանակ «բեռդ է ծռուած»)։

Ճալակ չինել (ԺԳ․ 18)․ ծանրութիւն կրել մէջքին։ Նոյն իմաստով եւ շէլակ շինել ձեւով պահպանուած։ «Խալխէն ցան ու դարդը իրան մըհար (= համար) չէլակ ա չինալ, չոռ կեամ»։

Ճառ․ (ԺԱ․ 60)․ վնաս․ ամբաստանութիւն։ Նոյն իմաստով եւ ձեւով։ «Ճառըտ մըզանայ հեռէ պահէ»։

Ճառափ (ԽԷ․ 18)․ Ցորդահոս անձրեւ, անձրեւի չառաչի ձայնը, աղմուկ, ժխոր (անձրեւի)։ Այս բառն եւս կարծում ենք յատուկ է Ղարաբաղին․ այլ բարբառների մէջ չեմ հանդիպած։ Փրիկը այս բառից կերտում է մի նոր բառ, անշառափ, որ չունինք Բառարանների մէջ, իբրեւ «հանդիստ, խաղաղ, անվրդով», թերեւս եւ «անլոյս», աչքի առաջ ունենալով շառափ (Առ․ Բռ․) — «լոյս, շող» մտքով։ «Մին թոռ ա կեամ, մի չարփ ու չուրփ ա կալալ, մին չառափ ա, վէր (որ) ասուել չի կեալ (= հնար չէ նկարագրել, պատմել)։

Ճընստակ (ԼԴ․ 101)․ Սատակած, (ինչպէս շուն), անարգ մահ ընդունած։ Ղրբ․ հնչւում է շընըսա՛տակ․ այլ բարբառների մէջ աւելի շանսատակ ձեւով գործ ածուած։ «Կըլխաս ռադ իլիք, կը թըխիմ մինունքըտ չընըստակ կանիմ, ինձ եըրայ ջուվար ( =մարդ) կը սաբին (= կը հաչուեն, կը սեպեն»)։

Ճիչայ (ԽԳ․ 48)․ չիչ, ապակէ սրուակ։ Նոյն իմաստով եւ շիւշայ ձեւով։ «Ջուվարէն սէրտը չիւշայ ա․ վէր կոտրից, էլ կոծկուէլ չի կեալ»։

Ճիւար (ԼԱ․ 80), Ճիւարել (Դ․ 28)․ մտահոգ, տարակուսանքի մէջ, տարակուսել։ Ճուարիլ։ Նոյն մտքով եւ շուար կամ շըւար ձեւով։ «Խեղճ մարթը մնացալ ար չընըմաչին չըւարած, վէննը կացած»։

Ճնստակ (ԼԴ․ 101)․ չանստակ, անարգ մահ, անարգ, անպատիւ։ Պահպանուած է նոյն իմաստով եւ շընստակ կամ շընըստակ ձեւով, որը եւ բնագրի ձեւն է եւ ոչ շանստակ։ «Անումը «Ճօն–Թինի (=Ճուն Ցարութիւն) ար, չան մնան էլ չընստակ իլաւ, քինից, պըծէնք»։

Ճուռ գալ (Բ․ 4, 5)․ չրջել, պտտել։ Նոյն իմաստով եւ շօռ կեալ ձեւով։ «Քինից աչխարհքս չոռ եկը, էլ լըհայ եկը չէնը»։

Ոնց (Ա․ 51, 52, 56)․ Ինչպէս։ Պահուած է հունց ձեւով։ «Հինչ էլ անիս, հունց էլ անիս՝ մարթ չըս տէռնալ»։

Ուժել (ԼԱ․ 43)․ տանել, տոկալ, համբերել։ Նոյն իմաստով եւ օժալ ձեւով պահուած։ «Կարել չը՞ս պատառ օ՛ժաս (կամ օ՛ժիս), չուքօրանը (մինչեւ որ) քու հար (=հայրդ) կեայ»։

Ուղորդ (ԺԱ․ 186)․ ուղիղ, ճշմարիտ։ Պահուած նոյն իմաստով եւ ուղորթ կամ ըղորթ ձեւով։ «Ուղորթ ըս ասը՞մ»։ «Ըղորդ խօսքէն հի՞նչ ասիս»։

Ումեկ Լե․ 13»,<br>Ումէղ (Ի․ 5)․ } Ցոյս, ապաւէն։ Ղարաբ․ բարբառը պահպանել է երկու ձեւն եւս, միայն Ումեկը՝ ումէգ ձեւով եւ ումէղ ձեւն եւս բացասականով, ինչպէս Ֆրիկն ունի (Գ․ 8)։ «Ումէղս քիյանայ կտրած, մնացէ անո՛ւմէղ» (կամ (բէ՛ումեղ)։ (Պրս․ բէ = ոչ, ան+ումեղ = յոյս ձեւով։ «Ումէղս էլ ըս տու, ումէղեատեղս (=յուսոյ կայան) էլ»։

Ուր (Գ․ 29)․ ինչպէս։ Ղարաբ․ բարբառի մէջ յոր ձեւով։ «Ամաղըդ յո՞ր մըննաս քըցիմ», (= երախտիքդ ինչպէ՞ս մոռանամ)։

Ուստայ (ԺԷ․ 10)․ վարպետ, տէր։ Պահպանուել է նոյն իմաստ ու ձեւով։ «Ուստայ, ուստայ, կիւլը (= գայլը) ծեր (= ձեր) եզանը քամակը տիւս տայ»։

Ջարխ (ԻԷ․ 7)․ Անիւ, բախտ։ Նոյն իմաստով ու ձեւով։ «Ջուվարէն չարխը վէր ծուից, էլ պըծաւ»։ Ըրբէն չարխը (=սայլի անիւը) նի ա պըըծալ ցեխը»։

Ջարման (Ծ․ 20)․ Հակադարձ շարժում, հակոլոր, հակառակութիւն․ 2․ պըկուած, ոլոր (թել)։ Պահպանուած երկու իմաստով եւ նոյն ձեւով։ «Բախտը չօռ կը տայ, պէնըտ օնդաան ա (= յաջող է), չարմանը վէր կցից (= սկսեց) պէնդ պիւրթ ա»․ (=յաջող չէ)․ «Էս թիլը խէ՞ խտի չարման ըս հըլէօրալ»։

Ջոպան (ԽԳ․ 11, 12)․ հովիւ․ անկիրթ, անոպայ։ Նոյն իմաստով ու չոբան ձեւով պահպանուած։ «Ջոբան մարթ ա, հինչ ըս օզըմ»։

Պառակ (ԻԵ․ 52)․ Առապար, քարքարոտ վայր․— 2— անբերրի վայր, անչահ, անպտուղ (վայր, ծառ, կին)։ Կրկին իմաստներով եւ ձեւով պահպանուած։ Տես Բառարան-ը։

«Կաթնը տիրալ կըրակէն,<br>Օչկը (կամ Աչկը) քիցալ պըռակէն»։ Ժող․ երգ։

Պարապար (ԽԵ․ 42)․ միասին, հաւասար։ Ղարաբաղը պահպանել է բարաբար ձեւով (ըստ պրս․ բարաբար հնչման) եւ կամ բըրըբար ձեւով։ «Իւրան նհետ (=հետ) բըրըբար պէն ար անըմ»։

Պատկերք (Ծ․ 5)․ դէմք, երես, արտաքին երեւոյթ։ Ղարաբաղցին գործ է ածում միայն պատկերք դէմքի համար եւ կամ երեսկահատք։ «Մէրուն պատկերք օնէ»․ (= ունի)։ Ո՛չ նկարի մտքով, այլ կենդանի դէմքի համար։ (Նկարի համար ունի պատկեր բառը, առանց յոգնականացուցիչ նշանի)։

Պաք (ԽԵ․ 42) պահք, պահոց օր։ Գործ է ածում առանց հ տառի, պաք, ինչպէս Ֆրիկն ունի։ «Մեծ Այանը (=մայրիկը) չէբէթը (=շաբաթը) իրեք օր պաք ա փըռնըմ»։ «Հըմանչիմ չը՞ս, պաքըս ստում»։

Պեղծ (ԽԱ․ 61)․ Պիղծ, անմաքուր, անսուրբ։ Ղարաբաղցին չունի պիղծ, այլ պեղծ, ինչպէս Ֆրիկը։ Այսպէս եւ ունի յեմար, լէրբ, փոխանակ «յիմար, լիրբ» բառերի։ «Էն պեղծէն տօնը (տունը) չըմ քինիլ ես»։

Պչկալ (Գ. 26). զզուիլ, զանել: Պահել է պշկալ եւ պժկալ ձեւերով, նոյն իմաստով: «Իրեսը վէր (որ) տեսնըմ ըմ՝ պըչկամ ըմ»: «Լեաւ ջուվար (մարդ) ա, պըժկալ մէ իւրան անա» (իրենից). (կամ «իւրանա» իրենից):

Պոկ (ԽԴ. 27). կոկորդ, բուկ: Պահպանուած է պուկ եւ պօկ ձեւերով, աւելի վերջինն է գործածական: Տես Բառարանի «պուկ» բառը: «Խրէգ (քիչ) մնաց պոկը հոփ տար (=սղմէր) հիւքին (= հոգին) տեւս ածար (=հանէր):

Պոսել (ԺԹ. 21). դիմադրել, դէմ ունել, յաղթահարել: (Արդեօք պոզ+ել? = դիմադրել եղջիւրով): Այլ բարբառների մէջ ծանօթ չէ ինձ այս արտայայտութիւնը ,որ հանդիպում ենք Ֆրիկի մէջ եւ պահուած Ղարաբաղում:: Ինչպէս պըսը-պօսի տալ ոճը, «կռուիլ, պօղահարել, հանգիստ չթողնել»: «Մեր կիմաշը (= գոմէշ) լաւ պոսից ծեր (= ձեր) կիւմաշին, տարաւ կըլխըվէրից ծէօրն (= ձորն) ը վէրս (= ի վայր):

Պուտ (ԺԱ. 42). Ալիւրից շաղախուած գունդ, որ տրւում է ուղտերին, շներին: Պահպանուած նոյն իմաստով, պիւտ ձեւով: «Նառ օղտէն կեարի (գարի) պիւտ ար տամ, եըրան նատած, յըղէն քինըմ» (= ուղին շարունակում):

Ջերմ (Բ. 10). Ղարաբաղի բարբառի մէջ այս բառի իմաստը սովորական «տաք, տաքութիւն» իմաստով չէ, այլ հակառակ իմաստով՝ այն է, «պաղ, հով, ցուրտ, դող»: Ջերմ իմաստի համար տենդ = ջըրմը — տենդ (= ջերմ ու պաղ, fiévre) Պահպանելով Ֆրիկի գործածութեան իմաստը եւ ձեւը: Այս իմաստով եւ Ֆրիկն ունի մի այլ բառ՝

Ջերմնոց (Ծ. 19), որ մեր սովորական իմաստով պիտի նշանակէր ջերմանոց, ջերմոց, ջերոց, la serre, hot-house, теплица (= տեպլի՛ցա ,Ռուս.) Սակայն Ֆրիկի գործ դրածի իմաստը բոլորովին հակառակն է, այսինքն, այն իմաստ եւ ըմբռնումով, որ Ղարաբաղի բարբառի ջերմ բառն է պահպանել, այսինքն «պաղի, սառչելու, դողի վայր», réfrigérant. rerigerator, ice-box, — холодильник (=խոլօդիլնիկ Ռուս.), որով Ֆրիկն իրաւունք ունի ասելու,— «Հոգին ի մարմնոյն ձեռքն կու դողայ զերդ ի ջերմնոցի»: (Ծ. 19). Տես՝ Բառարան-ը ճիշդ այնպէս ինչպէս Ղարաբաղցին պիտի ասէր, «Ախճի, ծեր (= ձեր) պիծի տօնը (= մառանը) հանց ա ճըրմա՛նուց» (=սառցարան):

Ջուղապ (ԺԷ. 9). պատասխան: Պահպանուած է պըս. ջօղաբ ձեւով: «Պիծինը (փոքրը) մէծէն ջօ՛ղաբ չի տալ»:

Ջտարել (ԻԷ. 13) Ոտնակապ դնել, արգելարանի դատապարտել, ազատ չթողնել. (Ղըբ. բարբառով չըդարել. չըդար (Թրք.) ոտնակապ ձիու = fetter, shackle, кандалы, fers (pour les pieds).

Ջօհար (ԺԳ. 19). գոհար: Պահպանուած է ջօվհար ձեւով եւ նոյն իմաստով: «Մեռքէն, ամէն մին մաննու եըրայ (= մատի վրայ) մին ջովհար մուտանայ ար անց կըցըրալ»:

**Սազ** (ԽԵ․ 34)․ յարմար, գեղեցիկ․ յարդարանք, կազմածք։ Պահպանուած նոյն իմաստով ու ձեւով։ Իւրան մըհար (=համար) սազ տեղ նստից»։

**Սավդայ** (ԺԹ․ 6)․ հոգ, տխրութիւն, վիշտ։ Նոյն իմաստ ու մտքով պահպանուած։ «Քը մըհար սավդայ ըս ըրալ խալխէն ցաւը–դարդը»։

**Սատանի ձին նստել** (ԽԴ․ 94)․ հակառակել, յամառիլ։ Նոյն իմաստով եւ ձեւով պահպանած*, սակայն բարբառի դրոշմը դրած վրան։ «Սուտունէն ծին (=ձին) ա եր իլալ (= հեծել), օզում չի թա վէր կեայ»։ (Իջնել, վայր գալ)։

**Սարուել** (ԺԳ․ 7)․ զարդարուիլ, պճնուիլ։ Պահպանուած է նոյն իմաստով ու ձեւով։ Այլ բարբառների մէջ ինձ յայտնի չէ նոյն իմաստով։ «Տնաւտեղաւ իտի լաւ սարուած, թո՞րն ըք քինում»։

**Սիասաթ** (ԻԷ․ 32)․ Դիւանագիտութիւն; դիւանագէտ, աղեցիկ․ տպաւորութիւն թողնող։ Նոյն իմաստով ու ձեւով պահպանուած։ «Քու մեծ–ապեր մին հանց սիասաթ օնար, վէր (որ) ամէն մարթ ըռաչքէն տէօղում ար»։

**Սիրտ ունենալ** (Ե․ 77)․ տրամադիր լինել, սիրել, հաճել։ Պահպանած իմաստն ու ձեւը։ «Թեարգ ըրա (=դադարիր), քու հար (= հայր) լիւս դէռնայ․ սէրտ չօնիմ քը նհետ (= հետդ) խօսիմ»։

**Վաստակ** (Ը․ 16)․ աշխատանք, գործ, շահ։ Պահպանուած նոյն իմաստ ու ձեւով։ «Շատ վըստըկեցէ (= յոգնել), ամմա վաստակս (= շահս) մին զատ չար»։

**Վարել** (ԼՁ․ 46)․ հեռացնել վանել, քշել։ Նոյն իմաստ ու ձեւով պահպանուած։ «Ինձ իւրան կըլխան (= գլխից) վարից, ինքը քինից»։ «Հաւերը վարէ, տէն ըրա»։

**Վեր ածել** (ԺՁ․ 12)․ թափել, հեղուլ․ ջարդել։ Պահպանուած նոյն իմաստ ու ձեւով։ «Խուխէս (= տղայիս) ամեադը (=երախտիք) վէր ըծեցեն, տափաւը մին ըրէն»․ (= անարժէք դարձրին)։

**Վեր տալ** (Ժ․ 8)․ բարձր պահել, վխալ, հպարտանալ։ Նոյն իմաստն ու ձեւը պահած։ «Ճակատը հանց վեր տուած քինում ար, ասիս չէնին մելիքն ինար» (= լինէր)։

**Տանակ** (ԻՁ․ 719․ տասանորդ — 2․ տասնեակ (գործաւորների, զինուորների) — 3․ հողային բաժին։ Պահպանուած նոյն իմաստով ու ձեւով։ «Կալան տասնեակը չըփէցէ, տուէ դըրդէն»․ (= հարկահան)։

**Տեռել** (Ժ․ 44)․ կոչկոճ կապել։ Այլ բարբառների մէջ ինձ յայտնի չէ նոյն մտքով այդ բառը, որ պահպանուած է Ղարաբ․ բարբառի մէջ այդ իմաստով։ «Եշլի (= տես, նայիր) օղտէն ծիւյները (=ծնկները) հունց (=ինչպէս) ըն տեռալ»։

**Տնազ անել** (Ի․ 19)․ հեգնել, ծանակի նիւթ դարձնել, բաննրս անել, (ըստ Մշեցոց)․ to laugh at, se moquer, насмѣхаться. (= Նաամէխատը, Թուր․)

*Պահպանուած նոյն իմաստով ու ձեւով։ «Հինչու (= ինչ որ) ասում ըմ տնաղ ա անում․ խէ՞, եւ նրա տընըղա՛տեղն (= այպանանքի առարկայ, տեղիք) ը՞մ»։*

*Տնտղկել (ԻԳ․ 19, փոփոխակ)․ Դիտել, նայել ուշադիր, քննական հայեացքով․ ինչ որ պահուած է Ղարբ․ բարբառի մէջ* տնդղել *ձեւով, իսկ բազմաձեւը՝* տնտղկել, տնդղկոտել․ to observe, to look round, замѣтить, замѣчать. (*Հաւանօրէն նախնականը եղած է* տնտղկել *որ յետոյ փոխուած է* fննել *ձեւի, աւելի դիւրըմբռնելի լինելով ընթերցող ու լողների համար։ «Մին լաւ տընդըղէ, դուք էլ տընդըղկուտէ՛ցէք չիւրքըպիւլիւր»)։*

*Տռած (ԻԵ․ 32)․ որսի թռչուն, տուռէճ*, francolin: *Պահպանուած է* թուրաջ *ձեւով կամ* տռռաճ: *«Վըրըսըտեղայ (= որսի վայրից) կաքաւ, միրհաւ (= փասեան), թուրաջ, արօս պերէն»․ (= բերեցին)։*

*Փալիտ (Ցաւել․ Զ․ 236)․ Պրս․* փելիդ․ *պիղծ, անմաքուր, անսուրբ․․— 2․ գռեհիկ, կոշտ, անտաշ, թափթփած, անմաքուր (արտաքինով)։ «Հինչ փիս, փալիթ մարթ ա»։*

*Փլհակ (ԻԵ․ 27)․ Բանտ?* արգելարան? *Ըստ Ղարաբաղի բարբառի նշանակում է «աւերակ, քանդուած, խարխուլ» (մարագ, ջրաղաց, տուն)։ Անպիտան վայր, ուր գիւղի բանտարկեալներն են փակւում։ «Թէ չէ յատակես յէգուց հանց լինես զինչ գողն ի փըլհակ»։ «Լաւ ըք ըրալ վէր (որ) փըռնալ ըք․ տարէք կուխեցէք կիւմէն (գոմի) փըլհակը»։*

*Փոխրէնք (ԼԵ․ 133) փոխարէն, հատուցում։ Պաշպանուած նոյն իմաստով,* փոխրանf *ձեւով։ «Աստուած մինին հըզէր փոխրանք տայ»։*

*Փոշիմնել (Ը․ 49), փոշիմանութիւն (Ը․ 2)․ Ափսոսալ, ււաղել, ափսոսանք։ Պահպանուած նոյն իմաստով՝* փուշմանել, փուշմընօ՛թուն *ձեւերով։ «Վախիմ ըրա՛ծէտ եըրայ փուշմընօթուն ինի»։*

*Քանց (ԾԱ․ 24)․ քան, քան զ։ Պահպանուած նոյն ձեւով եւ Ղարաբաղի բարբառի մէջ։ «Քանց քէ լաւ մարթ (= մարդ) չըմ տէսալ»։*

*Քարոզ (ԺԶ․ 25)․ մունետիկ։ Պահպանուած է, բացառաբար, Ղարաբաղի բարբառի մէջ* fարօզ անել *ձեւով, որ նշանակում է մունետիկի պէս յայտարարել։ «Հի՞նչ ըս քարոզ անում ըստեղէք․ քինի (= գնա) պէ՛նէտ)։*

*Քթեթ (ԽԲ․ 30)․ օժիտ (հարսի), օժիտի մէջ եղած սպիտակեղէն, զգեստ, եւն․։ Պահուած նոյն իմաստով ու ձեւով։ «Քըթեթը չինած, կապած ա»։*

*Քոչ* (ԼԵ· 38)· *Թափառական ցեղերի տեղափոխութիւն, փոխադրութիւն (ձմերոցից ամարանոց եւ հակառակն)։ «Թուրքերէն (Թուրքերի) քոչը եկը, անց կացաւ, քինից սարէրը»։*

*Ֆալաք* (Իէ· 15)· *Բախտ, ճակատագիր։ Պահպանուած նոյն իմաստով եւ Ֆալագ կամ Չարխը–փալագ ձեւերով։ «Ջուվարէն Չարխը–փալագը վէր (= որ) մէ՛ հետ (= մի անգամ) չօռ տուվաւ, հըլոր (= ոլոր, հակառակ) քինից, էլ պրծաւ»։*

§ 63· *Վերն առաջ բերած հայ եւ օտար բառերի ցանկն այն միակ ատաղձը չէ, որ սփռուած են մեր Երգչի Տաղերի մէջ եւ ի մի ժողովուած, իբրեւ բառեր Բառարանի մէջ։ Հետաքրքիր բանասէրը այդտեղ կարող է գտնել այլ բազմաթիւ բառեր եւս, յատուկ՝ ե՛ւ Ֆրիկին, ե՛ւ Ղարաբաղին, որոնք, սակայն, կարիք չտեսանք առաջ բերելու, բաւականանալով չուրջ երկու հարիւր բառերով, որոնք բնորոշ են, ինքնայատուկ Ղարաբաղի բարբառին։ Անկասկած, վերն առաջ բերած բառերի ամբողջական քանակը միմիայն Ղարաբաղի բարբառին յատուկ չեն, այլ նաեւ մեր միւս գաւառաբարբառներին. սակայն այդ բառերը, իրենց ամբողջականութեամբ, իբրեւ մի միաւորութիւն, անպայման իրենց վրայ են կրում որոշ տեղական համ ու հոտի, գոյն ու բոյրի, ասութեան եւ իմաստի ինքնայատուկ կնիք ու դրոշմ եւ մատնանըշում ատաղձը գործադրողի՝ այնքան մօտ ծանօթութիւնը տեղական բարբառի նրբութեան, իբրեւ առանձնայատուկ խմաստ, ըմբռնում, իբրեւ նուրբ երփն ու երանգ* (nuance) *արտայայտութեան ու ոճի։ Այս բառացանկի շարքում կան ոչ պակաս թուով եւ յատուկ բառեր, ոճեր, որոնք միայն յատուկ են Ղարաբաղի ոճին ու բարբառին։ Ընթերցողի համբերութիւնը պիտի ի չարը գործ դնելու չարաշահութիւնը չունենանք այդ յատուկ բառերն ու ոճերը կըրկին յիշատակելու։ Հետաքրքրուող բանասէրի աչքն ամենայն դիւրութեամբ տեսած պիտի լինի այդ բոլորը, եթէ մի անգամ աչքի է անցրած, ատաղձն ամբողջովին։*

*Մեր նպատակն էր բառամթերքի այս ատաղձով ապացուցանել մի նուրբ խնդիր։ Մէկն այն հարցերից, որն անմիջապէս շօշափել դժուար է, սակայն մի հարց, որ բարբառագէտ բանասէրի աչքին ու մտքին մատչելի է, համոզկեր եւ ապացուցանելի համարուող։*

*Միայն Ղարաբաղի բարբառի յատուկ բառերը չեն, որ իբրեւ տեղական գոյն ու երանգի նրբութիւն՝ մտած են ու ցրուած նորա հոգեկան ապրումները ցուցադրող Տաղերի եւ տողերի մէջ։ Իբրեւ վարժ սուսերամարտ նա գիտէ ըստ պահանջի իւր զինարանից ընտրել պատեհ պահի զէնքը՝ իւր բառերը, հոգ չէ՛ թէ այդ բառերը ո՞ր տեղից են։ Խութիւնն այն է, որ նա կարող լինի իւր միտքը յայտնել ցանկացածի պէս եւ այն յստակութեամբ, որ պահանջն էր*

*իւր ներքին ապրումների՝ լքումի, թէ յոյզերի: Արեւելեան Հայաստանի բառերի մէջ տեսնում ենք եւ Թիֆլիսի բառերի ձեւերը, ինչպէս փաթերակ,* phatheraki (*փաթէրակի· Վրաց·*), *ինչպէս եւ* աւտալ (*Իէ·* 23) *բայը «հաւատալ», ինչ որ մատնանշում է, թէ Երգիչը ծանօթ էր առ հասարակ Արեւելեան Հայաստանի բարբառներին եւ այդ շրջանի մէջ գործ դրուող այն օտարամուտ բառերին, գլխաւորաբար, Պարսկերէնի ազդեցութեամբ, որ սովորական, գործածական բառեր էին ժողովրդի առօրեայ խօսակցութեան մէջ:*

*Իբրեւ Ղարաբաղցի, կամ այդ մասի մէջ ապրած անձն, նորա համար այդ բառամթերքը չափազանց* ընտանի էր, *որպէսզի մեզ համար գաղտնիք մնար գործադրողի զինարանի բուն աղբիւրն ու ակը:*

# ԳԼՈՒԽ Դ.

§ 1. *Մի քանի խօսք եւս Ֆրիկի տաղաչափութեան եւ լեզուի մասին պարտք ունինք ասելու։*

*Ժամանակագրական կարգով Ֆրիկը առաջին հայ Երգիչն է, որ գրում է Ժողովրդական Բարբառը գերադասելով գրաբարին եւ յանգաւոր։ Նորա բոլոր տաղերը յանգաւոր են, որ թէեւ դժուարին գործ է բանաստեղծի համար, մանաւանդ երկարաշունչ Տաղերի մէջ, սակայն շատ աւելի հաճելի է ունկնդիրների համար եւ մանաւանդ նոցա համար, որոնք պիտի կամենային անգիր անել, գոց սովորել այդ Տաղերը, երգելու կամ արտասանելու համար։ Շատ աւելի կանուխ օրերի երգիչներն ու բանաստեղծները գոհանում էին իրենց երգերը արտասանել չափ ու կշռոյթի ներդաշնակ հոսանքով։ Ապագային, սկսած Գր. Մագիստրոսից, բանաստեղծութեան մէջ մտաւ բացի չափ եւ կշռոյթի ներդաշնակութեան պահանջից, նաեւ յանգաւոր գրելու կամ արտասանելու պահանջ–սովորութիւնը։ Յաճախ, մանաւանդ նախնական շրջանում, այդ յանգերը անվերջ ու միօրինակ էին, ինչպէս Մագիստրոսի հազարտողեան քերթուածը, սակայն ապագա յին իրենք՝ Բանաստեղծներն եւս զգալով այդ յար կրկնուող յանգի տաղտուկ միակերպութիւնը, աշխատում են ազատուել անհաճոյ այդ կրկնութիւններից եւ դնել նոր յանգեր իրենց Տաղերի մէջ, որով մի կողմից ձեւն ու կազմն էր գեղեցկանում եւ միւս կողմից ունկնդիր հասարակութեան համար աւելի ցանկալի դառնում։*

*Արուեստի այս նոր ըմբռնումն ունեցաւ եւ իւր հետեւանքները։ Անձնական տեսակէտից բազմայանգ, նոր ու ճոխ յանգերով երգող, արտասանող կամ*

գրող Երգիչն աւելի յարգ ու արժէք էր ստանում, իբրեւ աւելի պատրաստ Երգիչ, ճկուն լեզուի, արտայայտութեան գրաւիչ ձեւերի տակ բանաստեղծ, ուրեմն եւ աւելի սիրելի իւր ունկնդիրներին եւ կամ ընթերցողների դասին: Միւս կողմից արուեստի այս նորութիւնն անձնական կնիք դնելուց զատ իւր բանաստեղծութիւննեքի վերայ, մի նոր միջոց էր նաեւ աւելի լայն խաւերի մէջ տարածելու իւր Երգերն ու Տաղերը, իբրեւ աւելի դիւրութեամբ միտք պահելու միջոց, չնորհիւ յանգերի:

§ 2· Ֆրիկի Տաղերն ընդհանրապէս երկար քերթուածներ են, առանց քառեակների բաժանման ձեւի: Իւր Տաղերի մեծամասնութիւնն այդպէս են, (Ա·, Գ·, Դ·, Ե·, ԺԵ·, ԺԶ·, ԺԷ·, ԺԸ·, Ի·, ԻԱ·, ԻԲ·, ԻԴ·, ԻԵ·, ԻԶ·, ԻԷ·, ԻԸ·, Լ·, ԼԱ·, ԼԲ·, ԼԶ·, Խ·, ԽԱ·, ԽԲ·, ԽԳ·, ԽԶ·, ԽԷ·, ԽԹ·, Ծ·, ԾԱ·) եւ այս տաղերի յանգերը բոլորն եւս միանման են·—

«Գընաց մանկութեան հասրաթն ու երեկ ինձ հոգս անիհուն
Զըրկած եմ երկու կենաւք, վասն այնոր չեմ ելնել ի հուն
Գազանք ւ˘անասուն ու հաւք, դէմ ունին իրենց տուն ու բուն
Ո՛չ տուն, ո՛չ տեղ ունիմ՝ կու խոցիմ ի յանհաւատնուն»:

Տաղ ԺԷ·

կամ

Եկայք, որ ի բաց թողունք զայս խաբող կեանքս, որ չի խաբինք,
Երթանք զայն տեղիքն ուզենք, որ ունինք ումէտ, թէ ապրինք·
Այս կեանքս է չատ ոք խաբել, չի ասիլ իսկի՝ թէ հերիք,
Ջանա՛, որ բարի գործես, որ յանտէնն չի լինիս յետին»:

Տաղ Ի·

եւ կամ

Տեսէ՛ք, թէ քանի մարդիկ յաշխարհէս դարտակ մընացին·
Զամէնըն յետին թողին՝ անընչիկ ի հոն գընացին·
Ապա, աւր մի քեզ տիրէ, որ ասես՝ ես չեմ հողածին,
Ջանա՛, որ բարի գործես, որ յանտէնն չի լինիս յետին»:

Տաղ ԽԷ·

Ունի Տաղեր գրուած քառեակներով, որոնց թիւը չատ չէ: Այդպիսի Տաղերից են ԺԱ, ԺԲ·, ԺԳ·, ԼԳ·, ԼԴ·, ԼԵ·, ԼԸ·, ԼԹ·, ԽԴ·, ԽԵ·, ԽԸ·:

«Ով կու սիրէ կուժ ու կըլխթայ,
Դուստր ու որդիք յէգուց մուրայ
Ոնց հարբենայ՝ երթայ չընայ,
Անձամբն ի մէջ մեղաց մընայ»:

Տաղ ԺԲ·

կամ

«Սի՛րտ իմ, ընդէ՞ր ես խըռովել,
Ա՛չք իմ, ընդէ՞ր ես խաւարել,
Խե՛լք իմ, ընդէ՞ր ես ճապաղել,
Մի՛տք իմ, ընդէ՞ր ես չիւարել:

Է՞ր չես զմահու աւրն անդիճել...
Զհոգոյ քակտիլն է՞ր չես յիշել»...

Եւ կամ
Տաղ ԼԳ.

Փառք Աստուծոյ միշտ կենդանոյն,
Արդար ու˘իրաւ դատաւորին,
Տեսէք, թէ ի՞նչ զարմանք եղեւ
Հետ Բուղային եւ Արուխին»:

Տաղ ԼԵ.

Այս քառեակը կարելի էր Ֆրիկի Տաղերի սովորական ձեւով ներկայացնել.—

«Փառք Աստուծոյ միշտ կենդանոյն, արդար ու˘իրաւ դատաւորին,
Տեսէք, թէ ի՞նչ զարմանք եղեւ հետ Բուղային եւ Արուխին:
Բուղա՛, դու ո՞նց կամիր նենգել աստուածադիր Թագաւորին,
Զոր Քրիստոնեայք ամէն հաւսար ի յԱստուծոյ կու խնդրէին».

Տաղ ԼԵ.

Սակայն պահպանեցինք Ձեռագիր Բնագրի ձեւը, ենթադրելով, որ արտագրող գրչի առաջ կար քառեակի ձեւով գրուած մի Ձեռագիր, որից արտագրում էր հարազատօրէն եւ այդպէս մինչեւ նախնականը, այսինքն այնպէս, ինչպէս Երգիչն էր յօրինել:

Այս վերջին տեսակից է եւ Տաղ ԼԴ., որ թէեւ գրուած է քառեակով,

«Աստուած ահեղ, անքննելի,
Անբաւ, անյայտ ու˘անժամանակ,
Աստուած անտես, ու˘Ինքդ տեսնող
Ամենեցուն ես ժամանակ,—

բայց կարելի է վերածել՝

«Աստուած ահեղ, անքննելի, անբաւ, անյայտ ու˘անժամանակ,
Աստուած անտես, ու˘Ինքդ տեսնող ամենեցուն ես ժամանակ»,—

սակայն գերադասեցինք պահպանել մեր առաջ եղած ձեռագրի պատկերը, նոյն նկատումներով:*)

*) Քառեակներով գրելու սովորութիւնը տարածուած էր ամէնուրեք, թէ Արեւմուտքում (Պրովանսի troubadour-ներ, Նորման trouvere-ներ, Գերման minnesaenger-ներ, Իտալական բանաստեղծներ )եւ թէ Արեւելքում (Հաֆիզ, Սաադի, Նիզամի, Օմար Խայամ, Քաանի, եւն., չնայած որ Ֆիրդուսին նախադաս է համարում գրել երկեակով — distich): Այստեղից եւ մեր բանաստեղծների մեծագոյն մասի սովորութիւնը քառեակով գրել, սկսած հնագոյններից:

Քառեակով է գրում նաեւ մեր հարեւան ժողովրդի, Վրացիների մէջ այնքան մեծ անուն եւ հռչակ հանած Շոթա Ռուսթաւելին «Ընձենաւոր» իւր արժէքաւոր վիպասանութիւնը, չափով ու յանգով, 16-ոտնեայ, տողը բաժանելով չեչտուած կրկին տրոհումի: Ամենահին քառեակներից մէկն է, ըստ Պրոֆ. Նիկ. Ե. Մառի, Սինայեան յայտնի Ձռ-ի մէջ գտնուած, ի պատիւ Ս. Կոյսի գրուած Տաղը, նոյնպէս 16-ոտնեայ տողերով, յանգաւոր, բայց ոչ կրկնակ բաժանումով. Н. Я. Марр: Тексты и Розыскания. Вступительные и Заключительные Стопы Витязя в Барсовой Коже. - С. Петр. 1910. Т. XII, ст. LIV. Բնագիրներ եւ Պրպտումներ, Նախաբան եւ Վերջաբան քառեակները Ընձենաւորի):

§ 3. Կան, ընդհակառակն, Տաղեր, որոնք գրի են առնուած Ձեռագրի մէջ Տաղերի սովորական եղանակով՝ երկայն տողերով,—

«Աններելի հուր վառեցի ւ՟անհող աշխարհս ի չուռ կու գամ.
Վախեմ, թէ յայն աւ՛րն Ատենին ես բարեխաւս զոք չունենամ»:

Տաղ Բ.

որը ամենայն դիւրութեամբ կարելի էր վերածել քառեակների չարքի,—

«Աններելի հուր վառեցի,
ւԱնհող յաշխարհս ի չուռ կու գամ.
Վախեմ, թէ յայն ա՛ւրն Ատենի
Ես բարեխաւս զոք չունենամ:

Վասն իմ բազում մեղք ու չարին
Ջուր ու ի գիշե՛րըն կու հոգամ.
Յահէն ահեղ դատաստանին
Զինչ սեւացեալ ամպ կու ցաւղամ»:

Բ. 4–7.

Այսպէս է նաեւ Տաղ Ը.-ը.—

«Հանց մեծամեծ խորհուրդ արի, որ յաւիտեան ո՛չ կատարի.

Մըտնուլ գետին հեշտ երկըրի, յինչ որ աղէկ մարդըն խըրի,— որ կարելի էր վերածել քառեակների եւ աւելի, եթէ ոչ ճոխ, գոնէ նմանայանգ տողերով.

«Հանց մեծամեծ խորհուրդ արի,
Որ յաւիտեան ոչ կատարի.
Մըտնուլ գետին հեշտ երկըրի,
Յինչ որ աղէկ մարդըն խըրի:

Զանտինճեցի, թէ այն ցեղի
Յետին բանին մըտիկ չարի,
Վասն այն դիպաւ ոտքս ի քարի,
Որ աւելի ջանք չի դիրի»...

Ը. 3–6.

Սակայն նախամեծար համարեցինք պահպանել բնագիր Ձեռագրի ձեւը, նոյն նկատումներով,— հեղինակի ստեղծագործութեան նախնական ձեւը տեսնելով մեր առաջ դրուած Ձեռագրի մէջ:

§ 4 Ֆրիկի Տաղերը, չափի տեսակէտից, ներկայացնում են հետեւեալ ձեւերը.—

ա.— Մետասանոտեայ, ուր տողերը կազմուած են հետեւեալ չափական ձեւով.— 3–3–2–3 = 11, որով տաղն ընդունում էր հետեւեալ կազմը,—

«Թէ չի կայր / սէր յաշխարհս / կամ սէր / չէր եղեալ
Արարիչն / առ մարդիկ / սէր ե՞րբ / ցուցանէր»:
Տաղ Ա.

կամ

Աստուծոյ / զաւրութիւն / եւ կամքն / է աւրհնեալ,
Զարարածս / յոչընչէ / թէ ո՞նց / գոյացել,
Ի յառաջ / հրաման / ու հիմն / է դրրել,
Զանդընդոց / խորութիւն / բանիւ / Նա փակել».
Տաղ Լէ.

Եւ կամ

Փափագել / եմ ի ջուրն՝ / յուսով / կու դընամ,
Թէ հանիմ / յայն աղբիւրն / որ կ'են / դանանամ.
Եւ խըմեմ / յայն ջըրէն / ու հետ / գոհանամ,
Թէ թողուն / մէկ պահիկ / որ յինք / լողանամ»:
Տաղ ԼԸ.

Այս նոյն չափովն է նաեւ հետեւեալ Տաղը՝ ԼԹ, որով մեր Երգչի մետասանոտնեայ տաղերի շարքն է փակւում:

Առաջ բերած չորս Տաղերի մէջ մեր Երգիչն անփոփոխ հետեւած է իւր չափին — 3 – 3 – 2 – 3 — առանց շեղուելու: Իրենից յետոյ եկող Երգիչների մէջ մետասանոտնեայ չափի այլ ձեւերն եւս նշմարելի են — 3 – 4 – 4 եւ կամ 2 – 3 – 3 – 3, ինչպէս տեսնում ենք Կոստանդին Երզնկացու Տաղերի մէջ.

«Կամեցայ / բանք մի քանի / խըրատ գրել,
Ով կամի / ինձ ի սըրտէ / ականջ դընել».— Կոստ. Երզնկ.
Քերթուած Ի. 3–4–4

Կամ

Սարխօշ / են դարձել / սրտերովն / ի մուրատ,
Ընդել / են բեռաւ / ւ՜ծանդր ի մեծ / դէշ մորատ.
Զունին / աչք մըտաց, / հային / սատ եւ անդ,
Զգիտեն / թէ կապել / կան ի յե՛ր / կաթ ու ի բանդ»:
Նոյն ԺԴ. 7. 2–3–3–3.

Տաղաչափութեան թէ այս ձեւը եւ թէ յաջորդ բառից մի կամ երկու վանկ փոխ առնելու կարիքը, որպէսզի իւր չափի կանոնաւորութիւնը պահպանէ, բուն Հայկական չէ, այլ հետեւողութիւն Արեւելքի մէջ իւր բանաստեղծութեամբ եւ բանաստեղծներով անուն հանած Պարսկական գրականութեան, որի մեծ ներկայացուցիչները ո՛չ միայն այդ չափով են յօրինած իրենց լաւագոյն երկերը, այլ եւ բառերի՝ նախորդի կամ յետնորդի տրոհումը,

որպէսզի չափը պահպանուի։ Եւ մեր բանաստեղծներից առաջինը Ֆրիկն է, որ իւր Տաղերի մէջ լայն չափով օգտւում է եւ այդ չափից եւ տրոհման ազատութիւնից, առանց իւր Տաղերի գեղեցկութիւնը կորցնելու։

«Որ պիտէր / Մարիա՛ / մըն մայր / կատարէր»․ Ա․ 94․
«Կամաւոր / Աղքատիկն / Ալէ՛ֆ / սիանոս»․ Ա․ 76․
«Դու խնդրեա / մեծութիւն / ու ա՛շ / խարհի սէր»․ Ա․ 96․
«Չէ մեղաց / կերպարա՛/ նըն կե՛ն/ դանի սէր»․ Ա․ 109․
«Ցայն հըրոյն / բորբեքեա / որ ի յան / ձըն հոգոյդ»․ Ա․ 110․
«Որ այրէ / փուշ մեղաց / ու տը՛ն / կի քեզ սէր»․ Ա․ 112․
«Մի լինիր / կեղծաւոր / ու ա՛նձ/ նահանոյ»․ Ա․ 113․
«Թէ դու ես / Քրիստոնեայ / եւ ա՛ստ /ուածասէր»․ Ա․ 114․
«Որ հասնիմ / յայն աղբիւրն / որ կե՛ն / դանանամ»․ ԼԸ․ 2․
«Աստեղաց / անմոլար / նանա՛ / պարի ցուցնել»։ Լէ․ 12․
«Հաւասար / իմ եղբարք / ամէ՛ն/ֆըդ օրհնիք»․ Լէ․ 94․
«Քաղցրալուր / ականջով / զբարբա՛ / ռըն լըսի»․ Լէ․ 96․
«Նորոգեմ / վերստին / քան ը՛զ/հինն Ադամ»․ ԼԸ․ 10․
«Երբ ձըգեմ / զմեծութիւնս / եւ ա՛ղ /ֆատանամ», ԼԸ․ 20․
«Երբ տեսոյն / Ցիսուսի / ես ա՛ր / ժանանամ»․ ԼԸ․ 30․
«Թէ հասնի / կաթ մի յոյս / որ ա՛ր / դարանամ»։ ԼԸ․ 34․
«Խըղճացիր / ծառայիս / որ չ՛ան /պիտանամ»։ ԼԸ․ 61․
«Եւ առնում / պահ մի յափ / եւ ո՛ւ/բախանամ»։ ԼԸ․ 75․
«Դու Աստուած / ես յաւի/ տենից / կենդանի»․ ԼԹ․ 4․
«Եւ անհաս / ես՛ւանքաւ / եւ ա՛ն/ տանելի»․ ԼԹ․ 6․
«Այս կամա՛ / բըս բոլոր / Քեզնով / կու պահուի»․ ԼԹ․ 8․
«Երբ Քո կա՛մ / ֆըդ, Աստուած / ի մեզ / խոնարհի»։ ԼԹ․ 22․
«Ընդ մարդիկ / շըրջեցար / երե՛ / սուն տարի»․ ԼԹ․ 26․
«Խիստ դըժար / այս բանս / ու զա՛ր / մանալի»․ ԼԹ․ 34․
«Դու քացախ / ո՞նց խըմես / կամ դա՛ / ռըն լեղի»։ ԼԹ․ 46․

Եւ այլն, նոյն Տաղի մէջ, ինչպէս եւ այլ Տաղերի մէջ, ճիշդ այնպէս, ինչպէս Օմար Խայեամն է տրոհում իւր բառերը, չափ ու կշռոյթին հետեւելով․—

«Տէրեապ / քի էզրուհ նիւ / տա խահի րէֆթ
Տէր բէրտէի / էսրարը խիւ / դա խահի րէֆթ
Խօշ պաշ նէտ / նի էդ քիւճա / ամէտէի
Մէյնուշ նէտա / նի քի քիւճա / խահի րէֆթ»․— (Օմար Խայեամ, Քառեակները, Փարիզ, 1904, էջ Լա․, Հմմտ․ Հ․ Մ․ Պոտուրեան — Կոստ․ Երզնկացի, էջ 19, Վնտ․ 1905), ուր առաջ բերուած բոլոր օրինակների մէջ

*տրոհուած բառերը նոտր գրով են աչքի ընկնելու համար**) ։

*Բ.*— Ութոտնեայ Տաղեր, *որի տաղերը կազմուած են* 4–4 // 4–4 *կանոնաւոր չափով.*—

*«Ով կու սիրէ / կուժ ու կըթխայ,*
*Դուստր ու որդիքն / յէգուց մուրայ.*
*Ոնց հարբենայ՝ / երթայ չընայ,*
*Անձամբ ի մէջ / մեղաց մընայ»*.— *Տաղ. ԺԲ.*

*կամ*

*«Շատ ոլրեցի / մարդու մորոյս,*
*Երեկ՝ ինձ բեռն / եղաւ դերոյս.*
*Շատ պարծեցայ / ՚ի վերայ ոսկոյս,*
*Սարվեմ, հաղնեմ / թաւ ու խնտուզ»*.— *Տաղ ԺԳ.*

*որոնց չորս տողերն եւս վերջանում են կանոնաւոր կերպով նոյն յանգերով։ Այս տեսակ Տաղերից են նաեւ Տաղ ԼԳ. եւ ԽԸ.*

*Ութոտնեայ տաղերի շարքին Ֆրիկն ունի եւ հետեւեալ կազմով ոտանաւորներ.*—

*«Երբ քեզ խըրատն / էր պատրաստած,*
*Սիրով ստեղծեալ / անդ էր դըրած,*
*Լուսոյ զգեստով / էր զարդարեալ,*
*Գըսակ լուսոյ / էր քեզ գուգած»*: *Տաղ ԺԱ.*

*կամ*

*Աստուած ահեղ, / անքըննելի*
*Անբաւ, անյայտ / ու՝ անժամանակ,*
*Աստուած անտես / ու՝ Ինքըդ տեսող*
*Ամենեցուն ես ժամանակ»*: *Տաղ ԼԴ.*

*Եւ կամ*

*Ով անմեղաց / հոր կու փորէ,*
*Ինքն անկանի / ի մէջ գըբին,*

*) *Պարսիկ գրականութեան չափ ու յանգի եւ տրոհումների նկատմամբ պիտի խուսափինք երկար կանգ առնել, որովհետեւ մեր ուսումնասիրութեան ծաւալը չէ արտօնում, սակայն հետաքրքրուողների համար պիտի կամենայինք մատնանշել հետեւեալ կարեւոր աղբիւրները.*— E. G. Brown: A Literary History of Persia from the Earliest Times until Firdawsi (1902). *Նոյն*։ A Literary History of Persia from Firdawsi to Sadi (1906). *Նոյն*։ A. History of Persian Literature under Tartar Domination. (A. D. 1265-1502) (1920). *Նոյն*։ A History of Persian Literature in Modern Times, (A. D. 1500-1924), 1924).

J. Darmestater: Les Origines de la Poesie Persane (1887).

Krymski: Istorya Persii yeya literatury i dervisheskoi theosofii. = Կրըմսկիյ —

Крымский: История Парсии, ея Литература и дервишской Теософии. Моск.

*Աչքի առաջ ունենալով նաեւ* Encyclopedie de l'Islam (*Հրատ.* Leyden, 1908), *յատուկ յօդուածներ Պարսիկ ականաւոր բանաստեղծների մասին*։

A. U. .W. Jackson: Early Persian Poetry, (1920).

Սուլտան աղան / թող իմացաւ,
Ապա քո գործքն / զ՞քեզ ս՞պանեցին ։ Տաղ. ԼԵ. 20–24.

Այս կարգից են նաեւ ԽԴ., ԽԵ. տաղերը։

Այս երկրորդ տեսակի ութոտնեաների մէջ աչքի է ընկնում այն երեւոյթը, որ քառեակի բոլոր տողերը նոյն յանգով չեն վերջանում։ Առաջին օրինակի մէջ 1, 2, 4 տողերը նոյն յանգն ունին, իսկ երրորդ տողը՝ ոչ։ Երկրորդ եւ երրորդ օրինակների մէջ, 2 եւ 4 տողերը նմանայանգ են, իսկ 1 եւ 3 տողերը անյանգ։ Տաղաչափութեան եւ ոտանաւորի այս ձեւն եւս ազդեցութիւնն էր Պարսիկ տաղաչափութեան եւ ոտանաւորի այս ձեւն եւս ազդեցութիւնն էր Պարսիկ տաղաչափութեան արուեստի, (որի օրինակը տեսանք վերը Օմար Խայամի քառեակի մէջ) նաեւ այն պարագային, որ մեր Երգիչը խոր եւ բազմակողմանի ծանօթութիւն ունէր Պարսիկ գրականութեան, բանաստեղծութեան հետ, ինչպէս տեսանք ուսումնասիրութեանս մէջ։ (Գլ. Գ. § 47–52)։

Ոտանաւորների այս ձեւը կոչւում է Դարբեդար՝ Գար. Լեւոնեան, (Ազգր. Հանդ. Գիրք XI, էջ 172). Հ. Մ. Պոտուրեան (Կոստ. Երզնկացի», «Քերթուածները», էջ 21) կամենում են բացատրել բանաստեղծութեան այդ ձեւն, իբրեւ ինքնայատուկ մի ձեւ «Դրանկ–աղքատ»ների, Թափառիկ–մուրացիկ, շրջուն դէրվիշների յօրինած կամ երգած բանաստեղծութեան։ Կարծում ենք, որ աւելի ուղիղ պիտի լինէր բացատրել այն նոյն դար պարսկերէն բառի իմաստով, դար+բէ+դար = դռնէ ի դուռն իմաստով, այսինքն ոտանաւորի քառեակի տողերի (=դռների) անկանոն լինելու ըմբռնումով, աղքատիկ ոչ լրիւ յանգ ունենալու իմաստով, ուր քառեակի ընթերցման ժամանակ ոտանաւորի սահուն, կանոնաւոր, նուագաւոր դաշնաւորութիւնը — cadence — յանկարծ ընդհատւում է, կտրւում իր հոսանքից՝ դար–ից եւ կրկին ընդունում կշռոյթի — rhythme, rhythmus — օրօրուն ձեւն ու համաչափ սահանքի գիրկը մտնում։ Մեր այժմեան իմաստով, ըմբռնումով՝ յանգի աղքատութիւն է, Պարսիկ բանաստեղծի ըմբռնումով՝ դար+բէ+դար = դռնէ ի դուռն ընկնել։ Կամաւոր, գրաւիչ, յանկուցիչ աղքատութիւն։

Գ.— Հնգետասանոտնեայ Տաղաչափութեան ձեւը մեր Երգչի ամենից աւելի սիրած ձեւն է, բայց ոչ սովորական ձեւերով, ինչպէս 3–4–4–4 կամ 4–4–4–3 եւ կամ 5–5–5 տրոհումներով, այլ մի նոր ինքնուրոյն եղանակով, այն է 7–3–5 կերտուածքով։

«Մինչ ածէ զմահն ու մաւտ է / եւ անո՛ / դորմ զըրաւըն գայ,
Ոչ ի ծեր կու խընայէ / ոչ ի մա՛ / նուկ եւ ոչ յերեխայ,
Չի քըննել կաթողիկոս, / եպիսկո՛ /պոս, ւոչ քահանայ
Չի քըննել թագւոր, իշխան, / ոչ զայնո՛ /սիկ որ կու մուրայ»։
Տաղ Թ.

Կամ

«Էյ, Զարխ, երբ ծըռխ մարդուն՝ /ուրն ի բուն / փորես Նորա հոր·
Ցորժամ կու քակես ըղմանդ / ու չթողուս, / որ դառնայ յոլոր·
Սահուն ու՞երերուն պահես / յաստընորս / ի գիլ ու՞ի գըլոր,
Կապիճ մի չարէ ցուցնես / թէ «Զայս լից / ի հող ւի ցընոր»:
Տաղ ԻԷ.

Եւ կամ

Կ'ուզե՞ս, որ ազիզ կենաս, / որ ամէն / մարդ ըզքեզ սիրէ·
Դու հողու նըման կացիր, / որ ամէն / մարդ ըզքեզ կոխէ·
Քան զերկաթն այլ ի՞նչ ամուր, / որ կըրակն / զինքըն կու հալէ·
Դու ջըրի նըման կացիր, / որ կըրակն / քենէ վախէ»:
Տաղ ԽԳ.

Տաղաչափութեան այս ձեւով են գրուած մեր Երգչի տաղերի մեծագոյն մասը, այն է Գ., Դ., Թ., ԺԵ., ԺԶ., ԺԷ., ԺԸ., ԺԹ., Ի., ԻԱ., ԻԲ., ԻԳ., ԻԴ., ԻԵ., ԻԶ., ԻԷ., ԻԸ., ԻԹ., Լ., ԼԱ., ԼԲ., ԼԶ., Խ., ԽԱ., ԽԲ., ԽԳ., ԽԶ., ԽԷ., ԽԹ., Ծ., եւ ԾԱ. տաղերը:

Ֆրիկի տաղաչափութեան այս նոր ձեւը, մի ինքնուրոյն, իւրայատուկ ձեւ է, որ այնքան եզակի էր թւում մեր մեծ բանասէր հանգուցեալ Նորայր Ն. Բիւզանդացուն եւ երբ Երգչի այդ suis generus տաղաչափութիւնը մատնանշեցի մեր խօսքի ընթացքին, գոհ մնաց հոգեւին, որ իմ ուշադրութիւնից եւս խուսափած չէր այդ տաղաչափական ինքնատիպ եղանակը: Այս նոր ձեւի իւր ոտանաւորների մէջ Երգիչը յաճախ ստիպուած է դիմել բառերի տրոհման, որպէսզի չափի ներդաշնակութիւնը պահպանէ եւ ոտանաւորի կշռոյթի դաշնաւորութիւնը չը տուժէ, որոնց օրինակները նոտր-գիր բառերով առաջ ենք բերած վերը՝ օրինակների մէջ:

Դ.— վեշտասանոտնեայ Տաղերի տողերը տրոհւում են 4-4 – / 4-4-ի,—
«Որք որ լըսեն / այս ողբերոյս // թող ըզմեղաց / սուգըն պահեն
Բաներ ասեմ / հաւանական, // որ դան գիտունք / ականջ դընեն·
Զոր դուք գիտուն / ազգ կու գիտէք, // Նոքա այլ խիստ / մեղաց տէր են
Հաւատք ունին / պայծառ, զերդ լոյս, // բայց ըզխաւա / րըն կու սիրեն».
Տաղ. Զ.

Կամ

«է, անուրէն / եւ անառակ // երիտասարդ / լըսէ զիմս դու·
Երբ ըզգըլո՛ւ / խըդ բանայիր // զքեզ ցոյց տայիր / մէջ բողերու,
Ցեկեղեցին / պիտէր բանալ // խոստովանիլ / Տեառն Աստուծու»:
Տաղ Ժ.

Եւ կամ

«Մեր միտքն անհաս / է այն բանին, // զինչ Նա ի մեզ / խոնարհեցաւ,
Տէրն ողորմած է / է եւ բարի // որ հանց պարգեւ / մեզ խոստացաւ·
Ֆըրիկն ի՞նչ հող / է եւ մոխիր, // որ այս բարոյս / Նա ցանկացաւ,

Այն, որ գործեաց / բազում չարիս // ւ՞ի մէջ մեղաց / նա կորուսաւ»:
Տաղ ԺԴ. 24–27.

Տաղաչափութեան այս ձեւերի Տաղերի թիւը շատ չէ, այլ մի քանի հատ,— Բ., Ե., Զ., Է., Ը., Ժ., ԺԴ.— Բանաստեղծութեան դաշնաւորումը — cadence — եւ կշռոյթը — rhythme — պահպանելու համար, այսպիսի Տաղերի մէջ եւս Երգիչն ստիպուած է բառերի տրոհման դիմելու, ինչ որ տեսնում է առաջ բերած օրինակների մէջ՝ նոտրագիր տառերով, ինչպէս տեսնում ենք հետեւեալ օրինակների մէջ եւս.—

«Վասն իմ բազում / մեղք ու չարին // զաւր ու գիշե' / բըն կու հողամ. Բ. 6.
«Զամէն մէկի / մեղք ցուցանեմ, // թող գիս անգէ'ռ / ֆըն քամահեն»: Զ. 9.
«Ֆըռանգն խեւ / եւ անթապգիր // ըզպոռնըկե' / լըն մեղք չասեն». Զ. 10.
«Թէ զԱւսն ասեմ / կամ ըղՁարքաղն, // այլուիկ յըՌո'ւ / սըն նըման են»:
Զ. 14.
«Տէրըն տայ ը'զ / պարգեւքըն ձեզ // զինչ որ է առ / աղքատ Ղազար».
ԽԷ. 43.
Մէկ մի իր դո'ւ / ռըն կու կենար»............ ԽԷ. 29.

եւ այլ բազմաթիւ օրինակներ, ցրուած իւր տաղերի մէջ, որոնց մէջ ո՛չ ներդաշնակութիւնն է վնասուած եւ ո՛չ չափ ու կշռոյթը կորած,— ազդեցութիւն, ինչպէս տեսանք, Պարսիկ Բանաստեղծութեան եւ Երգիչների:

Թէ նախորդ, հնգետասանոտնեայի, 7–3–5 եւ այս վեշտասանոտնեայ, 4–4 4–4, Տաղերը աւելի երկոտնեայ — distich — քերթուածներ են, իրենց ամբողջ կազմով, պարզ է, որ նոյնպէս հետեւողութիւն է Պարսիկ Բանաստեղծութեան եւ նորա ներկայացուցիչ մեծ վարպետների երկերի, ինչպէս են Շահ–Նամէ, Լուդաթ–ի–Փուրս, Գարշասպ–Նամա, Սամ–Նամա, Ջահանգիր–Նամա, Ֆարամուրզ–Նամա, Գուշասպ–Նամա (Ռուստէմի Ամազոն աղջկայ Պատմութիւնը )եւ այլ շատեր:

§ 5. Ֆրիկի տաղաչափութեան ձեւը, արտայայտութեան եղանակը, իւր արտաքինով եւ ներքին զգացումների անկեղծ ու անարուեստ,— կամ աւելի ճիշդ, արուեստականութիւնից հեռու կաղապարով,— այնքան բնական է եւ անբռնազբօսիկ, որ դժուար պիտի լինէր նորա տաղերի մէջ այլ, օտար ազդեցութեան հետք գտնել, եթէ հետախոյզ աչքն ու պրպտող միտքը իրենց դերը չկատարէին:

Եթէ մենք երկար աշակերտելուց եւ հիմնական ծանօթութիւններ ձեռք բերելուց յետոյ է միայն, որ կարող ենք երկու Վենետիկեան կամ Ֆլորենտեան, Յունական կամ Հռոմէական, Հոլլանդական կամ Սպանական, Ասորական կամ Եգիպտական, Հնդկական կամ Չինական նման գործեր իրարից զանազանել, ապա ժամանակի ընթացքին է, որ մեր աչքը աւելի դիւրաւ է կարողանում զանազանել Եւրոպական մի գործ Ասիականից, Վենետիկեան արուեստի արտադրութիւնը Ֆլորենտականից, Չինականը՝ Հնդկականից, Պարս–

կականը՝ Արաքականից, չը նայած դոցա մէջ եղած այնքան նմանութեան,— որովհետեւ մեզ համար պարզուած է այն գաղտնիքը, թէ այդ գործերի ու արուեստի արտադրութեան հմուտ վարպետը կարող է եղած տեսնել, զանազանել եւ հիմնովին իւրացնել տարբեր արուեստների նրբին, ինքնուրոյն յատկութիւնների փոխյարաբերութիւնը, հազար ու մի նրբին, հազիւ նշմարելի առանձնայատուկ կնիքը եւ իւր նոր հմտութեամբ, իւր սեփական, անպայման հեղինակաւորութեան անընդդիմադիր դրոշմը դնելով իւր նոր գործի վրայ,— այլ խօսքով, ըստ ամենայնի իւրացրել է միջավայրի տուեալները իրենց հազարաւոր նրբութիւնով, հազիւ նշմարելի՝ անընտել աչքին:

Միջավայրը բազմաբարդ մի ըմբռնում է, որը ակներեւ իւր մէջ է կեդրոնացնում, իբրեւ գոգաւոր հայելու հնոց, այն ամէնը, ինչ որ հեղինակի աչքի համար նորութիւն է, ամէն ինչ, որ գրաւիչ է նորա ականջին, բոլորը, ինչ որ անտես մի զսպանակից մղուած, անծանօթ իրեն՝ զարթեցնում են նորա մէջ նոր ոյժեր՝ քնած, հեռաւոր, նախահաւութեան օրէնքի եւ ոյժի կարողութիւններով օժտուն: Միջավայրը, ուր ոչ միայն երկրի եւ իրեն ծանօթ աշխարհի սովորական կեանքն է գրաւում իւր ուշադրութիւնը, բնական գեղեցկութեամբ, առանձնայատուկ գծերով, երկրի մշակութեան ինքնուրոյն եղանակով, արտադրութիւն ու բերքերի բազմօրինակ տարբերութիւններով, այլ եւ մի նոր հորիզոն է բաց անում նորա առաջ՝ ինքնատիպ մտաւոր մշակոյթի զարգացումով, հոգեկան ապրումների թռիչքներով, արտայայտութեան ուրոյն եղանակով, խոր իմաստութեան, դիտողութեան մի նոր կնիք ու դրոշմով,— մի կնիք, որ անպայման կրում են ամէնքը, գիտակցօրէն, թէ անգիտակից, ամէնքը, որ այդ երկրամասի մէջ են ապրում, համբերութեան խոր իմաստութիւն մտցնելով նոցա մէջ, մղում տալով փոփոխելու, բարելաւելու ամէն ինչ՝ մշակութիւնը, պայմանները կեանքի, առեւտրի, ռազմական գործի հմտութեան ու պայքարի, անձնական եւ ընկերական փոխ-յարաբերութիւնների, օրէնքների, արդարութեան ըմբռնման, վրէժի գործադրութեան եւ կամ ներումի բարձրացող հակման, կրքերի յորդումի կամ զսպումի ներքին վայրագ զազան ապրումների, գաղտնի ու թագուն կարողութիւնների, ազատ ապրելու կամ գերու դերի մէջ մնալու երկընտրանքի եւ այլ բազմապիսի ու յարաբարդ տուեալների, լեզուի նրբին ձեւերի ու արտայայտութեան նորանոր եղանակների,— որպէսզի այդ բոլոր այլազան տարրերի գեղեցիկ, ներդաշն համադրութեամբ կարող լինի կերտելու եւ ստեղծագործելու: Եւ այդ կերտողն ու ստեղծագործողը միայն այն անձն է, որ գիտէ հնազանդել միջավայրին միաժամանակ եւ նոյն միջավայրի պայմաններին՝ հրամայող կարող լինելու ձգտումով եւ ատակ կարողութեամբ:

§ 6· Եւ, եթէ այս յարաբարդ միջավայրը երբեք գոյութիւն չունենար, Յունական արձանագործի պաղ ու սառած մարմարիոնը երբեք պիտի կարող չլինէր խօսելու մեր սրտին ու մտքին՝ իւր որոշ ոճով, Ֆրանսիական կամ

Հոլլանդական արուեստի դպրոցի մի պաստառ կամ Ճապոնական մի գործ բացարձակապէս իրարից տարբերութիւն պիտի չունենային.— հետեւաբար անհետ կորած պիտի լինէր նոցա հետ եւ նոցա մէջ այն զօրեղ ինքնուրոյն կնիքի լեզուն ու չեչտը, ոճի ինքնայատուկ, հետաքրքրական առանձնական դրոշմը, հետեւաբար եւ մարդկային հետաքրքրութեան իմաստն ու արժէքը: Մեր մտքի ինքնուրոյն տարբերութիւնն է, մեր արուեստի առանձնայատուկ բազմազանութիւնն է, որ մեզ ամէնքիս՝ այլազան մտածումներով ու ձգտումներով, տարբեր ճաշակով ու պահանջներով՝ անձերը միացնելու, ի մի զօդելու գաղտնիքն եւ ոյժն է բովանդակում իւր մէջ,— որովհետեւ մենք իրար ենք մօտենում, ոչ թէ ժխտելու միւսի ինքնայատուկ էութիւնը, այլ ուսումնասիրելու, փոխ առնելու մեր սրտին ու մտքին խօսող գծերն ու երանգները, մեր աղքատ, ո՛չ լրիւ գոյների երանգապնակին մէջ աւելացնելով նոր գոյներ, սկզբնապէս փոխ առած, սակայն յետոյ դարձրած մերը լիովին՝ մեր ներքին աշխարհի աւազանին մէջ վերամկրտելով այն: Եւ պիտի չմոռանանք, որ ուսումնասիրելով է, որ կարող ենք երեւան հանել տարբերութիւնների մէջ մեզ իրար զօդող, ամուր կապող նմանութիւնների անտես զօրութիւնը:

Եւ պէտք է ասենք, թէ որքան մեր նմանութիւնն աճում եւ մօտենում է, այնու ամենայնիւ այդ տարբերութիւններն եւ ինքնայատուկ առանձնադրոշմ գծերը միշտ էլ գոյութիւն պիտի ունենան եւ նոյն իսկ ցանկալի է, որ միշտ էլ պահպանեն ինքնայատուկ տարբեր գոյութեան էութիւնը եւ մնան ե՛ւ կեանքի, հետեւաբար ե՛ւ արուեստի մէջ, ինչ ձեւ ու գոյն էլ ունենայ այդ արուեստը, բանաստեղծի գրաւիչ լեզուով, քանդակագործի կերպընկալ ձեւերով, նկարչի ու ճարտարապետի հմայիչ դրչի ու գչիրի առինքնող գծերի համադրութեամբ:

§ 7. Միջավայրի խոր ազդեցութիւնը տեսնում ենք նաեւ Ֆրիկի տաղերի վերայ: Իւր ծանօթութիւնը շրջապատի կեանքի ամէն խաւերին՝ ակնյայտնի է իւրաքանչիւր տաղի մէջ: Հմուտ է վարդապետի չափ Ս. Գրքին, նորա պատմութեան (ԻԲ. 23–24, Լ. 10, ԼԴ.)*), աւանդութիւններին (ԼԴ.

*) Մեր Երգիչն այն սիրոյ երգիչներից չէ, որոնց ծանօթութիւնը Աստուածաշնչի յայտնի «Օձի եւ Եւայի Պատմութեան» մասին բոբիկութեան հասնելու թերութեամբ իսկ, չէ քաշւում հանրութեան առաջ այն ցուցադրել, երգելով,—

«Իմ եար, քե վատ չեմ ասեր,
Դու հիմի է՞ր ես խռովել.
Ղամազ մի կայ ի մեր միջին
Քեզ ղալատ է հասկացուցեր:
Ղամազն է ի Օձ Նըման
Որ զԱդամ է ղալտեցուցեր.
Խարեր, դըրախտէն հաներ,
Ու՜ի լուսոյն է մերկացուցեր:—

Արիստ. Վրդ. Տեւկանց.

Հայերգ, Մեղեդիք... Թիֆլ. 1882.— Անահիտ, 1907, էջ 135.— Ձր. 176, Վ. Մխթ. Մատնդր.:

160–163, 219, *ԼԹ*. 38, *ԺԲ*. 82, *ԼԴ*. 172–177, 218–219, 230–234, *Թ*. 21, 31 *եւն.*), *Եկեղեցու Վարդապետութեան, մարգարէութիւններին, Ս. Գրքի արտայայտութեան եղրներին, ոճերին* (*ԻԴ*. 42), *ձեւին եւ կառուցուածքին, Եկեղեցու ժամապաշտութեան* (*ԺԴ*.):

*Նոյնքան խոր ծանօթութիւն ունի եւ Հայ պատմութեան անցեալին ու ներկային տեղի ունեցած անցքերին՝ այնքան մանրամասն, որ եւ ոչ մի պատմիչ տուած է նորա Տաղերից միքանիսի մէջ ցրուած պատմական յուշ ու անցեալի ծանօթութիւնները, ինչպէս օրինակ, Տաղ ԼԵ.* «Վասն Արղուն Ղանին եւ Բուղային», *քաղաքական անցքերի, դէպքերի եւ անունների յիշատակութեամբ, որոնք այլ տեղ յիշատակուած տեսնել չենք կարող:*

*Ունի ակնարկներ, յաճախ մի տողով, որոնք ժամանակի բարքերի, նիստ ու կացի ո՛չ միայն ճիշդ հայելին են, այլ եւ թանգարժէք տուեալներ, իբրեւ անցեալի կենցաղական գծեր,—*

«*Շատ մի ծառայ* Ղըփչախ ւըռուս,

*Ժողովեմ բարիք տուն ւի դուրս*»: *ԺԳ*. 12.

*նոր ազգութիւններ ու ցեղեր, որոնք քաղաքական դժբախտ բերումներով ընկած էին Հայոց երկիրը եւ կամ իբրեւ գերիներ եւ կամ իբրեւ ծառաներ էին իրենց նոր տէրերի ձեռքին ու տան մէջ: Յայտնի է, որ Թաթարների շրջանին բազմաթիւ Հայեր գերի տարուեցան* (*Գլ. Բ.* § 12), *բայց թէ Հայաստանի մէջ եւս գերիներ կամ պատերազմական աւարի հետեւանք* Ռուսներ *եւ* Ղփչաղներ *այնքան մեծաքանակ թուով բերուեցին, որ «շատ մի ծառաներ» այդ ազգի զաւակներից էին, այս նկատմամբ առաջին տեղեկութիւն տուողը մեր Երգիչն է:*

*Այդպիսի անցողակի, բայց նոյնքան կարեւոր մի տեղեկութիւն է նաեւ նորա հետեւեալ տողը,—*

«*Աղէկ վաճըռկան պիտի՝ տասնէն մէկ կարէ շահենալ*»,

*ԻԳ*. 38.

*ինչ որ ժամանակի կենցաղական ծանր պայմանների ցոլուն մի պատկերն է. Հայը՝ իբրեւ Արեւելքի մէջ ծանօթ իւր առեւտրական կարողութեամբ ժողովուրդ, նորա ոտքը իւր հայրենիքից դուրս բազմաթիւ օտար երկրների հող էր կոխում, իւր բուն նպատակին ձգտելով, օգտուիլ առեւտրական ձեռնարկներից: Առեւտրական անձը, բնական է, պիտի չգոհանար իւր ձեռնարկի մէջ միայն տասը տոկոսի շահով: Բայց մեր Երգչի ապրած օրերն ու շրջանն այն շրջանն էր, երբ կեանքի ու գոյքի, ստացուածքի ու ինչքի անապահովութիւնը մինչ այն աստիճան մեծ էր, որ* «աղէկ վաճըռկանն» *անգամ, ճարպիկ ու ճըկուն, պայմանների առաջ խոնարհուող՝ պիտի բաւականանար այդ, համեմատաբար փոքր շահով գոհանալու դրութեան, այն եւս իւր մտքի եւ կարողութիւնների ամբողջ զինարանը հրապարակ հանելով:*

*Ընթերցողն այսպիսի տողերի շատ պիտի հանդիպէ նորա ԴԻՒԱՆԻ*

մէջ, որոնց բոլորի ի մի հաւաքելու գործը մեր նպատակից դուրս է։

§ 8. Ֆրիկն իւր Տաղերի մէջ ոչ միայն հմուտ Երգիչ է կրօնական բանաստեղծութեան ճոխ գանձարանի բոլոր տուեալների, այլ նաեւ խորհող ու փիլիսոփայ,— բնականից, թէ կեանքի պայմանների արդիւնք, մեզ համար միեւնոյնն է,— գաղափարականի ու ձգտումների աշխարհի մէջ ապրող հոգի, որը գիտէ եւ ընդունակ է իւր ներքինն արտայայտել մի-երկու տողով, բայց հրապուրիչ ու բանաստեղծական ապրումների դրոշմով.—

«Հանց մեծամեծ խորհուրդ արի,
Որ յաւիտեան ոչ կատարի»: Ը. 3.

Ի՞նչ էին այդ խորհուրդները, դժբախտաբար ասել դժուար է, որովհետեւ իւր կեանքի պայմանները եւ միջավայրի ու շրջանի օրերն այնքան դառն էին, որ հազիւ Երգչին պիտի թողնէին իւր երազներով ապրելու մխիթարութիւնն ունենալ։

Մեր Երգիչը, ոչ թէ մեծամտութեան հովերով տարուած, այլ սոսկ իւր սեփական ոյժի ու կարողութեան գիտակցութեամբ մղուած, երգում է,—

«Ես այն հաւերուն էի, որ գետինը կուտ չուտէի,
Թռչի, երկնաւքն անցնի, թէ սիրուն՝ ակնատ չընկնէի.
Ակնատն ի ծովուն կըղզին լարած էր ու՞ի ես չի գիտէի,
Ամէն հաւք ոտաւքն ընկնէր, ես ոտաւքս ու թեւըս աւելի»:
ԽԳ. 23–26.

ուր եւ սեփական ոյժերի գիտակցութիւնն է ցուցադրած եւ իւր «աշխարհի» իմաստութեան անտեղեակ լինելու անփորձ, անգործնական լինելը։

Եւ եթէ այդպէս էր, «աշխարհիս բաները», ի՞նչ արժէք ունի իւր «գետին կուտ չուտելու» անզիջող խոյանքը, որովհետեւ

«Բազան ի յանտառ՝ մորին, թէպէտ բու, թէպէտ բազայ է,
Գոհարն ի ծովին միջին՝ թէպէտ քար, թէպէտ գոհար է»,
ԽԳ. 17–18.

այսինքն միջավայրի, կենցաղական պայմաններն այնպէս են, որ ո՛չ բազէն է գնահատւում եւ ո՛չ մարգարիտ ու գոհարն է արժէք ունենում, քանի որ նոցա արժէքն իմացող չը կայ։

Սակայն չը նայած կենցաղի դժուարին պայմաններին, նորա մէջ ապրում է չարունակ ձգտումի, մեծամեծ խորհուրդների նկրտումը,—

«....... Խնդրեմ այն գոհարն, որ փարթանամ,
Ու տեսնում իմ մտաց աչաւքն ու դողամ.
Ով բերէ զինքն առ իս, որ պահ մի խընդամ,
Կու քաղի չունչս յինէն, թէ ե՞րբ մաւտենամ
Եւ առնում պահ մի յափս եւ ուրախանամ
Եւ հոգով ու մարմնով ես անմահանամ:
ԼԸ. 71–76.

Որովհետեւ՝

«Գիշեր ու ցորեկն ի բուն՝ հոգոց ծովըն կու ծըփամ»․

ԽԱ․ 22․

Հոգեկան այս բարձր ձգտումները իրականացնելու անհնարաւորութիւնը յաճախ նորա մէջ առաջ են բերում լքումի րոպէներ եւ առանց տատանուելու եւ քաշուելու յայտնում է,—

ԽԱ․ 22․

«Անալի է դարձել իմ միտքս ու անհամ»,

ԼԸ․ 48․

որովհետեւ կեանքը իբրեւ դրուժան ընկեր, ամէն րոպէ խաբող ու խարդաւան՝

«Ձնեռըն մահու ձըգէ ու զաղեղն դառնայ պահէ,
Զարինդ դէտ ջուր վաթէ՝ դառնայ մէկ խաւսաւք վըճարէ»,

ԽԳ․ 29, 30․

որի հետեւանքն է այն երեւոյթը՝ տակն ու վրայ եղած պարագաների ապարէզ կեանքի մէջ, որ

«Զառիւծն ի գընճիլ դըրած ու՞ի չոպան կու տան, թէ՝ «Քաշէ՛»։

ԽԳ․ 11․

Կեանքի փորձութիւնների բովից անցած մեր Երգիչը դարձել է այդ բովի մէջ թրծուն իմաստուն եւ նորա փորձառու միտքը տուել է տողեր, որոնք մի–մի ժողովրդական առածի պատկեր ունեն,—

«Կռուոյ ժամն երկաթն է լաւ, քան զոսկի, ակունք պատուական»։

ԾԱ․ 26․

Կամ

«Աշխարհիս իմաստունն է լաւ, քան զգանձ անցական»։

ԾԱ․ 27․

Եւ կամ

«Գործով երեւի խելաւքն, ասելով չապրի մշակ»։

ԻԵ․ 45․

Ունի տողեր, որոնք մի–մի կենդանի պատկերներ են արտայայտութեան ձեւով՝ հակիրճ, իբրեւ կերպընկալ ձեւ՝ ինքնուրոյն, խառն դաշնաւոր շարժումի հետ, ինչպէս՝

«Պաղէ պարիսպ՝ ալեաց դեզակ»․— ԼԴ․ 111, ուր զգում ենք յորձանուտ ալիքների իրար վրայ կուտակումը եւ մոգեկան մի ոյժով փոխակերպուած սառոյցէ պարսպի՝ անշարժ, բայց լի ներքին մղիչ մի ոյժի շարժումով։

Կամ

«Զինչ գեղունք գեղեցիկ կանայք է ստեղծել,
Աշխարհի շինութեան պատճառ հրամայել»։

ԼԷ․ 35–36․

ուր կինն է պատկերանում իւր գրաւիչ արտաքինով՝ յարաշարժ ու փխրուն,

բայց իւր բուն նպատակի՝ սեղծագործելու հմայքով օժտուն:

Քաջ վարպետ է հակադրութիւնների, որի լաւագոյն օրինակը կարող է ծառայել Ժ. Տաղը, ուր իւրաքանչիւր երկտողեան — distich — հակադրութեան մի–մի պատկեր է՝ կենդանի, գունագեղ, անբռնազբօս եւ միջավայրի հարազատ հայելի:

«Ծըրթունքըդ ծուխ էր ժողովել՝ պագչոտ էիր հետ ամենոյ,
Քեզ համբուրել պիտէր յուսով ի նշխարաց մարտիրոսու.
Դու զատամունքդ կըրճըտէիր զինչ նենգաւոր, հարբած ուղտոյ,
Քաղցըր պիտէր զինքըդ բանալ՝ անուշ խաւսել հետ սիրելոյ:
Ձլեզուդ մըխել ես չար ու սուր, չես ճանճրանալ յիշոց տալոյ,
Փառաբանող ստեղծած է դա՝ զտիւ եւ զգիշեր զառաւաւտու...
Սիրտըդ լըցած է նենգութեամբ՝ զերդ գազանի, զինչ զգայլոյ,
Ձինքդ ողորմած պիտէր պահել դէմ աղքատաց եւ որբերոյ...
Ծընկներըդ խոց կացել համակ ի հետ մեղաց չատ դատելոյ,
Ծընրով պիտէր զինքըդ տեռել մէջ գիշերաց աղաւթելոյ....

եւ այս ոճով ամբողջ տաղը՝ հակադրութիւնների մի–մի գեղեցիկ պատկեր, բացասականը դրականով լրացրած ու ճոխ յեռումով:

Նոյնքան եւ նուրբ հեգնող է նա՝ լաց ու արցունքի միջից ներքին բաւականութեան ժպիտը ցոլացնելով,

«Երբ նստէաք ի հրապարակ
Ամէնն զմեզ ծիծաղէին.
Հանց բարեւես աչուի ունիք (= ունէաք),
Որ նոքա այլ գլխավայրին». Տաղ ԼԵ. 104–107

Եւ այսպէս նաեւ այլ բարեպատեհ առիթների մէջ:

§ 9. Իւր ժամանակակիցներից եւ ոչ ոք, անշուշտ, կասկած ունէր, թէ մեր Երգիչն էր իւր Տաղերի բուն իսկ հեղինակը: Սակայն, որպէսզի ապագան ու եկող սերունդը եւ ո՛չ մի կասկած ունենան, սիրում է ընդգծել իւր, իբր հեղինակի իրաւունքը, տակը իւր անունով վաւերացնելով այն.—

«Տէր կենդանի է եւ աւրհնեալ,
Որ չէ այլոց բանիս ասացած.
Ձինչ զծաղիկ եմ ժողովել
Քան զմարգարիտ պայծառ շարած.
«Թէպէտ յերկար բան կու խաւսի՝
Ցըրիկն ասել է ի մըտաց»... ԺԱ. 264–269.

Մեր Երգիչը ոչ միայն իւր երգերն ու տաղերն ինքն էր յօրինում, այլ եւ երգում էր անձամբ «ժողովներ»ի մէջ, այսինքն խնճոյքի պահերին, երկու նպատակով. նախ՝ որ իւր յօրինած երգերը տարածուէին՝ սովորելով, իւր «բաները», խօսքն ու երգը «ի միտ եւ ի հոգի», դրուէին, եւ ապա, խրախ–

ճանքի պահերն անցնէին հայկական սովորութեամբ՝ երգ ու գինով, որոնցից ինքն եւս հեռու չէր։

«Դուք ուրհնիք յԱստծոյ, եղբարք սիրելիք,
Թէ զընէք զայս բաներս ի միտ 'ւի հոգի.
Եւ աղէկ իմանայք, թէ զինչ կու խաւսի։
Դուք զփառս Աստուծոյ ճըստող ի գինի
Եւ ուսիf, որ կարդայf ի մէջ ժողովի
Եւ լինիք զովելի դուք փոքր ու մեծի»։ ԼԹ. 71–76.

Այս էր նոյն օրերի եւ ապա նաեւ յետոյ, երկար դարեր, Երգչի տաղերի եւ երգերի տարածելու, ուսուցանելու եղանակը մինչեւ մեր օրերն անգամ, երբ Աշուղ Ջիւանին նստած Գիւմրիի սրճարանների մէջ, իւր սրտի ու հոգու տաղերն էր երգում, չուրջը ժողովուած «մեծ ու փոքր»ի մտքի ու հոգու մէջ տպաւորելու եւ տարածելու համար իւր «Ձախորդ Օրերն»։

Մի այլ տեղ մեր Երգիչն ասում է.—
«Աւրհնեա' զամէն Քրիստոնեայքս, եւ ըզժողովս, որ կու լըսեն»։
Զ. 84.

Նորա էական ցանկութիւնն էր, որ ունկնդիրները սովորեն եւ «կարդան», այսինքն երգեն եւ տարածեն,—

«Ով կարդայ զայս բաներս եւ ինքն ըլմբռնի
Թող յիշէ զանարժանս աւրիկ մի բարի։ ԹԼ. 69–70.

կամ

Աստուած աւրհնէ զայն կարդացողն, որ ըզՖըրիկըս յիշե-
նայ. Թ. 69.

Եւ կամ

Աստուած աւրհնէ զայն կարդացողն, որ իմ խըրատս առ ինք
մընայ. Թ. 60.

այսինքն, որ իմ երգածս, իմ տաղերս իւր մտքի մէջ պիտի պահէ, «առ ինք մնայ» եւ տարածէ այն երգելով, կարդալով։

Երգիչն այդ օրերին, իւր բուն իսկ կոչումով, կոչուած էր Աստղ, որից եւ յետոյ, ըստ մեզ, դարձել է յայտնի Աշուղ ազաւաղումը։

«Գերի Ֆըրիկ, ողորմելի
Խաւչ ես ասեր զբաներս ի չար.
Ջի աստղաց մեղքն է թողած
Եւ լըստղացըն հաւասար»։ ԽԴ. 101–104.

ուր «ասեր» չէ նշանակում միայն յօրինել, կազմել ստեղծաբանել, այլ եւ երգել, որից եւ Աստղ = Երգիչ Աշուղ։

«Եւ աստղաց մեղքն է թողած եւ լըստղացըն հաւասար» արտայայտութիւնը յիշեցնում է մեզ մինչեւ այսօր իսկ մեր ժողովրդական հեքիաթներ պատմողների վերջաբան խօսքը՝ «Երկնքից երեք խնձոր ընկաւ, մէկն՝ Աստ–

գին, մէկը՝ Լսողին, մէկն էլ Անուշին (= տան փոքրին)։ Եւ կամ Մշոյ Դաշտի մէջ պահպանուած շատ աւելի բանաստեղծական արտայայտութիւն քառեակի բառերը.—

«Հաւք մի իջաւ յերկընուց,
Օսկի խընձորն էր կըտուց.
Մէկն՝ Ասողին, մէկ լըսողաց,
Մէկ լէ էս տան հալւորաց»։

(Տես մեր «Կամուրջը Շուշանի» աւանդավէպի «Նախաբան»ը, § 94 եւ Աւանդապատումի ԾԺԶ.)։

Ասող եզրը, ինչպէս տեսանք (Գլ. Գ. 49), միայն պատմող չէր նշանակում, այլ նաեւ Երգող եւ շատ հաւանական է, որ մեր հէքիաթները, իբրեւ մնացորդներ աւանդապատումների, ոչ միայն հասարակ պատմուածք էին, այլ աւելի երգուող, որոշ եղանակով արտասանուող սաերգներ — recitative — որով բնական է, սաերգը սաւում էր, երգւում էր եւ այն անձը, որ այդ դերն ունէր՝ բնականաբար եւ Ասողն էր, Երգիչը = Աշուղը յետին շրջանների*)։

§ 10. Թէ ի՞նչ եղանակով էին երգւում այդ երգերն իրենց յօրինող բանաստեղծ-Երգիչների կողմից և ոչ մի հնարաւորութիւն ունինք նշելու։ Մի բան պարզ է։ Որոշ երգեր, որոնց չափը համապատասխանում էր երգուող տաղի որոշ մի չափին եւ որի եղանակը ծանօթ էր ժողովրդին, տարածուած՝ երգւում էին այդ երգերի եղանակով։ Այս մասին ունինք որոշ ցուցում նոյն իսկ Ցրիկի Տաղերի վերնագիրների տակ, իբրեւ ցուցում, ծանօթութիւն։ Այսպէս

*) Աշուղները կամ Երգիչ, Ասողները միշտ էլ առանձին յարգ ու պատիւ են ունեցած, ոչ միայն այն պատճառով, որ միշտ էլ մի նորութիւն էին բերում,— մի նոր երգ, Տաղ Սիրոյ, Հարսանեկան, հովուերգակ զեղումներ եւ այլն,— այլ աւելի եւս այն պատճառով, որ հնութեան, Նախնի Աւանդապատումների, հերոսական պատումների, երգի եղանակի եւ երգելու ձեւի մոլեռանդ հաւատացող, աւանդապահ պահակներ են եղած, ոչ միայն մեր աշխարհում, այլ ամէնուրեք, Ե՛ւ Արեւմուտք, Ե՛ւ Արեւելքի մէջ։ «Ասողի — Երգչի gleeman "հին Անգլօ - Սաքսոն gleo, gleow = glee = երաժշտութիւն եւ man = մարդ, այսինքն Երգիչ) այցելութիւնը մի ուրախառիթ պատահար էր Թագնի (=Thegn = Than) ընտանեկան շրջանի եւ կենցաղի համար։ Դժուար էր բարեացակամ վերաբերութեամբ չընդառաջել նորան, որը միակ պահապան հսկողն էր հին, բարի անցեալ օրերի բանաստեղծական աւանդապատում մնացորդների եւ նոցա պատմելու եւ սանելու (= երգելու) եղանակի, որոնք դըժբախտաբար անհետում, մաշւում են ժամանակի մակընթացութեան հետ։— J. R. Green: Cong. of England, p. 324:

Աշուղների ոտքն ամէն տեղ ազատ մուտք ունէր ժողովրդի համեստ ու անշուք՝ օդաների սաֆուից, մինչեւ մեծազօրների պալատը, մինչեւ ազատորեանների տաճարը եւ տիկինների սրահակները։ Տեսնել կարելի էր, պատմում է Մարկոս Պօլոն, թէ «Մեծ Խանի պալատի մէջ ինչքան բազմաթիւ Երգիչներ — gleeman -- եւ կատակաբաններ — juggler — կային անվերջ». Marco Polo: Trawel. Trad. by Yule, II, 54:

Տաղ Է․ը «Մինչ դեռ ոչինչ էր գոյացել», երգւում էր «Ադամ» ձայնով, այսինքն «Ադամ նստէր» երգի եղանակով։ Տաղ. ԻԳ․ը «Իմ սիրտ, վառին մի լըսիր» եւ Տաղ ԻԷ․ «Է Զարխ, երբ ծըռիս մարդոյն» երգւում էին «Երազ է եւ սուտ, եղբարք» յայտնի տաղի եղանակով։ Տաղ ԺԲ․ «Ով կու սիրէ կուժ ու կըթխայ» եւ Տաղ ԽԴ․ «Աւրհնեալ անուն Արարաւդին» տաղերը երգւում էին «Յիսուս Որդի» տաղի եղանակով։ Տաղ ԽԵ․ «Է՞ր չես երթար ի միտքդ ի վար» երգւում էր «Այրն զէնզ տղայ»ի եղանակով*)։

Մեր Երգչի գրուած եւ առ այժմ մեզ յայտնի յիսուն եւ մէկ տաղերից միայն վեցի նկատմամբ դրական ցուցումն ունինք, թէ երգւում էին «ժողով»ների մէջ։

Իսկ մնացածնե՞րը։ Չէի՞ն երգւում։ Բաղաձայն, անկենդան, չը կարդացուող տաղե՞ր էին։ Եւ ամենամեծ հաւանականութեամբ մեր Երգիչը, ոչ միայն իւր Տաղերը

«Զինչ ըղձաղիկ էր ժողոված,
Քան զմարգարիտ պայծառ՝ շարած»,

այլ եւ իւր «Բանքն ասացած» ինքն էր հօգացած թեւեր տալու, թռցնելու, տարածելու, իբրեւ սեփական տաղերի եղանակի յօրինող, ուրեմն եւ մեր առաջ ներկայացնող իւր երրորդ դերով, իբրեւ երգահան, նուագայօրդար — composer-compositeur — «խաղ-կապող», ըստ ժողովրդի արտայայտութեան։ Եւ եթէ այդպէս են եղած բոլոր դարերի եւ շրջանների մէջ մեր յայտնի երգիչ-բանաստեղծները՝ Սայաթ Նովայ, Միսկին Բուրջին, Աշըղ Շիրին, Ազբար Աղամ, Մայիլ Մաղաթ, Զարզար, Նարիման, մինչեւ Ջիւանի, ինչո՞ւ զլանալ նաեւ մեր Երգչին իրեն ըստ ամենայնի պատկանող փառքը։

Զրի՞ ենթադրութիւն։

Չենք կարծում։ Քիչ վերը չէ՞ր, որ մեր Երգիչն ինքը տուեց կողմնակի կերպով այդ ապացոյցը, պնդելով, թէ

«Չի առդաց մեղքն է թողած
Եւ լըսողացըն հաւասար»․

եւ այդ օրերն այն օրերը չէին, որ երգիչն ու բանաստեղծը իւր հետ իւր յատուկ երգահան, նուագայօրդարը պահեցնէր իւրաքանչիւր նոր երգի նոր եղանակ յօրինելու համար։

§ 11․ Տարիների ազդեցութիւնը Ֆրիկի ներքին ապրումների վրայ, թւում է, շատ էլ մեծ փոփոխութիւն չէ կրած, որովհետեւ, ինչպէս ինքն է ասում,

«Զինչ Տէրն երետ՝ հերիք չածի,
Ա՛յլ մեծութեան սիրտ ունէի…
Այն բազային եմ նըմանի,
Որ փոքր որսի ոչ հաւանի»․ Ը․ 9–11․

*) Հմմտ. Գլ. Գ. § 51։

եւ այդ ներքին ձգտումը՝ միշտ դէպի լաւագոյնը, դէպի «այլ մեծութիւն»՝ նորա սրտի անընդհատ բաղձանքն է եղած: Բաղձանքի այդ բոցը, երբեմն լաւագոյն պարագաների եւ երբեմն բախտի յոռեգոյն շրջանների մէջ չէ՛ թողած նորան, չը նայած, որ փորձութիւններով լի տառապանքի միջավայրը խոստովանել է տալիս մեր Երգչին, թէ

«Ով որ ածի աչքն այլ մեծի
Բեստէ կենայ զաւրն անաւթի»: Ը. 14.

Սակայն եւ այնպէս այդ ձգտումը, իբրեւ ներքին պահանջ, որից նա ազատուելու հնարաւորութիւն չունի, տեւում է մինչեւ կեանքի ընթացքի խոնարհուող օրերը, սկսած այն օրերից, երբ երգ էր յօրինել եւ երգել ուսած, շարունակուելով մինչեւ ձիւնը երեսն ու գլուխը պատելու շրջանն ու օրերը:

Ուրիշների հետ ինքն իրեն եւս խարազանելով, ասում է,—

«Փոխէ զքեզ ի յայդ կերպէդ,
Երբ դարձաւ սեւ մազդ ի սպիտակ»:
ԻԵ. 25.

Մի այլ տեղ, թերեւս ափսոսանքը խոր թաղուած ծերացող ու ապաբախտ Երգիչ–հօր սրտում, երգում է,—

Ալիքս ի դեղին դարձեր,
Նայ, մեղաւքս այլուի սեւացայ»:
ԺԱ. 8.

Դադարել երգելուց, ստեղծագործելուց եւ «ժողովներ»ի մէջ իւր տաղերն ասելուց, հնարաւոր չէ նորա համար, որովհետեւ մի ներքին տաչարբոց, այրող ու կիզող, դրդում է նորան՝ իւր ներքինը հրապարակ դնելու, իրան տուած լոյսին բաժնեկից դարձնել եւ ուրիշներին: Նա զգում է, որ

«Այս յԱստուծոյ տուած ինձ լոյս,
Մի՛ զարմանար այս բաններոյս...
Մըտացս երես կանթեղ մի լոյս
Որ առաջնորդ եղաւ կուրոյս...
Գիտեմ այս չէ յինէ՝ հողոյս,
Հոգին շնորհք երես ծերոյս.....
Երաց ի յիս զականջ հոգուս
Որ ես նայել կարեմ ի լոյս»..... ԺԳ. 30–44.

եւ ուրիշներին եւս բաժնեկից դարձնեմ այդ լոյսին:

Ապրելու, հոգեկան կեանքի ապրումներով ընդ միշտ մնալու այդ ձըգտումը լաւագոյն կերպով արտայայտում է նորա Գ. Տաղի մէջ, ուր կարող ենք տեսնել, զգալ Բանաստեղծի հոգու տառապանքի եւ ձգտումների հայելին: Այդ Երգը գրուած չէ ուրիշների համար, այլ հզօր ժայթքումն է իւր ներքին աշխարհի ջրվէժ որոնումների:

«Առաւօտ խաղաղութեան,
դէմ Քո լուսոյդ ես կու մընամ,
Զինչ ըղձուկ յաղի ծովէս՝
քաղցըր ջըրիդ ի դէմ կու գամ…
Ո՛չ ոսկոյ, ո՛չ արծաթոյ,
ո՛չ աշխարհիս կու ցանկանամ…
Զիս տնկեա՛ յերկիր բարի,
որ ես հաստատ արմատանամ,
Զիս յաւդէ, ու՜ի խոր բըրէ,
որ զարթնչիմ ու դուարթանամ,
Խաղաղացո՛ ջուր կենդանի
յոստըս սըրտիս, որ կակղանամ,
Ոռոգէ յորդ վըտակով,
որ կանաչիմ ու մանկանամ,
Մի թողուր զիս անտերեւ
եւ անծաղիկ, որ գոսանամ,
Զիս սընո՛ եւ դարմանէ,
որ ի ժամու պըտուղ Քեզ տամ.
Ցանջըրդիս եմ ցամաքեալ,
ամպ չի ցօղեր՝ զուարթանամ»…։
Գ. 13–49.

Այս տողերի մէջ մեր Երգիչն երեւում է իբրեւ բանաստեղծ, որ ոչ միայն իր ներքին ապրումները պատկերացնելու կարողութեամբ, իր ձգտումներն ըղձալի դարձնելով հանրութեան, այլ եւ մի անձն, որ մի նոր ուղի է բանում, հարթում իրենից յետոյ եկողների համար՝ լեզուի կառուցման նոր եղանակով, կառուցուածքի նոր ձեւերով, ինքնուրոյն, բայց ամէնքի համար հասկնալի ոճով, պատկերաւոր արտայայտութիւնների յարափոփոխ գեղեցիկ չղթայի զօդերով յեռուած։

Միջնադարեան մեր Բանաստեղծների առաջնորդ ու ռահվիրան է Ֆրիկը։

§ 12. Բանաստեղծը, մեր ըմբռնումով, այն անձն է, որ ի մի է բերում, միացնում եւ որոշ արտայայտութեան ձեւ տալիս, իրական ու չօշափելի դարձնում այն գերագոյն ապրումների, վշտերի ու տուայտանքի ճիգերի գումարը, որ խոնարհ հոգիներն, արտայայտելու անկարող, բայց զգալու ընդունակ՝ օրական հացի ետեւից ընկած բազմութիւնն է կրել, ամէնօրեայ իր ցաւի, ուրախութեան, խոհերի՝ մոռացութեան պահերին։ Նա է արտայայտիչն այդ ընդհանուր բռնադատ կամ կամաւոր ճիգերի, շատ աւելի պատկերաւոր, տպաւորիչ ձեւով, քան նոյն իսկ իմաստասէրը կարող պիտի լինէր արտայայտել։

Բանաստեղծը կեանքի տուայտանքի տակ մեռնող, ծիւրուող, հանգող խղճի անմիջական արտայայտութիւն խօսքը եւ զօրեղ ձայնն է, զգացուած իր իսկ կողմից, կրած իր անձի վերայ՝ յաճախ ուրիշների տանջանքով տառապած, մատնանշողն այն յաղթանակի, որ նորածին կեանքի բջիջներն են տարել, աւերի, քայքայման ենթարկուած եւ կորչելու սահմանուած կեանքի անհետող, անպէտ բջիջների վերայ: Նա է յաւիտենական իմաստութեան այն ջահակիրը, որը երեր հոգիների, թոյլ ու անկար եւ կարճամիտների մէջ, խիզախ խենթութեան յանդգնութիւնն ունի կրելու իր անձի վերայ արտաքին աւերիչ ուժերի ընդդիմադիր, առողջ ուժի ջանքերը, որոնք աւետաբանողներն են մի նոր աշխարհի ու կեանքի,— որի ձայնը, սրտի հնչիւնը, արտայայտութեան իր նոր ձեւերով, գրաւիչ պատկերներով, զգլխիչ, առինքնող ոճով՝ լսելի երկրի մի ծայրից մինչեւ միւսը, որի մէջ իր ժամանակակից անձերը, անխտիր, պիտի կարողանան դիւրաւ ճանաչել միմեանց, իբրեւ նոյնը կրած, սակայն արտայայտելու կարողութիւնից կամ խիզախանքից զուրկ եւ կամ անընդունակ ըմբռնելու բոպէն, վտանգը, ակնկալութիւնները, որին ընդունակ են միայն «սակաւք», բազմութեան «ընտրեալները» ամէն տեղ ու ամէն դարերի մէջ:

Սակայն այդ «ընտրեալ—անօթ» անձերն են, որ իրենց ներքին զգացումների, ապրումների ամբողջականութեան արտայայտութիւնը պատկերացնելու ձիրքով օժտուած՝ կարող են երգել, ողբերգել, քնարերգել, ուր զգայնութիւնը, իր խղճի ու գիտակցութեան նուրբ դատումներով շղարշուած, գալիս, միանում, մի ամբողջանակութիւն են կազմում եւ անսովոր ճիգերի, յաճախ անզգալի յարադրութեամբ հաւասարակշռութեան մի վիճակ են ստեղծում, անբռնազբօս մի դրոշմ դնում, հակառակ ներքին անվերջ ցնցումների, չարչրկումների, տանջալից բզկտումների խաչաձեւող հոսանքներին,— եւ շնորհիւ նոյն իսկ այդ ներքին, անձնական տանջանքների,— այդ միութեան արտայայտութիւնը դառնում է եւ իր կեանքի ամբողջ իմաստը, քանի որ որչափ բարձրանում է նա եւ ինքնիշխան տէր դառնում հաւասարակշռուած այդ միութեան, այնքան եւ շրջապատը յստակ տեսնելու, վերեւից դիտելու եւ խորապէս զգալու նուրբ զգայնականութիւնը իր ներքին մարզու՝ խղճի ձայնն է դառնում, աճում, լրանում է խորհրդաւոր միութեան ծոցում:

Բանաստեղծի երգերն ո տաղերը արտայայտիչն են իր ներքինի՝ ըղձերի, ցանկութիւնների, ձգտումների, խոհերի ու երազների, որոնք կազմուած, հիւսուած են իր շուրջը ցանցրիւ սփռուած յոյզերի, ապրումների, որոնցից իւրաքանչիւրի մէջ նա գտնում է որոշ մաս ու պատառիկ այն վերջնական պատկերացման, որ կամենում է արտայայտել իր ամէն մի նոր կերտուածքի ու քերթուածի մէջ եւ ուր ամէն մի նոր երկ, իր իսկ կազմութեամբ եւ արտայայտութեան ձեւով, իր ներքին բուռն ապրումների խուսափող, անմարմին ստուերների ստուերն է եւ ոչ բուռն ապրումների իրական պատկեր-

արտայայտութիւնը։ Եւ որը, այնու ամենայնիւ գրաւում է իւր շուրջն եղածները, քանի որ նոքա եւս նոյն յոյզերն են կրած ու ապրած եւ նոյն ըղձերի, որոնումների անտես, բայց միշտ զգալի, շղարշով այժմ եւս պարուրուած եւ նոյն երազանքով տարուած։ Նա է, միջավայրի այդ ընդ միշտ արթուն ու անքուն Ոգին, որ անվերջ դիմադրութեամբ արգելք է հանդիսանում խորտակելու այն ըղձանքների կառուցուածքը, որ իւր անձնական յոյսերի կեդրոնն է եւ իրեն շրջապատող անկայուն հոգիների բնական ապաստանարանը, ջերմացնող հնոցը, կենդանութեան աղբիւրը։ Իւր մաքառումների արտայայտութիւն պատկերները, երազանք յոյսերի անգիտակից կապն է իւր եւ իւր շրջապատի մէջ, այն կենսունակ ներարկումը, որ տառապող հոգիներին ոյժ, անդիմադիր մարմիններին նոր արիւն ու աւիւն է ներշնչում՝ դիմադրել ու ապրել, ապրել ու յուսալ, յուսալ եւ երազանք յոյսերն իրականութիւն դարձնել։

§ 13· Նա է, այդ յաճախ անյայտ, միշտ անշօշափելի, բայց ամէնքի ներքինն արտայայտող Երգիչը, որի յոյզերն ու տանջող ապրումները նոր կեանք ու հմայք ստացած կեանքի տառապանք փորձութիւնների եւ յաճախ կեանքն ու կեանքեր խորտակող, ոտքի տակ տուող փորձանքների մէջ կարողանում է գերագոյն ճիգերով կանգուն ու կենդանի պահել գետին գլորուած դրօշը՝ համայնական ըղձանքների Սէրը, որ համայնական տուայտանքից վերապրած՝ դառնում է ջերմացնող զարկերակի բաբախիւնը սրտերի, անտես, բայց միշտ յարադոյ, զգալի։

Նա է, սրտերի հաղորդակցութեան ուղին կերտող այդ Վհուկը, միշտ անտես, միշտ էլ զգալի կապը կենդանի, որով անշօշափելի, բայց միշտ էլ մերձաւոր, իւր շուրջը մոլար թիթեռների պէս դարձող հոգիների ներքին կեանքի խզուած հիւսկէնի թելերն է իրար հիւսում, զօդում, միասնականութեան զգացումն ամրապնդում, ապրումների թափը զօրացնում։ Նորա համար դժուար է, եթէ չասենք անհնար, վկայ չլինել եւ չդառնալ այն բոլորի, յոյզ ու ապրումների, սրտմաշ օրերի, երազուն յոյսերի, լքուած երազների, խորտակուած սրտապնդումների, որոնք դրամագլուխն են եղած իւր միջավայրի հոգեկան ձգտումների, միաժամանակ նաեւ մէկը, որին, կարծէք, ոչ իւր ժամանակակիցներն են, թերեւս նշմարել, եւ ոչ իւր դարն է արժէք տուել, ինչպէս որ աննշմար են անցնում երկրից բարձրացող անձրեւը, օդից իջնող սնունդն ու ցօղը, որոնց անգիտակից նպատակն է սննդալից պտուղներն ուռցընել ու հասցնել, ուռճացնել ու լցնել կենսաբեր հիւթերի մաքուր ու անխառն հոյզերով՝ ողկոյզները որթի ու հասկերը ցորենի,— այսպէս եւ Երգիչը իւր գաղտնի աշխարհի ծոցի մէջ է կրում հայրենի ժառանգութեան առհաւութեան անտեսանելի, սակայն միշտ ներկայ, ու զգալի սերմերը, ցանուցիր ու անշօշափելի, բայց միշտ յարակայ ոյժերի ու եռանդի հոսանքը այն թաքուն, որոնք գալիս, միանում են նորա մէջ, ի մի ձուլւում եւ Նորան դարձնում իբրեւ

վկայ իւր դարի ու միջավայրի, ամէնքի շրթների վերայ եւ ամէնքի սրտի մէջ թագաւորող, միշտ խօսուն, յար լռիկ ու աննկատ, բայց միշտ ներկայ:

Երբ այս կամ այն Երգչի նկատմամբ ասում ենք, թէ նա կարող է եղած այնքան մեծ լինել, որ ատակ է եղած զգալ իւր շրջապատն ու դարը, դորանով իսկ մատնանշում ենք զոնէ, երեւոյթը՝ իբրեւ պատճառ: Բայց իրողութիւնն այն է, որ մենք նորա մէջ ենք տեսնում դարն ու միջավայրը, ապրումները իւր շրջապատի լոկ նորա համար, որ Նա է, որ հրամայում է մեզ ա՛յդ տեսնել եւ ա՛յդպէս տեսնել:

§ 14. Քնարերգութիւնը երբեք ժամանակի, պահի նկարագիրը չէ: Նորա մէջ մենք յուշերի արձանագրութիւն չենք տեսնում: Երգչի քնարերգակ յօյզերի տուիքներն առանց այն էլ իր ներքին աշխարհի ապրումներն են եւ կարիք չկայ, որ երեւակայական որ եւ է տառապանքի, արկածի պատկեր ստեղծէ ներքին պատճառը հասկանալու համար: Անցեալի մի յուշ, րոպէի մի ապրում, գալիքի դոյզն նախազգացում՝ ամէն ինչ փոխարկւում է նորա գրչի տակ ու բերանի մէջ անյայտի բացորոշ մեկնութեան, պատկերաւոր ստեղծագործութեան, ստեղծագործ պատկերաւորման: Այդ յուշերն ու յօյզերը, յօյսերն ու անկատար մնացած տենչերը, կրծող ու անքուն մտապատկերները, որ նորա բանաստեղծական գրաւիչ հիւսուածքի զարդերն են՝ կարմիր թելերը վերածւում են արեան գոյների, սեւերը՝ աւելի մաղձոտ ու տխուր երանգների, կանաչն՝ աւելի զուներ ու խայթիչ, կապոյտներն աւելի երազուն, անչօշափելի, բայց ամէնը՝ սփոփիչ համադրութեան մի առինքնող պատկեր:

Այս յօյզերը, սեւ ապրումները, խաւարի մութ քօղով պարուրուած երազանքները նման են նկարչի վրձինի թաւ ստուերներին, արձանագործի անդրու կամ կառոյցք հագած մարմնի դիմագծերի աւելի սուր եւ ընդգծուած ջղուտ, պրկուած, պայթելու չափ մասնների իրական, կերպընկալ ձեւերին: Ո՛չ ապրած օրերի տխուր պահերի փորձութիւններն են մոռացուած նորա երգիչ եւ ո՛չ բանաստեղծի հոգու ներքնաշխարհի մէջ յանկարծ երեւան եկող, րոպէական երկնային շանթի փայլուն շողերի նման պոռթկող յօյսերն ու ցոլքերը լուսաւորող, ողողուն՝ յուսադիր ոգեւորութեան մի նոր ապրումով, ծնունդ առած տանջանքի ու դառնութեան սոսկումների, որ գալիս են թեւաբախ անցնում նորա երկնող ուրախութեան վրայից, խառնելով տխրութեան անհետող քօղին՝ երջանիկ յօյզերի հիւսկէնը արծաթ ու ոսկի:

Եւ այս ամէնի մէջ անցնում է մի աննշմար, սակայն միշտ յարատեւ ապրող գիծ՝ սէրը դէպի իւր միջավայրը, շրջապատը հայրենի, որոնք աւելի եւս են համակւում խոր տառապանքի ու կորուստների, անվերադարձ կորուստների ուժեղ զգացումով, միաժամանակ ե՛ւ սփոփիչ, ե՛ւ յուսատու:

Այսպէս չէ՞ նաեւ ամէն ոք անհատը: Անկասկած: Եւ մենք երբեք պիտի չգտնենք Բանաստեղծը, հազար հազարների միջից խորհրդաւոր այդ անձը,

իբրեւ անհատ ու իբրեւ հանրութեան խոհերի, զգացումների արտայայտիչ ոյժ ու ներկայացուցիչ խօսք, մինչեւ որ նորա մէջ ամենից առաջ Մարդը որոնելու հոգը չունենանք: Եւ չնայած նոյն իսկ այն պարագային, որ այդ անձը ապրած է դարեր ու դարեր առաջ, սակայն եւ այնպէս այդ որոնումների պահերին ամէն քայլափոխի մէջ պիտի հանդիպենք Բանաստեղծին, որ իւր սեփական կնիքն է դրած անցած ուղու վրայ, սակայն այնքան մօտ մեր սըրտին, հոգուն ու մտքին, որ յաճախ թւում է, թէ մենք ենք անցած այդ ուղին՝ իւր բոլոր վշտերի ծանրութեամբ, ապրումների դառնութեամբ եւ խաւարի միջից առկայծող լուսաշող յոյսերի աւետումներով,— որովհետեւ Բանաստեղծը միայն մեր հոգու հայելին է, աւելի պայծառ ու ջինջ, աւելի գրաւիչ՝ ինքնուրոյն, առինքնող իւր բոլոր ձիրքերով եւ ինքնուրոյն անհատականութեամբ, խօսքի հմայքով, որ երազանքն էր մեր: Խօսքի Ոսկէ բանալին՝ մեր տարտամ լեզուի:

Եւ չենք հաւատում, որ նոցա հետքը երբեք էլ ջնջուի, որքան էլ դարերի քօղը ծանրանայ նոցա վերայ: Նոքա անցած ու գնացած, բայց իրենց Խօսքը հնչեղ ու հնչիւն, ապրած տառապանքների ազնուացած այդ Ձայնը՝ պիտի հնչէ, արձագանգ տայ մեր սրտերի ու մտքերի մէջ:

Այդպիսի մէկն ենք ճանաչում եւ մեր, հանրութեան առաջ, առաջին անգամ ներկայացրած Երգիչը, իւր տուածների ամբողջականութեան մօտաւոր լրութեան հնարաւորութեամբ:

§ 15. Ֆրիկի Տաղերի լեզուն գրաբար է, սակայն Միջին Դարերի այն գրաբարը, որի մէջ զօրեղ թափով նստած է իւր ժամանակի նոր հոսանքը՝ գրել աշխարհաբար: Եւ եթէ այդ հնարաւոր չէր,— գրել այնպէս, ինչպէս ժողովուրդն էր խօսում,— գոնէ այնպիսի մի գրաբարով, որ ժողովուրդին լսող ու երգող խաւերին դիւրըմբռնելի լինէր եւ հասկանալի: Եւ Երգիչն ընդառաջ է գնում այդ պահանջին՝ հասկանալի դառնալու, հետեւաբար եւ ինքն եւս, իբրեւ բանաստեղծ, ապրելու՝ իւր Տաղերի եւ երգերի տեւական լինելու չափով:

Զուտ աշխարհաբար լեզուով գրուած Տաղեր չունի, սակայն նայած նիւթի բովանդակութեան, նորա Տաղերից ոմանք շատ աւելի գրաբարի կնիքն են կրում, քան աշխարհաբարի: Այդպիսիների կարգից են նորա խրատական, կրօնական, իմաստասիրական Տաղերը: Այն տեղ, ուր Երգչի Տաղերի նիւթն է թոյլատրում՝ նա սիրով է ընդ առաջ գնում ժողովրդական լեզուին, իւր բոլոր ձեւերով: Այն տեղ, ուր նիւթը պատմական է, պատմուածք կամ առակաձեւ խրատական, նորա լեզուի կազմը, ատաղձը, բառամթերքը, ոճը՝ հայելին են իւր ժամանակի, միջավայրի ու շրջապատի: Այս վերջին պարագային Երգիչը ազատ է զգում իրեն իւր Տաղերի տողերը կերտելու ոչ միայն բուն Հայ լեզուի տուեալներով, այլ եւ անխտիր ամէն ատաղձով,— իւր մտքերը արտայայտելու համար, օգնութեան է կանչում նաեւ ժամանակի Հայ լեզուի

վերայ զօրեղ ազդեցութիւն թողած օտար բառերը, լայն չափով։ Նորա բառապաշարի մէջ,— ինչպէս ընթերցողը պիտի տեսնէ կցուած Բառարանից,— բաւական տեղ են գրաւում Արաբ, Թուրք եւ Պարսիկ բառերը։

Վերջին տեսակի բառամթերքի մէջ կան բառեր, որոնք լայն քաղաքացիական իրաւունք ստացած՝ ազատ շրջում էին ժողովրդի բերանի մէջ. կան եւ բառեր, գլխաւորապէս Պարսիկ բանաստեղծութեան եւ լեզուի ազդեցութեան հետեւանք, որոնք, շատ հաւանական է, որ ժողովրդի ստուար խաւերին անծանօթ էին, սակայն պէտք է ենթադրել, որ կամ իւր «ժողով»ների աւելի կիրթ ճաշակ ունեցող ունկնդիրների ընտրեալ դասակարգին ընտել էր եւ ընտանի եւ կամ ինքն, իբրեւ աւելի մօտ ծանօթ Պարսիկ գրականութեան լեզուին, պարտք էր համարում իւր Տաղերի լեզուն ճոխացնել եւ իբրեւ Նոր միջակոյթի ստաղձ պատուաստել իւր ունկնդիրներին։ Օրինակ. չենք կարծում, որ իւր սովորական ունկնդիրների ստուար մեծամասնութիւնը պիտի հասկանար նորա երգի հետեւեալը ասացուածը.—

Նախ ու նասիճ իմ ճոխալուս
Ջաւհար չարեմ թագ իմ գլխուս.— ԺԳ. 8–9.

առաջին տողը եւ կամ

Նախ ու նասիֆ, քեմխայ ու սաւֆ,
Կիւլիստանիքն, որ դու հազար.— ԽԵ. 17–18.

երկտողեանի առաջին տողը, եթէ Երգիչն ինքը չբացատրէր այդ բառերը։

Այդպիսի բառերի թիւը բաւական ստուար է Նորա Բառարանի մէջ, ինչպէս ալանի, բաստիկ, դակաս, դուխաք, թաւ, երեղ, Հաղիաք, զօլ, նաէֆ, Նափաղայ, չինճխանա, ռաւան, ռաւաշ, ռովկել, սահիպ, սխտաք, փաթերակ, փալիտ, փուււս, փրէստ եւայլն։

§ 16. Իւր Նոր աշխարհաբարը քերականական իւր կազմութեամբ շատ մեծ տարբերութիւն չունի գրաբարի քերականական կանոններից եւ չարահիւսութեան եղանակից։ Սակայն եւ այնպէս այդ գրաբարը ո՛չ միայն չափազանց հեռու է դասական լինելուց, այլ նաեւ իւր շրջանի մաքուր գրաբարից՝— հոլովների, բայերի խոնարհումների, դերբայների, նախդիրների տեղի ու նշանակութեան նկատմամբ, մեծ փոփոխութիւններով է պատկերանում մեր առաջ։

Նպատակ չունենալով տալ Ֆրիկի լեզուական եւ քերականութեան կազմի, Նոր փոփոխութիւնների ամբողջական պատկերը, պիտի բաւականանանք միայն մի քանի աչքի ընկնող փոփոխութիւններով եւ ձեւերով։

Իբրեւ լեզու, որ ենթարկուած է տաղաչափութեան կանոնների, յանգերի անհրաժեշտ ու պարտադիր սահմանի մէջ, բառերը իւր լեզուական Նոր կազմի մէջ երբեմն ենթարկւում են կրճատման եւ երբեմն եւս մի վանկի յաւելման։ Այսպէս օրինակ, լինել բայը դառնում է լինենալ, լսել՝ լսենալ, խնդալ՝ խնդանալ, յիշել՝ յիշենալ, կենալ՝ կենանիլ, նայել՝ նայենալ, չինել՝ չինենալ, շահել՝ շահենալ, մեղանչել՝ մեղանչանալ, սիրել՝ սիրենալ եւ այլն։ Եւ

դորս փոխարէն, եթէ պէտք է բայի մի ոտքը կրճատել, որպէսզի տողի վանկերի քանակը հաւասարուի՝ հաւատալ բայը դառնում է աւտալ, ծիծաղելը՝ ծիծղել, հաւասարելը՝ հաւսրիլ, տառապել՝ տառպել եւ այլն։

Միայն բայերը չեն որ ենթարկուած են այս նոր զգեստաւորութեան, այլ եւ գոյականներ ու ածականներն եւս. այսպէս՝ թագուհին ըստ պահանջի ոտանաւորի յանգ ու չափի դառնում է թագուհ, հերկ՝ հերկակ, համեղ՝ համաւոր, վստահ՝ վստահի, անառիկ՝ անառական, չոր՝ անթաց, անհուն՝ անհուն, անհաս՝ անհասակ, անճար՝ անճարակ, անոյշ՝ անուշան, եռող՝ եռանդակ եւն.։ Բառերի կազմութեան մէջ բաւական լայն տեղ ունին եւ դեր ակ, իկ, ան, անի վերջաւորութիւնները, ոչ իբրեւ նուազեցուցիչ մասնիկ։ Այս եղանակով եւ պահանջով են կազմուած նաեւ լալի, ողբալի, խնդալի, լալուն, ծիծաղուն ձեւերով բառերը։

Ֆրիկի շրջանն այն օրերն են, երբ աշխարհաբարի քերականութիւնը ձգտում է իւր որոշ կազմն ստանալ։ Ցոդնակիի կազմութիւնն ունի իւր որոշ, ինքնուրոյն ձեւը։ Օր. ծառայ = ծառանին (ԼՋ. 4), դուռն = դըռվընին ԼՋ. 43), ականջ = ականջուեր (Թ. 52), ձի = ձիան (Լէ. 46), որսորդ = որսորդեր = յորսորդերոյս (ԺԳ. 55), աչք = աչվեր (ԼԱ. 48)։

Հոլովներն եւս իրենց ինքնուրոյն ձեւերն ունին, ոչ միօրինակ, ինչպէս որսորդ = յորսորդերոյս, այդ = ատկից, = Տի գաս ատկից ի վար (ԽԵ. 20), ի ձեզնէ (Լէ. 91), Նոքա = նացմով (Լէ. 21), ինձ = ինձի (ԼԸ. 79), պահպանելով բառի բուն հնչիւն ձ տառը եւ ոչ թէ տարօրինակ ծ-ի վերածելով, որ այսօր իսկ դարձել է կատարեալ քաղաքացի մեր գրական աշխարհի ինծի զգեստաւորութեամբ, նոյն իսկ մեր լաւագոյն գրագէտ ու հեղինակների անպատասխանատու գրչի տակ։ Տակ ի տակաց (ԻԸ. 17), ոչ ոք=ոչում վերայ (ԺԱ. 22, Իէ. -1, ԼԳ. 114, ԼԵ. 160 եւն.). եւ = յինէ (է. 7) եւն.։

Բայերից՝ էական բայի էի ձեւը Ֆրիկի քերականութեան մէջ դարձած է պարզ ի, էիք = իք, ինչ որ այնքան յիշեցնում է Ղարաբաղի բարբառը։ Լամք ի ածել (Ը. 8), «Մերկ ու քաղցած իք ի քարի» (Ը. 41), ինչպէս որ Ղարաբաղցին է ասում, — «Տիւզն ու ծարաւ ի» (= Անօթի եւ ծարաւ էի), կամ Տընեերին ին մնացալ (=Անոք, անխնամ էին մնացել)։ Էական բայի բացասականն եւս նոյն կազմն ունի, — Լաւ չի (=չէի) դատել (Ը. 11). Չունի = չունէի, թուչի = թուչէի (ԽԳ. 24)։

Բայերի ապառնին կազմելու մէջ մեծ դեր է կատարում պիտի ձեւը։ «Քեզ հնազանդ պիտէր կենալ» (Ժ. 9) — «Պիտէր հոտոտել» (Ժ. 15), պիտէր ճաշակիր (= ճաշակէիր) Ժ. 24 — «Մեզ վայելել պիտի» (ԺԱ. 63), Առնուլ պիտի (ԺԱ. 62)։

Պիտին շատ յաճախ փոխարկւում է կրճատուած տի (= պիտի) ձեւի, որ սովորական երեւոյթ է Արեւելահայ բարբառներից Լոռու եւ Արեւմտահայ բարբառներից՝ Խարբերդի բարբառների մէջ։ Այսպէս «Տի գոչէ» (ԺԹ. 14),

«Տի կենալ» (ԽԱ. 50) եւ այլն, որի օրինակները բազմաթիւ են ու ցրուած իւր Տաղերի մէջ։

Անցեալ Դերբայի եալ վերջաւորութիւնը մեծ մասով փոխուած է էլ–ի։

Կու մասնիկը, իբրեւ ներկայ սահմանականի բայական կազմութիւն առանձնայատկութիւնն է իւր Տաղերի։ «Կու մուրայ» (Թ. 8), «կու լայ» (Թ. 13), «կու տանի» (Թ. 16), «կու տայ» (Թ. 18), «կու տայ», «կու գայ» (Թ. 47, 51, 52, 54), «կու թողու», «կու պչկայ» (Թ. 17, 22), կու պիտի (ԻԴ. 22, փոփոխակ) եւ այլն։

Ունի բուն ժողովրդական ձեւեր, որոնք յատուկ են, թէ իրեն եւ թէ հետագայ Երգիչների լեզուին.— այսպէս — «ոչ որ» = ոչ ոք, ած = այծ, դայռ = դեռ, ինչուի = մինչ ի, այլուի = այլ, զէմըլ = կրկին, հանչաֆ = այնչափ, հայնց, հանց = հէնց, աժել = արժել, աժնիկ = արժանի, կտել = կտրել, աստէն, անդէն = աստ, անդ, ըղորդ = ուղորդ, զմբաղիլ = զբաղիլ եւն.։

Աշխարհաբարի հոլովման կրաւորական բայերի յատկանիշ ու–ն եւս մտած է Ֆրիկի լեզուի մէջ։ «Այս կամարըս բոլոր Քեզնով կու պահուի» (ԼԹ. 8)։

§ 17. Այն ազդեցութիւնը, որ Միջին Դարերի մեր Տաղասացները, իբրեւ Բանաստեղծ, իբրեւ Երգիչ եւ իբրեւ Աշուղներ (= Աշուղ) ունեցած են իրենց շրջապատի, այսինքն անմիջական միջավայրի, ինչպէս եւ հեռաւոր վայրերի հայ մտքի, սրտի վերայ՝ դժուար թէ համարենք ո՛չ մեծ, առանց չափազանցեցնելու այդ բառի արժէքը։ Իրենց քնարերգակ, խրատական, սիրային եւ այլ բանաստեղծութիւնների միջոցով եւ ազդեցութեամբ նոքա ոչ միայն դէպի իրենց էին դրաւում ապրող հայութեան մտքերը, այլ եւ ղեկավարում՝ նոցա հոգիները, սկսած իշխանական տներից մինչեւ գիւղական խրճիթների, հիւղակների մէջ բնակողների սրտերը, այնպէս, ինչպէս իրենք էին ըմբռնում եւ կամենում։ Երգիչն, իբրեւ ազատ մտածող, իբրեւ հանրութեան յոյզերի ամբողջականութիւնն արտայայտող միտք, իբրեւ հանրութեան խղճի արթուն պահապան՝ երկիւղ չունէր եւ ո՛չ ոքից, հանրութեան վերին խաւերի, թէ ստորին ու խոնարհ աստիճանների վերայ կանգնած լինէին իւր արդար ըղձասաւութեան հոգու թիրախ անձերը։ Եւ այս պատճառով նա երգում է համարձակ,—

«Հայրապետք արծաթասէր եւ յաւրինաց խիստ ի զատ են,
Զ՞Քրիստոսի արեամբ գնածքս՝ եպիսկոպոսքըն կու ծախեն։

«Թագաւո՛րքըն չը հաշտին, հետ միմեանց ոխ կու պահեն,
Հանապազ զաւր ժողովեն եւ զմիմեանս ի սուր քաշեն։
Եպիսկոպոսքն ըսպառնեալեաւք երթան ի ժամ եւ զըրուցեն.
Բարկութեամբ միշտ լըցեալ են, խորհին, թէ զո՞ւմ փիլոն հանեն։

Բարձով նըստին ի ժամատանն, յորում հրեշտակըքն կու սարսին,
Ապա նոքա վասն կաշառուց՝ զմարդ խելայեն եւ զընդանեն։

Երբ որ հովիւքն են մոլորած՝ զցրուեալ հաւտս ո՞նց ժողովեն.
Քանահայքն են նախանձոտ՝ զաւտար երէցըն կու ատեն.
Երբ առաջ գան ի գիրք կարդալ, զերդ ըղհրեշտա՛կըս բարբառին.
Նոքա գիտեն կանոն ու՞ ասէրէնք եւ սրբութեան խսկի տէր չեն։

Վանականք եւ միակեցք եւ ճըգնաւորք՝ կրաւնաւոր են,
Բայց սատանայ զնոսա պատրէ, որ շատ ի շուրջ գան մոլորեն...

Ժողովուրդքն են շունն ու լիրբ, զքահանայքդ յանդիմանեն,
Նենգժոտ ազգըն Հայոց հետ տասնումէ՛կին չի սազեն,
Են թերի եւ ծուլացած, իսկի չունին ողորմութիւն,
Ապիրատ ո՛ամպարտաւան, ծունր ի գետի՛նըն չի դընեն»։
Զ. 27–46.

Կամ

«Թագաւորք եւ հայրապետք զԱստուած կըրկին բարկացընեն,
Երբ յիրար չեն ի հաշտիլ՝ զԱստուած որո՞վ հաշտեցընեն»։
Զ. 52–53.

Այս տողերից պարզ է, որ գոյութիւն չունէր նոցա աչքին ո՛չ մի բարձր դիրք, ուր նոցա սուր քննադատութեան, հեգնանքի, կշտամբանք—պարսաւի ձայնը չհասնէր եւ նոցա սեւ ներկի վրձինը խնայէր եւ դորա հետ չկար եւ ո՛չ մի խաւ ու դասակարգ, որի նոյն իսկ չարամիտ հալածանքի երկիւղը նոցա յետս պահէր արդարութեան խօսքն արտասանելու՝ պարսաւի արժանի անձերի դէմ, լինէր այն անհատ թէ հասարակութիւն իւր սիրած երկրի։ Եւ այդ խարանող խօսքերը ոչ թէ փոքր սրտի, անհանդուրժող մտքի լուտանք էին, այլ իրենց միջավայրի ընդ միշտ պահպանուող հայելին։ Նոցա համար միմիայն մի դատանիշ կար — criterium — այդ բոլորի մէջ, իրենց ներքին, արթուն մարդու եւ զգաստ ոգու դատանիշը,—

«Ֆըրիկ, ըզմի՛տքըդ ժողվէ,
Լաւ իմացիր, զինչ կու խաւսիս». Դ. 42.

որովհետեւ այդ խօսքը ուղղամտութեան, արդարութեան կշռի ձայնը պիտի լինէր, ժառանգութիւն ՝գալիք սերունդներին։

Թէ Ֆրիկն իրաւունք ունէր այդչափ խիստ ու ճաղկող լեզու գործածել իւր ժամանակակից եկեղեցական դասի, բարձր դիրք ունեցող ներկայացուցիչների դէմ, դորա օրինակն ունինք եւ տեսանք վերը, երբ ակնարկով անցանք Սիւնեաց Աթոռի երկպառակուած դրութեան, երբ արքեպիսկոպոսներն անգամ անձնական փառք ու պատուի, դիրքի ու իշխանութեան համար չէին խուսափում գնալ «առ այլազգիսն եւ բազում ոճիրս սերմանել... եւ յոլով

վիշտս հատուցանել եկեղեցւոյ, մինչեւ ի վախճան իւրեանց»: Ստ. Օրբլ. Պատմ. Հտ. Բ., էջ 175. (հրատ. Կ. Վարդ. Շահազ.): Տես վերը՝ Գլ. Բ. § 28.

§ 18. *Մեր Միջնադարեան Տաղասացները Արեւմտեան աշխարհի, Ֆըրանսիական* — troubadour*-ների կեանքն ու ազդեցութիւնները յիշեցնող Երգիչներն են Հայ շրջանում եւ Հայ երկրի մէջ: Ֆրանսիական, մանաւանդ Հարաւի, Պրովանսի Ասողները* — Trouvères — *իրենց ամենից իսկ նախնական շրջանից սկսած՝ հարաւի ջերմ ու արեւոտ յոյզերի, մշակոյթի եւ գիտութեան, ուսման, ազնուական նիստ ու կացի, յղկուած ու կոկուած լեզուի, համեղ ու արտայայտիչ ոճի, քաղաքավար ու կիրթ յարաբերութեան մշակներն էին եւ միջավայրի* — Provence*-ի, այնքան որոնուած արտաքին-դրաւիչ եւ ներքին-զօդիչ կապերի առաքեալները, զինուած Պրովանսի լեզուով, որ արտայայտիչն էր նոյն ժամանակի կիրթ ճաշակի եւ նրբին դաստիարակութեան, քաղաքակիրթ ու ազնուական վերաբերումի անձնական յարաբերութեան, հանրային հաղորդակցութեան ժամանակ: Այդ լեզուն կամ բարբառը կոչւում է* Langue d'Oc, *որ Միջին Դարերի դպրոցական լեզուն էր միաժամանակ:*

*Այդ լեզուի հմայքով էր ապրում ո՛չ միայն բուն Պրովանսը, Հարաւային Ֆրանսիան, այլ նաեւ Գերմանիան, Հիւսիսային Ֆրանսիան, Իտալիան, անգամ հեռաւոր Անգլիան, իբրեւ հետեւողներ այդ նուրբ ու արտայայտիչ բարբառի հմայքոտ, սրամիտ արտայայտութեան բոլոր գանձերի բանաստեղծական աւիւնով զեղուն, դժուարահաճ ու պահանջկոտ՝ ողորկ, պարզ ու յըստակ վայելչաբանութեան: Եւ նոյն իսկ այն օրերին, երբ այդ երկրամասը Գաղղիական մեծ պետութեան սոսկական մի գաւառը դարձաւ, նորա գրական ճաշակի նրբութիւնը չմոռացուեց եւ անտես չեղաւ: Իսկ այն օրերին, երբ Պրովանսը իւր հմայքի արեւոտ ու ջերմին օրերն էր ապրում, իւր դրացի երկըրների ազնուական դասի երիտասարդութիւնը եւ համբաւի ձգտող բանաստեղծներն իրար հետ էին մրցում երեւան հանելու այդ բարբառի նրբութիւնների ճոխութիւնը, բերնէ-բերան աւանդելով այն երգերը, որ նախորդ երգիչները* — Troubadour — *էին ուսուցել նոցա եւ աւանդել:*

*Տրուբադուրները անպայման հեղինակութիւն էին վայելում բոլոր հարցերի նկատմամբ, որ ճաշակի եւ պատուագիր սովորութիւնների* — étiquette — *նրբութիւններն էին շօշափում: Նոքա էին այն մտաւոր ու ճաշակի մշակոյթի մարգիչները, որ աճող նոր սերնդի երկսեռ ներկայացուցիչներն էին առաջնորդում հանրային կենցաղագիտական ասպարէզը եւ նոքա էին, որ այդ պահանջկոտ շրջանի նոր ու նրբին կենցաղի կանոններն էին սահմանում: Այդ երիտասարդ տրուբադուրներից մէկը,* Amanieu des Escas, *ինքը տակաւին մատաղ զինակիր, ու պալատական մանկլաւիկ* — page — *այսպէս է հրահանգում իւր հետեւողներին, —*

«Խուսափիր անմիտների ընկերակցութիւնից, հեռու մնա խառնակիչների, անպատկառ միջամուխների շրջանից, ապա թէ ոչ՝ դու եւս մէկը պիտի լինիս նոցանից եւ կամ պիտի համարեն այդպիսին: Երբեք թոյլատու ներողամտութեամբ պիտի չը վերաբերես դէպի զռեհիկ կատակաբանները, դայթակղութեան խօսք ու արարքի անձերը, խաբեբաները կամ կեղծարարները եւ նոցա գործերը: Եղի՛ր համարձակ, անկեղծ, բարեմիտ, ազնուամիտ, առատաձեռն, քաջ ու արի· եղի՛ր պատրաստակամ ու կենցաղագէտ՝ շնորհազեղ, բարեացակամ ու սիրալիր: Զգեստիդ, արդ ու զարդիդ նկատմամբ եղիր պահանջկոտ մաքրասէր եւ քո զգեստի գրաւչութիւնը թող գեղեցիկ ճաշակի եւ պարզ հիւսուածքի միջոցով աչքի ընկնեն: Զը հանդուրժես, որ զգեստիդ կարանը քակուած եւ բացբերան դարձած լինի, այդ աւելի վատ է քան պատռուած հանդերձ ունենալը· առաջինը ցուցադիր է անխնամ դաստիարակութեան, իսկ վերջինը միայն աղքատութեան կնիքն է, ինչ որ շատ աւելի փոքր չարիք է, քան առաջինը: Մեծ արժանիք չէ լաւ հագնուիլն ու պճնուիլը, եթէ ազատ միջոցների տէր ես, բայց փոքր ու աննշան եկամուտով հագուստի ճաշակի եւ մաքրութեան բծախնդրութիւն ցուցադրելն ինքնին իսկ՝ անվիճելի գերակայութիւն է հոգեկան կարողութեան գանձի... Յարաբերութեան նրբին ձեւեր ձեռք բերելու համար երիտասարդը պէտք է կամ արքունի, կամ իշխանական տան շրջան մտնէ· այդ շրջանը՝ քաղաքավար յարաբերութեան անժխտելի կրթարանն է· այնտեղ է, որ թուլամորթ մտքերը ուժեղ կոփուածք են ստանում, իսկ կարող մտքերը՝ նոր կատարելութիւններով ճոխանում: Եթէ ծառայութեան (պետական, զինուորական) հակումն ունիս, աշխատիր կապուիլ արժանիքների տէր եւ ազնուական՝ առատաձեռնութեամբ օժտուած անձի հետ: Ջանա հաճելի լինել նորան, առանց գլուխ խոնարհելու իւր վատ ու բացասական հակումների առաջ: Նախանձոտ ոգով մի՛ վերաբերիր նորա շրջապատի անձերին· դա ոչ միայն անարգ է, այլ եւ վտանգաւոր: Նորա իրաւունքն է իւր շնորհներն ու գանձերը բաշխել ըստ իւր հաճոյքի եւ ըմբռնումի: Քո սեփական զէնքերդ ունեցիր եւ միշտ կազմ ու պատրաստ գործադրելու՝ պահանջի պահին: Առաջինն եղիր վաղ արթնացնողների մէջ եւ առաջինն եւս, երբ հարկը պահանջէ՝ ձիուդ մէջքին: Նիզակախաղի ասպարիզի մրցման ժամանակ ջանա ցուցադրել քո ճարտարութեան բոլոր շնորհքները եւ արժանիքիդ կարողութիւնները»:

§ 19· Նոյն Amanieu des Escas նոյնքան մանրակրկիտ հրահանգներ է տալիս դրանիկին, թագուհուն կամ աւատապետ իշխանի տիկնոջ ծառայող պատուակալ սպասուհիների մասին: Նկատի ունենալով, որ մեր ազգային պատմիչները աններելի անուշադրութեամբ զանց են արած յիշատակել մեր միջնադարեան կեանքի այդ կէտի նկատմամբ որ եւ է մանրամասնութիւն, նկարագրութիւն՝ աւելորդ պիտի չհամարենք առաջ բերել այդ հրահանգներից որոշ մասեր, ենթադրելով, որ միջնադարեան մեր արքունի կենցաղի կանոններն եւս պիտի ձեւուած ու չափուած լինէին այդ հրահանգի եղանակով,

քանի որ Ռուբինեան Հարստութեան արքունիքն այնքան կենցաղական նիստ ու կացի, յարաբերութեան սովորոյթներ էր փոխ առած Արեւմուտքից եւ կիրարկած, հետեւաբար՝ թէ՛ արքունական պալատական կեանքի եւ թէ՛ իշխանական տների մէջ կենցաղի այդ նոյն ընկալեալ կանոնները պիտի իշխէին եւ կամ շատ հեռու պիտի չլինէին սովորութիւնների չափանիշ համարուելուց:

Ամանիոյ դէ-զ'Էսկան հրահանգում է պատուակալ սպասուհուն ելնել կանուխ, որպէսզի իւր թագուհին կամ իշխանուհի տիրուհին պատրաստ հագնուած գտնէ նէրան, երբ իւր մօտ կոչէ առաւօտեան: Հագուստի պատշաճաւորութեան նկատմամբ տալով անհրաժեշտ, սովորական հրահանգները, նա պահանջ է դնում ամենից առաջ, որ սպասուհին լուայ եւ մաքրէ ձեռները, թեւերը, պարանոցը եւ ապա ամուր սղմէ իւր մէջքը՝ քօղով: Հետեւեալ հրահանգն եւս տարօրինակ խորթ պիտի հնչէ մեր ականջին,— որ եղունգներն այնքան երկար պիտի չլինեն, որ որ եւ է սեւ գիծ մնայ նոցա տակ, այն է եղունգները «սգաւոր» չլինէին: Սակայն նկատի ունենալով մի կամ երկու սերունդ իսկ առաջ մեր կենցաղագիտական պահանջների թերութիւնն այդ նըկատմամբ, թերեւս պիտի չը զարմանանք այդ հրահանգը կարդալով այնքան վաղ օրերի մի շրջանի համար: Կենցաղագէտ մեր Մենտորը ապա առաջին պահանջներից մէկն է դնում բարձր շրջանի մէջ եղող երիտասարդ կնոջ կամ աղջկայ նկատմամբ, որ «Գլուխն անպայման մաքուր պիտի լինի», որովհետեւ Միջնադարեան երգիչ-բանաստեղծի համար կարեւոր խնդիրներից մէկն այն էր, թէ ինչ որ ցուցադրում, երեւում է, այն յատուկ խնամքի պիտի արժանանայ: «Մաքրէ ատամներդ ամէն առաւօտ» հրահանգում է նա: «Այս բոլորը պէտք է անել, կարգի դնել, առաջ քան որ եւ է անձն կարող է եւ պէտք է տեսնէ քեզ. չմոռանաս նայել հայելու մէջ. այդ անելն այն առաւելութիւնն ունի, որ կարող ես նշմարել թերի մասերը քո արդ ու զարդի եւ յարդարանքի եւ ուղղել, ըստ պատշաճի եւ պահանջի: Ամէն ինչ կազմ ու պատրաստ ունեցիր, նախ քան տիրուհուդ արթնանալը, որպէսզի քեզ սպասել չ'ստիպուի. սակայն չմտնես նորա ննջարանը, սենեակը, մինչեւ որ միայնակ չլինի եւ կամ քեզ չկոչէ: Անկողնից ելնելուց առաջ տուր իրեն ասեղներն ու թելը, ժապաւէնը, սանրը եւ կամ ինչի որ կարիք ունենայ՝ մազերը յարդարելու եւ կամ ծամակալը կարգի բերելու համար»,— մի հրահանգ, որից եզրակացնել կարող ենք, թէ ծամերից կախկխուած, գունագեղ երիզները, որ նոյն օրերի գեղուհիներն էին սովոր անցնել իրենց ծամերի հիւսակների մէջ, ամենայն հաւանականութեամբ կարւում էին մազերի հիւսկէններին:

Եւ ապա շարունակում է իւր հրահանգները,— «Երբ զգեստները հագնելու է սկսում, պահիր հայելին տիրուհուդ առաջ, որպէսզի տեսնել կարողանայ, թէ ամէն մի ժապաւէն ու ծոպ եւ միւս մանրամասնիքն արդեօ՞ք իրենց պատշաճ տեղն են եւ յարմար: Ապա պէտք է մատուցանել պաղ ջուր, որպէսզի դէմքը լուայ, մաքրէ, որից յետոյ երեսսրբիչը պէտք է մատուցանել:

*Եւ այժմ քո պարտականութիւնն է դիտել եւ տեսնել, թէ ամէն ինչ պատշա՞ճ է, ոչինչ չէ՞ խանգարում ներդաշնակութիւնը իւր յարդարանքի, ծուռ կամ շեղ որ եւ է բան չը կա՞յ տիրուհուդ հանդերձանքի վրայ, գլխին»:*

*Ինչպէս տեսնում ենք այս հրահանգներից, Արեւմտեան աշխարհի մի Տրուբադուր կատարեալ ձեռնհասութիւն ունէր կանացի արդուզարդի, հագուստ-կապուստի բոլոր մանրամասնութիւնների նկատմամբ, քանի որ այդ ասպետական ըմբռնումների օրերին ամէն մի երգիչ ու բանաստեղծ միաժամանակ եւ ամենից առաջ դարպասող հաճոյակատար էր, կենցաղի կանոնների բոլոր նրբութիւններին ծանօթ սպասեակ —* cavalier servant,— *եւ ըստ դարու ոգու եւ սովորութեան պահանջների իրաւունք եւ պարտք ունէր ներկայ գտնըւելու իւր դարպասաւոր կնոջ կամ օրիորդի զգեստաւորութեան պահին, որով եւ կատարելապէս փորձ ու գիտակ էր կանացի հագուստ-կապուստի բոլոր մանրամասնութիւններին եւ գաղտնիքի աշխարհին:*

§ 20. *Ամանիոյ դէ-գ'էսկասն այնուհետեւ շարունակում է իւր հրահանգներն սպասիկ-պատուակալ կնոջը կամ աղջկանը տուն տալով, թէ ի՞նչ պիտի անէր օրուայ ընթացքին: Իւր տիրուհին հանգցնելուց եւ միայնակ ձըգելուց յետոյ նա կարող էր «գնալ ներքեւ՝ ընդհանուր սրահը, ողջունելով ամէնքին եւ յարգալիր ու կիրթ պատասխաններ տալ նոցա հարցերին, զգուշանալով աւելորդ խօսք ու արտայայտութիւններից»:*

*Նորա հրահանգների սահմանի մէջ է մտնում եւ եկեղեցին ու պաշտամունքը: «Երբ գնաս Պատարագ լսելու, շարունակում է նա, եղիր համեստ, անշարժ ու անվրդով: Աչքերդ պիտի շուրջդ չը յածին ու թառափին. աւելի լաւ է հայեացքդ գետին ձգած պահես եւ կամ շատ աւելի պատշաճ է, որ սեղանին դարձնես. խուսափիր նոյն իսկ չչնչալուց: Եկեղեցուց ելնելուց յետոյ, եթէ մէկը ցանկանայ խօսել քեզ հետ, կարող ես այդ շնորհն անել նորան, սակայն առանց բարձրաձայն խօսելու կամ վէճի բռնուելու, քանի որ ոչինչ այնքան անպատշաճ է կիրթ ու դաստիարակուած մի օրիորդի համար, քան բարձր ձայնով խօսելը: Մի՛ մոռացիր, որ շատերն իրաւունքով ենթադրում են, թէ հազիւ պատշաճ է կրել մի զգեստ կամ չրջազգեստ, որի վերայ քանդուած կարերի հետքեր կան»:*

*Հրահանգները վերաբերում են նաեւ ճաշի, ուտելիքի, խմելիքի մանրամասնութիւններին: «Գինու գործածութեան ամենափոքր ինչ չափազանցութիւնն ընդ միշտ վարկաբեկիչ է կնոջ համար**). *ճաշի ժամանակ, հետեւաբար, զգոյշ եղիր գինին չը խմել առանց ջուր խառնելու հետը: Մի՛ ստիպեր եւ ոչ ոքի, որ ուտէ. ստիպելու սովորութիւնն անկիրթ ճաշակի եւ անդաստիարակ անձի յայտարար նշանն է: Կեր, ինչ որ առաջդ դրուած է. այն հիւրը, որ ան-*

*) *Հմմտ.* Lucien: Dialogues of the Hetaerai, 'Εταιρικοὶ Διάλογοι. Engl. Transl. Phila. 1916. Diol. VI, p. 41.

տարբեր է քո վշտին ու հոգերին, անքաղաքավար ու անկիրթ անձն է: Ճաշից յետոյ, երբ տիրուհիդ իւր ձեռքերն է լուացել եւ բերանը ցօղուել, նոյնը կարող ես եւ ինքդ անել,— աւելի պատշաճ եւ առողջապահիկ բան չկայ, քան այդ: Բայց եթէ տնից ելած, կողմնակի մի տեղ ես գնում լուացուելու նպատակով, աշխատիր առանց ընկերուհիների չերթալ, որպէսզի վատաբարոյ անձեր նկատողութեան տեղիք չունենան: Ճաշի ժամանակ տեղ գրաւիր տիրուհուդ մօտ մի յարմար տեղ, երկու աթոռ կամ բարձր թողնելով, առ նուազն, քո եւ նորա մէջ»:

Միջնադարեան կենցաղագէտ մեր մենտորը իւր հրահանգները ընդլայնումէ մինչեւ իսկ անձնական զգացումների աշխարհի սահմանները: «Եթէ, շարունակում է նա, մէկը քո սէրն է որոնում եւ խնդրում, պատշաճ եւ բարեկիրթ, հեզ ու առինքնող պատասխանով գոհացում տուր նորան: Իւրաքանչիւրին կիրթ ու քաղաքավար վերաբերումով՝ խուսափած պիտի լինիս թշնամիներ շահելուց: Հնարաւոր է բազմաթիւ ձեւերով ու եղանակով ազատուել ձանձրոյթ պատճառող սիրահարներից, առանց վիրաւորելու նոցա ինքնասիրութիւնը: Ընտրութեանդ պահին հարստութիւնը եւ գրաւիչ արտաքինն ու դէմքը պիտի չը լինին քո գերադաս նպատակդ· երկուսն եւս վտանգաւոր են, եթէ այլ արժանիքներից զուրկ է անձը: Գերադաս համարիր պատուաւոր ընտանիքի անդամ՝ սիրալիր ու շնորհալի անձը: Թոյլ մի՛ տար ազատ ու արձակ շարժում ու խօսք· ունեցիր միայն մի անձն քեզ սիրող: Հառաչանքներ, սիրային գրութիւններ կարող են պաշարել քեզ, սակայն անուշադիր անցիր նոցա մօտից: Աներկբայ եղիր, որ գաղտնիքներ տանող-բերող մարդու օգնութեան դիմող անձը՝ անարժան անձն է: Նա, որի սիրտը իրապէս կապուած է քեզ հետ, երբեք իւր սրտի գաղտնիքն ուրիշին պիտի չհաւատայ»:

Օրիորդներին տուած հրահանգները հաւասարապէս վերաբերում են եւ երիտասարդներին:

§ 21· Միջնադարեան տրուբադուրների մէջ միայն Amanieu des Escas-ը չէ, որ հրահանգչի դեր ունի ստանձնած: Ունինք եւ մի այլ Երգիչ — Arnaud de Marsan անունով, որը իւր ժամանակին Պրովանսի մէջ բարքերի, անձնական ու հանրային փոխ-յարաբերութեան, նիստ ու կացի, հագուստի, խօսքի, ազնուականի եւ կիրթ անձի վերաբերումների arbiter elegentiarum-ն էր Պրովանսի եւ շուրջը տարածուող երկրների նկատմամբ, ինչպէս Չեստերֆիլդն (Chesterfield, 1694-1773) էր, որի խօսքը օրէնք էր, ասածը կանոն, հրահանգածն՝ անվրէպ պարտադիր*): «Զգուշացիր, տես, որ զգեստներդ միշտ անպայման մաքուր լինին, ձեւը պատշաճ, հոգ չէ, թէ կտորն ու հիւ-

*) Philip Dormer Stanhope Chesterfeild, 4-րդ իշխանը —earl —այդ տիտղոսը կրող, Անգլիական քաղաքական գործիչ, հռետոր եւ տարազի պարտադրող անձն· բազմաթիւ նամակներով իւր ժամանակի բարոյքի եւ կենցաղի ուղին էր գծած, որից ելնելը «անոպայի» կնիք ունենալ էր նշանակում:

ուածեղէնն ինչքան սուղ է կամ որքան արժան»։ Եւ նոյն մանրակրկիտ խոյզ ու պահանջը սպիտակեղէնի, գուլպաների, կօշկի, խրացի, ծոպերի, բաճկոնակի եւն.—ի մասին։

«Զգեստդ նոյն կտորից պիտի լինի, ինչ որ վերարկուդ է. աւելի կարճ քան երկայն։ Բաւական լայն, որպէսզի կուրծքդ ծածկէ. գօտիդ եւ ճարմանդը՝ իրար յարմար, ինչպէս եւ կօշիկդ ու անկղը (boucle, buckle)։ Ազնուական անձը առանձին հոգ պիտի ունենայ իւր գլխի մազերի մասին։ Յաճախ պիտի լուայ եւ շատ աւելի լաւ է կարճ՝ քան երկար մազեր պահել։ Եթէ մօրուքն ու ընչացքը թողնես բնութեան աճքին՝ բաւական տգեղ տեսք պիտի ունենաս։ Լաւագոյն է կարճել, եթէ պիտի չկամենանք խայտառ ազատուել նոցանից։ Հոգ ունեցիր ձեռքերիդ մասին եւ գիտցիր, թէ ինչպէս պիտի պահես եւ գործ ածես, նոյնը եւ աչքերիդ հայեացքի գործադրութեան նկատմամբ. յամառ ու բիրտ հայեացք չը ձգես. մատներդ անդադար մի շարժեր եւ ո՛չ էլ անշարժ կախիր կամ անճարակ վարիչի դեր կատարիր. եթէ տեսնես, որ եւ է իր մէկի ձեռքին, որ քեզ հաճելի է, զգուշացիր յամառ հայեացք ձգել իրի վերայ եւ զգոյշ եղիր կոշտ ձեռնհարութեան մեղքից ազատ լինիս եւ կամ գռեհկի բըրտութեամբ առնես այդ իրը նորա ձեռքից»։

Ազնուական դասին ու կրթուած անձին զգեստի ու յարաբերութեան այս դասերը տալուց յետոյ Արնոյ տը Մարսանը ուսուցիչ է դառնում նոցա, թէ ինչպէ՞ս պիտի իրենց սեփական տան մէջ լինին, իբրեւ տանտէր եւ հիւրընկալ ասպնջատու.—

«Տանդ մէջ ազնուամեծար եղիր։ Ունեցիր զինակիր-սպասիկներ,— մանաւանդ երկուսը՝ յատուկ քո ծառայութեան համար։ Խնամքով ընտրիր նոցա. հսկիր, որ հիւրիդ, բարեկամիդ հետ լինին քաղաքավար եւ կիրթ՝ իրենց խօսք ու պատասխանների մէջ։ Բաւականացիր՝ որ միւս սպասիկներդ զգուշաւոր լինին տանդ ներքինի մասին եւ գիտենան վայելուչ խօսել, այնպէս որ վստահօրէն կարողանաս ուղարկել նոցա որ եւ է տեղ եւ կամ որ եւ է մէկի մօտ, հաւատացած՝ թէ հեգնանքի ու ծաղրի նիւթ պիտի չդառնան եւ քեզ այպանանքի թիրախ չ'դարձնեն եւ կամ մէկին առիթ տան ասելու,— «Ինչպէս տէրն՝ այնպէս եւ սպասաւորն է»։ Երբ հիւրեր ունիս՝ սիրալիր եղիր դէպի ամէնքը։ Հրաւիրիր նոցա հանդիստ առնել եւ զգալ, ինչպէս իրենց սեփական տան մէջ. հսկիր ու տես, որ նոցա տուած սպասարկութիւնն անթերի լինի՝ սպասիկների կողմից եւ քո ուրախ եւ հաճելի տրամադրութեամբ բարի օրինակ եղիր ամէնքին։ Բարեկամներիդ թիւը չափազանց փոքր պիտի լինի, եթէ անհիւրընկալ ես եւ կամ կծծի ու անպատեհ քննադատ։ Երբեք մէն-միայնակ սեղան մի նստիր. աւելի գռեհիկ արարք, քան այդ՝ ունենալ չես կարող. մի լինիր «կռոյ» ու «անոպայ»։

§ 22. Եւ եթէ Արնոյ դը Մարսանը պարտք է համարում մատնանշել այդ անոպայ վիճակից ազատուելու անհրաժեշտութիւնը, պէտք է ենթադըր-

րենք, թէ այդ վիճակն ընդհանրացած էր, ապա թէ ոչ նորա նման կենցաղագիտութեան կարգերի մի բարձր հեղինակութիւն պիտի չմատնանշէր այդ լայն բացը: Թէ այդ բացասական երեւոյթը հանրացած սովորութիւն էր, մենք տեղեկանում ենք այդ մասին նոյն շրջանի օրերին ապրող մի այլ հեղինակաւոր տրուբադուրից, Raymond Gaucelin de Bezier-ի հրահանգներից: Վերջինս գանգատւում է, թէ իր օրերին, շատերն էին մէն-միայնակ սեղան նստում, ճաշի ժամանակ շատ աւելի խնամքով ծածկուելով օտար աչք ու ախորժակից, քան որոշ թռչուններ եւ փոքր գազաններ, որոնք խնամքով թաղցընում էին իրենց պաշարը թագուն խորշների մէջ,—

«Ճաշի նստիր հիւրերի հետ, հրահանգում է նա եւ ուշադիր եղիր նոցա: Հսկիր, որ սպասաւորներդ եւս նոյն ուշադիր վերաբերումն ունենան նոցա հանդէպ: Թէժ ու ճարճատուն կրակ պահել տուր քո ջրմիկի մէջ, շուրջդ հիւրերդ բոլորած եւ զգուշացիր, որ սպասաւորներդ չգան ու ականջիդ չփսփսան այդ պահերին: Ինքդ էլ պիտի չը շշնջաս նոցա ականջներին: Փսփսոցը անարգ սովորութիւն է եւ արհամարհելի: Եւ որպէսզի ազատ լինիս այս անճահ անպատեհութիւնից, ճաշից առաջ եւ հիւրերդ ի մի գալուց շատ կանուխ՝ տուր բոլոր պատուէրներդ: Հոգալու խնամք ունեցիր, որ հիւրերիդ սպասաւորները, նոցա ձիերը նոյնպէս սնունդ ստանան, ապա թէ ոչ կարող ես գանգատների խօսքեր լսել յետոյ, որ երեսդ պիտի կարմրցնէ ամօթից: Տանդ դարպասի դուռը փակել մի՛ տար եւ կամ նոցա առաջ խարազանով կամ ցպերով զինուած դռնապան ու պահապաններ մի՛ դնիր, որպէսզի վանեն ու հալածեն մանկլաւիկները, ձիապանները, ձեռնածուները կամ աշուղները: Հիւրերիդ հետ ճաշի նստած ժամանակ սեղանից վերջին ելնողը դու եղիր: Տունդ ու դռներդ լայն ու բաց պահիր ամէնքի առաջ եւ պատրաստ եղիր ընդունելու ամէն մի եկողի՝ հոգ չէ, թէ օրուայ ո՞ր ժամին կամ գիշերուայ ո՞ր պահին: Խաղի ժամանակ խաղա մեծ գումարով եւ լայն սրտով: Պատուաբեր է այդ. եւ խաղա երկար: Կորուստ եւ վաստակդ ընդունիր հաւասար անդորրութեամբ եւ առանց վրդովուելու, յուզումների: Կարճ՝ եկամուտդ ծախսիր, հիւրընկալ ազնուականութեամբ»:

§ 23. Այս հրահանգների սահմանը չէր գոհանում միայն այդքանով: Այլ տրուբադուրներ բազմաթիւ այլ հրահանգներ ունին, որոնք վերաբերում են ասպետներին, նոցա զէնք ու ձիավարժութեան, մրցութեան կանոններին, ասպետների յարաբերութեան, խնամարկու ընկերակցութեան, օտարի մօտ հիւր մնալու պատշաճի օրէնքներին, կանանց հետ վարուելու կիրթ ճաշակի պահանջին: Ուրիշներն եւս կան, որ չեն տատանւում բարձր ազնուականութեան, տիրապետ իշխաններին հրահանգներ տալուց: Այդ շրջանի մէջ նոցա ներկայութիւնը սովորական ուսուցչի դեր չէր, այլ առաջնորդող հոգու եւ մտքի: «Տուլուզի կոմս, ասում է նորանից մէկը, Guy de Cavillon, եթէ կամենում ես գովեստի եւ ոչ պարսաւի արժանանալ՝ եղիր հաւատարիմ քո թե-

ւարկողիդ, միաժամանակ նաեւ առատաձեռն եւ ճոխ ու հիւրընկալ. վայելուչ եւ շքեղ ընծաներ բաշխիր ո՛չ միայն բարեկամներիդ, այլ եւ օտարներին. պատրաստ եղիր մշտապէս տալու եւ պարգեւելու եւ նոյնքան պատրաստ՝ որ է եւ մէկին որ եւ է բան մերժելու. հալածիր ու հետապնդիր թշնամիներդ, պաշտպանիր եւ հովանաւորիր բարեկամներդ եւ թոյլերը»: «Միայն ցած հոգիներն են եւ անարգ անձերը», ասում է Guilhem d'Agoult, «որ հոգ չունին բարի անուան եւ հռչակի»: «Ամօթ է ու նախատինք», ասում է Nat de Mons, «դիւրափոփոխ միտք ունենալ, թոյլ կամք եւ տուած խօսքի արժէքը ոտնհարել»:

Տրուբադուրները գովքն էին երգում փառքի սիրոյ, վտանգաւոր արկածների ձեռնարկների, ներբողում էին բարեկամի օգնութեան փութալու տենչն ու հոգը եւ դորանից ստացած հաճոյքը: Դրուատում են գեղեցիկ ու գրաւիչ հագնուիլն ու պճնուիլը, անհաշիւ առատաձեռնութիւնը, անսահման ասպնջական հոգին, հիւրասիրութեան հակումը, հիւրերին հաճելի լինելու զգացումն ու պարտքը, տուած խօսքի պահպանելու ունակութիւնը, սիրած կնոջ համար վտանգի ենթարկուելու պատրաստակամ փոյթը, նորան հաճոյք պատճառելու ինքնակամ տրամադրութիւնը: Եւ այս բոլորի հետ, նոցա երգերի մէջ հազիւ ենք հանդիպում իսկական հերոսութեան գովքի խօսքի: Անձնական հաճոյքից հրաժարում, առաքինութիւն՝ յանուն եւ ի սէր առաքինութեան, բարիքի գովք, իբրեւ վերացական հետապնդում, հայրենիքի բարձրագոյն սէր, իբրեւ հոգեկան պահանջ,— այսպիսի հարցեր հազիւ, թէ նշմարելի են նոցա երգերի մէջ: Իսկ այն, ինչ որ «իմաստութիւն» ենք կոչում, նոցա երգերն, անձնական ըմբռնումները սահմանափակւում են սովորական խոհեմութեան արտայայտութիւններով, յաճախ տատանուող, վարանոտ, կէս-սիրտ գործերի մղումով: «Իւրաքանչիւր անձն», ասում է նորանից մէկը, Gancelm Fandit, «պէտք է խոհեմութիւն ունենայ անձնական հաճոյքների նկատմամբ, հոգ տանելով, որ կծծի սովորութիւնների գերի չդառնայ: Ամէն ոք պիտի աշխատէ միշտ բարիք անել, որքան իւր ոյժերը կը ներեն»:

Եւ ապա շարունակում է,— «Նա, որ փորձում է իւր կեանքը վարել առանց սանձահար զսպումների, պիտի յոյս չունենայ, թէ հանրային համակրութիւն պիտի շահէ եւ պատուակալ անուն պիտի ձեռք բերէ: Կանոնաւոր վարքի ընթացքն է այն արմատը, որից բարի համբաւն է ընձիւղում: Նա, որի սիրտը չափազանց լայն է՝ լայնօրէն տալու եւ բաշխելու, պէտք է դիտէ եւ տեսնէ, թէ ո՞րտեղից պիտի հոգայ այն միջոցները, որով պիտի իւր հակումներին գոհացում տայ. սակայն, չեմ ասում, թէ մարդիկ պիտի խուսափեն տալուց: Անչափ հարստութիւն դիզելը ցաւ է ինքնին. ամենամեծ դժուարութիւնն՝ այդ հարստութիւնը պահպանելն է, երբ արդէն դիզուած է: Նա, որ իւր անմտութեամբ իւր ունեցածն է կորցնում, չը գիտէ այլեւս, թէ ո՞րտեղից կարող է նորը ձեռք բերել կրկին: Անխոհեմութիւնն ու անմտութիւ-

նը ո՛չ արժէք ունին, ո՛չ յարգ: Ամէն ինչ իւր տեղն ունի. տեղը կայ խօսելու եւ տեղը կայ լռելու. տեղը կայ տալու եւ տեղը կայ՝ պահպանելու. կայ տեղ իմաստութեան եւ կայ տեղ խելառ խենթութեան: Նա, որ արժէք է տալիս իւր վարկ ու համբաւին, ո՛չ խենթ պիտի լինի եւ ո՛չ չաղակրատ. այդպիսին հանրութեան սեփականութիւն պիտի չդարձնէ այն, ինչ որ ծածուկ պահել էր ցանկանում: Յիմար է ու անմիտ այն անձը, որ իւր բոլոր երգերն է երգում. տխմար, որ հաւատում է մի խելառի. խելառ, նոյնքան, երբ խելառին արժանի պատիւը չէ տալիս նորա յիմարութիւնների համար, իսկ ամենից մեծ անմիտները նոքա են, որ խելառի օրինակին են հետեւում եւ նորա հակումներին ականջ դնում»:

Առածների կարգ անցած կամ անցնելու միայն սահմանուած այս անարժէք բարոյական «իմաստութիւններից» զատ, որ ամէն մարդ սիրով է կրկնում, սակայն եւ ո՛չ ոք է հետեւում եւ որ ղօղանջում է լսողների ականջին եւ ապա վերածւում անարժէք հասարակ-տեղիք բանաձեւերի — Պրովանսի երգիչները անկարող եղան կեանքի իրական իմաստութեան ուղին գծել:

§ 24. Միջնադարեան տրուբադուրների ազդեցութիւնը իւր դերն է ունեցած՝ պատմական եղելութիւնները, իբրեւ պատմութիւն պահպանել տալու ժողովրդի մտքի մէջ, իրենց երգերով: Նոցա վիպական պատմուածքները Առիւծասրտի արկածների, բանտարկութիւնների, ազատուելու մասին, ինչպէս եւ այս ու այն թագաւորների, իշխանների, կայսրների, կոմսերի արարքների մասին՝ առիթ էին, որ այդ անունները անվերջ հոլովուէին ժողովրդի բերանում, իբրեւ պատմական անցեալի յուշեր եւ գեղեցիկ օրինակներ՝ արութեան, քաջութեան, նուիրումի եւ այլն: Ճշմարիտ է, այսօր այդ երգերի մէջ յիշատակուած վիպապատում դէպքերը ոչ ոք կարող է ընդունել, իբրեւ պատմական անցեալի ճշգրիտ եղելութիւններ, սակայն այդ ամէնը, իբրեւ ժողովրդական պատմուածք, ժողովրդի ճաշակով եւ ժողովրդի համար կերտուածք, իրենց մեծ ազդեցութիւնն են ունեցած հրահրելու հերոսների յիշատակը, պահպանելու իր սիրած անձերի արարքների արձագանգը նոցա մտքի եւ սրտի ականջների մէջ:

Այդպիսի վիպապատումներից մէկն է Դուելլոյի մասին, հրատարակած ԺԶ. դարում (Վենետ. 1569 թ.), գրի առնուած շատ լուրջ, կշռադատ մի անձի կողմից, Don Geronimo Urrea-ի ձեռքով, որ փոխարքայ էր Նապոլի քաղաքի, Խորհրդականը Կարլոս Ե.-ի,— ուր նկարագրւում է, թէ ինչպէ՞ս Ռայմոնդ Բերանժէն, Բարսելոնի կոմսը — Raymond Berenger — ծպտուած, ճանապարհորդեց մինչեւ Գերմանիայի սիրտը, թէ ինչպէ՞ս հանդիպեց եւ սպանեց առաջին իսկ մրցութեան պայքարի մէջ, կայսրուհու զրպարտիչը, քանի որ կայսրուհու կեանքի թելը կախուած էր այդ մենամարտի վախճանից: Այս բոլորը պատմուած է ոգեւորութեան զօրեղ շեշտով, իբրեւ իրական փաստ, ուր իրողութիւնները կատարող ու գործող անձը ներկայացրած է իր-

րեւ հիացումի արժանի մի հերոս այն սերնդի մտքի եւ սրտերի առաջ, երբ Ուրրէյան էր ապրում եւ գրում, իբրեւ չափանիշ օրինակներ, որին հետեւելուց աւելի բարձր ու ցանկալի բան չէր կարող լինել: Այժմեան մեր քննադատ ոգին շատ բան է կորզել այդ հերոսական արութեան զարդերից, շատ բան, իբրեւ վիպապատում եւ հէքիաթ ներկայացնելով, այն էլ մեծ ու յամառ աշխատութեամբ եւ հակառակ ժողովրդական սիրած, վիպապատումի հաւատալիքներին: Սակայն եւ այնպէս այդ վիպապատում հերոսական-արարք երգ ու պատումների մէջ տակաւին կան տարրեր, որ մօտ են ժողովրդի սրտին եւ որ դեռ երկար ու երկար պիտի մնան նոցա համար գրաւիչ, իրենց գունագեղ պատկերներով, իբրեւ անցեալի պատմութեան մի մանրանկար, գեղեցիկ պատկեր, ժամանակի ըմբռնումների, յոյզերի երանգաւորումով: Այսպիսի գեղեցիկ պատկերներից մէկը միայն բաւական է եւ արժէ յիշատակութեան համար,— այն պատմուածքը, թէ ինչպէս Ելէոնորայ Թագուհին իւր իսկ բերանով դուրս է ծծում Եդուարդ Ա. Թագաւորի վէրքից՝ թոյնը,— մի պատմուածք, որ աւանդուած է նաեւ այլ հերոսների եւ հերոսուհիների մասին:

Նոյնը չէ՞նք տեսնում Միջնադարեան գրականութեան շրջանի մեր եւ մեր շուրջը եղած ազգերի նկատմամբ: Ֆրիկի Դիւանն իսկ տալիս է մեզ այդպիսի պատմական անցեալի մի յուշ իւր «Վասն Արղուն Ղանին եւ Բուղային» Տաղով. (Լէ.): Ունինք մի այլ գրաւիչ, գեղեցիկ երանգներով գծուած պատկեր եւս Լիպարիտ իշխանի սպանութեան մասին: (Յովհաննէս Կաթողիկոս Թլկուրանցու «Տաղ Քաջարի Լիպարիտի» վերնագրով, «յԱստուծոյ անունն օրհնեալ, Որ անըսկիզբն եւ անվախճան, Որ ետուր ուժ Լիպարտին, Եւ զօրացոյց զիւր սուրբ ծառայն»..., Սիսուան, էջ 226–227): Ո՞վ կարող է ուրանալ մեր գունագեղ պատկերների, արիական գործերի, սխրագործ արարքների, մին քան զմիւս գրաւիչ վրձինով պատկերացած մեր «Սասմայ Ծռերը», ամբողջ մի վիպապատում մեր անցեալի կեանքի, պատմութեան՝ հերոսների՝ անձնաւորուած Թըլոր–Դաւթի մէջ: Ամէն ինչ կեանք է շնչում այնտեղ, յոյսերի ու ըղձերի անվերջ կարկաչուն հոսանքով, որով ապրում է ե՛ւ Հայ գեղջուկը, որից սնունդ է առած Միջնադարեան մեր ազնուականութիւնը իւր արիական պայքարների համար, որից հմայուել ու ներշընչուել է ե՛ւ Հայ բանաստեղծը եւ որը նորանոր որոնումների անընդհատ եւ անվրէպ աղբիւր է հայ մտաւորականի ու գիտունի համար: Նոյնը չէ՞ եւ մեր «Քաջանց Տուն» անունով յայտնի մի այլ վիպապատում իւր գունագեղ հանդերձանքով, ժողովրդական պատմուածքի գունեղ ծաղիկներով եւ բոյր ու թոյրով պնճնուած եւ պատմական անցեալի անվրէպ եւ քննութեան արժանիք ներկայացնող հիմքերով:

Նոյնը չէ՞ նաեւ մեր մօտաւոր հարեւան ժողովրդի, Վրացիների մէջ այնքան անուն հանած Շօթա Ռուսթավելու «Ընձենաւորը», որ պատկերացումն է իւր դարի հայեացքի՝ կեանքի եւ նորա փոխ–յարաբերութիւնների, որ բանաստեղծն է ներկայացնում, իբրեւ Վիր ժողովրդի հայեացքը կեանքի բոլոր

երեւոյթների նկատմամբ: Այստեղ մեր առաջ է դրւում ժողովրդական հոգեբանական ըմբռնումների մի ամբողջ պատկերասրահ, իրար արագ յաջորդող, անընդհատ չարայարութեամբ, ուր մի ժողովրդի հոգին ու ըմբռնումներն են ներկայանում, իւր ինքնուրոյն նկարագրով, մշակոյթի շարժապատկերներով, ազդուած, թէ՛ հեռաւոր Եւրոպայի եւ թէ՛ մօտաւոր Ասիայի, Պարսկաստանի անմիջական տուեալներով, բանաստեղծութեան ձեւ, վիպապատումի եղանակ, ասպետական կեանքի՝ կնոջ–պաշտամունքի, ընկերոջ նուիրման, այնքան գրաւիչ քառեակներով: Այդտեղ են Արեւմտեան Իբերիան, Արեւելեան Վրաստանը, Պարսիկ բանաստեղծութեան անջինջ կնիքով, Արաբ տիրապետութեան դրոշմով, Սեմական մշակոյթի հոսանքի խաւերով, այդ բոլորը ի մի ձուլուած բուն իսկ ժողովրդի, Վիր ազգի բարոյքի եւ կենցաղի անհերքելի ձուլուածքով: (N. Marr: **Vstupitelnyya i zakluchitelnyya strofy Vityaza v Barsovoi Kozhie**— Teksty i Razyakaniya, S. Peter, 1910, I. VII.— **The Man in the Panther's Skin,** a Romantic Epic by Shot'ha Rust'haveli, A close rendering from the Georgian, by Marjory Scotte Wardrop. Lond. 1912.— Նոյն հեղ. Բ. Հրատ. **The Knight in the Tiger's Skin,** Supplemented and Revised by E. Orbelyan & S. Jordanashvili, N. Y. 1939.— Shot'ha Rust'haveli: **Vityaz v Tigrovoy shkurie.**— Poeme, Perevod s **Gruzinskago** K. D. Balmont.— Mosc. 1937.— **Յ. Զաւրեան.**— «Շօթա Ռուսթաւելի», «Հայրենիք» Ամսագիր (Բոստ.) 1938, Նոյ., No. 1, էջ 65–85):

Նոյնը չէ՞ եւ մեր միւս դրացի՝ Յոյների Միջնադարեան Վիպապատումի մի գեղեցիկ նմոյշը — «Դիգենիս Ակրիտասի Սխրագործութիւնները» անունով, ուր հերոսական մաքառումների հերոսի անձի մէջ է խտացած Բիւզանդական կայսրութեան պատմական անցեալի մաքառումները իւր գոյութեան պահպանութեան համար, կլանելու եկած Մահմետական հոսանքի ձգտումների դէմ: **Les Exploits de Digenis Akritas,** épopée Byzantine du Dizième siécle, publié... par S. Salthas et E. Legrand, Paris, 1875)— (Տե՛ս մեր յօդուածը «Զմշկիկ կայսեր նամակը Աշոտ Թագաւորին», «Հայր.» Ամսագիր, Բոստոն, 1937, էջ 123–127):

Պէտք չը վրիպէ մեր աչքից եւ այն պարագան, թէ տրուբադուրների ազդեցութիւնը Եւրոպայի գրական աշխարհի վերայ, առ հասարակ, շատ մեծ է եղած: Յայտնի է, որ Իտալական ժողովրդական գրականութեան բոլոր ձեւերն եւս ծնունդ առած կամ փոխարինութիւն են իրենց ձեւով եւ յաճախ նաեւ բովանդակութեամբ տրուբադուրներից եւ կամ տեղական ժողովրդական երգիչներից, կարող գրական հանճարի եւ ճաշակի անձերի կողմից մշակուելով եւ մի նոր ինքնուրոյն հունի մէջ անցնելով, իբրեւ վերածնունդի հսկաների գրական արտադրութիւններ*): Գրական աշխարհի նոր գաղափարների նը-

*) Francesco de Sanctis: **Italian Literature,** I. II. 1931, N. Y. Maud E. Jerrold: **Italy in the Renaissance,** 1927, London.

կատմամբ եւս Պրովանսը, իւր տրուբադուրներով անհատնում աղբիւր էր եւ անսպառ հանք Իտալիայի համար։ Երկար պիտի լինէր առաջ բերել, թէ ինչպէ՞ս վերջիններս ոչ միայն գրական իրենց նոր երկերի մէջ, ոչ միայն գրական նոր երկի գաղափարն են փոխ առած, այլ եւ Պրովանսի երգիչների բառերը, տողերը, արտայայտութեան պատրաստ ու մշակուած ձեւերն են իւրացրած. Թերեւս մի ամբողջ հատոր պէտք պիտի լինէր գրել այս մասին, ինչ որ մեր նպատակից բոլորովին դուրս է. բայց միայն յիշատակենք եւ անցնենք ասելով, որ այնպիսի գրական հսկաներ, ինչպէս են Դանտէ, Պետրարք, Արիոստոյ, Տասսոյ,— մի կողմ թողնելով համաստեղութեան աւելի փոքր աստղերը,— ոչ միայն գաղափարների պարզ փոխարինութիւններ են առած Պրովանսի երգիչներից, այլ յարասիկ — paraphrasée — կերպով, ազատ թարգմանութեամբ իրենց երկերի մէջ են հիւսած Պրովանսալների լաւագոյն կտորները, յաճախ վարպետ նոր հպումով, ուր դժուար է բուն աղբիւրը նշել եւ աւելի եւս պարզ պատուաստումով, ուր դժուար չէ տեսնել, թէ նոր պատուաստի շիւղը ո՞ր բունից է կտրուած։ Ճիշդ այն ազատութեամբ, ինչպէս Անգղիացի հեղինակներից Spenser-ը իւր The Fairie Queen-ի մէջ եւ շատ ուրիշներն եւս Իտալական փոխառութիւններից, նոր յարասիկ ձեւերով, հիւսած են երկերի մէջ։

Գրական այս ազատ ու անվերապահ վերաբերումի ըմբռնումների մէջ դժուար չէ տեսնել, թէ ինչպէս մէկի ազատ փոխառութիւնը առիթ է տալիս միւսին եւս նոյն ազատութեամբ վերաբերել երկրորդի գործին, ինքնին ազատ փոխարինութիւն անելով նորանից, թերեւս չիմանալով, թէ բուն աղբիւրը բոլորովին այլ տեղ է։ Այսպէս Պետրարքը իւր ազատ փոխարինութիւններով առիթ է տուած նոյնքան ազատ փոխառումների մուտքի Անգղիական գրականութեան մէջ, որոնց նախնական, բուն աղբիւրը պէտք է որոնել Պրովանսի երգիչների երկերի մէջ,— այսպէս

Benedetto sia ’l giorno, e ’l mese, e ’l anno

դարձել է

Blessed be the day, the month, the year
(= Օրհնեալ այն օրը, ամիսն ու տարին.—)

որը փոխարինութիւն է մի երգից — canzo — (= որից ամենայն հաւանականութեամբ եւ մեր գանձ անունով յայտնի որոշ տաղերն ու երգերը Միջնադարեան գրականութեան մէջ) եւ որի բուն հեղինակն է համարւում Girard de Borneil անունով մի Պրովանսցի երգիչ, որի մի երգն սկսւում է

Ben ai al temps, el jorn, e ’l an, e ’l mes

(=Օրհնեալ եղանակն, օրը, տարին եւ ամիսն),— եւ որը գրական մի նոր վարպետ ինքնացումով անցնում է եւ դառնում Բայրոնի սեփականութիւն,—

«Ave Marie! blessed be the hour!
the time, the clime, the spot!»
Byron: **Don Juan,** III, 102

§ 26. *Հաւանականութիւնից զուրկ պիտի չհամարուի, եթէ ասենք, թէ նոյն իսկ* «Divina Comedia»*–ի բուն իսկ ծրագիրն ու գրի առնելու եղանակը թելադրութիւն է որոշ Պրովանսալ տաղերի եւ նոցա զօրեղ, անպայման ազդեցութիւնն է կրում իւր վերայ: Այդ երգերից մէկի մէջ պատմւում է, թէ ինչպէս ծառայութեան միշտ պատրաստ սպասեակներից* — Cavalier servante — *մէկը անլուր մի յանդգնութիւն է ունենում այցելել Դրախտը,— մի նիւթ, որ Պրովանսի երգիչներից շատ շատերի սիրելի առիթներից մէկն է: Գոյութիւն ունի մի ձեռագիր, որ գրուած է Աղէքսանդր Գ. պապի* (1159–81 *թ.*) *օրերին, որի մէջ պատմւում է, թէ* Fra Alberico di Montesassino,— *որը եւ այդ պատմուածքի հեղինակն է համարւում, այցելել է — մտովի կամ հոգեւին, այն բոլոր վայրերը, որ նկարագրուած ենք տեսնում Դանտէի* «Աստուածային Կատակերգութեան» *մէջ: Ֆրա Ալբերիկոյի տեսիլների մէջ սակաւ չեն այնպիսիները, որոնք յետոյ նկարագրուած ենք տեսնում իտալական բանաստեղծութեան հօր երկի մէջ: Ամենայն հաւանականութեամբ Ֆրա Ալբերիկոն ինքն իսկ ծնունդ էր երեւակայութեան այդ երկը յօրինող հեղինակի կամ խմբագրողների կողմից, ճիշդ այնպէս, ինչպէս Դանտէի համար Վերգիլիոսի ընկերակցութիւնն էր՝ իւր երեւակայական պտոյտների ժամանակ: Իսկ թէ այդ բոլորի հիմքը կազմում էին Պրովանսի տրուբադուրների երգերը եւ փոխառութիւն էին նորանից՝ այդ մասին կասկած իսկ չկայ, ինչպէս այլ երկերի նկատմամբ: Եւ, պէտք է ասենք, որ ինչ վերաբերում է փոխառութեան ընդհանրացած սովորութեան, որ մեր օրերին կնքուած է բոլորովին այլ անունով՝ բանաքաղութեամբ, աւելի նուրբ եւ բանագողութեամբ* — plagiat — *աւելի կոշտ ձեւով,— այդ սովորութիւնից հազիւ թէ իտալական վիպագիրներից մէկն է հրաժարուած, մէջը լինելով նաեւ Բոկաչիոն* — Boccaccio—, *որի ապացոյցները այնքան բազմաթիւ են եւ ակներեւ: Թէրեւս անհետաքրքրական պիտի չլինի նշել, իբրեւ ապացոյց, այդ լայնօրէն ընդհանրացած սովորութեան, այն նկատողութիւնը, որ Արիոստոն դնում է Ռինալդոյի բերանի մէջ, երբ ղեկավարն առաջարկում է պատմել պատմութիւնն «Ադոնիոյի եւ իբրեւ գնահատելի ընծայ այն շանն, որ նա նուիրեց դատաւորի կնոջ»: Եւ ասպետը* — paladin — *պատասխանում է նորան,—*

«Il Suono
Non passa 'l Alpa, e qui travoi rimane;
Perché nè in Francia, nè dove ito sono
Parlar n'udi ne le contrade estrane».
Orlando, XLIII. 71

«Չէ անցած Ալպերն՝ այստեղ է մընում
Ձեզ մօտ յարակայ, զի ոչ Ֆըրանսիա
Կամ իմ գընացած եւ ոչ մի երկրում
Այդ մասին մի խօսք լըսեցի ահա.
Եւ կամ իմ անցած մեծ ճանապարհին,
Ոտքի տակ տուած վայրերում նոր, հին
Ես մի այդպիսի լըսեցի զրոյց...»*)

Արիոստոն հազիւ թէ կարող լինէր այդպիսի մի բան ասել իւր քերթուածի մէջ առաջ բերուած միւս բոլոր պատմութիւնների մասին: Իսկ ինչ վերաբերում է յատկապէս այս պատմուածքին, թերեւս աւելորդ չլինի յիշատակել մի նկատողութիւն, որ մի ժամանակ ուղղուեցաւ Ռաֆայէլին, այն առթիւ, թէ ինքը վստահօրէն կարող է անուշադրութեամբ անցնել եւ արժէք չտալ իրեն վերագրուած ընդօրինակողի տիտղոսին, քանի որ ինքը մեծ հոգածութեամբ ոչնչացրել է իւր ընդօրինակած պատկերի իսկականը: Նման անհետացումների եւ ոչնչացումների պարագաներ անհնարին էին Պրովանսի տրուբադուրների թողած պատմութիւնների նկատմամբ, քանի որ այն օրերին, ինչպէս եւ այժմ, բազմաթիւ կարեւոր գրութիւններ էին գտնւում Իտալիայում: Անդրլեռնական գաղափարների կարեւորութիւնը շատ աւելի խոր եւ հեռու էին արմատներ ձգած, երբ Արիստոն ենթադրում էր, թէ ինքն ըստ ամենայնի արդարացի էր՝ յայտարարելով, թէ ակնարկուած՝ ընծայ տրուած չան պատմութիւնը ծագումով իտալական էր: Այդ փոխառութեան բուն իսկ աղբիւրն ու ծագումը եւ ոչ մի իտալացի մեկնաբան կարող էր ժխտել, քանի որ նոցանից իւրաքանչիւրը գնում եւ դիմում է բուն իսկ աղբիւրին՝ Պրովանսի գրականութեան ստեղծագործող երգիչները մատնանշելով:

§ 27. Պրովանսի երգիչների ազդեցութիւնը չէր սահմանափակւում մօտաւոր Իտալիայի նոր ծնունդ առնող Վերածնունդի գրականութեամբ: Այդ ազդեցութիւնը տարածւում էր աւելի հեռու, դէպի հիւսիս՝ Գերմանիայի Minnesaenger-ների վրայ եւս: Ո՞վ կարող է ժխտել, թէ նախնական շրջանի եւ հետագայի, աւելի ինքնուրոյն շրջանի, Գերման Minnesaenger-ների ժողովրդական Սիրերգները,— ազատ էին Պրովանսի troubadour-ների ազդեցութիւնից: Գրական եւ ոչ մի լուրջ ուսումնասէր պիտի այդպիսի բացասական վերաբերում ունենար: Քանի որ այդ երկուսի նմանութիւնը՝ բովանդակութեան եւ, մանաւանդ, ոճի կողմից այնքան նման են իրար, որ այդ երկուքից մէկը արտագրած պիտի լինէր եւ պարզապէս թարգմանած, առանց յարասիկ paraphrasée — ազատ փոխարկութեան իսկ դիմելու: Եթէ troubadour-ները շատ աւելի կանուխ օրերի մէջ էին ապրում, քան Minnesaenger-ները, հետեւաբար եւ բնականօրէն այդ երգերի նախերգակ հեղինակներն էին՝ իրական

*) Մեր թարգմանութիւնը: Հեղ.

հեղինակները, այդ մասին եւ ոչ մի կասկած կայ եւ ապացոյցի կարիք: Մինչդեռ Vaterland-ի քնարերգակ տաղասացներն խպառ անծանօթ են գրական աշխարհին մինչեւ ԺԲ. դարի կէսերը—, մի թուական, որ ինքնին իսկ ժխտում է նոցա նախնական հեղինակի իրաւունքը,— Տարեգրութիւնները, դորա փոխարէն, մեզ որոշ դրական ցուցումներ են տալիս troubadour-ների գոյութեան մասին՝ շատ աւելի կանուխ շրջանի մէջ: Պատմելով Ռոբեր — Robert — թագաւորի եւ Աքուիտանիայի իշխանուհի Կոնստանսի ամուսնութեան մասին (1000 թ.), Գլաբեր — Glaber — Տարեգիրը պատմում է, թէ Պրովանսի տրուբադուրները, որոնք հետեւեցին ամոլին, շատ էլ մեծ տարբերութիւն չունէին հետագայ օրերի տրուբադուրներից: Եւ պատմում է նոցա յեղյեղուկ ու կամշոտ, անմիտ ցուցամոլութեան, ինչպէս եւ վնասակար ազդեցութեան մասին, որ կարող եղան կարճ ժամանակի ընթացքին տարածել իրենց նոր շրջանի ծանօթների մէջ: Եւ պատմելով, թէ ինչպէս Ֆրանքներն աշխատում էին սորկօրէն ընդօրինակել իրենց նոր հիւրերի զգեստի տարազն ու վերաբերումի ձեւերը, չէ խուսափում ընդգծել, թէ նորեկները շատ աւելի գերազանց էին իրենց մշակոյթով եւ զարգացումով, քան նոյն իսկ պալատական եւ արքունի միջավայրը:

Գլաբերն առաջ է բերում նաեւ մի քանի ոտանաւորներ, որի մէջ խիստ քննադատի դեր է ստանձնում Պրովանսի երգիչների նկատմամբ, ցոյց տալու համար, ըստ երեւոյթին, թէ մեղաւորները միայն troubadour-ներն էին եւ թէ ինքն եւս ընկած էր նոցա ազդեցութեան տակ, նոցա հետեւելով, քանի որ այդ մեղքից ազատ չէր դրանից շրջապատն ու շրջանը: Այստեղից պիտի եզրակացնել, որ Պրովանսի տրուբադուրներն արդէն ազդեցիկ ազդակ էին սկսած ԺԱ. դարի իսկ սկզբի օրերից, ինչ որ յամենայն դէպս անժխտելի երեւոյթ էր արդէն յիսուն տարի յետոյ: Այդ օրերին արդէն Պրովանսի լեզուն մինչ այն աստիճան զրաւչութիւն էր ստացել եւ ազդեցութիւն, իբրեւ կազմ ու ճկուն լեզու, որ գերազանց կատարելութեան հասած մի վարպետ, Պուատուի կոմս Վիլհելմը, չէր քաշւում իւր ձեռքը վին իսկ առնելուց եւ երգելուց: Եւ սկսած Վիլհելմի օրերից տրուբադուրների անքակ օղակը շարունակւում է անընդհատ:

Պուատուի կոմսը — Comte de Poitou — մէկն էր առաջին Խաչակիրներից եւ նա բացառութիւն չէր իւր ընկերակից ասպետների մէջ, իբրեւ երգիչ,— troubadour— նորա նման հաղարաւորներ կային*), որոնք Խաչակրու-

*) Գուսան — troubadour -- լինելն ամօթաբեր մի դիրք չէր, ինչպէս ենթադրւում է, այլ պատուաբեր եւ նշան որոշ հոգեկան արժանիքների, մտաւոր կարողութեան, բանաստեղծական շնորհքի ,երգելու ընդունակութեամբ ազդեցութիւն եւ հմայք ունենալու առաւելութեան: Գուսաններ էին Ռիչարդ Առիւծասիրտը Անգլիայի, Ռընէ դ'Անժու — Rene d'Anjou — թագաւորը, որոնց կարգին եւ մեր Արտաւազդը՝ Գուսան եւ Թատերագիր, «Ոչ անհմուտ ինչ էր Հիւրովդ լեզուին եւ դպրութեանցն Հելլենաց: Իսկ Արտաւազդ ինքնին եւ Ողբերգութիւնս քերթեալ ունի եւ Ճառս եւ արձանագրեալ Պատմութիւնս, յորոց կէսք կան եւ մինչեւ ցայսօր»:

թեան արշաւանքների ժամանակ կռուեցին Սելջուկեանների դէմ: Այդ արշաւանքներն իրենց նպատակով ու ձգտումներով այլ, բայց իրենց ընկերական-հանրային յարաբերութիւններով, բոլորովին նոյն հետեւանքների ծնունդ տուին: Եւ այս մաքառումի տարիների երկար շրջանին էր, որ Գերման ասպետներն առաջին անգամ ծանօթացան Պրովանսի բանաստեղծութեան՝ Ֆրանսիայի եւ յատկապէս հարաւային Ֆրանսիայի բանաստեղծ-երգիչ ասպետների ընկերական շրջանի մէջ: Եւ եթէ ճիշդ է այս վարկածը, ապա ուրեմն հազիւ ԺԲ. դարի կէսերին էր, որ Գերման Minnesaenger-ները — ժողովրդական երգիչները,— կարող էին ամենայն հաւանականութեամբ, հետեւելով Պրովանսի երգիչներին՝ յաջող նմանութիւններով արտադրել իրենց սեփական քնարերգակ տաղերն ու երգերը: Եւ ապա պիտի աչքից չփախցնենք եւ այն պարագան, թէ Գերմաններն էին, որ թարգմանում էին Պրովանսական գեղեցիկ երգերն, գրաւիչ՝ իրենց կշռոյթի եւ յանգերի ճոխութեամբ, Գերմաներէնի եւ ոչ ընդհակառակն: Հարաւի Langue d'Oc-ի բարբառը, իրապէս չունի եւ ոչ մի, նոյն իսկ աննշան, հետք ու երեւոյթ Գերման լեզուի եւ արտայայտութեան: Եւ այս բոլորի հետ հարաւային գեղածիծաղ Ֆրանսիայի, գեղեցիկ Պրովանսի տրուբադուրը, նոյն իսկ ամենալայն թափառիկ հակում-

(Պլուտարքոս, Մարկոս Կրասսոս, Զուգակշիռք. Հտ. Դ. 138. Վնտ. 1834): Գուսաններն այնպիսի դիրք ունէին եւ այնքան ի պատուի, որ նոցանից մէկը, Folquet դառնում է արքեպիսկոպոս Տուլուզի -- Toulouse — ԺԳ. դարում:

Մեզնում եւս գուսանները ծագում էին ազնուական դասից, հմուտ օտանիկ լեզուին, լաւագոյն կրթութեամբ, ճոխացած անցեալի յուշերի, պատմութեան, վիպապատումների գիտութեամբ: Երկնել եւ կազմել «Երկնէր երկին եւ երկիր» սովորական աչուղի գործ չէր:

Թէ մինչ ո՞ր աստիճան յարգի էր «գուսան» կոչումը, կարող ենք համոզուել Պրովանսի Les Baux կոչուած մասի մէջ, ուր երգն ու երգիչը, աւանդապատումը եւ անցեալի յուշերն այնքան յարգի էին, որ տիրապետ իշխանը պարծենում էր իւր troubadour լինելու աստուածային ձիրքով: Այդտեղ պահպանուած է տակաւին մի գեղեցիկ աւանդութիւն, որ առանց յիշատակելու պիտի չանցնենք:

Անցեալի յուշ աւանդապատումը, որի ծագումը խոր հնութեան ծոցի մէջ է թաղուած, ասում է, որ Les Baux իշխաններն իրենց ծագումը տանում, կապում են Բեթղեհեմի Աստղի եւ դորանով նաեւ հեռաւոր Արեւելքի հետ: Baux (Պրովանսի լեզուով նշանակում է «ժայռեր, անառիկ բարձունք») երկրամասի իշխան Ռայմոնդը — Raymond—, որ Նէապոլի Յովհաննա թագուհու աւագ սենեկապետն — grand chamberlaan — էր եղած, իւր տապանաքարի վրայ կրում է հետեւեալ արձանագրութիւնը,—

Ի յուշ Baux համբաւաւոր
Իշխանական Տան,
Որ իւր ծագումով սերում է
Հայաստանի նախնի թագաւորներից,
Որին Փրկիչն Աշխարհի
Ցայտնուեց Աստղի առաջնորդութեամբ,
Եւ որոնց մարտակոչն էր
A l'asard Bautezar!
(Ի մարտ արկածի Բաղդասար):

Amy Oakley: **The Heart of Provence.** N. York, Lond., 1936, p. 251.

ներով, երբեք իր քայլերը չէր դարձնում դէպի Հռենոսի ափերը, ուր թէ՝ նորա միւս կողմը: Այն ինչ հակառակ երեւոյթը սովորական էր: Քիչ չէ թիւն այն գերման քնարերգակ երգերի, որոնց բուն աղբերակը Պրովանսի ջերմութիւնն էր ու սիրարծարծ հոգին: Սակաւ չէր եղած նաեւ թիւն այն Գերման ասպետների, որոնք հետեւելով Ֆրեդերիկ Բարբարոսսա կայսեր օրինակին՝ այցելած էին Պրովանս, լսած նորա գուսանների գրաւիչ երգերը, թեթեւ ու զգայնիկ, ասպետական եւ հերոսական եւ իրենք եւս յօրինած նմանութեամբ եւ հետեւողականութեամբ նման երգեր ու քնարերգակ տաղեր:

§ 28. Ֆրանսիայի հիւսիսարեւմտեան կողմն ընկած մի այլ, բանաստեղծական հոգով տարուած, ժողովրդի՝ Նորմանների գուսանները — trouvères — անկասկած հարաւային troubadour–ների իսկական զաւակներն էին եւ հոգեկան աւանդների ժառանգները: Նորմանների երկրի հարեւանութիւնը Լանգ դ'Օկի երկրին եւ Նորման իշխանների հաստատութիւնը Պուատուի — Poitou — եւ Անժուի — Anjou—, Հիւսիսի եւ Հարաւի անարգել եւ դիւրին յարաբերութեան եւ ազատ հաղորդակցութեան պայմանների հետ, պատճառ եւ միջոց եղան երկու երկրամասերի բանաստեղծութեան եւ հոգեկան ապրումների սերտ ու մտերմիկ, մերձաւոր նմանութեան՝ դեռ շատ կանուխ օրերից սկսած: Ժողովրդական բոլոր երգերի, աւանդապատումների, առասպելախառն զրոյցների եւ գեղօնների — ballade — բոլոր ձեւերն ու ինքնուրոյն երանգներով արտայայտութիւնները յատուկ են այդ երկու աշխարհներին եւս հաւասար չափով, կազմելով նոցա գրական աշխարհի բնորոշ գծերը, իրենց ներկայացուցիչներով: Եւ նոյն իսկ կան պարագաներ, ինչպէս Ռիչարդ Առիւծասրտի վիպապատումները, ուր դժուար է ասել, եթէ ոչ անհնարին, թէ ՞որն է բուն նախնականն ու նախատիպը եւ ո՞րը հետեւողականութիւն, նմանութիւն փոփոխակը:

Եւ այս աշխարհների մէջ ապրող ու երգող երգիչների ազդեցութիւնը, լինէին նոքա հարաւի troubadour–ները, թէ հիւսիսի trouvères–ները, ինչպէս Գերման minnesaenger–ները, մեծ ու խոշոր անջինջ հետք են թողած, ինչպէս նկատեցինք, Եւրոպական, յատկապէս Նոր զարթնող Իտալիայի գրականութեան բոլոր ճիւղերի վերայ,— բանաստեղծութիւն, երգ, սիրերգ, պատում, վէպ, երեւակայութեան ծնունդ երկեր, իր բոլոր ձեւերով:

§ 29. Մի այլ հարց, այնքան հետաքրքրական ու այնքան կարեւոր՝ ինքն իրեն է կանգնում մեր առաջ, որի լուծումը բաւական լոյս պիտի սփռէ ոչ միայն Պրովանսի գուսանների գունեղ ու համեղ, այլ եւ ջերմ ու մեր սրտին այնքան մօտ, նաեւ հայրենի՝ երգերի վերայ:

Ինքնուրո՞յն էր այս բանաստեղծութիւնը, յատուկ Պրովանսի կենսասէր ժողովրդին, իր բարկ արեւով ու գինեշատ հովիտներով: Չէ՞ որ «կինն ու գինին ու երգը» այնքան սերտ առնչութիւն ունին իրար հետ: Օմար Խայեամը, որքան գեղեցիկ rabaiyyat = քառեակներ է նուիրած գինուն, արեւին ու «եար»ին —

«Այս կուժն ինձ պէս մի սիրահար յոռետես,
Գիսակներին մի չըքնաղի էր գերին․
Շուրջը կուժի գըրկած դաստակը դու տես,—
Բազուկն էր այն՝ վիզը պատած իր եարին»։*)

Կամ

«Երջանիկ չե՞ս, դու Խայեամ, երբ արբենալ ես կարող,
Մինչ այտերով հիր, չուշան եարըդ սիրել գիտես դու․
Չէ՞ որ մի օր պիտ լինիս ոչինչ դարձած փոշի, հող,
Իսկ մինչ ոչինչ քո լինելն՝ խընդա կեանքով կենսատու»։*)

Թէ Միջնադարեան Պրովանսի գուսանների երգ ու սիրոյ տաղերը ներշնչուած էին մի այլ աղբիւրից, այդ մասին եւ ոչ մի կասկած կայ։ Եւ այդ ինքնուրոյն յոյզերի, քմշոտ զգացումների ինքնաբուխ աղբիւրը՝ իւր բոլոր իւրայատուկ գոյներով գալիս էր Արեւելքից եւ բերողներն իրենց դրացի Մաւրերն էին։ Արեւելքն է շնչում Պրովանսի գուսանների երգերի մէջ ամէն տեղից՝ ձեւով, արտայայտութեամբ, կազմուածքով, ճոխութեամբ, ջերմութեամբ ու այլազանութեամբ։ Տրուբադուրների արտադրած սիրոյ ու հերոսական արարք, քնարերգակ բանաստեղծութեան ու տիրուհու գովքի ու նուիրումի՝ բոլորի նախնական ձեւերն ու տեսակները ամենայն դիւրութեամբ երեւան հանել կարող ենք Սպանական Մաւրերի եւ նոցա նախահայրերի՝ Արաբների եւ կամ համարիւն ցեղերի մէջ։

Ո՞ւր կարող ենք գտնել, քան Ս․ Գրքի մէջ, այն բոլոր տեսակները Պրովանսի բանաստեղծութեան նախնատեսակների, իրենց նախատիպ պատկերով, ուժգնութեամբ եւ պէսպիսութեամբ,— որ Պրովանսի երգիչների ինքնուրոյն հմայքն է կազմում։ Ս․ Գրքի բանաստեղծական գրքերի մէջ, բացի ընդհանուր նմանութիւնից արտացոլուած Պրովանսի երգ ու տաղերի մէջ, գտնել կարելի է նաեւ նոցա ինքնուրոյն տաղերի — նուիրում սիրերգների — servente,— գեղօն տաղերի — madrigale, canzone,— հեգներգ — frotolla — (= frotolle = հեգնել, ծաղրել) հառաչանքի եւ մրցութեան — tenzo — տաղերի բոլոր տեսակները։ Աւելի քան ուժգին ու խարազանող servente-ի օրինակներ ու՞ր պիտի կարող լինէինք գտնել, քան Արեւելքի խստութիւնն ու տեղի չտուող պահանջկոտութեան կնիքն իրենց վերայ կրող բանաստեղծութեան ցայտուն օրինակները Սաղմոսների մէջ, ինչպիսիք են ԾԱ, ԾԷ․, ԿԸ․ Սաղմոսները եւ ուրիշները, ուր գաղափարի նուիրման ու ծառայութեան Ոգին է խօսում,—

«Ի՞նչ է պարծենում հըզօրն անօրէն
Զարութեան գործով՝ ազատ, լրբօրէն,
Թէ իւր անիրաւ արարքն՝ Արդարի
Դէմ խորհեց ամէն օր լեզուով չարի»։ Սաղմ․ ԾԱ․

*) Մեր թարգմանութիւնը, Անգլիերէնից․ Հեղ․

Կամ

«Արդարութի՞ւն էր խօսում իսկապէս
Լեզուն ձեր ճարտար, արուեստով պէսպէս.
Եւ զաւակների համար մարդկային
Արդա՞ր էր դատը միշտ ձեր ատեանին»: ԾԷ.

Եւ կամ

«Կեցո ինձ, Աստուած, Ջրերն հասան խոր
Մինչեւ իմ անձըս թափառուն, մոլոր,
Ընկղմեցին ինձ խորքերն անդունդի,
Ուր չունիմ ոչ իսկ մի ժամ հանգըստի:
    Եկայ ու հասայ խորքը ես ծովի,
    Անձըս կըլլեցին Ջրերն ամեհի»: Սաղմ. ԿԸ.*)

Այդ միեւնոյն աղբիւրը, Ս. Գրքի այլ եւ այլ մասերը, ընձեռել կարող են մեզ, իրենց հրաշալի նմոյշներով, Պրովանսի տրուբադուրների այլ երգերի commatio, canzone–ի նախնական տիպարները: Այդտեղ է, Ս. Գրքի մէջ է, որ գտնում ենք եղերերգակ տաղերի, հաչաղանք երգերի լաւագոյն օրինակները եւ նոյն իսկ գեղօնների նախատիպ տեսակները: Ելից Գրքի մէջ (ԺԵ. 20, 21) ենք գտնում գեղօնի — ballade — ու պարերգի մի այլ ոգեւորիչ նմոյշը,—

«Տիրոջը երգենք՝ փառքերով շողշող
Ու փառաւորուած՝ երգերով ողող.
Որ հեծեալները, երիվարներն սէգ
Ծով թափեց, խեղդեց՝ դարձրեց նորան հէգ»: *)

Եւ եթէ աչքի առաջ իսկ չունենանք մարգարէութիւնների գրքերի մէջ ցրուած բազմաթիւ այլ նմոյշները բանաստեղծական երգերի՝ վշտի ու կորուստի, ոգեւորութեան ու վերացման սաւառնումների, ինքնին իսկ Երգ Երգոցի հովուերգակ վիպապատումի եւ Յովբի մարդկային խոր տառապանքի, յուսախաբ երազների եւ յուսալիր վերապրումների մատեանները ինքնին իսկ պիտի բաւէին լաւագոյն օրինակները հանդիսանալու Արեւելեան մտքի, երեւակայութեան թռիչների գեղեցիկ մրցութեան տաղերի:

§ 30. Մրցութեան Տաղերը — tenzo — (=tenzone=վիճաբանել, հակաճառել, մրցել), յիրաւի, Արեւելքի ուժգին չեչտուած կնիքն են կրում իրենց վրայ:

Բանաստեղծական մրցութիւնը, գերակայութիւն չահելու նպատակով, Արաբ աշխարհի սիրած, խանդավառ յոյզերի որոնուած ու սիրուած մի ժամանցն էր ունկնդիրների հետաքրքրութեան եւ մրցութեան ելած գուսանների անձնական փառասիրութեան յագուրդ տալու համար: Մուհամմէդը, նախ

*) Մեր թարգմանութիւնը. Հեղ.:

քան մարգարէի մաշկեակն իր ուսերին ընդ միշտ առնելու պարտաւորութիւնը, իր ցեղակիցների մէջ յայտնի էր, իբրեւ անմրցակից ախոյեան, յանպատրաստից-երգիչ: Արաբիայում, ինչպէս եւ առ հասարակ Արեւմտեան Ասիայում, այդ մրցութեան պայքարները, երբեմն իսկ, ծայրայեղութեան էին հասնում իրենց մէջ կրելով կրքի, յոյզերի եւ յոյսերի տարրեր, որոնք անծանօթ էին Պրովանսի դուսաններին: Բանաստեղծների ոչ միայն անունն ու համբաւը, այլ յաճախ նաեւ կեանքը՝ կախուած էին այդ բանաւոր պայքարի յաջող կամ դժնէ ելքից: Բանաստեղծական բանաւոր պայքարը յաճախ մղւում էր մի գերագոյն նպատակի համար,— ազատուել ընդ միշտ մրցակից հակառակորդից, վերջինս ոտնհարելով բարոյապէս ու նուաստացնելով հրապարակով: Մրցութեան պայքարի օրէնքները շատ աւելի խիստ էին ու անողոք, քան Պրովանսի երգիչների սովորական մրցակցութեան հանդէսների մէջ ընդունուած կարգերը: Արեւելքը գիջումի, կիսամիջոցների ուղուն անծանօթ էր եւ առաջինը մրցակիցներից, որ կը մեղանչէր այդ ընկալեալ կանոններից մէկի իսկ դէմ՝ յայտարարւում էր պարտուած եւ ընդ միշտ աննշան մնալու դատապարտուած:

§ 31. Այդպիսի լուրջ ու անակնկալ հետեւանքներով յղի բանաստեղծական մրցակցութեան օրինակներից աչքի ընկնող մի օրինակն է համարւում Պարսիկ աւանդապատումների անմրցակից Հոմերոսի՝ Ֆիրդուսու պայքարը երեք հակառակորդ բանաստեղծների հետ մրցութեան մի քառեակ կազմելու համար:

Պատմում է,— որքա՞ն պատմական է եւ իրական մրցութեան բոլոր մանրամասնութիւնները, էականը այդ չէ,— պատմում է, թէ Մահմուդ Ղազնավիդ Շահի օրերին Ֆիրդուսին ստիպուած էր մրցութեան մի պայքարի անակնկալ հրաւէրին պատասխանել, երբ պալատական երեք յայտնի բանաստեղծները նորան ընդ միշտ հրապարակեց վանելու համար, դիմեցին սովորական մրցութեան եղանակին, որից հրաժարուելն արդէն պարտութիւն էր:

Երեք բանաստեղծները՝ Անսուրին, Ասջադին եւ Ֆարրուխին մի օր նստած զրոյց էին անում, Ղազնայի պալատի մէջ, երբ նոցա մօտեցաւ Նիշապուրից եկող մի օտարական, որը կամեցաւ, իբրեւ թէ նոցա մօտ նստել: Անսուրին, որին հաճելի չէր, որ այդ անյայտ «գաւառացին» իրենց ընկերանար այդքան դիւրին կերպով, դարձաւ ու ասաց նորան,— «Բարեկամ, մենք Սուլթանի բանաստեղծներն ենք եւ միայն բանաստեղծները կարող են մտնել մեր մէջ: Մեզնից իւրաքանչիւրը, եթէ կ'ուզես, մի-մի տող թող կազմէ՝ նոյն յանգի վերջաւորութեամբ եւ եթէ ինքդ էլ կարող լինես վերջին, չորրորդ տողը կազմել քառեակի, բայց նոյն յանգով, այն ժամանակ միայն կարող կը լինենք քեզ ընդունել մեր մէջ»: Անծանօթը, որ Ֆիրդուսին էր, համաձայնեց մասնակցել մրցման եւ Անսուրին, դիտաւորուած լինելով նորեկին դժուարութեան առաջ դնել մի յանգով, որ ենթադրւում էր, թէ միայն չորս էին թուով, հետեւաբար եւ դժուար գտնելիք մի յանգ, սկսեց այսպէս,—

«Ձուն արէզը թօ մահ նա բաշադ ռավշան»

ենթադրելով որ չորրորդ տան յանգը պիտի չգտնուի.

Ասջադին չարունակեց,—

«Մանանդ ռախըթ գոլ նաբաւադ դար գոլշան»,

եւ ապա Ֆարրուխին յարեց,—

«Մոժգանըթ քոնադ համի գոզար ազ ջովշան»

եւ Ֆիրդուսին, առանց յապաղելու, ակնարկելով հին օրերի թագաւորների աւանդապատումներից մէկի մէջ յիշատակուած, սակայն սակաւ ծանօթ մի պատերազմի դէպքի՝ աւելացրեց,—

«Մա'նանդ սընանը Գիւ դար ջանգը Փուշան»,

որը նշանակում է

«Դէմքիդ նըման լուսինն անգամ չունի լոյս,
Այտիդ նըման վարդ իսկ չը կայ վարդաստանում ամէն կոյս,
Թարթիչներդ թափանցում են ճօշանը խիտ՝ առանց խոյս,
Ինչպէս Գիւի աշտէն՝ Փուշան դաշտի կըռւում բարեյոյս»:*)

(Ed. G. Brown: **A Literary History of Persia, from Firdawsi to Sadi**, London, 1906, p. 128-130):

§ 32. Միայն Արեւելքը չէր, որ տարուած էր բանաստեղծական մրցութիւնների հաճոյքի զգացումով: Արեւմուտքն եւս ունէր այդ պայքարի խոր հաճոյքը, համեմուած աւելի վայրագ ու անզուսպ հակումների կրքերով, վրէժխնդրութեամբ լի: Այս վերջին տեսակի մի օրինակն ունինք Գերման պատմութեան ու գրական յուշերի էջերում պահուած: Տեւտոնական երգիչները, որոնք, ինչպէս տեսանք Պրովանսի troubadour-ների հետեւողներն էին ամէն կողմով, առանձին հաճոյք էին զգում այդ մրցութեան պայքարներից: Պատմւում է, թէ Թիւրինգիայի իշխան Հերմանը, մի անգամ իւր Վարդբուրգի դղեակի մէջ երգիչ-բանաստեղծների մի մրցութիւն նշանակեց, ուր յաղթականը պիտի ստանար մի գերազանց պարգեւ: Պարգեւին տիրանալու համար յամառ պայքարի մի մաքառում սկսուեց եւ այդ մաքառումի հակումը ծայրայեղ թշնամական զգացումների մղեց մանաւանդ երկու հակառակորդ, անուն եւ հռչակ վայելող Գերման երգիչների՝ Հայնրիխ ֆոն Օֆտերդինգէնի եւ Վոլֆրամ ֆոն Էշէնբախի մէջ: Եւ այս երկու հակառակորդները վճռեցին մասնակցել մրցման պայքարին, պայմանով որ յաղթականը պարտուողի մահը պիտի պահանջէր: Պայքարը տեղի ունեցաւ 1207 թ. Վարդբուրգի դղեակի սրահում:

Դղեակ-պալատի հին, պատմական օրերի լայն ու ընդարձակ այդ սրահը խճողուած էր ակնյայտնի անձերով: Եւ զուսանների մօտ, նոցա աթոռների

*) Մեր թարգմանութիւնը. Հեղ.

ջնանելը, անց էին բռնած, կարմիր գլխանոցներով դահիճը եւ իր օգնականները, պատրաստ առաջին իսկ ակնարկով իրենց արիւնոտ պարտականութիւնը կատարելու, պարտուած մրցակցի նկատմամբ: Եւ դժուար չէ հոգու աչքերով հետեւել այդ պճնուած ու խռնուած իշխանների, իշխանուհիների, ասպետների, դրանիկների ծայրայեղ հետաքրքրութեամբ տարուած բազմութեան, ուր կեանքն էր եռում, կրքերը բորբոքւում, որովհետեւ իւրաքանչիւրն ունէր իր նախընտրածը եւ այդ բոլորի մէջ պայքարի յաղթանակը ձեռք բերելու կամ մահուան առաջնորդուելու երկու զուսանների վիճակը: Դժբախտաբար պայքարի հետեւանքը, ինչպէս եւ պայքարի առաջ տարուելու պարագաները մընում են անստոյգ: Պատմողները, թւում է, թէ գերադաս են համարած այդ բոլորի վերայ թանձր քող տարածել եւ կամ հոգու աչքերի առաջ շատ մութ, անթափանց ապակի պահել:

Պատմողների տուած տեղեկութիւններից կռահել կարող ենք, թէ մրցութիւնն աւելի երաժշտական, երգի պայքարի էր, քան բանաստեղծական՝ մըքի ճկունութեան, ոճի գեղեցկութեան, յանգերի ճոխութեան, զգացումների ջերմութեան: Վոլֆրամը յաղթական ելաւ իր գործիքի, մի նոր արուեստակետալ հնարքով, մի նոր տեսակ գրաւիչ, մինչ այն չլսուած ձայներ հանելով, հարուստ իրենց ձայնի տարողութեամբ եւ խորութեամբ: Հայնրիխ Ֆոն Օֆերդինգենը, այնու ամենայնիւ կարող եղաւ իր կեանքը փրկել Վարդբուրգի տիրուհու՝ իշխանուհի Սոփիային ապաւինելով, որը չդանդաղեց իր իշխանական ծիրանու տակ առնել նորան: Եւ, բնական է, որ ոչ ոք պիտի համարձակէր ներկայ եղողներից, ժպիրհ մի շարժումով, սրբապղծութիւն գործել եւ սրբազան ապաւինի քօղի տակից կորզել պարտուած երգիչը: Եւ այսպէս այս դաժան մրցութեան վերայ իր ազատարար թեւերն է տարածում մոգական միջամտութեան մի պարագայ,— պատահական թէ բնական, այդ եւս ըստ կամս եւ հաճոյքի, Honi soit qui mal y pense!

Ինչ էլ եղած լինէր պայքարի հետեւանքը, մի բան շատ պարզ է,— ամբողջ պատմութիւնը ողողուած է Պրովանսի շնչով, աներկբայ իր վրայ կրելով հարաւի գունեղ կրքերի երանգները՝ այնքան լայնօրէն սփռուած Langue d'Oc–ի զուսանների երգերի մէջ: Նոյն իսկ իշխանուհու ծիրանու տակ ապաստանելը այդ արեւոտ ու ջերմ շնչով գեղուն երկրամասի գունեղ մի հիւքն է: Պիրենեանների խոր ու խուլ ձորերի մէջ պահպանուած եւ սրբագործուած դարերի շունչն իր վրայ կրող մի սովորութիւն էր, որ եթէ մահուան դատապարտուած, չարագործն անգամ կարող լինէր փշրել իր շղթաները եւ կամ հնար ունենար դահճի ձեռքից կորզել իր կեանքը եւ ապաստան գտնել որ եւ է դղեակի, ապարանքի իշխանուհու մօտ՝ նորա կեանքն ազատ էր եւ ո՛չ ոք պիտի համարձակէր ձեռք բարձրացնել նորա վերայ:

Արեւելքի շունչը չէ՞ կրկին այդտեղ, հրէական Տաճարի եւ կամ Ապաստան քաղաքի փրկարար քօղով ծածկուած:

§ 33· Սպանական Մաւրերը մրցութեան բանաստեղծութեան պայքարի օրինակներ շատ ու շատ աւելի կանուխ են տուած, քան այն, որի օրինակը տուինք եւ կամ բանաստեղծական արտադրութիւնների այն ձեւերը, որ իւր պատշաճ անունն էր ստացել Գալիկ ծագումով ժողովուրդների մէջ, vers de société անունը կրելով։

Այսպէս պատմւում է, թէ Մաւրերի սպանական տիրապետութեան շըրջանին, Կորդովայի տիրապետներից մեծափառ Աբդերահման Բ·ը (822–852 թ·), պետական գործերին նուիրուած պահերի ազատ ժամերին՝ ամենամեծ հաճոյքն էր զգում տարուիլ մտքի մշակոյթի վարժութիւն մարզանքով, մանաւանդ իւր սիրելի դրանիկ օծանեալ — favorit — բանաստեղծի՝ Աբդալլահ բէն Ջամրիի հետ։ Թողել է բազմաթիւ բանաստեղծական կտորներ՝ գունեղ ու արեւոտ, ինչպէս Սպանիան եւ՝ ջերմ, ինչպէս իւր ցեղային արիւնը։ Այսպիսի մի սիրերգ է մնացած նաեւ, որ արդիւնք է այն ժամանց-մրցանքի եւ որը բաւական յոյզ ու խօսքի առիթ էր տուած ժամանակին Կորդովայի դրանիկների շրջանում։

Զգայնական իւր տարուած րոպէներից մէկի ժամանակ, մտրակուած քմշոտ հաճոյքի ամբողջ վայելքով, որ իւրաքանչիւր իշխանապետ ունի Արեւելքի ազատութեան եւ քմահաճոյքի անվերապահ կիրարկումով՝ Աբդերահմանը շատ ծանրագին մի մանեակ անցրեց իւր սիրելու, գեղեցիկ Ջելուկայի պարանոցը։ Իւր խորհրդականների աչքին աններելի մի արարք էր այդ, երբ պետական գանձարանն այնքան մեծ կարիք ունէր այդ բոլորին, մանաւանդ որ նորանոր, անակնկալ քաղաքական պատահարներով յղի մի շրջան էր ապրում պալատն ու պետութիւնը։ Աբդերահմանն, ինքն եւս, ոչ նուազ դժգոհութեամբ էր տարուած իր գձուձ ու կծծի խորհրդականների եւ նոցա քննադատութիւնների դէմ։ Եւ մի օր երբ Խալիփն եւ իւր սիրելի բանաստեղծը տարուած էին մտքի ու սրտի մարզանքի հաճոյքով, նոցա մէջ մրցանքի մի շնչով առաջ եկան հետեւեալ տողերը, թէ ո՞վ աւելի բանաստեղծական ներող հոգով կարող էր դատել կատարուած չարիքը։

Երգում է Աբդերահմանը,—

«Շող ունեն ու փայլ, չը կայ տարակոյս,
Սակայն, կարո՞ղ են վառուիլ յոյզով բորբ․
Կամ հառաչանքիս, վըշտերիս անյոյս
Գէթ դընել ականջ՝ մըտերմիկ, անխորթ։

Ունի՞ն ջերմ ժպիտ, ինչպէս իր չըքնաղ
Ծըպիտը բուժիչ, ձայնը խընդալիր։
Արժէք են տուել կորըստի միշտ խաղ
Իրեն՝ մարգարիտն մոռացած հուր-հեր։

Ի՞նչ են աշխարհիս գոհար, ակ, զարդեր
Զուգահեռ դըրած կոյսի հետ եթեր»։

Պատասխանում է Զամրին,—

«Զեմ Թուից նոցա, Խալիֆ վըշտահար,
Որ ձեւով են մարդ, յօյզերով տըմարդ,
Որոնք կարծում են՝ գանձ, ոսկի, գոհար
Արժէք են անգին, քան կոյսն մանկամարդ։

Գանձերից երկրի, խորքերում ծովի
Կինն է է՛ն անգին ակը հազուագիւտ,
Եւ կոյսն այն չըքնաղ, որ ժըպտով յուռթի
Քեզ է ժըպտում, է՛ն կինն է անըստգիւտ»։

Ոգեւորուած շարունակում է Աբդերահմանը.—

«Տողերիդ նըման, Զամրի, Թոյր ու բոյր
Զեփիւռն է սուրում՝ շնչով զով, կիզիչ,
Կամ ինչպէս վարդի բոյրը հըրապոյր,
Ինչպէս իմ չըքնաղ կոյսը ըզգըլխիչ։

Իրենն է սիրտըս, աչքերիս հետ իմ.
Թէ իմս լինէին,— կ'անէի այսպէս.
Շարան մի չըքնաղ կուրծքին մըտերիմ
Կ'անէի՝ կախօրր մանեակ հըրակէզ»։*)

Այս տողերին միայն աւելացնել կարող ենք, թէ Արեւելքը իւր բոլոր գոյների պերճանք շռայլումով, շատ աւելի մեծ հետքեր է թողած Պրովանսի տրուբադուրների ձոների, սիրերգների մրցանքի տաղերի մէջ, քան կարող էինք ենթադրել։

§ 34. Սպանական Մաւրերը նոյն իսկ շատ աւելի չափազանցութեան էին դիմած երգերի սիրահար լինելու մէջ, քան իրենց անդր—Պիրենեան դրացիները։ Նոքա երբեք գործ չէին դնում պարդ, արձակ դրութեան եղանակը, եթէ ամենափոքր իսկ հնարաւորութիւն կար ասելիքը ոտանաւորի վերածելու։ Այս ձեւը գործադրում էին, ինչպէս հիւսիսի երկրամասերի մարդիկ պիտի ենթադրէին, ամենից աւելի ոտանաւորի հակոտնեայ նիւթերի համար։ Տրամաբանական ճառեր, բնագիտական առարկաների մասին գրած գրական երկեր եւ նոյն իսկ լեզուաբանական ձեռնարկներ՝ կազմւում էին չափական ձեւով եւ յանգաւոր։ Այսպիսի տարօրինակութիւնների ականբախ օրինակներ են Քերականութեան մասին կազմուած մի ձեռնարկ, որ յայտնի է Ալփայ անունով եւ նոյնքան տարօրինակ դասագրքի մի նմոյշ, յայտնի Զամիալ անունով։ Համարեա ամէն մի Մաւր, ինչպէս եւ իւրաքանչիւր Պրովանսցի՝ սիրահար էր բանաստեղծութեան եւ տաղաչափութեան ուսումնասիրութեան։ Եւ

*) Մեր թարգմանութիւնը. Հեղ.

նոցա մէջ, աւելի քան Պրովանսի ժողովրդի մէջ, մի առանձին հակում, սէր ու ներքին կապ կար հռչակ ու անուն հանած բանաստեղծի նկատմամբ՝ միաժամանակ եւ բնական երկիւղած վախ նորա երգիծանքի նիւթ լինելու հնարաւորութեան: Ե այս պատճառով էլ Մաւրերը, աւելի քան իրենց երգասէր եւ տաղերի սիրահար հարեւան ժողովուրդը՝ սրտով յարած էին գովքի ու ջատագովութեան առատաբան, սահուն տողերի վարպետ երգասաց գուսաններին եւ անսահման ազատութեան լայն իրաւունքներ վերապահած՝ «Երգի ու Տաղի զաւակներին»:

Անսովոր երեւոյթ չէր Մաւրերի մէջ եւ կամ Արեւելքում, որ բանաստեղծը շնորհիւ իւր ի դէպ արտասանած կամ կազմած գրաւիչ կամ հաճելի մի երկի՝ աչքի ընկնող հարստութեան տէր դառնար: Պատմւում է, թէ Արեւելքում այնքան հանրածանօթ Հարուն ալ Ռաշիդը հոգեկան մեծ տառապանքի մատնուած լինելով իւր սիրելի կանանց մէկի հետ ունեցած վէճի ու բախումի պատճառով եւ այդ գժտութեան հետեւանքով եւ բազմաթիւ ձախողանքներ կրելով քաղաքական կեանքի իւր ասպարիզի մէջ եւ շնորհիւ մի բանաստեղծի մեղմ ու ամոքիչ բանաստեղծութեան ազդեցութեան՝ վերագտնելով իւր սիրելու նախկին տրամադրութիւնը եւ քնքոյշ խնամքը, փոխանակ քմշոտ բռնկումների, Հարուն ալ Ռաշիդը հրամայեց քառասուն հազար հնչուն ոսկէդրամով վարձատրել բանաստեղծը: Պատմւում է, նոյնպէս, որ Մաւրերի մի իշխան, պարտուած եւ յուսակտուր՝ իւր գերութեան դիմող ուղու վրայ իւր վերջին ունեցածը, երեսուն եւ վեց ոսկէ դրամներն ընծայեց պատահական մի բանաստեղծի, որ կարող էր եղած մխիթարել նորա տառապող հոգին իրեն ձօնուած սփոփիչ մի ուղերձի համար:

Այս միեւնոյն իշխանի նկատմամբ պատմւում է եւ մի այլ պատմուածք, որ իբրեւ գեղեցիկ օրինակ կարող է ծառայել այն գերազանց սիրուն, որ Մաւրերն ունէին առ հասարակ Աստուծոյ շնորհքն իրենց լեզուի ծայրին կրող բանաստեղծի եւ նորա հրապոյրների աղբիւր արուեստի համար: Այդ Մաւր իշխանը մի ժամանակ գլուխ էր եւ ներկայացուցիչը Ալ-Մոհադէնների հարստութեան եւ մէկը Մաւրերի պարծանք, կարող տիրապետներից: Կաստիլի թագաւորի դէմ մղած պայքարի ժամանակ, որ հետզհետէ ծանր ու աղէտալի հետեւանքների էր տանում, անհեռատես միտքն ունեցաւ օգնութեան հրաւիրելու անպատիւ որդիներին մոլեռանդ մի ցեղի, Ալ-Մորաւների զաւակներն, իրենց ցեղապետով: Վերջինս ընդունեց հրաւէրը, օգնութեան հասաւ, յետ մղեց Քրիստոնեաները առ ժամ եւ, ապա, իրենց յաղթական սուրերը դարձընելով հրաւիրողի դէմ, ամուր հաստատուեցին Սպանական թերակղզու Մաւրերի հողերի վերայ, իբրեւ տէր եւ իշխան: Մինչ այս իրողութիւններն իրենց վերջնական վախճանին հասնելը Ալ-Մոհադէնների համար պարզուեց, թէ ի՞նչ պիտի լինէր ելքն իրենց անհեռատես ու անխոհեմ հրաւէրի, առանց իսկ, տակաւին մտքից անցնելու, թէ հետեւանքն այդքան աղէտալի պիտի լինէր իւր ընտանիքի անդամների եւ իւր իշխանութեան համար: Հոգեկան այդ վի-

*ճակի մէջ նա մի երազ տեսաւ, մի խրողութիւն, որին այնքան յաճախ ենք պատահում Արեւելքի վեհապետների կեանքի կնճռոտ բոպէների պահերին, իբրեւ մի գերբնական ազդարարութիւն գալիքների մասին,— մէկն այն երազներից, որ ինքնին իսկ նշանակալից են, ինչպէս տեսիլն այն արուրաքնար —* dulcimer *— նուագող երազ աղջկայ, որ այդ եկաւ երազանքների աշխարհում ապրող երգիչ Սամուէլ Կոլըրիջին —* Samuel Taylor Coloridge. *Ալ-Մոհադես իշխանին, երազի մէջ, այցելութեան է գալիս մի ազակիր եւ տխրամած Փէրի, ձեռքին մի վին, որի վերայ նուագում էր մելամաղձիկ մի եղանակ: Երեք անգամ այցելեց Փէրին այդ նոյն գիշերը նորան եւ երեք անգամ երգեց միշտ նոյն տխուր, սրտաբեկ եղանակով, նոյն երգը,—*

*«Կար մի ժամանակ, երբոր պարտասուն*
*Արքայ էր լըծուած կառքիդ ոսկեյեռ.*
*Հըռչակդ ու բախտըդ երգուեց մութ, լուսուն*
*Փառքիդ հետ մռացուած՝ չողերով հիր-հեր:*
*Սակայն Բախտն այլեւս չէ՛ կապուած քեզ հետ.*
*Ձեռքը ծանրացաւ նորա քեզ վերայ.*
*Հէնքից Բախտի՝ քո անունըդ անհետ*
*Եղաւ, գստ յուշից ցաւի մշտակայ:*
*Հաճոյքըդ ամէն անցան զերդ երազ,*
*Իբրեւ պըղպըջակ սահանքի հոսուն.*
*Երէկ էր, որ քո մեծութիւնդ աննիաղ*
*Անցաւ զերդ երազ՝ անհետ, պարտասուն»:**)

§ 35. *Սիրերգներն եւս Մաւրերի սիրած բանաստեղծութեան մի պէսպիսուկ վարդաստանն էր: Աբդուլ Վալիդ բէն Աբդալլահը, բանաստեղծուհի իշխանուհի Վալիդհատայի բազմաթիւ սիրահարներից մէկը, պատմւում է, որ իւր սիրուհուն ուղղած մի սիրերգի —* servente *— առթիւ, որ հակառակորդների կողմից հեգնանքով էր պատասխանած, նոցա դէմ այնպիսի մի ծաղր ու պարսաւի տաղ հրատարակեց, այնքան զօրեղ, որքան Անգղիական դատաւորի կողմից եղած Ըմբոստութեան Արարքի —* Riot Act**) *— մէջ բռնուած անձերի դէմ տուած վճիռը,— իւր հակառակորդներին ընդ միշտ ապարէզից քշելով, որ այլեւս համարձակութիւն չունեցան աչք իսկ բարձրացնել Աբդուլ Վալիդի սիրուհու վերայ:*

*) *Մեր թարգմանութիւնը. Հեղ.*

**) Riot Act *է կոչւում Անգղիական այն օրէնքը, որով եթէ 12 հոգի, հակառակ օրէնքի տրամադրութեան, ժողով կազմեն եւ առաջին իսկ ազդարարութեան չցրուեն լընթացս մի ժամի, ազդարարութիւնն ստանալուց յետոյ, այդպիսիները համարւում են եղեռնապարտ յանցաւորներ —* guilty of felony *— եւ ենթակայ ծանր պատժի:*

Ոչ պակաս յարգ ունէր Մաւրերի աչքին նաեւ երգիծանքի բանաստեղծութիւնը: Թէ որքան սիրելի էին եւ յարգի նոցա համար այդպիսի երգերը, երեւում է հետեւեալ պատմուածքից, այնքան տարածուած Սպանական Մաւրերի անցած օրերի խօսք ու զրոյցի մէջ: Մերիդայի Կադին, Սիւլէյմանը (900 թ.) իւր պաշտօնից զրկուելով Տոլեդոյի տիրապետ Աբդալլահի հրամանով, իւր սրտի կսկիծը զովացնելու համար մի խիստ պարսաւալից բանաստեղծութիւն հրատարակեց իշխանի դէմ: Բանաստեղծութիւնը իւր նպատակին հասաւ, Կադին վրէժը լուծեց, բայց որովհետեւ ամէնքի ուշադրութիւնն էր գրաւած, չուտով հեղինակի անունն եւս հրապարակ եկաւ: Կադին վեհապետի առաջ տարուեց: Վերջինս կատակաբան զուարճախօսութեամբ դարձաւ սմքուած Կադիին, երգիծանքի հեղինակին,— «Սիրելիդ իմ Սիւլէյման, չեմ ուզում հաւատալ, թէ ես եմ երգիծանքիդ եւ դատափետութեանդ արժանացած անձը: Եւ, սակայն, եթէ այդպէս իսկ է, նպատակ չունիմ ոչ պարսաւել քեզ եւ ոչ էլ պատժել բանաստեղծութեանդ համար: Ընդհակառակը: Այսուհետեւ նոյն իսկ պիտի արտօնեմ, որ յօրինածդ արտասանես իմ առաջ, երբ տրամադրութիւն ունենամ ականջ դնելու: Եւ այս վերջինը, կարծում եմ, որ յաճախ պիտի պատահէ, որովհետեւ դու տարուած ես չնչայանգի (գեղեցիկ յանգերով անիմաստ բանաստեղծութիւն) հիւանդութեամբ, իսկ ես էլ տարուած եմ չնչայանգ լսելու հիւանդութեամբ: Գիտես, որ բանաստեղծութեան սիրահար եմ. սիրում եմ բոլոր տեսակները եւ ձեւերը, իսկ քոնն ամէնից աւելի եւ յիրաւի, այնքան եմ գնահատում, որ ենթադրում եմ, թէ իւրաքանչիւր մի տողը քո յօրինածի՝ արժէ հազար հնչուն ոսկի: Եւ այդ գնով եւս, իմ սիրելի եւ ամէն արժանիքի տէր Սիւլէյման, ես պիտի կամենամ, որ ինձ վճարես այսուհետեւ ամէն մի յօրինածիդ համար»:

§ 36. Ինչպէս Պրովանսի, նոյնպէս եւ Մաւրերի մէջ սակաւ չէր թիւն այն ազնուական կանանց, որոնք օժտուած էին բանաստեղծի ձիրքով եւ գեղեցիկը՝ գրաւիչ արտայայտելու նրբին ճաշակի կարողութեամբ: Դոցանից մէկի անուան հետ արդէն իսկ ծանօթացանք, իշխանուհի Վալիդհադան, որը ընդունակ էր իւր սրտի սէրն արտայայտել Արաբ լեզուի բոլոր ճոխութեան գանձերով: Այդպիսիներից մէկն էր նաեւ Հարուն ալ Ռաշիդի քոյրը, իշխանուհի Աբբասան, որ սիրահարուած իւր եղբօր մեծ վեզիրին, նշանաւոր Գրաֆֆերին, իւր սէրը նորան է արտայայտում բանաստեղծական հանդերձանքով,—

«Ա՛հ թէ հարցընես, ի՞նչ հուր սրտիպանք
Անունդ է զրծում այս թղթի վերայ,—
Ամօթխածութիւնս, առանց վըրիպանք
Արցունքով ողող, պիտի անխընայ
Ջընջէ ամէն հետք
Տողերիս անպէտք:

Ցագեցում չունիմ, զուր են ամէն ջանք,
Հուրն է խանձկիզում տոչոր իմ հոգին:
Բայց ի՞նչպէս ասեմ: Մահուան նոր տանջանք
Սիրով են զեղուն. Ամօթ թախծագին
Ինձ պիտ գերեզման
Տանէ անկենդան:
Թուղթըս մըտերմիկ պատռտեմ ես, անհետ
Անեմ, որ գաղտնիքս չը դարձնէ հանուր.
Բայց, ասա, ինչպէ՞ս. մահով չարաղէտ
Մեռնել կարող եմ սիրոյ վէրքից հուր,
Յայտնելու առանց,
Թէ սըրտիս ես զանձ»:*)

Այս տողերի մէջ արտայայտած զգացումներն այն տեսակի յոյզերից են, որ հազարաւոր անգամներ կրկնուած են ամէն օր, անընդհատ Պրովանսի բանաստեղծների կողմից: Աչքի առաջ պիտի ունենալ այն խօսակցութիւնը, որ տեղի է ունենում Beatrice de Montferrat-ի եւ Rambaud de Vaguicras-ի մէջ, տեսնելու համար, թէ ինչպէս հարազատօրէն կրկնւում է իշխանուհի Աբբասայի մտքերը, արտայայտուած իւր վերջին տան մէջ:

§ 37. Սպանական Մաւրերը, ինչպէս եւ ամբողջ Արեւելքը առանձին մի հակումն ունին դէպի գեղեցիկ առակները, կենդանական զրոյցի եւ աւանդ անցեալի պատումները, ուր կենդանիներն են երեւում, իբրեւ գլխաւոր դերակատարներ, լինին նոքա չորքոտանի, թռչուն, թէ սողուն: Կասկածի տեղ իսկ չը կայ, թէ Պրովանսի երգիչներից, Արնոյ դը Կարկասի — Arnaud de Carcasses — այնքան յայտնի «Թութակ»ը իւր ծագումով Արեւելեան է եւ աւելի Սպանական Մաւրերի ազդեցութեան արդիւնք, միայն նոր ձեւով, նախնականը յարասիկ ձեւով — paraphrasée — արտայայտուած: Այդտեղ ներկայացուած է իշխանական մի դղեակի մէջ արգելափակ մի տիկին, որին հսկում են անդադար դղեակի պահապանները, հսկիչը եւ դղեակի նաժիշտները, որն իւր կեանքն անցնում է փակուած եւ անազատ եւ ուր յիշատակւում է դղեակը յարձակումով առնելու ժամանակ Յունական հուրը եւ նորա հակադդեկ քացախը: Պրովանսի մի գուսանի կողմից գրի առնուած այդ երկար պատմըւածքի մէջ երեւացող իշխանուհու արգելափակ կեանքի պայմանները բնական երեւոյթ չեն Պրովանսի ազատ ու անկաշկանդ պարզ կեանքի համար. մահմետական հարէմի պատկերն է պարզուած մեր առաջ: Յունական հուրը եւ նորա հակադդեկ քացախը Արեւելքի տարրեր են, մուծուած պատմութեան մէջ, որ անյայտ էին Արեւմուտքին տակաւին,— որով պարզ է, որ «Թութակ»ի պատ-

*) Մեր թարգմանութիւնը:

մուածքը Սպանական Մաւրերից ստացած մի ժառանգութիւն էր, Արեւելքին միայն յատուկ կենցաղի պայմաններով եւ քաղաքակրթութեան տուեալներով:

§ 38. Պրովանսի բանաստեղծութեան անկման եւ իւր այնքան անուն հանած տրուբադուրների անհետումի պատճառները բազմաթիւ են եւ որ պէտի համառօտ յիշատակենք ու անցնենք: Նոցա երեւալը, յառաջադիմելը եւ բարգաւաճումը Մաւրերի հետ ունեցած սերտ յարաբերութիւնն էր նախ. ապա Խաչակիրների երեւան գալը, Արեւելքի հետ ունեցած նոր եւ անմիջական կապը՝ ուղղակի կամ միջնորդ յարաբերութեամբ. յետոյ Լանկ դ'Օկի երկրամասի մէջ գոյութիւն ունեցող բարբառների մրցակցութիւնը՝ բարբառներ, որոնք աւելի տարածուած լինելով տիրապետող շրջանի մէջ, իրենց ազդեցութեան տակ առին Էբրոյից մինչ Պոյ գետի հովիտների երկրամասերը, ինչպէս այդտեղ բնակող ժողովուրդների հասարակական մշակոյթի եւ քաղաքական վիճակի պայմանները: Համարեա մի դար իսկ չ'բոլորած այս բոլոր պայմանները եւ փոխ-յարաբերութիւնները զօրեղ փոփոխութեան ենթարկուեցին՝ բարոյապէս, քաղաքականապէս եւ նիւթապէս: Խաչակիրների շարժման հուժկու թափը չուտով խոնարհուեց՝ ԺԳ դարը իր վախճանին հասնելուց առաջ: Այդ նոյն շրջանի եւ դարի մէջ Սպանիայի Մաւրերն եւս դադարեցին որ եւ է ուժեղ ազդեցութիւն ունենալ իրենց հարեւան ժողովուրդների վերայ, գրական, մտաւոր, քաղաքական, թէ այլ տեսակէտներով:

Նոյն այդ դարի մէջ էր, որ Լանգ դ'Օկի չուրջն եղած երկու կարեւոր մասեր դադարեցին ընդ միշտ ազդել այդ շրջանի վերայ: Սպանիայի Քրիստոնէական ազդեցութեան աճումն ու տարածումը Արագոնի եւ Կատալոնիայի ժողովուրդների ուշադրութիւնն ուղղեցին դէպի Արեւմուտք, որի հետեւանքն եղաւ Սպանիայի ազդեցութեան նուազումն ու չեզոումը հարեւան Պրովանսից: Այս նոր քաղաքական ոյժ ու իշխանութեան ներգործութեան հետեւանքն եղաւ եւ Մաւրերի թուլացումը քաղաքականապէս եւ քայքայումը՝ տնտեսապէս, հետեւաբար եւ հանրային կենցաղի եւ մտաւոր մշակոյթի վերայ ունեցած նոցա գերադոյն աստիճանից խոնարհման առաջնորդելու ուղին հարթեց: Այդ միեւնոյն շրջանին էր, համարեա, որ հիւսիսի նոր ազդեցութեան կեդրոններ՝ նոր քաղաքներ ծնունդ առին, իրենց նոր թափի յառաջադիմութեամբ, ինչպէս եւ Իտալիայի մէջ նոր ոչ-Պրովանսական ձեւ եւ մշակոյթի գրական աշխարհի նոր հոսանքի այդը ծագեց: Այսպիսով Լանգ դ'Օկի երկրամասը, սեղմուած Բիսկայեան Ծոցի, Ալպերի եւ դէպի հարաւ տարածուող Միջերկրականի եզերքների վրայ գտնուող հողամասերի մէջ, այլեւս մտաւոր կեդրոն չ'նկատուեց Կատալան եւ Լոմբարդական ցեղերի ժողովուրդների կողմից, քանի որ բազմաթիւ՝ նոր հոսանքի ուժեղ ազդակներ էին գլուխ բարձրացած այդ երկրամասերի մէջ, աւելի ուժեղ ազդեցութեան եւ մտաւոր մշակոյթով օժտուն անձեր ունենալով իրենց ծոցում:

*Բացի այս բոլորից այդ նոյն դարի մէջ երեւան եկաւ մի նոր, մեծ, դժբախտ հետեւանքներով լի փոփոխութիւն Պրովանսի հասարակական կազմի եւ քաղաքական կառուցուածքի կարգերի մէջ: Ֆրանկների տիրապետութիւնը աւատական իրաւակարգի նոր ըմբռնում հաստատեց այդ երկրամասի մէջ եւ ընդ միշտ կործանման դատապարտեց առեւտրական եւ անհատական ազատութեան եւ անկախութեան ըմբռնումը, որոնք այնքան կարեւոր ազդակներ են եղած հանճարի զարգացման, տաղանդի փայլուն արգասաւորութեան համար: Եւ այսպիսով Պրովանսը զրկուեց ո՛չ միայն իր քաղաքական, մշակոյթի, տնտեսական ու անհատական ազատութիւնից եւ բարգաւաճումի բնական պայմաններից, այլ եւ ստիպուած եղաւ խոնարհիլ՝ իր հանճարներն այլ վայրեր ուղղուելով:*

*Նոր քաղաքական իրաւակարգի մայրաքաղաքներն այլ եւս Մարսէյլը, Մոնպլիէն ու Տուլուզը չէին: ԺԳ. դարի կէսերի մօտերն այդ առանցքը փոխադրուած էր աւելի հիւսիս եւ մտքի ու ազդեցութեան կեդրոնները,— Պարիզը՝ հիւսիսում եւ Նապոլին՝ հարաւում:*

*Եւ այսպիսով, հազիւ երկու դար բոլորած՝ Պրովանսի ազդեցութիւնն ու մշակութային ղեկավարութիւնը բաժանուած էր Իտալիայի եւ Ֆրանսիայի մէջ: Պարագաների նոր դասաւորութեան շնորհիւ Պրովանսը ընդ միշտ եւ վերջնականապէս յանձնուեց վերջնիս եւ դորանով իսկ թոյլ տալով ու ակամայից տեղի տալով, որ իր բնաշխարհիկ լեզուն, երկու դար դեռ եւս իր ազդեցութեան ու փառքի գագաթնակէտին բազմած՝ խոնարհուէր, իջնէր գաւառաբարբառի* — patois — *աստիճանի, անհասկանալի դառնալու չափ իսկ իր անցած փառքի օրերի, որոնուած գրականութիւնը նկատուէր միայն հնամենի* հետաքրքրութեան *նիւթ, պատուաւոր հնիք* — antiquité.— (Francis Hueffer: **The Troubadours** (1878),— C. Chabanean: **Les Biographies des Troubadours** (1923).— Joseph Anglade: **Les Troubadours** (1908).— Paul Meyer: **Les Derniers Troubadours de la Provence** (1871).— John Rutherford: **The Troubadours** (1873).— F. Raynouard: **Choix des Poésies Originales des Troubadours** (6 vol. 1816-1821).— Reinhart Dozy: **Spanish Islam** (1913).— Hendrik Willem Van Loon: **The Arts,** 1939, N. Y. pp. 192-196, 200, 222-224, 406, 575, 591.— Justin H. Smits: **The Troubadours at Home,** Their Lives and Personalities, their songs and their world, 1899, 2 vols.— S. Dobson: **The Literary History of the Troubadours,** 1779, London.— John Doran: **The Knights and Treir Days,** 2 vol. Boston):

§ 39. *Թերեւս մի քիչ աւելի երկարեց Պրովանսի Միջնադարեան դուսանների ծագման, ազդեցութեան խնդրի պարզաբանումը, քան կ՚ենթադրէինք, սակայն նոյն իսկ այդպէս լինելով, յոյս ունինք, որ այդ տեւութիւնն աւելորդ չէր ընթերցողներից շատ ու շատերի համար: Ինչպէս վերը չեշտեցինք, մեր նպատակն էր նախ այդ հեռաւոր աշխարհի դուսանների ազդեցու-*

թիւնն ընդգծելով, ցոյց տալ, թէ ինչպէս իրենց բնաշխարհի բարքերի մշակոյթի, յարաբերութիւնների նրբացման, նիստ ու կացի վրայ հսկելով կենցաղի կանոնների եւ հրահանգների նոր տուեալներ գրի առնելով՝ երգ ու բանաստեղծութեան ազդեցութեան հետ բարձրացրել են նաեւ ընտանիքի, հանրային կենցաղի մակարդակը: Եւ, եթէ այդքան մեծ էր Միջին Դարերի գուսանների ազդեցութիւնն իրենց շրջանում, ինչպէս տեսանք հրահանգների այլազանութիւններից եւ հասարակական խաւերի տարբեր սանդուղքների վերայ իսկ եղածների սիրով գլուխ խոնարհելն մշակոյթի այդ պահանջների առաջ,— ինչո՞ւ պիտի չենթադրուի, թէ մեր մէջ եւս Երգիչն իւր դիրքով, որ ոչ ոքից կախում ունէր, պիտի նոյն ազդակը եղած չլինէր իւր միջավայրում՝ մասնաւորապէս եւ հանրային լայն շրջանի համար՝ ընդհանրապէս:

Մինչեւ այժմ մեր բանասիրութիւնը անուշադիր է անցած այս մեծ ու կարեւոր խնդրի մօտից:

Ճշմարիտ է մեր ձեռքը չեն հասած որոշ տուեալներ՝ մշակուած իբրեւ կենցաղի կանոն ու հրահանգներ, որ տրուած տեսանք Arnaud de Mansan-ի, Raymond Gaucelen de Beziers-ի, Arnaud de Merveil-ի, Bertrand von Born-ի, Guy de Cavillon-ի, Raimond de Durfort-ի եւ ուրիշների կողմից, իբրեւ կեանքի բարելաւման անհրաժեշտ Այբուբեն, խտացած, ընդգծուած ու որոշ,— սակայն այդ տուեալների պակասը տակաւին ապացոյց չէր, թէ Միջին դարերի մեր Երգիչներն անտարբեր են անցած կենցաղի, բարքերի, հանրային յարաբերութեան, նիստ ու կացի եւ այլ նման կարեւոր խնդիրների մօտից, երգած լինելով՝ միմիայն երգելու համար, ինչպէս անհոգ ու անպատասխանատու թռչուններ երկնքի:

§ 40. Նպատակ չունենալով կենցաղի կանոնների մի codex հանելու Միջնադարեան մեր Տաղասացների երգերից ու տաղերից, պիտի կամենանք միայն անցողակի, առանց ի խորս նաւարկելու, մատնանշել միայն մեր Երգչի, Փրիկի թողած ազդեցութիւնն իւր շրջապատի վերայ, իւր տաղերով:

Ընթերցողը յաճախ նայում է մեր անցեալի վերայ ոչ առարկայական տեսակէտով, այլ անձնական տեսական հայեացքով: Փոխանակ տուեալ մատենագիրը, երգիչը, տաղասացը տեսնելու այն ժամանակի իւր միջավայրի պայմանների տուեալների մտայնութիւնով, մենք մեր — այսօրուայ մշակոյթի, ըմբռնման, հասկացողութիւնների չափանիշն ենք կիրարկում նոցա տուածը կշռելու, չափելու եւ գնահատելու համար:

Սխալ տեսակէտ, սխալ չափանիշ: Ըմբռնումները շատ աւելի ճիշդ պիտի լինէին եւ գնահատութիւններն եւս շատ աւելի արդար ու անկողմնակալ, եթէ տուեալներին վերաբերէինք զուտ առարկայական տեսակէտով, նոցա ապրած օրերի եւ մշակոյթի պայմանների եւ պահանջների անկիւնագծով:

Այս ըմբռնումով մօտենալով մեր Երգչին, պիտի տեսնենք, որ նա եւս

հեռու չէ եղած այդ ազդողի, հրահանգողի, դաստիարակի դերից, ինչ որ սպասելի էր Միջին Դարերի գուսան՝ տրուբադուրներից։

Ամենից առաջ նա ներկայանում է մեր առաջ իբրեւ հսկիչ բարքերի եւ բարոյքի ապականութեան չեղումի տանող քայլերի վերայ՝ հանրային, թէ ընտանեկան։ Նկատենք նաեւ, որ նորա ուսուցման խօսքը միշտ անձնական է, շատ հասկանալի պատճառով, առաջնորդուելով ազգային առածի իմաստութեան շաւղով,— «Կուժ քեզ ասեմ, կուլայ, դու լըսիր»։

Խէ. իւր Տաղի մէջ նա հրահանգի ձեւով երգում է,—

«Ջանցի, թէ զհողիս սիրեմ, նա՛յ, մարմինըս հանց կու տայ խափ,
Զինչ որ խոյանայ բազան ու կաքաւըն առնու ի յափ.
Կու տիրէ առ իս շատ մեղք՝ զինչ անձրեւն, որ երբ գայ չառափ,
Խոցել է զիս ահն ու մահն ու արել սիրտս անչառափ»։

Խէ. 16–19

դորանով իսկ խրատն, իբրեւ-կենցաղի հրահանգ, շատ աւելի հաճելի է դառնում, որպէս առարկայական-ենթակայական — subjective — կանոն, համեմուած գեղեցիկ օրինակով։

Ժամանակակից բարքերի բացասական կողմերի պախարակող է նա, իբրեւ բարեացակամ հրահանգիչ եւ ոչ իբրեւ խոժոռ ու մռայլ դաստիարակ.—

«Ջաւրըն կեր ու խում առնէք, գուսանով երթայք՝ զըմբաղիք
Զքարողն տնաղ առնէիք, նաեւ բարկ-բարկ ծիծաղէիք»։

ԽԲ. 12–13

«Յորժամ հայհոյէք զաղքատն ու զժար խաւսաւք կըռուիք,
Ելնէք յԱստուծոյ աչացն, ու՞ր մեղաց դաւթար գըրուիք»։

ԽԲ. 4–5

«Հետ այն մարդուն մի նըստիր, որ ելնէ ըզքեզ զըրուցէ.
Վարդն որ սիրելի առնես՝ նա՛ զասըլ եւ զինքն փընտըռէ»։

ԽԳ. 27–28

«Խելաւքն ի յանխելքըն մաւտ՝ միտք արա, թէ ինչ նըման է,
Ճըրագն ի կուրին առջեւ կու վառի՝ նա ինք տեսնուլ չէ»։

ԽԳ. 19–20

Մարդկային բնութեան թոյլ կողմերին իբրեւ շատ լաւ ծանօթ նուրբ հոգեբան, մեր Երգիչը խրատական լուրջ տաղերի մէջ դնում է երբեմն նաեւ այնպիսի նուրբ հեգնանք, որ յաճախ այդ միջավայրի սովորական մարդու ականջին թերեւս դայթակղութիւն հնչէր, ինչպէս հետեւեալ տողերի մէջ,—

«Ջչարըն քո կամաւ գործես՝ դատաստանայ պատճառ դընես.
Եղբա՛յր, քեզ երդումըն տամ, սատանայ դու ե՞րբ տեսեր ես։
Ասա՛, թէ ի՞նչ կերպ ունի կամ ի յու՞մ բերնէն լըսեր ես.

Դու զմիտքըդ սատանայ զուգես, ու՞ր յաշխարհս ի չուռ կու ածես.
Անմեղ սատանայ զայն ու՞ր գիտէ, զինչ դու կու գիտես»։

Լ. 26–30

Սակայն ձաղկող հեգնանքի տրամադրութիւնը չէ խանգարում, որ Երգիչը մնայ իւր բարոյախօսի, իմաստուն առաջնորդի դժուարին դերի մէջ։

Այս իմաստով մի գեղեցիկ կենցաղական իմաստութեան հրահանգ է ամբողջ ԽԳ. Տաղը՝

«Կ'ուզես որ աղէկ կենաս, որ ամէն մարդ ըզքեզ սիրէ,
Դու հողու նըման կացիր, որ ամէն մարդ ըզքեզ կոխէ»,—

խրատներ, հրահանգներ, բարոյական maxim-ներ, որ իւր ժամանակակից հանրային ըմբռնումների ե՛ւ հայելին է ե՛ւ տեսակէտը, ինչ որ այնքան հակոտնեայ է այսօրուայ մեր ըմբռնումներին, մի ընդվզիչ սկզբունք, մեր տեսակէտից, որ թերեւս պիտի արտայայտէինք՝

«Դու ժայռի նման կացիր վեր,
Որ քեզ չը կոխեն, չանեն ոտնաւեր»։

Տաղ Ծ. նոյնպիսի հրահանգների մի շտեմարան է, ուր Սէրն (Ծ. 15-18, 278) ու Համբերութիւնը (23–26, 45–46), Բարութիւնն (43–44, 47–48) ու Արթուն միտքը (51–52) Գովեստը եւ Բամբասանքը (52), Նենգութիւն (33), Նախանձը (41, 48) ոչ ցանկալի յատկութիւններ են համարւում։

Տաղ ԽԸ.ը հեգնանքի, ծաղրի, ինքնադատ պարսաւի մի գեղեցիկ օրինակ է, որ անձնական մտրակումի պատկերացման տակ խարազանում է սուր երգիծանքով հասարակական մոլար բարքի, յոռի սովորութիւնների, կծծիութեան, անհիւրընկալ ոգու բացասական կողմերը, որոնք այնքան կարեւոր հրահանգների առիթ էին տուած Արեւմտեան տրուբադուրներից շատերին։

«Ծըրար մարմնոյս է իմ խաւար,
Ակըն հոգոյս դարձել է չար,
Տեսն աղքատաց գայ ինձ դիժար...

«Ծոյլ աղաւթից եմ՝ չեմ ըստէպ
Ժամատեղեաց չեմ լեալ հանդէպ...
«Յաչերս ունիմ հազար գերան,
Ամէն գերան՝ քան ըղհեծան,
Այլոց կասեմ, թէ չիւղըդ հան...

«Հիւրոց չեմ լեալ ասպընջական
Ո՞չ եմ տըւեալ ես տեղ իմ տան,
Ոչ ուտարաց ածեալ սեղան
Եմ անողորմ, քան ըղդազան։

«Քաղցելոց չեմ ջամբեալ ապուր
Ո՛չ արբուցեալ ծարաւեաց ջուր
Ո՛չ ընկալեալ իմ տունըն հիւր...»

Նոյն անձնափետումի ոճով գրուած մի այլ հրահանգ է նաեւ ԽԱ· Տաղը՝ զգաստութեան հրաւիրող կենցաղի կանոններ տալով.

«Է, խելք, որ ոչ հաց բերես, ոչ թացան,
այլ միշտ քեզ վընաս...
Ինչ շահ որ ունիս դու զանձ ու կումաշ
ու դեռ կու մուրաս...
Սըրտի ականջովդ լըսէ, մի առներ
յաստէնս դու քըսաս» եւն.
ԽԱ· 56, 58, 62

Երգչի այս դերը, իբրեւ ուսուցանող, իբրեւ բարքերի հսկիչ, իբրեւ կենցաղի ուղեցոյց եւ մտքերի առաջնորդ, շատ մեծ էր եղած մեր անցեալում, ինչպէս եւ ամէնուրեք՝ Արեւելքում եւ Արեւմուտքի մէջ: «Երգիչն», ասում է Լինգարդ,, «կապուած էր կամ որոշ իշխանի, ցեղապետի հետ, իբրեւ նորա անձնական պաշտօնեայ կամ ազատ ու անկաշկանդ էր, թափառելու տեղից-տեղ, ապրելով իւր ունկնդիրների տուրքերով», փոխարէնը շռայլելով իւր շնորհքի ու ձիրքերի տուրքերը.—(Lingard: History and Antiquities of the Anglo-Saxon Church) եւ իւր դերը կատարելով, իբրեւ բարոյքի մշակոյթի անկաշկանդ տարածող ամէնուրեք, որովհետեւ նորա երգը լսւում է՛ւ դաշտի մէջ, է՛ւ պարզ շինականի հիւղակի առաջ է՛ւ իշխանի դղեակի մէջ է՛ւ հրապարակներում՝ քաղքենու առաջ: Ժողովրդի սիրելի Երգիչը որոշ չափով է՛ւ ուսուցիչ էր, է՛ւ քարոզիչ:

Յիշեցնե՞նք արդեօք, որ երգն ու երգեցողութիւնը խոշոր դեր են կատարած նախնական եկեղեցու մէջ, իբրեւ ուսուցման եւ գրաւման միջոց ու խայծ: Պատմում է, թէ Սաքսոնների մեծ քարոզիչ, St. Adhelm, երբ պատրաստւում էր քարոզելու եւ ցանկանում էր, որ ունկնդիրների մեծ բազմութիւն ունենայ, լաւագոյն միջոցն էր համարում ստանձնել աշուղի դեր: Նուագարանը ձեռքին՝ տեղ էր գրաւում հրապարակի կամ խաչփողանի վրայ եւ կամ կամրջի գլխին եւ երգել էր սկսում ժողովրդական երգեր, անցեալի յուշերով վեղուն կամ ժողովրդի սրտին մօտ աւանդապատում ու սիրերգ: Շատ չանցած շուրջը անհամար բազմութիւնն էր խռնուած: Եւ երբ զգում էր, որ նոցա սրտերի եւ ամբողջ ուշադրութեան տէրն էր, կամաց-կամաց իւր ծիծաղաշարժ երգերի, զուարճալի պատումների տոպրակի բերանն էր փակում, նուագարանի ուրախ ձայները մեղմում ու մեռցնում եւ սկսում իւր բուն գործը՝ Քրիստոնէութեան քարոզութիւնը, ժողովրդի ուշքն ու միտքը իրեն գրաւած եւ նոցա աչքերն իւր շրթունքներից կախուած, առանց ցուցադրելու, որ Աշուղի = Ասողի դերից անցած է Քարոզչի դերին, մտքերի եւ սրտերի շինո-

*ղի մեծ գործին:* (D. Doran: **The History of Court Fools,** London, 1858, p. 85):

§ 41. *Վերը տեսանք, որ Միջին Դարերի Գերման* minnesaenger*–ները իրենց բանաստեղծութեան ակը Պրովանսի* troubadour*–ների երգերի եւ քնարերգութեան տաղերի մէջ էին գտնում,* (§27) *եւ որ վերջիններս եւս խորապէս ազդուած էին Սպանական Մաւրերի Արեւելքի ջերմութեամբ եւ գոյների չող երանգներով ողողուն աւանդապատումների, ինքնատիպ տաղերի շնչով* (§30 *եւ շր.*)*. արդեօք որքա՞ն ազդուած էր,— եթէ այդպիսի մի ազդեցութիւն ենթադրելի է,— Հայ գուսանների քնարը Պրովանսի երգիչ–բանաստեղծների Արեւելք փոխադրուած երգերից, քանի որ Խաչակիր ասպետները ո՛չ միայն զէնքի ներկայացուցիչ մարտիկներ էին, այլ եւ նոյնքան յաջողութեամբ սրտի յոյզեր երգող եւ վինի նրբութիւններին ծանօթ անձեր, ինչպիսին էր Պուատուի Կոմս Վիլիամը* (§27)*: Եւ անհնա՞ր էր, որ Հայ երգիչները երբ եւ իցէ առիթ ունեցած չլինէին լսելու այդ հեռաւոր աշխարհից իրենց երկիրը բերուած նորութիւնը՝ Տաղեր, Սիրերգներ, Պատումներ, զրոյցների շարանշարքեր՝ անցած–գնացած դարերի հերոսների հերոսական մրցութիւնների, որոնք այնքան նոր էին իրենց ձեւով, արտայայտութեան ինքնուրոյն պատկերներով, երգի եղանակի ու նուագի ընկերակցութեան բոլորովին նոր հրմայք հագած չեշտով,— այնքան տարբեր իրենց լսած Արեւելեանի հմայք ու յոյզից:**)

*) *Շատ հետաքրքրական մի տեղեկութիւն է հասած մեզ Միջին Դարերից Ֆրանսիացի մի պատմիչի կողմից, որ նկարագրում է* 1248–70 *թ. թ. ճանապարհորդութիւնը իր իշխանի: Ժան Սիր դը–Ժուանվիլ, Ֆրանկ մի ազնուական, Խաչակիրների է. արշաւանքին,* 1248 *թուին, ուղեկցում է Ֆրանսիայի նշանաւոր թագաւոր Լուի Թ.–ը* — St. Louis, IX,— — *նկարագրելով ուղեւորութիւնը դէպի Երուսաղէմ: Իւր այդ պատմուածքի մէջ ի միջի այլոց ասում է,—*

§ 525. Avec le prince vindrent troi menestrier de la Grand Hyermenie: et estoient frere, et en oloient en Jerusalem en pelerinage et avoienr trois cors, dont les voiz des cors lour venoient parmi les visaïges. Quant il encommençoient a corner, vous deissiez que ce sont les voiz des cynes qui se partent de l'estane; et fesoient les plus douces meloides et les plus graciouses que c'estoit merveille des l'oye.

§ 525. Avec le prince vinrent trois ménétriers de la Grande Arménie; et ils etaient frères, et s'en allaient à Jerusalem en pélerinage; et ils avaient trois cors, dont les sons sortaient du côté de leur visage. Quand ils commencaient a donner du cor, vous eussiez dit que c'étaient les cants de cynes qui partent de l'étang; et ils faisaient les plus douces mêlodies et les plus gracieuses, en sorte que c'était merveille de l'ouîr.

*Եւ եթէ ստոյգ է, որ Արեւմուտքի, գոնէ Կիլիկեան Հայքի երգիչները լսած էին այդ տաղերն ու սիրերգները, արդեօք ո՞րքան խոր ու ազդեցիկ կամ թեթեւ ու Հպանցիկ էր եղած այդ նոր տպաւորութեան ազդեցութիւնը մեր գուսանների վերայ։ Հետեւա՞ծ էին նորութեան, թէ անտարբեր անցած՝ Հմայող այդ նորութեան մօտից։ Ճշմարիտ է, լեզուն անծանօթ էր, սակայն Հետաքրքրութեան, Հետապնդումի բուռն թափի առաջ ո՞ր դռներն են փակ մնացած՝ սրտի, թէ մտքի։*

*Թէ Մերձաւոր Արեւելքը ազդած էր մեր Երգիչների վերայ, այդ մասին կասկած չունինք։ Թէ Մերձաւոր Պարսկաստանն ազդած էր մեզ Հետաքրքրող*

§ 526. Il fesoient troi mervaillous sans; car on lour metoient une touaille des sous le piez, et tournoient tout en estant si que lour pié revenoient tout en estant sur la touaille. Li doi tournoient les testes arriers et li aïinsnez aussi; et quant sa li fesoient tourner la teste devant, il se seïgnoit, car il avait pooure que il ne se brisast la col au tourner».*)

§ 526. Ils faisaient tout trois des sauts merveilleux; car on leur mettait une toile sous les pieds, et ils faisaient la culbute tout debout, de sorte que leurs pieds revenaient tout debout sur la toîles. Deux faisaient la culbute la tête en arrière, et l'aîné aussi, et quand sa lui faisait faire la culbute de la tête en avant, il se signait, car il avait peur qu'il ne se brisât le cou en tournant»:*)

Jean Sire de Joinville: **Histoire de Saint Louis, credo et lettre, a Louis X**... Texte original... par M. Natalis de Wailly, Paris, 1874, pp. 286-288.

*) § 525.— *«(Այն ժամանակ, երբ մենք տակաւին Կիպրոս էինք), Անտիոքի իշխան (Բոհեմոնդ Զ.)ի Հետ, եկան երեք գուսաններ՝ Մեծ Հայաստանից, որոնք եղբայրներ էին եւ ուխտի էին գնում Երուսաղէմ եւ ունէին երեք (եղջերա)փողեր, որոնց ձայնը նոցա երեսներին էր կպչում։ Երբ սկսում էին Հնչեցնել փողերը, գոչես, լճակի մէջ եղած կարապների ձայներ լինէին եւ որ այնքան անոյշ մեղեդի եւ չնորհալի եղանակ էր, որ լսելն իսկ սքանչացում էր։*

§ 526.— *«Երեք զարմանք առթող պարեր պարեցին. Նոցա ոտքերի տակ փռուած էր մի Հիւսուածք (=գորգ) եւ դառնում էին (գլխի վերայ), ինչպէս որ (կանգնած) էին եւ նոցա ոտքերը կրկին դալիս էին (Հանգչում) գորգի վերայ։ Երկուսը գլուխները դէպ յետ ծռած էին (ցատկում) եւ նոյնը նաեւ աւագ եղբայրը եւ երբ նորան ստիպում էին գլուխն առաջ թեքած ցատկել (մէջքի վերայ), երեսն էր խաչակնքում, երկիւղ կրելով, որ վիզը չը կոտրէր դառնալու պահին»։*

*Երեւի Հայ գուսանների այս պա՞րն այն յատուկ պարն էր, որ յայտնի էր* պարանցիկ *անունով, ինչ որ այնքան Հաճելի թուեցաւ օտար իշխաններին։*

*Անհաւանական չէր որ այդպիսի պար, նուագ, ցոյց, երգ ցուցադրելու ժամանակ Արեւմտեան իշխանների կողմից եւս իրենց Հե՞տ բերած, տրուբադուրներն ու Հոպիտները պիտի ցուցադրէին, ինչ որ առիթ պիտի ընծայէր Հայ Երգիչներին, Գուսաններին, Արեւմտեան արուեստի ձեւերի Հետ ծանօթանալու, իբր արուեստի արտայայտութեան նոր եղանակ ու ձեւերի Հետ, որով եւ նոր փոխառութիւնների առիթներ ունեցան։*

Նրանց՝ Ֆրիկի վերայ, այդ նկատմամբ մեր համոզումն անխախտ է, քանի որ առաւել քան համոզուած ենք, որ Ֆրիկը ծանօթ էր Պարսիկ միջնադարեան բանաստեղծների, ինչպէս «Սէր ու գինի եւ կինը» այնքան սքանչանքով երգած ու գոված այլ ներկայացուցիչների քնարի արտադրութիւններին: Եւ այդ ծանօթութիւնը մինչ այն աստիճան, որ անգիտակից ու առանց անդրադառնալու երգում է

«Պուլպուլն ի Թըփին նստէ
Ֆէրիադու դատ կու կանչէ»

(ԹԳ. 16 Տնթ.), չնկատելով իսկ, թէ իւր «Ֆէրիադու դատ կու կանչէ»-ն Պարսկերէնի «Ֆէրիադ մի՛ զէնիմ»-ն է (եւ ուր «Պուլպուլ», «Ֆէրիադ», «դատ» պարսիկ բառեր են):

Եւ եթէ այդպիսի մի ազդեցութիւն կրած է Պարսիկ Բանաստեղծութիւնից, ինչո՞ւ չենթադրել, որ մի նոր հոսանք եւս կարող էր մի նոր ազդեցութեան հետք թողնել Հայ Աստղական (= Աշուղական) Բանաստեղծութեան վերայ՝ ձեւով, տարազով, ոճի ինքնուրոյնութեամբ, շնչով ու պատումի եղանակով հայկական, բայց էութեամբ օտար՝ պարսկական:

Մի խնդիր, որ տակաւին իւր լուծմանն է սպասում եւ որ միայն հետագայ օրերի ուսումնասիրութեան եւ մանր պրպտումների հարց է, քանի որ Միջին Դարերի մեր երգիչներից շատ շատերը դեռ մեր Ձեռագրների ծոցում եւ դարակների անկիւնում խոր քուն են քաշում: Իսկ մինչ այն ցանկալի է, որ Միջնադարեան մեր երգիչների բանաստեղծական ժառանգութեամբ հետաքրքրուողները աչքից չփախցնեն Ռայնուարի հետաքրքրական Հատընտիրների վեց հատորները Միջին Դարերի տրուբադուրների՝ արդիւնք երկար գրական «մոլութեան», որոնումների, գեղեցիկ հակումի եւ անդուլ ջանքերի ու աշխատութեան, որոնց հետ լինելն իսկ եւ ձեռքի տակ ունենալը հաճոյք է: (F. Raynouard: Choix des Poéies Originales des Troubadours, 6 vol. 1816-21, Paris):

Ձենք կարծում, որ մեր Երգիչն անձամբ անծանօթ մնացած է այդ նոր հովի հոսանքին եւ երբեք լսած չէ տրուբադուրների բանաստեղծութիւնները եւ կամ նոցա շունչը խօսած չլինի նորա հոգու հետ: Չէ՞ որ մեր Երգիչն ինքն է երգում

«Շատ մի դատեցայ, եղբարք,
Ի Հարզայ ես շատ մի տարի», ԻԴ. 9

իսկ այդ Հարզան, ինչպէս տեսանք (Գլ. Ա. § 52, 53) այսօրուայ Հաջինի նախնական ու մոռացուած անունն է, Կիլիկիայի սահմանների մէջ: Եւ եթէ նա «շատ մի տարի»ներ դատել, այսինքն գաղթականի ցուպը ձեռքին տանջանքն է կրել ու տառապել այդ շրջանում, իւր կորած որդին որոնելու,— կասկած չունինք որ այդ «շատ մի տարիների» վշտոտ օրերին անգամ՝ նորա որոնող ու միշտ կատարելութեան ձգտող, «փոքր որսի չը հաւանող» արծուի

սիրտը, անշուշտ, մի օր եւս ուղղած պիտի լինէր օտար աշխարհի այդ Նոր հովին, Նոր երգն ու եղանակը լսելու, որովհետեւ

«Այն հաւերուն էր, որ գետինը կուտ չուտէր,
Եւ թռչէր երկնաւքն անցնէր...»

որին եւ միշտ ձգտումն ունեցած էր:

§ 42. Եթէ Արեւմուտքն ազդած է առ հասարակ մեր Երգչի եւ երգիչների վերայ, Նոցա երգերին ու մտքերին Նոր ուղղութիւն տալով, նոյն իսկ Նոր, մինչեւ այն քիչ յայտնի նիւթեր մատակարելով Նոցա, Նոր տաղեր յօրինելու կամ երգելու, արդէն առիթն ունեցած ենք մեր միտքն ու տեսութիւնը պարզելու, երբ խօսք եղած է Ֆրիկին վերագրած ԳԱՆԳԱՏ-ի բուն երգչի, յօրինողի անունը ճշդելու հարցը լուծելու խնդրի առթիւ: Ընթերցողի ուշադրութիւնը պիտի ուղղենք միայն այդ տեսութեան (Տես Գլ. Գ. § 36–46), առանց կրկնութիւնների դիմելու:

Եւ եթէ հնարաւոր է եւ ընդունելի, որ Արեւմուտքն իւր որոշ ազդեցութիւնն ունենար Արեւելքի մէջ, հեռաւոր այդ երկրամասում ապրող մեր Հայ Երգիչների վերայ, ինչպիսիք են Բարսեղ «Իմաստնոյ» յայտնի ԳԱՆԳԱՏԸ) Տես Յաւել. Դիւանի Զ.), Սարկաւագ Վարդապետը իւր մի այլ ԳԱՆԳԱՏ-ով, «Յաղագս Տարբեր Վիճակաց Մեծատաճ եւ Աղքատի» վերնագրով (Յաւել. Է.) եւ նոյն իսկ մեր Երգիչը, Ֆրիկ, որ ունի «Ողբանք» վերնագրով մի Տաղ (Դիւան Զ.), ուր նոյն նիւթն է մշակուած մի Նոր ձեւով, ինչո՞ւ չենթադրել, թէ բացի այդ «Գանգատ»ի եւ «Ողբանք»ի նիւթերից, նա, ինչպէս եւ միւսները հետաքրքրուած են եղած Արեւմուտքից հասնող Նոր հոսանքի ինքնուրոյն դրաւչութեամբ եւ առել են կամ պարզ նմանութեամբ եւ կամ յարասիկ — paraphrasée — տարազով երգեր, տողեր, «առակ ու մասալ»-ներ, որոնք այնքան սովորական էին Պրովանսի երգիչների եւ Նոցա հետեւողների, մանաւանդ Նոր զարթնող Իտալիայի գրական աշխարհի Նոր մշակների բանաստեղծական ու գրական մշակոյթի արտադրութիւնների մէջ:

Արդեօք այս Նոր հոսանքի հարկը չէ՞ր Ֆրիկի կողմից մեզ թողած, գոնէ առ այժմ միակ ծանօթ, առակի ձեւով արտայայտուած պատմուածքը «Վանճ ի վերայ Եղբայրասպանին» վերնագրով (ԽԴ.), որ իւր, եթէ ոչ բովանդակութեամբ, գոնէ ձեւով յիշեցնում է Միջնադարեան տրուբադուրներից Արնոյ դը Կարկասի — Arnaud de Carcasses,— «Թութակը»: Վերջինիս մէջ կենդանական աշխարհի մի ներկայացուցիչն է խօսում, ճառում, համոզում բարձրաբերձ ժայռի կատարին թառած դղեակի մէջ արգելափակ իշխանուհուն՝ իւր տիրոջ, երիտասարդ, գրաւիչ մի ասպետի սիրոյ ձայնին ընդառաջ գնալ, այստեղ, մեր Երգիչը Բնութեան սովորական կարգի ընթացքի ենթակայ մի անշունչ ու անկենդան աղիւսին է հոգի տալիս ու շունչ, պատմել տալիս, խօսեցնում համոզկեր լեզուով բանական, բայց խիղճը կորցրած ագահ մի եղբօր, թէ,—

«Դու հանց անսիրտ յինչի՞ եղար.
Դու քո ի միտքդ ի վար դնայ
Տես թէ զայդ ո՞ր եղբայր արար,—

որ այժմ

«Դու ի սատանին ձին դու հեծար»

եւ կամենում ես եղբօրդ սպանել, քանի որ այնպէս է համոզուած, թէ իւր եղբօր

«Այս մալ ու մուլքն ինձ ի լաւ է»:

Եթէ այս առակաւոր խօսքն, իբրեւ բանաստեղծական նոր ձեւի արտայայտութիւն, նոյն իսկ նմանութիւն չէ Արեւմտեան գուսաններին, յամենայն դէպս Արեւելքի զօրեղ շունչ է զգացւում այստեղ իւր նկարագրութեան ձեւով ու կազմածով, որ տեսնում ենք բաղնիքի նկարագրութեան պատկերի մէջ.—

«Որմերն ամէն ոսկով ծեփած,
Ոսկի լուլայքն ի չարէչար.
Յորժամ լուլայքն, որ բանային
Նա՛յ, վարդէջուրն ի վայր կու գայ...»

թէեւ Արեւմուտքն եւս իւր շունչն է դրել այդ Տաղի մէջ,—

«Ծօ, ես հանցեղ պարոն էի,
Որ ինձ նրման պարոն չի կար.
Ես մէկ հազար բերդ ունէի,
Ու անհաշիւ ձի ու ոչխար:
Յորժամ լինէր ժամ մանկլիսի
Նա՛յ, իմ ախիքն էր մէկ հազար.
Ըզմեծամե՛ծքըն ճանչնայի
Եւ հեծելին, հաշիւ չի կար...,—»

ուր հաւասարապէս մեր աչքի առաջն է պատկերանում եւ Արեւմուտքի փառահեղ baron-ների ճոխութիւնը, հարստութիւնը, ինչ ու ստացուածքի, պերճանքի անսահման չափը, խրախճանքի լայն ու առատաձեռն շռայլութիւնը, պալատական ու դրանիկների միմեանց հետ մրցելու յամառ, անսքօղ պայքարը, հեծեալների ու զինակիրների բազմութիւնը,— պատկերի կազմածք ու մանրամասնութիւններ, ինքնուրոյն գոյներ, որոնք Արեւմուտքն են յիշեցընում,— եւ միաժամանակ Կիլիկեան նոր հարստութեան նոր հասարակարգի, նոր կենցաղի փոխառու, սակայն իրենց նոր հունի մէջ մտած եւ շատ բնական վիճակ ներկայացնող՝ նուրբ դիտողութեան ու սուր մտքի արտայայտութիւն մի նոր ակնապարար պատկեր Հայ կեանքի:

§ 43. Նման բովանդակութեամբ, «Առակ Լաւ եւ Պիտանի» վերնագրով մի այլ Տաղ է հասել մեզ (Յաւել. Ը.), վերագրուած «Աշըղ Քոչակ Վանեցի»

երգչին, որի մասին ինքը երգիչն եւս վկայում է թէ իրենն է, ասելով,—

«Այս քանի բանս ջիւրմէն ասեր՝
Աշըղ Քոչա՛կըն գինեհքար»:

«Ցիւրմէն ասեր» արտայայտութիւնը, թերեւս ճիշդ է, եթէ նկատի ունենաք միայն իբրեւ ձեւ, կաղմ յայտնի այդ առակաձեւ բարոյական պատմուածքի իսկ ինչ վերաբերում է բովանդակութեան, յօրինուածքին, իրերի պատմելու դասաւորութեան՝ այդ ամէնը այնքան մօտ է Ֆրիկի վերը յիշատակած Տաղին, որ համեմատութեան իսկ դնելու կարիքը չունինք: Ընթերցողը դիւրաւ հասնել կարող է այդ եզրակացութեան՝ երկուսն եւս կարդալով:

Ճշմարիտ է, երկու բանաստեղծների տուածների մէջ Արեւելքն է երեւում իւր բոլոր տուեալներով, սակայն որքան տարբեր՝ գոյների չող ու պատկերներով, լեզուի, արտայայտութեան ձեւի ճկուն նկարագրով: Քուչակի տուածի մէջ բաղնիքի եւ նորա տիրոջ պատկերն այսպէս է գծուած,—

«Ես Մըսրայ թա՛գւորն էի, որ չի կայ ինձ նըման վէրի քար.
Ես այլ մի բա՛ղնիք մ'ունէի, անմահութեան ջուր կու բըղխայր.
Էն բաղընից պատեր ասեմ, եաղութ, ալմաստ էր լալէզար:
Ես այլ մի ձի մի հեծնէի, արժէր դական հարիւր հազար.
Ես այլ մանդիլ մի կապէի՝ Մըսրայ քաղքին ճամին կու գայր»:

Որքան մեծ է տարբերութիւնը երկու Բանաստեղծների ոգեւորութեան, ոճի, պատկերաւոր ու գունագեղ նկարագիր գծերն ու միջավայրը մի քանի բառով ներկայացնելու հմայքն ու կարողութիւնը:

Երկու Բանաստեղծների միեւնոյն նիւթը մշակելու այս փորձը, մի տեսակ Tenzo է, մրցակցութեան պայքար է, այնքան ընդունուած թէ Արեւելքում եւ թէ Արեւմտեան տրուբադուրների դարում, հաւասարապէս սիրելի Արեւելքի զաւակներ՝ Պարսիկների, Արաբների, Մաւրերի եւ տրուբադուրների ժառանգ միննեզենդերների համար, որոնց օրինակները վերը տեսնելու պատեհութիւնն ունեցանք (Գ. Դ. § 31, 32, 33, 34 եւն.):

Այդ նոյն հոգեկան հաճոյքի ապրումներով է վերապրում այսօր իսկ, յաճախ, Հայ ժողովուրդը, երբ չրջապատած՝ մրցութեան ելած երկու նշանաւոր աշուղների «Բաս մտնելու» բոլորակ քաշած ծիրին, հոգեկան մի նոր տառապանքի եւ հրճուալից ոգեւորութեան րոպէներ է անցնում, թէ ո՞վ, երկու մրցակիցներից, իբրեւ պարտուած իւր սազը կամ չունգուրը,— եւ կամ ինչպէս պիտի ասէր Մ՚չեցին «գիր չաւիր»,— պիտի յանձնէ յաղթականին, իբրեւ նշան պարտուածի: Այս մրցութեան պայքարը Ֆրիկի եւ Աշուղ Քուչակ Վանեցու մէջ post obidum մի մրցութեան օրինակ է առաջնի նկատմամբ: Եւ Քուչակ Աշուղն ինքն է, որ այդ մրցութեան պայքարն է հրաւիրում, իբրեւ նիւթ ընտրելով դարերի ժառանգութիւն մնացած մի բանաստեղծական երկ՝ մշակուած արդէն Ֆրիկի կողմից: Չեմ կասկածում, որ եթէ հին Ցունական-

դատական օրերի մրցութեան պայքարի դատաւոր — Hellanodic — լինէինք, կամ Միջին Դարերի մասնակցող մի ունկնդիր եւ նոյն իսկ մեր օրերի «բաս մտած» աշուղների իրաւարար, մեր վճիռն ու քուէն յօգուտ Ֆրիկի պիտի լինէր անկասկած, իբրեւ շատ աւելի տաղանդաւոր ներկայացուցչի՝ Միջին Դարերի մեր Երգիչների աստեղատան:

Եւ այս տեսակէտից է, որ այլ տեղ, ուսումնասիրութեանս ընթացքին յայտնած ենք այն կարծիքը, թէ «Քուչակ»-եան ընդհանուր առումով յայտնի տաղերը, ո՞րքան արդարացի եւ անկողմնակալ իրաւունքով կարող ենք վերագրել վերը յիշատակած «Առակ Լաւ Եւ Պիտանի» վերնագրով տաղ-առակի հեղինակ Վանեցի Աշուղ Քուչակին: «Քուչակեան» երգերի ոճը, լեզուն, աւիւնը, արտայայտութեան նրբութիւնը, ինքնուրոյն ապրումները, պատկերաւոր ու գրաւիչ համեմատութիւնների այդ հմայիչ ծաղկանոցը, իր բոյր ու թոյրով, համ ու հոտով, ձեւով, առինքնող ու իրեն ընդ միշտ կապող քաշող ոյժով եւ ոչինչ ունի այն տափակութեան եւ միջակ կարողութեան տէր երգչի հետ, որի մի Տաղի օրինակը տեսանք այժմ:

«Քուչակեան» Տաղերը առ այժմ պիտի նկատենք Միջնադարեան մեր սրտի ու հոգու տէր երգիչների մի գեղեցիկ ծաղկանոց հանդրուան, մինչեւ որ ժամանակը, նոր հրատարակութիւններով, նոր քննական ուսումնասիրութիւններով այդ հմայիչ Պարտէզի ծաղիկները խմբակցութեան վերածէ եւ իւրաքանչիւրն իր երկնող Երգչի անունով կրկին դասաւորէ, որից, կասկած չունինք, պատուաւոր բաժին պիտի հասնէ եւ մեզ հետաքրքրող Երգչին՝ Ֆրիկին, որով նորա արժէքն աւելի եւս մեծ պիտի լինի անցած-գնացած, բայց միշտ կենդանի ու ապրող մեր բանաստեղծական շնչով ու աւիւնով լի երգիչների աստեղատան մէջ:

§ 44. Միջին Դարերի երգիչներն Արեւմուտքում, յատկապէս Պրովանսի տրուբադուրները, շատ մեծ դեր են կատարած կրօնական աշխարհի բնոյթին նոր կերպարանք տալով: Նոցա մէջ ասպետական ոգու արդիւնք՝ ազնուացնող ու ազնուական կնահաճութեան որոնումները մի նոր ուղղութեամբ տանելու ցանկութիւնն է մշակւում, տարփիկ նուիրումի փոխարէն վայելչական հաղորդակցութեան ըմբռնումը պարտադրելով եւ պատրաստակամ ծառայութեան փոյթ ու եռանդին հագցնում մի նոր քօղ՝ օծուն կրօնական շեշտով: Այս նոր երեւոյթի իբրեւ անմիջական հետեւանք տեսնում ենք Gancelain Faudit եւ Guilhem de St. Legier-ի ուխտագնացութեան մղման ձգտումը, ուր ասպետական նուիրումը ստանում է մի նոր իրական ձեւ իր նոր վայրով եւ մշակոյթի նիւթով, փոխանակ սիրային արկածալից հակումների ծառայութեան:

Մարսէյլի մօտ, Les Baumes կոչուած վայրում, սեպ ժայռերի բարձունքին թառած եւ ծառերի թանձր պուրակների մէջ ապաստանած մի բնական այրի մէջ էր ցոյց տրւում այն վերջնական ապաստանի վայրը ապաշխա-

րութեան, ուր ըստ աւանդութեան Արեւելքի մեծ մեղսալից կինը, Մագթաղինացի Մարիամն էր անցրել իւր կեանքի վերջին տասնեւօթ տարիները: Ընդհանրացած հաւատալիքի այդ զրոյց աւանդապատումն, անշուշտ, եւ ո՛չ մի պատմական հիմք ունէր: Մեր ժամանակակից պատմական ուսումնասիրութիւնների սիրահար մտքեր եկած են, այդ զրոյցի նկատմամբ, այս եզրակացութեան, թէ Ղազարոսի քրոջ կամ Մագթաղինացի Մարիամի անուան հետ կապուած զրոյցը՝ պարզապէս անունների շփոթութեան արդիւնք էր Պրովանսի ծնունդ մի այլ Մարիամ իշխանուհու անուան հետ, որ արդելափակ կեանք էր ունեցած: Անշուշտ Միջին Դարերի հաւատաւոր կաթոլիկ սրտերում կասկածի եւ անվաւերականութեան եւ ո՛չ իսկ նշոյլ կար պատումի ճշգրտութեան մասին եւ ժողովրդական հաւատալիքը պատճառ էր դարձած զրոյցի աճած ծառի վրայ նոր ծաղիկների ու պտուղների աւելանալուն: Այրի մէջ հոսող, վազող, մշտախոխոջ առուակը ուրիշ բան չէր, ըստ ծաղկած աւանդապատումի, եթէ ոչ Մագթաղինացու արցունքների յորդահոս աղբերակը, իսկ խոխոջը նորա վշտի ու տառապանքի հծծիւնը: Այրի մէջ գտնուող մատուռը իւր համբաւն ունէր, տարածուած շատ աւելի հեռուները, քան Լանգ դ'Օկի սահմանները: Այրը ուխտի եկածների թւում հաշւում են թագուհիներ եւ Ֆրանսիայի թագաւորներից՝ տասներեքը, Պրովանսի բոլոր դուքսերն ու իշխանները, «բազմաթիւ պապեր, անհամար թուով եպիսկոպոսներ եւ ծիրանաւորներ, բարոններ, կոմսեր եւ ասպետներ»:

Սակայն այս ուխտաւորների երկար ու անվերջ շարանի մէջ առաջին տեղն էին բռնում «Սիրոյ ուխտեալ»ները: Եւ այդ սրբազան ուխտի դէմ մեղանչողներն ստիպուած էին բոկոտն քայլել, սեպ ժայռերի միջով, երկար ժամանակ, մինչեւ որ հասնէին զառիթափ մի խորխորատի բերանն, ուր Բնութեան ահեղ պատկերը մի նոր խրատական էր նոցա կեանքի որդեգրած ուղու անկման տանող ելքին: Յաճախ այդ ապաշխարութեան ուղու տաժանքը կամովին յանձն էին առնում մեղանչողները: Եւ խոր հաւատք կար, թէ կամովին ուխտագնացութեան պարտադիր մի ուղեւորութիւն, կարեւոր նուիրաբերութեամբ ճոխացած, արցունքի գայլակներով սրբուած, աղօթքի ջերմաջերմ թռիչքով, ամենալաւ եւ ստոյգ միջոցն էր մեղքի ու ապաշխարութեան տիպար սրբուհու միջնորդութեան, ուխտաւորի հոգեկան աշխարհի ալեկոծ ծովը խաղաղելու եւ նոր խաղաղ ու անդորր հանգրուանի առաջնորդելու:

Բազմաթիւ էին այդ ուխտատեղիները, ամէնքն եւս դրաւիչ, ամէնքն եւս նոր հրապոյր հագած ու նոր շողերով յեռուն՝ Պրովանսի հռչակ հանած տրուբադուրների բանաստեղծական երգերով ու գովքով,— որոնց բոլորի նպատակը վերջնական՝ մի էր, կնամեծար ասպետական ոգին նոր բովից անցնել, մեղսամած անձը վերակերտել, դարձնել նոր հոգի առած մարդ, կրօնի եւ Քրիստոնէական զգաստութեան պարտադիր ապաշաւով:

Այս նոյն տեսակէտով ոչ պակաս դեր են կատարած նաեւ մեր Երգիչ-

ները, սկսած նախնական շրջաններից մինչեւ անցեալ դարի կէսերն անգամ, երբ Մխկին Բուրջին երգում էր,—

«էջմիածին խիստ պայծառ տեսի»

տաղի նոր ոգեւորութեան քառեակներն, իբրեւ կրօնական նոր յոյզերի արծարծում իր լսողների սրտերում: Դոցանից մէկը, անունն իսկ անյայտ, իր «Տաղ Էջմիածնայ» երգի մէջ այսպէս է երգում,—

«Աչաչ ցընծայ Վաղարշապատ,
Մայրաքաղաք երկնակատար,
Ամուր պարիսպ բարձր աշտարակ...»*)

Եւ այդ յոյզն ու սէրը, դարերի ընթացքին, գուրգուրանքով է պահպանուել, մինչեւ մեր օրերն իսկ, երբ մեր շնորհալի Բանաստեղծ, ժողովրդի Սրտի բերան Երգիչն էր երգում,—

«Դարեր եկան, դարեր անցան, էջմիածին,
Քո հիմն անշարժ ու անսասան, էջմիածին,
Ձես ձեռակերտ ու մարդկեղէն առօրեայ,
Դու շողակաթ Լուսոյ Խորան, էջմիածին...»

ՅՈՎՀ. ԹՈՒՄԱՆԵԱՆ

Խորանալ այս դրականութեան մէջ մեր նպատակից դուրս է. նշեցինք միայն երեւոյթը:

§ 45. Միջին Դարերի մեր երգիչներն իրենց տաղերի մեծագոյն մասը նուիրած են կրօնական յոյզերի արծարծման ունկնդիրների մէջ: Մեր օրերի շատ քննադատների աչքին նոցա երգերի այդ աչքի ընկնող գիծը, այդ տաղասացների ամենից թոյլ ու անարժէք կողմն է, որովհետեւ մեր քննադատները, տարուած իրենց սեփական անձնական զգացումների կշռի թելադրութեամբ, առանց անդրադառնալու այն միջավայրի պայմաններին, հասկացողութեան, հոգեկան ապրումների պահանջներին, որոնց մէջ էին սնուած ու մեծացած այդ Երգիչները, որոնք իրենց շրջանի «խալխի նոքար» ուսուցիչներն ու դաստիարակներն էին, (եթէ ոչ ի պաշտօնէ), գոնէ ըստ ըմբռնման դարի: Միջին Դարերի հետըհետէ նուազող դպրոցների՝ հաստատուն հիմքերի վրայ դրուած ազդեցութեան մեծ բացն այդ երգիչներն էին լրացնում, որոնց մէջ աչքի ընկնող դեր է կատարում նաեւ Ֆրիկը: Նորա Դիւանի մէջ, ինչպէս պիտի նկատէ ընթերցողը, կրօնական տաղերի թիւը գերակշիռ թիւն է կազմում, ինչ որ ոչ թէ նորա պակասաւոր կողմն է, այլ դրականն*): Այդ տաղերը դբօսանքի,

*) Տաղարան ՌՃԻԸ Թ. (= 1079), Երուսաղէմ գրուած. «ըսկայ գրել գայս ճօնկս(?) ես Հալապեցի Ղայամքար տր. Ովանես, ի սբ. քաղաքն Ե(րուսաղէ)մ, ի վանքն սբ. Յակոբայ». — Տես Արտ. Արքեպս. Սիւրմէեան «Ցուցակ Հայ. Ձեռագրաց Հալէպի Ս. Քառասուն Մանկունք Եկեղեցւոյ...» 1935, Երուս., էջ 387:

*) Մեզ համար տակաւին խնդրական հարց է, թէ. արդեօք Ֆրիկը սիրերգների «Հայրենի» մեծ երգիչը չէ՞ եղած նմանապէս:

անձնական զուարճութեան համար չէին երկնուած եւ կամ երգուած։ Նոցա դերն աւելի խոշոր էր, քան կամենում ենք դիտել, ըմբռնել եւ գնահատել։ Այդ Տաղերն անգիր գրականութեան, եթէ ոչ գոհար բանահիւսութեան նըմոյշներ չեն, բայց, գոնէ, իրենց իսկական դերը կատարելու մեծ ազդակներ են եղած՝ իրենց ունկնդիրների համար, իբրեւ ձրի դպրոց եւ դիւրին կերպով միտք պահելու սահմանուած անպարտադիր, բայց հաճելի ուսուցչի դասեր դառնալով։

Այդ տաղերի մէջ էլ լսում ժողովրդի ծարաւ բազմութիւնն իւր դաւանանքի սկզբունքները, հաճելի ասացուածների ձեւով եւ միտք պահելու դիւրութիւն տուող յանգերի ներդաշն ճոխութեամբ, ինչպէս սովոր էր անել Միջին Դարի գիտունն՝ անգամ թուաբանական, քերականական, իմաստասիրական եւ նոյն իսկ բնագանցական գիտութեան խրթնութիւններն աւանդելու համար։ Այս տաղեր էին նորան՝ այդ խոնարհ մեծութեան անդադար յիշեցուցիչները Ս. Գրքի պատմութեան, Նոր Կտակարանի սկզբունք ճշմարտութիւնների, Առակների բովանդակութեամբ, բարոյական կանոնների ազգային ու կրօնական աւանդութիւնների ու զրոյցների պատումների չտեմարան,— մի խօսքով դոքա կրօնական գիտելիքների, բարոյքի հրահանգների, ազգային զգացումներ արծարծող բովք ու հնոց էին, որի մէջ Երգչի «սիրտն էր փռուած» ունկնդիր մտքերը «սրտի ականջով» կապելու սրբութիւնների պաշտամունքին եւ ճշմարտի ու բարու ուղին նշելու համար։

Ճշմարիտ է այդ Տաղերի բովանդակութիւնը կամ այդպիսի բովանդակութեան տաղերն այսօր մեզնից շատ—շատերին չեն հետաքրքրում եւ նոյն իսկ ձանձրոյթի աղբիւր են, սակայն անձնական տեսակէտն ու յոյզը չէ, որ կշռադատի դերը պիտի ստանձնէ, այլ առարկայական մերձեցումը հարցին. թէ տուեալ պայմանների մէջ Երգիչը ո՞րքան անխառն ու ճշգրիտ ցոլացումի հայելին է եղած իւր դարի ու միջավայրի ապրումների։

Յոյզերն իբրեւ չափանիշ միշտ էլ փոփոխութեան են ենթակայ։ Միջավայրի ու դարի տուեալների չափանիշն է, որ թէեւ փոփոխական ու անկայուն, յաջորդող շրջանների համար, այնու ամենայնիւ ճշգրտագոյն կշիռն է ու չափը Երգչի առաւելութիւնները եւ պակասութիւնները կշռելու եւ ցուցադրելու։ Պիտի գան օրեր ապագային, երբ մեր մօտաւոր անցեալ դարի մեզ ոգեւորող բանաստեղծներն այլեւս նուազ չափով ազդեցիկ պիտի լինին հետագայի սերնդի մտքի ու սրտի վերայ, սակայն դորանից պիտի չհետեւէ, որ անցեալ դարի հայ ժողովրդի յոյզերի, երազանքների, յոյսերի ու ապրումների ներկայացուցիչները՝ Նալբանդեան ու Պեշիկթաշլեան, Գամառ—Քաթիպայ ու Վարուժան, Դուրեան ու Ալիշան, Թումանեան եւ շատ ու շատ ուրիշներ աննշան պիտի համարուին եւ հեգնանքով անցնուին նոցա մօտից։ Քանի՞ Անգլիացի է կարդում այսօր Addison,— բայց նա իւր օրերի ու դարի ուղեցոյցն էր։

Եւ այս տեսակէտից Ֆրիկը միշտ էլ իւր պատուոյ տեղը պիտի ունենայ՝ իբրեւ Սրտի Երգիչ եւ իբրեւ իւր դարի ճշգրիտ հայելի։

§ 45. Եւ այն դարերին եւ ժողովրդական այն միջավայրի մէջ, երբ «Աստղ»ի շուրջը բոլորուիլը եւ լսող լինելու յատկութիւնը կեանքի մեծագոյն հաճոյքներից մէկն էր եւ երբ ամէն մէկի երեւակայութիւնը լցւում էր անցեալի ապրումներով, իւր մեռած, բայց միշտ կենդանի հերոսների արարքներով,— արքայ թէ զօրապետ, ժողովրդի զաւակ Գայլ Վահանի, թէ Թըրլոր Դաւթի յուշերով,— այդ օրերին հռետորը, խօսքի վարպետը եւ հմայող կիւսը՝ Երգիչը, Տաղասացը շատ աւելի փայլուն դիրք էր դրաւում եւ նախանձելի, առինքնող մի վիճակ ստեղծում, քան կարելի է երեւակայել։ Երգչի հմայիչ խօսքը, հոգիներն անդորրող եւ մտքերն օրօրող՝ կշռոյթով իւր տաղերի, ականջ շոյող ու զարմանք շարժող առատ ու անհատ յանգերը՝ իւր Տաղ ու խաղերի, նոյն իսկ եկեղեցու կարող քարոզչի դերն էին մոռացնել տալիս։— Երգչի խօսքը, երգելու ձիրքը, ձայնի շեշտն ու տարողութիւնը՝ վշտով լի կամ սիրոյ ու անձկութեան թռիչքով տարուած, իւր չունգուրի կամ չալիրի ու սազի անպաճոյճ, սակայն, սերտ դաշն հնչիւնները, յարուցած յոյզերի ու երազանքների եղանակի ելեւէջի հետ զուգահեռ՝ լաւագոյն պաշտպանութեան դղեակներն էին Միջին Դարերի երգիչների համար եւ միաժամանակ նաեւ անհրաժեշտ պայման ժողովրդական կեանքի յարատեւ ապրումների, իբրեւ իրար զօդող կապ, դասակարգային խտրութիւնները մոռցնել տուող, տարամերժող եւ հաւասարութեան սկզբունքն անգիտակից գիտակցութեամբ տարածող մի ազդակ, միաժամանակ նաեւ միտքն ու հոգին դէպի վեր, դէպի Անհունն ու Բարձրագոյնը տանող անտեսանելի մի սանդուղք։

Մեր այսօրուայ հանրային կեանքի ու կենցաղի բազմաթիւ սովորոյթի անհրաժեշտ պահանջ համախմբումները,— ընտանեկան թէ դրսի զբօսի ժամանց, երաժշտական երեկոյթ, դասախօսութիւն, համերգ, շարժապատկեր ու ներկայացում եւ այլն, որ ունինք եւ անհրաժեշտութիւններ են համարւում,— այդ օրերին միայն մի երեւոյթով էր լցւում,— Երգչի, Աստղի ներկայութեամբ եւ նորա հմայիչ սփոփիչ տաղ ու երգով, որ լսւում էր ամէնուրեք եւ ամէնքի կողմից «Սրտի ականջով»։

Իտալական վերածնունդի շրջանին Bartolommeo Facio գանգատւում էր, որ իւր օրերի լաւագոյն հռետորներն անհամեմատ շատ աւելի նուազ նախանձելի եւ ձախող վիճակ ունէին իրենց բոլոր առաւելութիւններով, քան պարզ ու հմայող խօսքի ու երգի վարպետ զուսանները, որոնց շուրջը ժողովուրդն, իբրեւ մեղուների պարս էր բոլորւում, իսկ կանայք ու փոքրերն, ասես, աշնան գունեղ ու հասուն ողկոյզների հատիկներ լինէին՝ փայլուն աչքերով ու խինդ ու ժպտի անհոգ դէմքերով, նոցա բերաններից կախուած։

Իտալական քնարերգակ բանաստեղծութիւնն իւր ճոխ ու հմայքով զեղուն բովանդակութեամբ եւ նորա գրաւիչ ու յուռթի տողերով զինուած եր-

գիրքերն էին, որ բանաստեղծութեան սանդուղքով ներկան էր զօդում իւր անցեալի յուշերի, հնիքի — antiquité — ապրումների հետ։ Եւ եթէ ճիշդ է այդ մի երկրի նկատմամբ, ճիշդ է նաեւ մեր աշխարհի վերաբերութեամբ, ուր երեւակայութիւնն աւելի ուժեղ է, գոյներն ու երանգներն աւելի վառ եւ պայծառ, երանգաւորումները չող ու փայլով օծուն՝ Արեւելքի ջերմ շնչով պարուրած հնութեան ու անցեալի անդորրող մեծութիւնը երգող իւր Երգչի Տաղերի եւ նորա շաւիղի օրօրող դաշն հմայքի տակ, որոնցից մէկն էր եղած նաեւ մեր՝ հանրութեան ներկայացրածը՝ Ֆրիկը։

* * *

Շնորհակալութեան խօսք ունինք ասելու այն բոլոր հաստատութիւնների ղեկավար անձերին, որոնք ամենայն սիրով ընդ առաջ գնացին երկար տարիների մեր մեծ որոնումների գործին, լայն բանալով իրենց հաստատութիւնների դռները եւ գրադարանների դարակները, տալով ամէն դիւրութիւն մեր որոնածները գտնելու, արտագրելու, համեմատելու եւ ուսումնասիրելու։

Այդպիսի հաստատութիւններն էին Օքսֆորդի Համալսարանի Բոդլէեան Գրատունը, իւր երկու հմուտ մատենադարանապետներով եւ օգնականներով, Լոնդոնի Բրիտանական Թանգարանի Արեւելեան բաժնի գրատան տեսուչը, Մանչեստրի Ռայնոլդս Գրատան Արեւելեան ՁՌՌ–ի գրադարանապետը, Բրիւսելի Արքայական Գրատան ղեկավարը, Վենետիկի Ս․ Ղազարի Մխիթարեան Միաբանութեան Աբբահայրը, գրատան տեսուչը, Վիէննայի Մխիթարեան Միաբանութեան Աբբահայրը, գրատան տեսուչը, Հ․ Ներսէս Ակինեան, Պոլսոյ Անտոնեան Միաբանութեան Աբբահայրը եւ մատենադարանի ՁՌՌ–ի հսկիչը։ Դժբախտաբար տողերս գրելու ժամանակ, երկար տարիների, տասնամեակների չրջան բոլորելուց յետոյ, չենք կարող վերյուշել ամէնքի անունները, յականէ անուանէ, որոնց ցանկը գտնւում է Ս․ Էջմիածին՝ Ֆրիկի վերաբերեալ մեր թղթերի մէջ։ Սակայն նոցա բոլորի դէմքերը տակաւին կենդանի են մեր մտքի մէջ եւ մեր հոգեւոր տեսութեան առաջ, անձեր, որոնք ամէնքն եւս արժանի են հրապարակային ջերմ շնորհակալութեան, իրենց անվերապահ, մեծ աջակցութեան համար, որ տուին մեզ 1907–1911 թուականներին։

Շնորհակալ յուշի պարտք ունինք յայտնելու նաեւ Երուսաղէմի Ս․ Յակովբեանց Մենաստանի անդամ, այն օրերին տակաւին երիտասարդ վարդապետ եւ ապա տարիքով ու աստիճանով ուռճացած, ի Տէր հանգուցեալ, Պատրիարք Տ․ Մեսրոպ Արքեպիսկոպոս Նշանեանին, որն անձանձրոյթ սիրով արտագրեց, ուղարկեց մեզ մեր բոլոր խնդրածներն իրենց հարուստ գրատան ՁՌՌ–ից, որոնք Ֆրիկին էին վերաբերում։

Նոյնպիսի շնորհակալութեան խօսք ունինք մատուցանելու Ս․ Էջմիած-

*նի Գրատան ՁՌՌ–ի տեսուչ մեր միաբանակից եղբայրներին իրենց տուած բոլոր դիւրութիւնների համար, ինչպէս եւ մեր հոգեկից եղբօր՝ գիտութեամբ ճոխացած, անդուլ որոնումների մեղուաջան գիտուն, Տ. Գարեգին Արքեպիսկոպոս Յովսէփեանին, այժմ Շնորհազարդ Կաթողիկոս Մեծի Տանն Կիլիկիոյ, իւր օգտաշատ, պատրաստակամ օժանդակութեան եւ ցուցումների համար:*

*Պարտք ունինք շնորհակալութեան նաեւ հայ գրական աշխարհի վաստակաւոր մտքի անդուլ մշակ եւ մեր անձնական բարեկամ Պր. Արշակ Չոպանեանին, որ կամովին հրաժարուեց Ֆրիկը հրատարակելու իր մեծ փափաքից, այդ հաճոյքը եւ պարտքը մեզ թողնելով, դեռ եւս 1907 թուականից ի վեր:*

*Պարտքի եւ ջերմ յուշ ու յարգանքի հարկ ունինք մատուցանելու նաեւ Պետրոգրադի, այն օրերի, Կայսերական Գիտութեան Ճեմարանի կաճառի անդամ ուսուցչապետ, վաստակաւոր գիտնական, հայ գիր ու գրականութեան հոգեկան սիրով կապուած, հետախոյզ մտքի, անխոնջ որոնող մեծ մշակի յիշատակին, հանգուցեալ Նիկոլայ Եակովլեւիչ Մառրին, որ իբրեւ անձնական բարեկամ եւ մեծ գնահատող Ֆրիկի, իւր զեկոյցով եւ ազդեցութեամբ կարող եղաւ Ֆրիկի հրատարակութիւնն ապահովել, 1912 թուին, իբրեւ* Պակեալ Երկ *Ռուսական Գիտութեանց Ճեմարանի, որ սակայն Մեծ Պատերազմի օրերին սկսուած հրատարակութիւնը խանգարուեց եւ դադարեց:*

*Յուշերի եւ սրտաղեղ յոյզերի յիշատակի պարտք ունինք մատուցանելու նաեւ Հայ ժողովրդի մի մեծ զաւակի եւ նորա լաւագոյն բանաստեղծներից՝ Յովհաննէս Թումանեանի անմեռ սրտին, որ մեզանից աւելի, կարծէք, տարուած էր Ֆրիկի օր առաջ հրատարակութեան խնդրով եւ ամէն անգամ, երբ պատահէր 1916–18–ի այդ ցաւ ու տառապանք օրերին, անոյշ ժպիտն աչքերին, երկայն սլացիկ հասակը քիչ կքուած, ճերմակ գլուխը հակ՝ հարցնում էր,— «էն* անտէրը *դեռ լոյս աշխարհ չելա՞ւ».— «Չէ, Յովհաննէս, չելաւ դեռ» պատասխանից յետոյ,— «Բա, էդպէս էլ բան կը լինի... մին տեսնանք, ի՞նչ ենք անում» ասելով՝ հեռանում էր միջաբեկ, վիշտը սրտին, անբաժան ժպիտը՝ շրթին, կարծէք, իւր հիւանդ որդու համար էր ծանր լուր առած:*

*Շնորհակալիք նաեւ մեր բարեկամ, հմուտ բանասէր Միհրդատ Յ. Թիրեաքեանին, Պարսիկ լեզուին ու գրականութեան գանձերի հետախոյզ մտքին, որ իւր սիրալիր օժանդակութիւնը բերեց Ֆրիկի Տաղերից մէկի մէջ յեռուած Պարսիկ լեզուով քառեակի թարգմանութիւնն ընձեռելով մեզ եւ բնագիրը վերականգնելով եւ Ֆրիկի Տաղերի մէջ գտնուած Պարսկերէն բառերի ստուգութիւնը ճշդելու սատարելով մեզ ամենայն պատրաստակամութեամբ:*

*ՏԻՐԱՅՐ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ*
*ՄԵԼԻՔ–ՄՈՒՇԿԱՄԲԱՐԵԱՆ*

1938, Օգս. 16,
Ն. Եորք

# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ ՖՐԻԿԻ ԴԻՒԱՆԻ ՏԱՂԵՐԻ ԱՂԲԻՒՐ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Ֆրիկի Տաղերի բուն Աղբիւրի, այն է՝ այն բոլոր Ձեռագիրների մասին, որոնցից քաղել ու հանել ենք նորա Դիւանի մէջ մտած բոլոր բանաստեղծութիւնները եւ որոնց հիման վերայ յենուած՝ կազմել ենք Բանասէր մտքերի ու աչքի առաջ դրած ԲՆԱԳԻՐԸ,— այդ բոլոր ՁՌՌ–ի մասին եւ ոչինչ կարող ենք ասել, դժբախտաբար եւ տալ նոցա մանրամասն նկարագրութիւնը:*

*Զուրկ ենք այն հիմնական տուեալներից, որով պիտի կարողանայինք որոշել մօտաւորապէս նորա հոգեւոր ազդեցութեան շրջանը, այսինքն սահմանել այդ ՁՌՌ–ի տուած թուականներով Ֆրիկի Տաղերի գրութեան* Terminus qua non (= *Ամենականուխ շրջանը ժամանակի*) *եւ* Terminus post quam non (= *ամենից ուշ ժամանակի*) *խնդիրը, հետեւաբար եւ նորանով հետաքրքրուելու ժամանակաշրջանը, որ կարեւոր մատենագրական ու բանասիրական մի հարց է:*

*Հնարաւորութիւն պիտի չունենանք պարզելու, թէ այդ ՁՌՌ–ը ու՞ր են գրուած, ե՞րբ, որի՞ ձեռքով, որի՞ համար, ի՞նչ պատճառով,— անհատական հետաքրքրութեան ու հակումի բաւարարելու համար, թէ մի ուրիշի եւ թէ ստացողը հասարակական ինչ դիրք ու վիճակ էր վայելում**)*: Խնդիրներ,*

*) *ՁՌՌ–ից միայն մէկի մասին կարող ենք տեղեկութիւն հաղորդել, որից արտագրուած է «Աններելի հուր վառեցի» Տաղը: ՁՌ–ը գրուած է «Ձեռամբ բազմամեղ եւ անարժան մեղսաթաւալ դրչի,* Ստեփաննոս երիցու, *թվականիս հայոց ՌԺԺԱ* (= 1662), *մայիս ամսոյ* 16», *Պոլիս. մանրամասնութիւնները տես Արտաւազդ արքեպս. «Ցուցակ Հայերէն ՁՌՌ–աց Ս. Քառասուն Մանկունք Եկեղ.», Երուզ.* 1935, *էջ* 99–106. *իսկ Ֆրիկը էջ* 251:

ըստ ինքեան ոչ այնքան կարեւոր առաջին հայեացքից, սակայն հարցեր, որոնք հետաքրքրական են ուսումնասէր, պրպտող Բանասէրի համար, որոշելու աշխարհագրական — տեղագրական այն շրջանն ու սահմանը, ուր Ֆրիկն էր սիրելի, իբրեւ ծանօթ,— սրտի մօտ եւ տեղացու հոգուն խօսող Երգիչ եւ որոնելի՝ իբրեւ մտաւոր ազդակ եւ հոգու սնունդ:

Այս եւ նման հարցերի պատասխանելու հնարաւորութիւնից իսպառ զրկուած ենք, որովհետեւ Ֆրիկի ուսումնասիրութեան այդ բաժինը մեր ձեռքի տակ չէ, այլ գտնւում է մեր միւս բազմաթիւ աշխատութիւնների հետ մեր Մ. Աթոռի գրատան պահպանութեան յանձնած մեր սեփական ճոխ գրատան արկղների մէջ: Մ. Աթոռից հեռանալով, իբրեւ Առաջնորդ Ամերիկայի Հայոց Թեմին, 1920 Նոյեմբեր 15-ին, ենթադրում էինք, թէ մեր բացակայութիւնը հազիւ պիտի տեւէ 2–3 տարի եւ պաշտօնի պարտաւորութեան լրումից յետոյ վերադառնալով, կրկին կարող պիտի լինէինք Մ. Աթոռի Գրատան վարչութիւնից յետ ստանալ մեր մատենադարանը եւ մեր աշխատութիւնները եւ, հարկը պահանջած միջոցին, լրացնել նաեւ այնտեղ եղած պատրաստի տուեալները կցելով ուսումնասիրութեանս եւ ամբողջացնել նաեւ այս բաժինը:

Սակայն պայմաններն այնպէս դասաւորուեցին, որ մեր պաշտօնավարութիւնը տեւեց շատ աւելի երկար տարիներ, քան մենք էինք նախատեսած եւ յետոյ կեանքի նոր պայմաններն եւս այնպէս շարահարուեցին, որ մնալու հարկադրուեցանք Ամերիկայում:

Մեր սեփական գրադարանը եւ հետն եւս տարիների տքնութեան արդիւնք մեր աշխատութիւնները, գրաւուեցին Հայաստանի մեր Կառավարութեան կողմից եւ այլեւս եւ ոչ մի տեղեկութիւն կարողացանք ստանալ, թէ ի՞նչ եղաւ եւ մեր գրատան պարունակութիւն արժէքաւոր գրքերը եւ մեր անձնական աշխատութիւն երկերը: Սկզբունքով եւ անձնապէս ոչինչ ունինք հակառակ, որ նոյն իսկ գրաւուած մեր սեփականութիւնը դառնար հանրային սեփականութիւն եւ զետեղուէր կամ Մ. Աթոռի եւ կամ Պետական Համալսարանի գրատան մէջ՝ մի անկիւն շնորհելով նորան, մեր անունով պահպանուէր այդ բոլորը,— սակայն այս բոլորի հետ պիտի ջերմապէս ցանկանայինք, որ մեզ վերադարձնելու դիւրութիւնն ընծայուէր այն բոլոր նիւթերի, Ձեռագիրներից արտագրած Տետրակների, ժողովրդական բանահիւսութեան փոփոխակների եւ պատումների ժողովածուն եւ գրութիւններ ուսումնասիրութեանս հետ մերձաւոր առնչութիւն ունեցող ստուար ամբողջութիւնը,— նոյն իսկ յետս վերադարձնելու պայմանով՝ օգտագործելուց յետոյ,— որպէսզի ուսումնասիրութեանս մէջ որ եւ է lapsus տեղի չունենար:

Մեր քանիցս դիմումները Մ. Աթոռի պետականացած դրատան հսկիչ Սեննեքերիմ Տէր Յակոբեանին՝ ուղարկել մեզ կարեւոր տետրակներ, թղթեր, նիւթեր, Ձեռագիրներից հանած տեղեկութիւնները եւ այն մասը, որ այստեղ պիտի զետեղուէր,— մնացին անպատասխան: Տող անգամ չստացանք մեր նամակներն ստանալու, մեր խնդրածներն ուղարկելու եւ մեզ գոհացնելու եւ

կամ խապառ անհնարաւորութեան մասին: Դիմումների անպատասխան մնալը, ըստ ինքեան, անհնարաւորութեան ստոյգ ապացոյցն էր: Եւ երբ մեզ գոհացնելու խօսք կը լինի, հասկանալի է, որ անձնական ցանկութեան յագուրդի հարց չէ, այլ ուսումնասիրութիւնս լրիւ հրապարակ դնելու, հետեւաբար բանասիրութեան գոհացում եւ գիտութեան պահանջ:

Ձեռագրների տեղեկութիւններից մի մասը գտնւում է մեր ստուար աշխատութեան Օքսֆորդի «Բոդլէեան Գրատան Հայ Ձեռագիրների Ցուցակի» մէջ, որի կազմութեան համար մի քանի ամառներ ենք նուիրած, Օքսֆորդում անցրած մեր շրջանին, մանրամասն կազմելու այդ համալսարանական քաղաքի մէջ ի մի եկած Հայ Ձեռագրների՝ ոչ միայն նկարագրութիւնը, այլ եւ մանրամասն բովանդակութիւնը՝ ուսումնասէր բանասէրին լրիւ գոհացում տալու սատիճան: Այս ցուցակի մէջ մտնում են միայն այն ՁՌՌ–ի տեղեկութիւնները Ֆրիկի Տաղերի Աղբիւրի մասին, որոնք Բոդլէեան Գրատան մէջ են: Պիտի կամեցած լինէինք այդ Գրատան գոնէ այն ՁՌ–ի մասին լրիւ տեղեկութիւն տալ, որը ներկայացնում է Ֆրիկի Տաղերի մի ժողովածու, որ այնքան հազուադէպ է: Սովորաբար Ֆրիկի Տաղերը ցրուած են մեր Տաղարան ՁՌՌ–ի մէջ, հատ հատ կամ երբեմն երկու–երեք հատ. այդ միակ ՁՌ–ն է, որին հանդիպած ենք, որ ունի Ֆրիկի Տաղերի մեծագոյն մասը: Ցանկալի պիտի լինէր, որ Հայկական Կառավարութիւնը հոգը ունենար հրատարակելու մեր այդ ստուար աշխատութիւնը, հետը նաեւ Եւրոպայի միւս վայրերի մէջ գտնուած ՁՌՌ–ի մեր կազմած առանձին–առանձին Ցուցակները, ինչպիսիք են՝ Անգլիայի Մանչեստր քաղաքի I. Raynold's Library–ի մէջ եղած Հ. ՁՌՌ–ինը, Բրիւսէլի Արքայական Գրատան Հայ ՁՌՌ–ինը: Իսկ մինչ այդ հետաքրքրուող բանասէրի ուշադրութեան պիտի յանձնենք Օքսֆորդի Համալսարանի ուսուցչապետ հանգուցեալ Fr. Cornwallis Conybeare–ի կազմած Ցուցակն՝ Անգլիերէն լեզուով, նոյն գրատան Հայ ՁՌՌ–ի, Ֆրիկի Տաղերի մասին կարեւոր տեղեկութիւններ ստանալու համար:

Ինչ վերաբերում է Ֆրիկի Տաղերի աղբիւր միւս ՁՌՌ–ին, որոնցից քաղած ենք եւ որոնք գտնւում են Մ. Աթոռի, Երուսաղէմի, Ս. Ղազարի, Կ. Պոլսի Անտոնեան Միաբանութեան մատենադարանների, ինչպէս եւ British Museum–ի մէջ,— դոցա մասին եւ ո՛չ մի տեղեկութիւն հաղորդելու հնարաւորութիւն ունինք, քանի որ կարեւոր թղթերը ձեռքի տակ չունինք: Միայն Վիէննայի Մխիթարեան Հ.Հ.–ի գրատան ՁՌ–ի մասին հետաքրքրուող բանասէրին պիտի ուղարկենք քննութեան առնել Հ. Յակոբոս Տաշեանի հոյակապ գործը, իսկ British Museum–ի Հայ ՁՌՌ–ի մասին, պիտի յանձնարարենք A Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum by Frederick Cornwallis Conybeare, London, 1913:

Գիտենք, որ այս բացը մեծ ու անբաղձալի մի հանգամանք է ուսումնասէր մաքի համար. հոգով պիտի ցանկանայինք այդ բացը լցրած լինել՝

բոլոր տուիքներով ու մանրամասնութեամբ: Սակայն քանի որ պարագաներն անյաղթելի եղան, ստիպուած ենք, ցաւ ի սիրտ, այդ մասը չլրացրած ներկայացնել Բանասէրներին:

Բարեբախտաբար Դիւանի Տաղերի բնագրի կազմութեան համեմատութեան ժամանակ նշանակած ենք, թէ բնագրի պատրաստութեան համար ո՞ր ՁՌՌ–ից օգտուած ենք եւ թէ այդ ՁՌՌ–ը ո՞ւր են գտնուում: Այսպէս, օրինակ, Դիւանի Տաղ Ա.ի բնագրի տակ դրած ենք, իբրեւ անհրաժեշտ ծանօթութիւն, — «իբրեւ Բնագիր Ms. Arm. (= Manuscript Armenian) F. 16, Bodl. Lib. (= Bodlean Library), fol. 68 a — 71 b.— Համեմատած British Museum (= British Museus), Or. (= Oriental), 2622, fol. 83 r— 89 v.— ՁՌ. Երսղմ. No. 1070, fol. 261 a. — 266 a.— Ms. Arm. 21.— Bodl. Libr. 3 a — 6 b.: Սկիզբը թերի, սկսուում է 28–րդ տողից»:

Եւ կամ Տաղ ԻԷ.ի տակ,—

«Իբրեւ Բնագիր Ms. Arm. F. 16, Bodl. Libr., fol. 131a — 134a.— Հմմտ. Cod. (= Code) Վիէն. No. 787, fol. 124b — 125.— Cod. Ս. Ղազար. No. 462, fol. 96.— Cod. Ս. Ղազ. No. 1823, p. p. 477-480. ՁՌ. Երսղմ. No. 743, fol. 96a — 97a.— Cod. Անտոնեան, No. ՃԻԵ, fol. 173a — 177b. Հրատարակուած «Սիոն» 1867, էջ 200, առանց յիշատակելու, թէ որ ՁՌ–ից է առնուած.— Ա. Չօպանեան, «Հայ էջեր», էջ 39–40, առնուած ՁՌ. Երսղմ. No. 1070 (= 734 ?) եւ ՁՌ. Ս. Ղազ. No. 10 (խմբագիրք)ի հետ հմմտ.»:

Եւ այսպէս բոլորի նկատմամբ:

* * *

Ֆրիկի Տաղերից մէկի — «Աններելի հուր վառեցի» — (Տես Դիւան Տաղ Բ.) մի նոր փոփոխակի մասին տեղեկութիւն ստացած ենք Տ. Արտաւազդ Ա. Եպսկ. Սիւրմէեանի «Ցուցակ Հայերէն ՁՌՌ–աց Հալէպի» գործից, որի փոփոխակը սիրով տրամադրեց մեզ Արտաւազդ Սրբազանը եւ վերջին պահին հնար ունեցանք տաղի փոփոխակն եւս մտցնել բնագրի քննական տարբերակների մէջ ՀԼՊ. համառօտագրութեամբ, որ պիտի կարդալ «Հալէպի ՁՌ». Ըստ էութեան ՀԼՊ = CAN.—ին:

Այդ փոփոխակը քաղուած է՝ ՌՃԺԱ (= 1662) թուին, Ստեփաննոս Երէց գրչի «Տաղարանից», գրուած Կ. Պոլիս, ի վայելս «խօճա մախսուտի գովելի»: Փոփոխակը գտնուում է ՁՌ–ի էջ 232–237 վերայ: Մանրամասնութիւնները տեսնել «Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Հալէպ Ս. Քառասուն Մանկունք Եկեղեցւոյ եւ Մասնաւորաց» աշխատութեան մէջ, տպ. 1935, Երուսաղէմ, էջ 99, 105:



Ա.

## ՈՏԱՆԱՒՈՐՔ
### ասացեալ
### ՖՐԿԱՆՆ

## ՅԱՂԱԳՍ ԿԵՆԴԱՆԻ ՍԻՐՈՅ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ

**3–3–2–3**

*Թէ չի կայր սէր յաշխարհս կամ սէր չէր եղեալ,*
*Արարիչն առ մարդիկ սէր ե՞րբ ցուցանէր։*
*Գեմ Աբէլ էր արդար, զաւակն Ադամայ,*
*որ սիրովն Աստուծոյ զընծայս նուիրէր։*
*Նոյ սիրովն ապրեցաւ ի ջըրհեղեղէն,*
*տապանին զօրինակն Աստուած ցուցանէր։*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16, Bodl. Libr. Fol. 68a—71b:—
*Համեմատած* Ms. Brit. Mus. Or. 2622. fol. 83r-89v:—
**ԶՈՒ. ԵՐՈՒՍԱՂԷՄԻ**, No. 1070, fol. 261a-266a:—
Ms. Arm. 7.21 Bodl. 3a-6b:— *Սկիզբը թերի, սկսւում է 28–րդ տողից*:—
1— Ox. 1, *Ոտաւորք* — Bor. *Ոտանաւոր Ֆրկանն* — 4 — **Զե.** *իբրեւ վերնագիր, միայն «Ողբ Ֆրիկ ասացեալ հոգէչահայ»*:— 5— Ox. 1. *Բ. ... յաշխարհս* — Bor. *Թէ չկայր սէր յաշխարհէս* — **Զե.** *Թէ չկարես սէր աշխարհիս եւ կամ ելել սէր* — Ox. 1. *եւ կամ* — Bor. *սէր եղեալ* — 6– Ox. 1, *արարչին* — Bor, *մարդկան* — Ox. 1, *անսէր երբ* — 7-Ox. 1, *Գ եմ* — Bor. *Քեմ* — **Զե.** *էր զաւակն* — 8— *սէրովն* — Bor. *նըւիրէր* — **Զե.** *զընծայսն սէրէր* — 9- Ox. 1. *Կոյ* — **Զե.** *Նոյ* — 10– **Զե.** *տապանակին* — OX. 1. *զաւրինակն* —

Ա·

Աբրահամ հիւրընկալ եւ ա՛ստուածասէր,
  վասն սիրոյ զԻսահակ մատաղ կու զենէր։
Գեմ խոնարհ էր Մովսէս, այն մեծ սիրելին,
  սէր ունէր հաստատուն, առ Տէր միշտ խօսէր։
Ահարոն Աստուծոյ ընտիր կատարեալ,
  զաւազա՛նըն ծաղկեալ ըզծով պատառէր։
Դաւիթ մարգարէ էր եւ ա՛ստուածահայր,
  վասն սիրոյն Աստուծոյ քընա՛րաւ երգէր։
Սողոմոն իմաստուն եւ մեծ թագաւոր,
գալըստեանն Յիսուսի տաճար նա՛ շինէր։
Վասն սիրոյ եւ զՅունան կէտին կըլանել,
  որ երթար ի Նինուէ քաղաք քարոզել։
Գեմ երկինք եւ երկիր, դեռ չէր գոյացել,
  որ պիտէր Մարիա՛մըն մայր կատարէր։
Գաբրիէլ զաւետիսն ի սուրբ կոյսն եբեր,
  որ սիրոյ վասն Աստուա՛ծըն մարդ ծընանէր։
Կարապետն Յովհաննէս, մեծն ի մարգարէս,

11— Ձե· հուրընկալ ու ա՜ծասէր·— Ox. 1. Bor. ա՜ծածան·—

12— Bor. վանց սիրոյն·— Ox. 1. ի վասն սիրոյ·— Ձե· կու զինէր·— Ox. 1. կու զէնէր։—

13— Ձե· կամ խոնարհ·— Ձե· այդ։—

14— Ձե· որ տ՜ր կու խաւսէր· Ox. 1, խաւսէր·— Bor. տ՜ր կու խաւսէր։—

16— Ox. 1. զաւազանն ծաղկելով զծովըն·— Ձե· զաւազանըն ծաղկեալ ըզծով·— Bor. ծաղկելովն զծով։—

17— Ox. 1. էր մարգարայ·— Ձե·— մարգարէ·—

18— սիրով էր վառեալ նա, որ զքընարն երգէր·— Ձե· վասն սիրոյն Ա՜յ քնարաւ սաղմոս նա երգէր·— Bor. վանց սիրոյ զայն ամէն քնարըն երգէր։—

19— Ձե· յիմաստութեան թագաւոր·—

20— Ձե· չունի այս տողը·— Bor. վանց զալոյն ա՜յ· տաճար կու շինէր։—

21– Bor. վանց·— Ձե· վանց եւ զունան կէտին ելան որ երթար ի Նունվէ·— Bor. զունան կէտին·—

22– Bor. երդայր·— Ձե· Bor. կենաց քարոզել։—

23– Bor. գոյացել·— Ox 1. գոյացէր։—

24– Ձե· մարիամ։—

25– Ձե· զաւետիքն որ եբեր·— Bor. ի կոյսն·— Ox. 1. կոյսն։—

26– Ox. 1. որ սիրով ա՜ըծըն·– Ձե· վանց սիրուն Աստուած·— Bor. որ սիրոյ որ ա՜ծըն·—

27– Bor. յովանէս·— Ձե· այն մեծ ի ծնունդս·— Bor. մեծն ի ծնունդն։—

Ա.

*Վասն լուսոյն, որ երեկ զսէր քարոզէր։*
*Կորուսեալ պատկերին թէ չէր դըլթացել,*
*զայն ամէն չարչարանքն Յիսուս չէր քաշէր։*

*Վեցթեւեան սերովբէքն զԱստուած չէն տեսել,*
*ի սիրոյն Ադամայ ի խաչ ելանէր։*
*Ի մահու գերեզման եղեալ կամեցաւ,*
*որ նըստէր ի քրովբէս յանդունդք նայ հայէր։*
*Բարութեամբ եւ սիրով ըզմահ խափանեաց,*
*ի ժանեաց գազանին ըզմարդն ազատէր։*
*Քան զյառաջն այլ սիրեաց զԱդամն առաջին,*
*ի պատիւ մարմընոյ ւ՟արեանն մեծարէր։*
*Վերըստին նորոգեաց զԱդամ վերադոյն,*
*դէմ խաչիւ զարդարեաց, որ լոյս կու փայլէր։*

*Համբարձաւ եւ տարաւ զԱդամ փառաւոր,*
*վասն այնոր զայն արար, որ խիստ կու սիրէր։*
*Զայն տեղին խոստացաւ թոռանցն Ադամայ,*

---

28– Bor. **Ջե.** Ox. 2. *վանց* — Bor. *զսէր* — **Ջե.** *զտէր* — Ox. 2. *ըզսէրն* ։—
29– **Ջե.** *կորուսած* — **Ջե.** *դեռ չէր* — Ox. 2, Bor. *դթացել* ։—
30– Bor. *ա՟ծ չքաշէր* — Ox. 2 *ա՟ծ չքաշել* — Ox. 1. *չէր քաշէլ* ։—
31– Ox. 1, *սէրովբէք* — Ox. 2, Bor. *սերովբէքն* — **Ջե.** *սերոբէքն Ա՟ծ չէր տեսէր* — Ox. 2, Bor. *չտեսեալ* ։—
32– **Ջե.** *ի սիրո՛ւն* — **Ջե.** *ի խաչն* ։—
34– **Ջե.** *նստաւ* — Ox. 1. *նստէր* — **Ջե.** *ի յանպէ՛ս անդունդս նայ* — Ox. 1. *նա* — Bor. *ի քրոբէս յանդունդք նայ* — Ox. 1 *յանդունդս* ։—
35– Ox. 2, Bor. *բարութեամբ* — **Ջե.** *յարութեամբ* — Ox 2, Bor. *զմահ խաբանեաց* ։—
36– Ox. 2. *գազանէն զմարդն ազատեաց* — Bor. *զմարդ.* **Ջե.** *գազանէ՛ն զմարդն* — Ox. 1. *զմարդիք* ։—
37– Ox. 2. *առաջն* — **Ջե.** *սիրեց.* Ox. 2. Bor. *զադամ վերադոյն* — **Ջե.** *վերայդուն* ։—
38– **Ջե.** Ox. 2. *մարմնոյ արեան.* Bor. *մարմնոյ ու* ։—
39– **Ջե.** *նորոգե՛ց* — Bor. Ox.2. *զադամն առաջին* — **Ջե.** *վերստին դէմ* ։
40– Ox. 2. **Ջե.** *դէմ* — **Ջե.** *զարդարեց, որ լուս կու* ։— Ox. 1. *կոյ* — Bor. *կու* — Ox. 2. *զադամ որ լու կու* ։—
41– Bor. *զադամն* ։—
42– **Ջե.** *վասն որ զան* — Bor. *վանց* — Ox. 2. *վայնց* — **Ջե.** *արարին* ։—
43– Ox. 1. *Յայն* — Bor. **Ջե.** *Զայն* — Ox 2, *տեղն* ։—

Ա.

որ ըընաւ ի խորհուրդ ու՞ ի միտք չանկանէր։
Բոլորից Աստուածն, որ առ մեզ [եկն] իջաւ,
զոր եկաց Տէրն յաշխարհս ըզսէր քարոզէր։
Քան զամէն ինչ յառաջ սէրն է գոյացել,
զինչ որ հա՞ւր խոստացեալ սիրով կատարէր։
Քան զլինելն էր յառաջ ընտրած սիրելի,
որ ըզսէրն առաւել նա՛ սերտ կու պահէր։
Թէ չունէր հա՛ստատուն սէր սուրբ Եղիայ,
նա կառա՞ւք հըրեղէն յաւղն ո՞նց ելանէր։
Գեմ հընոցն էր վառած երեք սիրելոյն,
աղաւթիւք եւ սիրով հուրըն չիջանէր։
Թէ չըր կայր սէրն հոգւոյն ի սուրբ Ստեփաննոս,
այն ահեղ քարկոծին նա ո՞նց համբերէր։
Դանիէլ էր ձըգած իր գուբն առիւծուցն,
բայց սիրով եւ բանիւ զառիւծսըն կապէր։

---

44– Ox. 1. ընաւ.— Ձե. ըընաւ.— Bor., Ox. 2, ընաւ խորհուրդք միտք.— Ձե. ու միտ.— Ox. 1. չանզանէր։—
45– Ox. 1. բոլորիցն ա՞ծ.— Bor., Ox. 2. ա՞ծն.— Ox. 1, Ox.2, Bor. Ձե. մեզ իջաւ։—
46– Ox. 2. ո՞ր յաշխարհ.— Bor. յաշխարհ.— զսէր.— Ox. 2. զսէրն.— Ձե. որ՞ն երակ։—
47– Ձե. զամէնն իրք.— Bor. իրք.— Ox. 1. սէրն է գո[յ]ացել.— Ձե. է սէր գոհացել.— Bor. է սէր գոյացալ։— 48. Ox 1. հաւր.— Ձե. հայր.— Ox. 1. կատարէլ.— Ձե. կատարէր.— Ox 2, Bor. կատարեալ.—
49– Ձե. զլնելն.— Ox. 2, զլինել.— Ձե. սիրելին.— 50– Bor., Ox. 2. զսէրն. — Bor., Ox. 2, Ձե. նայ.— 51– Bor. չո[ւ]նէր հաստատուն, նա յոյժ սէրըն ս՞բ.— Ox. 2. նայ.— Ձե. հաստատուն սէր սուրբ Եղիայ.— Bor. նայ յոյժ սէրն ս՞բ։— 52– Ox. 1. կառաւքի հրեղէն — յաւղն ոնց.— Ձե. կառաւք հրեղէն աւդոց ելանէր.— Bor. յոդոցն.— Ox. 2, յաւդոցն։—
54– Ձե– Ox. 2. գէմ հնոցն.— Bor. հնոցն.— Ox. 1. հընոց.— Ox. 2. երէք.— 55– Ձե. աղաւթից.— Bor. սիրովն.— Ox. 2. եւ պահաւք. զհուրն չիջանէր.— Ox. 1. չիջանէ. Bor. զհուր չիջանէր։— 55– Ձե– չկար սէրն հոգուն.— Bor. չկայ.— Ox. 2. չկայր. ի սէր հոգոյն սուրբ Ստեփաննոսի. — Bor. սէր հոգոյն.— Bor. ստեփանոս.— Ձե. նախ 55, 56 տողերն են, յետոյ 53, 54։— 56– Ox. 1. քարկոյծոյն.— Bor. քարկոծոյն.— Ox. 2. քարկոծոց նայ.— Ox 1. ոնց.— Bor. ոց.— 57– Ox. 1, ի դանիէլ.— Bor. Դանիէլ.— Ձե. Դանիէլն է ձըգած.– Ox. 1. ձգած.— Ox. 2. առիւծոցն. — Ձե. առիւծոց։— 58– Ձե. զառիւծըն.— Bor. զառիւծն.— Ox. 2.

Ա․ Բարսեղ էր հայրապետ եւ մեծ Թագաւոր,
բայց մեծի եւ փոքու սիրով խընամէր:
Սուրբն Յակոբ Մըծբընայ, այն քաջ սիրելին,
աղաւթիւք նա զերկնից կամարն պատառէր:
Սուրբն Եփրեմ զայն այնչափ ճառերն, որ ասաց,
վանց սիրոյն Աստուծոյ ըզմեզ խըրատէր:
Պարըսամ էր մանուկ մինչեւ ծերացաւ,
զոր եկաց անսուաղ սիրով համբերէր:
Սուրբ Անտոնն էր սիրով հոգւոյն զաւրացեալ,
բարեխաւս արտասուաւք ըզՏէր աղաչէր:
Այր ընտիր էր աբբայ Մարկոս զաւրաւոր,
որ սիրով սուրբ հոգւոյն զդեւըն հալածէր:
Սուրբ Մակար ի փապարս լերանց բընակէր,
եւ սիրով ընդ Աստուած նա՛ միշտ զըրուցէր:
Բարաղամ էր հրեշտա՛կատիպ կենդանի,
զՅովասա՛փըն սիրով ի լոյս մեծարէր:

---

զառիծքն :— 59– Ox. 1. բարէսէր ·— Ox. 2, Ձե· Բարսեղ էր ·— Bor., Ox. 2. ու մեծ :— 60– Ox. 1. բաց · Bor. բայց մէծի ·— Ձե· փոքեր ·— Bor. փոքի ·— Ձե· խնայէր ·— Bor. Ox 2. խնամէր :— 61– Ox 1. Ս՟րըն յակոբ մծբնայ ·— Ձե· Սուրբ ·— Bor., Ox. 2. Ս՟բ ·— Ox. 2, Bor. Ձե· քաջ ·— Ox 1, մեծ :— 62– Ox. 1. աղաւթիւք ·— Ձե· աղաւթիւքն ·— Ox. 2, Bor. զերկնից ·— Ձե· կամար · Bor. պատեաց :— 63– Ox. 1. Ս՟բն ·— Ձե· Սուրբ ·— Bor. Ս՟բ ·– Ox. 2. Ս՟բ եբրեմ ·— Ձե· զայն ամէն ճառերն ·— Ox. 1. ճառէրն :— 64– Bor. սիրուն ·— Ձե· վանց սիրուն ա՟յ որ մեզ խրատէր :— Ox. 2. զմեզ ·— Bor. եւ զմեզ :— 65– Ox. 1. չունի 65, 66 տողերը ·— Ձե· Պարսոմայ ·— Ox. 2. Պարսամ ·— Bor. Պարսամայ :— 67– Ox 1. Ս՟բն · անտոն ·— Bor., Ox. 2. Ս՟բ անտոն ·— Bor. անտոն սի– րով ·— Ձե· հոգուն ·— Ox. 2. հոգոյն ·— Ox. 2, Bor. Ձե· զաւրացեալ :— 68– Ox. 2. բարէխօս ·— Bor. բարեխաւս արտասուք ·— Ox. 1. բարե– խաւս արտասուաւք ·— Ձե· ըզտէրն · Bor., Ox. 2. զտ՟ր :— 69– Ձե· Այր ընտիր ·— Ox. 1. ընդիր ·— Bor. ընտիր · աբայ ·— Ox. 2, ընտիր էր աբայ · — Ձե· աբբայ ·— Ox 1, Ox 2, Bor. Ձե· զաւրաւոր :— 70– Bor. Ox. 2. սիրով ·— չունի որ ·— Bor. զդեւք ·— Ձե· հոգոյն զդեւքն ·— Ox. 2. սի– րովն ·— Ox. 2. զդեւքն :— 71– Ox. 1. Ս՟բ ·— Bor. մարկար ·— Ձե· ի լերանց կափար բնակէր ·— Bor. փափարս ·— Bor., Ox. 2. բնակէր :— 72– Ձե· որ սիրով · Bor. եւ սիրովն ընդ դէմ յա՟ծ զըրուցէր ·— Ox. 2. ընդդէմ ա՟ծ ·— Ox. 1. յա՟ծ :— 73– Ox. 2, Ձե· Բարղամ ·— Ox. 1, Ox. 2, Bor. հրեշտակապետ ·— Ձե· հրեշտակատիպ :— 74– Ox. 2. ըզյովա– սափըն—· Bor. զովասափն ·— Ձե· ի լուս ·— Ox. 2· սիրով մեծարէր :—

Ա· *Կամաւոր աղքատիկն Ալէ՛քսիանոս,*
*վասն սիրոյ զհայր եւ մայր Թողոյր ու՞ելանէր։*
*Սըրապիոնն էր սիրով ի Տէր փափագել,*
*աղաւԹիւք գետնախիշտ ի Տէր վըճարէր։*
*Սուրբ Գրիգոր վիրապին մարդ էր հողեղէն,*
*անիհուն տանջանաց սիրով համբերէր։*
*Կոյս կանայքն, որ Թողին ըզտուն հայրենի,*
*զեմ սիրով արտասուաց ջահրն վառէին։*
*Սուրբ Սարգիս զաւրավարն՝ այն քաջ նահատակն,*
*վանց սիրոյ իւր որդոյն ի Պարս վըկայէր։*
*Զոր յառաջ կամ յետեւ սուրբքըն հաւասար,*
*որք Թողին զմեծուԹիւն ու զա՛շխարհի սէր։*
*Կըշռեցին ու տեսին, ու՞արին շահ ու զէն,*
*նա՛ չըկայր այլ աղէկ եւ մեծ քան ըզսէր։*
*Սէրըն մեծ է ու փառք, պատիւ Թէ գիտես,*
*ով չարին համբերէր նա շատ սէր ունէր։*

---

75– Ox. 1. *աղքաղիկն* — Ox. 2. *աղքատն ալէքսանոս* — 76– Bor. **Ձն·** *վանց* — Ox. 2. *ի վանց* — Bor. *սիրոյն ա՞յ զհայր զմայր Թողոյր ու* — Ox. 2. *սիրոյն զհայր եւ մայր* — Ox. 1. *զհայրն եւ զմայրն* — **Ձն·** *սիրուն հայր եւ մայր Թողուր ելանէր* :— 77– Ox. 1. *Սրապիոն* — Bor. **Ձն·** *սրաբիոն* — Ox. 1, Ox 2, Bor. **Ձն·** *փափաքել* :— 78– Ox 1. *գետնախեշտ–* — **Ձն·** *գետնախիշտ* — Bor. *գետնահեշտ* — Ox. 2. *գենահեշտ* — Ox. 1. *տ՞ր* — Bor., Ox. 2. *վճարէր* — **Ձն·** *վիճարէր* :— 79– Ox. 1. *Ս՞բ* — Ox. 1. *ի վիրապին* — **Ձն·** Bor., Ox. 2. *վիրապին* — Bor. *մարէր* — 80– Bor. *անիհոն*· **Ձն·** *տանջանին* — Bor. *տանջանացն* — Bor., Ox. 2. **Ձն·** *սիրով կու տեւէր* :— 81– **Ձն·** *Ս՞բ կանայքն* — Ox. 2. *կանայքն* — Ox. 2. *կանայքն* — Ox. 1. *կանայք* — Ox. *Թողեն*· **Ձն·** *զտունս հայրենին* :— 82– **Ձն·** *Գամ*· Ox. 2. *գէմ* — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձն·** *արտասուս* — Ox. 2. *ջահն*· **Ձն·** *ջահ կու վառէին* — Ox. 1. *կու վառէր* :— 83– Ox. 1, *Ս՞բ* — Ox. 1 *զաւրավար* :— 84– Ox. 1, Ox. 2, **Ձն·** *որդովն* — Bor. *որդով* — **Ձն·** *եւ որդովն* — Bor. *ի պարզ* — Ox. 2. Bor. *վկայէր* — **Ձն·** *վըկայ էր* :— 85– Ox. 2. *յետ եւ ս՞րբունք* — Bor. **Ձն·** *սրբունք* :— 86– **Ձն·** *որ Թողին* — Ox. 1. *Թողեն* — **Ձն·** *կամ աշխարհի* — Ox. 2. *աշխարհի* :— 87– **Ձն·** *կշռեցին ու տեսան ու արարին* — Bor., Ox. 2. *կշռեցին ու տեսան ու արին* — Ox. 2, Bor. *շահու զէն* :— 88– **Ձն·** *չկայր* — Bor. *որ չկայր* — **Ձն·** *ոչ կայր* — Bor. *այլ աղէկ ու քան զսէր* — Ox. 2, **Ձն·** *ու մեծ* — **Ձն·** *զսէր* :— 89– *սէրն փառք ու պատիւ է մեծ Թէ* — Ox. 2. *Սէրն* :— 90– **Ձն·** *հանդիպէր* — Ox. 2, Bor. *նայ* :— 91· Ox. 1, Ox. 2,

Ա․ Զ՞ինչ եղեն սուրբ վկայքն՝ ի Տէր կատարեալ,
աշխարհի ատեցողք եւ Ա՛ստուածասէրք։
Չէր կարիք Աստուծոյ, որ առ մեզ երեկ,
բայց քարոզ փրկութեան եւ սէր ցուցանէր։
Երբ Աստուած խոնարհի, եւ ա՛ղքատանայ,
դու խնդրեա մեծութիւն եւ ա՛շխարհի սէր։
Հընազանդ է՞ր չլինինք գրոց ւ̆ աւրինաց
քաշենք զ̆ բեռն մէկ մէկի, որ է ստոյգ սէր։
Շատ տեսնու մարդ յերազն զինքըն թագաւոր,
երբ զարթնու ի քընոյն նա՛ փող մի չունէր։
Երազն է աւրինակ այս կեանքս անցաւոր,
երբ ելաւ յաշխարհէս, նա լոկ թափուր էր։
Շուտ թափէ ըզգինիդ ու քեզ ճար արա,
եւ հասիր կենդանեացն զոր Գի՛րքըն ճառէ։
Է՛ Ֆըրիկ, թող ի բաց զայս սուտս ի ձեռաց,
թէ դու չես մարդախաբ եւ կամ ցաւի տէր։
Զըւանի զերկու ծայրն ամուր մի պարեր,

---

Bor. Չե· զինչ — Ox. 2, Bor. եղան — Ox. 1, Ox. 2, Bor. Չե· ս՟ր վկայքն ի տ՟ր — Չե· կատարեալ ։— 92– Չե· աշխարհիս ։— 93– Ox. 1. Մէր· Ox. 2. ա՟յ որ առ մեզ երfէր — Ox. 1. ա՟յ առ ի ձեզ — Bor., որ առ ի ձեզ — Չե· որ առ մեզ երեկ ։— 94– Ox. 1, Ox. 2, Bor. Չե· բաց· — Bor. ձրկութ՟ե — Չե· ու սէր ։— 95– Ox. 1. ա՟ծ — Bor., Ox. 2, Չե· ու ։— 96– Ox. 1, Ox. 2, Չե· խնդրես մեծութ՟ի — Bor. խնդրեայ — Bor., Ox. 2, Չե· ու աշխարհի ։— 97– Ox 2, Bor. հնազանդէր — Ox 1, Ox 2, Bor. չլինիս — Չե· չլինիք — Ox. 1. գրոց աւրինաց — Ox. 2, Bor. գրոց ու աւրինաց ։— 98– Ox. 1. քաշէնք — Ox. 2. որ քաշենք — Bor. քաշենք զբեւեռըն մէկ մէկի — Չե· որ քաշեն բեռն մէկ մէկի — Ox. 2. մէկ մէկի — Ox. 2., Bor. ստոյգ — Ox. 1. մէկ ի մէկ ։— 99– Ox. 1. Նա· Չե· Ox 2, Bor. Շատ — Չե· մարդն զինք երազ — Bor. մարդն յերազն զինքն ։— 100– Չե· յերբ· Bor. զարթեալ — Ox. 1, Ox. 2, Չե· զարթեաւ — Չե· ի քնոյ նայ — Ox. 2, Bor. նայ — Bor. չոնէր ։— 101– Չե· Երազ· Ox. 2. երազն աւրինակ· Bor. երազն աւրինակ է ։— 102– Չե· աշխարհէս լուկ թափուր էր· Bor. լուկ· Ox. 2, նայ լուկ թաբուր էր — Ox. 1. թափուէր ։— 103– Ox. 1. լուռ· Չե· չուտ — Ox. 2. կու թափէ–զգինիդ — Bor. զգինիտ — Չե· դու· Bor., Ox. 1, Ox 2, Չե· արայ ։— 104– Ox. 2, Bor· ու հասիր — Bor., Ox. 2. որ գիրք կու ճառէր — Չե· ու գիրք կու ճառէր — Ox. 1. գիրքըն ։— 105– Չե· զայդ սուտդ ։— 106– Չե· մարդախափ — Bor. մարդայխաբ — Ox. 2, Bor. Չե· ու կու նեղու ։— 107– Ox. 2, Bor. Չե· Զվանի — Չե· երկու ծարն

Ա․ *անցաւոր սէրն յանանցն ի՞նչպէս նըմանէր։*
*Հանց կըրակ մի՛ վառեր, որ յինքն դու այրիս,*
*չէ՛ մեղաց կերպարա՛նըն կե՛նդանի սէր։*
*Ցայն հըրոյն բորբոքեա՛ ի յա՛նձըն հոգոյդ,*
*որ այրէ փուշ մեղաց, ու տ՛ընկի քեզ սէր։*
*Մի՛ լինիր կեղծաւոր ու ա՛նձնահաճոյ,*
*Թէ դու ես քրիստոնեայ եւ ա՛ստուածասէր։*
*Ով ատէնս ջանք դընէ՝ զԱստուած գըտանէ,*
*զայն առնէր ու գործէր, զոր Տէ՛րըն կամէր։*
*Գոհանամք զԱստուծոյ միշտ եւ հանապազ,*
*որ զսիրոյն չառաւիղն ի մեզ կու ծագէր։*
*Թ՟է վըկայր սէր հոգոյն ի սը՛րտէ բըղխեալ,*
*զայս ամէն գեղեցիկ բաներս ո՞վ ասէր։*
*Ով յիշէ զանարժանս ի սէր հոգեւոր,*
*սուրբ Հոգին Աստըւած զիւր մե՛ղքըն քաւէ։*

---

— Bor. *ծայր* — Ox. 1, Ox. 2, Bor. *մի պարիլ*։— **Ձե**․ *պարեր*։— 108– **Ձե**․ *անցաւորս էր անանց հուրըն նըմանէր* — Bor. *յանցանքըն յուր նըմա՞ն է* — Ox. 2. *սէրս յանանց յում* — Ox. 1. *ինչպէս*։— 109– Bor. *Հայնց* — Bor. **Ձե**․ Ox. 2. *կրակ* — Ox 2, *մի վառեր* — Bor. Ox. 1, **Ձե**․ *մի վառել* — **Ձե**․ *որ ինք*։— 110– Ox. 2. *կերպարանն*։— 111– Ox. 1. *բորբոքայ, ի յանձըն հոգուդ* — **Ձե**․ *Ան հըրուն բորբոքէ անձին դու հոգոյդ* — Ox. 2. *բորբոքեա՛* — Bor. *յանձին դու*․ Ox. 2. *յանձինք*։— 112– Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե**․ *այրի* — **Ձե**․ *ու բուսնի* — Ox. 2, Bor. *ու եւ ընկնի* — Ox. 1. *տընգի*։— 113– **Ձե**․ *մի լնիր*․ Bor. *կե[ղ]ծաւոր* — Ox. 2, Bor. *անձնայհաճոյ* — Ox. 1. *անձնահաճու*։— 114– Ox. 2. *քրիստոնայ* — Bor., Ox. 2, **Ձե**․ Ox. 1, *ա՟ծասէր*։— 115– Bor. **Ձե**․ *ատէն* — **Ձե**․ *դնել ա՟ծ գտանել* — Ox. 2, Bor. *դնէ* — Ox. 1, Ox 2, Bor. *զ՟ած*․ Bor., Ox. 2. *գտանէ*։— 116– Bor. *առնէր ու գործէր զինչ տ՟ր կու կամէր*․ **Ձե**․ *զինչ տ՟ր կու կամէր* — Ox. 1. *առնէ ու գործէ* — Ox. 1. *կամէ*։— 117– Ox. 1. *գոհանամ* — Ox. 2, Bor. **Ձե**․ *Գոհանամք* — Ox. 2, **Ձե**․ *ա՟յ* — Bor. *յա՟յ*․ Ox. 1. *զա՟յ*։— 118– **Ձե**․ *ու սիրոյ* — Ox. 2. *զսիրու չառաւեղն* — Bor. *զսէրն ու զչառաւիղն ու մեզ* — **Ձե**․ *կու ցաթէր* — Bor. *ծագէր* — Ox. 1. *ծագէ*։— 119– Ox. 1. *չըկայ* — Ox. 2. *չկայր* — **Ձե**․ *չկար* — Bor․ *չկայ* — Ox․ 1, Ox․ 2, Bor․ **Ձե**․ *ի սրտէ* — **Ձե**․ *բխել* — Ox. 2. *բխեալ* — Bor. *բղխեալ*։— 120– Bor. *գեղէցիկ* — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե** *ով*։— 121– Ox. 2. *զիս զանարժանս*։— 122– **Ձե**․ *սուրբ Աստուա՛ծ ի յինքն խնայէր* — Bor. *Թողին ս՟բ ա՟ծ յինքն ի նայ հայէր* — Ox 1. *հոգին ա՟րծ* — Ox. 2. *Թող հոգին ս՟բ ա՟ծ ի յինքն նայէր*։—

**Բ.**

## ՏԱՂ ՖՐԿԱՆՆ ԱՍԱՑԵԱԼ.
## ԽՐԱՏ ԲԱՐՈՑ Ի ԴԷՄ ՁՂՋՄԱՆ ՄԵՂԱՑ ԵՒ ՀԱՒԱՏԱՆՔ

### Ի ԽՈՐՈՑ ՍՐՏԷ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ:

4–4 ‖ 4–4

*Աններելի հուր վառեցի ու՜ անհոգ յաշխարհս ի չուռ կուգամ,*
*Վախեմ, թէ յայն աւրն առենին ես բարեխաւս զոք չունենամ:*
*Վասն իմ բազում մեղք ու չարին զաւր ու գիշե՛րըն կու հոգամ,*
*Ցահէն ահեղ դատաստանին զինչ սեւացեալ ամպ կու ցաւղամ:*
*Ցորժամ յիշեմ զինչ գործեցի տարակուսեալ կամ ու՜երերամ,*
*Երբ զահաւոր Դատողն յիշեմ՝ ես յայն յահէն քան զուռ դողամ:*
*Կու սարսափի ոսկերքս ամէն, ջերմըն կալնու՝ հիւանդանամ,*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16. Bodl. Libr. fol. 72a-74a
*Համեմատած* Ms. Arm. F. 21, Bodl. Libr. fol. 7b-10a.— Ms. Brit. Mus4 Or. 2622, fol. 89b-93a:—
*Ձեռագիր Անտոնեան Միաբանութեան.* No. *ձԻԵ.* fol. 177a-180b:
*Հալէպի Ձեռագիր* .— No. 50, fol. 232-237:—

1– Ox. 1. *Այլ տաղ Ֆրկանն ասաց* .— Can. *Նորին Ֆրկան ասացեալ վ՜ս ապաշխ [արութեան]* .— Ox. 2, Bor. Can. *Հլպ.*: Այս վերնագիրը չունին:—
2– Ox. 2, Bor. միայն, ունին 2 եւ 3–րդ տողերը, իսկ Ox., Can. չունին այս վերնագիրը .— Ox. 1, ներքեւի լուսանցքի մէջ, *«Այս է դեղ աղաւթից»*:—
4– Ox. 2. *ու անհոգ յաշխարհս* .— Ox. 1. *անհոգ զաշխարհս* .— Can. *ւանհոգ յաշխարհս ի չուրջ* .— *Հլպ. ւան հոգ աշխարհս ի չուրջ*:—
5– Bor. *յաւրն* .— Can. *օրն. Հլպ. այն աւուրն մեծի ես բարեխաւս* .— Ox. 2, Bor. *բարէխաւս*:—
6– Can. *Զիմ անահուն մեղք ու չարիք զօրն ու գիշերըն* .— *Հլպ. Զիմ անահուն մեղքս ու չարիքս, զաւրն գիշերըն կու*:— Bor. *զօր ու գիշերն* .— Ox. 2, *զգիշերն* .— Ox. 1. *զաւր ու զգիշերըն*:—
7– Bor. *յահեղ* .— Ox. 1. *քան զսեւացեալ ամբ կու ցաւղամ* .— *Հլպ. Ցաէն յահեղ դատաստանին. զինչ* .— Bor. *զինչ սեւացե՟լ ամ. կու* Can. *ցկղամ*:—
8– Can. *Հլպ. զոր գործեցի, տարակուսեալ կամ ւերերամ* .— Ox. 1. *դարեկուսեմ եւ* .— Ox. 2. *տարնկուսիմ լուկ երերամ* .— Ox. 2. *լու[կ] երերամ*:—
9– Can. *ի յայն ահէն դերդ կուպր եռամ* .— Bor. *զերդ զուռ* .— *Հլպ. յայն ահէն* զիա *կուպր եռամ*:
10– Can. *Հլպ.* չունին այս տողը .— Bor., Ox 2. *ջերմն*:—

Բ․

Ի սպառնալեացն եմ զարհուրել, չեմ ի գիտեր թ՞ ու՞ր կը գընամ։
Ահն ու անդոհն է զիս պատել, վասն այն զարեան գետըն կու լամ,
Երբ խաբեցայ յանցաւորէս, ես ինձ բարոյ այլ չը մընամ։
Երբ հըրեղէն գետն ելանէ, ես յայն հըրոյն մէջըն մընամ,
Երբ հրեշտակին փողըն գոչէ, ես յարութեան չարժանանամ։
Եղուկ թէ յայն ձայնէն լըսեմ, թ՞ «Երթայք յինէն» ու՞ ի ձախ մընամ,
Տանեն զիս յիմ որդունքն ի մաւտ, որ ճանաչեմ եւ գիտենամ։
Ես տընկեցի հոգոյ զաւակ, բեատէ հիմիկ քեզ կեր կու գամ,
Ասեմ՝ թէ ինձ հարկիք արէք, զեմ ձեր ծնաւղն եմ, որ կու լամ։

---

11– Bor. զարհուրե՜լ․— Ox. 2. զարհուրեալ· Can. սոսկացեալ, չեմ ի գիտեր թէ յուր գընամ․— Ox. 1. չեմ գիտել թէ ուր կու գընամ․— Հլպ· Սպառնալեացն ի սոսկացեալ․․․ թէ ուր գընամ․— Ox. 2. չեմ ի գիտել․— Bor. չեմ ի գիտել յուր կու գնամ։—

12– Ox 2, Bor. Ահն ու անդոհն է զիս․— Can., Ox. 1. Այն ահն ու դողն է․— Can., Հլպ· պատել, այնօք զօրէն վըտակ կու լամ․— Հլպ· Այն ահու դողն է զիս պատել․— Ox. 2, Bor. այնաւք զարեան․— Ox. 2, Bor. գետն։—

13– Can. խափեցայ յանցաւորխս․— Հլպ· յանցաւորես․— Ox. 1. յանցաւոր էս․— Can. Հլպ· բարոյ ինչ կու մընամ․— Bor. այլ չէ մնամ․— Ox. 2. այլ չեմ նայմ։—

14– Can. Յորժամ․— Ox. 2, Bor. Հլպ· հրեղէն․— Ox. 1. այն հըրոյ․— Bor. յայն հրոյ մէջն մնամ․— Ox. 2. այն հրոյն մէջն մնամ․— Հլպ· ես այն հըրոյն։—

15– Ox. 1. Գաբրիէլ զփողըն․— Հլպ· Գաբրէլ փողըն գոչէ․— Ox. 2, Can. հրեշտակին փողն․— Bor. հրեշտակին զփողըն․— Ox. 2. յարութե՜ն․— Ox. 1, Bor. Can. յարուե՜։—

16– Հլպ· Եղուկ թէ այն․— Ox. 1. Bor., Can. լսեմ․— Can. թերթայք յինէն ւի ձախ․— Ox. 1. թէ երթ եւ յինէն ի ձախ․— Bor. թէ երթ յինէն ու ձախ· — Ox. 2. թէ երդ յինէն ու ի ձախ մնամ։—

17– Can. իմ որդունք ի մօտ․— Հլպ· Տանին զիս իմ· Ox. 2. իմ։—

18– Can. Հլպ· չունին 18, 19 տողերը։— Ox. 1. հոգւոյ․— Bor., Ox. 2. բետէ․— Ox. 1. խեստ է․—

19– Bor., Ox. 2. զեմ ծնաւղն եմ ու կու լամ։—

Բ.

Որդունքըն չեն ինձ ողորմիլ, թող թէ հազար երդումըն տամ,
Մութն ու խաւարն է զիս պատել, որ այլ լուսոյ ճար չունենամ:
Դառն եւ ողորմ եմ մընացել, զաւըրըն հոգոյս իմ վայ կու տամ,
Սառնամանեաց դողն է կալել ու կու փըշրէ կըզակ ւ՜ ատամ:
Բաստէ ես այս չարիս դիպիմ, որ ի յառաջ զայս չիմանամ,
Ի մանկութեան խեղ կատակին հիմիկ մէկ մէկ համար կու տամ:
Երբ ի Դատո՛ղըն կու նայիմ, կու կարկափիմ եւ մընջանամ,
Ամաւթալից եւ սեւերես, զինչ մոմ հալիմ, զերդ կուպր եռամ:
Վասն Աստուծոյ՝ ճարա՛կ ցուցէք, ողորմեցէք թ՜ի՞նչ լինենամ,

---

20– Ox. 1. Արդունքըն — Bor , Can., Ox. 2. Որդունքն — Հլպ. հազար դառըն կու լամ — Bor. ինձի լսել — Ox. 2. ինձի լըսել — Can. հազար դառն կուլամ — Bor., Ox. 2. երդում կու տամ :—

21– Can. Հլպ. խաւար լինի պատել — Bor., Ox. 2. զիս կալել — Bor. լուսոյ :—

22– Ox. 2, Bor.B մնացել զաւրն — Հլպ. մընացեր. զաւըրըն հոգւոյս — Can. մընացեր. զօրըն — Bor. հոգւոյս — Ox. 1. վա կու :—

23– Ox. 2, Bor. Սառնամանեց — Can. Հլպ. որ հարկանէ ատամ զատամ — Ox. 2, կզակ ու ատամ — Bor. կըզակ ու տամ :—

24– Ox. 1. վասն այն ես այս — Ox. 1, Bor. բաստ է ես այս — Can. Հլպ. այս չարիս յայնժամ հանդիպիտիմ :—

25– Ox. 1. ի մանգութ՜ե — **Ox 1** մանկութ՜ե խեղ կատակին — Հլպ. մանկութ՜ե հեզ կատակին հիմա — Ox. 2. հիմայ — Bor. [հ]ի[մ]այ :—

26– Can. Հլպ. ի դատողն ահեղ տանին կու կարկամեմ եւ մընճանամ — Bor., Ox. 2. դատողն — Bor. նաիմ — Ox. 1. կու կարկափեմ — Bor. կարկափիմ եւ կու մնջամ :—

27– Ox. 2. ամաւթայլից — Bor. ամօթալից — Ox. 1, Ox. 2, Bor. Can., Հլպ. սեւ երես — Ox. 1. զերդ մոմ հալիմ եւ փըչանամ — Can. զինչ մոմ հալիմ, զերդ կուպր եռամ — Հլպ. զինչ կուպր եռամ :—

28– Ox. 2, Bor. վանց. Հլպ. վասն ա՜յ — Ox. 2. ողորմուեցէք — Ox. 1, Ox. 2, Bor. չունին 28–40 տողերը, որ կան միայն Can., Հլպ. մեջ: Այդ կտորն Ox. մեջ այսպէս է — «Վասն ա՜յ ողորմեցէք, բայց ի նոյն տ՜րդ եմ ես յուսամ...» — Ox. 2. «Վանց ա՜յ ողորմուեցէք, բայց նոյն տ՜րդ յուսանամ...» :— Bor.— «Վանց ա՜յ ողորմեցէք, բայց ի նոյն տ՜րդ յուսանամք...» :— Can. թինչ — Հլպ. թի՞նչ :—

Բ.

*Այս տանջանաց վըճար չըկայ, ես յաւիտեան ի հոն մընամ:*
*Արդարքն ի լոյսն ուրախանան, ես ի խաւա՛րըն մորմոքամ.*
*Ցիս նայելով՝ ձե՛զ խըղճացէք, զի լի սըրտիւ խըրատ կուտամ,*
*Որ դուք չի գայք ի յիս ի մօտ, ես ի հըրոյ ծով կու ծփամ:*
*Ես եմ զըրկող եւ պարտական, թող թէ ի սուգ կամ ու կենամ,*
*Ցաստէնս չունիմ հանգըստութիւն, անդ վիշապաց կեր լինենամ:*

*Ցըրիկն աստ ողորմագին, արժան եմ ես թ՜ի հոն կենամ.*
*Զայս խորխորատս ե՛ս փորեցի, որ իմ անձամբս ի ներս կենամ:*
*Գիտեմ, որ հուրն է ինձ վառած, երբ քարոզին չըր հաւատամ.*
*Տէ՛ր, ողորմած ես եւ գըթած, ողորմութեանդ Քո ես մընամ,*
*Որ տաս Դու ինձ համբերութիւն, որ սատանին գերի չըլնամ:*

*Թէպէտ ունիմ մեղք անհուն, բայց ի նոյն Տէ՛րըդ ես յուսամ,*
*Չի հաւատամ, թէ զերծանիմ, զինչ ազատեաց Տէրըն զԱդամ:*
*Երրորդութեանն երկըրպագեմ ւ՜ ըզնըմանէ միշտ գոհանամ,*

---

29– Can. *վճար.*— *ի հօն.*— *Հլպ. ի հոն կենամ:*—
30– Can. *մորմոքամ.*— *Հլպ. ւես ի խաւարըն:*—
31– Can. *խղճացէք.*— *սրտիւ:*—
32– *Հլպ. ի յիս ի մաւտ.*— Can. *հրոյ:*—
33– Can. *զրկօղ.*— *Հլպ. զըրկաւղ.*— Can. *ի սուf կայ ու:*— *Հլպ. ի սուf ես կու մընամ:*—
34– Can. *Ցաստէն չունիմ հանգստութ՜ի.*— *Հլպ. յաստեն... հանգստութ՜ի.*—
35– Can. *թէ ի հօն.*— *Հլպ. ես թէ հոն կենամ:*—
36– Can. *ես փորեցի:*—
37– Can. *Հլպ. չհաւատամ:*—
38– Can. *տ՜ր.*— *գթած.*— *ողորմութ՜եդ.*— *Հլպ. ողորմութ՜ե քո.*—
39– Can. *Հլպ. համբերութ՜ի.*— *Հլպ. չընլամ:*—
40– Can. *տ՜րըն յուսամ.*— *Հլպ. ի տ՜րըն յուսանամ:*—
41– Ox. 2, Bor. *թէ հաւատամ.*— *Հլպ. թէ հաւատամ նա՛,*— Ox. 2. *նայ.*— Bor. *նա զերծանիմ.* Bor., Ox. 2. *զերդ.* Ox. 2. *տ՜րն.*— *Հլպ. ազատեց տ՜րըն.*— Bor. *տ՜րն ադամ:*—
42- Ox. 1. *Երրորդութ՜ե.*— *Հլպ. երրորդու՜են երկըրպագեմք եւ զնմանէ.*— Ox. 1. *ըզմնանէ.*— Can. *եւ զնմանէ.*— Bor. *ըզնմանէ.*— Ox. 2. *զնմանէ:*—

Բ.

Որ կու լըսէ մեղաւորիս՝ այնոր վըստահ յառաջ կու գամ:
Դու ասացեր, «Եկայք առ իս, զանանց դըրա՛խտըն ձեզ կուտամ»,
Ձիս որ արեա՛մբըդ գընեցեր, այլ չերկընչիմ ւ՞ոչ վախենամ:
Փառք Աստուծոյ վեր առաքեմ եւ բիւր հազար հետ գոհանամ,
Որ ինձ երետ միտք ու հոգի, որ զայս բանե՛րըս կու սըգամ:
Եւ զաւըրըն զայս խընդրեմ լալով, որ ի գեհենըն չի մընամ,
Գիտեմ, որ Տէրըն կու կամի, որ ես լուսոյ որդի լինամ:
Ետուր բըղխումն ինձ արտասուաց, որ ի հըրոյն անահ մընամ,
Երբ ծուլանամ կամ յապաղիմ, յայնժամ այսու ազատ կենամ:
Տէ՛ր, ողորմեա մեղաւորիս, թէ կամենաս՝ առ Քեզ կու գամ,

---

43– Can. նա կու լսէ մեղաւորին.— Հլպ. Նայ կու լըսէ.— Ox. 1. կու լսէ.— Ox. 1, Can. այն որ.— Bor. Ox. 2. այնաւք վըստահ.— Հլպ. այնով.— Ox. 1. յառ՟ջ.—

44– Can. Հլպ. Տ՟րըն հրամեց եկայք.— Bor. զեկայք.— Can. դրախտն ձեզ բանամ.— Հլպ. ձեզ բանամ.— Ox. 2. դրախտն ձեզ.— Ox. 1. քեզ.— Bor. դըրախտըն քեզ:—

45– Can. Հլպ. Տ՟ր զիս արեամբ քո գընեցեր.— Ox. 2, Bor. արեամբդ.— Bor. ու այլ չերկնչիմ ու ոչ.— Can. ո՞ւոչ.— Ox. 2. ոչ.— Հլպ. ու վախենամ:—

46– Can. վեր առեմ.— Հլպ. ա՟յ.— Can. Հլպ. միշտ գոհանամ:—

47– Ox. 2. Որ ետ ինձ միշտ, միտք.— Ox. 2, Bor. բաներս կու սգամ.— Can. Հլպ. բաներըս կու ըսգամ.— Ox. 1. բաներըս կու ըզգամ:—

48– Ox. 1. Զաւըրըն զայն. Can. եւ զօրն զայս.— Հլպ. որ ի գեհենն ես չի մընամ.— Bor. Զաւրն զայն ել.— Ox. 2. Զաւրն զայն էլ խնդրեմ.— Bor. ով որ. Can. ես չի գնամ.— Ox. 2. չի մնամ.— Bor. չմնամ:—

49– Can. Հլպ. որ տ՟րըն.— Bor., Ox. 2. որ տ՟րն.— Can., Bor. որ ես.— Հլպ. կու կամէ.— Can. որդի լուսոյ լինամ.— Bor. Ox. 2. լինամ.— Ox. 1. ես լուսոյ որդի լինենամ:

50– Ox. 2. բրխումն.— Bor. հրոյն անահ.— Հլպ. Տ՟ր տուր բըղխումն.— Can., Ox. 1. Հլպ. անմահ.— Ox. 2. ի հրոյն nնահ մնամ:—

51– Can. չունի 51-րդ տողը:— Ox. 2, Bor. Որ.— Bor. յապաղեմ.— Bor., Ox. 1, Ox. 2. յորժամ.— Ox. 1. այսիւ:—

52– Ox. 1. ողորմեայ:—

Բ. *Ով իմ ողբոյս ականջ դընէ, ես լըսողին ծառայ կենամ։*
*Զայս ի վերայ ինձ ասացի, մի՛ մեղադրէք խըրատ կու տամ,*
*Երեսըս ձեր ոտից կոխան, զիս յիշեցէք ամենեքեան։*
*Աստուած ի ձեր գործքըն հանդչի, որ դուք լինիք մարդ բարեկամ,*
*Փառք Աստուծոյ մարդասիրին եւ յամենայն ժամ գոհանամ։*
*Եւ բարեխաւս առ Տէր ունիմ ըզսըրբուհի կոյս Մարիամ,*
*Միջնորդ ընդ մարդ եւ ընդ Աստուած, մայր Աստուծոյ զինքն հաւատամ։*
*Մեղաւորաց թափող է նա, եւ զիս յինքըն յանձնին կու տամ,*
*Փառք Աստուծոյ Հաւր եւ Որդոյ եւ Սուրբ Հոգոյն միշտ յաւիտեան։ Ամէն։*

*

* *

---

53– Ox. 1. *ողբիս* — Ox. 1, Ox. 2, Bor. Can. *դնէ* — Ox. 1. *լսաւղին* — *Հլպ.* *լըսաւղին ծառա լինամ* — Ox. 2, Bor. *լսողին* — Can. *լսօղին* — Can. *լինամ* ։—

54– Ox. 1, Ox. 2, Bos. *Զայս վերայ ինձ եմ խաւսեցեալ* — *Հլպ. ի վերա՛* — Bor. *խօսեցել* — Ox. 1. *խաւսեցել* — Bor. *մեղայդրէք* — Can. *Հլպ.* *թէ խրատ կու տամ* ։—

55– Bor. *Հլպ.* չունին 55–*րդ* տողը։— Bor. *Հլպ* — Այդ տողի փոխարէն — «*Զա՟ծ ըերեմ ձեզ բարեխօս, որ զիս յիշէք, երբ հողանամ*»։ *Հլպ. բարեխաւս* — Ox. 1. «*Զա՟ծ ըերեմ քեզ բարէխաւս, որ զիս յիշէք, երբ չմնամ*» ։—

56– Ox. 1, Ox. 2, Bor., Can. *ա՟ծ* — Ox. *գոհութ՟իդ հաճի* — Bor. *գութն հան[գ]չի* — Ox. 1. *գութըդ հաճի* — Can. *գործքըն հանգչի* — Ox. 2. *բարեկամք* — Bor. *բարէկամք* ։—

57– Ox. 1, Ox. 2, Bor. Can. *Հլպ. Ա՟յ* — Bor. *մարդասիրի* — *Հլպ. յա՟մ* — Ox. 2. *ա՟մ* — Can. *գա՟ւհանամ* ։—

58– Can. *Եւ բարեխօս առ ինք ունիմ, ըզսըրբուհին* — *Հլպ. Եւ բարեխաւս առ ինքն ունիմ, ըզսըրբուհին* — Bor. *ունիմք* — Ox. 2. *ունինք* — Ox. 2. *ըսրբուհի կոյս* — Bor. *ըս սըրբուհի կոյս* — Ox. 1. *զսրբուհի կոյսըն* ։—

59– Can. *Հլպ.* չունին այս տողը — Ox. 2. *զինք* — Ox. 1, Ox. 2, Bor. *ա՟ծ մայր ա՟յ* ։—

60– Can. *թափօղ է նայ. ես զիս ի նայ յանձին* — *Հլպ. թափաւղ է նա՛. եւ զիս ի նա* — Ox. 2. *թափողն է նայ* — Ox. 2, Bor. *եւ զիս ի յինք յանձին* — Ox. 1. *յինքն* ։—

61– Can. *Հլպ.* չունին այս տողը։— Ox. 1. *հոգւոյն* — Bor. *գոհանամ* — Bor. «Ամէն» *չունի* ։—

Գ.

## ՑՐԿԱՆՆ
### ասացեալ
## ԱՂԱՉԱՆՔ ԱՌ ՏԷՐ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ

4-4||4-4   3-4||4-4

*Յիսուս անուն յիս գթացար, զինչ ըստեղծեր զնախնին Ադամ,*
*Երբ ծընայ ու զգւանացայ յիշեմ ըզքո գութն ու դողամ*
*«Մի՛ ուտեր» պատուիրեցեր քո հրամանիդ ես ոչ անսամ,*
*Մերկացայ յանճառ լուսոյն, վասն այն զարեան գետըն կու լամ։*

*Զայս արի ինձ ապաւէն, թէ անումէկ ես չը մընամ,*
*Ցիմ հաւրէն զայս լըսեցի, թէ Քրիստոսի ըզքեզ կու տամ։*
*Առաւել հաստատեցաւ սէրդ ի հոգիս ու կը խընդամ,*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16, Bodl. Lib. fol. 74a-77a:—
*Համմտ.*— Ms. Arm. F. 21, Bodl. Lib. fol. 10a-11b, 91a-92a.:
Ms. Brit. Mus. Or. 2622, 93a-97b:
*Զեռ. Երուսաղէմի.* No. 1070, fol. 257b-261a:—
*Ա. Զօպանեան, «Հայ էջեր», էջ* 42–43, *տաղիս մի հատուածը* (*տող* 32–50) *«Աղօթք» խորագրով*:—
Տաղիս չափը 4-4||4-4 առաջին 4–7 տողերի եւ ապա 3–4||4-4 մինչեւ վերջը:
1– Ox. 1. *Նորին ասացեալ Ցրկանն.*— Ox. 2. *Նորին ասացեալ աղաչանք առ տ՜ր.*— Bor. *Նորին ասացեալ աղաչանք առ տ՜ր յ՜ս ք՜ս.*— *Զե. «Ողբ Ցրիկ ասացեալ» իբրեւ վերնագիր*:—
4– Ox. 1. *Ց՜ս.*— Ox. 2, Bor. *ի յանուն.*— *Զե. Տ՜ր անուն.*— Ox. 1, Ox. 2, Bor. *գըթացար: Ջ որով չափը դառնում է* 4–4||4–4Ջ:— *Զե. գթացար. Ջ չափը* 7–3–5Ջ:— Ox. 2. *զինչ կամէիր ստեղ[ծ]ել զաղամ*:— Bor. *զինչ կամէիր. ստեղծ զաղամ.*— *Զե. յերբ կամէիր ստեղծել զաղամ*:—
5– *Զե. յերբ.*— Ox. 1, Ox 2, Bor. *Զե. ծնայ.*— Ox. 1. *զգաւնացա.*— Ox. 2, *ուսգունեցայ.*— Bor. *ու սգունացայ.*— *Զե. ըզգաստացայ.*— *Զե. զքո գութն եւ.*—
6– Ox. 1. *Պատուիրեցեր թէ մի ուտել.*— Ox. 2, Bor. *մի ուտել պատուիրեցեր.*— Bor. *պատուիրեցիր.*— *Զե. մի ուտել հրամայեցեր.*— Bor. *ես չանսընամ*:—
7– Ox. 1. *մերկացա.*— *Զե. զրկեցայ անճառ.*— Bor., Ox. 2. *այնաւք զարեան.*— *Զե. լուսոյն հենաւք զարեն գետն*:—
8– Ox. 1. *արարի.*— Ox. 2, Bor. *Զե. արի.*— Ox. 1. *անումէկ* էս *ոչ մընամ.*— Bor. *թէ անում եկես չմնամ.*— Ox. 2. *թէ ան ու մէկ ես չմնամ.*— *Զե. անում եկ ես*:—
9– *Զե. ի հաւրէն զայս լսեցի թէ ք՜ի զքեզ կու տ՜մ.*— Bor. *լսեցի*:—
10– *Զե. հաստատեցայ սիրտս ու հոգիս ես կու խընդամ*:—

է. Երբ առաքեալք եւ մարգարէք յոտքն անկանին, թէ Տէր մեղայ:
Ո՞վ է անմեղ զարթ ի Քենէ, կամ ո՞վ է ինք մեղք չունենայ,
Քո ծնաւղն է վըկայ բերել զայն գիրն, որ Դու տուիր նորա:
Տեղ զանկելոցն ես խոստացել ընտրեալ թոռա՛նցըն Ադամայ,
Թէպէտ որ չենք մենք արժանի, որդի եղաք Յորդանանայ:
Երկնից զանձովն ենք մեք գընած, որ ի խաչին բաշխեաց ըղնա,
Լոյս ծագեցեր խաւարելոցս, կործանեցեր ըզսատանայ:
Պատարագաւք զարդարեցեր հիմիկ մեզ այլ դատել չի կայ,
Ով զյիշատա՛կըս Քո պահեաց, հաղորդութեամբ առ Քեզ կու դայ:
Դու քաղցրութեամբ, սիրով հայեաց, Քո բանն երկու ոչ լինենայ,
Մեք հաւատով խոստովանիմք, որ այս պիտի հանց լինենայ:
Զոր խոստացաւ Փըրկիչըն մեզ Աստուածածնո՛վն ի մեզ կու տայ,

---

54 Ձե. չունի *երբ* — Ox. 2, Bor. *ոտք* — Ձե. *յոտք* — Ox. 1. *անգանին* — Ox. 1, Ox. 2, Bor. *տ՟ր* :—

55– Ox. 1, Ox. 2, Bor. Ձե. *ով* — Ox. 1. *բայց ի* — Ox. 1, Ox. 2. *եւ կամ ով է* — Bor. *կամ էվ է* — Ձե. *ով որ ինքն բիծ* :—

56– Ox. 1. *քո ս՟ր ծնաւղն, որ զքեզ բերեր* — Ox. 1. *ծնաւղն խունկ այ բերել* — Bor. *քո ս՟ր ծնաւղ նունկա բերել* — Ox. 1. *զուն* — Bor. *տվիր նորա* — Ox. 1. *տըւիր* — Ձե. *տվիր* — Ox. 2. *նարայ* :—

57– Ձե. *է* — Ox. 2. Bor. *զընտրեալ* — Bor. *թոռանցն* — Ձե. *տէր զիմ թոռանցն* — Ox. 1. *ադամա* — Ox. 2, Bor. Ձե. *ադամայ* :—

58– Ձե. *չենք թոռն Ադամայ որդիք* — Ox. 1. *յորդանանա* — Bor., Ox. 2. *յարդանանայ* — Ձե. *որդանանայ* :—

59– Ox. 2, Bor. Ձե. *գնած* — Ձե. *իւր ս՟ր ձեռաւքն բաշխեաց զնա* — Ox. 2. *զնայ* — Ox. *զնա* :—

60– Ox. 2, Ձե. *լուս* — Bor. Ձե. *ծագեցաւ* — Bor. *խաւարէ լոյս* — Ձե. *եւ կործանեաց զսատանայ* — Bor. *զսատանայ* :—

61– Ձե. *պատարագաւ* — Bor. *Պատարագաւղ* — Ox. 1. *յիմիկ* — Ձե. *զմեզ.* Ox. 2, Bor. *դատիլ չկայ* — Ձե. *չկայ* — Ox. 1. *չը կայ* :—

62– Ox. 1, *զպատուիրանըն* — Ox. 1, Ox. 2, Bor. Ձե. *հաղորդութ՟ր* :—

63– Ox. 1. Bor. *Եւ քաղցրութ՟ր* — Ox. 2, Ձե. *քաղցրութ՟ր* — Ox. 1. *հաեաց* — Ձե. *նայիս* — Ox. 1. չունի *երկու* — Bor. *երբու* [=*երկու*] — Ձե. *բանդ երկոյ ոչ լնենայ* — Ox. 1. *լինենա* :—

64– Ox. 1. *խոստովանիմք զքո դատաստանն որ դեռ կու գայ* — Ox. *հայնց.* — Ձե. *յանց լնենայ* :—

65– Ox. 1. *փրկիչըն* — Ox. 2, Ձե. *փրկիչն* — Bor. *Փըկիչն* — Ox. 1. *ա՟ծածնովըն* — Ox. 2, Bor. Ձե. *ա՟ծածնովն* — Ox. 1. *մեզ կու գայ* :—

Է·

*Եկայք ամենքս յոտքն անկանիմք, որ մեզ համար ստեղծած է Նա։*
*Թէ չէ ամենքս ենք մեղաւոր, քան զԱստուած այլ արդար չի կայ,*
*Ինքըն սէր էր եւ սէր ցուցոյց, այս վասն այնոր հանց լինենայ։*
*Ցըրիկն ի՞նչ հող է կամ մոխիր, որ հանց գոհար բան չարէ Նա,*
*Ո՛չ ծառայել վարդապետի, ո՛չ կարդացել աւրիկ մի Նա։*
*Ո՛չ ի հաւրէ առեր միրաթ, այս յԱստուծոյ տուած նորա,*
*Նա ե՞րբ կարէ հանց բան ասել, ով որ կարդայ աւրհնէ ըզնա։*
*Տէրն ողորմի իւր ծընաւղացն, որ ով կարդայ զիս յիշենայ,*
*Եւ ինքն յիշուի ողորմութեամբ, երբ կուսածին Աստուածըն գայ։*

*

*   *

---

66– Ox. 1, **Ձե·** *ամէնքս* — Ox. 2, *ամէնքն* — Bor. *ամենքն* — Ox. 1. *յոտք անգանենք* — Ox. 2, Bor. *յոտն անկանինք* — **Ձե·** *ոտք* — *որ վասն մեր ըստեղծ զնայ* — Ox. 2, Bor.— *է ստեղծած* — Ox. 2. *նա՛յ*։—
67– Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե·** *ամէնքս* — Ox. 1. *մեղաւոր էնք* — Bor., Ox. 2. *մեղաւոր ենք* — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե·** *զա՟ծ* — **Ձե·** *ոք* — Ox. 2, Bor. *չկայ* — Ox. 1. **Ձե·** *չը կայ*։—
68– Ox. 2, Bor. *Թէ ինքն* — Ox. 1. *սիրէր* — **Ձե·** չունի այս տողը — Ox. 1, *եցոյց* — Ox. 2. *այսոր հայնց* — Bor. *լինենա*։—
69– Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե·** *Ցրիկն ինչ* — **Ձե·** չունի *կամ* — Bor. *կ՟մ մղիր*· — Ox. 2. *հայնց* — Ox. 1. *գաւհար* — *նայ*։—
70– Ox. 1. *Ոչ է ծառայ* — **Ձե·** *չէ ծառայել* — Ox. 1, Ox. 2, Bor. *կարդացել է աւր* — Ox. 2. *նա՛յ*։
71– Ox. 1, Ox. 2, Bor. *Թէ ի հաւրէ* — Ox. 2. *առել* — Ox. 1. *առեալ* — Bor. *մի[ր]աթ* — Ox. 1, Ox. 2, **Ձե·** *ա՟յ* — Ox. 1. *տըւած* — Ox. 2. *նարայ*· — Bor. *նարա* — **Ձե·** *նորայ*։—
72– Ox. 2. *Ով կու կարէ* — Bor. *Եր[բ] կու կարէ* — **Ձե·** *Որ կու կարէ* — Bor. *անց* — Ox. 1. *կարդա ա՟հնէ* — **Ձե·** *կարդայ, ո րհանէ զնայ* — Ox. 2. *ղնայ*։—
73– Ox. 1, **Ձե·** *Տ՟րն* — Bor., Ox. 2. *Տ՟ր* — Ox. 1, Bor. Ox. *ծնաւղացն որ երբ* — Ox. 1. *զարդա* — **Ձե·** *յիշէնայ*։—
74– Ox. 2, **Ձե·** Bor. *Որ ինքն* — **Ձե·** *յիշի* — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե·** *ողորմու՟թ* — **Ձե·** *յերբ* — Ox. 1. *ա՟ըծըն* — Ox. 2, Bor. *թագաւորն* — **Ձե·** *թագվորն*։—

Ը.

# ՆՈՐԻՆ ՖՐԿԱՆՆ

## ՈՂԲԱՆՔ ՓՈՇԻՄԱՆՈՒԹԵԱՆ

4–4 ‖ 4–4

*Հանց մեծամեծ խորհուրդ արի, որ յաւիտեան ո՛չ կատարի,*
*Մըտնուլ գետին հեշտ երկըրի, յինչ որ աղէկ մարդըն խըրի։*
*Զանդիճեցի, թէ այն ցեղի յետին բանին մըտիկ չարի,*
*Վասն այն դիպաւ ոտքս ի քարի, որ աւելի ջանք չի դիրի։*
*Զինչ զաւըրն ի բուն մարդըն խորհի, գիշերն ամէ՛նըն խափանի,*
*Լամք ՞ի ածել ես աշխարհի, լուկ վազեցի հետ շատ շահի։*
*Զինչ Տէրն երեւ հերիք չածի, ա՛յլ մեծութեան սիրտ ունէի,*
*Ժողովեցի շատ մի բարի՝ ըռզակ արի զինք Թաթարի։*
*Լաւ չ՞ի դատել այնչափ տարի, երբ իմ հոգոյս ռոճիկ չարի,*
*Զինչ որ մարդկան խորհուրդ լինի, ամենըն հողմ է եւ քամի։*
*Այն բազային եմ նըմանի, որ փոքր որսի ոչ հաւանի,*
*Ով որ ածէ զաչքն այլ մեծի, բեստէ կենայ զաւըրն անաւթի։*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16, Bodl. Lib. fol. 89b-92a :—
**ՀՄՍ** ·— Ms. Arm. F. 21, Bodl. Libr. fol. 110a-113a :
Brit. Mus. Ms. Or. 2622, fol. 121a-125 :—

1– Ox. 2, Bor. չունին հեղինակի յիշատակութիւնը :— Ox. 1. *Նորին Ֆըրկանն ասացեալ վասն* :—
2– Ox. 1. չունի այս տողը ·— Bor. լուսանցքի մէջ — *«սքանչելադոյն»* :—
3– Ox. 2. *Հայնց* ·– Bor. *Անց* :—
4– Ox 1, Ox. 2, Bor. *մտնուլ* ·— Ox. , Bor. *երկրի* ·— Ox. 2, Bor. *մարդն խրի* :—
5– Ox. 1. *Անդ իճեցի թէ ինչպէսի* ·— Ox. 2. *յետի* ·— Ox. 1, Ox. 2, Bor. *մտիկ* :—
6– Ox. 1. *վ՟սն* ·— Ox. 2, Bor. *Այնաւք դիպաւ* ·— Bor. *ոտքըս քարի* ·— Ox. 2. *յաւելլի* ·— Bor. *կու դնի* :—
7– Ox. 2, Bor. *մարդն* ·— *ամէնն* ·— Bor. *խաքանի* :—
8– Ox. 1. *բուռն եմ ածել* ·— *որ կու վազեմ հետ* :—
9– Ox. 1, Ox. 2, Bor. *տ՟րն* ·— Ox. 1. *հէրիք* ·— Ox. 1, Ox. 2, Bor. *մեծութ՟ե* :—
10– Ox. 1. *զնա թաթարի* ·— Bor. *զինքն* :—
11– Ox. 1. *բաժին չարի* :—
12– Ox. 1. *մարդոյ* ·— Ox. 2. *ամէնն* ·— Bor. *ա՛մէն* ·— Ox. 1. *ամէնըն հող է* :—
13– Dx. 1. *բազաին եմ նըմանի* ·— Ox. 2. *նմանի* ·— Bor., Ox. 1. *որսին* :—
14– Ox. 2, Bor. *Ով ածէ* ·— Ox. 1. *քաղցած կենայ եւ անաւթի* :—

Ը.

*Ուսկայ եղաւ այնչափ տարի, որ տուն ու տեղ դեռ կու քակի,*
*Զինչ մեծամեծ վաստակ արի՝ տանիլ տուի զինքն հեղեղի։*
*Երբ ժամանակ մարդոյն ծըռի, երեսք ի վայր դեմ դըլորի,*
*Երթայ դիպնի հանցեղ դարի, որ ինչուի մահ ո՛չ վըճարի։*
*Երբ Բախտն ընկեր էր՝ մանեցի, հիմիկ ոլորն յետ կու քակի,*
*Երբ խոլորով յիս կու նայի, այլ չի լըցուիլ կապիճ չարի։*
*Հանց փորձելոյ ինձ տայ լեղի՝ ես զայն առի չամաչեցի,*
*Զգործիսն ի ջո՛ւրըն ձըգեցի, վարմըն լըցաւ ես խընդացի։*
*Նոյն եւ ցորեան ես ցանեցի, նա՛ խիստ բուսաւ դառն ու լեղի,*
*Հաւք եւ գազանք ինչ կայ վայրի իւրեանց դադա՛րըն կ՚ե-րեւի։*
*Ծրիկն ողորմ է ու լալի՝ երկու կենա՛ւքըս կու զըրկի,*
*Ասպընջական աստէն չունի, ոչ անդէնին գործ մի բարի։*
*Զինչ անպիտան փայտն ի մայրին՝ չէ՛ չինուածոյ նա պիտանի,*
*Դառն իւր պըտո՛ւղըն՝ չերեւի, գեմ նա ի հուրն աղէկ այրի,*

---

15– Ox. 1. *Ահա եղաւ անչափ* .— Bor. *Աւսկայ* .— Ox. 1. *տեղն* :—

16– Bor. *Զինչ սարֆ արի դարի արի* .— Ox. 2. *Զինչ սաֆարի դարի արի* .— Ox. 1. *արի, ամէն դարձաւ հող ու՚ի փոշի* .— Ox. 2. *տըւի զինք* .— Bor. *տըւի* :—

17– Bor. *մարդկան*, Ox. 2, Bor. *ծռի* .— Ox. 1. *երես ի վայր նա՛ գըլորի* .— Bor., Ox. 2. *գլորի* .— Ox. 2. *գէմ* :—

18– Ox. 1. *Երթա՛* .— Ox. 2, Bor. *Եկի դիպայ հայնցեղ* [=Bor., *այնցեղ*] .— Ox. 1. *մինչ ի մահն* .— Bor. *ինչ ուր ի* .— Ox. 2, Bor. *վճարի* :—

19– Ox. 1, Ox. 2, Bor. *բախտն* .— 1. *ընգեր* .— *յիմիկ* :—

20– Ox. 1. *ոլորով* .— *լցուիլ կապիճ* .— Ox. 2. *նայիլ ցուցիլ կապիճ* .— Bor. *նա՛ չի լըցուիլ կապիչ* :—

21– Ox. 2. *Հայնց* .— *տայ ինձ* :—

22– Ox. 2, Bor. *ի ջուրն* .— Ox. 1, Ox. 2, Bor. *ձգեցի* .— Ox. 1, Ox. 2. *լցաւ* :—

23– Ox. 1. *նոյնպէս ցորեան* .— Ox. 2. *նայ* .— Bor. *նոյն եւ ցորեն* .— Ox. 2. *դառն եւ* :—

24– Ox. *դարան կու երեւի* .— Ox. 2, Bor. *կու երեւի* :—

25– Bor. *է լալի* .— *կենաւքս* .— Ox. 2. *զրկի* :—

26– Ox. 2, *Ասպընճական* .— Ox. 1, Ox. 2, Bor. *անդէն չունի* [=Ox. 2, *չունի*] .— Ox. 1. *ոչ հանգիստ տեղ, որ դադարի* :—

27– Ox. 1. *ի մայրի* .— Ox. 2. *չինածոց նայ* .— Bor. *չինուածոց* :—

28– Ox. 1. *պըտուղըն դառն է չերեւի, հրոյ նա՛ լաւ է որ այրի* .— Ox. 2. *իր* .— Ox. 2, Bor. *պտուղն* .— Ox. 2, Bor. *գեմ նայ* .— *վառի* :—

Ը.

Ցըրի՛կ, չունիս խելք իմաստի, է՞ր չես լըսեր դու խըրատի,
Մարդուն երբ ա՛ւդէնս չաջողի, Թող զանդէնի հոգւըն տանի։
Ապաշխարէ եւ պաղատէ, մի՞թէ յահեղ աւրն ատենի,
Մէկ բարեխաւս իւրն չերեւի, հայնց որ վըստահ ի Տէր հայի։
Թ՚ող թէ ոչխա՛րըն մոլորի, տէրն ե՞րբ թողու զայլըն տանի,
Թ՚ագաւորին այն կու պիտի, որ իւր ծառայն ոչ սըղալի։
Ցըրի՛կ, թէ խելք ունիս արի՝ իւղ պատրաստէ քեզ լապտերի,
Երբ գայ Փեսայն առագաստի ի հետ մըտիս դու վըստահի։
Երբ որ մըտար դու խընդալի, քեզ հարսանեաց հանդերձ պիտի,
Մարգարտաշար թագ ու գաւտի, որ թագաւո՛րըն հաւանի։
Ապա լինիս դու արժանի, որ քեզ ասէ՝ «Ծառայ բարի,
«Եկայք որդիքդ իմ Սիոնի, ձեր վարձն առ իս կայ ի չահի։
«Տաւթ ու ցըրտուն եւ ծարաւի, մերկ ու քաղցած ˘իք ի քարի,
«Եկայք առէք դուք ձեզ տեղի, զոր ի յոչ որ միտք չանկանի»։

---

29– Ox. 1, Ox. 2, Bor. *Ցրիկ* — Ox. 1. *չունես* — Ox. 2, Bor. *խելք ի բանի* — Bor. *երջես լըսել* — Ox. 1. *լսել* — Ox. 1, Ox. 2. *խրատի* :—

30– Ox. 2. *Մարդին* — Bor. *երբ ասես* — Bor. *զանդենի հոգսն* — Ox. 1. *զադենին* :—

31– Ox. 1, Ox. 2. *պաղատի* — Ox. 2. *ահեղ* — *ատենին* :—

32– Ox. 1. *մին* — Ox. 2. *բարէխաւս* — Ox. 1. *իւրըն* — Ox. 1, Ox. 2, Bor. *երեւի* — Ox. 2. *հայնց* — Ox. 1, Ox. 2. *վստահ* — Ox. 1, Ox. 2, Bor. *ի տ˜ր* — Ox. 1, Ox. 2. *խաւսի* :—

33– Ox. 2, Bor. *ոչխարն* — Ox. 1, Ox. 2, Bor. *տ˜րն երբ* — Ox. 2, Bor. *որ գայլ* :—

34– Ox. 2, Bor. *թագաւորն* — Ox. 2. *ի[ր]* — Bor. *ի ծառայն* — Ox. 2, Bor. *ողալի* :—

35– Ox. 1, Ox. 2, Bor. *Ցրիկ* — Ox. 1. *ունես բարի* :—

36– Ox. 1, Ox. 2, Bor. *փեսայն* — Ox. 1, Bor. *յառագաստի* — Ox. 1. *լինիս ընդ նա ուրախալի* — Ox. 2. *մտիս* — *վստահի* :—

37– Ox. 1. *Երբ մտանես ուրախալի* — Ox. 2. *մտար* — Ox. 2, Bor. *խնդալի* :—

38– Ox. 2. *մարգարտայշար* · *թագաւորի* — Bor. *թագաւորի որ* — Bor., Ox. 2. *թագաւորն* :—

39– Ox. 2. *Ապայ* — Bor. *ծառա* :—

40– Ox. 2. *որդիք* — Ox. 2. *ձեզ վարձ կայ առ իս ի չահի* — Bor. *վարձ առ իս կայ* — Ox. 1. *առիս է* :—

41– Ox. 1. *ցրտոյն* — Ox. 2, Bor. *ցրտուն* — Ox. 1. *մերկ եւ քաղցած եւ անաւթի* :—

42– Bor. *դու* — Ox. 1. *զայն որ յոչոր* :—

Ը·

Քեզ պատրաստեաց անանց բարի, որ յաւիտեան ո՛չ անցանի,
Զայս խոստացաւ Տէրն ամենի՝ իւր հըրամանն ո՛չ խափանի:

Ի յանուանէ մէկըն կոչի, ձախակողմին հուր կու վառի,
Ցըրի՛կ, քեզ ո՞րըն կու պիտի, քըննէ մըտաւք իմանալի:

Գանձով գընած ես դու գերի, դու է՞ր խըմես զաւըրըն գինի,
Թէ դու ունիս սիրտ խըրատի՝ քեզ լըսելոյ ականջ պիտի:

Թէ՞ փոշիմնելն անդ է բարի, որ քու լալուդ լըսաւղ լինի,
Մինչ դեռ յուժի ես ու ի լուսի, կըրթէ զմարմինդ չի պարարի:

Ով որ մարմնոյն իշխան լինի, խաղաղութիւն առ նա պիտի,
Սուտ է մարմինն եւ սընոտի, ներքեւ հողին կերթայ փըտի:

Ցըրիկն ի զուր է՞ր կու դատի, թէ խելք ունի չուտ փարատի,
Որ այն բանին ինքն հասանի, Տէրն ողորմած է ամենի:

Հասարակաց զայս կու կամի, Տէրըն փառաց զա՛յս կու խաւսի,

---

43– Ox. 2, Bor. պատրաստած·— Bor. յաւիտե՟·— Ox. 1, Ox. 2, Bor. ոչ:—
44– Ox. 1, Ox. 2, Bor. տ՟րն·— Bor. ամէնի·— Ox. 1. եւ իւր հրամանն·— Bor. հրամանքն·— Ox. 2. հըրամանքն·— OxB 1, Ox. 2, Bor. ոչ:—
45– Ox. 2, Bor. մէկն·— Ox. 1. ձախակողման հուրըն վառի:—
46– Ox. 1. որըն·— Ox. 2. յորն··— Bor. որն·— Ox. 1. քննէ մտաւք·— Ox. 2, Bor. կամ լեր մըշակ դու տերունի [=Ox. 2, տ՟րունի]:—
47– Bor. գնած·— Bor. եր·— Ox. 1, Ox. 2. էր·— Ox. 2, Bor. զաւրն:—
48– Ox. 1. թէ սիրտ ունիս դու խրատի·— Bor., Ox. 2. խրատի·— Ox. 1, Ox. 2. լսելոյ·— Bor. լըսելո:—
49– Ox. 1, Ox. 2, Bor. թէ·— Ox. 2, Bor. փոշիմնել անդէն բարի·— Bor. լալուտ·— Ox. 1. լսաւղ·— Ox. 2. լսող·— Bor. լըսող:—
50– Ox. 2, Bor. ինչ դեռ ուժի ես ու ի լուսի·— Ox. 1, Ox. 2, Bor. կրթէ·— Bor., Ox. 1. որ հաւանի·— Bor. չպարարի:—
51– Bor. մարմնոյ·— խաղաղութ՟ի·— Ox. 1. խաղաղութ՟ե·— Bor. նայ:—
52– Ox. 2, Bor. Մարմինն սուտ է եւ ստի·— Ox. 1. սնոտի·— Ox. 2, Bor. պիտի ներքեւ հողին փտի·— Ox. 1. կերթա՛:—
53– Ox. 1, Ox. 2. Ցրիկն·— Bor. Ցրիկ·— Ox. 1, Ox. 2, Bor. էր·— Ox. 1. կաշխատի:—
54– Ox. 1, Ox. 2, Bor. տ՟րն:—
55– Ox. 1. տ՟րըն·— Bor., Ox. 1. Տ՟րն:—

Ը․

*Թ՞ ո՞վ եկ բաղխեաց, որ չի բացի կամ ո՞վ խնդրեաց, որ չի տուի:*
*Վասն Ադամայ որդոցն եկի, որ նըման են Իմ պատկերի,*
*Դըրախտն արդա՛րոցըն բացուի եւ չատ բարի ի յաշխարհի:*
*Աղէկ լըսէ, իմ սիրելի, որ քեզ բարի յոյժ պարգեւի,*
*Առնուս պարգեւք ի յԱստուծոյ, հոգիդ քո միշտ փառաւորի:*
*Էն հանց բարի մեզ կու կամի, որ հանապազ կու խըրատի,*
*Ով հնազանդ է պատուիրանի, արքայութեան լինի որդի:*
*Ցըրիկն աստ ողբանք լալի՝ Աստուած ի ձեր գործքըն հաճի,*
*Փողըն գոչէ Գաբրիէլի, արժան առնէ զձեզ այն ձայնի,*
*Ես ձեզ յանձին եմ յաղաւթի, որ զիս յիշէք անձանձրալի:*

*

*   *

---

56– Ox. 1. *ով եկ բախեաց* — Ox. 2, Bor. *Ով կու բախէ* [=Ox. 2, *բախի*] *որ ոչ բացի* — Ox. 1. *չբացի* — *ով* — Bor. *խնդրե՞ց* — Ox. 2. *ոչ տուի* — Bor. *ոչ տըւի* :—

57– Ox. 2, Bor. 57, 58, 59, 60, 61 եւ 62 տողերի փոխարէն ունին․—

Ox. 2. *«Վասն ադամ որդանց արի․ աղէկ լսէ իմ սիրելի․*
*Տ՞ըն հանց բարի մեզ կու կամի․ հնազանդի պատուիրանի:*
*Այսցեղ բարի ինքն չահի: Ցրիկն ասէ․․․»* :—

Bor. *«Վ՞սն ադամայ որդոցն արի—աղէկ լըսէ իմ սիրելի:*
*Տ՞ըն հենց բարի մեզ կու կամի․ ով հընազանդի պատուիրանի․*
*Այսցեղ բարի ինքն կու չահի: Ցրիկն ասէ․․․»* :—

Ox. 1. *վ՞սն* — *նման* — *բացւի* :—

59– Ox. 1. *լսէ* :—

60– Ox. 1. *ի յա՞յ* :—

61– Ox. 1. [*է*]*ն* — *խրատի* :—

62– Ox. 1. *արքայութ՞ե* :—

63– Ox. 1, Bor. Ox. 2. *Ցրիկն* — Ox. 1. *ա՞ծ ձեզ այլ ողորմեսցի* — Bor., Ox. 2. *ա՞ծ* — Bor. *գործքն* :—

64– Ox. 2, Bor. *Գաբրիէլի փողն երբ գոչէ* [=Ox. 2. *կոչի*], *եկայք ձայնին դուք արժանի* — Ox. 1. *գաբրիէլի* — Bor. *գաբրիելի* :—

65– Bor. *աղաւթի* — Ox. 2. *աղօթի* :—

*Թ.*

## ՆՈՐԻՆ ՖՐԿԱՆՆ

*առացեալ*

ՈՏԱՆԱՒՈՐՔ ԵՒ ՀԱՅԵՐԷՆ ԲԱՆԵՐՍ ՀՈԳԷՇԱՀ

**7–3–5**

*Որ Զարթուցանէ Զողխ Մարդկան.*

*Մինչ ածէ զմահն ու մաւտ է եւ անողորմ գըրաւղն գայ,*
*Ո՛չ ի ծեր կու խընայէ, ո՛չ ի մանուկ ու՞ ո՛չ յերեխայ։*
*Չի՛ քըննել կաթողիկոս, եպիսկոպոս, ու՞ ոչ քահանայ,*
*Չի՛ քըննել թագւոր, իշխան, ո՛չ զայնոսիկ, որ կու մուրայ։*

---

*Յորժամ որ մահն մաւտենայ մարդոյն որ գայ*
*Ոչ ի ծեր կու խնայէր, ոչ տղայ եւ ոչ երեխայ։*
*Չի քըննել կաթողիկոս եպիսկոպոս ոչ քահանայ,*
*Չի՛ քըննել թագաւոր, իշխան, ոչ զայնոսիկ որ կու մուրայ։*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16, Bodl. Lib. fol. 92a-95a :—

*ՀՄՄՏ* --- Ms. Arm. F. 21, Bodl. Libr. fol. 122a-126a :— Brit. Mus. Ms. Or. 2622, 137b-143a :—

**Զն.** *Երուսաղէմի*, No. 1070, fol. ?:— COD. ST. LAZARE, No. 325, *Ը. Ե.* fol. 300-302: [= Որն այստեղ ամբողջապէս գրուած է բնագրի տակը] :— **Ա. Չօպանեան** «Հայ էջեր», *էջ* 41–42= [S. LAZ. No. 325] :—

1– **Զե.** միայն «*Ֆրիկ*» .— Ox. 2, Bor. չունին 1, 2 *տողերը* .— Csl. «*Ֆրիկին տաղն*» :—

3– **Զե** Csl., Ox. 1. չունին 3 *եւ* 4 *տողերը* .— Ox. 2, Bor. *հայերէն բաներս* [=Ox. 2, *բաներ հոգէշահ*] .— ¶ Հայերէն բաներս, *կարմրադեղով*¶ :—

4– Bor. *զարդուցանէ* :—

5– **Զե.** *ինչ* .— Bor. *ա՞ծ է* .— Ox. 2, Bor. *մահն* .— **Զե.** *մահու մաւտ է որ գրողն* .— Bor. *ու գրաւղըն* .— Ox. 2. *ու գրաւղն* .— **Զհ.** *մահըն մօտենայ* :—

6– Bor. *ու չ ի ծեր խնայէ ոչ երեխայ* .— Ox. 2. *ծեր խնայէ* .— **Զե.** *ոչ երեխայ* .— Ox. 2. *երեխայ* .— Ox. 1. *յերեխա* .— **Զհ.** *խընայէ, ոչ տըղայ.* —*ու՞ ոչ երեխայ* :—

7– Ox. 1. չունի *այս տողը* .— Ox. 2, Bor. *չի քննել եպիսկոպոս ու չ* [=Bor, *ոչ*] *վարդապետ, ոչ քահանայ* .— **Զե.** *եպիսկոպոս եւ քահանայ* .— **Զհ.** *ոչ քահանայ* :—

8– Ox. 1, Ox. 2, Bor. **Զե.** *քննել* .— Ox. 1. *զթագաւոր ւիշխան* .— Ox. 2, Bor. *թագաւոր ու իշխան* .— **Զե.** *թագվոր իշխան եւ ոչ զան որ մուրանայ* :— **Զհ.** *թագւոր իշխան* .— Ox. 2. *մուրան* :—

Թ.

*Զի՛ ասել, թէ պարտական է կամ աղքատ եւ կամ տըղայ,*
*Զի խըղճալ յաւտարականն, թո՛ղ թէ հազար դաւըն որ լայ:*
*Անողո՛րմըն բաժանէ զնոր պըսակած հարսն ու փեսայ,*
*Զինչ եղաւ ի Խըլաթանն ինքն Յովակիմ երեսնամեայ:*
*Քահանայք, փիլիսոփայք խիստ չուարած ողբով կու լայ,*
*Ո՛չ յեղբայր եւ ո՛չ ի քոյր կու խընայէ՝ առնու գընայ:*

---

*Զի ասել թէ պարտական է կ[ամ] աղքատ ու կամ տղայ,*
*Զի խղճալ օտարական թող թէ հազար դառն կու լայ:*
*Անողորմ բաժանէ զնոր պսակած հարսն ու փեսայ,*
*Ոչ եղբայր կու խնայէ եւ ոչ ի քոյր առնու գընայ:*

---

*Հանց կըրակ տայ ծընաւղացն, որ յաւիտեան երթայ մընայ,*
*Զհայրն ու մայրըն կու տանի, կաթընկերըն ի տուն մընայ:*
*Հանց որբեր յետ կու թողու, որ սար ու ձոր ամէն կու լայ,*

---

9– Ox. 2. *աuեր* .— Bor. *կ՟մ* .— Ox. 1, Ox. 2, Bor. *աղքատ է* .— Bor. *կ՟մ տըղայ* .— **ՁՀ.** *եւ կամ աղքատ* :—

10– **ՁԵ. ՁՀ.**, Ox. 2, Bor. *խղճալ* .— Ox. 1. *խըղճար* .— **ՁԵ.** *օտարացուն* .— Bor. *աւտարականին* .— Ox. 2. *աւտարկանին* .— **ՁՀ.** *օտարական* .— Ox. 2, Bor. **ՁԵ.** *դառն կու լա* .— Ox. 1. *կու լայ* .— **ՁՀ.** *դառն* :—

11– Ox. 2. *անողորմն* .— **ՁԵ.** Bor. **ՁՀ.** *անողորմ* .— Bor. *նոր պսակաց* .— **ՁԵ.** *նորապսակած* .— Ox. 2. *պսակած* .— **ՁՀ.** *բաժանած* [=*պըսակած*] :—

12– Ox. 1, Ox. 2, Bor., Csl. **ՁՀ.** չունին 12 *եւ* 13 *տողերը* .— **ՁԵ.** *բնագիրը*՝ զինչ որ եղաւ ի Ղալաթանն Յովակիմ ինքն երեսնամայ :—

13– **ՁԵ** բնագիրը՝ *Սուրբ քահանայք ու փիլիսոփայք* :—

14– **ՁԵ.** *Ոչ եղբայր եւ ոչ ի քուր ոչ կարեւոր առ նա գնայ* :— Ox. 1. *բաժանէ ի միմեանց զքոյրն եւ զեղբայրն առնու* .— Ox. 2, Bor. *բաժանէ ի մէկ մէկէ զքոյր ու* [=Bor. *եւ*] *զեղբայր առնու գընայ* [= Bor. *գնայ*] .— **ՁՀ.** *Ոչ եղբայր կու խնայէ, եւ ո՛չ քոյր առնու* :—

15– Ox. 2. *Հայնց* .— **ՁԵ.** *յանց* .— Ox. 2, Bor. **ՁԵ.** *կրակ* .— Ox. 2, Bor. *դնէ ծնողացն* .— Ox. 1. *դընէ* .— **ՁԵ.** *ծնողացն* .— **ՁՀ.** *ծընողացն* .— Bor. *յաւիտե՟ն* .— Ox. 1, Ox. 2, Bor. **ՁԵ.** *մնայ* :—

16– **ՁԵ.** *զհայր* .— **ՁՀ.** *հայրն* .— Bor., Ox. 1, **ՁԵ.** *մայրն* .— Ox. 2. *զմայրն*. — Ox. 2, Bor. *առնու տանի* .— Ox. 1. *կաթնկեր տըղայն տուն* .— Ox. 2. *կաթընկերն ի տունն մնայ* .— **ՁԵ.** *որ կաթնկերն որբ կու մնայ* .— Bor. *կաթընկերերն* .— *մնայ* .— **ՁՀ.** *որբ կու մնայ* .—

17– Ox. 2. *հայնց* .— Bor. *Հայրն ցորբեր* :—

Թ.

Ի հիմնէ տուն կու քակէ, որ այլ խկի չէն չի մընայ:
Հանց ցանկո՛ւթիւն խափանէ, որ իւր նըման խկի չի կայ.
Ո՛չ սըրբոց կու ամաչէ, ո՛չ Աստուծոյ բանիւ կու գայ:
Մեղաւո՛րաց չողորմի՝ չասէ յէգուց նա դարձ կու գայ.
Ո՛չ գողոյ ու՞ ի պխակէ, ո՛չ յաղտեղացըն կու պըշկայ:

---

Հանց կրակ տայ ծնողացն որ յօխտեան երթայ մնայ.
Հայրն ու մայրն կու տանի, կաթնկերերն որբ կու մնայ:
Հանց որբեր յետ կու թողու որ սար ու ձոր ամէն կու լայ,
Ի հիմնէ տուն կու քակէ, որ այլ խկի չէնք չի մնայ:

---

Պահլաւո՛ւնեաց ու՞ ի Քաջանց, ոչ երկընչի ու՞ ոչ վախենայ,
Զինչ ծընեալ կայ մեռանի, մահն ամենին հաւասար կու գայ:
Ո՛չ մեծատան, ո՛չ աղքատի յորժամ հասնի՝ համբեր չը տայ,

---

18– **ՋԵ**· ի հիմանէ ·— Ox. 1. ի հըմնէ ·— Bor. ու այլ ·— **ՋԵ**· ընաւ ·— **ՋՀ**· չէնք ·— **ՋԵ**· Ox. 2, Bor. չմնայ :—

19– Csl. **ՋՀ**· չունին 19, 20, 21 եւ 22 տողերը ·— Ox. 2, **ՋԵ**· Զայն ցանկութիւն [= **ՋԵ**· ցանկութիւնն] ·— Bor. Հայն ցանկութ՞ի ·— Ox. 1. ցանգութ՞ի ·— Ox. 1, **ՋԵ**· կու խափանէ ·— Ox. 1. իւրն ·— **ՋԵ**· իր նման ·— Bor., Ox. 2. նման ·— **ՋԵ**· ըսկի ·— Ox. 2, Bor. **ՋԵ**· չկայ :—

20– Ox. 1, Bor. ոչ այն ·— Ox. 2. յայն ·— Ox. 1. ս՞բոց ·— Bor., Ox. 2, **ՋԵ**· սրբոցն ·— Bor. կամաչի ·— Ox. 2. կամաչէ ·— **ՋԵ**· կամաչէր ·— Ox. 2, Bor. որ յա՞յ ·— գայ ·— **ՋԵ**· որ ա՞յ մարդ լնենայ :—

21– Ox. 1. մեղաւորացըն ·— Ox. 2, **ՋԵ**· մեղաւորացն ·— Bor. չի ողորմի ·— **ՋԵ**· Ox. 2. ոչ ողորմի ·— Ox. 2, Bor. թէ յէգուց [=Bor. յեգուց]ի ·— **ՋԵ**· ի դարձ :—

22– Bor. ոչ գոյղոյ ու ի ·— **ՋԵ**· ոչ ի գոթոյ աւուի ·— Ox. 2. ի գոթոյ ու ի ·— **ՋԵ**· Bor., Ox. 2. յաղտեղացն [=**ՋԵ**· աղտեղացն] կու պշկայ [=**ՋԵ**· պըշկայ] ·— Ox. 1. յաղտեղաց կու գարշի նա :—

23– Ox. 2, Bor. պահլաւանից ·— **ՋԵ**· պահլաւունանց ·— **ՋՀ**· Բահլաւանաց ·— Ox. 1. Ox. 2, **ՋԵ**· եւ ի ·— **ՋՀ**· ւի քաջաց ո՛չ երկնչի ոչ ·— **ՋԵ**· ոչ ·— Bor. վախենա :—

24– Ox. 1. Զինչ որ ծնեալ ·— Bor. որ ծնել ·— **ՋԵ**· զինչ որ ծնել ամէն մեռնի · — Bor. մեռանին ·— **ՋՀ**· որ ծընի՝ ամէն մեռնի, մահն ամենուս համար · — Bor., Ox. 2. հաւսկայ ·— Ox. 1. ամենի հասեալ ·— Bor. գու գայ :—

25– **ՋԵ**· Ոչ մեծատուն ւոչ ·— Bor. ոչ մեծատուն ոչ ·— Ox. 1. յերբ հասանի · — Bor., Ox. 2. չտայ :—

Թ.

*Հանց ընութիւն զինչ մահն ունի՝ չեմ իմանալ՝ թէ նա խըղճայ:*
*Յորժամ ելնէ տաքն ու կակուղն, զեմ հովն ու չորն անպիտանայ.*
*Լըսէ խրատ ի Ֆըրկանէս, իսկի յայս կեա՛նքըս չահ չի կայ:*
*Մինչդեռ տղայ ես ու մանուկ, այսաւր զէնգցէն բանըն հոգա՛յ:*
*Զինչ ցանկութիւն մեղաց ունիս՝ զամէնըն թող և՛ ազատ մընա՛յ:*
*Ֆըրիկն հա՛նց պարզ է խաւսել, որ ամենայն մարդ իմանայ,*

---

*Բահլաւունաց եւ ի քաջանց ոչ երկընչի ոչ վախենայ,*
*Զինչ որ ծնի ամէն մեռնի մահն ամենուս համար կու գայ:*
*Ոչ մեծայտան ոչ աղքատի յորժամ հասնի համբերք չի տայ,*
*Հանց բնութի՜ զինչ մահն, չեմ իմանալ թէ նայ խղճայ:*
*Յորժամ ելնէ տաքն ու կակուղն զեմ հովն ու չորն անպիտենայ,*
*Լսէ զխրատ ի Ֆրիկէս իսկի այս կեանքս չահ չկայ:*
*Ֆրիկն հանց բան է խօսել, որ ա՜մ միտք իմանայ,*

---

26– **Ձե**· *յանց բնութիւն ինչ* — Ox. 1. *բնութ՜ի զի՞նչ* — Bor. Ox. 2, *հայնց բնութ՜ի* — **Ձհ**· *բընութիւն* — Bor. *չիմ իմնալ*· Ox. 1. *ի մընալ* — **Ձե**· *իմնեալ*· Ox. 2. *ի մնալ* — Ox. 1. *խըճա* — Ox. 2, **Ձե**· Bor. **Ձհ**· *խղղայ*:—

27– Ox. 1. *ելնի*· *նա՛ հովն* — **Ձհ**· *դէմ* — **Ձե**· *դէմ հաւվն* — Bor. *անպիտանա* — **Ձհ**· *անպիտենայ*:—

28– Ox. Ox. 2, **Ձե**· *լսէ* — **Ձհ**· *զխըրատ* — Ox. 1. *ի Ֆրիկէս* — **Ձհ**· *Ֆըրիկէս* — **Ձե**· *այս կանքն* — Ox. 2, Bor. *չահ չկայ* — Ox. 1, **Ձե**· *չահի չը կայ*:—

29– Csl. **Ձհ**· չունին 29 *եւ* 30 *տողերը*:— Ox. 1, Bor. **Ձե**· *Մինչդեռ* [= **Ձե**· Bor., *ինչդեռ*] *մանուկ ես ու տըղայ* [**Ձե**· *եւ տղայ*] — Ox. 2, Bor. *տղայ* — **Ձե**· *զյեկուցէն բանն* — Bor., Ox. 2. *զեգցէն* — Ox. 2. *բանն* — Ox. 1. *հոգա*:—

30– Ox. 1. *ցանգութ՜ի* — Bor. *ցանկութ՜ի* — Ox. 1. *ցանկութ՜ե* — **Ձե**· *մեղացն* — *զամէնն զձէ ու* — Ox. 2. *զամէն դու թող ու ազատ մնայ* — Bor. *զամէնն դու թող* — *մնայ*:—

31– Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե**· *Ֆրիկն* — Ox. 2. *հայնց* — Ox. 1. *հանցեղ* — **Ձհ**· *հանց բան է խօսել* — Ox. 1. *ա՜մ* — **Ձե**· *յամենայն* — Bor. **Ձհ**· *միտք իմանայ*:—

Թ.

*Թէ ճըշմարիտ է բանս ու՞ ողորդ՝ այս կենցաղըս, որ խաբ կու տայ:*
*Զաւրն աղաչել պիտի զԱստուած, որ գիտութեան հոգի մեզ տայ,*
*Որ մենք քըննենք զայս կեանքս ու զայն, թէ ո՞րն հոգոյս ի բան կուգայ:*
*Որն հաճելի է Աստուծոյ եւ մեզ աւգուտ ա՛ն պիտենայ.*
*Որ բաժանենք զլաւն ի վատէն, որ աւգնական առ մեզ մընայ:*
*Ով որ ունի միտք ու հոգի, թող զիւր յետի աւրըն հոգայ,*
*Մահըն կուգայ յանկարծակի, այլ չի թողուլ որ նա չընչայ:*
*Զաւակն յաւիտեան չը թափէ, ոչ փոչիմնելն ի բան կու գայ,*

---

*Ճշմարիտ է բանս ու կայ, որ այս կենցաղս մարդն խափ կու տայ:*
*Զօրն աղաչել պիտի ա՟ծ որ գիտութ՟ե հոգի մեզ տայ,*
*Որ մենք քննենք զայս կեանքս ու զայն, թէ որն հոգոյս [ի] բան կու գայ:*
*Ով որ ունի միտք ու հոգի թող զիր յետի աւրըն հոգայ,*
*Մահն կու գայ յանկարծակի, այլ չի թողու որ նա չնչայ:*
*Զաւակ անդէն չէիր թափող, ոչ փոշմանիլն ի բան կու գայ,*
*Այս [է] տեղ զինք թափելու, այսօր զքո բանըն հոգայ:*

---

32– Ox. 1. *ճշմարիտ է բանդ* — ԶԵ· *ողորդ* — Ox. 2, Bor. *ու զորդ* — Ox. 2, ԶԵ· Bor. *որ այս կենցաղս* — ԶԵ· *խափ* — Ox. 1, ԶԵ· *դա* — ԶՀ· *ճշմարիտ է բանս ու կայ որ այս կենցաղս մարդն խաբ կու տայ*:—
33– ԶՀ· *Զօրն* — Ox. 2, ԶԵ· *գիտութ՟ե* — Ox. 1. *տա*:—
34– Ox. 1, Ox. 2, Bor. ԶԵ·, ԶՀ· *քննենք* — Ox. 2. *կեանս* — ԶԵ· *ան* — Ox. 2. *թէ յորն* — ԶԵ· *թէ ի նոր հոգուն* — Ox. 1. *թէ մեր հոգոյս որըն բան գա* — Bor. *որն*:—
35– ԶԵ· *զոր* — Ox. 2. *Յորն*· Bor. *Յոր* — Ox. 1, Ox. 2, ԶԵ· *ա՟յ* — Bor. — *յա՟յ* — Ox. 1. *մեզ աւգնական* — Ox. 2. *աւգուտն պիտենայ* — ԶԵ· Bor. *աւգուտն* — ԶԵ· *այն* — ԶՀ· CSL. չունին 35 *եւ* 36 *տողերը*:—
36– Bor. *բաժանէն զվատն յաղկէն* — Ox. 1, Ox. 2, ԶԵ· *աւգտակարն*:—
37– ԶԵ· *յետ աւրն* — Ox. 2, Bor. *աւրն* — ԶՀ· *օրըն*:—
38– Ox. 1, Ox. 2, Bor. *մահն* — Ox. 1. *գա* — ԶՀ· *թողու*· Ox. 2, ԶԵ· *չնչայ*· — Bor. *չնչայ*:—
39– Ox. 1, Ox. 2, Bor. չունին *այս տողը* — ԶՀ· *Զաւա՛կ, անդէն չէ իր թափող* — *փոշմանիլն* — ԶԵ· [*ի*] *բան*:—

Թ. *Այս է տեղի՛քըն Թափելոյ, զինչ որ կարես այսաւր ջանայ:*
41 *Հաւսար ամէնքս զՏէրն աղաչենք, որ զմեր հոգոյ աչքըն բանայ,*
*Որ ճանաչել կարենք զԱստուած, ապա Թէ սէրն առ մեզ մընայ:*
*Թէ մեզ լինի երկիւղ ու սէր, նա՛ մեր հոգոյս այլ ահ չի կայ,*
*Արժանաւոր չուտ հանդիպինք Աստուածորդոյն յորժամ, որ գայ:*
45 *Երբ աղաչենք Տէրն ընդունի, փառք ի բարձունըս վերանայ:*
*Ով որ ունի հաւատ բոլոր կամ յարութեան ակն ունենայ:*
*Զինչ խոստացել Աստուած սըրբոցն, զայն անխընայ ի հաւն կու տայ,*
*ԶԱստուած վըկայ բերեմ բանիս, որ ի յայս բա՛նըս ծուռ չի կայ:*
*Յորժամ ըզմիտքըս կու պարզեմ զազդումն հոգոյս ի յիս կու գայ,*

---

40– Ox. 2, **ՁԵ**. Bor. *տեղիքն* — **ՁԵ**. *զինչ կու կարես այսօր* — Ox. 2, Bor. *կու կարես* — Ox. 1. *կարէս* — **ՁՀ**. *Այս է տեղ զինք Թափելու, այսօր ղքո բանըն հոգայ*.–¶ *Այստեղ վերջանում է* CSL.–*ի բնագիրը եւ* **ՁՀ**.–*ի կազմածը*¶ :—

41– Ox. 1. *Եկայք որ աղաչէնք զա՞ծ* — **ՁԵ**. *Հաւասար մեք տէրն աղաչեմք* — Ox. 2. *հաւասար ամէնքդ զտ՞րն* — Bor. *ամենք զտ՞րն* — Ox. 1. *հոգւոյ աչքըս* — Bor. *աչս* — Ox. 2. *աչքն* :—

42– Ox. 1. **Զի** — *կարէնք* — Bor. *կարեն*.— Ox. 1, Ox. 2, Bor. **ՁԵ**. *զ՞ած*. — Ox. 2. *ապայ* — Ox. 1. *նայ մընա՛* — Bor. *մնա՛* :—

43– **ՁԵ**. *լնի* — Ox. 1. *եւ սէր* — **ՁԵ**. *սէր հոգեստնուս այլ* — Ox. 2, *չկայ* — Ox. 1, Bor. **ՁԵ**. *չը կայ* :—

44– Ox. 1. *մենք հանդիպինք* — **ՁԵ**. *յանդիպենք* — Ox. 1, Ox. 2, Bor. **ՁԵ**. *ա՞ծորդոյն* :—

45– **ՁԵ**. Ox. 2. *զինչ* — Ox. 1. *աղաչէնք զտ՞ըն* — Ox. 2, Bor. *զտ՞րն* — **ՁԵ**. *տէրն* :—

46– Ox. 1. *ով ոք հաւատք ունի* — Ox. 2, **ՁԵ**. *որ հաւատ ունի* :—

47– Ox. 1. *խոստացեալ* — Ox. 1, Ox. , Bor. **ՁԵ**. *ա՞ծ* — Ox. 1. *սրբոցն* — Ox. 2, **ՁԵ**. *սրբոց* — **ՁԵ**. Ox. 2, Bor. *անխնայ* :— Ox. 2 [*ի*]*հաւն* — Ox. 1. *անխընա անդէն կու* :—

48– Ox. 1. չունի *այս տողը* — Ox. 2, Bor. **ՁԵ**. *Զա՞ծ վկայ* [=Bor. *վկա*] — **ՁԵ**. *բերեմ բանիս* — Ox. 2, Bor. **ՁԵ**. *բանս* — *չկայ* :—

49– Ox. 1. *Յորժամ որ* — Ox. 2. **ՁԵ**. Bor. *զմիտքս* — Ox. 1. *զմիտքըս* — *զանդումն* — **ՁԵ**. *յազդում* — Bor., Ox. 2. *ազդումն* — Bor. *հոգւոյս* — **ՁԵ**. *հոգոյն որ յիս* :—

Թ. Երբ կու ծաղկի միտքս ու հոգիս, լեզուս իմ հանց պըտուղ կուտայ։

Ով որ լըսէ յաւժար սըրտիւ կամ իմանայ, թէ յո՞ւստ կու գայ,
Փառաւորի ամէն հոգի՝ ականջուերոյն անուշ կու գայ։
Փառք Աստուծոյ միշտ կենդանոյն, որ հանց շնորհք Նա մեզ կու տայ,
Որ կու կարենք հանց բան ասել, որ իմաստնո՛ցըն դուր կու գայ։
Հազար թէ հանց շընորհք ունիս քեզ մէկ Սուրբ Գիրք այլ պիտենայ,
Որ այս կենացս ողջոյն ասես, մինչ չէ եկեր մահն ի վերայ։
Ես աղաչեմ զամենեսեան, ով զիմ ողբա՛նքըս լըսենայ,
Թող չըր խաբի յանցաւորէս՝ սորա աղէկն ի բան չի գայ։
Ով որ յայս կեանքս է խիստ ուրախ՝ յանդէնըն շատ ի լաց կենայ,
Աստուած ահէնէ զայն կարդացողն, որ իմ խրատս առ ինք մընայ։

---

50– Զե. յերբ.— Bor. զմիտքս.— Ox. 2. միտք.— Զե. չունի եւ.— լեզու իմ յանց.— Ox. 2. հայնց։—

51– Ox. 1, Ox. 2, Զե. լսէ.— Ox. 2. յօժար.— Ox. 1, Ox. 2, Bor. Զե. սրտիւ.— Ox. 1. ի մանա.— Ox. 1, Ox. 2, Bor. Զե. յուստ.— Ox. 1, Զե. գա՛։—

52– Ox. 1, Ox. 2, Bor. Զե. հոգին.— Ox. 1. հոգով մարմնով ուրախանայ.— Զե. ականջվընուն.— Bor. ականջերոյն։—

53– Ox. 1, Ox. 2, Bor. Զե. ա՟յ.— Զե. յանց.— Ox. 2. հայնց.— Ox. 1. շնորհ.— Ox. 2, Bor. նայ.— Ox. 1. տա։—

54– Ox. 1. կարենանք.— Ox. 2. հայնց.— Ox. 1. որ իմաստունն հաւան կենայ.— Զե. իմաստոնցն.— Ox. 2. իմաստնոց դիւր։—

55– Ox. 2. հայնց.— Ox. 1. շնորք.— Bor. շնոր.— Ox. 1. Ս՟ր գիրք.— Զե. մէկիկ այլ իրք պիտենայ.— Bor. մէկիկ իրք այլ.— Ox. 2. մէկ իրք այլ։—

56– Ox. 2, Bor. կենցաղս.— Զե. ողջուն.— ինձ չէ.— Bor. Ox. 2. զինչ չէ. — Ox. 2, Bor. Զե. եկել.— Ox. 1. ի վերա. Bor. ի վ՟ր։—

57– Bor. զամենեսե՟ն.— Ox. 1. սլէ [=լսէ] նա՛.— Bor. լըսէ։ Նա.— Զե. լսէ նայ.— Ox. 2. լսէնայ։—

58– Ox. 1. չի խաբի.— Զե. չխաբի անցաւորիս.— Bor. չխաբի յանցաւորիս. Զե. դորայ.— Ox. 1. սարայ.— Ox. 1, Bor. Զե. աղէկըն.— Ox. 2, Զե. Bor. ի բան.— Զե. Bor. չկայ.— Ox. 2, Ox. 1. չգայ։—

59– Զե. չունի որ.— Ox. 1. անդէնըն.— Bor. յանտէնն։—

60– Ox. 1, Ox. 2, Bor. Զե. ա՟ծ ա՟հնէ.— Ox. 1. ժողովուրդն որ.— խրատն. — Bor., Ox. 2. մնայ.— Զե. կենայ։—

Թ. Աշխարհս ամէն սուտ կու դատին, ես եմ գըտել հանց քիմիայ,
Ոսկի ու̆ արծաթըըն զայն չարժէ, զի յիշատակ այս կու մընայ:
Թէ խելք ունինք նա՛ հանց կենանք, զինչ Աստուծոյ սիրտն ուզենայ՝
Սուրբ եւ անբիծ եւ անարատ, որ ըզբարին յերակ հոգայ:
Ցայնում լինինք մարդ կատարեալ, որ նենգութիւն ի մեզ չ̆մնայ.
Այն է գըլուխ ամէն բանի, որ զամենայն մարդ սիրենայ:
Զինչ ըզփորձած ոսկի լինի, որ ի բովէն ահ չունենայ,
Աւրհնեալ անունն ըՍտեղծաւղին, որ հող մարդոյս խաւսք լինենայ:
Աստուած աւրհնէ զայն կարդացողն, որ ըզՖըրի՛կըս յիշենայ.
Ինքն այլ յիշուի ողորմութեամբ, երբ Գաբրիէլ փողով ցընծայ:

---

61– Ox. 1. *ես գտել եմ* .— Ox. 2. *հայնց* .— Ox. 1. *քէմիայ* .— Ox. 2. *քեմիայ* :—

62– Ox. 2, Bor. *ոսկի ու արծաթն* .— **Ձե**. *ոսկի արծաթն* .— Bor. *չաժէ* .— **Ձե**. *երբ յիշատակ* .— Ox. 1. *ինձ յիշատակ* .— Bor., Ox. 2. *մնայ* :—

63– **Ձե**. *ունիմք* .— Ox. 2, **Ձե**. *նայ հայնց* [=**Ձե**. *յանց*] .— Ox. 2. *զին*[*չ*] .— Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե**. *ա՟յ* .— **Ձե**. *կամին* .— Bor. *ուզենա՛* :—

64– Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե**. *ս՟բ* .— Ox. 1. *ամբիծ* .— *յերկար* .— **Ձե**. *խոկայ* :—

65– Ox. 1. *Ապայ* .— **Ձե**. *այն* .— Bor. *Ցայնումն լինիք* .— Ox. 2. *Ցայնումն*. — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե**. *նենգութ՟ի* .— Ox. 1. *մեզ* .— **Ձե**. *առ մեզ* .— Ox. 1. *չի մընայ* .— Bor. *ի մեզ չկայ* :—

66– Ox. 1. *այս* .— Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե**. *գլուխ* .— Bor. *ամեն* .— Ox. 1. *զա՟մ* .— **Ձե**. Ox. 2. *սիրենայ* :—

67– Ox. 1. *Քան* .— Bor., Ox. 2. *զփորձած* .— **Ձե**. *Զինչ որ փորձած* .— *լինայ* .— *ի քուրէն* :—

68– Ox. 1, Ox. 2, **Ձե**. *ա՟հեալ* .— Bor. *Ա՟հել* .— Ox. 1. *անունըն* .— Ox. 2, **Ձե**. *անուն* .— Ox. 1. *ստեղծաւղին* .— Ox. 2, Bor. *ստեղծողին* .— **Ձե**. *մարդասիրին* .— **Ձե**. *որ հողուս յանց պտուղ կու տայ* :—

69– Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե**. *Ա՟ծ ա՟հնէ* .— Ox. 2, Bor. **Ձե**. *սիրելին* .— Ox. 1. *յորժամ երգէ զՖրիկն յիշեա* .— OxB. 2, Bor. *զՖրիկն ինքն յիշենայ* [=Bor. **Ձե**. *յիշէնայ*] :—

70– **Ձե**. *որ յինքն յիշութ՟ի ողորմութ՟ե յերբ* .— Ox. 2. չուճի *այլ* .— Ox. 1. *յիշւի* .— Ox. 1, Ox. 2, Bor. *ողորմութ՟բ* .— Bor. *գաբրիել* .— Ox. 2. *գաբրիէլ* .— Ox. 2, Bor. **Ձե**. *ցնծայ* .— Ox. 1. *երբ ք՟ս ի դատաստան գա* :—

Թ.

Մեք գոհանամք յՈղորմածէն, թ՜ի մեղաւորքս ո՞նց կու գը-
թայ,
Որ զանարժանս արժանացոյց, որ հանց գոհար ի չար կու
տայ:

Փառք փառաց Թագաւորին, որ մեր մըտա՛ցըս լոյս կու տայ,
Զինչ արեւու շողն ի ջըրին ի մէջ հոգոյս կու թըռուըռայ:

Ով որ Թախսիր խելաց առնէ, թող անհոգ ՚ի քուն չի կենայ,
Թէ չէ նա՛ գողըն մըտանէ եւ աւերէ զտունըն ու գընայ:
Ո՛չ երեկոյ, ո՛չ մէջ գիշեր զայն մարդն իսկի ո՛չ գիտենայ,
Տանուտէրըն արթուն պիտի, որ գողին ա՛ւար նա չի տայ:

*

* *

---

71– Զե. մենք գոհանանք ողորմածէն, որ մեղաւորն յանց կու գթայ.— Ox. 1, Ox. 2. թէ ի.— Bor. թէ.— Ox. 1, Ox. 2, Bor. ոնց.— Ox. 1. գըթա.— Ox. 2. գթայ:—

72– Ox. 1. զաւհար.— Զե. գուհար գիտել է նայ.— Ox. 1, Ox. 2. ի չար կու զայ.— Bor. զու զայ:—

73– Ox. 2, Զե. փառք.— Bor. փառք ի.— Ox. 2, Bor. Զե. մտացս.— Ox. 1. մտացըս.— Զե. լուս:—

74– Ox. 1. զինչ արեւն ի շող.— Ox. 2, Bor. արեւի.— Ox. 2, Bor. Զե. ի ջրին.— Զե. թըռվըռայ.— Ox. 2. թռվռայ:—

75– Ox. 1. Ով հողացեալ մարմին ունի.— Զե. ով որ դաւէ խելացնաւորն է նայ թող անհոգ.— Ox. 2, Bor. արն է.— Ox. 2, Bor. Զե. չկենայ:—

76– Զե. թէ չգայ գողն մտնէ.— Ox. 2. չէ գող մտանէ.— Bor. գողն.— աւիրէ.— Ox. 1. չունի եւ.— աւէրէ զիւր տունն.— Զե. տուն.— Ox. 2, Bor. Զե. գնայ:—

77– Ox. 1, Ox. 2, Bor. Զե. ոչ.— ոչ.— Զե. յերեկ ու ոչ գիշեր, որ զան մարդն չիմանայ.— Ox. 2, Bor. գիշերի.— չունին իսկի.— չգիտենայ:—

78– Ox. 1. տանուտէրն յարթուն.— Ox. 2, Bor. տանտէրն ի յարթուն.— Զե. տանուտէրն.— Զե. ի գողէն.— չտայ նայ.— Ox. 1. աւեր.— Ox. 2, Bor. չտայ:— Գ Զե. իբրեւ անմիջական շարունակութիւն ունի «կանչեմ ի մեղաց վերայ»... Տես էջ — ԻԸ.Գ:

Ժ.

# ՆՈՐԻՆ ՖՐԿԱՆՆ

## ա ս ա ց ե ա լ

## ԽՐԱՏ ՈԳԵՇԱՀ ՎԱՍՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԻ ՇՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՐԲԵՑՈՂԱՑ:

4–4 ‖ 4–4

*Է՛ անուրէն եւ անառակ երիտասարդ լըսէ զիմս դու·*
*Երբ ըզգըլո՛ւխըդ բանայիր, ՚զքեզ ցոյց տայիր մէջ բոզերու,*
*Ցեկեղեցին պիտէր բանալ խոստովանիլ Տեառն Աստուծոյ:*

*Երբ ըզճակա՛տդ ի վեր տայիր կըռուոյ ջանիր հետ ամենոյ,*
*Քեզ հընազանդ պիտէր կենալ՝ յոտք անկանիլ ամէն մարդոյ:*
*Աչաւք նայ՚իր ի կին աւտար՝ վասն չընութեան եւ ցանկալոյ,*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16. Bodl. Libr. fol. 95b-100a :—
*ՀՄՄՏ* ·— Ms. Arm. F. 21, Bodl. Lib. fol. 128a-134a.—
Brit. Mus. Ms. Or. 2622, fol. 146a-152b :—

*ՁԵՌ. Երուսաղէմի.* No. 1070, (fol. ?) :— ¶ *ՁԵ.* Առանց վերնագրի եւ իբրեւ շարունակութիւն է կազմում «*Այս է Համասփիւռ ծաղիկն*» տաղի առաջին վեց տողի ·— *ԺԸ.* ¶

1– Ox. 2. «*Խրատ ոգէշահ ասացեալ Ֆրկանն վ՟ս ցանկութ՟ե երիտասարդի չնութ՟ե*» :— Bor. «*Խրատ ոգէշահ ասացեալ: Ֆրկանն վ՟ս երիտասարսի եւ արբեցողաց*» :— *ՁԵ.* չունի *որեւէ վերնագիր, բացի* «*Ֆրիկ*» *անունից.*

5– *ՁԵ. է՞ անառակ եւ անաւրէն* ·— Bor. *լսէ* ·— *ՁԵ. տուն* :—

6– *ՁԵ. յերբ զգլուխդ* ·— Bor., Ox. 1. *զգլուխըդ* ·— Ox. 1. *բանաիր* ·— *քեզ* ·— Ox. 2, Bor. *ՁԵ. ցուց* ·— Ox. 1. *տաիր* ·— Ox. 1, Ox. 2, Bor. *բոզերոյ* :—

7– *ՁԵ. եկեղեցին* ·— Ox. 2, *ՁԵ.* Bor. *խոստովանել* ·— Ox. 1, Bor., Ox. 2, *ՁԵ. տ՟ն ա՟յ* :—

8– Ox. 2, *զճակատդ* ·— *ՁԵ. յերբ ճակատդ* ·— Ox. 1. *ըզճակատըդ* ·— Ox. 1. *տաիր* ·— Ox. 2, Bor. *կռուոյ* ·— Ox. 1. *կըռուոյ* ·— *ՁԵ. կռվով յետ* ·— Bor. *վ՟ս ամենոյ* ·— Ox. 2. *վ՟ս ա՟միոյ* :—

9– Ox. 2, Bor. *հնազանդ* ·— *ՁԵ. պիտի* ·— *ոտք* ·— Ox. 1. *անգանել* :—

10– Ox. 1. *նաիր* ·— *ՁԵ. նայէր* ·— Ox. 1. *վասըն* ·— Ox. 1, Ox. 2, Bor. *ՁԵ. չնութ՟ե* ·— Ox. 1, *ՁԵ.* չունին *եւ* ·— Ox. 1, Ox. 2, *ՁԵ. ցանկանալոյ* :—

Ժ.

Արդար ու՞ղիղ պիտէր նայել զինչ ի ծընաւղ հանց հաւատոյ:
Յորժամ ականջ դնէիր չարին կամ ըզբաղիր հետ կուսանոյ,
Աւետարան պիտէր լըսել կամ զԵսայեայ կամ Պաւղոսու:
Քիմքըդ Թըխած կացել յերակ զամէն գարշ, պիղծ հոտո-տելոյ.
Այն որ պիտէր քեզ հոտոտել ի չիրիմաց խընկահոտոյ,
Աւրհնել, գովել, փառաւորել զՀայր եւ զՈրդին ընդ Սուրբ Հոգոյ:
Երբ ի գետին դըն՞իր զերեսդ վասըն կարեաց ադամորդոյ,
Զինքն Աստուծոյ պիտէր դընել՝ այն որ կարող էր Նա՛ տա-լոյ:
Շըրթունքըդ ծուխ էր ժողովել, պագչոտէիր հետ ամենոյ,
Քեզ համբուրել պիտէր յուսով ի Նըշխարաց մարտիրոսու:

---

11– Ox. 1, Ձե. ւուղիղ.— Ox. 2. ու ուղիղ.— Bor. ուղիղ.— Ox. 1. նայիլ.— Ձե. Bor. ի ծնաւղ.— Ox. 2. ի ծնաւղաց.— Ձե. վանց.— Ox. հաւատով:—

12– Ox. 1. չունի 12 եւ 13 տողերը:— Ox. 2, Bor. Ձե. զբաղիր.— Ձե. կուսանու.— Ox. 2. կուսանոյւ:—

13– Ox. 2, Ձե. լսել.— Ox. 2, Bor. Ձե. զեսայեայ.— պաւղոսու [= Ձե. պօղոսու]:—

14– Ox. 1. Քիմքըտ.— Ox. 2, Bor. քիմքդ.— Ձե. Գիմք տեառն է ի խաց կա-ցել.— Bor. Ox. 2. դխաց.— Ox. 1. կացեր.— Ox. 1, Ox. 2, Bor. յե-րակ ի գարշ.— Ox. 2. հոտոտալու:—

15– Ox. 2, Bor. Զայն.— Ձե. զան.— Ox. 2, Bor. ի չիրամաց.— Ձե. իրեկ-ուանն խունկաց հոտու:—

16– Ox. 2, Bor. չունին այս տողը.— Ox. 1, Ձե. ա՟հել.— զհայր.— զորդին. ս՟ր հոգոյ:—

17– Ձե. Երբ որ. Ox 1. դը՞նէիր.— Ox. 2. դնիր.— Bor. դնէիր.— Ձե. դնէր.— Bor. զերեստ.— վ՟ս.— Ox. 2. վասն.— Ox. 2. ադամ որդոյ.— Ձե. վասն նըկարեց ադամորդու:—

18– Ox. 1. ինքդ.— Ox. 1, Ox. 2, Bor. Ձե. ա՟յ.— դնել.— Ձե. այն կարողն էր նայ տալու:—

19– Ox. 2, Bor. Ձե. շրթունքդ.— Ձե. ցոփ էր սուստել.— Ox. 2. ցուխ.— Ox. 2, Bor. պագչոտայիր.— Ձե. պագչոտ էիր ամէն ժամու:—

20– Ձե. զոր համբուրել պիտէիր.— ի նշխարացն.— Ox. 1, Ox. 2, Bor. ի նշխարաց:—

Ժ.

Դու զատամունքդ կըրճըտէիր զինչ նենգաւոր, հարբած ուղտոյ,
Քաղցըր պիտէր զինքըդ բանալ՝ անուշ խաւսել հետ սիրելոյ:
Զլեզուդ մըխել ես չար ու սուր, չես ձանձրանալ յիշոց տալոյ,
Փառաբանող ստեղծած է դա՝ զտիւ եւ զգիշեր զառաւաւտու:
Բերանըդ պի՛ղծ է ու զազիր ի յամենայն պիղծ ուտելոյ,
Պիտէր իւրմո՛վըդ ճաշակ՞իր սուրբ յարենէ եւ մարմընոյ:
Զխըռչակըդ լայն ես դու բացեր՝ զհարամն անհոգ ի կուլ տալոյ,
Կարաւտ պիտէր զինքդ պահել յամէն պըտղոյ ու՞ի պահս կալոյ:
Լանջացդ անուշ դայր քո յերակ ձեռըն կընոջ անաւրինոյ,
Զոր նարաւտիւ էր սընուցած, խաչըն՝ նըշան էր տէրունոյ:
Բազուկըդ հա՛ստ է եւ յաղթող, վասըն կըռուոյ եւ ծեծելոյ,

---

21. Ձն. զատամունքըս կըտըրճէիր.— Ox. 2. կրճտէիր.— Ox. 1, Bor. կրճըտէիր.— Ox. 1. ուղտու:—

22– Ox. 2, Ձն. քաղցր.— Ox. 2. զինքս.— Bor. Ձն. զինքդ.— Ox. 2, Bor. Ձն. բանալ. ծիծաղելով դէմ սիրելոյ [= Ձն. սիրելու]:—

23– Ox. 2, Bor. լեզուդ սրել.— Ձն. մխել.— չի.— յիշունց.— Ox. 1, Bor. յիշոնց.— Ox. 2, Ձն. տալու:—

24– Ձն. ստեղծուած է դայ [= Ox. 2, Bor.].— Ձն. տիւ ու գիշեր առաւօտու.— Ox 2. գիշեր.— Bor. զառաւաւտոյ:—

25– Ox. 2, Ձն. բերանդ.— Ox. 2, Bor. պեղծ.— Ձն. է եւ.— Ox. 1. ի ա՞մ.— Ox. 2, Bor. ի յ՞ամ.— Bor., Ox. 2. պեղծ.— Ox. 1. Ձն. ուտելու:—

26– Ox. 2, Bor. յիւրմովդ.— Ձն. սիրովդ.— Ox. 1. Ձն. ճաշակել.— Ox. 1, Ox. 2, Bor. Ձն. ս՞ր.— Ox. 2, չունի եւ.— Ox. 2. մարմընու.— Ձն. ի մարմնոյ:—

27– Ox. 1. Զհըռչակըդ.— Ox. 2, Bor. Ձն. Զխռչակդ.— Ձն. լան.— Ox. 2, Bor., Ձն. բացել.— Bor. զհըրամանըն.— Ox. 1, Ox. 2. զհրամանն.— Ձն. զհարամն հոգի [ի] կուլ տալու [= Bor., Ox. 1]:—

28– Ox. 2, Bor. զինքդ.— Ձն. զինքն.— ամէն պտղոց.— Ox. 2. պտղոց ի.— Bor. պտղոյ.— Bor. Ձն. ի պաս:—

29– Ox. 1, Ձն. լանջանցդ.— Ձն. երակ.— Ox. 2, Ձն. ձեռն.— Ox. 1, Ox. 2, Bor. կնոջ.— Ox. 2, Bor. անաւրինու.— Ձն. անաւրէնու:—

30– Ox. 1. զօր.— Ձն. նարաւտի.— Ox. 2, Bor. սնուցած.— Ձն. խաչ.— Ox. 2, Bor. խաչն.— Ձն. նշան էր տէրն իւրոյ.— Ox. 1. տ՞րունոյ:—

31– Ձն. բազուկդ.— Ox. 1, Ox. 2, Bor. էր.— Ձն. վասն կռվոյ.— Bor. վ՞ս կռու.— Ox. 2, վասն կռուոյ.— Ox. 1. կըռուոյ:—

ժ.

Զայն, որ պիտէր քեզ տարածել յերկինս ի վեր խընդըրուածոյ:
Ձեռներըդ պիղծ եւ անմաքուր յաղտեղութեանց ւ՞ ի զըրկելոյ,
Զինքըն ի գործ պիտէ՞ր պահել կամ երեսիդ խաչ հանելոյ:
Սիրտըդ լըցած է նենգութեամբ՝ զերդ գազանի, զինչ ըզգայլոյ,
Զինքդ ողորմած պիտէր պահել դէմ աղքատաց եւ որբերոյ:
Միտքդ ու հոգիդ է խաւարել ի յաշխարհի սուտ բաներոյ,
Զինքըդ պայծառ պիտէր պահել՝ տաճար մաքրել Տեառն Աստուծոյ:
Ստամոքդ արձակ ես դու զուգել՝ զինչ ըզձիու կամ ըղջորոյ,
Պարկեշտութեամբ պիտէր կենալ, սակաւ ուտել ի կերակրոյ:
Մարմինըդ դեր է եւ քընքուշ՝ հեշտ եւ անուշ զինքդ պահելոյ,

---

32– Ձե. չունի *որ*.— Bor. *պիտեր*.— Ձե. *երկինքն ի վեր յանց խնդրելու*.— Ox. 2, Bor. *յերկինքն ի վեր վանց խնդրելոյ*:—

33— Ox. 1. *Ձեռքըրդ պեղծ է*.— Ox. 2, Bor. Ձե. *Ձեռներդ*.— Ox. 2. *է պիղծ*.— Bor. *պե[ղ]ծ*.— Ox. 1, Ox. 2, Bor. *յաղտեղութ՟եց*.— Ձե. *աղտեղութեանց ու զերկելու*.— Ox. 2. *ու ի*.— Ox. 1. *զրկելոյ*:—

34– Ox. 2, Bor. Ձե. *զինքդ*.— Ox. 1. *զինքդ ի գործ պիտէր*.— Ox. 2. չունի *պահել*.— Ձե. *երեսդ ի հանելու*.— Ox. 1. *կնքելոյ*:—

35– Ձե. *լցեալ է չարութեամբ*.— Ox. 2. *լցեց է*.— Ox. 1, Ox. 2, Bor. *նենգութ՟բ*.— Ox. 1. *քան ըզգալոյ եւ զառիւծոյ*.— Ձե. *լերդ գազան*.— Bor. *զգայլու*.— Ox. 2, Ձե. *զգալու*:—

36– Ox. 1. *ինքդ*.— *լինել*.— Ձե. *դեմ*.— Bor. *որբերու*.— Ox. 2. *որբոց*:—

37– Ox. 2, Bor. Ձե. *էր*.— Ox. 2, Bor. *հետ*.— Ձե. *յետ աշխարհս*.— Bor., Ox. 2. *բաներու*:—

38– Ox. 2, Bor. Ձե. *Զինքդ*.— Ձե. *պիտէր պայծառ*.— *զինքդ ա՟յ* [= Ox 1, Ox. 2, Bor.]—:

39– Ox. 2. *զստամոքսդ*.— Ձե. *ստամաւքդ*.— *դու բացել*.— *զջորոյ եւ կամ ձիոյ*.— Ox. 2. *զձիոյ եւ ըզջորոյ*.— Bor. *զջորու*:—

40– Ox. 1, Ox. 2, Bor. Ձե. *պարկեշտութ՟բ*.— Ox. 2. *պահել. կենալ*.— Ox. 2, Bor. Ձե. *ուտել զինքդ* [= Ձե. *զինքն*] *ի չափու* [=Bor. *չափոյ*]:—

41– Ձե. Bor. *Մարմինդ*. Ox. 1, Ox. 2, Bor. *հեշտ*.— Ox. 1, Ox. 2. *էր*.— Bor. *եր*.— Bor., Ox. 1, Ox. 2. Ձե. *քնքուշ*.— Ձե. *զինքն*.— Ox. 2. *պահելու*:—

ժ.

Զարչարանաւք պիտէր պահել՝ ռոճիկ չառնել որդըներու:
Մէջքըդ դըճել ի չար գործոց պառընկութեամբ խառնակելոյ,
Զոր խոնարհել պիտէր յաղաւթս եւ ի բարիս սերմանելոյ:
Ծընկներըդ խոց կացել համակ ի հետ մեղաց շատ դատելոյ,
Ծընրով պիտէր զինքըդ տեռել մէջ գիշերաց աղաւթելոյ,
Կոչկոճելով խիստ չարչարել եւ վարձս առնուլ ի յԱստուծոյ:
Յաւժարութեամբ երթ՞ իր ոտիւքդ վանց դողութեան եւ ցան-
կալոյ,
Զոր քեզ բոկոտ պիտէր վազել՝ վասըն մեղացըդ քաւելոյ:
Ոսկով հանդերձ ես դու հագել ի հրապարակ պարծենալոյ,
Զոր քեզ սեւաւք պիտէր կենալ, որ զըրկեցար յանճառ լուսոյ:
Մորուաւքըդ մարդ ես կատարեալ, խելքըդ պակաս քան զե-
րեխոյ,

---

42– Ox. 2, Bor. **ՁԵ.** *Հալածանաւք պիտէր* [= Ox. 2, Bor. *զինքդ պիտէր*] — **ՁԵ.** *զռոճիկ* — Ox. 2, Bor. **ՁԵ.** *չանել* — **ՁԵ.** *որթընելու* :—

43– Bor. *Մեջքըդ* — Ox. 2. *մէջքդ* — *ճգնել* — **ՁԵ.** *Մէջքդ է ձգել* — Ox. 1. *պոռնկութ՟բ* — Ox. 2, Bor. **ՁԵ.** *պոռընկութ՟բ* —

44– Ox. 1, Ox. 2, Bor. չունին *այս տողը* — **ՁԵ.** *աղաւթս* :—

45– Ox. 1. *ծընգներդ ամեն է խոց կացել* — **ՁԵ.** *ծընկներդ է խո՛ց կացէլ երակ* — Ox. 2. *ծնկներդ խոց կացել* [= Bor. *կացեր*] — Bor. *ի հեչտ* — **ՁԵ.** *ի յետ* :—

46– Ox. 2. *ծնրով* — **ՁԵ.** *ծունդրով* — Ox. 2, Bor. **ՁԵ.** *զինքդ* — Ox. 1. *դեռել* — **ՁԵ.** *առնել* — *աղօթելոյ* :—

47– Ox. 2, Bor. չունին *այս տողը* — Ox. 1. **ՁԵ.** *ի յա՟յ* :—

48– Ox. 1, Ox. 2, Bor. **ՁԵ.** *Յաւժարութ՟բ* — **ՁԵ.** *ուտօք* — Ox. 2, Bor. *աւտաւք* — Ox. 1. *ի դողութ՟ի ցանգանալոյ* — Ox. 2, Bor. *դողութ՟ե եւ ցանկալու* — **ՁԵ.** *եւ սպանելու* :—

49– Bor., Ox. 2. *բոպիկ* — **ՁԵ.** *բոբիկ* — Bor. *պիտեր* — **ՁԵ.** *կենալ* — Bor., Ox. 2. *վասն մեղացդ քաւելու* :—

50– Ox. 1. *հանգել, ի հրապարա*[*կ*] :—

51– Ox. 2. *պիտէր սեւաւք* — **ՁԵ.** *սէվաւք* — Bor. **ՁԵ.** *զրկեցար* — Ox. 2, **ՁԵ.** *անճառ լուսոյն* [= **ՁԵ.** *լուսու*] :—

52– Ox. 1. *Մուրաւքըդ* — Ox. 2, Bor. **ՁԵ.** *Մեղաւքդ* [= Bor. *Մեղաւքըդ*]. — Ox. 2. *կատարել* — Bor. *խելքդ պակաս* — *զերեխու* — Ox. 2. *երեխու* — *զերեխայ* :—

53– **ՁԵ.** *զերդ* — Bor. չունի *զերդ* — Ox. 1, Ox. 2, Bor. **ՁԵ.** *քննող* — Bor., Ox. 2. *զեննու* — **ՁԵ.** *զինու* :—

Ժ.

Զինչ անսասուն ես դու վարել, չես դու քըննող չահու, զենոյ։
Թափէ զգինիդ եւ լըրջացիր եւ իմացիր զաւր տանջելոյ,
Գեմ քան ըզտուր եւ առ չընչոյ՝ մահն է ի մաւտ ադամորդոյ։
Զաւր հանապազ դու կաս ի քուն՝ չես ի ասել Թ՞աւր կայ գալոյ,
Դու զայն ատենն ես մոռացել, որ շատ հաշիւ կայ քեզ տալոյ։
Ցորժամ գոչէ փողն ահագին քեզ ելանել պիտի հողոյ,
Հանց հառաչես դառն ու դըժար, զինչ որոտումն ելնէ յամպոյ։
Հայիս ի յաջ կոյս եւ ի ձախ, դուռըն չունիս իսկի բարոյ,
Երբ հանդիպիս սառնամանեաց՝ հանց սարսափիս զինչ ի դիւոյ։
Ասես եղո՛ւկ հազար բերան, հիմիկ չէ ժամ փոշիմնելոյ,

---

54– Ox. 1. ԶԵ· լրջացիր — Ox. 2, Bor. լըոջացիր — Ox. 2, Bor. ԶԵ· յիմացիր։—

55– Ox. 1. Զի քան — եւ առ չնչոյ — ԶԵ· գէմ — Ox. 2. չընջու — Bor. չնչոյ — ԶԵ· առընջին· մահն ի մաւտ է ադամորդու — Ox. 2. է մաւտ։—

56– Ox. 2, Bor. Դու զաւրն ի բունըդ [= Ox. 2, բուն] կաս ի քուն — ԶԵ· Դու զաւրն ի բուն հաւտ կաս — Ox. 1. չես ասիլ — ԶԵ· չես խալսիլ Թուր — Ox. 1. կա — Ox. 2. գալու։—

57– Ox. 2, Bor. որ քեզ հաշիւ լինի տալու — ԶԵ· որ քո հաշիւն hինի [=լինի] տալու։—

58– Ox. 2. գոչէ — Bor., Ox. 2. պիտի ելնել քեզ — Ox. 2. ի հողու — ԶԵ· պիտի առնէ քեզ ի հողոյ [= Bor.]։—

59– ԶԵ· ռռաջես — Ox. 2, Bor. հառաչել — Ox. 2, Bor. ԶԵ· դժար — Ox. 1. յամբոյ — Ox. 2. ամպո՛ւ — ԶԵ· ամբոյ։—

60– ԶԵ· Նստիս ի յաջ դէմ եւ ահագ — Ox. 2. Bor. դեհ ու ձախու [= Bor. ի ձախու] — Ox. 2, Bor. ԶԵ· դուռն — ԶԵ· չունես — Bor., Ox. 2. բարու։—

61– Bor. սառնամանեց — Bor., Ox. 2, ԶԵ· ի դիւու։—

62– ԶԵ· Այլ ես — Ox. 1. յիմիկ — փոշըմնելոյ — Ox. 2. փոշիմնելու — ԶԵ· փոշիմնալու։—

Ժ.

*Թափես յաչացդ արեան վըտակ, վա՛յ տաս աւուրն ծընանելոյ։*
*Հանց հարկանես զատմունքդ յիրար՝ զինչ ելանէ ձայն կարկըտոյ,*
*Մուրճն ու խաւարն է քեզ պատել՝ զահն է առել անչէջ հըրոյ։*
*Հեղու բոլոր մարմինդ ամէն, զինչ որ հալի մոմն ի հըրոյ,*
*Ցիչես ըզմե՛ղքըն քո զամէն՝ ճար չունենաս կաչառ տալոյ։*
*Մընաս ողորմ եւ լացուցած՝ տարակուսած թ՜ի՞նչ կայ գալոյ,*
*Գայ Թագաւորն թագաւորաց եւ հատուցումն առնէ գործոյ։*
*Զարարարին չար տայ փոխան՝ ճար չունենաս զերծանելոյ.*
*Պապանձի ճա՛րտար քո լեզուդ՝ դըլխակորիս զինչ ըզգայլոյ։*
*Գաղտուկ նայիս աչուերդ ի դուրս, թէ յո՞ր տեղիք եմ գընալոյ,*

---

63– Bor. *աչացդ.*— **Ջե.** *աչիչդ.*— Bor., Ox. 2. *վտակ.*— Ox. 1, Ox. 2, Bor. **Ջե.** *տայ.*— Ox. 1. *աւուրըն ծ՟նանելոյ* [= Bor] — **Ջե.** *ծնանելոյ.*— Ox. 2. *ծնանելու։*—

64– **Ջե.** *արկանես.*— Ox. 1, Bor. *զատամունքդ.*— Ox. 2. *ըզատամունքդ.*— **Ջե.** *իրար.*— *կարկտու.*— Bor. *կարկտոյ.*— Ox. 2. *կարկըտու։*—

65– **Ջե.** *մուրճն ի խաւարիլն ի պատել.*— Bor., Ox. 2. *խաւարն* [= Ox. 2, *խաւար*] *լինի պատել.*— Ox. 2. *ահն.*— Bor. *ահն է պատել.*— **Ջե.** *ահ է առել.*— *հրու.*— Bor. *հրոյ։*—

66– **Ջե.** *այրի.*— *ի հրու.*— Bor. *հրոյ։*—

67– Ox. 2, **Ջե.** *զմեղքդ.*— Bor. *զմեղքն.*— Ox. 2. *ամէնն.*— Bor. *շունենաս.*— **Ջե.** *զերձանելու.*— Ox. 2, Bor. *տալու։*—

68– Ox. 1. *Դառն եւ տըխուր դիմաւք մընաս.*— Ox. 1, **Ջե.** *Մնաս.*— Bor. *գնաս.*— **Ջե.** *լացուած.*— Ox. 1. *տարեկուսած թինչ կա գալու.*— Bor. *տարեկուսաց թէ զինչ.*— Ox. 2. *թէ ինչ.*— **Ջե.** *տարայկուսած ինչ.*— *գալու։*—

69– Ox. 2, **Ջե.** *թագաւորն.*— Bor. *թ՟գր թ՟գաւորաց.*— Ox. 1. *թագաւոր.*— Ox. 2. *գործու.*— **Ջե.** *առնէ բարու։*—

70– Ox. 2. *Զար արարին.*— **Ջե.** *Զարին զչարն տայ.*— Bor. *փողան.*— Ox. 1, Ox. 2, Bor. *չունենա՛.*— Ox. 1. *զերծանելու։*—

71– Ox. 2, Bor. **Ջե.** *պապանձեցաւ խաւսող* [= Bor., *խաւսաւղ*] *լեզուդ, գլուխդ ի կոր.*— Bor. *զգայլու.*— Ox. 2. *ըսգալու.*— **Ջե.** *զգողոյ։*—

72– Ox. 1. *նախս.*— **Ջե.** *Գաղտ կու նայիս.*— Ox. 1, **Ջե.** *յաչերդ.*— Ox. 1. *յաչերուդ.*— Bor. *յաչուերս.*— Ox. 1, **Ջե.** *ի դուս.*— Ox. 1, Ox. 2, Bor. *յոր.*— **Ջե.** *որ.*— Ox. 1, Ox. 2. *գնալու։*—

Ժ․

*Տեսնուս ըղհո՛ւըըն բոըբոքեալ, մեղաց ոըդո՛ւնքըն ի հաչու։*
*Կ'ասեն թէ՝ «Ե՞ըբ գայ մեր ծնաւղն, որ մեք ուտենք անուշ խաչու․*
*Գըլուխն է գեր, ոտքըն փափուկ, անդամքն աղէկ է խորվելու»։*
*Սիրտն ու սակատն եւ փորոտին թանձր է պատել գեր ճըրագու,*
*Բըտած հաւով է սընուցած, անուշ գինի տայր խըմելու։*
*Ջմարմինն անուշ բըտէր յերակ, չունէր կասկած ի հաւս գալու․*
*Աղքատըն գայր մերկ ու քաղցած՝ չըր տայր բաժին իսկի հոգու։*
*Ասէր անմահ մընամ՝ զամէն զանձ ու կումա՛չս ինձ մընալու,*
*Մահըն հասաւ յանկարծակի՝ զիւր ժողոված եթող այլու։*
*Խիստ փոշիման ի վայր մընաց, պաչար չունէր հետ տանելու,*

---

73– Ox. 2, Bor. Ջե․ *Տեսնուլ գհուրն* ․— Ox. 2, Bor. *բոըբոքել* ․— Ջե․ *որ-թունք են* ․— Ox. 1, Ox. 2, Bor. *որդունքն են ի յաչու*։—
74– Ջե․ չունի *այս տողը*։— Ox. 2, Bor. *կու ասեն* ․— Ox. 1. *գա՛* ․— *մեք* ․— Bor. *անոշ խաչոյ*։—
75– Ox. 1, Ox. 2, Bor. Ջե․ *գլուխն* ․— Bor. Ջե․ *ոտնէ* ․— Ox. 2, *ոտքն է* ․— Ox. 1. *անդամն* ․— Ջե․ *աղակ* ․— *խորովելու* ․— Ox. 2. *խորուելոյ* ․— Bor. *խորվելոյ*։—
76– Ox. 1. *Սիրտ* ․— Ջե․ *Սի[ր]տն* ․— Bor., Ox. 2, Ջե․ *ու փորոտուն* ․— Bor., Ox. 2. *ճրագուն* ․— Ջե․ *գերդ ճրագոյ*։—
77– Ox. 2, Bor. *բտած* ․— Ջե․ *Փուրս այս քավով էր սընուցած* ․— Ox. 2, Ox. 2, Bor. *սնուցած* ․— Ox. 1. *անոյշ* ․— Ox. 2. *խմելու* ․— Bor. *խմե-լոյ*։—
78– Ox. 2. *Ջ[մ]արմինն* ․— Bor. *Ջմարմինդ* ․— Ox. 2. *փտէր* ․— Bor. *փտեր* ․— Ox. 1. *յայս տեղս* ․—
79– Ox. 2, Bor. Ջե․ *աղքատն* ․— Ջե․ *գար* ․— Bor., Ox. 2. *եւ*․— Ox. 1. *Բաժին չը տայր* ․— Ox. 2, Bor. *բաժին չտայր* ․— Ջե․ *չը տար* ․— Ջե․ *չը տար* ․— *ըսկիհ ոգւոյ* ․— Ox. 2, Bor. *հոգոյ*։—
80– Ox. 1. [Ա]*սէր* ․— Bor. *Ասեր* ․— Ox. 2, Bor. *մնամ* ․— Ox. 1, Ox. 2, Ջե․ *զանձս* ․— Ox. 1. *կուլաս ինձ* ․— Ox. 2. *ղումաչ* ․— Ջե․ *ղումաչս* ․— Bor. *կումաչ* ․— Ox. 1, Ox. 2, Bor. Ջե․ *մնալու*։—
81– Ox. 2, Bor. Ջե․ *մահն* ․— Ox. 1. *այլոց* ․— Ջե․ *այլոյ*։—
82– Ջե․ *մնած* ․— Ox. 2. *մնաց* ․— չունի— *«պաչար չունէր հետ տանելու»* ․— Ջե ․*յետ տանելոյ*։—

*Ժ.*

*Աւա՛ղ, աաաց, հազար բերան «Ակըն չուն՞ի հանց լինելու»։*
*Ֆըրի՛կ, զարթիր ի խոր քընոյդ՝ եարաղ արա քեզ գընալու,*
*Ժանգոտ պըղինձ ենք հաւասար, ներքեւ հողին ենք փըտելու։*
*Զայս փողըս տանք՝ ոսկի առնունք եւ Աստուծոյ տանք ի չահու,*
*Տանք անցաւոր՝ առնունք անոնց, թէ մեք ունինք ակըն բարոյ։*
*Մեղաց ըզսուզն ի հաւս պահենք, որ դադարենք անդ ի լալոյ,*
*Ցայս տեղըս տանք հոգու բաժին, որ հասանինք անանց լուսոյ։*
*Ով որ կարդայ յայս խըրատէս, թո՛ղ յետ բանայ զականջ հոգոյ,*
*Ոսկով գըրէ ի մէջ սըրտին, զայս բանս յերակ ի միտ առնու։*
*Եւ զանարժան Ֆըրիկ ծառայս արժան արէք զիս յիշելոյ,*
*Որ դուք յիշիք առհասարակ, յորժամ գոչէ փողըն Բարոյ։*

---

83– Ox. 2, Bor. *ավաղ* — **Ձե.** *Աւախ* — *.ակն չունիս յանց ընելու* — Ox., Bor. *ակն* — Bor. *լինելոյ*։—

84– **Ձե.** *Ֆրիկ զարթիր ի քնոյ մեղաց ճանպախ որդէ քեզ գնալու* — Ox. 1, Ox. 2, Bor. *Ֆրիկ* — Ox. 1. *քնոյ* — Ox. 2. *քնուդ* — Bor. *քնոյդ* — Ox. 1, Bor. *արաղ արայ* — Ox. 1. *գնալոյ*։—

85– Ox. 2, **Ձե.** *ժանկոտ* — Ox. 1, Bor. էնք — **Ձե.** *հողինս* — Ox. 1. *եմք*. Bor. *մեք* — Ox. 2, Bor. *փտելու* — **Ձե.** *փթելոյ* — Ox. 1. *փըտելոյ*։—

86– **Ձե.** *Զաս* — Ox. 2, Bor. *փողս* — **Ձե.** *առնումք* — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե.** *ա՞յ*։—

87– Ox. 1. *մենք* — Ox. 2, Bor. **Ձե.** *ակն*։—

88– Ox. 1. *Ըզմեղաց սուքն աղէն պահէնք* — Ox. 2, Bor. *զսուֆն* — **Ձե.** *սուգն* — Bor., Ox. 2. *դադարինք հաւն* — Ox. 1, Bor. *լալու*։—

89– Ox. 2. *Ցայստեղս* — Ox. 2, Bor. **Ձե.** *ի տեղս* — Ox. 2. *լուսոյն* — **Ձե.** *բարոյ*։—

90– Ox. 1. *կարդա* — Ox. 2, Bor. *խմ խրատիս* — **Ձե.** *այս խրատէս* [= Ox. 1]. Ox. 1. *բանա՛ ղակըն* — Bor. *զականջն* — Ox. 2. *հոգւոյ*։—

91– Ox. 1. *եւ զայս գրէ* — Ox. 2, Bor. **Ձե.** *գրէ* — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե.** *սրտին* — Ox. 1. *յերակ զայս բանս* — Ox. 2. *բան* — **Ձե.** *երակ*։—

92– Ox. 2. Bor. **Ձե.** *Ես անարժան* — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե**– *Ֆրիկ* — Ox. 2, Bor. *աժնիկ առնէք* [= **Ձե.**]։—

93– Ox. 1, Bor. *յիշէք* — Ox. 2. *յիշուիք* — **Ձե.** *յիշուէք* — Ox. 2, Bor. **Ձե.** *փողն*։—

Ժ.

*Լըսէք ըզձայնն երանաւէտ, «Եկայք առ իս որդիք լուսոյ»,*
*Խառնիք ի դասն աջակողմեան, տաք աւրհնութիւն Տեառն Աստուծոյ։*
*Երրորդութեան երկըրպագեմք Հաւր եւ Որդոյ եւ Սուրբ Հոգոյ,*
*Եւ փառըս տամք երից անձինդ անբաժանե՛լի համագոյ։*
*Դու ես Աստուած յաւիտենից՝ զիս Քո տեսոյդ արժանացո,*
*Փառըք փառաց Թագաւորիդ, որ ես բազմեալ յաթոռ լուսոյ։*
*Ով զիմ անունըս խափանէ՝ զիւրըն գըրէ պարծենալոյ,*
*Ցասմէնս չառնէ ինք թողութիւն, անդէն զըրկի ինքն ի բարոյ։*

*

* *

---

94– Ox. 1, Ox. 2, **Ձե.** *լսէք* — Bor. *Ասէք* — Ox. 2, Bor. **Ձե.** *զձայն* — Bor. *երանաւետ* — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե.** *եկայք.* [չակերտ չունին]։—
95– Bor. **Ձե.** Ox. 2. *ի դասս երկնաւորաց* — Ox. 2, Bor. *տայք զոհութ՟ի փառք ա՟յ* — **Ձե.** *տուք* — Ox. 1, **Ձե.** *ա՟հութ՟ տ՟ն ա՟յ*։—
96– Ox. 1. *Երրորդութ՟եդ* — Ox. 2, Bor. *երրորդութ՟ե երկըրպագէք* — **Ձե.** *երկրպագէք* — Ox. 1. *երկրպագեմք* — Ox. 1, Ox. 2, Bor. **Ձե.** *հաւր եւ որդոյ եւ ս՟բ հոգոյ* [= Bor. *հոգոյն*]։—
97– Ox. 2, Bor. **Ձե.** չունին *այս տողը*։—
98– Ox. 2, Bor. **Ձե.** *ա՟ծ. եւ կենդանի* [= **Ձե.** *միշտ կենդանի*] — Ox. 1, *ա՟ծ* — **Ձե.** *տեսուդ արժանացու*։—
99– Ox. 2, Bor. **Ձե.** *փառք* — Ox. 2, **Ձե.** *թագաւորին* — Bor. *թ՟գրին* — **Ձե.** *որ է բազմել ի սեռ լուսոյ* — Bor. *բազմել* — Bor., Ox. 2. *ի սեղան*։—
100– **Ձե.** *անունս* — Bor. *խաբանէ* — Ox. 2, Bor. *զիւրն* — **Ձե.** *զինքն իւր գրէ*։ — Ox. 2. *պարծենալու*։—
101– Ox. 1. *ոչ գտանէ թողութ՟ի* — Bor., Ox. 2. *ինքն թողութ՟ի* — **Ձե.** չունի *թողութիւն* — Ox. 2, Bor. **Ձե.** *զրկի* — Ox. 1, **Ձե.** *ի լուսոյ* — Ox. 2. *ի բարու*։—

ԺԱ.

# ՆՈՐԻՆ ՖՐԿԱՆՆ

ասացեալ

## ՎԱՍՆ ՀՈԳՈՑ.

4-4 || 4-4

*Երբ քեզ խըրատն էր պատրաստած,*
*Սիրով ստեղծեալ անդ էր դըրած,*
*Լուսոյ զգեստով էր զարդարեալ,*
*Պըսակ լուսոյ էր քեզ զուգած.*
*Զանանց բարին էր յաջողել,*
*Անմահ աշխարհն էր քեզ տուած,*
*Սերովբէիւք պարիսպ ածեալ,*
*Մէկ պատուիրան էր քեզ գըրած։*
*Կե՛ր դու յամէն պըտղոյ, Ադամ,*
*Զարդ ի մէկէն, որ չէ հրամած,*
*Երբ ի հողոյ էր զքեզ զուգել,*
*Դու ո՞նց կամիր լինել Աստուած։*
*Երբ քո ստեղծուղն էր խոնարհել,*
*Ոտնաձայնիւ առ քեզ եկած,*
*Դու յամաւթոյն ˘իր փախուցեալ,*
*Եւ թըղենեաւն էիր ծածկած։*
*Տէրըն ձայնիւ առ քեզ գոչեաց,*
*«Ադամ, Ադամ, ո՞ւր ես թագած».*
*Քեզ ո՞վ եղեւ առիթ բանիդ,*
*Դու ո՞նց հանիր զպատճառն յԱստուած։*
*Կինըդ, որ տուիր դու ˘իր ստեղծեալ,*
*Այսոր համար եմ աքսորած.*
*Քեզնով եղեւ երկիր պագեալ,*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16. Bold. Lib. fol. 100a-107ա։—

*Ֆրէկի այս տաղը պահուած է միմիայն այս ՁՌ–ի մէջ, միւս բազմաթիւ ՁՌ–ներից եւ ոչ մէկն ունի որեւէ փոփոխակ։—*

3– *վասն հ[ոգոյ]*։– 4– *խրատն*։– 5– *անդիր*։– 7– *պսակ*։– 9 – *տըւած*։– 11– *գրած*։—

12– *կեր* ·— *պըտղոյ ադամ*։– 15– *ոնց* ·– *ա˜ծ*։— 16– *քու*։– 18– *իր* ⊢ 19– *թըղենաւն*։–

20– *Տ˜րըն*։– 21– *ադամ· ադամ ուր ես թաfած*։– 22– *ով*։– 23 ·– *ոնց* ·– *յա˜ծ*։–

24– *իր ստեղծել*։– 30– *խաբե˜լ*։– 33– *էր*։– 34– *լսել*։– 36 *ոչ*· –*ոչ*։– 37– *թեւովս*։–

ԼԳ.

Հայց մի չիշխեաց յիւրմէն ուտել,
Թէ չէ ռոճիկ իւր արարել
Զ՞բոցն ու ըզկրակն՝ ի յինք վառել:
Դու քո ձեռաւքդ ես հոր փորել
Եւ քո կամաւքդ ի ներս մըտել,
Զայս ո՞ւմ կամիս դու մեղադրել,
Խընդիր կուգան ըզքեզ տանել:
Դաւք հրեշտակաց են սըրտմըտել,
Զսառնամանիքն են պատրաստել,
Ըզտարտարոսն են քեզ պահել,
Անքուն որդունքն են կըտակել:
Կան եւ մընան ըզքեզ բերել,
Զիւրեանց ժանիքն են խիստ սըրել,
Ի՞ միսդ ւ՞արիւնդ են ծարաւել
Եւ ըզքեզ խիստ են կարաւտել:
Խաւարըն թանձր է պալ կապել,
Հուրն ի նորա միջին վառել,
Մեղաւորացն է պատրաստել,
Դառն եւ դըժար եմ զնա լըսել:
Զինչ կարդացել ես ու լըսել,
Զինչ նախահարքն են վըկայել,
Զայն չըկամիս իսկի լըսել,
Թէ յիմ ճակատս է՞ր զայս գըրել:
Ո՞վ է իսկի զԱստուած խաբել,
Կամ պատճառաւ հոգին թափել,

22– Ox. 1. ռուճիկ.— ՏՀ. ռոճիկս իւրն:—
23– ՏՀ. Ox. 1. զկրակն [= ՏՀ. կրակն] ես քեզ վառել:—
24– Ox. 1, ՏՀ. խոր:— 25– ՏՀ. ես ներս մըտեր:— 26– Ox. 1. ում:—
27– ՏՀ. խնդիր են հէնց զքեզ:— 28– Ox. 1. հրեշտակացն են սրտմտել.— ՏՀ. սրտմտեր:— 29– Ox. 1, ՏՀ. զսառամանիքն:—
30– Ox. 1. որդունքն են կըտապել.— ՏՀ. կտակել:—
32– ՏՀ. կան ու. Ox. 1. մընան զքեզ:—.
33– Ox. 1. ՏՀ. միս եւ յարիւնդ են:— 35– ՏՀ. չունի այս տողը:—
36– Ox. 1. բալ:— 37– ՏՀ. Հուրն նորա:— 39– ՏՀ. դժվար:
41– Ox. 1. նախայհայրքն են վըկա'ել:— 42– ՏՀ. ըսկի:—
43– ՏՀ. ճակատն.— Ox. 1. էր զայս գրել [= ՏՀ. գրեր]:—
44– Ox. 1. ՏՀ. զա̄ծ:— 46– ՏՀ. մի մոլորել:— 48– ՏՀ. լուսոյ:—

ԼԴ.

Մի՛ մոլորիլ ու զքեզ խաբել,
Մի՛ ըզհոգիդ կորուսանել:
Ցանանց լուսոյն զ՚քեզ մի՛ զըրկել,
Զմեղքն ու չարիքըն մի՛ գործել,
Մի՛ սուտ խաւսել եւ զոք զըրկել,
Թէ չես շ՚նացել կամ գողացել,
Կամ վըկայել եւ սպանանել,
Եւ բերանովդ երդում կերել,
Թէ զ՚պատուիրանըն չես յանցել,
Ի տանջանացըն մի՛ վախել:
Զինչ դու այլոց ես կամեցել,
Քո առաջին կամին բերել,
Ցըրի՛կ, դու է՞ր ես յիմարել,
Զհոգոյ աչքերդ ես կափուցել:
Սըրտի ականջդ ես դու կալել,
Զխելք, զգայարանքդ ես դու վարել,
Այս սուտ կենաւքս ես ըզբաղել,
Ի մէջ մեղացդ ես դադարել:
Զանչէջ գեհենն ես դու չահել,
ւ՚Աստէն կալու ճարդ է հատել,
Ով զայս լըսել շատ մի լացել,
Եւ զիւր այտերն արեամբ թացել:
Ասաց թ՚այսոր ճարն է հատել,
Դատաստանի աւրն է հասել,
Գաբրիէլեան փողըն գոչել,
Դատողական աթոռ դըրել:
Եւ դատաստան անդէն նըստել,
Ահա կու գան ըզիս կոչել,

---

49– Ox. 1. զմեղք ու զչարիքդ :— 50– Ox. խաւսիլ :—
53– Ox. 1. ՏՀ. կրել :— 55– ՏՀ. դու մի՛ :— 57– ՏՀ. կամքն :—
58– Ox. 1. ՏՀ. Ցրիկ դու էր [= ՏՀ. յէ՞ր] :— 59– ՏՀ. զհոգւոյն :—
60– ՏՀ. կարել :— 61– ՏՀ. զխելքդ զգա՛արանքդ [= Ox. 1] :—
62– ՏՀ. սբաղել :—
63– ՏՀ. մեղաց :— 64– Ox. 1. ՏՀ. Ցանչէջ :—
65– ՏՀ. գալու ճարն [= Ox. 1] :— 66– Ox. 1. ՏՀ. ոնց զայս լսել :—
68– Ox. 1. թայս որ — ՏՀ. թէ այսոր :— 69– ՏՀ. չունի այս տողը :—
70– ՏՀ. Ox. 1. գաբրիելեան :— 71– Ox. 1. ՏՀ. դրել :—
72– Ox. 1. Եւ դատաւորն անդր է — ՏՀ. նստել :— 74– Ox. 1, ՏՀ. ում :—

## ԼԳ.

Ո՞ւմ կայ լեզու կամ զըրուցել,
Կամ ո՞վ կարէ պատասխանել։
Անդ քաջախաւսքն են կարկամել,
Ցանչէջ հըրոյն են սարսափել,
Բարձր եւ հըզաւրքն են խոնարհել։
Զինչ յաշխարհիս էին գործել,
Զամէն գըրել, ու՜ անդ են բերել.
Երբ զայն տեսել միտքըն սըրել,
Զինչ մոռացած կայր զայն յիշել,
Եւ փոշիման վայր մընացել։
Սիրտն ու սակատն էր խորովել,
Զաչկունքն ողորմ էր նա ածել,
Ցաջ եւ յահեակ էր նա՛ հայել,
Անդ աւգնական զոք չէր գըտել։
ՑԱստուածածինն էր նա դիմել,
Ցառաքելոց ոտքն էր անկել,
Թէ շատ չարիք եմ ես գործել,
Եւ ո՛չ տան թոյլ ապաշխարել։
Այսաւր յինէն ճարս է հատել,
Զձեզ բարեխաւս եմ ես գըտել,
Մի՞թէ կարէք զիս խալըսել,
Ու՜ի տանջանա՛ցըն ազատել։
Սըրբունքն ամէնն են հաւաքել,
զԱստուածամայրն են աղաչել,
զԿենդանագիրն յառաջ բերել,
Թէ քո Որդին է զայս տըւել։
Երբ զայս տեսել՝ Տէրն ողորմել,

---

75– Ox. 1, ՏՀ. ով։— 76– ՏՀ. կարկամել։— 77– Ox. 1, ՏՀ. հրոյն։—
78– Ox. 1. յաշխարհի։— 79– Ox. 1, ՏՀ. գրել։— ՏՀ. անդ։—
81– ՏՀ. միտք են արել։—
82– ՏՀ. մոռացուած։— 83– ՏՀ. փօշիման։— 84– ՏՀ. խոռովեր։—
85– ՏՀ. զաչկունք.— Ox. 1. նայ։— 88– Ox. 1. Ցա՞ածածինն.— ՏՀ. յԱստուածային։— 89– Ox. 1, ՏՀ. յոտքն.— Ox. 1. անգել։—
91– Ox. 1. ապաշխարհել։— 92– ՏՀ. Այսօրվընէ ճարս է.— Ox. 1. ճարն։—
93– ՏՀ. ձեզ.— Ox. 1, ՏՀ. գտել։— 94– Ox. 1, ՏՀ. միթէ։—
95– Ox. 1. եւ ի տանջանացն.— ՏՀ. եւ ի տանջանաց զիս։—
96– Ox. 1. ամէն։— 97– Ox. 1, ՏՀ. զա՞ծամայրն։—
99– ՏՀ. տուել։— 100– Ox. 1, ՏՀ. տ՞րն։— 101– Ox. 1. կամարարք։—

ԼԳ.

Իւր կամարարքն յառաջ կոչել,
Իւր ծընաւղին ինքն էր լըսել՝
Զմեղաւորաց մեղքըն թողել:
Հրեշտակապետքն են խոնարհել,
Եւ Արարչին երկըրպագել,
Այս մեր եղբարքն են կորուսել,
Այսաւր գըտաք կենդանացել:
Փափագանաւք են ժողովել,
Ցուրախութիւն են մեծարել,
Եւ զանկելոց տեղին լըցել:
«Եկա՛յք, աւրհնեալքդ իմ զաւրացել,
«Մըտէք ի լոյսն անճառացել,
«Զոր իմ սըրբոց եմ պատրաստել,
«Զայն, որ ոչում աչք չէ տեսել,
«Ո՛չ ականջաւք իսկի լըսել,
«Եւ ո՛չ մարդկան սիրտ վըկայել,
«Ես զայն տեղիքն եմ պատրաստել,
«Որ մարգարէքն են զնա գովել,
«Եւ առաքեալն է զնա տեսել»:
Ցըրի՛կ, հերիք ես դու խաւսել,
Զամէն մարդ ես ձանձրացուցել,
Սուտ աղաւթք եւ ծունր ես կացել,
Զհոգիդ այդով ես դու խոցել:
Է՞ր չես ի լալ ւ՞ ապաշխարել,
Եւ զքո անչափ մեղքըն քաւել,
Մի՞թէ ի յայդ ես յուսացել,
Զինչ մըխիթարք ես դու կըրել:

---

102– Ox. 1, ՏՀ. ծնաւղին.— լսել:— 193– ՏՀ. զմեղաւորացն:—
104– ՏՀ. Հրեշտակաց պետքն են:— 106– Ox. 1. եղբայրք:—
107– Ox. 1, ՏՀ. գտաք:— 108– Ox. 1, ՏՀ. փափաքանաւք:—
109– Ox. 1, ՏՀ. յուրախութ՟ի.— 110– Ox. 1, զանգելոցն:—
111– Ox. 1. ա՟հեալք.— ՏՀ. օրհնեալքն:— 112– ՏՀ. ի լոյս անճառ անցել.— Ox. 1. անճառաացել:— 113– Ox. 1. ս՟րցն:-- 114– ՏՀ. որ ում աչքը չէ:— 115– Ox. 1, ՏՀ. լսել:— 116– ՏՀ. վկայել:— Ox. 1. վկալել:—
118– ՏՀ. զնա տեսել:— 119– Ox. զնայ:—
120– Ox. 1, ՏՀ. Ցրիկ հերիք:— 121– ՏՀ. Մարդիկ զամէն ծանրացուցել:—
124– Ox. 1, ՏՀ. էր:— 125– ՏՀ. եւ քո այնչափ.— Ox. 1. քաւէլ:—
126– Ox. 1, ՏՀ. միթէ:— 127– Ox. 1, ՏՀ. մխիթարք:—

ԼԳ.

*Այդ չի կամի ըզքեզ թափել,*
*Զինչ քո մըտաւքդ ես անդիճել,*
*Երկու ծայրիւ կամիս կալնել,*
*Զաստընուորիս ադին՝ կարել:*
*Երկու տէրանց ո՞վ ծառայել,*
*Հանց զոր երկուքն էր նա չահել,*
*Այդ խորհըրդոյդ մարդ չէ հասել*
*ւ՚Ոչ դու կարես զայդ գըտանել:*
*Խիստ ի ծովու խորն ես մըտել,*
*Զայդոր յատակն ես կորուսել,*
*Ջանա՛ եւ լող տուր չուտ եւ ել,*
*Քան ոտք ու ձե՛ռքըդ չէ կապել:*
*Երբ դու յեզերն լինիս ելել,*
*Եւ Հաւրըն փառք լինիս տըւել,*
*Որդոյ Նորա երկըրպագել,*
*Եւ Սուրբ Հոգին քեզ վըկայել,*
*Հաւրըն փառք եւ Որդոյն պատիւ*
*Եւ Սուրբ Հոգոյն երկըրպագել,*
*Յաւիտեանըս յաւիտենից*
*Փառք ի բարձունս վերառաքել:*

*
* *

---

128– Ox. 1. *թաքել*:— 129– Ox. 1. *մտաւք ես անդ իճել*:— ՏՀ. *մտօքդ*:—
130– Ox. 1. *ծայրի*:— 131– Ox. 1. *զաստընուորիս*.— ?ՏՀ. *զաստըւորիս ա-*
*դիս* [= Ox. 1.].— 132– Ox. 1. *տերանց*.— *ով*:— 133– ՏՀ. *չախել*:—
134– Ox. 1, ՏՀ. *խորհրդոյդ*:—
135– Ox. 1, ՏՀ. *ոչ*.— Ox. 1. *կամիս զայդ գտանել* [= ՏՀ.]:— ¶ ՏՀ. վեր-
վերջանում է այս տողով եւ վերջին երեք քառատողը չունի¶:—
137– Ox. 1. *այտակն*:—
140– Ox. 1. *ե[րբ]*:—
141– Ox. 1. *հաւրըն*:—
142– Ox. 1. *որդոյ նորա*:—
143– Ox. 1. *ս՟բ հոգին*:—
144– Ox. 1. *որդոյն*:—
145– Ox. 1. *ս՟բ հոգոյն*:—
146– Ox. 1. *յաւիտեանս*:—

## ԼԴ.

# ՆՈՐԻՆ ՖՐԿԱՆՆ
### ասացեալ
## ԲԱՆՔ ԳՈՎՈՒԹԵԱՆ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ

4-4 ‖ 4-4

*Աստուած ահեղ անքննելի,*
*Անբաւ, անյայտ ու̆ անժամանակ,*
*Աստուած անտես, ու̆ ինքը տեսող*
*Ամենեցուն եւ յամանակ:*
*Աստուած անտես, ու̆ անտանելի,*
*Բ̆նաւից գոյից ես դու ունակ,*
*Դու ես անկէտ եւ անսահման,*
*Քեզ ո՞վ նըման, Աննըմանա՛կ:*
*Դու ես անհաս, ու̆ անզըննելի,*
*Զես Դու մըտաց իսկ 'ի գիտակ,*
*Դո՛ւ ես ի վեր քան ըզխորհուրդ,*
*ու̆ Ամենեցուն ես անտեսակ:*
*Հայրն է ըսկիզբն, Որդին ծընունդ,*
*Հոգին բըղխումն է զինչ վըտակ,*
*Դու անըսպառ աղբիւր հոսեալ,*
*Անհիմն եւ հիմն ես անյատակ:*
*Անպարագիր եւ անպատում՝*
*Բովանդակիս ես պարունակ,*
*Դու ես անհետ եւ հետեւող,*
*Ծածուկ բանին ես Դու գիտակ:*
*Ո՛չ նիւթական, ո՛չ արարած,*
*Դու ինքն Աստուած, յըստակ զուտ ակ,*
*Դու անկարիք ես եւ կարող՝*
*Կարեւորացս ես Դու գիտակ:*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16, Bodl. Libr. fol. 147a-155a:—
Միւս բոլոր Ձռ·ներից եւ ո՛չ մէկն ունի որեւ է փոփոխակ:
*Հմմտ.* Կ. Երզնկացու «*Օրհնեալ է Հայր անըսկիզբն*» տաղի հետ. *Ա. էջ* 63–74:
1–3– Ox. 1. «*Բանք գովութ՟ե առ ա՟ծ Ֆրկանն ասացեալ*»:— 4– *Ա՟ծ*:—
6– *Ա՟ծ անտես եւ տեսող*:— 8– *Ա՟ծ*:—
11– *ով նման աննմանակ*:—
13– *դու մտաց իսկի գիտակ*:—
16– *որդին*:—
22– *դու*:— 23– *դու*:— 24– *ոչ նիւթական ոչ*:—
25– *դու*.– *Ա՟ծ*.– *զուտակ*:— 26– *դու*: 27– *դու*: 30– *դու*:—

ԼԴ.

Դո՛ւ արդարոց քաղցր ու բարի,
Մեղաւորաց հուր եւ կըրակ,
Դու աղքատաց ես ողորմած
Եւ զըրկողաց տաս փոխանակ:
Դու ցըրուելոց ես ժողովող,
Որբոց ւ̆այրեաց ես Դու պահակ,
Դու խոնարհից բարձրացընող,
Եւ հըզաւրաց կաս հակառակ:
Դու ես տեսող ամենայնի,
Եւ մեր աչացն ես անտեսակ,
Դու հրեղինաց ես ցանկալի,
Զիչխեն հայել զինչ ի փայլակ:
Սերովբէից թեւ ըսքաւղեալ,
Որ չ̆նայէին ի հուր կիզակ,
Ի Քրովբէից յաթոռ նըստիս,
Հայիս յանդունդս՝ մինչ ի յատակ:
Դու ի բանից ստեղծեր զամէն՝
Հաստատեցաւ անաւրինակ,
Դո՛ւ արարեր զլոյս եւ զխաւար,
Բաժանեցան յերկու տեսակ:
Քո հրամանիւ եղեն լերինք,
Ծով եւ ցամաք, գետք եւ վըտակք,
Թըռչունք հաներ ի ջրէն ի դուրս.
Բազում ի մէջ ջըրին լողակ:
Զանտառ մայրին բազմացուցեր,
Որ գազանաց են աչտարակ,
Զդաշտ ւ̆ըզբըլուր զարդարեցեր,
Որ անասնոց եղեն ճարակ:
Հողս է հաստատ ի վերայ ջրի,
Զեռունք, սողունք աստ են բընակ,
Զտարերքըս չո՛րս հաստատեցեր՝
Ո՛չ, առաւել, ւ̆ոչ նըւազակ:

---

32– ցրուելոց:– 33– դու:– 34– դու:– 36– ա̆մի:– 38– ցանգալի:–
39– չիչխեն:– 40– զքաւղեալ:–
41– չնա՛էին:– 44– ս̆տեղծեր:– 46– դու:– 49– ցամաք, գետք եւ վտակք:–
50– թռչունք.— ի ջ̆րէն:– 54– ո̆ւ զբըլու[ր]:– 56– ի վերա՛:
57– բնակ:– 59– եւ ւ՛ոչ:–

## ԼԴ.

Ի սոցանէ գոյացուցեր
Բոլորովիմբ զամէն բանակ,
Յետոյ սոցա՝ զմարդն արարեր,
Քեզ աւրինակ եւ նըմանակ:
Զամէն արեր իւրն հընազանդ,
Ձեռակերտաց դաստիարակ,
Զարդարացեր պըտղաբերաւք
Զանանց դըրախտն եւ զանհասակ:
Տըւեր նըմա ի վայելումն,
Թէ՝ դո՛ւ կացիր ի դմա յերակ,
Աւձին բանիւ արտաքսեցաւ՝
Մերկ անդամաւք եւ խայտառակ:
Ցանձառ լուսոյն նա՝ զըրկեցաւ,
Թափուր յամէն փառաց դատարկ,
Անցաւորիս նա ցանկացաւ,
Աւր հետ աւուրց մահն է ճաշակ:
Երեկ՝ այսոր եկաց հաւան
Եւ բանսարկուին եղեւ կատակ,
Եղեւ գերի սատանայի՝
Զորդիքն երետ դիւաց մըշակ:
Զայն որ ի լո՛յսըն ճեմալու,
Անկաւ ի կո՛ւպըրն եռանդակ,
Ուրախացուց ըզԲելիար,
Փորել երետ զգուբն անատակ:
Տարաւ զԱդամ եւ ըզԹոռունքըն՝
Անդ արգիլեաց շատ ժամանակ,
Այս այլ չեղաւ Ադմայ խըրատ:
Պռունըկեցան պիղծ եւ խառնակ,
Ընդ դըստերա՛ցըն Կայէնի,
Մինչեւ անկան ի մեծ Թալակ.
Պիղծ գիճութեան բան սիրեցին,
Բորբոքեցաւ հուր եւ կըրակ:
Ոչ կամեցար ջընջել բընա՛ւ,
զնոյ ընտրեցեր մաքուր մենակ.
Առաքեցեր առ նա զուարթուն,

---

68– նմա՛ :– 69– ի դ˘մա :– 72– զրկեցաւ :– 74– ցանգակաւ :–
81– անգաւ :– 86– ադա˘մա՛ :– 89– անգանի 92– զնոյ :–

ԼԴ.

Թ՚է, Նոյ չինէ քեզ տապանակ:
Կամիմ սաստել մեղաւորաց,
Իմ հրամանացս են հակառակ.
Դու բըղխեցեր զջուրն յանդընդոց
Եւ ի յաւդիցն իջան վըտակ:
Մինչեւ զերկիր ապականեաց,
Եղեն ամէ՛նըն չընստակ,
Այս այլ չեղեւ հերիք խըրատ,
Որ Սոդոմայ վառեց կըրակ:
Եղեւ սաստիկ մեծ բարկութիւն,
Մինչ ի Դաւիթ նախագուշակ,
Ցիչեաց ըզքա՛նըս ծառայի,
Որ յուսացաւ որդին առակ:
Դո՛ւ ընտրեցեր Քեզ զԻսրայէլ,
Զոր Մովսիսի տուեր ժառանգ,
Դո՛ւ հերձեցեր զծովըն Կարմիր,
Պաղէ պարիսպ ալեաց դիզակ:
Տարար յերկի՛րըն Քանանու,
Եւ մանանայ տըւեր ճաշակ,
Հաց հրեշտակաց նոքա կերան,
Ամէն թըռչունք էին տապակ:
Դու զայս ամէն արեր նոցա,
Եւ սիւն լուսոյ զինչ ըզկրակ,
Ըզմորենին հուրըն ո՛չ կիզէր,
Եւ Մովսիսի տըւեր տախտակ:
Քեզ փորձեցին յանապատին՝
Հաց խընդրեցին զերդ ի կատակ.
Դեռ ի բերանն էր կերակուրն՝
Հաւսար եղեն ազգաց առակ:
ԶՔեզ ընդ որթոյ փոխարկեցին,
Խոտակերին եղեն զոհակ,
Զայն երախտի՛քըն մոռացան,
Որ ի վիմէն բըղխէր վըտակ:

---

95– Նոյ :–քեզ :– 98– բըխեցեր :– 100– ապա՛կանեաց :–
101– ընստակ :– 102– խրատ :– 103– սոդոմա՛ :–
105– նախա՛գուշակ :– 108– քեզ զի՜էլ :– 109– մովսէսի տո՜ւեր :–
110– դու.– կարմիր :– 112– քանանու :– 113– մանանա՛ տըւիր :–
119– մովսէսի տըւեր :– 120– Քեզ :– 121– խնդրեցին :–
122– բերանէր :– 125– զոհա՛կ :– 127– բըխէր :–

ԼԴ.

Զկաթ ու՜ ըզմեղըըն տըւեր ուտել,
Եւ ըզհանդերձն մաքրէր կըրակ,
Եւ ո՛չ այսիւ կացին հաւան,
Մինչեւ եղեւ մեծ նըշանակ:
Քարկոծեցին ըզմարգարէս,
Սըղոցեցին զերդ ըզտախտակ,
Տէր ի նոցա մեղացն արար
ԶԵրուսաղէմ զինչ աւերակ:
Ի Բաբիլոն զերկիր գործին
Եւ արտասուաց Թափին վըտակ,
Մինչեւ անկան ի տառապանք՝
Դարձան սրտիւք առ Քեզ չիտակ:
Ապրեցուցեր զերիս մանկունս
Ի բորբոքեալ հըրոյն կուտակ,
Դո՛ւ պահեցեր ըզԴանիէլ
Ի յառիւծո՛ւցըն դըժընդակ:
Առաքեցեր ըզԵրեմիա,
Ժողովեցեր ազգ հակառակ,
Դու խնայելով դարմանեցեր,
Թէ անդրանիկ է իմ զաւակ:
Ի Յուդայի ցեղէն հաներ
ըզՄարիամ Աստուածամա՜նակ,
Առաքեցեր ըզԳաբրիէլ
Կոյսն յըղացի՝ ծընցի զաւակ:
Եւ նա կոչի՝ Էմանուէլ,
Որ Թարգմանի Աստուած մենակ,
Ծընար Աստուածդ ի Սուրբ Կուսէն,
Բան ծոցածին Հաւր անքըննակ:
Զգեցար մարմին Դու զԱդամայ,
ի Բեթղեհէմ ծընար զաւակ.
Բերեր ըզմոգսն յարեւելից
Ցերկըրպագումն աստղագուշակ:

---

128– եւ ըզմեղըն .– ո՛ւտել :–  131– եղեն .– նշանակ .–  134– տ՞ր :–
135– զեէ՞մ . զաւերակ :–  137– եւ արտասուք :–  138– անգան :–
140– մանգունս :–  142– զդա\նիէլ :–  144– զերեմիա՛ :–  146– իմ :–
148– ի յուդայի :–  149– ըզմարիամ ա՞ծարնակ :–  150– ըզգաբրիէլ :–
152– նա :–  153– ծոցա՛ծին հաւր անքննակ :–  156– դու զադամայ :–
157– ի բեթղահէմ :–  158– զմոգս :–  159– աստղա՛գուշակ :–

ԼԴ.

Բերին ընծայք ի սուրբ յայրին,
Տեսին պատեալ խանձարուրակ,
Մէկին դըղնայ երեւեցար,
Մէկինըն Թուխ, մէկին սպիտակ:
Հերովդէի զայս իմացեալ,
Խընդրէր զամէն կըտրիճ զաւակ,
Յովսէփ լուեալ զայս ըստուգեաց
Զմայրն ու զմանուկն էառ մենակ,
Գընաց յերկիրն Եգիպտոսի,
Եւ անդ եկաց շատ ժամանակ,
Աւր ըստ աւրէ Նա զարգանայր,
Բըղխէր ըզշնորհս աստուածունակ:
Առնէր զամէն բըժըշկուԹիւն,
Բայց չըհանէր ի հրապարակ,
Մինչեւ եհաս ի կատարումն,
Ապա խաւսէր Նա համարձակ:
Փըրկէր զամէն ցեղ ախտաժէտ,
Մաքրէր յամէն ցաւէ յըստակ,
զԱւետարանըն քարոզէր,
Ուսուցանէր զամէն կըտակ:
Մըկըրտեցաւ ի Յովհաննէ
Յաղտոյ մեղաց արար սպիտակ,
Դու Հա՛յր, յերկնից վըկայեցեր՝
«Դա իմ Որդի միակամակ,
Յոր հաճեցայ Ես ընդ նըմա»,
Որ զենեցաւ զինչ զուարակ,
Ելից ըզտառ մարգարէիցն
Եւ կատարեաց զամէն Թերակ:
Եւ ի Կանա Գալիլիային
Զջուրըն գինոյ ետ փոխանակ,
Դու յարուցեր ըզՂազարոս,
Զորեքաւրեայ հոտած՝ նեխակ,

---

160– ի ս՞բ յարին :– 162– դըղնա՛ :– 166– յովսէփ :– 167– մէնակ :–
168– եգիպտոսի :– 170– նա՛ :– 171– ա՞ծունակ :–
172– բըժըշկուԹ՞ի :– 173– բայց .– հ՞րապարակ :– 175– նա՛ :–
176– ախտա՛ժէտ :– 180– ի յովհաննէ :– 182- դու հայր :–
183– դա իմ որդի :– 184– հաճեցա՛ ես ընդ նըմա :– 185– զէնեցաւ :–
188– գալիլեա՛ին :– 190– ըզղազարոս :– 191– չորէքաւրեա :՛–

ԼԴ.

Ամենեքեան հաւատացին,
Զինչ որ կային անդ ժողովակ:
Դու հինգ հազարն կերակրեցեր,
Երկու ձըկամբ, հինգ նըկանակ:

Կոյրըք եւ կաղք ըըժըշկեցան,
Եւ ջըրգողիցն ես Դու ճարակ,
Զ՞համրն եւ ըզխո՛ւլըն Դու բացեր,
Գաղտ մաղթանացն ես Դու ունակ:

Զբորոտն, զպիսակն եւ ըզգողին
Դու սըրբեցեր՝ պարզ եւ յըստակ,
Զինչ որ փորձի ոսկին ի հուր,
Կամ զինչ սըրբէ զոսկին՝ կըրակ:

Փարիսեցոյն ողորմեցար,
Որ էր ցաւաւք նա դըժընդակ,
Սատանայէ Դու փորձեցար,
Դու ես անփորձ եւ անքըննակ:

Սարսեալ նային զաւրքն երկնաւոր,
Ի կենդանիդ եւ անհասակ,
Այն որ սաստեաց Յորդանանու,
Որ ջուրն ի յետ փախեաւ մենակ:
Դու ջախեցեր ի վերայ ջրին
Զգլուխ վիշապին եւ ըզկըզակ,
Լերինք հալին ի Քո յահէդ,
Զինչ որ հալի մոմն ի կըրակ:

Զքեզ ո՞վ իշխէ փորձել, Աստուած,
Կամ զինչ խելաց է ընդունակ,
Զայս Դու վաղուց ՝իր խոստացել,
Որ Ադամայ ասաց հրեշտակ:
Յորժամ ելաւ նա ի դրախտէն,
Ելաց զարեան գետն ու զվըտակ,

---

194– հազար :– 195– ձըգամբ :– 196– կոյրք.– բժըշկեցան :–
197– ջրգողիցն.– դու :– 198– դու :– 199– դու :–
200– Զբորոտ զպիսակն եւ ըղորդին: 201– դու սրբեցեր :–
203– սրբէ :– 206– սատանա՛է դու :– 207– դու.— 210– յորդանանու :–
212– ի վե՞րա՛ :– 214– ի քո :– 215– կրակ :–
216– զքեզ ով.– ա՞ծ.– 218– դու.– ի՛ր :– 219– ադամա՛ :–
220– նա՛ :– 222– նստի :– 228– վերա՛ խաչին :–

Այն որ յաթոռ փառաց նըստի,
Պիղատոսէ առեր ապտակ:
Գան ընդունել յանարժանից,
Թուք եւ ապտակ, փըշոց պըսակ,
Դու բարձրացար ի Գողգոթայ՝
Խաչակցեցար ընդ աւազակ:
՟Ի վերայ Խաչին տարածեցեր,
Տէ՛ր, ըզբազուկ քո հըզաւրակ,
Բեկեր ըզմէջքն սատանայի,
Արեր զ՟դըժո՛խքըն աւերակ:
Զ՟բանտարգելեալքն ազատեցեր,
Ահեղ գոչմամ՛բըդ համարձակ,
Աւանդեցեր առ Հայր զհոգիդ,
Առ Քեզ տարար Դու զաւազակ:
Յովսէփ արդար եւ երկիւղած,
Արքայ էր սա եւ խընդըրակ,
Խընդըրէր զմարմի՛նըն Յիսուսի,
զՏէր բոլորի՛ցըս բովանդակ:
Շնորհեաց նըմա զայն Պիղատոս,
Հաւր զէակիցն եւ անքըննակ,
Եւ իջուցին զՏէրն ի Խաչէն
Եւ պատեցին ի պաստառակ:
[Եւ] Թաղեցաւ ի սիրտ երկըրի,
Այն, անտեսն էր ւ՟անհասակ,
Սանդարամէտք յահէն դողան
Եւ երկնաւորքն առհասարակ:
Թաւալեցին զվէմն ի վերայ,
Նոյն եւ խաչողքն էին պահակ,
Մարիամու տեսեալ զտեղին
Առաւաւտուն չոգան կանայք,
Առ ի խընդըրել ըզգերեզմանն
Տեսին ըզվէ՛մըն թաւալակ,

---

229– տ՟ր․– քո :– 231– արեր զդժոխն․– 232– Զբանդարգելեալքն :–
234– հայր :– 235– քեզ․– դու :– 237– սա՛ խնդրա՛կ :– 238– յ՟սի :– 239– զտ՟ր :–
240– նմա՛․– պիղատոս :– 241– հաւր զէակից եւ անքննակ :–
242– զ՟տրն ի խաչէն :– 244– երկրի :– 245– ւանհասակ :–
248– ի վերա՛ :– 250– մարիամու :– 252– ի խնդրել :–

ԼԴ.

՚Ի վերայ նըստեալ հրեշտակապետն՝
Պատմուճանաւ իւր ըսպիտակ:
Նոքա յահէն զարհուրեցան,
Թէ պարտիզպանն էր նա պահակ,
Ասէր նոցա, թէ «Զո՞վ խընդրէք,
«զՅիսուս Խաչեա՛լըն զուարա՞կ,
«Չէ՛ աստ, յարեաւ ի մեռելոց,
«Մի՛ զարհուրիք, մայր իմ կանայք,
«Դուք պատմեցէք առաքելոցն,
«Աշակերտացն առհասարակ:
«Եթէ յարեաւ ի մեռելոց
«Տէր կենդանին բարձրագունակ,
«Յաղթեաց մահու իշխանութեան
«Եւ կործանեաց ըզհակառակ:
«Զիս տեսանէք ի Գալիլեայ
«Անդ ժողովիմք ի մի բանակ»:
Զոգան կանայքն եւ պատմեցին
Աշակերտացն համագունակ:
Տէրըն յառաջ քան ըզկանայքն
Երեւեցաւ՝ զինչ ըզհրեշտակ,
Ողջոյն երետ նա Սիմոնի՝
Ահեղակերպ քան ըզփայլակ:
«Երթայք ի լեառն ի Գալիլեայ,
«Որ ձեզ ասեմ զամէն կըտակ.
«Ես համբառնալ կամիմ առ Հայր,
«Ձեզ առաքեմ փառք եւ պըսակ»:
Դու ես կարող յամենայնի,
Քեզ ո՞վ կարէ կալ հակառակ,
Դու թագաւոր՝ թագաւորաց,
Դատաւորաց ես Դու դատակ:
Դու համբարձար փառաւք յերկինս,
Զմեզ մի՛ թողուր որբ եւ դատարկ.

---

254– վերա՛ :— 256– նոքա՛ :– 257– նա՛ :– 258– նոցա՛ թէ զո՛վ խնդրէք։
259– զյ˜ս․– զու˘արակ: 260– Զէ աստ յարեաւ:
261– մի զարհուրիք մայր :– 265– տ˜ր․– բարձրա՛գունակ :–
266– իշխանու˘ե :– 267– զհա՛կառակ :– 271– համա՛գումակ :–
272– Տ˜րըն :– 274– նա սիմոնի :– 280– յա˘մի :–
281– քեզ ով կարէ կեալ :– 283– դու :– 286– զս˜բ․– առաքեայ :–

ԼԴ.

Ըզսուրբ Հոգին մեզ առաքեա՛,
Մըխիթարեա՛ զմեզ հասարակ։
Դու տաս շընորհք առաքելոցն,
Իշխանութիւն՝ խիստ համարձակ,
Առնել զամէն բըժըշկութիւն,
Կապ ու̆ արձակի են նըւիրակ։
Դու ես բըժիշկ ամէն սըրտի,
Անճարելոցն ես Դու ճարակ,
Ողորմութեա՛նըդ Քո մընամք,
Որ մեզ Դու տաս լուսոյ պըսակ։
Հոգոյ դալուստ ենք փափագել,
Արբուցանես Դու մեզ բաժակ,
Վարդավառին երեւենաս,
Այլակերպիլ զինչ ըզփայլակ։
Դու ես Աստուած՝ Հերովդէի,
Պիղատոսի վառես կըրակ,
Յուդա եղեւ Աստուածուրաց՝
Արարածոցս խաղք եւ առակ։
Դու ես անմահ միշտ կենդանի,
զՔեզ ո՞վ պատէ ի պաստառակ,
Ղամբար լուսոյ շըրջափակիս,
զՔեզ ո՞վ թաղէ ի փոր վիմակ։
Զանշոշփելիդ ո՞վ շոշափէ,
Արարածոց ես Դու քըննակ,
Նոյն մարմընովդ ես Դու գալոց,
Որ Քո խաչողքն լինին առակ։
Դու կործանես ըզթըշնամին,
Խաչապաշտից Դու տաս պըսակ,
Դու խոստացար զանանց բարին,
Զիս կամեցիր դու Քեզ մըշակ։

---

287– մխիթարեայ։ 288– շընորք։– 289– իշխանութ՟ի։–
290– բըժշկութ՟ի։– 291– կապ ւարձակուեն։– 292– բժիշկ.– սրտի։–
293– դու։– 294– ողորմութ՟եդ քու մնանք.– 295– դու։–
296– էնք փափաքել.– 297– դու։– 299– այլա՛կերպիլ։–
300– ա՟ծ հերովդէի։– 301– պիղատոսի։– 302– յուդա՛.– ա՟ծուրաց։–
305– զքեզ ով։– 306– շրջա՛փակես։ 307– զքեզ։–
308– Զանշաւշափելդ ո՛վ։– 309– դու քննակ։– 310– դու։–
311– քո։– 313– դու։– 314– դու։– 315– դու քեզ։–

ԼԴ. Առնուլ ըզվա՛րձըն հաւասար
Աշխատողացն առհասարակ,
Թէպէտ որ չեմ կացել ծառայ՝
Ես եմ կացել մեղաց գաւակ:
Ես եմ Ցըրի՛կըս մեղաւոր,
Զիս մի՛ հաներ դառն ու դատարկ,
Տուր ինձ ըզտե՛ղըն հարիւրին,
Կամ գայլ աղէկ բարձրաւանդակ:
Դու վասըն մեր մարմին առեր,
Արքայութեան արեր ժառանգ,
Տէ՛ր, բաց ի յետ գակըն հոգոյս,
Մաքրեա՛ յամէն մեղաց յըստակ:
Զ՞մեզ Դու կամիս արդարացնել,
Առնել ըզմեզ լուսոյ զաւակ,
Դու տաս զամէն պէտք ու կարիք
Դու ես ամէն սըրտի գիտակ:
Զեմ արժանի խընդըրուածիս,
Բայց ի կարիք եմ զինչ զերակ,
Դու ես բաշխաւղ ամէն բարեաց
Ողորմութեանդ եմ ես խընդրակ:
Յիշեա՛ եւ զիս ըզմեղաւորս,
Ցըրիկ ծառայդ զինչ գաւազակ,
Զքեզ տեսանել արժանացո՛,
Երեւեցիր պարզ եւ յըստակ:
Ի հրեշտակաց փառաբանիս,
Յարարածո՛ցըս բովանդակ,
Փառք անմահին՝ Հաւր եւ Որդոյ
Եւ Սուրբ Հոգոյն զինչ ըզվըտակ:
Երիս անձինք, մի տէրութիւն,
Խորհուրդ եւ բան միակամակ,
Մի էութիւն եւ մի Բնութիւն,
Անզուգական փառք եւ պըսակ:

*

* *

---

320– Ցրիկըս:– 321– դառըն դատարկ:– 324– առնել.–
325– արքայութ՟ե.–: 326– տ՟ր բացի:– 328– դու:– 330– դու–:
331– դու. սրտի:– 332– խնդրրուածիս:– 333– բայց:–
335– խնդրակ:– 337– Ցրիկ ծառայս.– 338– զքեզ.– արժանացոյ:–
339– յստակ:– 342– հաւր եւ որդոյ.– 343– ս՟բ հոգոյն:–
344– երիս անձին մի տ՟րութ՟ի:– 346– էութ՟ի – բնութ՟ի:–

ԼԵ․

# ՆՈՐԻՆ ՖՐԿԱՆՆ

## ասացեալ

## ՎԱՍՆ ԱՐՂՈՒՆ-ՂԱՆԻՆ ԵՒ ԲՈՒՂԱՅԻՆ

4-4 || 4-4

*Փառք Աստուծոյ միշտ կենդանոյն,*
*Արդար ու˘իրաւ դատաւորին,*
*Տեսէք՝ թէ ի՞նչ զարմանք եղեւ*
*Հետ Բուղային եւ Արուխին:*
*Բուղա՛, դու ո՞նց կամիր նենգել,*
*Աստուածադիր թագաւորին,*
*Զոր քրիստոնեայքն ամէն հաւսար,*
*Ի յԱստուծոյ կու խնդրէին:*
*Արղուն ղանըն Աստուած եղիր,*
*Ո՞վ է յաղթող Արղուն Ղանին,*
*Արղունըն ի՞նչ վընաս գործեց,*
*Գիտեմ՝ ոդին էր Աբաղին:*
*Այն որ ըզքեզ ի վեր քաշեց*
*Եւ քեզ երետ զամէն բարին,*
*Այնոր փոխրէն զի՞նչ խորհեցար*
*Կամ ո՞վ լըռէր հանցեղ բանին:*
*Ով անմեղաց հոր կու փորէ*
*Ինքն անկանի ի մէջ գըբին,*
*Սուլտան-աղան թող իմացաւ*
*Ապա քո գործքն զ˘քեզ սպանեցին:*
*Նոցա չի կայր իսկի գունահ,*
*Զինչ քո թերաց կոտորեցին,*
*Դու քան զԱրղո՛ւնըն չ˘իր պակաս,*
*Ի քո յահէդ խիստ կու վախին:*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16, Bodl. Libr. fol. 155a-159a :–
Միւս բոլոր Ձռ–ից եւ ո՛չ մէկն ունի ո՛չ մի փոփոխակ :–

3– Ox. 1 *արղուն ղանին եւ բուղային* :– 4– *ա˜յ* :–
5– *արդա[ր]ուիրաւ* :– 6– *տեսէք թէ ինչ* :– 7– *բուղային եւ արուխին* :–
8 *ո՛նց* :– 9– *ա˜ադիր* :– 11– *ի յա˜յ* :– 12– *ղանն ա˜ծ* :–
13– *արղուն ղանին* :– 14– *արղունըն ինչ* :– 15– *աբաղին* :–
18– *զինչ* :– 19– *ով լռէր* :– 20– *անմեղուց խոր* :– 21– *անգանի* :–
23– *քու* :– 24– *չկայր իսկի գանո՛ դունահ* :– 26– *քան զարղունըն* :–

ԼԵ. Բուղա էիր՝ չինքան եղար,
Բէկլար–բէկի ՛իր հեծելին,
Զ՛գիտեմ թէ զի՞նչ կամիր լինել,
Դու չ՛իր որդի Զանկըզ ղանին։
Զինչ ի վերուստ քեզ չէր տըւած,
Դու ե՞րբ կարիր հասնել բանին,
Զոհալըն խիստ ի վեր քարշէ,
Ցետեւ զարնէ խիստ ի գետին։
Մըտիկ դըրէք, աշխարհ ամէն,
Ըսքանչելեացն Երկնաւորին,
Տեսէք՝ թէ ի՞նչ արար Աստուած,
Ի հատուցո՛ւմըն հըզաւրին։
Քակեց ըզբա՛րձըրն յաթոռոյ,
Ջախեց ըզգլո՛ւխըն վիշապին,
Ով կուռըն տայ թագաւորաց՝
Իւրըն բերէ կործանութիւն։
Գեմ սատանայ զայն խորհեցաւ
Հետ Աստուծոյ՝ իւր Ստեղծաւղին,
Որ ի փառաց անկաւ ի վայր,
Խորտակեցաւ անդընդային։
Յորժամ ձըգէ Աստուած յաչից
Ըզգործակից սատանային,
Հանց խայտառակ հրապարակէ,
Զինչ որ արար հետ Բուղային։
Տէրըն եզարկ յերկնից ի վայր
Զընկսայ Բուղին եւ Արուխին,
Նա՛յ, ամենայն գըլխաւորացն,
Զինչ ի մէկտեղ խորհուրդ արին։
Դու ես, Տէ՛ր, խը՛նդրող վըրէժից,
Ի խոր նայիս անդընդային,

---

29– բէկլար բէկի ի՛ր։– 30– զինչ։– 31– ջանկըզ ղանին։–
33– երբ։– 35– յետ եւ զարնէ։– 36 դրէք աշխարհ։–
37– ըսքանչելացն երկնաւորին։– 38– տեսէք թէ ինչ։– ա՟ծ ըզհատուցումըն։– 40– յաթոռոց։– 43– բերէն կործանութ՟ի։–
44– Դէմ սատանա՛։– 45– ա՟յ իւր ստեղծաւղին։– 46– անգաւ։–
47– անդընդա՛ին։– 48– ա՟ծ։– 49– սատանա՛ին։– 51– բուղային։–
52– Տ՟րըն էզարկ։– 53– չընգսա՛ բուղին եւ արուխին եւ ա՟մ գլխաւորացն։– 55– մէկ տեղ։– 56– ես տ՟ր խնդրող վ՛րէժից։–

ԼԵ. Լըսես ձայնի հառաչանաց
Եւ հեծութեա՛նցըն տընանկին:
Դու զըրկելոց ես ողորմած,
Որբերըն Քո են եւ այրին,
Տէ՛ր, Դու տեսար յերկնից ի վայր
Զինչ Քո ծառա՛յքըն քաշեցին:
Գեմ չի մընաց աղբիւր ու գետ
Որ լացուցա՛ծքըս չի խմեցին,
Գեմ չի մընաց լեռներ ու դաշտք,
Որ Մասաս–չիքըն չ˘կոխեցին:
Զըմեռն առան՝ յերթին լալով
ւ˘Ամառն ի քո՛չըն խաչէին,
Քըսան տարի դար քաշեցաք,
Որ հալեցաւ ոսկր ու մորթի
Լոկ չընչաւոր ենք մընացել,
Խելք, զգայարանք˘ ի մեզ չերեւին,
Ջալալադինն էր մընացել,
Նա կու զարնէր աքցի բանին:
Տէրըն սաստեց խոլոր աչաւք,
Ու ցըրուեցաւ տունն ու բարին,

. . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . .

Հանց փոխարէն արար Աստուած,
Այն Գրիգորին եւ իւր ազգին,
Որ ամենայն մարդ վըկայեաց
Թէ աւրթախնին անիծեցին:
Սուրբ Յովհաննէսն իւրեն խըռով՝
Այն անաւրէն Թուման–ճուխին,
Իսկի չ˘ածեր զԱստուած ի միտ՝
Զունէր երկիւղ ի յիւր սըրտին:

---

58– լսես:— 59– հեծուեացըն տընանգին:— 61– քո են:—
62– տˉր դու:— 63– քո:— 65– լացուցածքս չխմեցին:—
67– մասաս չիքըն չկոխեցին:— 69– ո˘ւ ամառն ի քաւչըն:—
72– էնք մնացել:— 73– զգայարանք մեզ:— 75– նա՛ — աքցի:—
76– Տˉրրն:— 77– որ ցրո˘ւեղաւ:— ¶ Որին անմիջապէս կցուած՝ 80 եւն. տողերը, որով այս քառեակը բաղկացած է լինում վեց տողից. հաւանօրէն նախորդ քառեակի վերիջն երկու՝ 78 եւ 79 տողերը պակաս են¶:—
80– աˉծ:— 82– աˉմ — վկայեաց:— 83– թէ աւր թախնին:—
84– սˉբ յովանէսն.— 85 Թուման ճուխին:— 86– զˉած:— 87– սրտին:—

Լե.

Հանց խորտակէ Աստուած ըզնա,
Որ իւր ազգովն ամէն ջընջին.
Տիրասըպան, Աստուածուրաց,
Լիրբ ու՜ անամաւթ՝ այն շուն Սաւֆին։

Հանչաք վազէ դըռնէ ի դուռն,
Մինչ որ անկնի ի մէջ գըբին,
Գեմ չարարին հանչաք վընաս,
Որ հաւանէր Աստուած բանին։

Կու հրամայէ մեծըն Դաւիթ
Ժողովրդեան Բաբիլոնին,
Թէ երանի, որ հարկանէ
Զորդիքն ի քա՛րըն չարկամին։

Մեք վա՜չ ասենք անձանց մերոց,
Թէ ո՞նց տեսաք ըզթըշնամին,
Գիտեմ՝ կային հանցեղ մարդիկք,
Որ ի մեր չա՛րըն խընդային։

Երբ նըստէաք ի հրապարակ
Ամէնն ըզմեզ ծիծաղէին.
Հանց բարետես աչո՜ւի ունինք,
Որ նոքա այլ գըլխիվայրին։

Թող չ՜յուսանայ մարդ ի դըրամ
Եւ ոչ ի զուր մարդ ծիծաղին.
Ցալաքըն տայ ժուկ մի դեկան,
Յետեւ հանէ խիստ ի քամին։

Ով յանմեղուց մարդ կու ճաւշայ,
Դուք նայեցէք հետ իւր բանին,
Ապա զայս այլ կամիմ ասել,
Զինչ Մասասչի՛քըն գործեցին։

Խիստ յուսացան ի յանցաւորս
Եւ պարծեցան յիւրեանց մըտին,
Թէ մեք չինենք չատ մի Թուման,

88– ա՜ծ ։– 90– տիրասպան ա՜ծուրաց ,– 91– ւանամաւթ ա՛յն ․– սաւֆին ։– 92– հանչա՛ք ․– դռնէ ։– 93– անգնի ։– 95– ա՜ծ ։– 96– դաւիթ ։– 97– ժողովրդեան բաբելոնին ։– 100– Մենք վա՛չ ։– 101– ո՛նց ․– ըզթշնամին ։– 103– խնդային ։– 104– Նստէաք ։– 107– գլխիվայրին– 108– չյուսանա՛ ։– ի դրամ ։– 110– տա՛ ։– 112– մարդկու ճաւշա՛ ։– 115– մասաս չիքըն ։– 118– մենք չինէնք ։–

ԼԵ.

Երթանք, կախենք զորըն ու զայրին:
Հետ ընկերաց ծուռ են կացել
Եւ չատ մարդկաց տուն քակեցին,
Խիստ ապիրատ բան խաւսեցան,
Մեղաւք զԱստուած բարկացուցին:
Զինչ որ տուել էր Տէր նոցա,
Զայն գոհութեամբ հերիք չարին,
Բարձի թողի արար զամէն՝
Երթալ ըզհետ իւրեանց սըրտին:
Հանց խարզանաւ Տէրըն ծեծեց,
Որ չ՜իմացան զինչ գործեցին,
Ցորժամ գիտաց, թէ խրատեցան
Եւ զըղջացան յիւրեանց մըտին,
Տէրըն դարձեալ ողորմեցաւ
Փոխրէնք արար հակառակին.
Հանց սատակեաց Աստուած զ՜նոսա
Զինչ Մասասչեց չար կամէին:
Իսրայէլի գերիքն էաք
Ձեռն ՜ինք ընկել ի Բուղային,
Ումեկ հատել էր ի սըրտէ
Թէ զի՞նչ լինի ճար մեր բանին:
Դառն եւ ողորմ ՜ինք մընացել,
Թէ ե՞րբ հասնենք մեր մուրատին,
Ցերկու դիմաց ՜ինք պարտական,
Մէկ աստէնիս, մէկ անդէնին:
Ցիւրեանց բարեացըն զըրկեցան,
Դէմ յԱստուծոյ չատ մի լացին,
Գանգատ ասցին ի խոր սըրտէ,
Հառաչանաւք զայս ասացին.
«Տէ՛ր, մի՛ հաներ զմեզ ի կենացս,
Մինչ որ մեր պարտքըս վըճարին»:

---

119– երթան.– եւ զայրին:– 120– ընգերաց:– 123– զա՜ծ:–
124– տո՜ւել էր տ՜ր:– 125– գոհութ՜բ:– 127– տ՜րըն:–
129– բնագիրը՝ իմացան:– 132– Տ՜րըն:– 134– ա՜ծ զնոսա:–
135– մասաս չեց:– 136– գերինք:– 137– ընգել:–
138– ի սրտէ.– 139– ինչ:– 140– էնք:– 141– երբ:– 142– էնք:–
143– աստենիս:– 144– բարեացն զրկեցան:– 145– յա՜յ:–
146– սրտէ:– 148– տ՜ր մի.– 149– վըճարեն:–

Լե.

Զինչ Մասաս չի կան՝ հաւասար
Ամենքեան թող ժողովլին,
Որ աղաչենք ըզՏէր Աստուած,
Որ ցուցանէ Արղուն ղանին,
Թէ չէ աղէկ այն արտասուքն,
Որ թափեցին Աւրտուղանին:
Կու հրամայէ հոգցող անուն,
Թաչար, Ղազան, Սաղալաւլին.
Թէ «Շուտ հոգցէք գիւրեանց բաներդ,
Թէ չէ ի հետ ձեզ պարապին»:
Անէծքըն չէ՛ ուչում բարի,
Շուտ կու բըռնէ ղաղամորդին,
Աստուած յերկնից ականջ դըրել՝
Խիստ կու լըսէ մեղաւորին:
Թէպէտ որ քիչ մի կու դատէ,
Բայց կու փորձէ զիւր սիրելին,
Տէ՛ր, որ զՑունան ըւեր կիտին,
Հաներ արձակ հող ու՞ ի ցետին,
Զայս մեղաւոր ծառայքս յետին,
Մի՛ տար տանել մեղաց գետին,
Ցըրիկն երեսքն ի վայր դըրել
Եւ արտասուաւք թանայր զգետին,
Տէ՛ր, մի՛ առներ ի մեր գործոյս
Մեզ հատուցո՛ւմըն չար բանին,
Դու ես անմեղ եւ անղալատ,
Հողն ո՞վ լինի, որ չ՞մեղանչին:
Բաներս աղէկ ու գործքըս վատ,
Զիս մի՛ դատել յիմ արժանին,
Բըժիշկըն չէ՛ ողջաց ի բան,
Գեմ դու եկիր վասն հիւանդին:

---

150– մասաս չի կա՛ :– 151– ժողովեն :– 152– զո՞ր ա՞ծ :–
153– արղուն :– 155– Որ թափեցին աւրթախընին :–
156– կու հրամայէ հոգցող անուն թաչար ղուչան սա՛ ղաղաւլին. թէ չուտ :–
161– կու բռնէ ղաղամ որդին :– 162– ա՞ծ :– դրել : 163– կու լսէ :–
165– բաց :– 166– տ՞ր որ զյունան :– կէտին :– 169– գետի[ն] :–
170– երեսք :– դրել :– 171– տ՞ր մի :– 172– հատուցումն :–
178– բժիշկըն չէ :– 179– դու :–

*Լե.*

*Ցերկնից ի վայր խոնարհեցար,*
*Վասըն միոյ մեղաւորին,*
*Ողորմութեանըդ կու մընամք,*
*Որ վերջք առնես Դու մեր չարին:*
*Աւուրքս անցաւ հետ Մասասխս,*
*Եզըր չի կայ, հուն չերեւին.*
*Ցաւս երկարեց, ւ՜ի յուսկր անցաւ,*
*Այլ չի մընաց համբերութիւն:*
*Տէ՛ր, վասըն Քո Աստուածութեանդ*
*Ցաւդըն հասիր մեզ յատենին,*
*Փըրկեա՛ ըզմեզ ի տանջանաց,*
*Երեւեցո՛ զերեսս Քոյին:*

*
* *

---

181– *վասն :–* 182– *ողորմութ՟եըդ :–*
183– *դու :–* 184– *մասասխս :–*
185– *չըկա՛–* 186– *համբերութ՟ի :–*
188– *Տ՟ր .– քո ա՟ծութ՟եդ :–* 191– *քոյին :–*

ԼԶ.

# ՆՈՐԻՆ ՖՐԿԱՆՆ
## ա ս ա ց ե ա լ
## ԲԱՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ

7-3-5

*Յառաջն ինչ խորհուրդ եղեւ՝ Որդին ըսկիզբըն ամենին,*
*Դեռ այն փայտըն չէր բուսել, որ հանէին զմեր Տէրն ի Խաչին:*
*Յետոյ էր ծընել Սուրբ Կոյսն, ո՞ր զԱդամայ կաւըն կու զուգին*
*Թէ չէ՝ ի՞նչ պատճառ եղեւ, որ երեկ խընդիր ծառային:*
*Ծընաւ անարատ Սուրբ Կոյսն ի յայրին զՈրդին միածին,*
*Մոգուց Թագաւորքն եկին եւ տեսին զԱստուած՝ Նոր ու Հին:*
*Ո՞վ իշխէ ասել զԱստուած, Թէ պատած էր ի խանձարուրին,*
*Այսինքըն միայն Աստուած, որ ասաց զէլի է՛լն ի Խաչին:*
*Յերկնից ի յերկիր իջեալ խոնարհեալ, Թէ որ ուսանին,*
*զԱստուած ո՞վ կարէ տեսնուլ, բայց ծընաւ ու զի՛նքն սընու-*
*ցին:*
*Այսինքն է՝ ծածկեալ Խորհուրդ, բայց յայտնի է՝ գըրկով բար-*
*ձին,*
*Ա՛յն որ զամենայն էստեղծ, ի բանից՝ զի՛նքըն խաչեցին:*
*Գեմ ի սկըզբանէ էր Բանն Աստըւած ի յարգանդ Կուսին,*
*Ամուրքըն երկնից չի կայր, անդընդոց աղխքըն չերեւին:*
*Ըզխաղողն արիւն զուգեց եւ զ՞ցորեանն Իւրեանըն մարմին,*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16, Bidl. Libr. fol. 159b-161b:-

Միւս բազմաթիւ Ձռ-ներից եւ ո՛չ մէկն ունի տաղիս փոփոխակը:-

3– Ox. 1. *մեկնուԹ՟ե*:– 4– *եղեւ որդին ըսկիզըն ամենի*:– 5– *տէրն*:–

6– *ս՟ր կոյսն ո՞ր զադամա՛*:– 7– *խնդիր*:– 8– *ս՟ր կոյսն.– զորդին*:–

9– *զա՟ծ նոր*:– 10– *ով զա՟ծ*:– 11– *այսինքն.– ա՟ծն*:–

12– *խոնարհեալ Թէ*:– 13– *զա՟ծ ով.– ծընաւ որ զինքն*:–

14– *այս ինքն է ծածկե՟լ խորհուրդ*: 15– *զա՟մ.– ի բանից զինքըն*:–

16– *Գեմ իսկ ըզբանէ էր բանն. աստըւած.– կուսին*.–

17– *ամուրքն.– չը կա՛յր.– անդնդոց*:–

18– *զցորեանն իւրեանցըն*:– 19– *Առ հայրն եւ հոգին*:– ¶ Բնագիրը 19 *եւ* 20 տողերի մէջ ունի նաեւ հետեւեալ քառեակը.–

*«Անխե՛լ, իմացի՛ր զայս բան ու արա՛յ դու քեզ լաւուԹ՟ի.*
*«Կացիր դու խոնարհ եւ հեզ, որ տեսնուս դու չատ բարուԹ՟ի:*
*«Ջաղքատն երբ բոբիկ տեսնուս եւ մերկիկ տուր զին քրԹէԹին,*
*«Թէ չէ քեզ պահած է աւր, որ ընգնիս ի մեծ նեղուԹ՟ի»:*

Ինչպէս երեւում է այս քառեակն օտարամուտ է եւ տաղիս չէ վերաբե-

## ԼԶ.

*Զայս մեզ յիշատակ եթող եւ գընաց առ Հայրն եւ Հոգին:*
*Քան զԱդամ այլ ո՞վ հարուստ, որ ունէր զ՜դրախտն առանձին,*
*Դեռ այն ծառըն չէր բուսել, ո՛չ պըտուղն ինչ պատո՜ւիրեցին:*
*Պըտուղ մի՛ ուտեր, Ադա՛մ, որ չընկնիս ի մեծ գերութիւն,*
*Կերաւ, խաբեցաւ Ադամ՝ զաւըրըն լայր ի դիմաց դըրախտին:*
*Է՞ր ես հագել դու նասիճ ու նըստել զինչ մէկ ի նըւին,*
*Ճորտեր են կանգնած յառջեւդ՝ ղըռաւաչ գինին լընուին:*
*Տառպելքն են ի դուռն եկել, որ իւրեանցն կըտոր մուրային,*
*Կանչէր, թէ «ի զատ հանէք յերեսէս, որ իրք չուզէին»:*
*Յորժամ դատաստան լինէր, որ ըզքեզ յառաջ կոչէին,*
*Ի՞նչ ես դու տուել նոցա, որ ի քո դուռըն կու գային:*
*Ո՞ւր են այն ամէն ճորտերն, որ կանչ՜ին «Անո՛ւշ պարոնին»,*
*Թող գան ու թափեն ըզձեզ կըրակէն ու՜ի հուր գեհենին:*
*Ո՞ւր է քո ոսկի կապայն, որ ծառայքն ի թեւն առնուին,*
*Ո՞ւր է փափուկ անկողինդ, որ գիշերըն քեզ փըռէին:*
*Այսաւր ո՛չ կապայ ունիս, ո՛չ անկողին մէջն ի հողին,*
*Ցայգուց՝ հուր ու բոց ածեն ի բերան ըռաւաչ խըմողին:*

---

րում, որ ակնյայտնի է յանգերի տարբեր վերջաւորութիւնից եւ նախորդի ու յետնորդի հետ տրամաբանական եւ ոչ մ իկապ չունի: Այսպիսի «Թիւն» յանգավերջով Տաղ է նաեւ «*Թ՜ուղես որ հանդիստ գըտնուս եւ յարգիք ու խիստ մեծութիւն*», *Տաղ ԻԲ.*— սակայն ըստ բովանդակութեան եւ այդ Տաղին չպատկանելու համար, աւելի գերադաս համարեցինք փոխադրել «*Յորժամ հայհոյէք զաղքատն...*» Տաղի վերջը, իբրեւ Տաղիս «*կաֆայ*», որին բովանդակութեամբ, թէեւ ո՛չ յանգով, համապատասխանում է քառեակս: *Տես՝ Տաղ ԽԲ. .... տող* 28–31:¶

20– *զաղամ այլով:— զդրախտն:—* ¶ *Հմմտ.* Քուչակի տաղերի մէջ Ծ քառեակը, *էջ* 93, «*Քան զԱդամ այլ ինչ հարուստ, որ ունէր զդրախտն առանձին...*», միւս երեք տողերը՝ տարբեր:¶

21– *Ոչ պտուղն.— պատո՜ւիրեցին:—* 22– *մի ուտել ադամ որ չընգնիս.— գերութ՜ի:—* 23– *ադամ:—*

24– *նա՛սիճ:— ի նը՜ւին:—* 25– *յարջեւդ.—ղըռա՜ւաչ:—*

27– *թէ ի զատ:— յերես էս որ:—* 29– *ինչ ես.— տըւել.— կու գա՛ին:—*

30– *Ուր.— կանչէն:—* 31– *ըզձեզ կըրակէն ու՜ի:—*

32– *Ո՞ւր է.— կապա՛յն.— առնո՜ւին:—* 33– *ուր է.— անգողինդ. որ:—*

34– *ոչ կապա՛.— ոչ անկողին ի մէջն ի:—*

35– *յարգուց հուր.— ըռա՜ւաղ խմողին:—*

ԼԶ.

*Ո՛չ դուստր, ո՛չ որդին աւգտէ, ո՛չ դեկան իւր վաստակողին,*
*Յորժամ յարութիւն լինի՝ չունենաս պացխուն դատողին։*
*Մինչ խելքդ ի վերայ է դեռ, դու քակէ զդըժոխքն ահագին,*
*Ծինէ անդէնին դարպաս ու դընէ դըրախտ մեծագին։*
*Դարձեալ հրամայէ Աստուած ընդ հարուստ ու փարթամընին,*
*Ո՞ւր է ձեր ամէն դեկանն ու թաւերն եւ չատ ծառանին։*
*Թող գան ու թափեն ըզձեզ ի ձեռացըն չար տանջողին,*
*Է՞ր չ՜իք ի տալ ինձ ի փոխ, երբ գային ի ձեր դըռվընին։*
*Գեմ խիստ փոշիման է լեալ մեծատունն յիւրենն ի մըտին,*
*Ասէ, թէ «Ե՞րբ տեսայ ես ըզաղքատն ի յիմ դըռվընին»։*
*Անխե՛լ, գեմ աղքատն էր այն, որ ճորտերն ըզինքն վարէին,*
*Եւ կամ թէ տային կոտոր, որ չըներն զինքըն չուտէին։*
*Յայգուց, որ դընենք կըշեռք ու՜ իրաւունք առնենք ամէնին,*
*Բարեացն զփոխարէնըն տանք քան զհարիւր հազարն աւելին,*
*Նոքա, որ զկաշառքն առին ու չատ վաշխ եւ մեծ տոկոսին,*
*Ջհուրն եւ ըզկըրակըն տան եւ զտանջանքն, որ ո՛չ չիջանին։*
*Ամբարձ ըզհոգոյ աչերդ ու՜ յըղըրկէ պաշար զանդէնին,*
*Այսաւր դու արա ճարակ, որ չ՜ լինիս բաժին գեհենին։*
*Զինչ որ դու ունիս չատ գանձ ու ղումաշ եւ բաժին ժանգին,*
*Գընա՛, վաճառէ դու զինքն ու՚աղքատացըն տուր դու բաժին։*
*Ու Տէրն ողորմի յէգուց, չը տայ զքեզ բաժին սատանին,*

---

36– *ոչ դուստր ոչ.– ոչ դեկան*։–
37– *յարութ˜ի լինի. չունենաս*։–
38– *ի վերա*։–
39– *ատենին*։–
40– *ա˜ծ*։– 41– *ուր է.— թաւ˅երն*։–
43– *էր չիք.– ինձի փոխ.– դըռվնին*։– 44– *ի մտին*։–
45– *ասէ. թէ երբ տեսա՛.– դըռվնին*։–
46– *Անխել գեմ.— որ ճորտերն եզնին վարէին*։–
48– *ւիրաւունք առնէնք ամենին.–*
49– *զփոխարէնն տանք. քան*։–
50– *Նոքա որ.– առէն*։–
51– *զկըրակըն*։–
52– *ւյղըրկէ.– զանդենին*։–
53– *չլինիս*։–
54– *ու ղումաշ բաժին ժանգ*։–
55– *գընա՛ վաճառէ.– զինքըն*։–
56– *տ˜րն.– չը տա՛.– բաժ սատանային*։–

ԼԶ.

*Կանգնիս ի յաջոյ դեհին ու չահես ըզլոյսն եւ զ˘բարին։*
*Զինչ որ խոստացաւ Աստուած՝ զայն կու տայ իւրեն ծառային,*
*Ջանա՛ ու ճարտար կացիր, որ առնուս ըզտեղ հայրենին։*
*Զով որ դու խելաւք գիտ˘իր, քան զամէն անխել նոքա ˘ին,*
*Երբ ցաւ մի դիպնէր նոցա . . . . . . . . . . . .*
*Խելաւք ես նոցա ասեմ, որ ողջնու թանգար գըրէին,*
*Երբ մահն ի վերայ հասնէր, լուկ անհոգ զաչըրն խըփէին։*

*
* *

---

57– *զբարին* ։–

58– *ա˜ծ. զայն կու տա՛* ։–

59– *ջանայ.– զտեղ* ։–

60– *գիտիր.– նոքա են* ։–

61– *նոցա...*] Բնագրի մէջ պակասաւոր եւ տեղը բաց թողած] ։–

62– *որ ողջնու թանդար.*] այսպէս՝ *բնագիրը*։ (Արդեօք պիտի կարդալ– «*Որ ողջնութ արդար գըրէին* ։– *թէ*՝ «Որ ողջնութ անդարձ գրէին» ։–

63– *ի վերա.– լու կան հոգ* ։–

ԼԷ.

# ՆՈՐԻՆ ՖՐԿԱՆՆ

## ա ս ա ց ե ա լ

# ԲԱՆ ՄՏԱԽՈՐ ԵՒ ՀՈԳԵՇԱՀ

### Ցաղագս Արարչութեան Ամենայն Կենդանեաց

3-3 || 2-3

*Աստուծոյ զաւրութիւն եւ կամքն է աւրհնեալ,*
*Զարարածս յոչընչէ թէ ո՞նց գոյացել.*
*Ի յառաջ հըրաման ու հիմն է դըրել,*
*Զանդընդոց խորութիւն բանիւ Նա փակել:*
*Հակառակ հողմերով ի ջուրն է փըչել,*
*Քաջութեամբ ըզկամարն ամուր կառուցել.*
*Գեղեցիկ լուսաւորք յերկինքն է կախել,*
*Աստեղացն անմոլար ճանա՛պարհ ցուցել:*
*Ի վերայ գըմբէթին կամար է կազմել,*
*Ի չորից կենդանեաց վերայ հանգուցել:*
*Ի հոգոյ ու՟ի լուսոյ հրեշտակք է ստեղծել,*
*Պարունակ աթոռոյն է չը՛րջափակել:*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16, Bodl. Libr. fol. 162b-165b :—
*Հմմտ.* Ms. Arm. F. 21, Bodl. Libr., fol. 114a-117b :—
Brit. Mus. Or. 2622, fol. 127a-132a,–

1–4– Ox. 1. *«Բան պիտանի եւ լաւ ասացեալ Ֆրկանն. վասն արարչութեան»* :– Ox. 2, Bor. *«Բանք մտաւոր եւ հոգէշահ ասացեալ. Ֆրկանն յաղագս արարչութեան* [= Bor. *արարչութ՟ե*] *ամենայն կենդանեաց* [= Bor. չունի *վերջին երկու բառերը*] :—

5– Ox. 1, Ox., *Ա՟յ* — Ox. 1, Ox. 2, Bor. *զաւրութ՟ի* — Ox. 1. *եւ կեանք ա՟հեալ է* — Ox. 2. *կամք ա՟հնեալ* — Bor. *ա՟հընել* — Ox. 2, Bor. չունին *է* :—

6– Ox. 1, Ox. 2, Bor. *ոնց* :— 7– Ox. 1. *եւ հիմն է դըրեր* — Ox. 1, Bor. *դրել* :— 8– Ox. 2, Bor. *խորութ՟ի զանդընդոց* — *նայ.* Ox. 1. *խորութ՟ի* — *նա* :– 9– Ox. 1. *հողմերովն* — Ox. 2, Bor. *փչել* :—

10– Bor., Ox. 2. *զկամարն* :– 11– Ox. 1. *յերկինս է* — Bor. *է կախել* :—

12– Ox. 1. *աստեղաց* — Bor. *ցուցուցել* :—

13– Ox. 1. *ի վերակումբեթին* — Ox. 2, Bor. *ի վ՟ր գումբէթին* [= Bor. *գումբէղին*]. Ox. 2. չունի *է.* Bor. *էլ կազմել* :—

14– Ox. 1. *վերա՛* — Bor. *վ՟ր* :—

15– Ox. 1. *ի հըրոյ ի* — Ox. 2, Bor. *ի հոգւոյ ու ի* — *հրեշտակք են* [=Bor. *հրեշտակ էն*] *անել* :—

**Լէ.**

*Հրամանաւ ըզհողոյ երեսն է բացել,*
*Ի հըրոյ ւ՟ի ջըրոյ լերինք եռացել։*
*Ցամաքիս ամրութեան բեւեռք է դըրել,*
*Ի լերանց է զաղբիւրք եւ գետքըն բըղխել։*
*Զինչ ի տիկ ըզծովու ջուրըն ժողովել,*
*Սահմանիւ ամենայն է ա՛մրացուցել։*
*Մեծամեծ կենդանիք ի ջուրն է դըրել*
*ւ՟Ի ջըրոյն թեւաւորք յաւդըն թըռուցել։*
*Ի հողոյ ւ՟ի ջըրոյ ըզբոյսքն է հանել,*
*Զանասուն ու զգազանք յերկիր ծընուցել։*
*Տարերաւք զամենայն յըղորդ կացուցել,*
*Յետ այսոց ամենայն ըզմարդն արարել։*
*Արարչին քաղցրութիւն եւ փա՛ռքըն աւրհնել,*
*Թ՟ի հողոյն ինչ գոհար պատկեր յաւրինել։*
*Եւթնարփեան շընորհաւք ըզմա՛րդըն լըցել,*
*Հանց հոգի եւ իմացք ու խելք է տըւել։*
*Յեղեմըն վանց մարդոյ դըրախտ է զուգել,*

---

16– Ox. 1, Ox. 2, Bor. *չըջափակել*:— 17– Ox. 2, Bor. *զհողու զերեսն*:—
18– Ox. 2. *ի հրոյ ու ի ջրոյ*.— Bor. *ի հողոյ ու ի ջրոյ*:—
19– Ox. 1. *Ցամաքին*.— Ox. 1, Ox. 2, Bor. *ամրութ՟ե*.— Ox. 2. *է դրել*.— Bor. *ի դրել*:—
20– Ox. 2. *ի լերանց զաղբիւրք*.— Ox. 1. *եւ զգետքն*.— Ox. 2, Bor. *ու գետք նա* [= Bor. *նայ*] *բըղխել* [= Ox. 2. *բխել*]:—
21– Ox. 2. *զծովու ջուրն* [= Bor.]:—
22– Ox. 2, Bor. *զա՟մ է*.— Ox. 2. *զամէն է*:—
23– Ox. 2, Bor. *դրել*:— 24– Ox. 1. *ի ջըրոյն*.— Ox. 2, Bor. *ու ի ջրոյն* [= Bor. *ւի ջրոյն*]. *թեւաւորք ի դուրս թռուցել*. 25– Ox. 2, Bor. *ու ի* [= Bor. *ւի*] *ջրոյ զբոյսք*.— Ox. 1. *զբուսքն*: $ – Ox. 1. *յերկիր սընուցել*.— Ox. 2, Bor. *ծնուցել*:—
27– Ox. 1. Ox. 2, Bor. *զա՟մ*.— Ox. 1. *ուղորդ*.— Ox. 2, Bor. *յղորդ*:—
28– Ox. 1. *այսոցս ա՟մ*.— *արարեր*.— Ox. 2. *այսցանէ զմարդն*.— Bor. *յետէ այսոց է զմարդն*:—
29– Ox. 1, Ox. 2, Bor. *քաղցրութ՟ի*.— Ox. 2. *ու կամքն*.— Ox. 1. Bor. *եւ փառքն*.— Ox. 1, Ox. 2, *ա՟հել*.— Bor. *ա՟հնել*:— 30– Ox. 1, Bor. *թէ հողոյն*.— Ox. 1. *գուհար*.— Ox. 2. *թէ ի*.— Ox. 2, Bor. *աւրինել*:— 31– Ox. 2, Bor. *շնորհաւք զմարդն*.— Ox. 2. *լըցեր*:—
32– Ox. 2, *հայնց*. Ox. 2, Bor. *ու յիմացք*.— Ox. 1. *իմացք ու միտք*:— Ox. 2. *տվել*:— 33– Ox. 1. *Զդրախտն եդեմ յարեւելս մարդոյն է*

Լէ·

Գեղեցիկ մըրգաբերք ի նա է տընկել:
Զինչ զեղունք գեղեցիկ կանայք է ստեղծել,
Աշխարհի շինութեան պատճառ հրամայել:
Գոյն ըզգոյն հանդերձիւ զինքըն պըճըներ,
Զանազան կերակրաւք զինքըն ճաշակել:
Զարեգակն ու զլուսի՛նըն ճորտ է տըւել,
Ըզցերեկն աշխարհի վայելք է զուգել,
Ըզգիշե՛րըն քընոյ հանգիստ հրամայել:
Նաւերով ըզմարդիկք ի ծովն իջուցել,
Ամենայն եղելոցս իշխան կացուցել,
Զանասունք ու զ̆ գազանք ու զ̆ դեւք է կապել,
Հանճարով զամենայն ի ձեռն է տըւել:
Հանց տաճիկ ձիանով է բա՛րձրացուցել,
Որ զաշխարհս ամենայն թըրով նա կալել:
Ո՛չ ոսկի, ւ̆ո՛չ արծաթ չէ իւրն խընայել,
Մարգարիտ պատուական, ակունք ցուցուցել,
Զամենայն ցեղ հընարք ւ̆ արուեստ ուսուցել:
Ով ունի խելք ու միտք եւ զայս իմացել,

---

տըւել·— Ox. 2. Ցեղեմըն վասն·— Bor. Ցեղեմն·— Ox. 2, Bor. դրախտ:— 34– Ox. 2. մըրկաբերք·— Ox. 2, Bor. մրկաբեր [= Ox. 2. մրfաբերք] յինքն է տնկել·— Ox. 1. տնգել:—
35– կանք է:— 36– Ox. 1. շինութ֊ե·— Bor. շինութի֊·— Ox. 2. աճելոյ·— Ox. 1. հրամել:— 37– Bor. զգոյն·— Ox. 2. զգուն·— Ox. 2. զինքն պճընել:—
38– Ox. 1. պըտըղով զինքըն·— Ox. 2. Bor. զինքն: 39– Ox. 2, Bor. զլուսինն·— Ox. 1. տըվել·— Ox. 2. տվել:— 40– Ox. 1. ի ցերէկն աշ֊խարհ ի վայելք·— Bor. զցերեկն·— Bor., Ox. 2. վայելումն:—
41– Ox. 2, Bor. Զգիշերն քնոյ·— Ox. 1. հըրամել·— Bor. հրամել:—
42– Ox. 1, Bor. Նաւելով·— Ox. 2. զմադիկ·— Bor. զմարդիկ:—
43– Ox. 1. Զմարդ եղելոցս·— Ox. 2, Bor. Ա֊մ:—
44– Ox. 1, Ox. 2. զանասուն·— Ox. 2. գազանք ու դեւք [= Bor.]:— ¶ Թեւf? = Թռչունն:
45– Ox. 2. զամէնն·— Ox. 1, Bor. զա֊մ·— Ox. 2, Bor. տվել:—
46– Ox. 2. հայնց:— 47– Ox. 1, Ox. 2, Bor. ա֊մ·— Ox 1. Թրով նա՛յ· Ox. 2. Թր[ով] նայ:— 48– Ox. 1, Bor. ոչ արծաթ·— Ox. 2. եւ արծաթ իւր չէ խնայել:— 49– Ox. 2, Bor. պատուականք·— Ox. 2. ցուցել·— Bor. ցուցանել:— 50– Ox. 1, Ox. 2, Bor. զամ·— Bor. հնարք ու·— Ox. 2. հնար ու:— 51– Bor. ու զայս·— Ox. 2. որ զայս:—

Լէ. Որ սիրով Աստուած զ՜մարդըն մեծարել.
Յաշխարհի հանց պարգեւք ու փառք է տուել,
ւ՜Ի յերկինքն է արքա՛յութիւն խոստացել:
Փառակից զիւր Որդին ի վայր առաքել,
Մեզ համար ի պենո՛ւմըն զինքն է տըւել.
Զերախտիքն, որ Աստուած առ մեզ է արել,
Մեր լեզո՜ւով ըզնա ո՞ւր կարենք վըճարել:
Զաւրութիւնք երկնաւորք յահէն սասանել,
Յերեսացն ապառաժք ու վէմք է հալել:
Յիւր ահէն ծով եւ գետք՝ ամէն ցամաքել,
Զայս ամէնըս բանիւ Ինքն է ըստեղծել:
Յետ այսոր ծառայի մարմին ըզգեցել,
Իւր կամաւ վասըն մեր ի մահ մատընել.
Զիւր մարմինն ու զարի՛ւնըն մեզ է բաշխել,
Սըրբասաց սերովբէքն այսոր ցանկացել:
Զայս ամէն բարութիւնս է մեզ կամեցել,
Պատուական սուրբ արեամբն ըզմեզ Նա գընել:
Քան ըզհայր առաւել ի մեզ գըթացել,

---

52– Ox. 2. զմարդկան նոր սիրով ա՟ծ մեծարել :—

53– Ox. 2. Յաշխարհիս հայնց փառք ու պարգեւք է տվել [= Bor.].— Ox. 1. տըվել :— 54– Ox. 1. ի յերկինքն ·— Ox. 2, Bor. ու ի ·— Ox. 1, Ox. 2, Bor. արքայութ՟ի :—

55– Ox. 1. Զփառակից որդին իւր ·— Ox. 2, Bor. որդին :—

56– Ox. 2, Bor. ի զենումն ·— տվել :—

57– Ox. 1. ա՟ծ ·— Ox. 2. ա՟ծ է մեզ արել ·— Bor. ա՟ծ է առ մեզ արել :—

58– Ox. 2, Bor. լեզուով ·— Ox. 2. զնայ յուր ·— Bor. զնա ·— Ox. 1. կարէնք ·— Ox. 2, Bor. վճարել :—

59– Ox. 1, Ox. 2, Bor. զաւրութ՟իք :—

60– Ox. 1. ապառաժ ·— Ox. 2. ապառաժխք :— 61– Ox. 2. ծովք ու Bor. գծով ու :— 62– Ox. 1. Bor. ամէնքըս ·— Ox. 2. ամէնս ի բանից ինքն ստեղծել ·— Bor. բանիցս է ինքն ըստեղծել ·— Ox. 1. ինքն ·—

63– Ox. 2. ծառայ ի մարմին ըզգեցել ·— Bor. է զգեցել :—

64– Ox. 2, Bor. վասն ·— Bor. ի մահ է :—

65– Ox. 1. մարմին եւ ·— Bor. ու զարիւն ի մեզ է ·— Ox. 2. ու զարիւն ·— չունի է :— 66– Ox. 1, Ox. 2, Bor. սրբասաց ·— Ox. 1. սէրովբէքն ·— ցանգացել :— 67– Ox. 1, Ox. 2, Bor. բարութ՟իս ·— Ox. 1. մեզ է :—

68– Ox. 1, Ox. 2, Bor. ս՟ր ·— Ox. 1. ըզմեզ է գնել ·— Bor. նայ գնել [= Ox. 2] :— 69– Ox. 2, Bor. զհայր ·— Ox. 1. առաւել սիրով է սիրել ·— Ox. 2, Bor. գթացել :—

Լէ.

Քան ըզմայր առաւել աղէտ Նա կալել,
Քան զեղբայր առաւել ըզմեզ սիրեցել,
Զէ՛ ի մեր առնելո՛ցըս մեզ հատուցել:
Թէ խաբել ՟ինք քընով եւ կամ ծուլացել,
Ինքն եղել մեզ Քաւիչ եւ Ինքն ողորմել:
Նեղութիւն թ՟ինք մըտել կամ ի փորձութիւն,
Տէրն եղեւ պահապան եւ Ինքն է հաճել:
Զայս ամէն զինչ Աստուած է հետ մեզ արել,
Ե՞րբ կարենք Իւր նըման զինքըն ծառայել:
Քեզ պիտի հայնց կենալ զինչ Տէրն ասացել,
Մի՛ շընալ, գողանալ, մի ը՛սպանանել:
Ծընաւղաց ւ՟ընկերաց՝ սիրով ծառայել,
Զզհոգի եւ զ՟մարմին ու զմիտք մաքըրել:
Ուղղափառ հաւատով զԱստուած դաւանել,
Աղքատաց եւ այրեաց, որբոց գըթացել:
Հիւանդաց, նեղելոց ի տես գընացել,
Իմաստնոց եւ ծերոց ըսպա՛սաւորել:
Ամէնի հաւասար գըթով խընամել,
Որ ապա գիտենանք, թէ Տէրն է հաճել:
Մեղաւոր եւ աղքատ Ֆըրիկն ասացել,

---

70– Ox. 2, Bor. զմայր .— Ox. 1. աղէտ է կալել .— Ox. 2. Նայ :—
71– Ox. 1. աւելի .— Ox. 1. ի մեզ .— Bor. զմեզ սիրեցեր :—
72– Ox. 1. առնելեացըս .— Ox. 2, Bor. առնելոցս .— Bor. ի մեզ :—
73– Ox. 1. Էնք քնով .— Ox. 2, Bor. ենք քնով .— Ox. 2. ու կամ .— Bor. կամ եւ :— 74– Ox. 2, Bor. ու ինքն :— 75– Ox. 1. թէ նեղութ՟ի ենք մտել .— Ox. 2, Bor. թէ մտել ենք փորձութ՟ի եւ կամ նեղութ՟ի :—
76– Ox. 1, Ox. 2, Bor. տ՟րն .— ինքն :— 77– Ox. 1, Ox. 2, Bor. ա՟ծ .— արեր :— 78– Ox. 1. երբ կարէնք մեք հաճոյ իւրըն .— Ox. 2, Bor. յուր կարենք իւր նման զինքն :— 79– Ox. 2. հայնց . Bor. հայն .— Ox. 1, Bor. զինչ ինքն .— Ox. 2. տ՟րն :— 80– Ox. 1, Ox. 2, Bor. մի շնալ գողանալ մի [= Bor. կամ] .— Ox. 2. սպանանել :—
81– Ox. 2, ծնողաց եւ .— Bor. ծնաւղաց եւ .— Ox. 1. ընգերաց :—
82– Ox. 2, Bor. զհոգի ու .— Bor. ու զմիտք մաքըրել :—
83– Ox. 1, Ox. 2, Bor. զա՟ծ .— Ox. 2, Bor. ծառայել :—
84– Ox. 1. որբոց ծառայել .— Ox. 2. գթացե՛լ .— Bor. գթացեալ :—
85– Ox. 2, Bor. գնացել :— 86– Ox. 2, Bor. ծերոց հոգով ծառայել :—
87– Ox. 1. Ամենի .— գթով .— Ox. 2, Bor. սիրով խնամել [= Ox. 1] :—
88– Bor. ապայ .— Ox. 1, Ox. 2, Bor. տ՟րն :— 89– Ox. 1, Ox. 2, Bor.

Լէ.

Ամէնի հաւասար ի յոտք եմ անկել:
Ի ձեզնէ թողութիւն մեղաց խընդըրել,
Բարեխաւս առ Աստուած սըրտիւ յաւժարել:
Որ լինի մեր խորհուրդս ի Տէր կատարել,
Հաւասար, ի՛մ եղբարք, ամե՛նքըդ աւրհնել:
Դուք լինիք արժանի զԱստուած տեսանել,
Քաղցրալուր ականջով զբարբա՛ռըն լըսել,
Թ՟է հոգին ինչ շընորհք եւ խաւսք է տըւել,
Բայց յետեւ ամէնին ըզմահ կամեցել:

*

* *

---

**Ցրիկն** :— 90– Ox. 1, Ox. 2, *ամենի* .— Ox. 1 *անգել* :—
91– Ox. 1, Ox. 2, Bor. *թողութ՟ի* .— Ox. 2. *մեղացն խնդրել* [= Bor.].— Ox. 1. *խնդըրել* :— 92– Ox. 2, Bor. *խնդրեցէք յա՟յ սրտիւ* .— Ox. 1. *ա՟ծ սրտիւ* :— 93– Ox. 2. *ի մեր* .— Ox. 1. *ի տ՟ր կատարեալ* .— Ox. 2, Bor. *ի տ՟ր* :— 94– Ox. 1. *հաւասարեմք եղբայրք ամենքդ ա՟հնել* .— Ox. 2, Bor. *հաւասար իմ* [= Bor. *հաւասարիմ*] *եղբայրք ամէնքն* [= Ox. 2. *ամէնք*] *ա՟հնել* :—
95– Ox. 2, Bor. *գոհացիք զա՟յ ինչ* [= Ox 2. *զինչ*] *կայք ժողովել* :— ¶ Ox. 2, Bor. 95 *եւ* 96 տողերի փոխարէն ունին միայն այս փոփոխակը¶ :— Ox. 2. *զա՟ծ* :— 96– Ox. 1. *լսել* :—
97– Ox. 1, Bor. *յետոյ* .— Ox. 1. *ամենի* .— Ox. 2, Bor. *ամենին* .— Ox. 2. *զմահըն* .— Bor. *զմահ* :—

ԼԸ.

# ՆՈՐԻՆ ՖՐԿԱՆՆ
## ասացեալ
## ԽՐԱՏ ՀՈԳԵՇԱՀ
[Անցանի մեծագոյն]

3-3 || 2-3

*Փափագել եմ ի ջուրն՝ յուսով կու գընամ,*
*Թէ հասնիմ յայն աղբիւրն, որ կ'ենդանանամ։*
*Ես խըմեմ յայն ջըրէն ու հետ գոհանամ,*
*Թէ թողուն մէկ պահիկ, որ յինք լողանամ։*
*Այն սիրոյ յաւազանն ես զիս լուանամ,*
*Նորոգիմ վերըստին քան ը'զհինն Ադամ,*
*Թէ լինի ինձ ռոճիկ, որ ա'րժանանամ,*
*Դու արա ինձ մըտիկ, թէ ո՞նց կու փայլամ։*
*Թէ զերկիրն կենդանեաց ես ինձ կամենամ,*
*Ցաւրինացն Աստուծոյ ես երբ հեռանամ։*
*Թէ ուզեմ, որ անանց բարոյն տիրանամ՝*

---

*Իբրեւ բնագիր* Ms. Arm. F. 16, Bodl. Libr. fol. 165b-168b.
*Հմմտ.* Ms. Brit. Mus. Bor. 2622, fol. 166b-171a :-
**ՁԲ.** *Երուսաղէմի.* No. 1070, fol. 274b-277a :-

1–4– Ox. 1. *«Նորին Ֆրկանն ասացեալ»* .— Bor. *«Խրատ ոգէշահ ասացեալ Ֆրկա»*. որին կցուած *«Անցանէ մեծագոյն է»*, որ երգի եղանակը յիշեցընող տողն է :– **ՁԵ.** *«Այլ բան Ֆրիկին ասացեալ»* :–

5– Ox. 1, Bor. *փափաքել* .— **ՁԵ.** *փափակել* .— **ՁԵ.** Bor. *կու գնամ* :—

6– **ՁԵ.** *այն* .— Bor. *աղսեւրն* : ¶ Bor. Այս երկու տողերը խազերով .¶ :–

7– **ՁԵ.** *Ցետ խմեմ* [= Ox. 1, Bor.] *այն ջրէն* [=Bor. *ջրեն*] *որ հետ* :–

8– **ՁԵ.** *ինքն լողանամ* .— Ox.1, *յինքըն* [=Bor. *յինքն*] *լողամ* :—

9– Ox. 1. *Այն սիրովն յաւազանն* .— **ՁԵ.** *այն սիրովն որ երբ յովանամ* .— Bor. *այն սիրովըն նայ այլ երբ դոհանամ* :—

10– **ՁԵ.** *վերստին նորոգիմ զինչ** ալվիկ *ադամ* .— Bor. *նոր նոր մանկանամ* .— ¶լուսանցքի վրայ, այլ գրիչ, *«նորոգիմ վերըստին»*¶ .— *Այլուիկ զինչ ադամ* :—

11– **ՁԵ.** *լնի* .– *ռոճիկ ես արժանանամ* :— 12– **ՁԵ.** Bor. *արայ* .— Bor. *կու փայլամ* :— 13– **ՁԵ.** Bor. *զերկիր* :—

14– **ՁԵ.** *աւրինացն ա՞յ* [= Ox. 1. Bor.] *ես եփ* :—

15– **ՁԵ.** *բարուն* :— 16– Ox. 1. *զտուն ու զտեղն ու զեղբայրն ու զքոյրն* .— **ՁԵ.** *տուն ու տեղ ու եղբար* :— 17– Ox. 1, Bor. **ՁԵ.** *արտասուս* .— Bor. *լըւանամ* :— 18– **ՁԵ.** չունի *այս տողը* :—

ԼԸ·

Զ՞տուն ու զտեղ ու զեղբայր ու զ՞քոյր մոռանամ։
Հեղեղեմ զարտասուս ու զիս լուանամ,
Եւ մաքրիմ ի մեղաց եւ ա՛րդարանամ։
Քուրձ ապա ըզգենում, թէ ես կամենամ,
Երբ ձըգեմ զմեծութիւնս եւ ա՛ղքատանամ։
Յոյս ունիմ առ Աստուած, որ ա՛նմեղանամ,
Երբ ի նեղ եւ յանձուկ ճանպարհն յամենամ։
Ես լուսով սուրբ Խաչին անահ կու մընամ,
Թէ հազար զայս բարիս ես ինձ ուզենամ։
Երբ դու տաս ինձ կարո՛ղութիւն զաւրանամ,
Որ կարեմ ժիր կենալ, որ ոչ ծուլանամ։
Յիս նայեաց քաղցրութեամբ, որ նոր մանկանամ,
Չի կարեմ լուծ քաշել ւ՞ ի քեզ մաւտենամ։
Իյահեղ Ատենին երկիւղ չունենամ,
Երբ տեսոյն Յիսուսի ես ա՛րժանանամ։
Սիրտ ունիմ այս բանիս, որ հանց կու ջանամ,
Որ յաղէկ ընկերացն ի զատ չի մընամ։
Յայն աղբիւրն եմ կարաւտ, որ լաց կու կենամ,
Թէ հասնի կաթ մի յիս, որ ա՛րդարանամ։
Երանի ինձ հազար թէ հանց լինենամ,
Որ ի մեծ աղբերէն կարաւտ չի մընամ։

---

19– Bor. Քոյրց ապայ զգենում .— Զե· զգենուլ ։— 20– Զե– Bor. թէ ձգեմ .— Ox. 1, Զե· զմեծութ՟ի .— Bor. զմեծութ՟իս ու ։—
21– Զե– յուս ունիմ ի ա՟ծ .— Ox. 1, Bor. առ ա՟ծ ։—
22– Ox. 1. յանծուկ .— Զե· Bor. անձուկ ճանապարհ [= Զե· Ox. 1. ճանապարհն] ։— 23– Ox. 1, Bor. Զե· ս՟բ Խաչին .— Զե· կու գնամ .— Bor. կու մնամ ։— 24– Ox. 1. ինձ կամենամ .— Զե· կուզենամ ։—
25– Ox. 1. Երբ դու տաս զաւրութ՟ի որ կա՛րողանամ .— Bor. կարողութ՟ի ։— 26– Ox. 1. ծուրանամ ։—
27– Ox. 1, նաեաց .— Զե· նայեց .— Ox. 1, Bor., Զե· քաղցրութ՟բ .— Ox. 1. մանգանամ ։— Զե· Bor. որ կարեմ .— Ox. 1. եւ քեզ .— Ox. 1, Bor. ու ի քեզ ։— 29– Զե· չունի 29 եւ 30 տողերը .— Bor. ու յահեղ ատենէն .— 30– Bor. չունի այս տողը ։— Ox. 1. յ՟սի ։—
32– Ox. 1. Որ ի լաւ .— որ աղէկ .— Ox. 1. ի յետ չի .— Զե· Bor. որ ի լաց ։—
34– Զե· հասնու .— Ox. 1. մի ի յիս .— Զե· յիս ես ։—
35– Զե· Bor. Երանի երանի թէ .— Զե· լինենամ ։—
36– Զե· որ մեծ աղբրէն .— Bor. աղբիւրէն .— Զե· Bor. չմնամ ։—

## ԼԸ․

*Դու Աստուած ես գըթած ու խիստ բարեկամ,*
*Ցայն ջըրէն ինձ արբո, որ ես լիանամ։*
*Ի բըղխմանց Սուրբ Հոգոյդ, որ ես զովանամ,*
*Ցերեսացդ ի լուսոյն ուրախ լինենամ։*
*Ցայն ձայնէն տուր լըսել, որ յաջ դեհըն գամ,*
*Եւ ի ձախ կողմանէն ես ահ չունենամ։*
*Խոստացար մեզ բարի, թէ յայն կեանքըն տամ,*
*Զայն լըսել եմ գերիս ու խիստ կու տարփամ։*
*Երերամ զաւըն ի բուն եւ զայս կու հոգամ,*
*Թ՚երբ լինի այն տառաւսն, որ աւր մի խընդամ։*
*Երբ մեղաւքս եմ մեռած՝ զայդ ո՞նց կու չողամ,*
*Զընդանել է, գեմ, զիս փորձաւղն անըզգամ։*
*Զիս ոսկով ւ՚արծաթով փորձէ յարաժամ,*
*Զերդ յիմար կամ հարբած ի չուռ գամ ու գամ։*
*Զասէի յետ մահու թէ յո՞ւր կու գընամ,*
*Կամ համար ու հաշիւ ես յով պիտի տամ։*

---

37– Ox. 1, **Ձե**․, Bor. *ա՚ծ*․— Bor. *գթած ու խիստ ողորմած բարեկամ*․— **Ձե**․ *գթած ու խիստ բարեկամ*․— Ox. 1. *եւ խիստ ողորմած*։—
38– **Ձե**․ *այն ջրէն*․— Ox. 1. *արբոյ*․— Bor. *ջրեն*։—
39– Ox. 1. *ի բըխմանց*․— Bor. *ի բղխմանց*․— **Ձե**․ *բխմանց*․— Ox. 1, Bor. **Ձե**․ *ս՚բ հոգոյդ*․— Bor. *զաւրանամ*։—
40– Ox. 1. *յերեսաց ի լուսոյդ*․— **Ձե**․ *երեսացդ ի լուսուն*․— *լնենամ*։—
41– **Ձե**․ *այն ձայնէն տուր լսել որ աջ դէհէն կամ ի ձախակողմանէն ազատ լնենամ*․— Bor. *դեհն*։—
42– Bor. *ու ի ձախ կողմանէս*։— 43– **Ձե**․ *ան կանքն*։—
44– Ox. 1, **Ձե**․ *լսել*․— Bor. *գերիս որ հետ քեզ կու գամ*․— **Ձե**․ *ու յետ քի կու գամ*։— 45– **Ձե**․ *Տառապիմ զաւըն*․— **Ձե**․ Bor. *ու զայս*։—
46– Ox. 1. *երբ*․— Bor. *թէ երբ*․— **Ձե**․ *եփ լնի*․— Ox. 1. *այն բարին*․— *խնդամ* [= Bor.] — **Ձե**․ *խայտամ*։—
47– **Ձե**․ *յերբ*,— Ox. 1. *զայն* [= **Ձե**․] *ոնց քուչ ողամ*․ Bor. *քուչ ուղամ*։—
48– **Ձե**․ *զընդանել զիս փորձաւղն գեմ անըզգամ*․— Bor. *զընդանէ գեմ*․— *անզգամ*։— 49– Bor. *Զիս ամէն ցեղ գործով խաբեց տարաժամ*․— Bor. *ոսկով ու*։— 50– **Ձե**․ *Զերդ հարբած ու յիմար ի չուռ կամ ու գամ*․— Bor. *ի չուռ կամ ու գամ*․— Ox. 1. *ի չուռ ես կու գամ*։—
51– Ox. 1, Bor. *Զի* [= *Զի* = *չէի*] *ասել հետ մահու* [= Bor. *մահուն*]․— Ox. 1. *թէ ուր*․— Ox. 1. Bor. **Ձե**․ *կու գնամ*։—
52– Ox. 1. *համար ու չահիւ*․— Bor. **Ձե**․ *ես ում*։—

Զ.

*Լեզուն բարի, քաղցրիկ խաւսի,*
*Երբ մարդ լըսէ, նա՛յ, հաւանի.*
*Նա է պատո̆ւած յամէն տեղի,*
*Յամէն մարդոյ է գովելի:*

*Մէկն է ձեռաւք աննըմանի,*
*Հասեալ ուսման եւ արո̆ւեստի,*
*Հիմն արկանէ յատակ ծովի,*
*Կամուրջ կապէ վերայ գետի:*

*Մէկն է կերպիւ տընազելի,*
*Ի ախտերես եւ աղտեղի.*
*Մէկին ձեռո̆ւին է զերթ գողի,*
*Որ ոչ կարէ պաղնել ջորի:*

*Մէկն է խիստ սեւ, որպէս Հընդի,*
*Գըռկոչ, զազիր եւ զարշելի.*
*Մէկն ճաղար, կապոտաչո̆ւի,*
*Կարճահասակ եւ փանաքի:*

*Մէկն է ճըչող եւ անճոռնի,*
*Կոպիտ, փալիտ, երկայնագո̆ւի,*
*Մէկըն նըման է հրեշտակի*
*Եւ շատ ունի նա գործք բարի:*

*Մէկըն նըման է Յուդայի,*
*Սպանող, ղամազ, գործող չարի,*

---

*քաղցր խաւսի* — ՏՀ. *խօսի*:— 220– Ձէ. 2. *չունի այս տողը*.— ՏՀ. *մարդ լսէ նա*:— 221– ՏՀ. *պատված*.— Ձէ. 2. *Եւ մեծարած յամէն*:— 222– Ձէ. 2. չունի *այս տողը*:— 223– Ձէ. 2. *Մէկն ձեռաւք*.— ՏՀ. *ձեռօք աննման* [= Ձէ. 2].— ԿՌ. *Մէկն ի ձեռօք*.— 224– ՏՀ. *եւ արհեստի*.— ԿՌ. *յառեալ... արհեստի*.— Ձէ. 2. *արւեստի*:— 225– ՏՀ., ԿՌ. *յատակք*:— 226– Ձէ. 2. *կամուրճ*.— *վերա*:— 227– Ձէ. 2, ՏՀ. *տնազելի*:—
228– ՏՀ. *ի ախտ երես*.— Ձէ. 2. *է դէ՛շ երես*:— 228– ՏՀ. *մէկի ձեռին է զերդ*.— ԿՌ. *գօտի*:— 230– Ձէ. 2. *Որ չմարթէ պաղնել*.— ՏՀ., ԿՌ., *Որ ոչ կարէ կուրդուել ջորի*:— 231– Ձէ. 2, ԿՌ. չունին 231–236 *տողերը*.—
232– ՏՀ. *պռկոչ*:— 233– ՏՀ. *չաղար*.— *Կապոտ աչուի*:— 235 ՏՀ. *ճընչող*:—
236– ՏՀ. *երկայն աքուի*:— 237– Ձէ. 2. *Մէկն* [= ՏՀ] *նման*:—
238– ՏՀ. *Գործ*:— 239– ՏՀ., ԿՌ. *Մէկն*.— Ձէ. 2.—
*Մէկըն նման է Յուդայի*
*Որ է մատնող եւ յաւանի*.—

Զ.

Տեղի եղեալ սատանայի
Եւ բնակարան դիւաց դասի:

Ես քեզ մեղայ Երկնաւորի՝
Տեառն Աստուծոյդ ահեղ, մեծի.
Քո դատաստանն է յիրաւի,
Նեաթով կու տաս ամէն մէկի:

Տէ՛ր, քո կամացն է աշխարհս լի,
Այսպէս լինել՝ զոր ասացի.
Քեզ աւրհնութիւն ի մէնջ տացի,
Ամենազաւր Տեառնդ Յիսուսի:

*

* *

---

241– Ձէ. 1 չունի 241–242 տողերը:—

244– Ձէ. 2. ո՞ն ա՞յդ.— ՏՀ. Աստուծոյ:— 246– Ձէ. 2. Նիաթէն տաս ամէն մէկի.—¶ Այսչափով եւ վերջանում է Ձէ. 2 մէջ Տաղս եւ չունի հետեւող քառեակը: Տաղիս անմիջապէս կցուած գրչի յիշատակարանը.— «Ո՛վ պարծանաց եղբայր՝ խըտըրշահ զմեղաւոր յովսէփիկս յիշեա՛յ».¶:—

247– ՏՀ. Տէր քո:— 249– ՏՀ. օրհնութիւն:— 250– ՏՀ. Ամենազօր— ¶ Ս. Երուսաղէմի No. 1445, Վիէննայի No. 797 եւ Ս. Ղազարի No. 730 ՁՌ–ները բովանդակում են Տաղիս մի այլ փոփոխակը, որ յայտնի է Սարկաւագ վարդապետի անուամբ [†1129 Թ.]: Աւելորդ չենք համարում դնել Յաւելուածների շարքում եւ այդ Տաղը—» Երբ խաչեցար վասն աշխարհի». Համեմատութեան համար.— Տես Յաւել. Է. ¶:—

## Է․

# ԳԱՆԳԱՏ
# ԱՌ ՔՐԻՍՏՈՍ

### *Յաղագս Տարբեր Վիճակաց Մեծատան եւ Աղքատի*

### ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՍԱՑԵԱԼ

*Երբ խաչեցար վասն աշխարհի*
*Եւ երախտիք չմարդկան ազգի,*
*Արբեր քացախ դառն եւ լեղի,*
*Առեր ապտակ Թըքով ի լի։*
*Դու խաչասաց Թողեր յերկրի,*
*Որ խիպ ի սիրտըն չանկանի․*
*Զերկիրս տըւեր ես Մահմէտի*
*Եւ զկէս երկիր սատանայի։*
*Առ քեզ գանգատս Թորգոմազգի,*
*Ո՛չ եմք մեռած ու՞ ոչ կենդանի․*

---

*Իբրեւ բնագիր ՁՌ․ Երսղ․* No. 1455, fol. 275b-279b :—¶ *Նախորդ Ցաւել․ Զ․ տաղի մի այլ փոփոխակը*․— *Տես Ցաւել․ Զ․ եւ ծանօթ․ տող* 250¶ :— *Հմմտ․ ՁՌ․ Վիէն․* No. 797, fol. 131b-136a [= *Կ՞ռ․* 192a-198a]․— *ՁՌ․ Ս․ Ղազ․* No. 730,*Զ․ ա․ էջ* 190 :—

1–5– *Ձե․* 3, «*Գանգատ առ քրիստոս յաղագս տարբեր վիճակի մեծատան եւ աղքատին*», առանց հեղինակի անուան յիշատակութեան :— Csl. 6 առանց վերնագրի եւ հեղինակի յիշատակութեան․— Cw. «Սարկաւագ վարդապետի *ասացեալ մարտ ընդ ա՞ծ*» :—

6– Csl. 6, *վ՞ս ÷ի փրկութ՞ե մրդ՞կն* :— 7– *Ձե․* 3, *աշխարհի երախտիք*․ Csl. 6,

*Առեր ապտակ ս՞ք երեսիդ,*
*Խաչողաց մեղքն Թողեր յերկրի*
*Կսկիծ ի սիրտ չի անկանի․*
*Զհայս եւ ստամբօլ տւիր Թրքի*
*Եւ զդժոխքն սատանայի* :—

9– *Ձե․* 3, *Դեռ խաչ ասաց*․— Cw. *էր Թաղեցար ի յերկրի*
*Եւ խիպն ի սի[ր]տըն չանկանի* :— 11– Cw. *տւեր ես*․— *Ձե․* 3, Csl. 6, *տըվեր ես* :— 12– *Ձե․* 3, Csl. 6, *կէս* :— 13– Csl. 6, *գանգատ*․— *Ձե․* 3, *գանգատըս Թորգոմի*․— Cw. *գանգատը Թորfոմի*․— Csl. 6.*Թորգոմ ազգի* :—
14– *Ձե․* 3, *ոչ ենք*․— Csl. 6, *որ ոչ մեռած եմք ւոչ*․— Cw. *եմք ոչ* :—

Է.

*Այլ մոլորեալ կամք ի վ՟տանգի,*
*Քան զամենայն ազգ եղկելի։*

*Ուր կան ծընունդ աւազանի*
*Եւ քրիստոնեայք ուր եւ լինի,*
*Զունին ինչ դաշտք անդաստանի,*
*Ո՛չ քարանձաւ ապաւինի։*

*Բոլոր պատեալ չուրջանակի,*
*Սպանող գազանք, ւ՟էրէ վայրի,*
*Անխնայաբար, անյագելի*
*Մաչեն ի սուր ւ՟ի սուսերի։*

*Գիտեմ՝ մարմին եմք մըսեղի,*
*Եղէգըն չեմք ւ՟ոչ խոտ վայրի.*
*Ոչ խանձ արկեալ եմք կըրակի,*
*Ձերդ անդաստան փըշաբերի։*

*Ա՜մ, թէ չունիմք մեք գործ բարի*
*Եւ կամ թէ չեմք Քեզ պիտանի,*
*Նա՜յ, Դու ջընջեա զմեզ մէկ հետի*
*Մի՛ տար ի ձեռն անաւրինի։*

---

15– Cw. *կանք վըտանգի*. Csl. 6, *կամք վտանգի*։— 17– Cw. *ծընունդք*.— Csl. 6. *աւազանին*։— 18– Ձե. 3, *Քրիստոնեայք երեւունի*. Csl. 6,

*Եւ քրիստոնեայքն ի վտանգի*
*Քան զա՟մ ազգ խղճալի*
*Ոչ մուլք ունինք ոչ դաշտ երկիր*
*Բոլոր պատեալ չուրջանակի...*

22– Csl. 6, *սպանող գազան էրէւայրի*։— Ձե. 3, *գազանք երէ*։— 23– Csl. 6, *անարգելի*։— 24– Ձե. 3, Csl. 6, *ի սուրըն սուսերի*։— 25– Ձե. 3, Csl. 6, *մարմին ենք մըս[եղ]ի* [= Csl. 6, *մսեղի*]. Cw. *մարմինք են*։

26– Cw., Csl. 6, *ոչ եմք եղէգ* [Csl. 6, Էղէf *կամ խոտ*] *ոչ*.— Ձե. 3. *եղէգըն չենք ոչ*։— 27– Cw. *խանձարկեալ եմք*.— Ձե. 3, *արկեալ ես*։— 28– Cw. *զանդաստան*։— 29– Csl. 6, *բայց թէ չունինք*.— Cw. *գործք*։– 30– Csl. 6,

*Եւ կամ ոչ եմք քեզ պիտանի*
*Դու այց արայ մեզ քաղցրալի,*
*Մի՛ տար ի ձեռն անօրինի...*

31– Ձե. 3, Csl. 6, *նա դու*.— Cw. *նայ դու մէկ հետի*։— 32– Ձե. 3, *Եւ մի տար*.— *յանօրինի*.— Cw. *անօրինի*։— 33– Csl. 6,

*Շատ տանեն զմարդիք գերի,*
*Ցոլով տանջեն չարչարելի...*

է.

*Քանի՛ վարեն անգին գերի,*
*Քանի՛ տանջեն չարչարելի,*
*Քանի՛ հեղուն արիւն յերկրի,*
*Քանի՛ կանայք թողուն այրի։*
*Գիտես մարմին եմք կենդանի,*
*Ջեմք ապառաժ քարանձաւի.*
*Նայեաց եւ տես, Տէ՛ր մեր բարի,*
*Փրրկեա՛ ըզմեզ յամէն չարի։*
*Որ միամիտն է վըստահի,*
*Նա՛յ, կայ ամէն ազգի գերի.*
*Ա՛մ, այս ընդէ՞ր է լինելի*
*Հանց անպատեհ բան խոտելի։*
*Որ մէկն ապրի հարիւր տարի,*
*Մէկն ոչ ի տա՛սըն հասանի.*
*Այն որ ի պէ՛տք է՝ մեռանի,*
*Եւ որ անպէ՛տն է՝ հաստատի։*
*Որ անաւգուտն է այն ապրի*
*Եւ գեղեցիկ տըղայն մեռնի.*
*Աստամնաթափ պառաւըն ժրի,*
*Երեսնամեայ մանուկն մեռնի։*
*Հարիւր ամաց ծերըն չընկնի*
*Եւ այն որ տղայն է՝ պակասի.*

---

35– **ՁԵ** · 3 · *յեղուն* :— 36– Csl. 6. *թողնուն* :— 37– **ՁԵ** · 3 · չունի 37–40 *տողերը* · — Csl. 6, *գիտեմ* · — Cw.

*Գիտես մարմինք եմք կենդանի*
*Ջենք ապառաժ քարանձաւի,*
*Թէ քեզ աղէկ է զինչ լինի,*
*Նա՛ մեք բառնամք ոչ կամայի* :— *Որ միամիտն է* . . . :—

38– Csl. 6, **Ջենք** · — *քարանցաւի* :— 39– Csl. 6, *տ՟ր մեր* :— 40– Csl. 6, *փրկեա* :— 42– **ՁԵ** · 3 · *նա կա՛* · Csl. 6, *նա կեղնի* :— 43– Csl. 6, *այս ա՟մ ընդէր լինի* · Cw. *ընդէր է լինի* :— 45– **ՁԵ** · 3 · չունի *Որ* · — *հարիւր* · — չունի *տարի* :— 46– **ՁԵ** · 3 · *մէկն ը՟* · *որ չի հասանի* · — Cw. *չի հանի* :— 47– Cw., Csl. 6, *որ պէտք է* :— 48– Csl. 6, *եւ որ անպէտք է* · — Cw. *է յերկարի* :— 49– Csl. 6, չունի *այս տողը* :— 50– Csl. 6, չունի՝ *Եւ* · — *տղայն* · 51– Cw. *պառաւըն ժրի* · ¶ *լուսանցքի մէջ՝ ապրի* · ¶— Csl. 6,

*Աստամնաթափ պառաւ ժրի*
*Անպէտն ապրի բազում տարի*:

¶ Այսչափով եւ վերջանում է Տաղս ՁՌ– իս մէջ, մնացածը թերի, միջից թուղթ ընկած լինելով:¶— 53– Cw. *Հարիւր տարոյ* :— 54– Cw. *տ՞ղայ է* :— 55 · **ՁԵ** · 3 · —

է.

*Որ կեանք ուզէ՝ կեանքն կարճի,*
*Որ մահ ուզէ՝ մահըն հեռի:*
*Մէկին քըսան դուստր եւ որդի*
*Եւ մէկն ամուլ անմէկ որդի,*
*Կենայ դերի ւ՛ողորմելի*
*ւ՛Անյիշատակ վերայ երկրի:*
*Միոյն մէկիկ որդի լինի,*
*Անուր, անժամ՝ ինք վաղճանի.*
*Մէկին մայրիկըն մեռանի*
*Եւ մէկին հա՛յրըն կորընչի:*
*Իւր հայրն ու մա՛յրըն մեռանի,*
*Որդիքն ի կրա՛կըն խորովի.*
*Ա՛մ, յէ՞ր պիտէր այս հանցպիսի՝*
*Լալ տարաժամ, մահ դառնալի:*
*Մահ թո՛ղ ծերոց գայր կամ վատի,*
*Քան թէ տղայոց եւ աղէկի.*
*Այդ մահու թող ենք արժանի,*
*Որ, նա՛յ, փոքու գայ եւ մեծի:*
*Զի պատրանաւք մաւրն Եւայի*
*Հասաք մահու գերեզմանի.*
*Այս ի յումմէ՞ է գիտելի*
*Եւ կամ ուստի՞ ճանաչելի:*
*Որ մէկըն տէր լինի երկրի,*
*Մէկըն կարաւտ դոյզ մի հացի.*
*Մէկն է իշխան եւ հաւրորդի,*
*Եւ միւսն աղքատ ւ՛ողորմելի:*
*Մէկն ի յազգէ յազգ արքունի,*
*Մէկին հազար պապն ի մուրի,*

---

*Կենա՛ դերի ողորմելի*
*Անյիշատակ սուրբն ամենի*:—

61– Cw. *որդեակ*:— 62– **Զե**. 3. *անօր* [= Cw.] *անժամ ինքըն մեռնի*:— 64– **Զե**. 3. *մէկին հայրիկըն կորընչի*:— 65– **Զե**. 3. *Ուր հայրն*.— Cw. *Ում հայրն եւ*:— 71– **Զե**. 3, *Արդ մահ ու դող ենք*.— Cw. *մահու թողենք*:— 73– **Զե**. 3. *եւայի*:— 76– **Զե**. 3. *Կամ ի յումմէ է ճանաչելի*:— 78– Cw. *կարօտ քիչ մի հացի*:— 79– **Զե**. 3. *մէկը իշխան եւ հօր* [= Cw.]:— 80– **Զե**. 3. չունի՝ *Եւ*.— Cw. *ողորմելի*:— 81– **Զե**. 3, *յազգէ ազգ*:— 82– **Զե**. 3, *պապն ի մաւրէ*. Cw. *ու՟ պապն ի մաւրի*:—

է.

Մէկին հազար ձի եւ ջորի,
Մէկին ո՛չ ած մի ւ̆ ոչ մաքի։
Մէկին հարիւր կապիճ ոսկի,
Միոյն ոչ փող մի պղղընձի.
Մէկին հազար կապ մարգարտի,
Մէկին ոչ հ̆լուն մի ապիկի։

Մէկին աթլաս եւ մախմուրնի,
Միոյն չըլէ չուխայ չընկնի.
Մէկին բեհեզ եւ ծիրանի,
Մէկն է մերկիկ անծածկելի։

Մէկին հազար բեռն հանդերձի,
Մէկըն մազէ քուրձ մի չունի.
Մէկըն գունը՛զգոյն կու հագնի,
Մէկն անպատան կայ ու թաղո̆ւի։

Մէկն ընդ երկի՛նքըն կու նայի,
Մէկն անդընդոց հաւասարի.
«Մինն ունիցի եւ յաւելցի»,
Մէկին ո՛չ կայ, ւ̆ ո՛չ կերեւի։
Մէկին բերդեր եւ քաղաքնի,
Միոյն ո՛չ տուն կայ ւ̌ ո՛չ տեղի.
Մէկն ի բազմաց փառաւորի,
Միւսն ի բիւրոց պախարակի։
Մէկին հարա՛մըն յաջողի,
Մէկին հալա՛լըն կորընչի.
Մէկըն ի զըրկա՛նաց մըթերի,
Մէկն ի քըրտա՛նցըն դատարկի։
Մէկըն յաղթող՝ անպարտելի,
Մէկըն տըկար եւ սարսելի.

83– Cw. ո՟. ձի :— 84– Cw. մի ոչ մոքի :— 85– Cw. ճ՟ .— 87– Cw. ո՟. կապ .— ՁԵ. 3, հազար հատ :— 88– Cw. ոչ հ̆լուն .— ՁԵ. 3, ոչ հլուն մի ապակի :— 89– ՁԵ. 3,

Մէկին աթլասըն մըկրատի,
Միոյն չուխայ չընկնի ասուի :— 93– ՁՎ. Ռ՟. բեռն :—

94– ՁԵ. 3. մէկին սփածոց մազէ քըրծի .— Cw. մազէ քուրց .— 96– Cw. կայ եւ թաղուի [= ՁԵ. 3.] .— 98– Cw. յ՟նքըն .— 99– մինն ունի եւ .— 100– Cw. ւոչ երեւի .— ՁԵ. 3, կայ ոչ երեւի :— 101– Cw. քաղքընի :— 102– Cw. կա՛ ւոչ :— 103– Cw. փառաօրի :— 107– ՁԵ. 3, մէկին զըրկանացն մըթերի .— Cw. ի զրկանաց :— 111– Cw. վախկոտ եւ :— 112– ՁԵ. 3, Cw.

Է. Մէկըն երկչոտ եւ պարտելի:
Մէկին ճաւչան եւ գըրեհի,
Հեծնու ջրի եւ տաճիկ ձի.
Մէկըն մերկիկ եւ անվարտի՝
Առջեւ նորա կայ եւ փախչի,
Հասնի ի հետ եւ զգլուխն ունի:
Զկինն եւ զորդին ծառայ տանի,
Անայցելու, ւ̆անթափելի.
Նոյնպէս թըռչո՛ւնըս վայրենի,
Եւ զինչ գազան կայ յանտառի.
Զինչ որ բազան է կաքաւի,
Կամ քաջ արծիւն ամէն հաւի.
Կամ քանասար գայլն ոչխարի,
Կամ թէ քերձէն նապաստակի:
Իշխան կարգէր զմէկըն մէկի,
Ողորմ ի սի՛րտըն չանկանի,
Ա՛մ, այս հանց թող եղաւ յերկրի,
˘Ր ոչ մեծ ու փո՛քրըն ճանաչի:
Այսքան անուն կայ՝ վըկայի,
Այլ զինչ ասեն վասըն Նոյի,
Ինձ զայս արա՛ պատասխանի,
Քըննել կամիմ, թէ յո՞ւր յայտնի:
Զբաղդըն ծանո՛, թէ ո՞ւր լինի,
Զդովլաթըն, թէ ո՞ւր գըտանի.
Որ մէկն առնու եւ յաւելցի,
Մէկըն մընայ եղուկելի:
Մէկըն գիտուն է հրաշալի,
Հասեալ ուսմանց եւ արո˘ւեստի,
Գըրակարդաց անդրդուելի,
Որպէս գյորձա՛նս հեղեղի:

---

ճավշան :— 115– Cw. փաղչի :— 117– Cw. Զկինըն ·— ծառա՛ :— 118– **Զե** · 3, անթափելի :— 120– **Զե** · 3, Cw. կայ անտառի :— 121– Cw. Զինչ սրբազան հետ կաքօի :— 123– Cw. կամ քան սասր գայլն :— 124– **Զե** · 3, կամ [թէ] գե՛րծս [ն]ապաստակի ·— Cw. Եւ կամ թաղին լապաստակի :— 125– Cw. կարգեր ·— մեկի :— 126– Cw. ողորմի սիրտըն :— 127– Cw. եղօ :— 128– **Զե** · 3, Cw. որ մեծ ու փոքրըն :— 129– **Զե** · 3, կայ ու վկայի ·— Cw. կա՛ վըկայի :— 130– **Զե** · 3, Cw. նոյի :— 132– **Զե** · 3 · քննել ·— ուր :— 133– **Զե** · 3, Cw. Զ˘բախտըն ·— Cw. ծանոյ :— 135– Cw. յօելցի :— 137– Cw. գիտուն էր :— 139– Cw. գրակարդաց եւ բաբունի :— 140– **Զե** · 3, Cw. զորձանըս :— 141– Cw. յոգիի մարելի :— 143– Cw. լեզվովն :

է․

Մէկն է յոգի յիմարելի,
Անասնակերպ շըրջի յերկրի.
Մէկըն լեզո՞ւով է գովելի,
Ճարտար մըտաւք ճանաչելի:
Խելաւքն՝ մըտաւքն է գովելի
Եւ ինքն է բարձր յամէն տեղի.
Մէկն անբերան եւ անմարդի,
Զինչ որ խաւսի բանն իւր անլի:
Խելքն եւ միտքըն իբրեւ խոզի
Եւ անարգած յամէն տեղի.
Մէկալին տե՛սքն է գովելի,
Բազում շնորհաւք թամամ ի լի:
Բաղդըն բերէ զամէն բարի,
ւ՞Ամէն մարդոյ երեւելի.
Մէկ մ՞իւր կերպիւըն տընազի
Որ գէշերես է ւ՞աղտեղի:
Մէկին դովլյաթ եւ բաղդ չի լ՞նի,
Եւ ինքն ամէն գըլխիկորի.
. . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . .
Մէկըն ցաւոտ է զօղուածի,
Աչաւքըն կոյր կամ ոտք չունի.
Անդամալոյծ կամ ձեռք չունի,
Ուրուկ, ցաւաւք անողջալի:

---

Ձե․ 3, Cw. *զորձանըս* :— 141– Cw. *յոգիի մարելի* :— 143– Cw. *լեզվովն* : —144– Cw. *մըտօք* :— 145– Ձե․ 3,

*Խելքն է եւ միտքն գովելի*
*Զինքն է բարձած յամէն տեղի* :—

148– Cw. *բան իւր* :— 149– Ձե․ 3․ *խելքն է եւ միտքն*․— Cw. *խելքըն եւ միտքն* :— 151– Ձե․ 3, *մէկըն տեսովն է գովելի* :— 152– Cw. *չնորհօք զարմանալի* :— 153– Ձե․ 3, Cw. *բախտըն* :— 154– Ձե․ 3, *ամէն* :— 155– Cw. *Մէկ իւր*․— Ձե․ 3, *տնազի* :— 156– Ձե․ 3, Cw. *Որ գէշ երես է* :— 157– Ձե․ 3, *Դովլյաթ եւ բախտ իւր չի լինի*․— Cw. չունի *այս երկտողը*՝ 157–158․— 159– Ձե․ 3․ Բնագիրը թերի, քառատողիցս միայն առաջին երկու տողը պահուած :— ¶ *Հմմտ․ Ցուէլ․ Զ․ տող* 183–186․¶ :— 161– Ձե․ 3, չունի 161–164 *տողերը*․— Cw. *զօթվածի* :— 162– Cw. *աչօքըն կուր* :— 164– Cw. *ցաւօք* :—

է․

Մէկըն գոված յամէն տեղի,
Գեղեցկագեղ զարմանալի․
Եւ մէկըն գէշ անպատմելի,
Կամ խեղ կամ ծուռ կամ միակնի։
Բայց թէ հավար աղէկ լինի,
Ամէնն ի Բաղդըն գայ՝ հայի․
Մէկըն զանդէ՛նըն կու չահի
Եւ երկնաւորն իւր կու պահի․
Մէկըն ըրնա ւ հանդիստ չունի,
ւ՞Անդէն գեհեննն է իւր տեղի․
Մէկն է արդար, ւ՞առաքինի,
Պահաւղ, ճըգնող, լաւ, պիտանի։
Ցետոյ թէ, նա՛յ, իրք մի սխալի,
Այն որ ոչինչ մասըն չունի,
Մէկըն չըրջեր է վայրենի,
Գործեր զազիր գործք անտեղի։
Թէ զըղջացեալ խոստովանի,
Նա՛յ, զոր գործեալ է այլ չ՞յիշո՞ւի։
Մէկին հրամեր ես կին բարի
Որ արեգակըն նըմանի։
Մէկին դըրեր լուծ ու սամի,
Արատ աչաւք ի նա չ՞հայի․
Եւ թէ հայի՝ պոռնիկ կոչի
Եւ դըժոխաց բաժին լինի։
Մէկին տո՞ւեր կին ցանկալի,
Ձցայգ եւ զցերեկ իւր առաջի,
Որ ի հազար լեզուէ գովի
Եւ տեսողաց փափագելի։

---

166– Cw. հիանալի։— 168– Զ6․ 3, միակի։—
169– Cw. թէ ո՞․։— 170– Cw. բախտըն․— Զ6․ 3, բախտն։— 171– Զ6․ 3․ մէկըն զասդէնըս։— 172– Cw. ւ՛արքայութիւնն իւր։— 173– Cw. Մէկն ասդէնըս հանդիստ։— 174– Cw. գեհեն է իւր տեղին։— 176– Զ6․ 3, Պահաւք լաւ պիտանի։— 177– Զ6․ 3, թէ նայ․— սղալի։— 178– Cw. մաս մի չունի։— 180– Cw. գործ։— 181– Զ6․ 3, Cw. զղջացեալ։—
182– Զ6․ 3, նա՛ զոր գործել է այլ չ՞ յիշի․— Cw. չյիշուի։— 183– Cw. հրամեր։— 184– Cw. արեգակն․— Զ6․ 3,

Մէկին հրամել ես կին բարի
Ի յարեգակըն նմանի։— ¶ Այսչափով եւ վերջանում է Տաղս Զ–իս մէջ եւ շարունակութիւնը՝ տող, 185–224 չունի․ ֆ։— 186– Cw. աչօք։— 189– Cw. սըւեր։— 190– Cw. ըզցայգն եւ։— 196– Cw. այլ չէ

է.

Մէկն ի տեսոյն կայ եւ պաւկի
Գիշերն ի քունըն կու փորձի.
ւ՞Այն թէ կրկին եւըս լինի,
Այլ չի մըտեր յեկեղեցի:

Շատ ոք դիպին կընոջ չարի,
Բող ւ՞ անառակ եւ հաչարի.
Լիրբ, դիմադարձ ւ՞ անհնազանդի,
Անիծաբան եւ աղտեղի:

Ա՛մ, բեր հաւատք, որ ոչ թիւրի,
Եւ կամ հանց սիրտ, որ չերկմըտի,
Որ այս բաներս են այնպիսի
Արդարադատ Դատաւորի,

Որ մէկին տայ Բաղդն ի բանի,
Մէկին հազար դար պատահի:
Մէկըն չունի խորհել ի մտի,
Զինչ խընդըրուածք կայ՝ կատարի:

Մէկն այլ ողբայ եւ պաղատի,
Եւ իւր խորհուրդն՝ ոչ յաջողի.
Եւ չէ դարտակ, ողորմելի,
Ամէն բան իւր ձախ հանդիպի:

Մէկն՝ յաւտարաց գայ եւ գովլի,
Եւ ի կնոջէն, նա՛յ, նախատի.
Ոմն ի յազգաց է ատելի,
Մէկն ի յեղբարց կու պարսաւի:

Իմ Տէ՛ր, արա՛ պատասխանի,
Ես Քեզ մեղայ, որ զայս ասի.
Զի ո՞վ եմ ես մարդ աղտեղի՝
Համարձակել Քո առաջի:

մըտէ եկեղեցի:— 201– Cw. Ամբեր հաւատք:— 204– Cw. դատօրի:— 205– Cw. Որ մէկին կայ բախտն:— 207– Cw. ի մըտի:— 208– խնդրուածք կա կատարի:— 209– Cw. ողբա:— 210– Cw. ոչ աջողի:— 211– Cw. Եւ է դարդակ ողորմելի:— 212– Cw. Ցամէն բան:— 213– Cw. Մէկն օտարաց կայ եւ:— 214– Cw. Նա նախատի:— 217– Cw. Քեզ մեղա:— 218– Cw. ով եմ:— 220– Cw. քո:— 221– Cw. ներեա ով հայր:— 222–

է·

*Բայց ինձ ներեա՛, ո՛վ Հայր բարի,*
*Դասեա՛ ի գունդըս Քո հաւտի,*
*Եւ Քեզ պատիւ յամենայնի*
*Այժմ եւ յաւէտ՝ անլըռելի:*

*
* *

---

Cw. *քո հօտի*:— 223– Cw. *քեզ*·— *ամենայնի*:— 224– Cw. *եւ աւէտ անլռելի*:—¶ *Երուսղ*· No. 1455 *Տաղարանի մէջ, տաղերից մէկի տակ, կայ հետեւեալ Յիշատակարանը*·— «*Գրեցաւ ոտանաւորքս ի քաղաքս* շէհրի Թոխաթ «*ձեռամբ* Ստեփաննոս *մեղաներկ* իրիցու *ի վայելումն Յովսէփ աշակերտին իմոյ*· «*ի Թվականիս Հայոց ՌՀԱ* [=1622] *մայիս ամսոյ*···, *յորժամ ըստամպօլու գուլն ի պլուխ քաշեցին եւ զդիւան եւ զսարայն կոխեցին եւ զօսման փատիշահն սպանին եւ զայլ պլուխ մարդիքն ջարդեցին եւ եդին Թագաւոր զսուլթան Մուստաֆան*···»¶ :—

Ը․

# ԱՇԸՂ ՔՈՉԱԿ
## ՎԱՆԵՑԻ
## ԱՌԱԿ ԼԱՒ ԵՒ ՊԻՏԱՆԻ

4–4 || 4–4

*Ա՛յ սիրելիք, ականջ դրէք, Մըսրայ քաղքէն տամ ձեզ խապար,*
*Քան ըզՄըսըր քաղաք մեծ չ՚կայ, չորեք կողմէն ճանփայ կու գայր։*
*Մըսրա քաղքին կայր չինական, հօրով, մօրով, երկու եղբայր,*
*Մեծ եղբայրըն պզտկին ասաց՝ «Ե՛լ, երթանք ի մըլքերն ի վայր»։*
*Ելան, գնացին մըլքերն ի վայր, հընձանին դուռն եկին յիրար.*
*Մեծ եղբայրըն զպզտիկն ի վայր կոխեց՝ զքեզ կու մորթեմ՝ այլ չկայ ճար։*
*Պըզտիկ եղբայրն մեծին ասաց. «Զիս մի մորթեր, ա՛յ իմ եղբայր,*
*«Իմ մալն, ըղդալթն քեզ լինի՝ թո՛ղ զիս երթամ օտար աշխարհ»։*
*«Թողում երթա՞ս օտար աշխարհ՝ պառ լինիս մա՛յլիս դաւէքա՞ր.*
*«Զքեզ կու մորթեմ, այլ չը կայ ճար»։*
*Պատէն քերփիճ մ՚առաջ եկաւ. «Ծօ՛, մի՛ մորթեր դու զքո եղբայր,*
*«Զիմ գըլխուն ա՛նցած հալն ասեմ, ապա դենէ դու զքո եղբայր։*
*«Ես Մըսրա թագ՚ւորն էի, որ չըկայր ինձ նըման վէրի քար.*
*«Ես այլ մի բա՛ղնիք մ՚ունէի, անմահութեան ջուր կու բըղխայր։*

---

*Իբրեւ բնագիր ՁՌ․ Ս․ Ղազարի* No. 1823, *Գ․ է․ կջ* 579–582*։—¶ Տաղարան, գրուած ՌՃԼԹ* = 1690 *Թ․— Տես «Աւրհնեալ անուն Արարողին» ԽԴ․ Տաղի վերջն եղած ծանօթ․»¶—։* [SI 2=Qul 2]

1–3– Csl. 2 *«Առակ լաւ եւ պիտանի» միայն, հեղինակի յիշատակութիւնը վերջը միայն։—* 4– *դրէք, մառա։—* 5– *քան զմըսռ ք՟ղք մեծ չկա՛։—*
6– *Մառա ք՟քին կայր չինական մի, հօրով.— բ՟․ եղբայր։—* 7– *եղբայրն.— ա՟ոց ել։—* 8– *հնծանին։—* 9– *եղբայրն.— կու մոռթիմ այլ չկա՛։—*
10– *ասաց զիս մի մոռթեր այ իմ։—* 11– *լինի թող.— օտար~։—* 12- *օտր~ պառ.— դաւէքար։—* 13– *կու մոռթեմ.— այլ չկա։* 14– *քերփիճ մի յ՟ոջ եկաւ ծօ մի մոռթեր։—* 15– *գլխուն.— զքո եղբայրն։—* 16– *ես մառա թգ՟րն էի որ չկայր ինձ նման։—* 17– *ես այլ ա՟․ բաղնիք մունէի*

Ը. «Էն բաղընից պատեր, ասեմ, եաղութ, ալմաստ էր լալէզար.
«Ես այլ մի ձի մի հեծնէի, արժէր դեկան հարիւր հազար:
«Ես այլ մանդիլ մի կապէի՝ Մըսրայ քաղքին ճամին կու գայր.
«Երբ որ եկաւ մահն՝ հրեշտակն էզարկ գըլուխս ի վայր
«Եւ զիս ձըգեց յանկողին՝ տկար. քոյրըս ոտացս նըստէր կու լայր,
մայրս իմ գըլխով պըտոյտ կու գայր:
«Եղբայրս դըռնէն ի ներս եկաւ. է՞ր ես պառկեր, դու իմ եղբայր.
«Եղբայր, ասի, ինձ երէց բեր՝ խոստովանիմ, լինի ինձ ճար:
«Մինչեւ եղբայրս երէց եբեր՝ զամանաթըն Տէրըն էառ,
«Ի չորս մանկանց յուսն հանեցին, տարան ձգեցին հողըն տըկար.
«Հողըն այլ զիս զապուլ չէրաւ, տարաւ գետնին երեսն եհան:
«Քառասուն տարի յարեւ կեցայ, արեւն ետուր զիս դարձդար.
«Այնչափ երետ զիս դարձդար՝ եղայ հետ քարին պարէպար,
«Իմ մեղացըն հեղեղ մ՚ելաւ, լաշըս տարաւ ծովերն ի վայր:
«Քառասուն տարի ծովըն կեցայ, ալին կու տայր զիս դարձդար.
«Այնչափ երետ զիս դարձդար, եղայ հետ ա՛ւզին պարէպար:
«Էն տեղըն մէկ բըրուտ մի կայր, աւազ տարաւ կարսի համար,
«Զիս այլ մէկ կա՛րաս մի շինեց, դըրաւ հետ կարսին շարէ-
շար:

---

անմահութ՟ե.— բղխայր :— 18– էն բաղնից պատեմ ասեմ :— 19– ես ալ ա՟. ձի.— դեկան. ճ՟ռ.:— 20– մանտիլ.— մսռա ք՟ղքին :— 21– մահն. հր՟րշտկն էղարկ գլուխ ի վայր :— 22– ձգեց յանկողին տկար.— քոյրս.— նստէր :— 23– մայրիս գլխով պտուտ կու գայր.—¶ Այսչափ է միայն այս տողը ՁՌ–իս մէջ¶ :— 24– եղբ՟յրս դռնէն.— եկաւ էր ես :— 25– եղբայրս ինձ էրէց բեր խոստ՟նիմ :— 26– եղբայրն էրէց :— զամանաթն ի տ՟րն :—
27– [ի] չորս մանկանց.— հողն տկար :— 28– հողըն այլ :— 29– Խ՟. տարի արեւ կեցա.— տարէտար :— 30· երետ տարէտար եղա՛ :— 31– մեղացն.— լաշս :— 32– Խ՟. տարի ծովն կեցա՛.— զիս տար [էտար] :— 33– երետ տարէտար եղա՛ հետ աւազին պարպ՟ր :— 34– էն տեղըն. ա՟. բրուտ մի :—
35– այլ. ա՟. կարաս մի.— դրաւ.— շարէշ՟ր :— 36– Խ՟ տարի.— կեցա՛.—

*Ը.*

*«Քառասուն տարի կարաս կեցայ, քաղցուն լըցնին բողազս ի վայր։*
*«Երբ չիրան յիս ի եփ կելնէր, անձըս կո՞ւլինէր դամար դամար։*
*«էն տեղըն բէ՛քրու մարդ մի կայր, գինուս խըմեց ու գինովցաւ։*

*«. . . . . զարկեց զկարասըն ա՛րար քարէքար,*
*«Կըտորներս ժողովեցին, տարան լըցին փողոցն ի վայր։*
*«Քառասուն տարի փողոց կեցայ, հաւըն կու տայր գիս դարէդար,*
*«Այնչափ երետ գիս դարէդար, եղայ հետ ա՛ղբին պարէպար։*
*«Այնտեղն մէկ չի՛նական մի կայր՝ աղբ կու կըրէր արտի համար,*
*«Քառասուն տարի արտըն կեցայ, խոփըն կու տայր գիս դարէդար.*
*«Այնչափ երետ գիս դարէդար, եղայ հետ հո՛ղին հաւասար։*
*«էն տեղըն մէկ բաննեհ մի կայր, հող կու կըրէր չամռի համար,*
*«Զիս այլ մէկ քա՛րփիճ մի շնեց, դըրաւ հետ պա՛տին չարէչար։*
*«Քառասուն տարի պատն եմ կեցեր, դեռ կու վախի թ՞այլ փորձանք գայր,*
*«Այնչափ փորձանք, որ ինձ եկաւ, ծօ՛, մի՛ մորթեր ըղքո եղբայրն.*

---

*լցննն պօղօզս:— 37– երբ չիրաս ի եփ ելնէր անձս կու լինէր* տամառ *տ՞մռ.— 38– էն տեղն պէքրու* մդ՞ *մի.— խմեց:— 39– զարկեց զկարասն արար քարէքար.—¶* Տողը պակասաւոր ՁԹ–ի մէջ¶:— 40– *կտորներս.— լցին:— 41– խ՞. տարի.— կեցա՛ հաւն.—* տարէտ *ր:— 42– երետ գիս տա″.— աղբին պ″րէպէր:— 43– այնտեղն. ա՞.— կու կրէր:— 44– խ՞. տարի արտն կեցա խուփն.— գիս տարէ″:— 45– այնչ″ [երետ գիս դարէդար] եղա՛:— 46– էն տեղն պ՞նեմ մի.— կու կրէր չամռի հմ՞ր:— 47– զի այլ. ա՞.— դրաւ չարւէ[չար]:— 48– խ՞. տարի.— դեռ կու վախեմ թէ այլ փորձանք չգայր:— 49– փորձանք ինձ եկաւ, ծօ դու մի մոռթեր քո եղբայրն:—*

Ը.

«. . . . . . . . . . . . . որ չը կայ մա՛լին էՀդիբար»:

Ձեռքն ու ո՛տքըն թուլացաւ, դանակն ընկաւ ձեռքէն ի վայր,
Ձեռքըն բըռնեց, ի վեր կալաւ, «Եղբա՛յր, եղայ քեզ գիւնաՀքար.
«Իմ մալն ու՞ապրա՛նքըն քեզ լինի, թողում երթամ օտար աշխարՀ»:
Քառասուն տարի ծունըր դըրաւ, եղբայրն վայր կո՛խելոյ Համար.
Այս քանի բանս յիւրմէն ասեր՝ աշըղ Քոչա՛կըն գինեՀքար:

*
* *

---

50– Որ չկա մալին էՀտիբար.—¶ Տողը պակասաւոր ՁՌ–ի մէջ.¶:—
51– ոտքն:— 52– ձեռքն բռնեց ի վեր կալաւ եղբայր եղա քեզ կիւնաՀքար:—
53– իմ մալն եւ ապր''քն.— ~:— 54– խ˜. տարի ծունր դրաւ:—
55– խ˜.տարի.— էն յա˜յ սիրուն:— 56– բանս իւրմնէ ասեր, աշըխ քօչակն կիւնեՀքաար:—¶ Կ. Պոլսի Անտօնեան Միաբանութեան դրատան, Նօ. ճզ÷դ ՁՌի մէջ՝ նոյն այս Վանեցի աշըղ Քուչակի Տաղերից մէկն է դտնւում, որ աւելորդ չենք Համարում դնել Ցաւելուածների շարքում, եւ նկատի ունենալով, որ Տաղս դեռ անյայտ է եւ չՀրատարակուած տակաւին.— Տես. Ցաւել. Թ.¶:—

թ.

# ԱՇԸՂ ՔՈՉԱԿ
# ՎԱՆԵՑԻ

## ՏԱՂ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

*Աղբիւր կենդանի, Բղխումն զանազան,*
*Մեղա՛յ, Քեզ, Մեղա՛յ, Կոյս անապական,*
*Գըլուխ կուսանաց, Դասուցըն պարծան,*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական։*

*Երեսիդ փափագ Զօրքըն վերնական,*
*Էրանեալ, Ընտիր, Թագուհ աննըման,*
*Ժառանգող դըրախտին եւ արքայութեան.*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական։*

*Ի փառըս Լուսոյ Խորհուրդ հիացման,*
*Ծընաւղ Կենդանոյն Յիսուսի յիշման,*
*Համաւոր բաժակ, Ձեռըն փըրկութեան,*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական։*

*Ղամբար ճըշմարիտ Մեծ ուրախութեան*
*Յիսուս Նորոգեաց Քեզնով զամենայն,*
*Շնորհաւք քո լըցաւ, Որ ի քեզ դիման.*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական։*

*Չարին հալածիչ, Պըտուղ սըրբութեան,*
*Ջահ մաքուր ոսկի, լոյս անանցական.*
*ըՌաւան աղբիւր, Ջուր անմահութեան.*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական։*

*Սերովբէ մաքուր, Վերին պետութեան.*
*Տուն Յիսուս որդոյն եւ բընակարան.*
*Րաբունոյն ՚ի կուսից Ցաւոց քաւարան,*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական։*

---

*Իբրեւ բնագիր Անտօնեան Միաբ. Գր.* No. *ճզ՟գ. ՁՌ.* fol. 150a-155b :—
1–3– *ԱՆ.* 1 .— *«Այլ տաղ ա՟ծածնին» միայն, իբրեւ վերնագիր. հեղինակի յիշատակութիւն վերջը* :— 4– *բղխումն* .—¶ *Տաղս գրուած է Այբ–բէնի տառակարգով, տող* 4–31 .¶ :— 5– *քեզ մեղա՛* *կոյս* :— 7– *քեզ* .— *կոյս* :—
8– *երեսիտ փափակ* :— 9– *երանեալ* .— *աննման* :— 10– *եւ արքաութ՟ե* :—
11– *մեղա քեզ*'' .—¶ *Քառատողի վերջին տողը միշտ պակասաւոր մինչեւ վերջը* .¶ :— 13– *յ՟ի* :— 14– *համար՟որ* .— *ձեռն Փրկութ՟ե* :— 15– *մեղայ*" :—
16– *ճշմարիտ մեծ* :— 17– *յ՟ս նորոգեաց* .— *զա՟մ* :— 18– *շնորհօք քո լցան որ ի քեզ* :— 19– *մեղայ քեզ*" :— 20– *պտուղ սրբութ՟ե* :— 22– *Ռա՟ւան աղբիւր* .— *անմահութ՟ե* :— 23– *Մեղա*" :— 24– *պետութ՟ե* :— 25– *յ՟ս*—

Թ.

*Խիւսեալդ ի լուսոյ մայր ուրախութեան,*
*Մեղաւքըն մեռեալ ի Քեզ պաղատան·*
*Փառք Հաւր եւ Որդոյ, Հոգոյն յաւիտեան,*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:*

*Դու լալ մեծագին, որ 'ի Բաղաշխան,*
*Եաղութ եւ զըմրութ եւ այլ պատուակն,*
*Ակըն լուսատու, գանձ արքայական·*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:*

*Դու մուշկ, որ գովէն Խաթայի խուղան,*
*Զըմուռ եւ ըզտաչխ եւ ըզկասխայն,*
*Այլ ծը՛խանելիք պէտըս սըրբութեան,*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:*

*Դու ես համասփիւռ ծաղկունաց պարծան,*
*Մանուշակ ու վարդ՝ հոտըդ բուրացման·*
*Դու լուսին աշնան եւ արեւ գարնան,*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:*

*Թէ զերկինքն ասեմ՝ չէ՛ ի Քեզ նըման,*
*Հրեշտակք ի յերկնից յերկիր թափեցան,*
*Քեզնով հողածինքս յերկինք վերացան·*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:*

*Դըրախտն Ադամայ՝ չէ՛ ի քեզ նըման,*
*Բընակողք դըրախտին օձիւ խաբեցան,*
*Խաբողքն Եւայի Քեզ ո՛չ մերձեցան,*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:*

*Ընտրեալ ի կուսից՝ ինքն ընտրողական,*
*Դու կաս եւ մընաս յաւէտ, յաւիտեան·*
*Պըտուղ Աննայի եւ Յովակիմայն·*
*Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:*

---

բնակարան:— 27– *մեղա"*:— 28– *ուրախութ՟ե*:— 29– *մեղաւքն*:— 30– *փառք հաւր եւ որդոյ մինչեւ յաւիտեան*:— 31– *մեղա"*:— 32– *որ ի բաղաշխան*:— 33– *աղութ ու զմրութ*:— 35– *մեղա"*·— 36— *խաթա՛ի*:— 37– *զտաչխ եւ զկասխայն*:— 38– *պէտս սրբութ՟ե*:— 39– *մեղա"*:— 40– *համասփիւր*:— 43– *մեղայ"*:— 44– *ի քեզ*:— 45– *հրեշտակ*·— *թափեցաւ*:— 47– *մեղա՛ քեզ"*:— 48– *Դրախտն ադամա՛ չէ ի քեզ նման*:— 49– *բնակող*:— 50– *Եւայի քեզ*:— 51– *մեղա՛ քեզ"*:— 53– *մնաս յանդունդ յաւիտեան*:— 54– *պտուղ աննայի եւ յովակիմաՆ*:— 55– *մեղա"*:— 56– *ի քեզ*·— *բանըն*:—

Թ.

Ի Քեզ պարըսպեալ Բանըն հայրական,
Գաբրիէլ հրեշտա՛կըն քեզ պահապան,
Հեռացան ի քէն որդիք կորըստեան,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Յարգանդ ընակեցեր Հայրն անբաւական,
Աչերդ է սովոր աստուածտեսութեան,
Կաթամբ սընուցեր զՈրդիդ աննըման·
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Դըրախտ լուսեղէն, պըտուղ մարքական,
Պըտղովդ յաղթեցեր բանդ անանցական,
Գըտան առ ի քէն դիր ազատութեան,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Ծոցդ է անմատոյց խորանին նըման,
Գրկելիք սրովբէ կայ ի տարածման,
Միտք ո՛չ հասանի Քեզ, անհասական,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Որք ասդէն կենան՝ Քեզնով կու կենան,
Յանդէն զքե՛զ յիշեն, ապա թէ դընան·
Քեզ փառաւորէ աշխարհս ամենայն,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Դու ես աննըման, Դո՛ւ ես աննըման,
Դո՛ւ ես աննըման, չը կայ Քեզ նըման,
Ո՛չ կայ Քեզ նըման, ոչ տի գայ նըման,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Ունկդ է արեւմուտ մեծ խորհրդական,
Դու ես արեւելք լուսատու մարդկան,
Հիւսիս եւ հարաւ սընարդ ի նըման,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

---

57– քեզ :— 58– ի քէն :— 59– մեղա՛ քեզ'' :— 60– հայրն :— 61– աչերտ ·— ա՟ծտեսութ՟ե :— 62– կաթեամբ սնուցեր զորդիդ :— 63– մեղա՛ քեզ'' :—

64– Դրախտ ·— պտուղ :— 65– պտղովտ :— 66– ի քէն ·— ազատութ՟ն :— 67– մեզ'' :— 68– ծոցտ է անմատուց ·— նման :— 69 գրկելիք սրոբէ կա՛ :—

70– քեզ անհասական :— 71– մեղա՛ քեզ մեղա'' :— 72– քեզնով :— 73– անտէն զքեզ ·— դնան :— 74— զքեզ ·— ա՟մ :— 75– մեզ'' :— 76– դու ես :-

77– դու ես ·— չկայ քեզ :— 78– ոչ կայ քեզ նման ·— նման :—

79– մեղա'' :— 80– Ունկտ :— 81– դու ես :— 82– սնարտ ի նը՟ման 83– մեղա՛

Թ.

Այլըդ Քո Փխոն յորդոր խըրախճան,
Ահեակդ է Գեհոն ի Հապաշըրստան,
Նայելըդ Տիգրիս, Եփրատ գընացման,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Աջըդ Յովհաննէս է վըկայութեան,
Ահեակդ Մատթէոս եւ ճըշմարտաբան,
Ղուկաս եւ Մարկոս դիմաց, ի թիկան,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Աջըդ առիւծոյ, ահեակդ է եզան,
Դէմքըդ Քո մարդոյ լուսոյ կազմութեան,
Գըրկելիք արծիւ վեր չորսդ է լըրման,
Մեղա՛յ, Քեզ մեղա՛յ, Կոյս անապական:

Ես՝ աշըղ Քուչակս, որ կասին ի Վան,
Զար վիրօք ի լի եւ պատարկաբան,
Մարմինս է փոշի եւ հող անպիտան,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Երբ Քո Միածինդ գայ ի դատաստան,
Յանդէնն ժողովին աշխարհս ամենայն,
Լեր մեզ բարեխօս, առ անմահ Արքայն,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

Ով զՏէր Ողորմին աղէ զՀայր մեղայն,
Արժանի լինի ինքն ողորմութեան,
Իւրրն հովանի աջըն վերնական,
Մեղա՛յ, Քեզ, մեղա՛յ, Կոյս անապական:

*

* *

---

քեզ մեղա" :— 84– քո փխոն ·— հրաղջան :— 85– ահակդ դեհոն ի յապաշաստան :— 86– նայելիքդ տիգրիս, եփրատ :— 87– մեղայ քեզ" :— 88– յոհաննէս ի վըկայութ՟ե :— 89– ահակդ մաթէոս եւ ճշմարտաբան :— 90– ղուկաս եւ մարկոս :— 91– մեղա" :— 92– ահակդ :— 93– դէմքդ քո ·— կազմութ՟ե :— 94– գրկելիք ·— ի լըման :— 95– մեղայ" :— 98– մարմինդ է փոշի :— 99– մեզ" :— 100– Եւ քո միածինդ :— 101– անդէն ժողովին :— 102– բարեխաւս ·— արքայն :— 103– մեղա' քեզ" :— 104– ո՟ր զողորմին ·— զհայր մեղան: 105– ողորմութ՟ե :— 107– քեզ մեղայ Կոյս :—

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Ա.

Գիւուկ կամ Գայուկ խանը մեր պատմիչների, եւ kuyuk կամ kuyuck ըստ արտաքին պատմիչների, Թաթար-Մոնղոլ տիրապետութեան խանն էր կամ Խաքանը (1248–57 Թ.) եւ մի առանձին հակումն ունէր դէպի Քրիստոնէութիւնը եւ Քրիստոնեաները, որով արդարանում է Ս. Օրբելեանի այն արտայայտութիւնը, որով նորան կոչում է «... մեծ եւ բարեպաշտ արքայն աշխարհակալ...»: Գիւուկ Էլ-խանը կամ Խաքանն ունէր իր արքայական վրանի մօտ մի առանձին վրան-եկեղեցի, իր անձնական պաշտամունքի համար: Նոյնն ունէր եւ Արղուն խանը, հետեւելով Գայուկ խանի օրինակին. նորա եկեղեցի-վրանն եւս յարակից էր արքայական իր վրանին եւ եկեղեցի-վրանի պարանները խառնուած էին իր ննջարան-վրանի պարանների հետ, այնպէս որ երբ անհրաժեշտ էր շարժել արքայական վրանը, միաժամանակ եւ պէտք է տեղահան լինէր վրան-եկեղեցին: (E. A. Wallis Budge: *The Monks of Kublai Khan, Emperor of China*... London, 1928, p. 70):

Մանգու խանը (*), չորրորդ տիրապետը Մոնղոլ-Թաթար հարստութեան, հաւասար աչքով էր նայում (1251 Թ.) կրօնների վրայ եւ նոցա հետեւող ժողովուրդներին. նոյն վերաբերումն ունէր դէպի Քրիստոնեաները, ինչ որ ունէր դէպի Մահմետականները, Հրեաները, Բուդդայականները, Լամայի հետեւողները: Այլ խօսքով, իբրեւ քաղաքական տեսութիւն, չէր հովանաւորում եւ ոչ մի կրօն: Սիրով եւ յարգանքով ընդունեց Ֆրանսիայի Լուդովիկոս ԺԱ.-ի ուղարկած առաքելութեան ներկայացուցիչներին, որ եկած էին Մոնղոլ տիրապետին՝ Ֆրանսիայի արքայի բարեկամութիւնն արտայայտելու համար, 1252 Թ. Վիլիամ Ռուբրուքի (William de Rubruquis) գլխաւորութեամբ: Բարեհաճ եւ մեղմ պատասխանով վերադարձրեց նոցա, սակայն, միաժամանակ եւս, Մոնղոլների տիրապետը մերժելով մերժեց ընդունել եւ ենթարկուել Ճօն դը-Պլանոյ Կարպինի (John de Plano Carpini) եւ Ասելինոսի (Ascelinos) եւ ընկերների չափից դուրս Քրիստոնէական նախանձախնդրութեամբ առաջ մղած ցանկութիւնր եւ այդ պահանջներն ընդունելի դարձնելու ձգտումը: (Տես W. Rockill: *The Journey of William of Rubruck*, London, 1900 եւ C. R. Beazley: *The Texts and Versions of John de Plano Carpini and William de Rubruquis*, London, 1903).

Հուլաղու կամ Հուլաու Խանը — Hulagu Khan — Կուբլայ Խանի — Kublai Khan — եղբայրը, վերջինը Խաքան — Kakhan տիրապետներից եւ հիմնադիրը Իլ-Խան — Il- Khan — կամ Արեւմտեան խաների հարստութեան, ինքը Քրիստոնեայ էր եւ զաւակ քրիստոնեայ մօր, (Bar Hebraeus, Edit. Bedjan, p. 488, I. 8) եւ մօր անունն եւս տալիս է, իբրեւ Sarkulani Bagi (*): Միաժամանակ եւ մոլեռանդ հակառակորդ էր Մահմետականութեան եւ նորա հե-

---

(*) Նկար ա.— (Մանգու խանը իւր կանանց եւ որդիների հետ):

(*) Տես մեր թարգմանութիւնը՝ Բար Հեբրէոսի:

տեւողներին, որով արդարանում է Ստեփ. Օրբէլեանի որակումը նորա մասին, իբրեւ «յոյսն եւ ակնկալութիւն Քրիստոնէից». (Ստ. Օրբէլ., էջ 419, Ղուկաս. Մատենդ. հրատ.)։ Մանգու Խանի կենդանութեան ժամանակ դեռ եւս, երբ Պարսկաստանի մէջ ներքին խռովութիւններ ծագեցին Մոնղոլ–Թաթար տիրապետութեան դէմ, Հուլաւուն յանձնարարութիւն ստացաւ իւր եղբօրից՝ Մանգու խանից, կարգը վերահաստատել ապստամբ երկրամասի մէջ։ Հուլաւուն անցաւ Սամարղանդի եւ Քեշի վրայով, Օքսուս գետը իր յետեւ թողեց, Բալխի ճանապարհը բռնելով՝ Կոհիստանը նուաճեց, աւարի տուեց, սպանել տուեց Ռուխ ադ – Դին Գուրշահ Բ. թագաւորը (Rokh ad-Din Gurshah II) 1256 թ. ապա դիմեց Բաղդադ եւ պաշարեց այն։ Բաբաններով Բաղդադի պարիսպները կործանեց եւ 1258 թ. Յունուարին յաղթական մուտքով քաղաքը գրաւելով, հազարաւորներ սպանել տուեց բնակիչներից (**)։ Ընդհանուր այս կոտորածի ժամանակ, սակայն, Քրիստոնեաները խնայուեցին, որոնք կոտորածի եւ աւարի պահին հաւաքուել էին քաղաքի թաղերից մէկը, այն ինչ Հուլաւուի հրամանով քաղաքի Մուսուլման թաղերն էին աւարւում եւ կործանւում (Bar Hebraeus, Edit. Bedjan, p. 505)։

Իբրեւ Քրիստոնեայ՝ նորա մեծագոյն ցանկութիւններից մէկն էր կործանել Աբասեան խալիֆայութիւնը։ Մտադիր էր արշաւել Պաղեստին եւ Երուսաղէմը Սելջուկեան Թուրքերի ձեռքից կորզել, (որոնք տէր էին դարձել Երուսաղէմին 1071 թ.)։ Սակայն Դամասկոսից ելնելուց յետոյ, ծանր պարտութիւն կրեց Ալ–Մուզաֆֆարի — Al-Muzaffar Kutuz — կողմից եւ Երուսաղէմը մնաց Սելջուկների ձեռքը։

Քրիստոնեաներին հովանաւորելու եւ պաշտպանելու գործի մէջ Հուլաւուի գլխաւոր մղիչն էր իւր կինը, որ նոյնպէս Քրիստոնեայ էր, Դախուզ — Խաթուն — Dakuz կամ Tokuz Khatun անունով. (Bar Hebraeus, ed. Bedjan, էջ 491, 1. 15) որի մասին վկայում է, իբրեւ «հաւատացեալ Թագուհի եւ ճշմարիտ Քրիստոնեայ», որը «բարձրացոյց զեղջիւր Քրիստոնէից յամենայն աշխարհի»։ Այս կինը նախապէս եղած էր Հուլաւուի հօր կինը, սակայն հօր մահից յետոյ Հուլաւուն նորան կնութեան է առնում «ըստ սովորութեան Մոնղոլների»։ Դախուզ Խաթունը մեռնում է «ամարային օրերին» այն նոյն տարին, երբ իւր ամուսինը մեռաւ եւ «կոծ մեծ եղաւ ամբողջ աշխարհի Քրիստոնեաների մէջ, այս երկու մեծ լոյսերի խաւարելով, որոնք Քրիստոնէութեան Հաւատքի յաղթանակը յաջողեցին գլուխ հանել». (Bar Hebraeus, ib. p. 521)։

Հուլաւուն երկար ժամանակ հետապնդում էր ամուսնանալ Միքայէլ Ը. Պալէոլոգի (1261–83 թ.) դստեր՝ Մարիամի հետ (– Մարիամ Դեսպինան մեր պատմիչների) եւ իշխանուհին ժամանակին ուղարկուեց Մոնղոլիա։ Ըստ ոմանց, Հուլաւուն մեռաւ, շատ չանցած իշխանուհու գալուց յետոյ. իսկ պատմիչներից ոմանք եւս հաւաստում են, թէ իշխանուհին հասաւ միայն Հուլաւուի մահից յետոյ, ուստի եւ Աբաղա — խանը — Abhaga — Հուլաւուի որդին եւ

(**) Տես նկար 2 (Բաղդադի պաշարումը Հուլաւու խանի կողմից)։

յաջորդը ամուսնացաւ կայսեր դստեր հետ։ Թերեւս Մարիամ Պալէլոգ Դեսպինան պիտի նոյնացնել «Մեծ Թագուհի Խութայ Խաթունի — Kuthai Khatun — հետ, որն անձամբ գնաց Մարաղա — Maragha — (Նեստորական Քրիստոնէութեան կեդրոնը) եւ առաջնորդեց Քրիստոնեաներին, իրենց աշտէների վրայ խաչեր կախած, «Զրօրհնեաց» հանդէսը տօնելու Յայտնութեան Տօնի օրը. (Bar Hebraeus, ib. p. 539, Ծնթ.)։

Աբաղա — խանի որդին՝ Արղունը — Arghon — ունէր երկու Քրիստոնեայ կանայք եւ զաւակներից ոմանք եւս մկրտուած էին։

Նորա եղբայրը՝ Խայխաթոն — Kaikhato — յարգալից վերաբերում ունէր դէպի բոլոր կրօնների հետեւողները, սակայն ինքը Քրիստոնեայ էր սրտով եւ իր օրով Քրիստոնէութիւնը ծաղկեց իր իշխանութեան սահմանների մէջ։ Չորս տարուայ (1291–95) կարճ իշխանութիւնից յետոյ սպանուեց եւ իշխանութիւնն անցաւ իւր եղբօր՝ Բայդուն-ին — Baidu — որ հազիւ չորս — հինգ ամիս իշխեց։ Նա եւս սպանուեց 1295 Թ. վերջերը եւ նորան յաջորդեց Արղունի որդի՝ Խազանը — Kazan։

Խաղան-խանն եւս բարեկամ էր Քրիստոնեաների, յաճախ անկեղծ բարեկամ, մղուած քաղաքական դրդիչներից. ինքն եւս համարւում էր Քրիստոնեայ. (Հմմտ. *The Monks of Kublai Khan,* էջ 163 չր.), ինչ որ շատ կասկածելի է։

Խաղանը մեռաւ 1304 Թուին եւ նորան յաջորդեց իր որդին Ուլջայիտուն — Uljaito — դեռ եւս մանկահասակ եւ յանձնուած Նեստորեան Պատրիարք — Yahbh-Allaha Գ.ի դաստիարակութեան։ Երբ տարիքն առաւ, տակաւին երիտասարդ հասակի մէջ, տարուեց Իսլամի վարդապետութեամբ եւ ջերմ հետեւող եղաւ։ Բարեկամ էր Արաբների հետ եւ վերջիններս եւս նորա վերայ նայում էին իբրեւ անկեղծ բարեկամի եւ դաշնակցի վերայ։ Նորա օրերով էր, որ Նեստորական Եկեղեցու անկումը տեղի ունեցաւ եւ վերջացաւ Չինաստանի, Կեդրոնական Ասիայի, Իրաք ալ-Աջամի եւ Միջագետքի մէջ։

Մոնղոլ-Թաթարական Խաքանների եւ Իլ-խաների հարստութիւնը տեւեց շուրջ 160 տարիներ, այն է 1200–1360 Թ.։

Իլ-խան կամ Արեւմտեան խաների* հարստութեան տիրապետներն էին այն իշխանաւորները, որ Թագաւորում էին Պարսկաստանի մէջ.—

---

*) *Il-Khan,* ըստ Արմենակ Բէյ Սաքըզեանի, նշանակում է Khan provincial, որոնց իշխում էին Պեկինի Մոնղոլ Մեծ Խաները, "qui sont meme les suzerains des Il-Khans de Perse." (Armenag Bey Sakizian: *Le Miniature Persane du XIIe au XVIIe Siecle,* Paris — Bruxelles, Edit. G. van Oesi p. 52)։ Այսպիսի ստորադասական յարաբերութեան կապ միայն կար Իլ-խան իշխանների հարստութեան նախնական շրջանում եւ յետոյ, երբ Իլ-խան հարստութիւնը զօրացաւ, ստորական այդ կապն ու կախումը մի կողմ դրուեց եւ մոռացուեց, երբ Քուբլայ-խանի հիմնած Yuan հարստութիւնը շուտով սկսեց իւր անկման շրջանը։ (Տես Յաւելուած )։

1.– Աբաղա–խան — Abga կամ Abgha կամ Abagha — աւագ որդին Հուլաղու կամ Հուլաու–խանի — Hulagu-Khan — իշխեց 1265–1281 թ.: Ամուսնացաւ Միքայէլ Ը. Պալէոլոգի (1262–83) ապօրինի դստեր՝ Մարիամի (–Մարիամ Դեսպինան մեր պատմիչների) հետ, որ ուղարկուած էր ամուսնանալու Հուլաուի հետ, որը, սակայն, մինչեւ իշխանուհու ժմնելը՝ մեռաւ: Աբաղախանը թղթակցութիւններ ունեցաւ Պապի եւ Անգլիայի Եդուարդ Ա. թագաւորի հետ: Նորա նամակներից մէկը տպուած է Սայքսի կողմից. (Sykes: History of Persia, vol. II, p. 100): Նորա իշխանութեան օրով էր, որ Մարկոյ Պոլոն — Marco Polo — իր ճանապարհորդութիւնը կատարեց՝ անցնելով Պարսկաստանի միջով դէպի Չինաստան:

2.– Ախմադ կամ Աhմադ Թաքուդար օղլու — Ahmad Takudar Oghlu — Աբաղայի եղբայրը («Թագուտար»ը մեր պատմիչների) իշխեց 1281–84 թ.: Մանուկ հասակից մկրտուած էր եւ ընդունած Նիկողայոս անունը. սակայն երբ գահը ժառանգեց, անմիջապէս իրեն յայտարարեց Մահմետական: (Ստ. Օրբէլեան նուրբ հեղնանքով ասում է. «Աhմադ անուանեաց զինքն (– նախկին Նիկողայոսը) եւ խորհեցաւ առնել մ ը ս լ մ ա ն զամենայն ազգ», էջ 425): Արղունը, Աբաղա–խանի որդին, ապստամբեց նորա դէմ եւ, նախ պարտուեց, ապա երբ բանակն անցաւ իւր կողմը, թագաւոր հռչակեց Արղունին, Աhմադ կամ Ախմադ Թաքուդարը փախուստի դիմեց: Շուտով կալանաւորուեց եւ մահուան դատապարտուեց: Նորան մահացրին Մոնղոլական դաժան սովորութեան համաձայն՝ ողնաշարը կոտրելով:

3.– Արղուն–խան — Arghon — Աբաղայի որդին, իշխեց 1284–1291 թ.: Նորա օրով եւս շարունակուեց յարաբերութիւնը Եւրոպայի հետ: Պապի մօտ ուղարկեց մի դեսպանութիւն 1285 թուին, որին յաջորդեց մի երկրորդը՝ 1287–88 թ.թ., ապա մի երրորդը՝ 1289–90–ին եւ վերջապէս մի չորրորդը՝ 1290-91 թուին: Պապին ուղարկած իր նամակների թարգմանութիւնը, Պապի պատասխան նամակների բնագիրը հրատարակուած են.(J. B. Chabot: *Histoire de Mar Jabalaha III et de moine Rabbon Cauma,* Paris, 1895, App., I):

Արղունը առաջարկեց ընդհանուր ոյժերով մի յարձակում Մահմետականների դէմ, Ս. Երկիրը նոցանից ազատելու առաջարկ խայծով, բայց իսկապէս Սելջուկ Թուրքերի ոյժերը խորտակելու նպատակով եւ, չը նայած որ թէ Պապըն էր համաձայն եւ թէ Եւրոպայի թագաւորներից իւրաքանչիւրը օգնութիւն խոստացած, սակայն խոստումներն ու համաձայնութիւնները մնացին անկատար:

4.– Խայխաթուն — Kaikhato — Աբաղայի որդին եւ Արղունի եղբայրը, իշխեց 1291–1295 թ. (– Քեղաթունը մեր պատմիչների, «եղբայր Արղունին ըղՔեղաթուն ի Հոռոմոց, եկեալ նստաւ ի դախտն արքայութեան... ի թուականութեան Հայոց ՉԽ – 1291». Ստ. Օրբէլ. էջ 467–68): Բնաւորութեամբ յախուռն, անհոգ պետական գործերի նկատմամբ, անհեթեթ շռայլ եւ թոյլատու ամէն ինչի. բանակը երես դարձրեց նորանից, ապա խեղդեցին եւ մահացրին:

5․– Բայդուն — Baidu – (– Բայդուն, ըստ մեր պատմիչների եւս, «Զօրավլխայն եւ մեծամեծացն եղեալ յերկփեղկս՝ ոմանք կոչէին զԲայդուն ի Բաղդադայ՝ ազգական Արղունին․․․» Ստ․ Օրբ․, էջ 467), եղբօրորդին Խայխաթունի, իշխեց միայն մի քանի ամիս, 1295 թ․ ամառուայ վերջերին։ Բանակը նորան եւս լքեց եւ անցաւ Խազանի կողմը, որի հրամանով եւ սպանեցին Բայդունին։

6․– Խազան — Kazan — Արղունի որդին (–Ղազան՝ ըստ մեր պատմիչների․ «․․․ Գայ ի Խորասանայ Ղազանն, որդի Արղունին, որդւոյ Ապաղային․․․ ի խնդիր հայրենական աթոռոյն՝ զօրօքն Խորասանայ․․․»։ Ստ․ Օրբէլ․ էջ 470–71), իշխեց 1295–ի վերջերից մինչեւ 1304 թ․։ Նորա առաջին իսկ գործերից մէկն էր իրեն Իսլամ կրօնի հետեւող հռչակել, որպէսզի դորանով Խաքանխաների գերիշխանութիւնը խորտակել կարողանար, որոնք տակաւին կռապաշտ էին։ Ոյժ եւ թիկունք էր տալիս Մահմետականներին նոցա բոլոր չափազանցութեան տանող ձեռնարկների մէջ․ արտօնեց նաեւ իր ժողովրդին կործանել ամէն տեղ Քրիստոնէական եկեղեցիները եւ Հրէական սինագոգները։ Արշաւեց Եգիպտոս 1299 թ․, անցնելով Սիւրիայից, ամէն տեղ աւեր սփռելով եւ Եգիպտացիների դէմ եւս յաղթանակ տանելով․ սակայն երկրորդ արշաւանքի ժամանակ, 1303 թ․ պարտութիւն կրեց։

Թ՚ղթակցութիւն ունէր Եւրոպական թագաւորների հետ։ Բանակցութիւններ վարեց նաեւ Պապի հետ եւ տարօրինակ մի բան, խոր համոզում ունէր իր մասին, թէ ինքը, սրտի խորքում Քրիստոնեայ էր։ Անգլիայի Եդուարդ Ա․ թագաւորը մի պատգամաւորութիւն ուղարկեց Խազանի մօտ, Geoffrey de Langley–ի գլխաւորութեամբ եւ վերջինս իւր թագաւորին մի ինձ բերեց Խազանի կողմից, դառագեղի մէջ։

Խազանը բաւական կարեւոր բարեկարգութիւններ մտցրեց իր իշխանութեան ենթակայ երկրների մէջ, աշխատելով կառավարել իմաստութեամբ եւ արդարութեամբ։ Մեծ շինարար էր։ Կանգնել տուեց Թաւրիզի մէջ հոյակապ մի մզկիթ, շքեղ մի դամբարան, ապա նաեւ բազմաթիւ դպրոցներ եւ մատենադարաններ, նաեւ մի հիւանդանոց եւ մի դիտարան։ Ժողովեց գիտուն ու կարող անձեր այդ հաստատութիւնները վարելու եւ նոցա վրայ հսկելու համար, որոնք խոշոր ռոճիկ էին ստանում եւ ապահովութիւն։ Իսկ պետական գանձարանը հարուստ էր բաւական, որպէսզի կարող լինէր այդ բոլորը գլուխ հանել, պահել հաստատութիւնները եւ նպաստել ուսանողներին, որոնց թիւը հազարաւոր էր։

Խազանը Իլ–Խան հարստութեան իշխողներից մեծագոյն պետական անձըն էր։

Խազանի բարեկարգութեան եւ գիտութիւնն ու ուսումը տարածելու հետապնդող քաղաքականութեան ընդհանուր պատկերը հաստատող մի հետաքրքրական վաւերագիր է հասած մեզ, որ վերաբերում է Պարսկաստանի առաջին համալսարանի հաստատման։ Այդ վաւերագիրն է մի նամակ, գրուած ԺԳ․ դարում, համալսարանական առաջին քաղաքը շինել տուող Ռաշիդ–իւդ–Դին

անունով անձի կողմից՝ իւր որդուն։ Նամակն այժմ գտնւում է Անգլիայի Քէյմբրիջ քաղաքի համալսարանի մատենադարանի մէջ։

Ռաշիդ–իւդ–Դինն իւր որդուն ուղղած այդ նամակի մէջ այսպէս է նկարագրում նոր հիմնած քաղաքը եւ իւր նպատակները՝ ասելով.—

«Որապէս հաւատացած ենք, թէ մեծ ծառայութիւն պիտի մատուցած
«լինինք մեր ժողովրդին, եթէ քաջալերենք ուսումն ու գիտութիւնը եւ
«երիտասարդների դաստիարակութիւնը։ Այս նպատակով արագընթաց
«փուշտիպաններ (– սուրհանդակ) ուղարկեցինք ամէն կողմ, մեր ժամա-
«նակի ամենից ականաւոր, բարձր գիտութեան տէր ուսումնական անձերի
«մօտ, հրաւիրելով ամէնքն այստեղ, միաժամանակ խոստանալով նոցա
«ամէն դիւրութիւն կեանքի, որ այստեղ ի մի ժողովուած՝ հետապնդեն
«իրենց ուսումնական գործը, մտքի անդորրութեան մէջ։

«Գիտունների եւ մեծ ուսումով օժտուած անձերի խմբեր արդէն
«սկսել են գալ չարունակ եւ մենք բոլոր հնարաւորութիւններն ենք գործ
«դնում նոցա մտահոգութիւնից խսպառ զերծ պահելու համար։ Այդ նը-
«պատակով շինել եմ տուած արդէն 24 քարավան–սարայներ, 1500 խա-
«նութներ՝ ամէն ապրանք եւ ուտեստի, 30,000 սքանչելի տներ, առող-
«ջութեան աղբիւր բաղանիքներ, հաճելի ժամանցի պարտէզներ, ծաղ-
«կանոցներ, գործարաններ զգեստի, ազանելիքի եւ թուղթի, ներկի մեծ
«գործարան եւ մի փողերանոց եւս։ Որոշ գիտնականների տրամադրած
«ենք 400 կազմ եւ պատրաստ տներ. այդ գիտնականների մէջ կան մեծ
«ուսումնականներ, աստուածաբաններ, իրաւաբաններ։ Այդ փողոցը կոչ-
«ւում է Փողոց գիտունների»։

«Նոքա ամէնքն եւս ստանում են օրական վճարներ, տարեկան թո-
«շակներ, առատ ռոճիկ, փոխարժէք զգեստների եւ նպաստ՝ օճառի, բոյ-
«րերի եւ անուշեղէնի ու բանդակների համար։

7.– Մուհամմադ Խուդաբանդա — Muhammad Khudabanda — յայտնի սովորաբար Ո ւ լ ջ ա յ տ ո ւ ն — Uljaito — անունով կամ մականունով, որ նշանակում է «Բախտաւոր» կամ «Բարեբախտ»։ Եղբայրն էր Խազանի եւ իշխեց 1304–16 թ.։ Չը նայած, որ իբրեւ Քրիստոնեայ էր սնուած, սակայն ընդունեց Իսլամի վարդապետութիւնը եւ, չը նայած դորան, Եւրոպայի թագաւորները հաւատացած էին, թէ նորա համակրութիւնն ամբողջովին Քրիստոնեաների կողմն էր, իբրեւ Քրիստոնեայ։

8.– Աբու Սայիդ — Abu Said — որդին Խուդաբանդայի. իշխեց 1316–35 թ.։ Հազիւ տասներկու տարեկան էր, որ գահ բարձրացաւ եւ չը նայածյ որ Նեստորական Պատրիարք — Mar Yahbh-Allaha–ն նորա Քրիստոնէական կրօնի ուսուցիչ եւ սնուցիչ ու դաստիարակ էր եղած եւ հետեւեալ տարին միայն վախճանուեց, սակայն հաւանական է, որ նա եւ ոչ մի յարաբերութեան մէջ էր այս թագաւորի հետ։ Ազնուական դասակարգի անդամներից շատերն ապըստամբեցին թագաւորի դէմ։ Եւ Աբու Սայիդն, իր ամբողջ իշխանութեան ըն–

թագքին՝ թոյլ ու անկարող մի վարիչ եղաւ եւ երբ մեռաւ անիշխանակութիւնը, ամբողջ մի շրջան, երկիրն էր քայքայած եւ կործանման տարած:

Այդ օրերի մեծագոյն աղնուական ու կարող դէմքերից մէկն էր Հիւսէյին Ջալայիր — Husen Jalair — ամուսնացած Արղուն–խանի դստեր հետ: Նա էր, որ միւս Ամիրների գործակցութեամբ գահակալել էր տալիս մի խանի՝ միւսի յետեւից: Այսպէս՝ Մուհամմադ — Muhammad — (1336–38), Թուղա Թիմուր – Tugha Timur – (1338–51), Ջահան Թիմուր — Jahan Timur – (1339–41), Սաթի բէգ – Sati Beg — (1339), Սիւլէյման – Suleman – (1339–43), Նուշիր–վան – Nushirwan (1344) եւայլն:

Ջալայիրն ու իր յաջորդ վարիչները, որոնք իրական տէրն էին Իլ–խան իշխողների, իրար յաջորդեցին եւ իշխեցին 1336–1411 թ., երբ Իլ–խաների թուլացած եւ քայքայուող տէրութեան տէր դարձաւ Թիմուրը — Tamerlane–Timur – i – leng – Կաղ Թեմուր (1392–93–ին): (Տես Bar Hebraeus, ed. Bedjan. H. H. Howorth: *History of the Mongols*, London, 1876–88. E. Gibbon: *Decline and the Fall of the Roman Empire*, ed. Nottingham, S.– N. Y. vol. VI.)

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Բ.

*Ստ. Օրբէլեանի Պատմութեան մէջ յիշատակուած* պ ա ս զ ա զ *բառը ա-ղաւաղուածն է* Պ ա յ զ ա հ — Paizah *կամ* paiza *կամ* paizah — *Չինարէն* pai–tseu —պայ-ցիօ *բառի, որ նշանակում է* արտօնագիր, *որը այլ անունով եւս կոչւում էր, նաեւ* Yarligh, *որից եւ ծագումն է. առել Ռուսերէն* Ярлык *բառը, (մեր պատմագիրների* Ե ա ռ լ ը խ (Ստ. Օրբ., էջ 429) *կամ* pukdana:

Պ ա յ զ ա հ–ը *ոսկեձոյլ մի տախտակ էր, փոքրիկ, ափի չափ մեծու-թեամբ եւ լայնութեամբ եւ, թւում է, թէ իր սկզբնական ծագումով վերա-պահուած էր միայն արքայական տան անդամների համար, որ Մոնղոլ Թաղա-ւորները տալիս էին նոցա, երբ վերջիններս Թաղաւորի կողմից, իբրեւ ներ-կայացուցիչ՝ որ եւ է տեղ էին ուղարկւում կարեւոր պաշտօնով կամ առաքե-լութեամբ: Այդ ոսկէ տախտակն արտօնութիւն էր շնորհում կրողին, ճանա-պարհորդութեան ժամանակ, անցած քաղաք ու գիւղից պահանջել ամէն ինչ, որ կարեւոր էր իւր եւ իւր հետեւորդների համար, առանց որեւէ վճարումի: Այլ եւ այդպիսի վայրերի բնակիչները պարտաւոր էին ընձեռել եւ ընծաներ, ցոյց տալ կրողին յարգ ու պատիւ, իբրեւ ներկայացուցիչ Թաղաւորի կամ Մեծ–խանի:**)

---

*) Պայզահ–ի *շնորհած արտօնութեան իրաւունքը շարունակուեց Մոնղոլ-Թաթարական հարստութեան ամբողջ շրջանին, իբրեւ պետական վարչաձեւի եղանակ: Այսպէս Թեմուր–Լանգի օրերին Սպանիական դեսպան Կլավիխոն եւ իւր հետեւորդներն օգտւում են նոյն իրաւունքից ամէն տեղ եւ ամէնքի կող-մից՝ իրենց տարիներ տեւող ուղեւորութեան ընթացքին, թէ Թէմուրի մօտ գը-նացած ժամանակ եւ թէ վերադարձին: «Սովորութիւն է, ասում է Կլավիխոն,*
*«որ դեսպանները, որոնք ուղեւորւում են Թէմուրին ներկայանալու եւ*
*«կամ իրենց վերադարձին, ինչպէս եւ կայսերական տան իշխաններն,*
*«ամէնուրէք իրենց ճանապարհորդութեան ժամանակ ասպնջականութիւն*
*«են վայելում: Ճանապարհորդութեան ժամանակ, գիշեր թէ ցերեկ...*
*«նոքա ընդունում են ամէն տեսակի հիւրընկալութիւն. (մենք) դոնէ,*
*«ինչպէս եւ (Թեմուրի) ազգականները ամէն տեղ ուտեստ ու բնակարան*
*«ստացանք... եւ այդ բոլորի ծախքերն ընկնում էին այն համայնքի վրայ,*
*«որտեղից անցնում էինք»:*

*Սամարղանդից վերադարձին, ... «Փետրուար ամսի վերջին օրը,*
*«Շաբաթ, մենք մտանք Թաւրիզ, ուր մեզ համար բնակարաններ էին յատ-*
*«կացրած* Հայերի *տների մէջ, որոնք քրիստոնեաներ էին եւ այստեղ՝ նո-*
*«քա մեզ մատուցին սովորական պաշարը մեր ուտեստի: Եւ Մարտ 3–ին,*
*«Երեքշաբթի, մեր ձիերը պատրաստ էին, որ ուղի ընկնենք Օմար իշխանի*
*«մօտ... որ բանակած էր Ղարաբաղի դաշտերում...: Մեզ առաջնորդում*
*«էին Թաթար առաջնորդող պահակներ, որոնք կոչւում էին* Չ ա ղ ա ռ ւ լ
«(Chagaul)...: *Այսպէս մենք ուղեւորուեցանք Օմար իշխանի մօտ, որ*

Պ ա յ զ ա հ–ի հետ տրւում էր նաեւ գրաւոր մի ազդարարութիւն–վկայութիւն, վկայական, որ կոչւում էր Yarligh կամ Yarlikh – Եարլըղ, Եարլիխ, երբեմն եւս Pukdana *) էր կոչւում այն, որը եթէ հարկ լինէր, պ ա յ զ ա հ կրողը ցոյց էր տալիս, իբր ապացոյց, թէ կրողը իսկական տէրն էր պայզահ–ի, գողացած չէր այն եւ կամ բռնի չէր իւրացրած: Այդ Yarligh–ը յաճախ կոչւում էր նաեւ Yarligh al–tamgha, որովհետեւ այդ արտօնագիր–վկայականի ստորին մասի վրայ դրոշմուած էր արքունի կնիքը կարմրադեղով կամ կարմիր կնքամոմով եւ կամ կարմիր թանաքով ստորագրուած: *) (Այդպիսի Yarligh al–tamgha կարելի է տեսնել Marco Polo–ի ճանապարհորդութեան մէջ, հրատ.

---

«հրաման էր տուած տալ մեզ լաւ ընդունելութիւն եւ ուտեստ ու պարէն,– «որը նոցա (– Թաթարների) լեզուով կոչւում է Ա լ ա փ ա յ — Alafa — «ինչպէս եւ մեր (– Սպանական) լեզուով»: (Clavijo: *Ambassy to Tamerlaine*, 1403–1406, N. York, London, 1928, էջ 307–308 .— Alafa արաբերէն Al–'Afiyah բառից, որ նշանակում է «շնորհուած բարիք», որից մտել է նոյն alafa ձեւով Սպաներէնի մէջ. Dozy and Engelman: *Glossaire*, էջ 53, *Alafia* բառը.— Նոյն բառը մնացած է նաեւ մեր գաւառաբարբառի մէջ ա լ ա ֆ ձեւով, (Ղարաբաղում) որ նշանակում է կուր, ուտելիք տաւարի, ձմեռուայ պաշար յարդ ու խոտի՝ եզների, կովերի, ապուռ (Ղրըղ.).):

*) Աբուլ Ֆարաջը պատմելով իւր ժամանակագրութեան մէջ Բուղայի մասին, գրում է «... Եւ այս տարին (– 1288 թ. փ.) ... երբ Աբաղայի որդու Արղունի — Argon — թագաւորութիւնը հաստատուեց, Բուղան — Boka – գանձապետը, որը պատճառ էր եղած Արղունի ազատութեան՝ Ահմադի — Ahmad — ձեռքից ... յառաջացաւ չափազանց եւ այնքան զօրացաւ, որ նոյնիսկ իշխաններն ու իշխանուհիները եւ փեսաներն ու հարսները եւ Մոնղոլների բանակի գլխաւորները նորան էին ենթարկւում ... Եւ պետութեան ամբողջ վարչական պաշտօնեաները նորան էին հնազանդւում եւ Մաղող — Maghogh — Հարստութեան ու Տան ենթակայ այլ երկրների թագաւորներն ու կառավարիչները, որոնք վարում էին այդ երկիրները, չէին ընդունում (եւ կամ ճանաչում) առանց իւր Pukdana–ի եւ Բուղայի կարմրադեղ (եւ սեփական ձեռքի) ստորագրութեան»: Abul Faraj: *Chronology*, Trans. by E. A. Wallis Budge, vol. I, p. 477-78.

*) Դամղայի եւ Ալ–դամղայի մասին յիշատակութիւն ունին եւ մեր պատմիչները: Կիրակոս Գանձակեցին պատմելով Ասորիների Պատրիարք Սիմէոն Ռաբան Աթայի մասին, Խախանին այցի գնալուց յետոյ, պատմում է, որ «... մարդիկ նորա վաճառականք, որք ունէին զդամղա նորա, այսինքն զնշան եւ զգիր, համարձակութեամբ շրջէին ընդ ամենայն աշխարհս եւ ոչ ոք իշխէր մերձենալ առ այնոսիկ ...»: (էջ 369, հրտ. Ղուկասու 1909 թ.):

Մի այլ տեղ պատմելով Հեթում արքայի մասին, ասում է «...մեծարանօք յարգեցին զդեսպանսն արքայի եւ կարգեցին նոցա ոճիկս եւ երիվարաց նո–

Yule-ի, հատ. Բ., էջ 472)։ Մարկոյ Պոլոյի Ճանապարհորդութեան մէջ առաջ բերուած այդ Yarligh al—tamgha-ի առաջին երեք տողերը Մոնղոլեան լեզուով, բայց Uighur տառերով *) գրուած մի գրութիւն է սեւ թանաքով, Արղուն Խանի կողմից ուղղուած Ֆրանսիայի թագաւոր Փիլիպ-Գեղեցիկին, 1289 թ., իսկ ստորեւ դրոշմուած է Մոնղոլ թագաւորի, Արղուն-Խաքանի կնիքը, որ ստացել էր Պեկինի Մոնղոլ Մեծ-Խանից։ Կնիքի դրոշմի կարմրադեղ նշանները Չինարէն են եւ կրում է հետեւեալ իմաստը.— «Կնիքն այն անձի, որ տէրն է թագաւորութեան եւ իշխում է ազգերին»։ (Remusat: *Memoires de l'Academie des Inscriptions.* vol. VII)։

Արղու-Խանի որդին եւս, Օլջայտուն կամ Ուլջայտուն — Oljaitu կամ Uljaito — (1304–1316 թ.), որ իւր մահմեդական անունով յայտնի է, իբրեւ Մուհամմադ-Խուդա-Բանդայ — Muhammad Khudabanda (վերը, տես Ցուել. Ա. 7) եւ որը Խաղանի եղբայրն էր, ուղարկեց մի այլ գրութիւն Ֆրանսիայի Փիլիպ Գեղեցկին (1307 թ.), նոյնպէս Մոնղոլ լեզուով գրուած եւ ըստ Abel Remusat-ի Uighur գրով։ (Uighur գրութեան ձեւը համարւում է այժմեան Մոնղոլական գրութեան նախատիպը։ Այդ երկու գրութիւններն եւս պահպանուած են Ֆրանսական Պետական Դիւանի մէջ։ Դոցա նմանահանութիւնը հրատարակուած է Remusat-ի «Մոնղոլ իշխանների հետ ունեցած թղթակցութիւնների» մէջ։ (Remusat: Mem. de l'Academie des Inscript., vol. VII եւ VIII — Նոյնը եւ Coln. H. Yule: *Travels of Marco Polo,* London, 1875, vol. I եւ II)։

Պ ա յ զ ա հ-ի մի օրինակ **) պահուած է Ռուսական Գիտութեանց Ճեմարանի Թանգարանում, Ս. Պետերբուրգ (– այսօրուայ Լենինգրադ), որ գտնուած է Ենիսէի նահանգի Մ ի Ն ո ւ ս ի Ն ս կ շրջանի մէջ, 1846 թուականին, որի երկայնութիւնն է 12¼ inches եւ լայնութիւնը 3¾ inches (35X8·3

---

ցա... Հաստատեցին եւ սէր ընդ արքայի եւ ետուն եւ գիր... զոր Ելդամղայն կոչէին...»։ Նոյն, էջ 270։

Մի այլ տեղ, պատմելով Հեթումի՝ Մանգու Խանին ներկայանալու մանրամասնութիւններն, ասում է «...Տեսին զՄանկու Ղանն երեւելի փառօք նստեալ... եւ կացեալ ընդ նմա ուսուրս յիսուն եւ տուեալ նմա հրովարտակ նշանաւոր զի մի ոք իշխեսցէ նեղել զնա եւ զաշխարս նորա եւ գիր ազատութեան եկեղեցեաց ընդ ամենայն տեղիս»։ Նոյն, էջ 353։

«Իսկ երբ հրաման ուզեցաք գնալոյ, այլ կոչեաց (Հուլաղու Էլղանն) զմեզ եւ խօսեցաւ... եւ հրամայեաց, թէ առաջի օրն դքո խօսքդ լմնեցի, առլեխ եմ տուել գրել, կարդալ տուր եւ զինչ քո սրտիդ պիտի աւելի՝ զայն այլ գրել տուր»։ Պատմ. Վարդանայ Վարդապետի, Վենետ. 1862, էջ 158։

*) Տես նկար 3. (– Արծաթ Paizah) — Uighur տառերով։

**) Տես նկար 4. — Նոյն տեսակի Paizah՝ Baspa Մոնղոլ տառերով. հմմտ. Հ. Ղեւոնդ Ալիշան. «Հայապատում», էջ 493.

տ.)։ Այդ պայզահ–ը ձուլուած է ոսկուց, վրան Մոնղոլական արձանագրութիւն Բ ա ս պ ա — (Baspa) տառերով։ Մի երեսի վրայ երկու եւ միւս երեսին երկու եւ քառորդ տողեր, վերից վար, ուղղահայեաց գրութեամբ։ Նշանակութիւնն է.— «Յանուն յաւիտենական երկնքի զօրութեան։ Սուրբ մնայ Kakhan–ի (– Խաքան – Թագաւորների–Թագաւոր) անունը։ Նորան յարգ չը մատուցանողները պիտի սպանուին եւ մեռնին»։ Պ ա յ զ ա h–ի յետեւը կայ համար 42 թիւը։

Պ ա յ զ ա h–ի վերին մասին գտնւում էր մի ծակ, որից շղթայ անցնելով, արտօնատէրն անցնում էր վզին եւ կրում կրծքին, որ ամէն մարդ տեսնէ։ (Տես Sir E. A. Wallis Budge: *The Monks of Kublai Khan Emperor of China,* London, 1928, p. p. 64, 152 — The Book of Ser Marco Polo, the Venetian, *transl.* and *edited* by Coln. *Henry Yule,* C. B. London, 1875, vol. I, p. 342, 346).

Պ ա յ զ ա h էր տրւում Մոնղոլ տիրապետների ներկայացուցիչներին, երբ վերջիններս տեսուչ, հարկահան, կառավարիչ էին նշանակւում օտար երկրների մէջ։ Այսպիսի Պայզահ–ի մասին է ակնարկում Ստեփ. Օրբէլեանը, Արղունի մասին, ասելով, որ է «վազիր եւ պաստզազ կարգեալ ի մեծ Ղանէն», ուր արտօնագրի անունը դարձած է արտօնատիրոջ պաշտօն եւ կամ տիտղոս։ (Ստեփ. Օրբէլեան. Պատմ., էջ 412–413)։ Մի այլ տեղ մեր պատմիչը խօսելով Արղունի դէպի Հայերն ունեցած առանձին համակրութեան մասին եւ ընդգծելու համար Օրբէլեան Տարսայիճ Աթաբէկի նկատմամբ ունեցած սէրը, ընդունում է իւր թեւարկեալի որդուն՝ Ստեփաննոս Օրբէլեան մետրոպօլտին մեծ պատւով — 1287 թ. — եւ «յոյժ հաճեցաւ եւ հրամայեաց գրել նմա... ե ա ռ լ ր խ. եւ հաստատեաց զամենայն եկեղեցիս եւ զաշխարհն եւ զեպիսկոպոսունս ի Տ. Ստեփաննոս եւ ետ նմա այր ի դրանէն եւ փ ա յ ի զ ա յ (– պայզահ — paiza կամ paizah) եւ այնպէս յուղարկեաց յաթոռ իւր»։ (Ստ. Օրբէլ. էջ 429)։ Մի այլ տեղ մեր պատմիչն այդ արտօնագիր եզրն առաջ է բերում պ ա ս խ ա զ անունով, որ արտագրիչ ձեռքի սխալն է խէ տառը խառնած լինելով զադի հետ եւ վերջինս սխալ կարդալով՝ փոխանակ զայի, այնպէս որ պ ա ս զ ա զ–ը նախ դարձել է պ ա ս ղ ա զ եւ վերջինս եւս պ ա ս խ ա ս. (Ստ. Օրբէլ., էջ 470–71)։

Պայզահ էր տրւում յաճախ նաեւ օտար ներկայացուցիչների, որոնք շնորհ էին գտնում Մոնղոլ Խաների առաջ, այս կամ այն պատճառով, ինչպէս տեսանք Օրբէլեանի նկատմամբ։ Այսպէս, երբ Կուբլայ–խանը ընդունում է Նեստորականների Պատրիարք Yahbh—Allaha Գ.–ին «մեծ յարգ ու պատիւների արժանացրեց նորան, իր գահը տուեց նորան (նստելու) եւ անձնական վերարկուն ձգեց նորա ուսերին եւ իր հովանոցը ընծայ տուեց»։ Տուեց նաեւ ոսկէ paiza, (1281 թ.)։ (Հովանոցի նշանակութեան մասին տես Marco Polo, edit. Yule, vol. I, p. 345):

Այսպիսի արտօնութիւններ տրւում էին մեծ խաների կողմից, ճանապարհորդութեան դիւրութեան համար, իբրեւ մեծ առանձնաշնորհում։ (E. A.

Wallis Budge: *The Monks o fKublai Khan*, p. 60 չր·), որն ստանում է մեր Հեթում թագաւորը Մանգոյ–Խանից ։ *)

Մարկոյ Պոլոն իր «Ճանապարհորդութեան» նախաբանի մէջ պատմելով (Գլ. Է·), թէ ի՞նչպէս Մեծ–Խանը, Կուբլայ–խանը, միտք է յղանում Պապի մօտ դեսպանութիւն ուղարկելու, պատուիրում է Մարկոյ Պոլոյին եւ իր Հօրեղբօր՝ Մաֆէոյ Պոլոյին եւ իր իշխաններից Կողատալին — Cogatal — մեկնել չուտով Պապի մօտ իբրեւ պատուիրակութեան անդամներ, խնդրելու Պապին ուղարկել «չուրջ հարիւր անձն՝ քրիստոնեայ, խոհական եւ գիտուն, ծանօթ Եօթն Արուեստ ու Գիտութեան ճիւղերին, *) ատակ բանավէճի եւ հակաճառութեան, որպէսզի ապացուցանեն քրիստոնէական կրօնի առաւելութիւնները հեթանոս–կռապաշտներին եւ իր ժողովուրդը քրիստոնեայ դարձնեն ։

---

*) King Hethum offered him (– Mangu Khan) his presents and was treated with due respect, and remained in the Horde fifty days. Mangu Khan gave him a special rescript forbidding any one to disturb him or his states, as well as an order granting liberty to all churches." Eugene Schuyler: *Turkistan*, vol. I, p. 406.

Եգիպտոսի Սուլթանների կողմից, ԺԳ. դարում, իբրեւ ազատ, անկաչկանդ ճանապարհորդութեան արտօնութեան նշան՝ տրւում էր Ֆիրման — firman—, որը մետաքսեայ բարակ հիւսուած չուան էր, ծայրը ծոպաւոր եւ մէջտեղն ամրացրած մի ոսկեայ բոլորակ, վրան Սուլթանի կնիքը ։

*) Եօթն Արուեստ էր կոչւում Միջին Դարերում եւ նորանից իսկ առաջ՝ կրթութեան դասական չրջանին, դպրոցական ուսման ծրագիրը, իր լայն ըմբռնումով ։ Այդ ուսման ծրագիրը բաժանուած էր Եռեակ եւ Քառեակ — Trivium եւ Quadrivium մասերի: Trivium–ի մէջ էին մտնում, իբրեւ ուսման ծրագիր՝ Ճարտասանութիւն, Տրամաբանութիւն եւ Քերականութիւն. իսկ Quadrivium–ի ուսման առարկաներն էին՝ Թուաբանութիւն, Աստղաբաշխութիւն, Երաժշտութիւն եւ Երկրաչափութիւն ։ — Լատին չրջանի հեղինակներից Սենեկային է վերագրւում Եօթ Արուեստների գիտութեան պահանջը, L. Annuei *Senecae Liber de Sepiem Artibus liberalibus*, այն ինչ այդ Եօթն Արուեստների փոխարէն միայն հինգի յիշատակութիւնն ենք տեսնում այնտեղ, — Քերականութիւն, Երկրաչափութիւն, Երաժշտութիւն, Աստղաբաշխութիւն եւ Թուաբանութիւն ։ — Եւ դարի դպրոցական ուսուցման մէջ Եօթն Արուեստները ազատ գիտութիւնների ամբողջ ծրագիրն էր, ամփոփուած Martianus Capella–ի աշխատութեան մէջ, որ Միջին Դարերի նախնական չրջանի գլխաւոր դասագիրք ձեռնարկն էր ։

Միջին Դարերի գրութիւնների, ոտանաւորների եւ պատմուածների մէջ բազմաթիւ են Եօթն Արուեստների մասին եղած յիշատակութիւնները ։ Այսպէս օրինակ Gestes d'Alexandre — Գործք Աղէքսանդրի մէջ մի գլուխ կրում է հետեւեալ վերնագիրը — "Comment Aristotle aprent a Alexandre les Sept Arts."—

Ապա պատմութիւնը շարունակելով (Գլ. Ը) ասում է.—

«Երբ մեծ խանը իւր յանձնարարութիւնները տուեց նոցա, մի առ մի, հրամայեց տալ նոցա մի Ոսկի Տախտակ, որի վերայ արձանագրուած էր, թէ երեք Դեսպաններին պիտի մատակարարուէին ամէն տեսակի պաշար եւ պարէն այն բոլոր երկրների մէջ, որոնց միջով պիտի անցնէին նոքա,— տալով նոցա ձիեր, պահակ ու հետեւորդներ. կարճ ասելով, այն ամէնը, որ նոքա կը պահանջէին եւ կը ցանկանան ունենալ, համաձայն կարիքի...:»

Ուղեւորութեան ժամանակ Թաթար իշխանը, դեսպանութեան անդամը, հիւանդանում է եւ մնում (ճանապարհին). երկու Պոլոները շարունակում են իրենց ուղեւորութիւնը եւ «...ուր որ գնում էին, ընդունում էին յարգալիր հիւրամեծարութեամբ, ստանալով այն բոլորը, որին կարիք ունէին եւ ինչ որ հրամայէին: Եւ այդ՝ շնորհիւ Խանից ստացած (Ոսկէ) Տախտակ հրամանագրի, որ կրում էին իրենց հետ»:

«Եւ այսպէս նոքա ճանապարհորդեցին մինչեւ որ հասան Լայաս — Layas — Այաս —, որ գտնւում էր Հայաստանի՝ Hermenia — մէջ...: Եւ այդ տեւեց երեք տարի...»:

Դեսպանութեան պաշտօնը կատարելուց յետոյ նոքա կրկին վերադառնում են մեծ Խանի մօտ: Ապա պատմութիւնը շարունակելով ասում է, (գլ. ԺԶ).—

«Երբ Մարկոն վերադարձաւ դեսպանութեան ուղեւորութիւնից, ներկայացաւ Կայսեր եւ իւր առաքելութեան գործի մասին զեկուցում տալուց յետոյ, որը կատարել էր մեծ յաջողութեամբ, շարունակեց պատմել հաճելի եւ մտացի եղանակով բոլոր նորութիւնների եւ տարօրինակ բաների մասին, որ լսել եւ տեսել էր...»:

Տասն եւ եօթն տարի *) մեծ Խանի մօտ մնալուց յետոյ Մարկոյ Պոլոն կամենում է վերադառնալ հայրենիք. արտօնութիւն է ստանում (գլ. ԺԷ):

«Եւ երբ Մեծ Խանը տեսաւ, որ Երկու Եղբայրները (եւ երիտասարդ) Մարկոն պատրաստ էին ուղի ընկնելու, ամէնքին իւր մօտ հրամայեց գալ եւ նոցա տուեց երկու ոսկէ Տախտակներ՝ Արտօնագիր, որ նոցա պիտի ընձեռէր ազատ

---

«Եօթն Իմաստասէրք» յայտնի միջնադարեան պատմուածքի մէջ պատմւում է, որ Դիոկղետիանոսը եօթն իմաստուններ հրաւիրեց իւր որդուն Եօթն Արուեստներն ուսուցանելու համար:— Միջնադարեան մի այլ վէպի մէջ, «Հերնկ եւ Եննէիդաս» անունով, պատմւում է մի զգեստի մասին, որի վերայ բարի ոգիները նկարել են Եօթն Արուեստները: (Franc. Michel: *Recherches*, II, p. 82): «Վիպասանութիւն Մահմեդի» անունով մի այլ միջնադարեան վէպի մէջ պատմըւում է, որ «երիտասարդ խաբեբան ծանօթ էր Եօթն Արուեստներին»: Մի այլ վէպ եւս յայտնի էր «Պատերազմ Եօթն Արուեստների» անունով: Տես նոյնպէս Dante: *Convito*, II, գլ. 14.—

*) Մարկոյ Պոլոն Վենետիկից ելաւ 1269 թուին եւ վերադարձաւ Հայրենիք 1295 թուին:

*երթի եւ ուղեւորութեան իրաւունք իւր պետութեան սահմանների մէջ, որով նոցա պիտանի ամէն պիտոյք ստանալու արտօնութիւն էր տրւում,— նոցա ինչպէս եւ իրենց ընկերների եւ հետեւորդների համար եւ կամ ինչ որ նոքա կը ցանկանային ունենալ...»:*

*«(Խանը) յանձնեց նոցա նամակներ եւս յանուն Ֆրանսիայի թագաւորի, Անգղիայի թագաւորի, Սպանիայի թագաւորի, ինչպէս եւ միւս քրիստոնեայ թագաւորների» (գլ. ԺԸ.):* (*The Book of Ser Marco Polo,* the Venetian, Newly Transl. and edited with notes, maps and other illustrations by Col. Henry Yule, C. B. London, 1875, vol. I, pp. 15–35).– The Most Noble and Famous Travels of *Marco Polo* together with Travels of Nicolo de Conti, Edited from the Elizabethan Translation of John Frampton, with Introduction, Notes and Appendixes by N. M. Penzer, M. A. London, 1929, p. 18 *չր.*—

*Վերը, Անգղիայի թագաւորին նամակ ուղարկելու յիշատակութեան առաջին անգամ ենք հանդիպում* Pauthier*–ի բնագրի մէջ: Յայտնի չէ, թէ այդ գրութիւնը երբ եւ իցէ հասաւ նորա ձեռքը թէ ոչ: Բայց մեզ յայտնի է բազմաթիւ այլ դեսպանութիւնների առաքման մասին, նախորդ եւ հետագայ շրջանների մէջ, որ Պարսկաստանի Մոնղոլ Խաները, այն է* Իլ–խաները*, ուղարկեցին Անգղիայի թագաւորներին, որոնց բոլորի նպատակն էր օգնութիւն ստանալ Եւրոպայից՝ Եգիպտոսի Սուլթանի վերայ յարձակուել եւ Սելջուկ Թաթարների իշխանութեան վերջ դնել: Այդպիսի գրութիւններ ուղարկուեցան Աբաղայ–Խանի կողմից,* 1289 *եւ* 1291 *թուականներին, Խազանի կողմից* 1302 *թուին եւ Ուլջայտուի եւ Օլջայտուի կողմից* 1307 *թուին. (Համմտ.* Remusat: *Mem. de l'Acad. des Inscrip.*, vol. VII):

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Գ.

### Մահմետականութեան անումը ԺԳ. դարում եւ իր Ազդեցութիւնը Թաթարների վերայ

*Մահմետի կրօնն անկման է դիմում Պարսկաստանի, Ասորիքի եւ Պաղեստինի մէջ, ինչպէս եւ Արեւելեան Եւրոպայում, այն օրերից եւ շատ արագ կերպով, երբ Մոնղոլ–Թաթարական ոյժերի արշաւանքն է սկսւում դէպի Արեւմուտք՝ իրենց անապատ–տափաստաններից: Մոնղոլներն աւերում, գետնի էին հաւասարեցնում ամէն ինչ եւ ամէն ոք, որ արգելք էին յարուցանում նոցա յառաջխաղացման եւ անցած երկիրները՝ նոցանից յետոյ աւեր ու աւերակի. լքուած ու ոտքի տակ գնացած մի աշխարհ էր ներկայացնում: Այս արշաւանքների ժամանակ ոչ նուազ աւերի, կողոպուտի ենթարկուեցին Մահմեդական աշխարհները, որոնց բնակիչները, իբրեւ Մահմետի կրօնի հետեւողներ՝ մեծագոյն թշնամիներն էին Աստուծու առաջ եւ մարդկանց համար, որովհետեւ Մոնղոլների տեսակէտով, Խալիֆայութեան ոյժը դիմադիր պատուար էր իրենց յորձանուտ հեղեղի:*

*Եւրոպայի քրիստոնեայ պետութիւնների ներկայացուցիչ թագաւորները, ինչպէս եւ Հռոմի պապերը, աշխատեցին բարեկամական կապեր հաստատել, դաշնադրութիւններ կռել՝ փոխադարձ օգնութեան խոստումներով Մոնղոլ պետերի հետ, ուղարկեցին Մոնղոլների մօտ պատգամաւորութիւններ, դեսպաններ, առաքելութիւններ՝ յուսալով, որ Մոնղոլների ոյժերով կարող պիտի լինէին ազատուել մահմետական խեղդող զօրութիւններից, որ Եւրոպայի դռներն էր ծեծում: Սակայն նոցանից եւ ոչ մէկի մտքովն էր անցնում, որ այդ օրերին Մոնղոլների քաղաքական էական նպատակն էր տէր դառնալ Պաղեստինին եւ Երուսաղէմին, որովհետեւ նոցա ներքին եւ միակ ձգտումն էր կոտրել եւ ջնջել Արաբ ոյժը, որ այդ շրջանին ոտքն ամուր դրած էր Սիւրիայում, ինչպէս եւ Պաղեստինի մէջ,— ջարդել նոցա զինակից Սելջուկ Թուրքերին, որ օգնում էին Արաբներին՝ Մոնղոլների դէմ, որպէսզի դորանով պահպանել կարողանային իրենց գոյութիւնն ու իշխանութիւնը իրենց տիրապետած երկրամասերի մէջ:*

*Քաղաքական այս նպատակի յաջողութիւնն ապահովելու համար էր, որ Մոնղոլ պետերը յաճախ իբրեւ «բարեպաշտ» եւ «սիրող Քրիստոնէից» դիմակն էին առնում, քրիստոնէութեան պատրուակով՝ քաղաքական ամուսնութիւններ կնքելու ձգտումն էին ցուցադրում եւ, էապէս անկրօն լինելով, Քրիստոնէութիւն էին կեղծում Եւրոպայի առաջ եւ Մահմետականութիւն հագնում, երբ պատեհութիւնն էր պահանջում: Եւ երբ Մոնղոլ Խաքաններն ու Խաները տեսան, որ Եւրոպայից ուժեղ զինուորական օգնութիւն ձեռք բերելու օրօրող յոյսերը երբէք պիտի չիրականանան, նոցա քրիստոնէական բարեպաշտութեան նախանձաւոր ոգին դադար առաւ եւ Արեւմտեան Մոնղոլ Իլ–Խան հարստութեան պետերն սկսեցին բարեկամանալ եւ եղբայրական գուրգուրանք տա–*

ծել դէպի Սիւրիական եւ Եգիպտոսի մահմետականները եւ Իսլամի կրօնը նոր թափով սկսեց իւր յառաջխաղացքն ու աճքը Մոնղոլների մէջ:

Եւ երբ Հուլաու-Խանի որդին, Թաքուդարը — Takudar — ծնուած Խութայ Խաթունից, — Kuthai khatun — գահ բարձրացաւ (1281–84), առանց տատանուելու ընդունեց «Հագարի զաւակների» կրօնը, հետն եւ Ա հ մ ե դ անունը, իբրեւ վկայական իւր անկեղծութեան, մինչդեռ միւս կողմից տակաւին մեծագոյն բարեացակամ վերաբերումի զգացումներ էր շռայլում Քրիստոնեաների նկատմամբ, — նոցա հարկերը թեթեւացնելով, ապահարկ դարձնելով եկեղեցիներն ու եկեղեցականները, մեծամեծ նուէրներ տալով կամ ուղարկելով նշանաւոր վանքերին ու եկեղեցիներին:

Նորա «Ահմադ» — Ahmad — անունն եւս պարզ, քաղաքական մի խաղ էր: Արդեօ՞ք ինքը կամովին ընդունեց այս անունը, Քրիստոնէական Ն ի կ ո ղ ա յ ո ս իւր անունը փոխելու եւ մոռացնել տալու համար, թէ ինքը ջերմեռանդ հետեւող էր Իսլամի, թէ՞ այդ անունն իւր շրջապատն ու ընտանիքի անդամները դրին նորա վերա եւ կամ ոգեւորուած մահմետական ժողովուրդը յատկացրեց՝ անյայտ է: Ցամենայն դէպս՝ քաղաքական խաղ էր: Իւր իշխանութեան մասին տես Bar Hebraeus, edit. Bedjan, p. 546):

Արաբ խորագէտ զօրավարների սրատես աչքերը վաղուց էին նշմարել Մոնղոլ-Թաթար խաների յարաբերութեան հետեւանքները Եւրոպայի ղեկավարների հետ եւ նոքա ամէն հնարներ գործ դրին, որ Արեւմտեան Խաների, Իլ-Խաների Քրիստոնէութեան հակամիտելու ջանքերը ջլատեն եւ խորտակեն դեռ եւս Կուբլայ-Խանի *) — Kublai Khan — կենդանութեան ժամանակ, որովհետեւ նա էր, որ տակաւին երիտասարդ՝ արտօնեց Yahbh Allaha Գ· Նեստորական Պատրիարքին գնալ Երուսաղէմ եւ նորան ու իր հետեւորդներին եւս շնորհեց մի պ ա յ զ ա հ (– պայզազ, ըստ մեր պատմիչներին, Ստ· Օրբէլեան, էջ (12–13, 470–77) եւ պ ո ւ խ դ ա ն ա յ — pukdana կամ yarlikh (– Եարլըխ ըստ մեր պատմիչներին, Ստ· Օրբէլեան, էջ 429): (Bar Hebraeus; Chronic. Eccles., ed. Bedjan, sect. 11, col. 451): Արաբները շատ լաւ էին տեսնում Քրիստոնէութեան ազդեցութիւնը Մոնղոլ-Թաթար խաների արքունիքում, ուր Խաները մինչ այն աստիճան էին տարուած Քրիստոնէութեամբ, որ խաների վրան-եկեղեցիների պաշտամունքը վերջ չունէր ամբողջ օրն իսկ, (The Monks of Kublai Khan էջ 71), որ խաների զաւակները մանուկ հասակից իսկ Քրիստոնեայ էին մկրտւում, ինչպէս Արղուն-Խանի որդին՝ Խ ա ր բ ա ն դը Kharbande — 1289 թ· մկրտուեց Մարաղայի Նեստորական Պատրիարքի ձեռքով: Արղունի մահից յետոյ, Մոնղոլների աշխարհում ապրող Նեստորական եկեղեցու ներկայացուցիչը Ս ա ւ մ ա կամ Ծ ա ւ մ ա — Sawma արտօնութիւն խնդրեց Խայխաթուից — Khaikhato — վերադառնալ Մարաղա եւ մի եկեղեցի կանգնել այնտեղ: Հետն առնելով արքայական ճամբարի վրան-եկեղեցու սըր-

---

*) Տես Նկար 5· — Քուբլայ-Խան:

*քաղան բոլոր անօթները, դարձաւ Մարաղա, կանգնել տուեց մի եկեղեցի՝ յանուն* Մար–Մարիի — Mar-Mari — *եւ* Մար Գէորգի։ *Զանազան միջոցներով կարող եղաւ ձեռք բերել քառասուն նահատակների նշխարներ եւ զետեղել եկեղեցու մէջ, քանի որ նախնական քրիստոնեայ դարերի ըմբռնումով եկեղեցին չէր համարւում սրբավայր եւ չէր օծւում իսկ, մինչեւ իւր հովանու տակ սրբերի կամ գոնէ մի սրբի նշխար ու աճիւններ չունենար։ (Հմմտ.* O. M. Dalton: *The History of Franks by Gregory of Tours,* Oxford, 1927, vol. I, p. 432 *չր.— Տ. Ա. Ե.* «Կամուրջը Շուշանի», *նախաբան* (44–45) *.— Այդ բոլորը գլուխ հանելու համար ծախսեց հարիւր եւ հինգ հազար* zuzu *(կամ մօտաւորապէս* £ 4,400 zuzu *հաւասար լինելով չուրջ* 10 d–*ի անգլիական կամ* 12 cent–*ի ամերիկեան)։ Եկեղեցին աւարտուեց* 1293 *թուին։*

*Կուբլայ–Խանի մահից յետոյ* (1294 *թ.) Իսլամ ույժերն ապստամբութեան դիմել սկսեցին Մոնղոլ Իլ–Խաների դէմ եւ չատ չուտով Արաբներն ամէն տեղ ծառացան քրիստոնեաների դէմ եւ այդ չարժումը դարձաւ Արաբ իշխանաւորների պետական քաղաքականութիւնը՝ Մոնղոլ Խաների Արեւմուտքի հետ ունեցած կապերն ու բարեկամութիւնը խզել տալու համար։*

*Իլ–Խան հարստութեան վերջին իշխանապետները թոյլ, անկարող, ծոյլ, պետական գործերի անսէր անձեր էին, անույժ եւ անընդունակ Արաբներին դուրս քչելու Հայաստանից եւ Արեւմուտքից։ Արաբներն օգտուելով այդ անկման դիմող ընդհանուր թուլութիւնից, աւելի յախուռն դարձան եւ յանդուգն. սկսեցին կողոպտել հարուստ վանքերը, աւարել եւ այրել նշանաւոր եկեղեցիները, իսկ այնպիսիները, որ ազատւում էին աւեր ու կործանումից՝ այդպիսիներն եւս մզկիթների վերածեցին։*

*Մոնղոլ Խաների թուլութիւնն ստիպեց նոցա՝ օրէցօր զօրացող Արաբ իշխանութեան բարեկամութիւնը որոնել։ Հետեւանքն եղաւ այն, որ Քրիստոնեաները կրկնակի յարձակման թիրախ եղան Իսլամ կրօնի չը հետեւողների դէմ անհանդուրժող ոգով տարուած Արաբ ույժերի եւ կրօնական զգացումներից զուրկ կամ այդ զգացումները վաճառքի հանող Իլ–խան իշխանաւորների կողմից եւ այսպիսով Քրիստոնեաների ստացուածքը կողոպտւում, այրւում եւ ունեցածը հովերին էր տրւում։ Քրիստոնեայ հասուն եւ դիմադիր–ույժ անձերն անխնայ կոտորւում էին, երիտասարդները եւ մանուկները գերի վարւում, ծախւում եւ կամ հեռաւոր Մոնղոլիա ուղարկւում, բռնի կրօնափոխութեան մղւում Արաբների կողմից, իսկ նորահարսներն ու գեղեցիկ կոյսերը կանանոցի* — harim — *բաժին դառնում։ Տարիքաւոր աղջարնակչութեան վերջն էր — այր թէ կին — սպանւում էին, մեռնում հիւանդութիւններից կամ սովից, փողոցներում, հայրենի տների առաջ, դաչտերում, ձորերում, անջրդի վայրերում, ամէն տեղ։*

*Արաբներն ատելով ատում էին Մոնղոլ-Թաթարներին՝ իբրեւ մարդ-անհատ, իբր աւերող ոյժ, անկոչ հիւրեր, իբր Քրիստոնեաներ եւ նոյն իսկ իբրեւ Մահմետական, որոնց մէջ եւ ոչ մի սրբութեան նկատմամբ յարգանքի նշոյլ էին տեսնում: Իսկ Բաղդադի մէջ Հուլաղուի հրամանով կատարել տուած աւերը, խժդուժութիւնները, ատելութիւնը՝ Արաբներին նոր թափով մղեցին ընդ միշտ մաքրել նոցա հետքը, անունն ու յիշատակը, մաքառման խատութիւնն անդթութեան հասցնելով, չը խնայելով ոչ ոքի, սեռի եւ տարիքի խտրութիւնն անտեսելով:*

***Տես*** Sir William Muir: *The Caliphate, its Rise, Decline and Fall.* Kremer: *History of Arabic Culture.* Nicholson: *Literary History of the Arabs.* Philipp K. Hitti: *History of the Arabs.* H. H. Howorth: *History of the Mongols.* Reinhart Dozy: *Spanish Islam, A History of the Moslems in Spain.*

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Դ.

### Առաջին Մոնգոլական Հարստութեան Ծագումը, Զարգացումը եւ Անկումը:

Մոնղոլների նախնական պատմութեան մասին, թւում է, թէ պատմական յիշատակութիւններ չեն մնացած: Նոցա բարձրացումն ու անկումը, արագ նըւաճումները, յախուռն յառաջխաղը նման էր երկրի ընդերքի նախնական շրջանների երկրակազմական անզուսպ պրկումներին, որոնք տակն ու վրայ արին երկիրը, փոխեցին ու փոփոխեցին նորա կազմակերպուող մակերեւոյթը:

Պատմութեան հեղինակաւոր գրիչներ շատ էլ համաձայն չեն իրար հետ մ ո ն գ ո լ անունան նշանակութեան մասին, սակայն, ըստ Չինական պատմիչների, այդ բառն ու անունը նշանակում է «քաջ», «արի», «աներկիւղ»: Մոնղոլ, Թաթար, Թիւրք, Թուրք անունները յաճախ, անխտիր գործ են ածւած, իբրեւ հոմանիշ եզրներ: Պարզ է, սակայն, որ Մոնղոլ եւ Թուրք եզրները բոլորովին տարբեր երկու ցեղերի անուններ են, թէեւ նոյն ցեղի ընդհանուր արմատին պատկանող: Թաթար կամ Թուրք կամ, յաճախ նաեւ, Թարթար*) անունով յայտնի ցեղը, Մոնղոլական ծագումով՝ վաղ ժամանակներից աչքի ընկնող տեղ էր գրաւում Չինգիզ–Խանի բանակի մէջ: Թուրք–Թաթարների հետ աւելի մօտ ազգակցական կապերով էին կապուած Հոները, Աւարները, Խազարները, Բուլղարները, Պեչենեգները եւ Կոմանեանները: Եւ միակ ոչ–թաթարական ցեղի ժողովուրդը, որ Եւրոպա արշաւեց եւ այնտեղ հաստատուեց՝ Հ ո ւ ն գ ա ր ներն էին կամ Մաջարները, որոնք ցեղակից էին Ֆիններին եւ Զուդ ցեղին կամ ժողովրդին:

Մ ո ն գ ո լ անունն ու ժողովուրդը չէ յիշատակւում Եւրոպական պատմութեան մէջ մինչեւ Մոնղոլ տիրապետութեան գլխաւոր հերոս եւ ազգային պարծանք Չինգիզ–Խանի երեւան գալը: Թւական բազմութեամբ Մոնղոլները մեծ չէին, ինչպէս Թուրք–Թաթարները: Մոնղոլ ժողովուրդը, իբրեւ գոյութիւն ունեցող ոյժ եւ ազգակ, ըստ Չինական աղբիւրների, արդէն յիշատակւում է Թ'անգ — T'ang — Հարստութեան օրով եւ իւր վերելքն է յիշւում շուրջ 1766 Թ. Ն. Ք. Ըստ Չին աղբիւրների նոքա մի ճիւղն էին Հ ս ի – Ո ւ է յ — Hsi–Wei — ժողովրդի, հպատակ էին Խ ի տ ա նների — Khitan – եւ ապա Չին–Թաթարների, բնակավայր ունենալով Բ ո ւ ր խ ա մ — Burkham — լեռները, Օնոն եւ Կերուլան գետերի մէջ: Բուն նախնական Մոնղոլ ցեղեր

---

*) Մոնղոլական ցեղի այլեւայլ ճիւղաւորումների, նոցա անունների, տարբերութիւնների, ցեղային յարաբերութեան մասին տես Ed. Gibbon: *The History of the Decline and Fall of the Roman Empire.* երկի հրատարակիչների եւ նոր բացատրութիւններ տուողների ընդարձակ ծանօթութիւնը հատ. Գ., էջ 108–109, հրատ. The Nottingham Society, N. York, Philadelphia, Ed. de Luxe. Նախնական շրջանում Եւրոպացիք անուանում էին նոցա Tartaru, որ եւ փոխաբերաբար նշանակում էր «Դժոխքից ելած», դժոխածին, նկատի ունենալով նոցա խժդուժ բարքերը եւ ամէն ինչ աւերելու միտումը:

այժմ եւս գոյութիւն ունին եւ, համարեա, նոյն երկրամասն են գրաւում, սակաւ բացառութիւններով, որ գրաւած էին տակաւին Չինկիզ–Խանի օրերով, — այն է Չինական Մեծ Պարսպի հիւսիսային կողմերը, Մ ա ն ճ ո ւ — Mandshu երկրամասի արեւմտեան մասերի մէջ, տարածուելով մինչեւ Բայքալ լճի հիւսիսային եզերքը։ Մոնղոլ ժողովրդի այն ցեղը, որի հետ մերձաւոր կապեր ունէր հաստատած Չինկիզ–Խանը, նորա նուաճումներից յետոյ ընդունեց Նիրուն — Niroun — անունը, որ նշանակում է «անխառն», բուն Մոնղոլներ եւ որոնք բնակութիւն էին հաստատած Բայքալ լճի եւ Շամոյ Անապատի մէջ ընկած լայնատարած դաշտավայր–հարթակի վերայ։

Մ ո ն ղ ո լ անուան ուղղագրութեան նկատմամբ, պէտք է գիտել, որ Մ ո գ ո ւ լ կամ Մ ո ղ ո ւ լ — Mogul — արտասանութիւնն աւելի աղաւաղուած եղանակն է ու ձեւը, սովորաբար եւ սովորական Պարսիկ եւ Հնդիկ ժողովրդի բերանի մէջ։ Չինական հնչաբանութեամբ Մ ո ն գ ո լ անունը արտասանւում է – Meng–Kou – Մենգ–քու, իսկ Մանճու — Mandshu – ժողովուրդը հնչում է Mong-go — Մոնգ–գոյ — կամ Mongu — Մոնգու։ (Mouradja D'Ohsson: *Histoire des Mongols.* Remusat: *Recherches sur les Langues Tartares.* Prichard: *Researches into the Physical History of Mankind,* vol. IV, p. 329 չր.)։

Մոնղոլ ասրեգրութիւնները, իբրեւ նախահայր այդ ժողովրդի յիշատակում են առասպելական մի նախահօր անուն, Բ ո ւ դ ա ն ց ա ր – Budantsar — անունով, որի որդին կամ ժառանգը Կ ա բ ո ւ լ — Kabul – անունով, յաջորդեց նորան եւ իւր ժողովուրդն ազատեց Չինական լծից, միաժամանակ եւ կազմակերպելով եւ միացնելով Մոնղոլ ցեղերը եւ կազմելով «Մոնղոլ Մեծ Ազգը»։ Նորա Թոռը – Ե ս ո ւ գ ա յ — Yessugai – նոր գրաւումներով իր ժողովրդի հողամասներն աւելացրեց եւ կազմեց «Մոնգոլ Աշխարհը», իսկ վերջինիս որդին Թ ե մ ո ւ ջ ի ն – Temujine – ծնուած էր նորա Օ գ ե լ ո ւ — Ogelou — կնոջից։ Թեմուջինն ապագային դարձաւ նշանաւոր Չինգիսը կամ Ջենգիզը – Jenghiz, Jenghis — կամ Չինգիս–Խանը։

Երբ Եսուգայը — Yessugai – մեռաւ, Մոնղոլ ցեղերից շատերը գլուխ բարձրացրին եւ ապստամբեցին, սակայն նորա արիասիրտ այրին՝ Օ գ ե լ ո ւ ն — Ogelou – կարող եղաւ ամուր ձեռքով բռնել իշխանութեան սանձը, իր շուրջը բոլորելով փոքրաթիւ հաւատարիմներ, զսպել ապստամբութիւնը եւ երբ Թեմուջինը քսան եւ եօթ տարեկան, յաջորդեց հօրը, կարող եղաւ դառնալ Կախան — Kakhan — ՝ Արլիդ – Arlid – ցեղի։ Շուտով, 1187 եւ 1193 թ. շրջանի մէջ նոր եւ աւելի մեծ ոյժեր հաւաքեց եւ իւր երկիրն աւելի եւս ընդլայնեց։ Պարտութեան մատնեց Բայքալ լճի շուրջն ապրող Մ ե ր կ ի տ — Merkit — ցեղի ժողովուրդը, 1203 թ., իսկ հետեւեալ տարին, 1204 թ. տէր եւ տիրական էր ամբողջ Մոնղոլիայի։ Տիրապետող փոքր իշխանների՝ խաների ընդհանուր համաձայնութեամբ ինքը դարձաւ Չ ի ն գ ի զ — Խան, այսինքն՝ Մեծ–խան։ (Չինգիզ–Խանի կեանքի նախնական շրջանի աւանդութիւնների մա–

սին տես M. D'Obsson: *Histoire des Mongols*: *) — Schmidt: *Geschichte der Ost-Mongolen*, էջ 66 եւ շր. եւ ծանօթութիւնները: Եւրոպայի պատմիչները զանազան ձեւով են գրած Չինգիզ–Խանի անունը, որի բուն ուղղագրութիւնն է Չինգ–գիս **) — Tching-gis —, որը տեսնում ենք այն նամակի տակ, որ իւր յաջորդներից մէկն ուղարկած է նոյն օրերի Ֆրանսիայի թագաւորին. Նոյն ուղղագրութիւնն եւս հաստատում է Չինական ժամանակակից Պատմիչների կողմից, որոնք այդ անունը գրում են Չինգ –կի–սսէ — Tching-ki-sse. Խան պատուանունը — khan — կրճատուած ձեւն է Մոնգոլական Խաքան – Khakan — ձեւի, ինչ որ գործածական է նաեւ մեր Պատմիչների կողմից Խաքան ուղղագրութեամբ, որ նշանակում է Մեծ Խան: Ապագայում Khakan ուղղագրական ձեւը Եւրոպացիների բերնի մէջ եւ գրչի տակ դարձան — Kakhan. Տես Remusat: *Recherches sur les langues Tartares*, p. 170 շր.):

Չինկիզ–Խանի յաջողութիւնները հետզհետէ աւելի առաջ մղուեցին: 1208 թ. յաղթեց Նայման ցեղի պետ Կուչլուհ–ին — Kushlu եւ ապա Թուխտուղ–ին

---

*) Երբ Չինգիզ–Խանի հայրը մեռաւ, որդին, բուն անունով Թիմուչին, հազիւ 13 տարեկան էր, բայց եւ այնպէս մօր դրդումով պատերազմի գնաց իր ապստամբ հպատակների դէմ: Ասիայի ապագայ աշխարհակալը պարտուեց, փախուստի դիմեց եւ ստիպուեց հնազանդուիլ ապստամբներին: Բախտը ժպտաց, 27 տարեկանին դարձաւ Խաքան, իսկ 40 տարեկանին նորա համբաւն ամենուրեք էր, իսկ տիրապետութիւնն անդրդուելի, չրջակայ բոլոր ցեղերն ընկճուած: Մի շրջան, ուր մարդը տակաւին վայրենի էր եւ դաժան, հանրութիւնը՝ կոշտ ու անտաշ, տիրապետողն ստիպուած էր կամ պէտք է ինքն եւս բիրտ լինէր եւ անսիրտ, արիւնարբու, իբր դաժան, իւր իշխանութիւնը պիտի հաստատէր հակառակորդների գանգերի վրայ, իսկ չաղախը զանդէր նոցա արիւնով: Առաջին զինուորական դաշինքը կնքելու համար՝ խորոված ձին, իբրեւ զոհ սրբազան արարողութեան, նորա հետ կապեց ցեղապետներին՝ գետափի խրախճանքով: Թիմուչինը հանդիսաւոր խօսք տուեց՝ իւր զինակիցների հետ հաւասարապէս բաժանել պատերազմի դժուարութիւնները եւ կեանքի դառնութիւնները եւ երբ աւարն եւ իւր ձիերը բաժանեց նոցա, իւր յոյսերն արդէն ամուր էին, նոցա չնորհապարտ խոստումներով ճոխ: Առաջին յաղթութիւնից յետոյ կրկին հրաւիրեց իւր դաշնակիցներին խնճոյքի. Հրամայեց խարոյկների վերայ կանգնել եօթանասուն խոշոր պղնձէ կաթսաներ լի եռացրած ջրով: Եւ հետզհետէ հասնող ցեղապետները մէկ–մէկ, իրար ետեւից, ձգուեցին եռացող կաթսաների մէջ, մինչեւ վերջինը, եօթանասուներորդը, որով Թիմուչինը իւր քիչ առաջ տուած հանդիսաւոր խոստումը կատարեց, բաժանելով իւր դաշնակիցների հետ «կեանքի դառնութիւնները», նոցա բաժինը եռացող ջրի կաթսան դարձնելով, իսկ իւր բաժինը՝ ամէն մէկին մի նոր պատրուակով, կեղծ ու չողոմ խօսքերով — որի ժամանակ քիչ քրտինք չը թափեց — կաթսաների խարոյկների վայրերն առաջնորդելով:

**) Տես Նկար 6. Թեմուջին – Չինգիս–Խան:

Tukhtul —՝ Մերկիտների ցեղապետին եւ արշաւեց Չինաստան երեք գլխաւոր բանակներով, որոնք ամէն տեղ յաջողութեամբ գլուխ հանեցին արշաւանքի նպատակը: Ինքն անձամբ գնաց մինչեւ Վէյ–Հայ–Վէյ — Wei-Hai-Wei — իսկ, այժմեան Շանտունգի նահանգին մէջ: Չինական կայսր Հ ս ո ւ ա ն– Ց ո ւ ն գ — Hsuan Tsung – խնդրեց հաշտութիւն եւ խոստացաւ նոյն իսկ հարկ հատուցանել Չինկիզ–Խանին, սակայն վերջինս չը համաձայնեց եւ երկիրը տակն ու վրայ արեց, աւերեց, մինչեւ որ Yen King մայրաքաղաքը գրաւեց: Նորա բացակայութեան ժամանակ, մինչ զբաղուած էր Չինաստանի նուաճումով, Կուշլուիը – Kushlu – ապստամբեց Uighur–ների երկիրը, սակայն նորա դաշնակից մահմետականները դաւեցին ու լքեցին նորան՝ Կուշլուհին, որը Քրիստոնեայ էր եւ Չինգիզ–Խանը դիւրութեամբ տէր դարձաւ նորա երկրին: Այս նոյն շրջանին էր, որ Չինգիզ–Խանը դաշն կապեց Պարսկաստանի Շահ Մահմուդի հետ, որով Մոնղոլներն արտօնութիւն էին ստանում անարգել անցնել Պարսկաստանի վրայով դէպի Արեւմուտք, իրենց նուաճումների համար: Շատ չանցած մի խումբ Մոնղոլ վաճառականներ դաւաճանօրէն սպանուեցին Շահ–Մահմուդի կառավարիչներից մէկի հրամանով *), նոցա ինչքն ու դըրամները գրաւուեցին եւ Չինկիզ–Խանի կողմից փոխ–հատուցումի պահանջով եւ պատիժ պարտադրող ուղարկուած դեսպանը նախ տանջանքի ենթարկուեց եւ ապա սպանուեց:

---

*) Ժամանակի բաղքերի տեսակէտից այդպիսի «անմեղ արաքներ» սովորական երեւոյթ էին եւ այդ բոլորն արդարացնելու համար ոչ սուտն էր անգոսնելի, ոչ բռնութիւնն՝ այպանելի:

Արեւելքը, ինչպէս եւ Պարսկական բարքերն, այդ նկատմամբ, տակաւին նոյնն էին երկու երկար դարեր անցնելուց իսկ յետոյ: Երբ Թեմուր Լանգի մօտ, Սպանական թագաւորի կողմից դեսպանութեան գնացած Կլավիխոն իւր հետեւորդների հետ, Թեմուրի մահից յետոյ, 1406 թ. Սամարղանդից Թաւրիզ էր վերադառնում, ժամանակի բարքերի համաձայն, պարտաւոր էր այցելութեան գնալ Թեմուրի թոռն Օմար իշխանին,– որ որդին էր Միրան–Շահի, եւ որ հրամանատարն էր Արեւմտեան Հորդայի եւ ձմեռն անցնում էր Ղարաբաղի դաշտավայրում, Կուր գետի աջ ափին: Փետր. 1ից մինչեւ Ապրիլի Կլավիխոն մի քանի անգամ ուղի ընկաւ Օմարին ներկայանալու, բայց ամէն անգամ էլ կէսճանապարհից ստիպուած էր դառնալ՝ Թաւրիզի մէջ սպասելու Օմարին, որ միշտ էլ խոստանում էր «մի քանի օրից» հասնել:

«Մենք տակաւին սպասում էինք Թաւրիզում, պատմում է Կլավիխոն, Օ–
«մար իշխանի հրամանին եւ որն այդ օրերը գիջել էր մի նամակ ուղարկել մեզ՝
«դեսպաններիս՝ (– նորա հետ էին նաեւ Եգիպտոսի եւ Տաճիկների Սուլթան–
«ների դեսպանները), որի մէջ... վստահեցնում էր, որ առիթ չունինք ան–
«հանգիստ լինելու մեր ընդունելութեան յապաղման համար, որը ուշացնում
«էր մեր տուն վերադարձի հարցը: Մեզ տեղեկացնում էին, թէ շատ չուտով
«իւր եւ իւր հօր, Միրան–Շահի մէջ եղած անհամաձայնութիւնները վերջ պիտի

Չինգիզ-Խանը լսելով այս անպատուութեան մասին, իւր չորս որդիների՝

---

«դտնեն եւ... անյապաղ մեզ իւր ներկայութեան պիտի հրաւիրէ, որից յետոյ
«մենք կարող էինք մեկնել (Սպանիա)։ Սակայն շատ չանցած այդ... նամակից
«յետոյ, Ապրիլի 28-ին, այն է Երեքշաբթի... մենք Սպանացիներս գտնուելով
«մեր բնակարանում, Թաւրիզի մէջ, մեր դռան առաջ երեւեցաւ քաղաքի կա-
«ռավարիչը, իւր քարտուղարը, ստորադրեալների սոուար մի խմբի հետ։ Ներս
«գալով, այդ մարդիկը բռնի խլեցին մեր սրերը եւ մեր չուրջն եղած... զէն-
«քերը, ապա հրամայելով փակել տան դրսի դարպասը, կառավարիչն սկսեց
«տեղեկացնել մեզ, թէ իշխան Օմարն էր ուղարկած իրենց, հրամայելով գրա
«ւել եւ արգելքի տակ դնել մեր բոլոր ստացուածքն ու ինչքը եւ որ այժմ առ-
«նելով՝ արգելքի տակ պիտի դնեն... Մենք պատասխանեցինք թէ պարտաւոր
«ենք գլուխ խոնարհել, քանի որ նոցա ոյժի եւ իշխանութեան տակ ենք, սակայն
«պիտի չմոռանան, որ մեր Տէրը, Սպանիայի Թագաւորը, մեզ դեսպանի պաշ-
«տօնով է ուղարկած... Թեմուրի մօտ, բարեկամական առաքելութեամբ եւ
«որ մեզ հետ այժմ վարւում են բոլորովին տարբեր եղանակով, քան ինչ որ
«տեսած էինք...։ Թեմուրը մեռած էր... եւ նոքա կարող էին անել, ինչ որ
«իրենց քմքին հաճելի էր։ Կառավարիչը պատասխանեց, թէ իշխան Օմարն
«այդպէս է հրամայել, որպէսզի (մեր ինչքը) աւելի ապահով լինին եւ չը
«վնասուին։

«Սակայն իւր պաշտօնեաները եւ ոչ մի քաղաքավարութեան նկատում ցու-
«ցադրեցին, ոչ· նոքա սկզբից իսկ ցոյց տուին, որ նպատակ ունին կողոպտել
«մեզ եւ դուրս հանեցին, տարին մեր բոլոր ինչքն ու ստացուածքը, ունեցածը.
այն է, դրամ, իրեր, կահ ու կազմած, թամբերը մեր ձիերի, ճոխ ու զար
դարուն, մի խօսքով ամէն ինչ, ինկապէս, թողնելով մեզ միայն մեր հագած
զգեստը։ Ապա մեզ դուրս հանեցին մեր բնակարանից, գնացինք մի այլ տուն,
«ուր թողեցին մեզ եւ դռան առաջ էլ պահապան դրին... Հետեւեալ օրը (նոյնն
չարին) Եգիպտոսի Սուլթանի դեսպանի եւ Թուրքի (դեսպանի) հետ... բո-
«լոր ունեցածները խլեցին բռնի նոցանից, առին-տարին եւ գողացան լաւագոյն
«իրերը...

«Շուրջ քանի օրից յետոյ այս պատահարից, մի այլ նամակ ստացանք իշ-
«խան Օմարից, որի մէջ վստահեցնում էր, թէ խռովքի ու անձկութեան տեղիք
«չը կայ... (շուտով մեզ) ունկնդրութիւն պիտի տայ Թաւրիզից հինգ փար-
սախ միայն հեռու Ասարեկ գիւղակի մէջ եւ... յետոյ մեզ (հայրենիք) պիտի
ուղարկէ...

«... Վերջապէս իշխան Օմարը հրաման տուեց, որ մեր բոլոր ինչքն ու
«ստացուածքը, որ ունէինք եւ խլել էին, ... վերադարձնեն մեզ։ Ուստի երկու
«Զապաթայներով մեր ստացուածքը մեզ ուղարկուեց Օգոստ. 13-ին, Եշ...
«յետոյ էլ մի նամակ (ստացանք) Օմարից... որով հրաւիրում էր մեզ իւր մօտ։
«...Գնացինք մեր խոնարհ հնազանդութիւնը յայտնելու. ընդունեց բարեհաճ,
«լաւ-լաւ խօսքեր ուղղելով մեզ... Ներկայացրինք մեր ընծաները,— սովորու-

Ջուչիի, Ջաղաթայի *), Օգդայի եւ Թիւլէի հետ — Jutchi, Jagatai, Ogdai, Tule կամ Tului — ելաւ Գարա-Գուրումից, անցաւ Եաքսարտէսը, պաշարեց Օտրարը — Otrar —, հողի հետ հաւասարեցրեց քաղաքը եւ սպանեց, ինչպէս պատմւում է, 160,000 անձեր այն 400,000-ից որ Շահի կողմից ուղարկուած էին նորա ընթացքը կասեցնելու համար: Սամարղանդն աւերուեց եւ կողոպտուեց եւ Մոնղոլ զօրապետները 1222 թ. մտան Վրաստան՝ Դերբենդի վրայով, այն ինչ միւսներն աւերում էին եւ ոտքի տակ տալիս Բուխարան, Խա-

---

«թիւն է առանց ընծայի ոչ ոքի չեն ընդունում,– այն է (տուինք) նուրբ ասուէ
«եւ մետաքսէ կտորներ, դիպակներ զգեստի, (Սպանական) մի թուր, թանգա-
«գին կերտուածքով...: Օգոստ. 18-ին Գչ. իշխան Օմարը շնորհեց մեզ զանա-
«զան կտորներ զգեստի եւ մի Ջաղաթայ նշանակեց՝ ուղեկից մեզ... Եգիպտոսի
«Սուլթանի դեսպանը...Օմարի հրամանով... բանտ ձգուեց... Ուրբաթ երե-
«կոյ (Օգոստ. 21), երբ ամէն ինչ պատրաստ էր, որ ելնենք Թաւրիզից, Դարա-
«ղան... եկաւ, հետը ոստիկաններ եւ իւր քարտուղարը, մեծ ամբոխով, զին-
«ուած բրերով եւ գուրզերով եւ պահանջեց, որ դուրս բերենք եւ ցոյց տանք
«մեր բոլոր գոյքն ու կապոցները եւ հետն եւս աւելացրեց իշխանաւորի ձայնով,
«որ մենք գանգատուել կարող ենք (եթէ կամենանք)... Եւ երբ հագիւ տեսաւ
«Զէյթունի — Zaytuni — մետաքսէ գործուածներ եւ Չինական վերնազգեստ-
«ներ (որ ընծայ է տրւում ուրիշներին — Պարսկական խալաթ), կարմիր եւ
«վարդագոյն կտորներ եւ նման բաներ, այդ բոլորը գրաւեց մեր բեռներից...
«աւելացնելով, որ իշխանը հաւանօրէն մեզ կը վճարէ այդ բոլոր գրաւած ի-
«րերի համար...: Մտածելով, որ սպասել, թէ «վնասուց հատուցում» լինի,
«որ... աւելի նոր դժբախտութիւնների դուռ բանալ պիտի նշանակէր եւ աւելի
«ծանր վերաբերում (պիտի գտնէինք)... մենք ուղի ընկանք Օգոստ. 22-ին,
«Շր. ... Թաւրիզից, ուր մեզ... բռնադատ պահեցին ամբողջ հինգ ամիս եւ
«քանիերկու օր... այն է Փետր. 1-ից, մեր (Թաւրիզ) հասնելու օրից... (մին-
«չեւ Օգոստոս 22-ը)»: (Clavijo: *Ambassy to Tamerlane*, 1403-14061– N. York, London, 1928, pp. 321-329):

*) Ջաղաթա կամ Չաղաթա-խանը — Caghatai-khan — Չինգիզ-Խանի եւ իշխանուհի Burte – Fudjin-ի երկրորդ որդին էր, եղբայրների մէջ ամենից աչքի ընկնողն իր ուսման եւ գիտութեան ձգտումով: Հօր կենդանութեան ժամանակ իսկ պալատի մէջ ամենից մեծ հեղինակութիւնն էր V a s a-ի (Մոնղոլ ազգային իրաւունքների եւ օրէնքների գիտութեան) մէջ եւ հօր կողմից նորան էր վստահուած օրէնքի եւ իրաւունքի գործադրութիւնը, իբրեւ գերագոյն օրէնսդէտ՝ պետական, հանրային, անհատական իրաւական եւ մանաւանդ բարոյքի հարցերի մէջ:

Իւր կեանքի, գործունէութեան մանրամասնութեամբ հետաքրքրուողներին պիտի նշենք Encyclopedie de l'Islam, Հատ. Ա. 831–835.— Պատմութեան բուն աղբիւրը Ջամալ ալ-Խորաշի — Djamal-al-Korashi – գրած Mulkikat al–Surah պատմութեան երկու ձեռագիրները (Պետերբուրգի Ասիական Թանգա-

*րիզմը, Հերատը, Մերվը, Նիշապուրը, Բալխը եւ Կանդահարը, միւսը՝ Անդրօքսանիան, Խորասանը, ամէն տեղ հին Հոների աւերն ու կործանող բիրտ ոյժը սփռելով, Ինդուսից մինչեւ Կասպիականի արեւմտեան ափերն ու երկրամասերը: Մոնղոլ կայսրը թոյլատու էր Թաթար հրոսակների կատաղի աւերածութիւնների նկատմամբ, որի մէջ միայն վիրաւորուած արժանապատուութեան արդար հատուցումն էր տեսնում: Լքուած եւ անզօրութեան յուսահատութեան մէջ Մուհամմեդ Շահի անկումն ու մահը, Կասպից Ծովի մի աննշան կղզու վերայ, նորա աչքին չնչին հատուցումն էր տակաւին:*

*Եւ այսպէս, քսան տարիների կարճ շրջանի մէջ, Չինգիզ-Խանը, նախկին պարտուած ու փախուստի դիմած Թեմուջինը, տէր էր միահեծան՝ Չինաց Ծովից սկսած մինչեւ Դնէպրի եզերքը:*

*Չինգիզ-Խանը մեռաւ* 1227 *թուին Լիու — Պ՚ան* — Liu-Pan — *լերան մօտ, այժմեան Կանսու նահանգին մէջ: Մարմինը փոխադրուեց Մոնղոլիա եւ թաղուեց Քե-Քինգ — հովտի մէջ: Մահից առաջ պատուէր տալ չը մոռացաւ, շուրջը բոլորած որդիներին, նուաճել Չինաստանի հողերը եւ Չին կայսրութիւնը:* (Ջաղաթաճ *իւր անունը դրոշմեց Անդրօքսանիայի վերայ եւ Հինդուստան գաղթած Մոնղոլ-Թաթարները, որոնք ելան այդ երկրամասից, յայտնի էին Պարսիկներին* Ջաղաթայ — Zagatai — *անունով: Ջաղաթայի կամ Չաղաթայի նկատմամբ պատմուած հետաքրքրաշարժ մի պատմուածքի մասին տես* M. D'Ohsson: *Histoire des Mongols*, p. 370):

*Չինգիզ-Խանի յաղթութիւնների էական գաղտնիքը նորա քաղաքագիտական այն գիծն էր, որ բարեսիրտ էր դէպի հպատակող, խոհեմ իշխանները եւ դաժան՝ դէպի ըմբոստ եւ լուծի չեկող խաները, աւերով լցնելով նոցա երկիրները եւ արիւնով նոցա տները ողողելով: Ցեղապետներից ամէնից յան-*

---

*րանի մէջ, մնացած տակաւ անյայտ եւ որոշ քաղուածներ միայն տպագրուած՝* Barthold: Turkestan-*ի մէջ Ա.* 128–129) *որ միակ պատմական երկն է այդ շրջանի Մոնղոլ տիրապետութեան:–Պարսիկ Պատմիչ* Djuwaini (Tarikh-i-Djihan-Kushai, *քաղուածներ* Journ. Asiatique, 4e Ser. XX, 381-382), Rashid ad-Din (*Djami al-Tawarikh,* *քաղուած* Barthold-*ի* *Turkestan* *Ա.* 123-124)1-D'Obsson: *Histoire des Mongols,* *Բ.* 108—1091— *Նոյն շրջանի Կաթոլիկ քարոզչութեան մասին՝* Moshemil: *Historia tartarorum ecclesiastica, Helmstedt* 1741, *յատկապէս Յաւելծ.* No. 78, 80, 84 *եւ* 92.— *Կենդրոնական Ասիայի Պատմութեան համար* Ibn Fadl Allah al-Omari: *Masalik al-Absar* (Quatremere—*ի ձեռքով* *Notices et Extraits, XII*—*ի մէջ յայտնաբերուած*).— Clavijo: Ճանապարհորդութիւնը, (*առաջին անգամ հրատ. Ռուսերէն* 1881, St. Petersb.) *Չաղաթայի ժառանգների Չինական Թուրքեստանի մէջ տիրապետութեան մասին յատկապէս* *Tarikhi Rashidi* (*Թրգմ.* E. D. Ross, London, 1895) *եւ* Barthold: Zapiski vost. Otd. arkh. Obshc., XV, 236-237 *եւ ապա* M. Hartmann: Der islamische Orient, I, 290-291).— W. Barthold: Ocerk istorii Semiriecya (*Pamiatnaya Knizka* Semiriecenskoi oblasti, II, 74-75.—

ղուղներն անգամ չէին կարող դող չզգալ նորա մօտ, երբ խնճոյքի ժամանակ Չինգիզ–Խանին էր տրւում Կերաիտի – Kerait – խանի *) գանգը՝ արծաթապատ եւ ընդելուզած թանկագին քարերով: Այդ խանը, Ունչ–խան տիտղոսով, յայտնի էր Եւրոպացիներին Prester John անունով եւ իւր երկրի մէջ միաժամանակ եւ հին Հռովմէական Pontifex Maximus–ն էր եւ Եւրոպական թագաւորների դիրքն ունէր եւ դերը: Եւ այդ պատճառով, իր մահից յետոյ, — Թեմուջինի կամ Թեմուջուխի ձեռքով սպանուելը նահատակութիւն համարելով,— դարձաւ իւր ժողովրդի սուրբն ու պաշտպանը: (Որի յայտնի ակնարկն ենք տեսնում Ֆրիկի տաղի մէջ, այս երկտողով,—

«Սուրբ Յովհաննէսն իրեն խռով
Այն անիրաւ Թուման — ճուխին···»):

Թեմուջին Չինգիզ–Խանի բաղձանքների թռիչքն այնքան մեծ էր ու բարձր, որ չէր իսկ խպնում դիմել նախապաշարումի արուեստակեալ միջոցների եւ իւր շրջապատի մէջ չէր քաշւում տարածել այն առասպելը, թէ Մարգարէն մի գիշեր առաւ իրեն, բոլորովին մերկ, սպիտակ ձիու վրայ նստած եւ երկինք տարաւ, Բարձրեալին ներկայացրեց, Որը եւ շնորհեց նորան Ջինգիզ կամ Ջենկիզ — «Մեծերի մեծ» — «Բարձր ու մեծագոյն ամէնից» — Zingis — տիտղոսը: (Zin Մոնղոլ լեզուով նշանակում է մեծ, gis գերադրական աստիճանն է ածականի – մեծ–ա–գոյն· Abul-gazi-khan: *Histoire Geneologique des Tartares,* մասն III էջ 194–95, որից եւ ովկիանոսի անհունութիւնը որոշ եղբ Zingis — Deniz բառը): Բարձրեալն, իրեն շնորհած այդ տիտղոսի հետ, արտօնեց նորան նաեւ նուաճել աշխարհը եւ տիրել նորան: Ժողովրդի ընդհանուր խորհրդի– Couroultai — պահերին՝ Թեմուջինը նստում էր առանձին մի թաղիքի վրայ, ուր ոչ ոք իրաւունք ունէր ոչ միայն նստելու այլ եւ ոտք դնելու՝ կոխելու, եւ որը դարձաւ ապագային, սրբազան մի առարկայ եւ Կուրուլթայը այն ժամանակ հռչակեց նորան Մեծ–խան կամ Կայսր Մոնղոլների եւ Թաթարների:

Իւր կենդանութեան ժամանակ Չինգիզ–Խանի խօսքն ու հրամանը օրէնք էր իւր բոլոր ստորադրեալների եւ հպատակների համար եւ այդ օրէնքները

---

*) Կերայիտ — Kerait — ցեղը ուժեղ եւ բազմաթիւ տոհմերով մի առանձին իշխող միութիւն էր, գրաւած Գարա–Գուրումի լեռները· Չինգիզ–Խանի իշխանութեան հասնելուց առաջ նոքա շատ աւելի ուժեղ էին, որոնք ԺԱ· դարի առաջին տարիներին ընդունել էին Քրիստոնէութիւն եւ նոցա իշխող խանը, որ կոչւում էր Ունչ–խան — Unch-Khan — կամ Մեծ–խան, հետըզհետէ մեծ անուն հանեց եւ իբրեւ առաջին Քրիստոնեայ խան, շնորհիւ իւր նոր քրիստոնէական Յովհաննէս անուան, Եւրոպային յայտնի դարձաւ Prester John — Յովհաննէս Երէց անունով:— Prichard: *Physical History*, vol. III p. 34.— Prester John–ի մասին տես նաեւ Luke: *Mosul and its Minorities*, London, 1925, ուր առաջ է բերուած Chabot–ից էջեր նորա մասին.— Աւելի մանրամասն տես Hastings: *Encyl. of Relig. and Ethics*, vol. X, p. 272. ei segg.

հիմք դարձան ներքին խաղաղութեան եւ արտաքին թշնամիների ճնշման: Մահուան պատիժ էր սահմանուած անբարոյ արարքի եւ պղծութեան համար, ինչպէս եւ մարդասպանութեան, երդմնազանցութեան, ձիու եւ եզան գողութեան (որ ծանրագոյն քրէական յանցանքն էր համարւում) համար եւ այդպիսով կատաղի եւ անզուսպ անձերն ապրում էին իրար հետ խաղաղ եւ արդարութեամբ: Պետական ապագայ գլուխ–ղեկավարի ընտրութիւնը պիտի լինէր կայսերական տան անդամներից եւ կամ ականաւոր ցեղապետների միջից: Որսի օրէնքները կեանքի էական օրէնքներն էին, որովհետեւ Մոնղոլ-Թաթարական բանակի ապրուստի էական աղբիւրն էր որսը եւ նոցա հաճոյքներից մեծագոյններից մէկը: Տիրապետող եւ յաղթական ցեղը համարւում էր սրբազան եւ ազատ ամէն տեսակի ձեռքի աշխատանքից, բացի զէնքի գործածութեան պարտականութիւնից: Ձեռքի աշխատութիւնը պարտադիր էր յաղթուածների, ստրուկների, գերիների եւ օտարների համար: Զինուորների եւ ձիերի հսկողութիւնը, — որոնք զինուած էին նետերով, սրերով, երկաթէ գուրզերով եւ բաժանուած հարիւրակների, հազարեակների եւ տասն–հազարեակների, — այդ բոլորի հսկողութիւնը յանձնուած էր հին ու փորձ զօրապետների, իսկ վարժութիւններն ու մարզանքը՝ նորերի խնամքին: Իւրաքանչիւր զինուոր, սպայ, զօրապետ պատասխանատու էր, քրէական պատժի վտանգով, մահուամբ, իւր ընկերոջ եւ ստորադրեալի ապահովութեան, զինուորական պատուի եւ կարգապահութեան համար· իսկ զինուորական ոգին, իբրեւ յաղթականի ոգի, ամէն մէկի մէջ էր արմատացած եւ խաղաղութեան օրէնքը տիրել կարող էր միայն այն ժամանակ, երբ թշնամին ընկճուած էր եւ հպատակած բոլորովին:

Չինգիզ–Խանի կրօնական ըմբռնումներն ամէնից աւելի հետաքրքրականն են: Եւրոպայի հաւատաքննիչները, որոնք յաճախ անմտութիւնները դաժան, պարտադրիչ միջոցներով էին գործադրում, թերեւս պիտի կարմրէին Թեմուջինի կրօնական պարզ ըմբռնումների դասերը լսելով, իբրեւ կրօնի փիլիսոփայութիւն: Կրօնական առաջին եւ էական կէտն էր նորա համար, իբրեւ հաւատալիք, թէ կայ միայն մի Աստուած, պատճառն ու հեղինակը միւս բոլոր աստուածների, որոնք ստեղծուած են եւ կան՝ Նորա արտօնութեամբ եւ իշխանութեամբ: Մոնղոլներն ու Թաթարներն, իրենց բազմաթիւ ցեղերով ու տոհմերով, ամուր ու անքակ կպած էին իրենց բազմաթիւ աստուածներին ու կուռքերին: Այդ ցեղերից շատերն, ապագայում, ընդունեցին Մովսիսի, Քրիստոսի, Մահմեդի, Բուդդայի կրօնները: Այս տարբեր եւ բազմաթիւ կրօններն ու հաւատալիքները ուսուցանում, գործադրում, պահպանւում էին նոյն բանակի եւ նոյն ճամբարի մէջ, — Հրեայ Ռաբբին, Քրիստոնեայ քահանան եւ վանականը՝ Լատին, Հայ, Նեստորական, Մահմետական իմամը, Բուդդայական Բոնզան՝ ամէնքն եւս ազատ, ճնշումից զերծ արտօնութիւններ էին վայելում՝ ապահարկ եւ ազատ ծառայութիւնից: Բուխարայի մէջ, մզկիթում, ամպարտաւան Յաղթականը, ձիու վրայ նստած, առանց յոյզի կարող էր իւր ձիու ոտքերի տակ տալ Ղուրանը, սակայն իւր հպատակների խաղաղութիւնը

պահպանելու համար հոգածու եւ իմաստուն օրէնսդիր-վարիչը հաւասարապէս յարգել գիտէր քիչ առաջ ձիու ոտքի կոխան եղած Մատեանի եւ Մարգարէի հետեւողների՝ բազմազան, իրար հակառակ եւ, յաճախ, իրար թշնամի հաւատամքների ներկայացուցիչներին։ Չինգիզ-Խանի իմաստասէրի խոհերն ու մտքերը գրի առնուած չեն․ նա ոչ կարդալ գիտէր եւ ոչ գրել եւ բացառութեամբ Մոնղոլ Իգուր — Igour —ցեղի, Մոնղոլ-Թաթարական բոլոր ցեղ ու տոհմերն անգրագէտ էին, ինչպէս եւ իրենց Պետն ու Հրամանատարը։

Նորա արութեան ու քաջագործութիւնների պատմութիւնը՝ բերանացի աւանդութիւնն է պահած միայն։ Չինգիզ-Խանի մահից 68 տարիներ անցնելուց յետոյ էր միայն, որ աւանդութիւններն ի մի ժողովուեցին եւ գրի առնուեցին։ *) (Խազան Իլ-Խանի հրամանով էր, որ 1294 թ․, Չինգիզի չորրորդ սերունդի եւ ժառանգի հրամանով, որ նորա վեզիր Ֆադլալլահը — Fadlallah — ժողովեց եւ կազմեց Պարսիկ լեզուով, Մոնղոլական Պատմութեան մի գիրք, որից ապագային օգտուեց Petis de la Croix եւ կազմեց Histoire de Genghizcan իւր երկը։ Մի այլ անձն, նոյնպէս Չինգիզ-Խանի սերնդից, Աբուլ-Ղազի Բահադուր-Խան — Abul gasi Bahadur-Khan —, որ իշխում էր Խարիզմի Ուզբեկներին (1644–1663 թ․) կազմեց մի այլ «Պատմութիւն Մոնղոլների» որ յայտնի է Histoire Geneologique des Tartares անունով, Leyden, 1726 թ․, երկու հատոր, որ թարգմանուեց Սիբիր աքսորուած Շուէդացի բանտարկեալների ձեռքով։ Դը լա Կրուայի պատմութիւնը Histoire du Grand Genghiscan, Premier Empereur des Moguls et Tartares, par Petis de la Groix, Paris, 1710, տասը երկար տարիների ջանքերի արդիւնք է, քաղուած մեծ մասով Պարսիկ գրողներից, որոնց մէջ նաեւ Սուլթան Ջելալ Էդդինի քարտուղար Նիզամէի գործերից կան մասեր, իւր բոլոր առաւելութիւններով եւ ժամանակակից պատմական տեսութիւնների պակասութիւններով։— Մի այլ հեղինակի՝ Շարաֆ-ադ Դին Ալի Եզդեցու — Sharaf-ad-Din 'Ali Yezd—գրած «Պատմութիւն»ը՝ կազմըւած Պարսիկ աղբիւրների հիման վերայ՝ նոյնպէս հրատարակուեց, Petis de la Croix Histoire de Temur Bec, 1728, Delft-ի մէջ։ Ապագային այս եւ այլ պատմիչներից քաղեց եւ լրացրեց, իբրեւ Թեմուր-Լանգի լրիւ Պատմութիւն Major David Price: *Chronological Retrospest of Mohammedan History,* London, 1811, որի երրորդ հատորը վերաբերում է Թեմուրին)։

Չինգիզ-Խանի մահից յետոյ նորա կազմած ընդարձակ Մոնղոլ կայսրութիւնը բաժանուեց հետեւեալ մասերի։ Չինգիզ-Խանի աւագ որդուն՝ Ջուչիի-Jutchi — բաժին եղաւ Կանեալըքից – Kanyalik – եւ Խարիզմից – Kharizm սկսած մինչեւ Սաքսիմ – Saksim – երկրորդ որդուն՝ Ջաղաթային

*) INSTITUTES *Political and Military, written originally in Mogul Language, by the Great Timour........ first translated into Persian by Abu Taulib Athusseini; and thence into English........ by Major Davy........ published........ by* J. White, Oxford, 1783 — Պարսկերէն բնագրով եւ դէմը Անգղ․ թարգմանութիւնը, Large pp. Li–1 — 408–LX.

Jagatai կամ Jargatai – Իւղուր – Uighur կոչուած երկրամասի սահմաններից մինչեւ Բուխարա.– երրորդ որդուն՝ Օղաքայ ին Ogatai կամ Ogotai կամ կամ Ogdai – բաժին ընկաւ Նայմաններ – Naiman – երկիրը: Եւ չորրորդ որդուն՝ Թուլէին – Tule – բուն հայրենի երկրի հողամասերը:

Օղաքան – Ogdai – յաջորդեց *) Ջինգիզ–Խանին, իբրեւ խաքան, 1234 թուին գրաւեց Չինաստանի մայրաքաղաքը Պին — Pien — եւ ապա Հիւսիսային Չինաստան: Իբրեւ պարտութեան հետեւանք Չին կայսրը Այ–Ցունկ — Ai-Tsung — կախեց ինքն իրեն: Օղաթան 1236 թ. ասպատակեց Կորէան, Սունգը — Sungs — եւ Արեւելեան Եւրոպան: Մոնղոլ–Թաթարներն արշաւեցին Ռուսաստան, աւերեցին Ռեազանը, Մոսկուան եւ Կիեւը եւ այնտեղից էլ մտան Հունգարիա եւ Լեհաստան: Բատու իշխան եւ զօրապետը գրաւեց Esztergom–ը յարձակումով: Շատ չանցած Եւրոպայում յաջողութիւնների առաջ կանգնած Մոնղոլ–Թաթար իշխան–զօրապետները լուր առին, թէ Օղաթան գինարբուքի ժամանակ խեղդուել՝ մեռել է (1241 թ. Դեկտ. 11ին), ուստի ընտիպուած թողեցին Եւրոպան, նահանջեցին եւ վերադարձան Կարա–Կորում — Kara-koram.

Օղաթային յաջորդեց Կույուք կամ Գույուկ–խան — Kuyuk, Kuyuck – որն իշխեց, ըստ ոմանց երեք եւ ըստ այլոց եօթն տարիներ: Հակամէտ լինելով դէպի Քրիստոնէութիւնն ու Քրիստոնեաները, իւր գլխաւոր պաշտօնեաները եւ բժիշկները, որ մեծ նշանակութիւն ունէին արքունիքում,— Քրիստոնեաներ էին եւ իւր սեփական վրանի մօտ ունէր վրան–եկեղեցի:

Գույուկ–խանին (1248 թ.) յաջորդեց Մանգու–Խանը — Mangu կամ Mengku —, որը Օղաթայի եղբօր՝ Թուլէի – Tule – որդին էր (1251 թ. Յուլիս 1): Գահ բարձրանալով, անմիջապէս սպանել տուեց նախորդի այրին եւ կոտորել հրամայեց կայսերական տան արուները: Նորա գահակալութիւնից քիչ յետոյ ներքին խռովութիւններ ծագեցին Պարսկաստանում Մոնղոլ–Թաթարական իշխանութեան դէմ, որը զսպելու համար Մանգու–Խանն իւր եղբայր Հուլաուին կամ Հուլաղուին – Hulagu – ուղարկեց այնտեղ: Հուլաուն անցաւ Սամարղանդի եւ Քեշի միջով, անցաւ Օքսուս – Oxus – գետը եւ Բալխի ճանապարհը բռնելով աւերեց Խուժիստանը – Kohistan –, սպանեց Ռուխ ադ–Դին Գուրշահ Բ.ը – Rokh ad-Din Gurshah II — 1256 թուին եւ հպատակներից շուրջ 800,000 ջարդել տուեց: Ապա արշաւեց Բաղդադ, պաշարեց, յարձակումով գրաւեց, աւերեց ու աւարեց քաղաքը, բնակիչներին դաժան սպանութիւնների ենթարկելով (1258 թ. Յունուար): **)

Մեր պատմիչներից Կիրակոս Գանձակեցին եւս պատմում է «Վասն Աւերածոյն Բաղդադայ», մանրամասն եւ ժամանակի քաղաքական դէպքերին մօտ ծանօթ անձի վստահութեամբ, որովհետեւ իւր պատմուածքի նիւթն առած է դէպքերին ոչ միայն ծանօթ ականատեսից, այլ եւ Բաղդադի պաշարման մաս–

---

*) Տես Նկար 7. — Օղաթայ–Խան.

**) Տես Նկար 9. (Բաղդադի առումը):

նակցած Պռոշեան իշխաններից Հասան-Պռոշից, «... որ ականատես եւ ականջալուր էր իրացս»։ (Կ. Գանձակեցի, Գլ. Կ, էջ 368)։

Թէ որքան ճշգրտապատում է, իր բոլոր մանրամասնութիւնների մէջ իսկ Գանձակեցին կարող են վկայել նոքա, որոնք մօտ ծանօթ են եւ խնդրի հետ առնչութիւն ունեցող Պատմիչներին, որոնց հետ զարմանալի համերաշխութեամբ է ընթանում մեր Պատմիչը, որին տանք խօսքը, —

«Մեծն ի թագաւորս երկրի եւ տիեզերակալն Մանգու Ղանն ի Չէ Թուականին Հայոց (— 1258 Թ. Ք.) զօրս գումարեաց անթիւ եւ անհամարս եւ գնաց ի հեռաւոր աշխարհս ընդ կողմանս արեւելից հարաւոյ ի վերայ ազգին, որ կոչի Նայնգաս, զի ապստամբ էին ի նմանէ... Զօգաւ ի նոցա վերայ ի մարտ պատերազմի Ղանն Մանգու եւ կոտորեաց եւ հնազանդեաց զօրեղապէս եւ ի դառնալն ի տուն, կալաւ զնա ցաւ մահու եւ վախճանեցաւ։ Եւ կալաւ զաթոռն եղբայր իւր Արիբուղայն։ Իսկ մեծն Հուլաւու, որ եւ եղբայր նորուն եւ զըլխաւոր ի նմանէ կարգեալ ի վերայ զօրուն՝ որ յարեւելս, հրաման ետ ամենայն հնազանդելոց իւրոց առ հասարակ գնալ ի վերայ մայրաքաղաքին Տաճկաց՝ Բաղդադայ, որ էր նիստ արքայութեանն Տաճկաց։ Եւ թագաւորն, որ նստէր ի նմա, ոչ կոչէին Սուլդան կամ Մելիք, որպէս սովոր էին զայլսն անուանել, որ ի Թուրքաց եւ Քրթաց եւ ի Պարսից էին բռնացեալք, այլ խալիֆայ անուանէին, այսինքն՝ յետամնաց ի Մահմեդէ։ Ի վերայ նորա խաղաց մեծն Հուլաւու անհամար բազմութեամբ ամենայն ազգօքն հնազանդելովք յեղանակս աշնան եւ ձմերան վասն սաստիկ տօթոյ երկրին։ Եւ նախ քան զերթալն իւր հրաման ետ Բաչու Նուինին եւ զօրացն՝ որ ընդ նմա էին յաշխարհին Հոռոմոց, գնալ պատել զմեծ գետն Տիգրիս, յորոյ վերայ շինեալ էր Պաղտատ քաղաք, զի մի ոք փախիցէ նաւովք ի քաղաքէն՝ երթալ մտանել ի Կատեսիբոն, կամ Բասրա ամրագոյն։ Եւ նոցա անյապաղ կատարեալ զհրամանն, կապեցին զկամուրջս նաւեայ ի վերայ գետոյն մեծի եւ ընկեցին ցանցս ամուրս հանդերձ երկաթի կռօք եւ չամփրօք ի մէջ գետոյն եւ յատակսն, զի մի՛ ոք լողալով զերծանիցի․ եւ ի հեռուստ ի քաղաքէն, զի մի՛ ոք գիտասցէ։

«Իսկ Խալիֆայն Մուսթասար, որ նստէր ի քաղաքին, հպարտացեալ եւ յանձն ապաստան՝ առաքեաց զօր բազում ի վերայ այնոցիկ, որ պահէին ըզգետն եւ ի ձեռն առն միոյ գլխաւորի, որում անուն էր Դօղար, Ոստիկան տանն նորա, որ երթեալ յաղթեաց զառաջինն եւ կոտորեաց ի Թաթարէն արս իբրեւ երեք հազար... եւ առաքեաց աւետաւորս առ Խալիֆայն Մուսթասար, թէ հարի զամենեսեան, եւ զսակաւ մնացորդս սպառելոց եմ վաղիւն։

«Իսկ զօրն խորամանկ եւ բազմահնար Թաթարին զգիշերն ամենայն ըսպառազինեալք եւ կազմեալք պատեցին շուրջանակի զբանակն Տաճկաց, ընդ որս էր եւ Զաքարէ իշխանն՝ որդին Շահնշահին *) եւ ընդ լուսանալ առաւօտուն

*) Զաքարէ, որդի Շահնշահի (Կիրակ. Գանձկ. էջ 305, 376), եղբայր Իւանէի (254), որոնց քրոջ որդին էր Արցախի՝ Խաչէն գաւառի մեծ Հասան Ջալալ իշխանը (254)։ Զաքարէն յետոյ սպանւում է Հուլաւուի հրամանով, «բարուրս եդեալ ի վերայ» (376), չնայած, որ «ընդ Թաթար զօրուն երթայր

սուր ի գործ արկեալ, առ հասարակ կոտորեցին զամենեսին եւ զկանամօրն արարին եւ ոչ ոք մնաց ի նոցանէ ապրեալ, բաց ի սակաւուց: Ի նմին աւուրսն եւ մեծն Հուլաւու չուրջանակի պատեաց զքաղաքն Բաղդադ, տուեալ ամենեցուն (հրաման) գիրկ մի ի պարսպէն փլուցանել եւ պահել զգուշութեամբ. զի մի՛ ոք փախիցէ: Եւ զքաջն Պռօշ եւ զայլս առաքեաց դեսպանս առ Խալիֆայն՝ գալ նմա ի հնազանդութիւն եւ հարկիլ Ղանին: Նա խստութեամբ ետ պատասխանին եւ անարգանօք, գրեալ զանձնէ Ջահանգիր, **) եւ տէր ծովու եւ ցամաքի, պարծելով ի դրօշն Մահմետի, զի աստ է, ասէ, եւ թէ շարժեմ զնա, առհասարակ կորնչիս դու եւ տիեզերք. եւ դու շուն մի ես, ասէ, եւ ես թուրք. զիա՞րդ տաց քեզ հարկս կամ հնազանդեցայց:

«Եւ Հուլաւուն ոչ ըմբոստացաւ վասն անարգանացն եւ ոչ գրեաց ինչ մեծաբանութիւն, այլ միայն ասաց.— «Աստուած գիտէ զինչ առնէ» եւ հրաման ետ փլուցանել զպարիսպն եւ փլուցին առհասարակ եւ ասաց դարձեալ շինել եւ պահել զգուշութեամբ եւ այնպէս արարին: Եւ լի էր քաղաքն զօրօք եւ ամբոխիւ եւ զեօթն օր կացին ի վերայ պարսպին եւ ոչ ոք նետաձիգ եղեւ ի նոսա եւ կամ սուր ի գործ էարկ, ոչ ի քաղաքէն եւ ոչ ի Թաթար զօրացն. եւ յետ եօթն աւուր սկսան քաղաքացիքն խնդրել զխաղաղութիւն եւ ելանել առ նա սիրով եւ խաղաղութեամբ: Եւ հրամայեաց Հուլաւուն այնպէս առնել եւ ելանէին ընդ դրունս քաղաքին անթիւ բազմութիւնք՝ զմիմեամբք ելեւելս առնելով, թէ ո՞ յառաջ հասցէ առ նա. եւ նա զեկեալսն բաժանէր զօրացն եւ հրամայէր հեռացուցանել ի քաղաքէն եւ կոտորել ի ծածուկ, զի մի՛ գիտասցեն այլքն. եւ կոտորէին զամենեսին:

«Եւ յետ չորս աւուրն ել եւ Խալիֆայն Մուսթասար երկու որդւովք եւ ամենայն մեծամեծօքն, բազում ոսկի եւ արծաթ եւ ականս պատուականս եւ մեծագին հանդերձս բարձեալ ընդ իւր ի պէտս պարգեւաց Հուլաւուին եւ մեծամեծացն: Եւ նա զառաջինն մեծարեաց զնա՝ մեղադրելով ընդ յամելն եւ ոչ գալ վաղվաղակի, ապա եհարց զնա. «Զի՞նչ ես դու, Աստուա՞ծ ես՝ թէ մարդ». եւ նա ասաց. «Մարդ եմ եւ ծառայ Աստուծոյ»: Ապա ասէ Հուլաւուն. «Ասա՞ց Աստուած քեզ անարգել զիս եւ շուն կոչել եւ ոչ տալ շանս Աստուծոյ կերակուր եւ ըմպելի. արդ ի քաղցնուլս՝ շունս Աստուծոյ կերիցէ զքեզ». եւ սպան զնա ձեռօք իւրովք. «Այդ, ասէ, պատիւ քեզ, զի սպանի զքեզ եւ ոչ ետու այլոց ումեք սպանանել»: Եւ զմի յորդւոցն Խալիֆային հրամայեաց որդւոյ իւրում սպանանել եւ զմիւս որդին տալ գետոյն Տիգրիսի սաղաւարտ, «զի ոչ մեղաւ մեզ, ասէ, այլ գործակից մեզ եղեւ ի կոտորել զանզգամս», եւ ասաց. «այս այր բազում արիւն ետ հեղուլ հպարտութեամբն, երթիցէ՝ տացէ պատասխանի Աստուծոյ եւ մեք անպարտ լիցուք»:Կոտորեաց եւ զայլ մեծամեծսն,

---

ի գործ պատերազմի եւ արութեամբ քաջութեամբ (— քաջութիւն) ցուցեալ մեծարեալ լինէր ի մեծէն Հուլաւուէ եւ յԱրղուն Ոստիկանէն» (377), Հայրը Ծահնշահի, որը լսելով հօր մահը «ի նեղսրտութիւն անկեալ՝ ի տրտմութենէն մեռաւ» (377) «ի ՉԺ թուականին Հայոց» (— 1261 թ.):

**) Ջահանգիր (Պրսկ.) — աշխարհակալ:

եւ ապա հրաման ետ զօրացն, որ պահէին զպարիսպն, իջանել կոտորել զբնակիչսըն քաղաքին ի մեծամեծացն մինչեւ ցփոքունսն. եւ նոցա կարգ առեալ ըստ օրինակի ոճոյ արտոյ, կոտորեցին անթիւ եւ անհամար բազմութիւն արանց եւ կանանց եւ տղայոց եւ զաւուրս քառասուն ոչ դադարեաց սուրն ի գործոյ եւ նեղացեալ լքան սպանողքն եւ վաստակեցան ձեռք իւրեանց եւ զայլսն ի վարձու ունէին եւ կոտորէին անողորմաբար:

«Բայց կինն Հուլաւուին՝ աւագ խաթունն քրիստոնեայ էր, որում անունն էր Տօղուս Խաթուն. սա խնայեաց ի քրիստոնեայսն, որք էին ի Բաղդատ, Նեստորական աղանդով եւ թէ այլ ազգաց քրիստոնեայք եւ խնդրեաց յառնէ իւրմէ ոչ սպանանել զքրիստոնեայսն. եւ եթող զնոսա ընչիւք եւ ստացուածովք. եւ հրաման ետ ամենայն զօրուն առնել զինչս եւ ստացուածս քաղաքին: Եւ լցան ամենեքեան ոսկւով եւ արծաթով եւ ակամբ պատուականօք եւ մարգարտով եւ մեծագին հանդերձիւք, զի էր քաղաքն փարթամ յոյժ, որ ո՛չ գտանի իւր նման նմա ի վերայ երկրի: Եւ ինքն Հուլաւու կալաւ իւր բաժին զգանձս Խալիփային եւ եբարձ ի նմանէ երեք հազար եւ վեց հարիւր բեռինս ուղտու ե՛ւ ձիոյ ե՛ւ ջորւոյ ե՛ւ իշոց ոչ գոյր թիւ. եւ զայլ տունսն լի գանձիւք կնքեաց մատանեօք իւրովք եւ եթող պահապանս, զի ո՛չ կարաց բառնալ զամենայն, զի անչափ էր չատութեամբ, զի հինգ հարիւր եւ հնգետասան ամ էր, յորմէ հետէ շինեցաւ քաղաքն ի Ջափրէ Իսմայելականէ ի ՃՂԴ թուականին Հայոց (— 745 թ. Փ.) ի վերայ Տիգրիս գետոյ, ի վեր՛քան զԿատիսբոն, հեռի ի Բաբելոնէ իբր հինգ աւուր ճանապարհ ի վեր եւ զամենայնն կացեալ էր ի թագաւորութեանն, իբր անյագ տղրուկ կալեալ զամենայն տիեզերս:

«Եւ այժմ ի բաց փոխեաց յՁէ թուականիս Հայոց (— 1258 թ. Փ.), տալով վրէժս արեանցն՝ զոր եհեղ եւ չարեացն՝ զոր գործեաց: Ցորժամ լցաւ չափ մեղացն... եւ դադարեաց գոռ եւ մոլեկան թագաւորութիւնն Տաճկաց (— Արաբաց), որ տեւեաց ամս վեց հարիւր քառասուն եւ ինն: Եւ առաւ Բաղդատ յառաջնում աւուր աղուհացիցն եւ ի չաբաթ օրն յամսեանն Նաւասարդին, որ օր քսան էր ամսոյն ըստ շրջագայութեանս:

«Եւ զայս ամենայն պատմեաց մեզ իշխանն Հասան, զոր Պռօշն *) անուանէին, որդին Վասակայ բարեպաշտի, որդւոյ Հասբակայ, եղբայր Պապաքին եւ Մկդեմայ, Հայր Մկդեմայ եւ Պապաքին եւ Հասանայ եւ Վասակայ, որ ականատես եւ ականջալուր էր իրացս, մեծ պատուով պատուեալ յաչս Ղանին»: (Կիրակոս Պատմիչ, էջ 362–368 հրատ. Ղուկաս. Մատ. Թիֆլիս, 1909):

Մինչ Բաղդադի մէջ էր Հուլաւուն՝ հրաման տուեց իւր աստղագէտ Նասր ադ–Դինին — Nasir ad-Din — մի դիտարան կանգնել տալ Մարաղայում,

---

*) Հուլաւուի իշխանութեան օրերին եւ Չաղաթայի հրամանատարութեան տակ Պռօշ–Հասան իշխանը մասնակցեց եւ Մուֆարղինի՝ Մարտիրոսաց քաղաքի պաշարման. «.....Չաղաթայ ոմն, որ զօրավար էր... Թաթար զօրուն եւ ի քրիստոնէից իշխանն Պռօշ, զոր Հասան կոչէին, արք քաջք եւ անուանիք (պաշարեցին) զքաղաքն». (Կիր. Պատմ. էջ 369.— Պռօշի մասին տես նոյն էջ 194).

աստղերը դիտելու եւ երկնքի գաղտնիքներին դիտակ լինելու համար: Ապա արշաւեց Հալէպ — Aleppo —, գրաւեց, աւարի ենթարկեց եւ յետոյ Դամասկոս դիմեց (1260 Թ.), որի կառավարիչը բաւական խոհեմութիւն ունեցաւ քաղաքը կամովին յանձնելու: Եւ մինչ պատրաստւում էր Երուսաղէմ արշաւել, լուր ստացաւ Մանգու–խանի մահուան մասին: Ընդհանուր հրամանատար կարգելով Քեթու Բուղան – Kitubuka – մնացող զօրքի վերայ, ինքը հապճեպով վերադարձաւ Մոնղոլիա:

Երբ Մոնղոլ–Թաթար ցեղերի աւագների ընդհանուր խորհուրդը — Խուրուլթայ կամ Կուրուլթայ – Courultai – Kuriltai – Մանգու–Խանի փոխարէն Պետութեան նոր գլուխ ընտրեց, Հուլաղուին արտօնուեց կառավարել այն երկիրները, որ ինքն էր նուաճել, սակայն Հուլաղուն դժգոհ Խուրուլթայի որոշումից, ինքն իրեն անկախ Թագաւոր հրատարակեց: Այս պատճառով եւ նոր ժողով ընտրեց եւ կոչուեց Հուլաղու Իլ–խան, որով եւ հիմնադիրն եղաւ Իլ–խան (— Արեւմտեան Խաների) հարստութեան, որի Թագաւորները կառավարեցին Պարսկաստանը մինչեւ 1335 Թուականը:

Մինչ Հուլաղուն զբաղուած էր գրաւելով Արեւմուտքը, իւր եղբայրները՝ Մանգուն եւ Քուբլայ – Խանը – Kublai – զբաղուած էին հարաւային Չինաստանի նուաճումով եւ շատ չանցած Թուլէի – Tule – որդին՝ Քուբլայը, որ նշանաւոր էր իւր ուշիմութեամբ, մարդասիրութեամբ եւ խոհեմ քաղաքականութեամբ, ինքն իրեն անուանեց Խաքան – Kakhan – այսինքն Խաների Խան կամ Մեծ–Խան: Իւր երեսուն եւ հինգ տարիների շրջանին (†1294 Թ.) կարող եղաւ Մոնղոլ Կայսրութիւնը իւր օրերի մեծագոյն, հզօր պետութիւնը դարձնել: Նորա ձեռքով էր, որ նուաճուեց Չինաստանի **) այն մասը որ ընկնում է Եանգ–Ցէ – Yangtze – գետից դէպի Հարաւ: Հին մայրաքաղաքը՝ Գարա–Կորումը – Kara–Koram *) – Թողեց եւ պետութեան կեդրոնը դարձրեց Կամբուլիկը – Kambulic – որն այժմ յայտնի է Պեկին – Peaking – անունով կամ Տա–տու Ta-tu – տիտղոսով, այսինքն «Մեծ Մայրաքաղաք» իսկ Կէյպինգը – Kaiping – եւս «Ծանդ–Տու» անուանեց, այսինքն «Երկրորդ Մայրաքաղաք»:

Քաղաքական նոր հոսանքի այս բոլոր քայլերը, Թւում է, Թէ նպատակ ունէին նորան աւելի Չինական կայսր, քան Մոնղոլների Խան դարձնելու եւ նորա կայսրութեան սահմանները տարածւում էին Դեղին Ծովից մինչեւ Սեւ Ծովն՝ Արեւմուտքում եւ Հիւսիսային Մոնղոլիայից մինչեւ Տոնկինի Հիւսիսային երկրամասը՝ Հարաւում: Ընդունեց Չինական սովորութիւնները, նիստ ու կացը, համակերպեց նոցա մշակոյթի տուեալների հետ, հովանաւորեց Չինական գիրն ու գրականութիւնը, հոգածու լինելով դրչի եւ մտքի մարդկանց, խնամք տածելով դէպի Չին–ազգային մշակոյթի հաստատութիւնները:

---

**) Տես Նկար 10.— Մոնղոլ զինուոր.

*) Ղարու–Ղրում, ըստ Կիրակ. Գանձակեցու, էջ 218, կամ ըստ Օրբէլեանի՝ Ղարա–Ղօրում. ըստ St. Martin–ի Կարա–կորում:

Քուբլայի հիմնած Իւվան — Yuan — հարստութիւնը շատ շուտ սկսեց իւր անկման շրջանը եւ 1368 թուին արդէն վերջացած էր։ Չը նայած, որ Քուբլայն ինքը հետեւող դարձաւ Լամայական վարդապետութեան, այն է Տիբետի Դալայ-Լամայի կրօնին, սակայն միաժամանակ եւս ոչ մի ջանք չը խնայեց, որ Քրիստոնէութիւնը ծաղկէր Չինաստանի մէջ։ Նորա հրամանով էր, որ Ժանդը– Մոն Կորվէնը – Jean de Montecorvin – մի եկեղեցի կանգնեցրեց Քուբլայի նոր մայրաքաղաքի՝ Կամբուլիկի — Kambulic — Պեկինի մէջ, 1292 Թ.։ Սակայն, թւում է, թէ Տիբետը գրաւելուց յետոյ, բոլորովին տարուեց Լամայական կրօնի վարդապետութեամբ, իբրեւ զօրեղ քաղաքական ազդակ համարելով իւր հաստատած նոր պետութեան պահպանման համար։ Այն իրողութիւնը, որ Մարկոյ Պոլոն — Marco Polo — Վենետիկցի ճանապարհորդ, հետախոյզ, վաճառական, դեսպան, պատգամաբեր ու պատգամատարը Քուբլայի զինուորական Խորհրդի փոխ-նախագահն էր, ինքնին իսկ մի չեչտող ապացոյց է, թէ Քուբլայ-խաքանը որքան լայնախոհ, ազատ մտքի տէր անձն եւ հեռատես քաղաքագէտ էր։

Տես Mouradju d'Ohsson *): *Histoire des Mongoles*, Amsterdam, 1852.– Will Muir: *The Caliphate*, London, 1891.– Ed. Gibbons: *History of the Decline and Fall of Roman Empire*, vol. VI, գլուխ LXIV.– H. H. Howorth: *History of the Mongols*, London, 1876-78.– L. Brehier: *L'Eglise et l'Orient au Moyen Age*, Paris, 1921.– G. Le Sirange: *Mesopotamia and Persia under the Mongols in XIV Century*, London, 1903.– Percy Sykes: *A History of Persia*, երկու հատոր, London, 1921. (Իլ-Խանի մասին հատ. Բ.–) Marco Polo: *The Book of Ser Marco Polo*....... transl. by Col. Henry Yule, երկու հատոր, London 1875, հետաքրքրական ծանօթութիւններով լի Իլ-խանների մասին.— Հմմտ. Ստ. Օրբէլեան — Պատմ. Սիսակ. Հրատ. Կարապետ Վ. Շահնազարեան, Փարիզ, 1859, հտ. Բ. Ծնթ. 88, 102, էջ 325, 346.—

---

*) Mouradju D'Ohsson-ը ծագումով Հայ է, սերուած Կ. Պոլսի Չելեբիների — ամիրաների Թօսունեան ընտանիքից. իւր անունն էր Իգնատիոս Մուրատճա Թօսունեան (1740–1807), որ Եւրոպացիներին ծանօթ էր D'Ohsson անունով։ Իգնատիոս Չելեբին Շուէդիայի դեսպանն էր Տաճկաստանի մէջ եւ գրած է Պատմութիւն Մոնգոլների (Չորս հատոր. 1835), Կովկասի, Սեւ եւ Կասպից ծովերի հիւս. ժողովուրդները Ժ. դարին (1828) եւ Գ. հատորը իւր հօր կողմից գրուած Ընդհ. Պատկեր Օսմանեան Պատմութեան (Ա. Բ. հտ. 1787–90)։ Գեղ. Խանամիրեան «Հայ Ամիրաները».—

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Ե.

### Ճիւղագրութիւն Թիմուրի Տան.




Թիմուրը մեռաւ 1405 թ. Մարտին: Նորա աւագ որդին Ջահանգիրը — Jahangir — մեռած էր երեսուն տարի առաջ հօրից, թողնելով մի զաւակ Փիր-Մահմուդ անունով, որը սիրելին էր մեծ հօր՝ Թեմուրի եւ որին էր կամենում թողնել իւր իշխանութիւնը, սակայն հօրեղբայրները եւ հօրեղբօր որդիները յարմար համարեցին խլել նորանից այդ ժառանգութիւնը:

Թիմուրի մահուան ժամանակ նորա որդիներից միայն երկուսն էին կենդանի, Շահ-Ռուխը, կրտսեր որդին, որ Հերաթի կառավարիչ էր եւ որը, վերջ ի վերջոյ, ժառանգեց հօր իշխանութեան եւ տէրութեան ղեկը եւ Միրան-Շահը, որ ունէր երեք որդիներ,— Օմար Միրզայ եւ Աբու Բաքր առաջին ամուսնութիւնից մի իշխանուհուց եւ երրորդ որդին՝ Խալիլ Սուլթան, որ ունեցաւ իւր եղբօր՝ Ջահանգիրի այրու հետ ամուսնանալուց յետոյ երբ վերջինս

ամուսինը մեռաւ 1375 թ.: Խալիլ-Սուլթանը իւր միւս երկու խորթ եղբայրների հետ հաշտ չէր: Սակայն իւր մայրը, իշխանուհի Խանզադէն, որ Թիմուրի սիրելի հարսն էր, մեծ ազդեցութիւն ունէր նորա վերայ եւ ապրում էր Սամարղանդի մէջ, Թիմուրից ոչ հեռու:

Թիմուրի թոռներից իշխան Օմար-Միրզան Արեւմտեան Պարսկաստանի ընդհանուր կառավարիչն էր, իսկ Աբու Բէքրը իւր հօր՝ Միրան-Շահի իշխանութեան տակ գտնուած Իրաք նահանգի կառավարիչն էր, Բաղդադում, որովհետեւ հայրը՝ Միրան-Շահն անկարող էր կառավարել երկարատեւ հիւանդութեան հետեւանքով կամ խելագարութեան պատճառով:

Թիմուրն ունէր մի քրոջ որդի, Ջահան-Շահ Միրզայ անունով եւ մի աղջիկ, որ ամուսնացած էր Սուլէյման Միրզայ անունով մի ազնուականի հետ, որ ապրում էր Ռէյի մէջ, Թեհրանի մօտ:.

Թիմուրի իշխանութեան եւ ժառանգութեան հարցի մէջ մեծագոյն դժուարութիւնն առաջ էր գալիս այն պարագայից, որ Թիմուրի կրտսեր որդին՝ Շահ-Ռուխը եւ երկրորդ որդին՝ Միրան-Շահը հարազատ եղբայրներ չէին, այլ խորթ էին: Ժառանգութեան համար մղուած պայքարը եղբայրների, հօրաքրոջ որդու՝ Ջահան Շահի եւ քրոջ ամուսին՝ Սուլէյման Միրզայի մէջ վերջացաւ արիւնալի մի ճակատամարտից յետոյ, ուր շատերը մահ գտան եւ Շահ-Ռուխը վերջ ի վերջոյ իւր իշխանութիւնը հաստատեց Սամարղանդի մէջ, իբրեւ գերագոյն իշխանաւոր եւ պետութեան գլուխ եւ այդպէս էլ մնաց մինչեւ իւր մահը ( 1447 թ.), կառավարելով իւր հօր տիրապետութեան երկիրները իմաստութեամբ: Իւր եղբայրներն եւ եղբօր որդիներն անկարող եղան իրենց իշխանութեան թեկնածութիւնն արժէքաւորել եւ արդիւնաւոր դարձնել:


ՃԻՒՂԱԳՐՈՒԹԻՒՆ
ՄԻՆՉԵՒ
Եսուգայ Yesuga
Թուլի – Tuli
Բ. ՕՔՔԱԴՍԱՅ ԽԱՆ
Արիք Բուղայ
1. Հուլաղու
Ե. ՔՈՒԲԼԱՅ ԽԱՆ
Դ. ՄԱՆԳՈՒ ԽԱՆ
Շիրեգիյ
Ղաշին
Գ. ԳՈՒՅՈՒԿ ԽԱՆ
3. Թուքաղար
ԱՀՄԱԴ
Թարա Քայ
2. ԱԲԱՂԱՅ ԽԱՆ
Չինղին
Ղայդու Kaidu
Զ. ԹԵՄՈՒՐ ԽԱՆ
Խան Բալայ
Ղափար Chapar
կամ Շաբար
Shaiban
6. Բայդու
Baidu
5. Քայ Խաթու
Kai-khatu
4. Արղուն
Թարմայ Բալայ
8. Օլջայտու
Oljaitu
7. Խազան
ՄԵԾ ԽԱՆԵՐԸ (Գլխատառով)

ծ Ե.

## ԽԱՆԻ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ
ՐԻ ՎԵՐՋԵՐԸ

ՉԻՆԳԻԶ ԽԱՆ

ՉԱՂԱԹԱՅ
- ...ամի
  - ...ԻՔԱՅ
    ...ամ
    ...ՂԱՅ
    ...ՈՒՐ
- Սարբան
  - 7. ՆԻՔՊԷՅ
- Պայդար
  - ԱԼՂՈՒԻ
    Algkui
- Եսու Մանու Թուքան
  - որին յաջորդեց Գարա Հուլաղուի այրին 3.– Արղուճա
- Մովայ–Թուքան
  - Ենսան Թեվա
    - 6. Բորրակ
      - 9. Թեվա կամ Դուա
  - 1. Գարա Հուլաղու
    - 5. Մուբարիկ Շահ
- Ջուչի
  - Նեքուդար Աղուլ

Ջուչի **Juji**
- Թեվալ **Tewal**
  - Թաթար
    - Նոգայ **Nogai**
- Շայբան **Shaiban**
  - Կաունչի **Kaunchi**
- 4. Բարկա
- 1. Բա...
  - 3. Ուլաղչի **Ulaghji**
  - Թողան...
    - 6. Թուդայ Մանգու **Tudai-Mangku**
    - 5. Մանգու–Թեմ...
      - 8. Թոքթայ **Toktai**
      - Արաչ...

Պարսկաստանի կամ
Ուլուս Չաղաթի Խաները
(Սովորական տառերով)

Ղփչաղ կամ Խփչաղ կամ
Ուլուս Ջուչի Խաները
(Նոտր տառով)

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Զ.

### «Արքայուն» եզրի մասին.

*Մարկոյ Պոլոն իւր* «Ճանապարհորդութեան» *մէջ Գլ.* LIX *էջ* 275 *ունի հետեւեալ կտորը.—*

*«Այս նահանգի –* Tendug *նահանգի – մէջ կառավարութեան ղեկը գտնւում է Քրիստոնեաների ձեռքում . . . սակայն կան նաեւ բաւական թուով կռապաշտներ եւ մահմետականներ: Այդտեղ գոյութիւն ունի նաեւ ժողովրդի մի դասակարգ, որ կոչւում է* Արգոն – Argon – *կամ ինչպէս Ֆրանսերէն պիտի կոչէինք* Guasmul *եւ կամ, այլ խօսքով, ծնունդ երկու տարբեր ցեղերի, այն է, Տենդուգ նահանգի կռապաշտների եւ Մահմեդի կրօնը դաւանողների ամուսնութիւնից ծնուածներ: Դոքա գեղադէմ եւ աւելի բարեձեւ կազմով մարդիկ են, քան նոյն երկրամասի միւս բնիկները եւ օժտուած լինելով աւելի կարողութեամբ՝ դառնում են իշխողներ. դոքա են նմանապէս գլխաւոր վաճառականները»:*

*Մարկոյ Պոլոյի* «Ճանապարհորդութիւն»*ը հրատարակող* Colonel Henry Yule, C. B. *իւր երկհատոր հրատարակութեան մէջ, ճոխացրած ընդարձակ, չատ կարեւոր եւ մանրակրկիտ ծանօթութիւններով, տալիս է հետեւեալ բացատրութիւնը վերն առաջ բերած հատուածի մասին.—*

*«Այս հատածը շատ հետաքրքրական մի կտոր է, թէեւ դժուար հասկանալի, (քանի որ բնագիրները խաթարուած են): Բնագիրներից մէկի մէջ* (G. Text — *Փարիզի* Geographical Society*-ի* 1824 *թ. հրատարակած բնագիրը) կարդում ենք.—* "Hil he a une jenerasion de jens que sunt appelles *Argon,* que vaut a dire en francois *Guasmul,* ce est a dire qu'il sunt ne del deus generasion de la lengee des celz *Argon Tenduc et des celz reduc etdes celz que aorent Maomet.* Il sunt biaus homes plus que le autre dou pais et plus sajes et plus mercaant".

*Միւս բնագիրը* «Ճանապարհորդութեան»*, որ կոչւում է* Pauthier's Text, *ունի հետեւեալը.—*

"Il ont une generation de gens, ces Crestiens qui ont la Seigneurie, qui s'appellent *Argon,* qui veut a dire Gasmul; et sont plus beaux hommes que les autres mescreans et plus sage. Et pour ce ont il la seigneurie et sont bones marchants."

*Իսկ* Ramusio Giov. Battisto*-ի բնագիրն եւս ունի,—*

"Ve e anche una sorte di gente che si chiamano *Argon,* per che sono nati di due generazioni, *cioe da quella di Tenduc che adorano gl' idoli, et da quella che osservano la legge di Macometto.* E questi so i piu bell; uomini che si trovino in quel paese a piu savi, e piu accorti nella marcanzia."

*«Առաջին կոչումի մէջ* Argon*-ի սահմանումն ու նշանակութիւնը, ըստ* de la lengnee *եւն.ի, հասկնալի չէ, թւում է, թէ աղաւաղումն է նոյն բառի սահմանումի եւ նշանակութեան, որ տալիս է* Ramusio*-ի բնագիր ԶՌ–ը, այսինքն, թէ* Argon *կոչուած անձը կէս Տենդուկ Բուդդայական ցեղի եւ կէս Մահ–*

մեղական նստակեաց ժողովրդի խառն ամուսնութեան ծնունդ էր: Այս երկու բնագիրներն եւս չեն հաստատում, թէ Argon-ները Քրիստոնեաներ էին: Թւում է, թէ Pauthier-ի բնագիրը, առաջին տպաւորութեան համաձայն, հաստատում է այդ համարում է, թէ Argon-ները այդ նահանգի Քրիստոնեայ կառավարիչներն էին: Սակայն, ըստ իս, կասկածելի է այդ եւ ես աւելի բան չեմ համարում այդ բառերը, քան այն, թէ Քրիստոնեայ կառավարիչներն իրենց իշխանութեան ներքակայ մի ժողովուրդ ունէին, որ կոչւում էր Argon, եւայլն: Այդ հատուածի ընթերցումը կատարուած է մի խոտոր հակամիտութեամբ, շնորհիւ այն սխալ մեկնութեան Argon բառի, որ Մարկոյ Պոլոյի մեկնութիւնից կարելի էր եզրակացնել:

«Ենթադրում եմ, որ Կլապրոթը – Klaproth – առաջինն էր, որ տուեց, թէ Argon բառը նոյն եզրն է եւ նոյն նշանակութեամբ, ինչ որ Arkhaium բառը, որին հանդիպում ենք շարունակ, իբր եզր եւ նշանակութիւն Արեւելեան Քրիստոնեաների եւ կամ նոցա հոգեւոր անձերի համար, Մոնղոլական տիրապետութեան շրջանի ընթացքին: *) Այս եզրի բացատրութեան համար դոհացուցիչ

---

*) Arkaiun կամ Arkaun (— Արքայուն) եզրը, այս նոյն իմաստով, գործ է ածում Ստեփանոս Օրբէլեանը իւր Պատմութեան մէջ.— «Մանկուղանն ...ունէր ի դրան մեծի պալատանն եկեղեցի եւ քահանայս, յորում ... պաշտօն եւ պատարագ անխափան լինէր ... յոյժ սիրէր զքրիստոնեայսն, զորս եւ արքայուն կոչէին ...»: «Եւ ասէ. զայս մի արքայունս մեզ պահեսցուք եւ ոչ տացուք այլ ումեք իշխել ի վերայ դորա ...»: «... Ցանդիման լինէր (Սմբատ) Մանկու Ղանին ... եւ զի յոյժ սիրէր զՍմբատն ... կոչէ առ ինքն եւ ասէ. եկ արքայուն եւ ծանո մեզ զամենայն ...» էջ 408, 409, 410): Այս մասին կոչումն ունի եւ Սէր Մարտէնը – St. Martin. Tarikh Jahan Kushai-ի հեղինակը, որ գործ է ածել եւ յիշատակել նաեւ D'Ohsson-ը ասում է, թէ Մոնղոլները Քրիստոնեաներին կոչում էին Arkaun: Երբ Հուլաղուն գրաւեց Բաղդադը, պատմում է նա, մի նամակ ուղարկեց տեղական դատաւորներին, Շէյխերին, կրօնի ուսուցիչներին եւ Arkaun-ներին՝ խոստանալով նոցա խնայել այնպիսիներին, որոնք խաղաղ կը մնան: Եւ Բաղդադի աւարի ժամանակ, ասում է, եւ ոչ մի տուն խնայուեց աւար ու աւերից, բացի սակաւաթիւն Arkaun-ների եւ օտար երկրացիների տներից: Ռաշիդ-էդ-դինի – Rashiduddin – Պատմութեան մէջ, որ վերաբերում է Պեկինի Պետական Խորհրդի գործերին, պատմըւում է, թէ Խորհրդի Անդամների Երկրորդ Դասի չորս Funchan-ները՝ Անդամները, ընտրւում էին չորս ազգերից, այն է Տաճիկներից – Tajik –, Չինացիներից – Kathayan – Uighur-ներից եւ Arkaun-ներից.— Արղուն Խանի, (1288 թուականին) իբրեւ պետ Պարսկական իշխանութեան, Պապին ուղարկուած դեսպանների մէջ յիշատակւում է նաեւ Sabadin Arkaun-ը.— Այդ անուան եւ եզրի հետքերն են գտնւում նաեւ Մոնղոլական տիրապետութեան շրջանի Չին վաւերագրերի մէջ, որով հասկանում էին կրօնական մի համայնք: Դոցանից ոմանք առաջ բերած է Wylie-ն. սակայն իմ աչքին չէ ինկած շատ աւելի հե-

եւ ոչ մի մեկնութիւն է տրուած: Դժուար թէ այդ եզրը ճիշդ այն առումով գործ դրուած լինէր, ինչպէս Պոլոն է գործածում այն: Սակայն, նորա պատմածի մէջ, այնու ամենայնիւ, պարզ է, որքան որ հնարաւոր է կռահել, թէ այդ եզրի տակ նա հասկանում է ոչ թէ Քրիստոնեայ անձն, այլ խառնածին: *)

Եւ այս վերջին առումով այդ բառը տակաւին գործածական է Տիբետի մէջ, ինչպէս եւ Արեւելեան Թուրքեստանի մէջ, այսինքն Մ. Պոլոյի գործածած Argon ձեւով: Զօրավար Cunningham-ը պատմում է, թէ Լադակների երկրամասում այդ եզրը յատկորոշ բառ է այն զաւակների համար, որոնք ծնունդ են Քաշմիրից գաղթած այրերի եւ Bot (— Տիբետացի) կանանց խառն ամուսնութեան: Եւ հաւանօրէն դա յարանման առումի եւ նշանակութիւն ունեցող մի եզր է, ինչպէս որ գործ էր դրւում Տենդուկ նահանգի մէջ, նշելով այն զաւակները, որ ծնունդ էին Կովկասեան ցեղերի ներկայացուցիչների եւ Թուրանեան ժողովրդի կանանց խառն ամուսնութեան: Mooncroft-ն եւս պատմելով Լադակների մի ցեղի մասին, անուանում է նոցա Argand-ներ: Ըստ McShaw-ի որոշման «Վայրադ – ոճրագործներ, որոնք կոչւում էին Argoon, խառնածիններ՝ Թուրքեստանցի հայրերից եւ Լադակ – Ladak մայրերից... նոքա իրենց մէջ էին միացրած այդ երկու ցեղերի յոռեգոյն յատկութիւնները, առանց որ եւ է բարեմասնութեան նոցա առաքինութիւնների»: Իսկ Դաբիստանի հեղինակը խօսելով Տիբետեան Լամայների մասին, ասում է,– «Նոցա թագաւորը,

---

տաքրքրական մի հատուած, որ տուած է Visdelou-ն, որի մէջ ասում է, թէ 1289 թ. Կուբլայ-Խանը հաստատեց 19 անդամներից կազմուած մի խորհուրդ, որ պիտի հսկէր Խաչի, Կրօնի, Մառայի – Marha-, Silie – pan-ի եւ Yelikhawen-ի վերայ: Այս միեւնոյն Խորհուրդը 1315 թուին բարձրացրուեց աւելի բարձր դիրքի եւ այդ օրերին կային 72 եւ աւելի՝ փոքր եւ ստորադաս Ատեաններ, որոնք Yelikhawen-ի կրօնի վերայ էին հսկում՝ ենթակայ էին նորա իշխանութեան: Այստեղ ամենայն հաւանականութեամբ մենք հանդիպում ենք Arkhaiun բառին՝ Չինական արտասանութեան ձեւով: Եւ մենք խիզախ ենթադրութիւնն ունինք տուն տալու, թէ Marha, Siliepan եւ Yelikhawen ձեւերի տակ պիտի հասկանանք Հայկական, Սիւրիական կամ Յակոբիկ եւ Նեստորական Եկեղեցիները. Տես St. Martin: *Memoires*, II, 133, 143, 279.– D'Ohsson: *Hist. des Mongols* II, 264, Ilchan I, 150, 152.– Cathay, 264.– Acad. VII, 359.– J. W. S. Wyllie: Journ. Asiat. V, XIX, 466, Visdelou: Supplt. to *D'Herbelot*, 142.–

*) Մի այլ տեղ Yule-ը ծանօթագրութեան մէջ (հտ. Ա., էջ 103) ասում է,– «Թարթար Arghun եզրը յատկորոշ բառ էր այն զաւակների համար, որոնք ծնուած էին Մոնղոլ մայրերի եւ սպիտակ ցեղի հայրերի ամուսնութիւնից. Թերեւս մի առնչութիւն ունի Karaun (— Kara սեւ) բառի հետ, որով նշում էին այն զաւակները, որ ծնունդ էին Մոնղոլ հայրերի եւ սեւամորթ մայրերի խառն ամուսնութեան»:

եթէ արքայական ցեղի արիւն չունի, կոչւում է Arghon եւ չէ նկատւում, իբրեւ թագաւոր»: Cunningham-ն ասում է, թէ թերեւս այդ բառը թրքական – Turki – է, ارغون Arghun որ նշանակում է «բաց-գոյն», «ոչ սպիտակ», այլ «կարմրորակ կամ վարդագոյն» – fair.– Arghun բառը թրքական է եւ մոնգոլական եւ յատուկ եզր է այն փոքրների համար, տղայ թէ աղջիկ, որոնք «բաց գոյն» ունին, ինչպէս Arghun Beg կամ Arghuna Khatun»: Լանգ Թեմուրի հաստատած կանոնների մէջ յիշատակութիւնն ենք գտնում Arghun անունով մի ցեղի, որ ամենայն հաւանականութեամբ, իւր անունն ստացել էր այդպիսի «բաց-գոյն» անձերի սերնդի պատճառով: Եւ չը նայած, որ Կանդահարի եւ Սինդի Արղուն Հարստութեան իշխաններն իրենց ծագումը համարում են Պարսկաստանի Արեւմտեան Խաների – Ilkhan – իշխանութիւնը հաստատող Արղուն-Խանից, սակայն նոցա ծագումը հաւանօրէն այլ էր:

Բաւական հետաքրքրական յարանմանութիւններ կան Մ. Պոլոյի «Ճանապարհորդութեան» մէջ յիշատակած այս Արղոնների եւ Հիւս. Չինաստանի եւ Չինական Թուրքիստանի Արղոնների մէջ, որոնք կոչւում են Tungani, կամ ինչպէս Ռուսներն են կոչում Тунгузы Տունգուզի – մի բառ, որ ըստ Վամբերիի, նշանակում է, ըստ թրքականի – «Նորադարձ» կամ «դարձիկ» կրօնի *) Այս Տունգանի-ները, ոմանք, իրենց ծագումն առնում են Uighur ցեղի մի ճիւղից որոնք փոխադրուեցան Մեծ Պարսպի մօտ եղած երկրամասը, Թանգ – Thang Հարստութեան իշխանութեան (է. – Ժ. դար) շրջանի մէջ: Մի այլ աւանդութիւն նոցա ծագումը Սամարղանդից է համարում: Եւ ուշադրութեան արժանի մի պարագայ է, որ Ռաշիդ Էդ-Դինը խօսում է Պեկինից Հիւսիս-Արեւմուտք ընկած մի քաղաքի մասին, «որի բնակիչների մեծագոյն մասը Սամարղանդից են գաղթած եւ բազմաթիւ պարտէզներ ունին տնկած Սամարղանդի պարտէզների ձեւով»: *) Նախորդ աւանդութիւնն ասում է, թէ նորեկների եւ Չինացի կանանց մէջ եղած խառն ամուսնութիւնները քաջալեր աչ-

---

*) Shaw-ի ուղղագրութեամբ Toonganee.— նոցա մասին առաջին յիշատակութիւնը, որքան ծանօթ է ինձ, գտնում ենք Izzar Ullam-ի Օրագրութեան մէջ (Տես Journ. of Royal As. Society, VII, 310). Ըստ այդ տեղեկութեան, այդ ժողովուրդն իւր անունն ստանում է այնտեղի – Tungan – անունից, ուր փոխադրուած եւ հաստատուած էր: Նոյն տեղը Tun-gan համարւում է մի բերդաքաղաք Hoang-ho-ի վրայ գտնուող T'ung-Kwan գաւառի մէջ: (Տես Yule M. Polo, II, գլ. XLI, Ծնթ. 1): Ցեղի անուանակոչութեան մասին տուած բացատրութիւններից ամենից հաւանականը պէտք է համարել Vambery-ի կարծիքը:

*) Դժուար է ենթադրել կամ կռահել, թէ ի՞նչ է նշանակում այդ: Սակայն աչքի առաջ ունենալով մի զեկուցման կտոր, գրուած Ney Elias-ի կողմից, հետաքրքրական համադրութեան մի մեկնութիւն կարելի է գտնել.— «Աշխարհագրական Ընկերութեան տուած զեկուցման մէջ նկատած եմ այն ինքնուրոյն Արեւմտեան ճաշակի կնիքը, որ նշմարելի է Kwei-hwa-ching-ի ար-

քով էին դիտում: Ապագային այս ժողովուրդները օրինակ առնելով իրենց ցեղակիցներից, ընդունեցին Մահմետական կրօնը, սակայն պահպանելով տակաւին Չին կանանց հետ ամուսնանալու սովորութիւնը, միաժամանակ եւ իրենց զաւակներն Իսլամի վարդապետութեամբ կրթելով: Տունգանները — Tungani – Կեդրոնական Ասիայի վաճառականի հմտութիւն եւ ուղղամտութիւն ունեցող ժողովուրդն էին ճանաչուած եւ այս վերջին յատկութեան համար Չին կառավարութիւնը իւր ոստիկանական ոյժերը նոցանից էր ընտրում: Կրքոտ են, դիւրագրգիռ եւ պատրաստ դանակ մերկացնելու ամենափոքր վրտանգի եւ պատուի դէմ մեղանչած պահերին եւ իրենց մարմնական ոյժի եւ մտացի կարողութիւնների յատկութիւններով ծանօթ են թէ Մանչու եւ թէ Չին ժողովրդին: Նոցա գլխաւոր հակումը վաճառականութեան գործերի մէջ մտնելն է:

Աչքի առաջ ունենալով երկու պատմուածքի ընդհանուր բնոյթագծերը,– Արեւմտեան Մահմետականների եւ Հիւս. Չինացիների խառնածինների ծագումը, նոյն տեղագրական դիրքը՝ իբրեւ Մեծ Պարսպի մօտերը տեղաւորուած ժողովուրդ, մարմնակազմի առաւել գերազանց յատկութիւնները, մրտացի կարողութիւնը, մանաւանդ առեւտրի հակումն ու ձիրքը՝ շատ հաւանական է թւում, թէ մեր այսօրուայ Թունգուշները – Tungani – Մարկոյ Պոլոյի յիշատակած Argon–ի սերունդն են: Այլապէս, գոնէ, տուեալ պայմանների եւ պարագաների տակ առաջ եկած համանման հետեւանք համարելով նոցա, որով դուրս կը գայ, որ պատմութիւնը կրկնուել կարող է: Տես H. K. Heins: The Dungens, Ռուս. Չին. Ամսգ. 1866 Թ. Օգոստ., եւ *Western China "Ed. Review"*, Apr. 1868, p. 261, Cathay յօդ.»):

Մ. Պոլոն տալիս է մեզ եւ մի այլ տարօրինակ բառ, *Guasmul*, իբրեւ հոմանիշ Argon բառի, Ֆրանսերէն լեզուով: Մ. Պոլոյի հրատարակիչներից առաջինն է Pauthier, որ տալիս է այդ եզրի ճիշդ բացատրութիւնը, առնելով Ducange–ից: Այդ բառը, ինչպէս երեւում է, գործածական եզր էր Ֆրանկների մէջ, որոնք ապրում էին Արեւելքում, իբրեւ նշող բացատրութիւն այն սերնդի համար, որ ծնունդ էր Փրանկ այրերի եւ Յոյն կանանց ամուսնութեան: Այդ բառին հանդիպում ենք երեք անգամ Գէորգ Պաքիմերէսի – Pachymeres – Պատմութեան մէջ: Այսպէս, նա պատմում է, (Mich. Paleol., III, 9) թէ Միքայէլ Կայսրը «իւր յոյսը դրել էր Guasmul–ների կամ խառնածինների (σύμμιχτοι) վերայ,–եւ այդ բառի նշանակութիւնն առաջ է գալիս Իտալերէնից, որովհետեւ նոքա ծնուած էին Յոյներից եւ Իտալացիներից եւ ուղարկեց նոցա վարելու իւր նաւերը եւ ծառայելու նոցա վերայ, որովհետեւ վերոյիշեալ ցեղը ժառանգած էր միանգամայն եւ Յոյների ռազմական չրջահայեաց զգուշաւո–

---

տաքին երեւոյթի մէջ, ուր փոքրիկ պարտէզները զարդարուած են բաղեղներով եւ պոյտերի մէջ եղած ծաղիկներով, որոնք բակերի, տան մուտքերի առաջն են գտնւում քաղաքի բարձր դասի տների առաջ եւ որը տեսած չեմ Չինական այլ քաղաքների մէջ: Եւ իմ ուշադրութիւնս գրաւուեց աւելի եւս Ռաշիդ էդ–Դինի յիշատակութեան ձեր կոչումով:

րութիւնը եւ Լատինների յարձակողական խոյանքի թափը, ինչպէս եւ Հեռապնդող հաստատամտութիւնը»: Մի այլ տեղ (VI, 26), խօսելով այդ Guasmul-ների մասին, «որոնց Յոյնը պիտի կոչէր διγενής, , մարդիկ, որ ծնուած էին Յոյն մայրերից եւ Լատին հայրերից»:

Նիկիփոր Գրեգորասը պատմում է նոյնպէս, թէ ինչպէս Միքայէլ Պալէոլոգը Բալդուինի կազմած ծրագիրը խանգարելու համար, – այն է Պալէլոգի իշխանութիւնը եւ հարստութիւնը դրաւելու համար,– «կազմում եւ սարքում է վաթսուն ցռկանաւեր, մեծ մասով Guasmul-ների ցեղի (γένος τῶν γασμουλικῶν) այրերից կազմած», որոնց նա նոյն յատկութիւններն է վերագրում, ինչ որ Պաքիմերեսը (գր. IV գլ. V, 5) ինչպէս եւ VI, III, 3 եւ XIV, X, 11): Nicetas Choniates-ի ՁՌՌ-ից մէկի մէջ, որ դարձեալ Մանուէլ Կոմնենի մասին է պատմում (Տես Հրատ. Paris-ի, էջ 425), խօսում է այն «բարձր դիրքի գնդերի մասին, որոնք Basmul-ներ են կոչւում»: Այս անունը մեզ տանում է այն եզրակացութեան, թէ ինչպէս որ Turcopuli անունը մատնանշում է Թուրք հայրերի եւ Յոյն մայրերի սերնդի գոյութիւնը եւ այդ անունն եւս դարձել էր մի technic անուն զինուորական որոշ գնդերի համար, այդպէս Basmul-ները ինքնին իսկ մեկնաբանողն են իրենց ծագման աղբիւրի: Համաձայն Buchon-ի Վենետիկեան Հանրապետութեան մաս կազմող Կանդիայի համար հրատարակած օրէնքների մէջ, կղզու բնակիչ ցեղերի մէջ յիշատակւում են *Vasmulo*, Latino, Blaco եւ Griego ցեղերը:

Դիւկանժը Joinville-ի բնագրին կցած ծանօթութիւններից մէկի մէջ ասում է.— «Այն շրջանին, երբ Ֆրանկները տիրում էին Կոստանտինոպոլսին, նոքա *Gasmoules* անունը վերագրեցին նոցա, որ ծնունդ էին Ֆրանկ հայրերի եւ Յոյն մայրերի եւ կամ աւելի հաւանօրէն *Gasi-moules*, իբրեւ հեգնանքի հարկ, յայտնելու, թէ ղաւակները անկանոն ամուսնութեան արդիւնք էին... եւ այդպիսով իրենց մայրերի արդանդն էին նուաստացրել»: Կասկած չունինք, թէ (pace tanti viri) այդ բառը աղաւաղուած ձեւն է Իտալերէնի մէջ պահպանուած Guazzabuglio բառի, որ նշանակում է «խառն-խնթոր», «իրար անցած»: Տակիտոսի Տարեգրութիւնների Davanzati-ի հրատարակութեան մէջ "*Colluviem illam nationum*" բառերը (Annal. II, 55) թարգմանուած են "quello guazzabuglio di nazioni" բառերով *), որը շատ մօտ արտայայտութիւն է դառնում եւ համարեա նոյնանում Guasmul-ի նշանակութեան հետ: Իտալացիները որոշ չափով ստուգաբանութեան լուծի ենթակայ չեն եւ դժուար է որոշ նմոյշ ակնկալել նոցանից այդ բառի ծագման ու պատմութեան նկատմամբ: (Տես Buchon *Chroniques Etrangeres*, p. XV.– Ducange: *Gloss. Graecitatis* եւ իւր նկատողութիւն – ծանօթութիւնը *Joinville*-ի մասին, *Bohn's Chron. of the Crusades*, 466).– Col. Henry Yule: *The Book of Ser Marco Polo*, 1875, London, vol. I, p. 279 չր.:

---

*) Տակիտոսի Ֆրանս. թարգմանութեան մէջ.— "Ce vil ramas de toutes les nations (բոլոր ազգերի այս անարգ կոյտին մէջ"). M. Noel, I, 349, Paris, 1827.

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Է․

## ԽՈՒԱՐԱԶՄՇԱՀ *) ՋԱԼԱԼ – ԷԴ – ԴԻՆ

Թաթարների անակնկալ եւ յախուռն, ամէն ինչ ոտքի տակ առնող, աւերող արշաւանքների դէմ բուն Պարսկաստանի պաշտպանութեան համար մեծ դեր են խաղացած նորա հիւսիս–արեւելեան սահմաններին կից կատաղի եւ անզուսպ Աւղաններ՝ Ֆիրզիկուհ լեռների վերայ հաստատուած խազնա — Ghazna – Հարստութեան եւ Գուր – Ghur – լեռնաշղթայի կողերի վրայ տարածուած եւ ինքնավար թագաւորների իշխանութիւնները, որոնք յայտնի էին «խազնա» եւ «Գուր» Հարստութիւններ անունով, որոնք Ժ․ դարի վերջին արդէն ամուր դիրք եւ հաստատուն ազդեցութիւն ունէին, իբրեւ ինքնավար, անկախ իշխանութիւն պետութիւններ, որոնցից խազնայի անուն եւ դիրք գրաւած տիրապետ Սուլթան Մահմուդը յաջորդում է 998 թ․ իւր հօր Սուլթան Սուբուկտիջինին – Subuktigin․ Բայց այդ երկու իշխանութիւններից աւելի դիրք եւ նշանակութիւն ունէր խուարէզմի կամ խիւայի շահերի – Khwarazmashah – Հարստութիւնը, որի հիմնադիրն եղաւ Մալեք–շահի մատռուակ Անուշտիջինը **)— Anushtigin — 1077 թուին, որի իշխանութիւնն սկսուելով Սելջուք Թուրքերի կատարեալ պարտութեամբ, իւր հարստութեան վախճանին տուեց Ջալալ–էդ–դին Մանկոբուրնի – Jalalud-Din Mankoburni – ասպետական ոգու տէր եւ քաջութեան անուն հանած իշխանապետը, որ վերջին պաշտպանն եղաւ եւ պատնէշը Մոնղոլների արշաւանքների, նոյա ամէն ինչ աւերող, կործանող հրոսախմբերի դէմ, Մահմետական աշխարհի համար,

---

*) Ըստ մեր Պատմիչների Ջալալէդինը կոչւում է երբեմն «Սուլթան Խորասանայ» (Կիրակ․ Գանձկ․ Պատմ․ էջ 172, 211, 215), որով պէտք է հասկնալ «տիրապետ Պարսկաստանի» եւ երբեմն եւս «խորազմեցի Սուլտանն Ջալալէդին» (Նոյն, էջ 277, Հրատ․ Թիֆլ․ 1909), այսինքն իւր բուն վայրի, խիւայի թագաւոր: Բուն առումով Ջալալ–էդ–դինը միայն թագաւոր էր խուարազմի, սակայն, որովհետեւ Թաթարների արշաւանքով կործանուեց իւր տէրութիւնը Խուարազմի մէջ, ուստի ստիպուած նուաճեց Պարսկաստանը, Ատրպատականը եւ հիմնեց մի նոր Պարսկական Պետութիւն: A. Muller: Istoria Islama (Ռուսր․), հտ․ Ա․, էջ 244) :— «Արդ ի յայսմ (ՈՁ–1231 թ․) ելաւ ազգ մի որ կոչի Թաթար եւ փախստական արար զՊարսկաց թագաւորն» (– զՋալալէդին): Ք․ Պատկանեան – «Նշխարք Մատենագր․ Հայոց», Ս․ Պտ․ 1884, էջ 69․—

**) Համաձայն Արաբ Պատմիչ Աթա–Մալիք Ջուվայնիի – Ata-Malik Juwayni — «Պատմութիւն Աշխարհակալի» (– Ջինգիզ Խանի – Tarikh-i-Jahan-Gusha), այդ սովորութիւնն ընդհանրացած մի ձեւ էր, Սելջուկ իշխանապետների օրով, որով մատռուակը կամ հանդերձապետը կամ նման պաշտօնեան իւր ծառայութեան համար ստանում էր ընդարձակ հողամասեր, իբրեւ տէր եւ իշխան:

մինչեւ իւր մահը՝ գահ բարձրացած օրից սկսած. (1220–1231)։

Այս հարստութեան բուն իշխանութիւնն սկսւում է 1127 թուից, երբ գահ է բարձրանում փառատենչ եւ խորամանկ Աթսիզը – Atsis –, որի ապագայ ըղձերի եւ երազանքների լուրը հասնելով Սելջուկների Սանջար – Sanjar – պետին, 1138 թ. ամառը, վերջինս իւր արշաւանքն է կազմում Խուարազմի դէմ։ Աթսիզը պարտւում է, ծանր կորուստներ կրելով, պատերազմի դաշտի վրայ թողնելով եւ իւր որդին, *) որի կորուստը շատ աւելի ծանր էր փառատենչ հօր համար, քան իւր իշխանութիւնից զրկուիլը,— որովհետեւ Սանջարը Խուարազմը շնորհեց, իբրեւ աւատական իշխանութիւն, Աթսիզի եղբօր որդուն՝ Գիյաթուղ–դին Սուլէյման Շահին։

Հազիւ Սանջարը Մերվ էր հասած իւր հրոսակների հետ, երբ Աթսիզը վերադառնում է, գրաւում իւր մայրաքաղաքը եւ իւր վրէժը լուծելու համար գրգռում է Չինացի Թաթարներին – Khata – յարձակուել Սելջուկների եւ Սանջարի վրայ, որին նոքա կատարեալ պարտութեան մատնեցին, 1141 թ. ամառը, սպանելով գլխաւորներին եւ 100,000 իւր զինուորներից, գերի տանելով նորա կինը եւ Սելջուկ իշխաններին յետ քշելով մինչեւ Թիրմիդ – Tirmidh – եւ Բալխ – Balkh –, այն ինչ Աթսիզը, կրկին անկախ յայտարարելով իրեն, գրաւեց Մերվը եւ նորա ժամանակաւոր տէրերին սպանեց կամ գերի առաւ, որոնց մէջ էր նաեւ նշանաւոր գիտուն եւ աստուածաբան Աբուլ–Ֆադըլ–ալ-Քիրմանին։ **) Այս պարտութիւնը, ըստ Արաբ պատմիչ Իբն–ուլ–Աթիրի, առաջինն էր, որ կրում էր Սանջարը եւ միաժամանակ նախաբանը հետագայ աղէտների՝ Սելջուկների համար։ Նիշապուրի մէջ,— որը մի ժամանակ գըրաւուեց, բայց թողնուեց անվնաս,— Աթսիզի հրամանով, միայն Սանջարի անուան յիշատակութիւնն արգիլուեց խութբայի – Khutba – կամ հանրային աղօթքի ժամանակ, (որ տեւեց Մայիս 28–ից մինչեւ Յուլիս 27, 1142 թ.)։ Հետեւեալ տարին Սանջարը կրկին պաշարեց Խուարազմը, սակայն, անկարող լինելով գրաւել, խաղաղութեան դաշն կռեց Աթսիզի հետ, ***) որի մահը վրայ հասաւ 1156 թ. Յուլիս 30–ին, միայն մի քանի ամիս առաջ իւր հակառակորդի մահից։

---

*) Ըստ Ջահան–Գուշայի, այդ որդին կոչւում էր Իլիղ – Iligh –, որը գերի բռնուեց, տարուեց Սանջարի առաջ եւ նորա հրամանով, անգթօրէն միջից սղոցուեց։

**) Ըստ Իբն–ուլ–Աթիրի (Sub anno 536 H. 1141 թ. Փ.) Աթսիզը մտադիր էր խնայել Մերվը, ինչպէս քիչ առաջ Սարախն էր ազատել կոտորածից, սակայն իւր հետեւորդների ոմանց սպանուիլը վրէժխնդրութեամբ լցրեց նորա սիրտը եւ քաղաքը մատնուեց աւար ու աւերի 1141 թ. Հոկտեմբերի վերջերին։

***) Ըստ Jahan-Gusha–ի հեղինակի, Աթսիզը գրական կատարելութեամբ օժտուած իշխան էր, բանաստեղծ եւ թողել է քառեակներ եւ այլ ոտանաւորներ՝ Պարսիկ լեզուով։

*Աթսըզի մահից* (551 *Թ. Հջ.*— 1156–57 *Փ. Թ.*) *յետոյ անցան տասնեւեօթն տարիներ, երբ իւր թոռը՝ Սուլթան Շահ Մահմուդը բարձրացաւ Խուարազմի գահը* (568 *Թ. Հ.* – 1172 *Թ. Փ.*)։

*Այդ այն շրջանն էր, երբ Արեւելքի դող ու սարսափի պատճառ «աստուածային պատուհասը», Ջինգիզ–Խանը* (1162–1227 *Թ.*) *Անդր–Օքսուսի Թուրք ցեղերի գլուխն անցած, մոռացնել էր աշխատում Հռոմի մեծութեան փառքը, բոլոր խալիփաների հուշակը եւ իբրեւ «երկրորդ Իսկէնտեր», յաղթութիւնից յաղթութիւն էր թռչում։ Ոչ ոք հաւատալ էր ուզում, թէ այդ աննշան Խաթայ Թուրքմէնը կարող էր հասնել մինչեւ Մահմուդի սահմանները։ Եւ Խուարազմի, Պարսկաստանի եւ Անդր–Օքսուսի Սուլթան Շահը կոյր էր ձեւանում եւ չտեսնելու դնում մօտացող փոթորիկը։ Իւր ծայրահեղ մեծամտութեան հետ եւ ծայրահեղ թուլասիրտ անձն էր, իւր ցեղի բոլոր պակասութիւններով օժտուած, առանց նորա որեւէ առաքինութեան։ Բայց երբ հալածուող Քուրխանն եւս ընկճուեց, Մահմուդը, որ արդէն «Ալխոյեան» եւ «Մարտիկ» տիտղոսն էր ստացել, այլեւս լաւատես չէր ապագայի նկատմամբ։ Հարաւային Պարսկաստանը, Աֆղանների լեռնաշխարհը, Հնդկաստան տանող ուղու վրայ գտնուող երկրամասերը բաժանուեցին նոր աւատական իշխանների մէջ, մեծագոյն մասը Թուրք ծագումով, «Աթաբէկ» տիտղոսով եւ ենթակայ Ջինգիզ–Խանին կամ կապուած Բաղդադի Խալիփայութեան հետ։*

*Չը նայած, որ Մոնղոլ հրոսակների արշաւանքի առաջն առնելու հնարաւորութիւն չկար, բայց այդ արշաւանքի թափն ու հարուածն, անկասկած, աւելի դիւրացաւ եւ դրդուեց Մահմուդ Շահի անյագ ագահութեամբ, դաւերով եւ անվճռականութեամբ։ Շնորհիւ իւր ագահութեան, ինչպէս նկատում է Իբն–ուլ–Աթիր, նա թուլացրել եւ կամ իսպառ ոչնչացրել էր իւր դրացի Մահմետական իշխանութիւնները, որպէսզի նոցանից կերտէ իւր համար մի անկայուն եւ անղեկավար ընդարձակ պետութիւն։ Այնպէս որ երբ նա փախուստի դիմեց Մոնղոլների առաջ, իւր հպատակներին նոցա «չար–բախտին» ձգելով, ինքն իրեն ասելով, ինչպէս նկատում է Իբն–ուլ–Աթիրը,– «Փախիր, ազատ դաշտ ապաստանիր, ապա թէ ոչ կորստի պիտի մատնուիս»,– նորա իշխանութեան տակ գտնուած եւ ոչ մի Մահմետական իշխան չեկաւ միանալու իւր ուժերով իրենց աւատապետին՝ Իսլամի թշնամուն դիմադրելու համար։ Շնորհիւ իւր դաւերի, որովհետեւ Ջինգիզ–Խանի կողմից ուղարկուած դեսպանների եւ Մոնղոլ վաճառականների անմիտ սպանութեամբ դրդեց, որ կատաղած Ջինգիզ–Խանն առանց վարանելու յարձակուէր նորա վերա։ Եւ ապա նաեւ շնորհիւ իւր անվճռակակութեան, որովհետեւ առաջին իսկ անյաջողութեան հանդիպելուց յետոյ իւր ամբարտաւան յոխորտանքի եւ սնապարծ յաւակնութեան բարձունքից գլորուեց ծայրահեղ երկիւղի եւ տատամսոտ անորոշութեան գիրկը,– մինչեւ որ Մոնղոլ դեսպանի սպանութիւնից հազիւ երկու տարի անցած, մեռաւ անփառունակ փախուստի եւ հալածական հետապնդումների հետեւանք անպատուութեամբ, Կասպից Ծովի մի կղզու վրայ, իբրեւ անոք եւ անօգնական փախստեայ։*

Եւ պէտք է իր՝ ասպետական հոգով եւ արութեամբ օժտուած որդու Ջալալ-էդ-Դինի յամառ մաքառումների արարքները երեւան գային, որպէսզի սրբուէր այդ անպատուաբեր փախուստի յիշատակի սեւ բիծը եւ վերականգնուէր Խուարազմ Շահերի լայնածաւալ պետութեան հմայքն ու ոյժը.

Խուարազմ Շահ Մահմուդի քաղաքական թուլութեան եւ նոր ելնող ու արագ տարածուող Մոնղոլական բիրտ ոյժին դիմադրելու անկարողութեան պատճառներից մէկն եւս այն էր, որ Աբասեան տան Խալիֆ՝ ան – Նասիրը – an — Nasir – չափազանց մեծ կասկածով էր վերաբերում դէպի Շահ Մահմուդը, ենթադրելով, որ նա աւելի քան ուժեղ է եւ կարող է Բաղդադը նոյն իսկ գրաւել, ուստի ճիգ չէր խնայում,– հետեւելով վերջին խալիֆների քաղաքականութեան,– թուլացնել նորան ներքին սադրանքներով եւ նենգամիտ միջոցներով: Եւ նոյն իսկ, ինչպէս մատնացոյց է անում Իբն-ուլ-Աթիրը եւ դրականապէս հաստատում է ալ-Մաքրիզին, չքաշուեց խրախուսել Մոնղոլներին արշաւել Շահ Մահմուդի դէմ, առանց անդրադառնալու, թէ իր տան ու հարստութեան ճակատագիրն էր կռում իր ձեռքով եւ իր իշխանութեան ու երկրների կորուստը նախապատրաստում:*) Խալիֆը չէր քաշւում, նոյն իսկ, յայտնապէս դրդել Խաղնայի իշխանապետին ապստամբել Մահմուդի դէմ, որ յայտնի եղաւ նորա մի նամակից, երբ Խաղնան նուաճուեց Շահ Մահմուդի ձեռքով: Եւ իբրեւ հակահարուած Խուարազմի տէրը յայտարարեց, որ ինքը օրինական չէ ճանաչում Աբասեանների տան կրօնական-պետ լինելու պարագան, իբրեւ հոգեւոր հեղինակութեան աղբիւր եւ իր կողմից նշանակեց մի Սէյիտ, իբր հակառակամարտ իշխանութիւն հոգեւոր ազդեցութեան,– եւ այս բոլորը ճիշդ այն պահին, երբ ոյժի եւ իշխանութեան ամէն մի ջիղ պէտք էր պրկել՝ դիմադրելու հիւսիս-արեւելքից հասնող փոթորիկը: Եւ յետոյ եւս, իբրեւ իրերի ու դրութեան գահավէժ կործանման նոր դրդիչ, անօգուտ ջանք դրեց Բաղդադը գրաւելու, ինչ որ աւելի արագացրեց իրերի աղիտալի ելքը, նոյն շրջանի եւ կլիմայի համար անսովոր, խիստ ու երկարատեւ ձմեռնային ցրտերի եւ բուքերի պատճառով:

Թէեւ, ըստ երեւոյթին, ոչինչ կարող էր կասեցնել վտանգի աղիտալի հոսանքը, բայց աղէտի բուն, իրական պատճառը վաճառականական նոյն «խաղաղ առաքելութիւնն» էր, որ այնքան յաճախ ծանր հետեւանքներով է վերջանում եւ մեր օրերին: Ջինգիզ-Խանին պատեհ թուեցաւ Խուարազմի սահմանի վրայ գտնուող Իւթրար – Utrar – քաղաքն ուղարկել վաճառականների մի խումբ, իր երկրի ծանրագին ապրանքների կարաւանով: Վաճառականները թուի եւ ապրանքի քանակի մասին զանազան տուեալներ ունինք, ինչպէս եւ

*) D'Ohsson: *Hist.* vol. I, p. 211. (Baron C. D'Ohsson: *Histoire des Mongols depuis Tchinguis Khan jusqu'a Timour Bey ou Tamerlan,* Paris. 1834–35, չորս հատոր):

նոցա առաքելութեան նպատակի նկատմամբ. ըստ ան-Նասավիի*), վաճառականները միայն չորս հոգի էին, բոլորն էլ Մահմետական եւ հպատակ Խուարազմշահի. այն ինչ այլ պատմիչներ նոցա թիւը բարձրացնում են մինչեւ չորս հարիւր յիսունի: **)

Որքան էլ լինէր թիւն ու քանակը, սակայն իրողութիւնն այն էր, որ նոքա բոլորն էլ կոտորուեցին բարբարոս եւ անգութ բրտութեամբ Իւթրարի կառավարչի հրամանով, ի հարկէ Մահմուդ Շահի աչքախփուկ կամ անգէտ ձեւանալու մեղսակցութեամբ, որը հաւատացած էր կամ կամենում էր հաւատացնել, թէ այդ «խաղաղ առաքելութեան» անդամները միայն լրտեսներ էին Մոնղոլ ծագումով: Չինգիզ-Խանը ուղարկեց արտակարգ մի դեսպանութիւն, (որի անդամները երկու Մոնղոլներ եւ մի Թուրք էին,— վերջինս Բուղրա – Bughra – անունով) Խուարազմշահի արքունիքը, բողոքելու այդ վայրագ կոտորածի դէմ, որ դէմ էր ասպնջական պաշտպանութեան օրէնքի եւ երկրների փոխադարձ բարեկամական յարաբերութեան կարգերի եւ պահանջեց իրեն յանձնել Իւթրարի կառավարիչը եւ եթէ այդ պահանջը մերժուի՝ Մահմուդ Շահը պատրաստ լինի կռուի: Վերջինիս պատասխանը միայն այն եղաւ, որ սպանել տուեց Բուղրային եւ երկու Մոնղոլներին եւս հրամայեց վերադառնալ իրենց տիրոջ մօտ՝ նախապէս նոցա մօրուսները քերծել տալով, իբրեւ անարգանք: ***)

Մոնղոլների առաջ միայն մի ճանապարհ կար,— անմիջապէս Ղուրալթի Quralty – այն է ընդհանուր ժողով հրաւիրել ցեղապետների: Ժողովը որոշեց անմիջապէս արշաւել Խուարազմի Շահի պետութեան դէմ:

Հակառակ նոյն իսկ նախնական յաջողութեան Մահմուդ Շահը՝ մնում է անտարբեր դէպի սպառնացող վտանգը եւ հեռու առնական ձեռներէց արարքից՝ հարուածը կասեցնելու, բաւականացաւ միայն իւր պետութեան սահմանների պաշտպանութիւնը յանձնելու վտանգի ենթարկուած սահմանակալ քաղաքների կառավարիչներին եւ սպասելով լոկ, ինչպէս պատմւում է (թերեւս միայն իւր աններելի թուլամորթութիւնն աւելի եւս ընդգծելու համար) իւր աստղաբաշխի ցուցումին, թէ «բախտաւոր րոպէն» հասա՞ծ էր թէ ոչ դիմադրելու համար: Եւ մինչ այսպիսի անտարբեր, յանցապարտ անգործ օրորանքներով էր տարուած, հասնում է 1219-ի աշունը եւ Մոնղոլական փոթորիկը ծաւալւում է Անդր-Օքսիանի մէջ:

Վեց ամիս պաշարուելուց յետոյ Իւթրարն է ընկնում թշնամու ձեռքը եւ նորա կառավարիչը, Մոնղոլ վաճառականների ջարդարարը բռնւում եւ

---

*) Շիհաբ-ադ-Դին Մուհամմադ ան-Նասավի – Shihab-ud-Din Muhammad an-Nasawi – որ գրել է արաբերէն իւր իշխանի՝ Սուլթան Ջալալ-էդ-Դին Մանքոբիրնիի կեանքը, իբրեւ նորա անձնական քարտուղար:

**) D'Ohsson, նոյն, էջ 205 շր.

***) Հմմտ. վերը՝ Յաւելուած Դ.

տանջալից մահ է գտնում Չինգիզ-Խանի հրամանով,– նորա աչքերի եւ ականջների մէջ հալած արծաթ լցնել տալով: Քաղաքն աւարի է ենթարկւում, սպանութիւնից ազատուածներին գերի են տանում Բուխարա գործ ածելու իրենց համերկրացիների եւ համակրօնների դէմ: Գերիների բազմութիւնն առաջ էր քշւում անխնայ անգթութեամբ Մոնղոլ հրոսակախմբերի առաջից, իբրեւ բախման առաջին զոհեր հակառակորդի կողմից, մնացածներին բանեցնում էին իբրեւ պաշտպանութեան պատնէշներ կանգնողներ, ռազմական մեքենաներ շինող ու սարքողներ եւ ապա սրերի ծայրով մղելով անհամար բազմութիւններ դէպի պաշարուող քաղաքների խրամատները, նոցա իրար վերայ կուտակուող մարմինների դէզերով հրոսակախմբերի համար վերելք կազմելով դէպի քաղաքի պարիսպները: Մոնղոլների անգթութիւնները եւ բնական էին, ե՛ւ չափուած-կշռուած ծրագրուած միջոցներ,– թշնամու վրայ ահ ու սարսափ տարածել եւ դիմադրական կարողութեան ոյժը ջլատելու համար: Գերիների բազմութեան յետեւն ապաստանած այդ անգութ ջոկերները, իրենց յետեւից հուր ու աւեր էին տարածում, գիւղեր ու աւաններ անխնայ կրակի տալով, իսկ իրենք կրկնակ պաշտպանութեան գծի մէջ էին,– յետեւից իբրեւ պաշտպանութեան սահման աւերակների կոյտերը, աւեր ու խանձուած դաշտերը, հրդեհուած հունձը թողած, իսկ առաջից, իբրեւ յառաջապահ պաշտպանութիւն՝ տեղացի բնակչութեան կրօնակից գերիները, որոնց դէմ արենակիցները դժուարութեամբ պիտի զէնք բարձրացնէին:

Բուխարայից յետոյ ընկնում է Ուզքեանտը — Uzkand –, ապա մի քանի այլ մեծ ու փոքր քաղաքներ եւ յետոյ Ջանդը – Jand – կարճատեւ պաշարումից յետոյ գրաււում, քաղաքն լինօրեայ աւարի մատնւում, կանայք եւ աղջիկները բռնաբարւում, բայց աւեր ու սպանութիւնից ազատւում՝ տարօրինակ քմայքի բերումով:

Ապա ընկնում է Բանաքեաթը – Banakat: Խուջանդը — Khujand – պաշտպանւում է յամառօրէն եւ արութեամբ Թիմուր Մալիքի ձեռքով: Եւ 1220 թըուականի սկիզբներին Մոնղոլներն արդէն տէր էին Բուխարային, իւր ամբողջ շրջանով,– անխնայ աւեր սփռելով, հրդեհելով, քանդելով, սպանելով, լլկելով ամէն հասակի կին եւ ապա ջարդելով անգթաբար: Շատերը գերադաս համարեցին անարգ մահից քաջութեամբ մաքառելով ընկնելը, որոնց մէջ էին Ղադի Բադր-ուդ-Դինը, իմամ Ռուկն-ուդ-Դինը եւ իւր որդին:

Եւ ապա հերթը հասաւ Սամարղանդին, որ խոնարհուեց Մոնղոլների առաջ պաշարման չորրորդ օրը, աւերի ենթարկուեց անօրինակ անգթութեամբ, բնակիչների ստուար մեծամասնութիւնն սպանուեց, իսկ միւս մասը գերի տարուեց:

Միաժամանակ Մահմուդ Շահը շարունակում էր ընկրկել թշնամու առաջ, ազդարարելով բնակչութեան այն քաղաքների, որոնց միջից անցնում էր՝ «իրենց գլխի ճարը տեսնել» եւ եթէ կարող էին պաշտպանուել իրենց միջոցներով, քանի որ ինքն անկարող էր նոցա պաշտպանել: Խորապէս հաւատացած, թէ Մոնղոլները պիտի չհամարձակուէին Օքսուսն անցնել, Մահմուդը կարճ

դադար առաւ Նիշապուրի մօտ, սակայն հազիւ երեք շաբաթ անցած, լսելով, որ Մոնղոլները Խորասան են հասած, փախաւ դէպի Արեւմուտք՝ Ղազուին եւ այնտեղից դէպի Գիլան ու Մազանդարան: Այստեղ, լքուած իր հետեւորդների մեծագոյն մասից եւ հիւանդանալով,– կողատապով – Pleuresie –, մեռաւ անօք, հալածական, Կասպից Ծովի մի կղզու վրայ, իր ժառանգ կարգելով Ջալալ–էդ–Դին որդին, որն արի եւ ասպետական ոգով մի անձն էր: Իր մայրը, Թուրխան–Խաթունը, իր կանանց, զաւակների, թանգագին գոհարների մեծ հարստութեան հետ ընկաւ Մոնղոլների ձեռքը: Ապա հերթը հասաւ Խուարազմին, որ ընկաւ դիմադրութիւնից յետոյ: Մոնղոլները կատաղած բուռն դիմադրութեան թափից, սրի քաշեցին բոլոր բնակիչները, բացի արհեստաւորներից, վաճառականներից, որոնք փոխադրուեցին Մոնղոլիայի զանազան կողմերը: Ըստ Արաբ նշանաւոր պատմիչ Ռաշիդ–էդ–Դին Ֆադլուլլայի (ըսպանուած 1318 թ.) Ջամիութ–Թավարիքի – Jamiut-Tawarik *) Մոնղոլ պաշարող զինուորների թիւը հասնում էր 500,000–ի եւ դոցանից իւրաքանչիւրին հասաւ քսանեւչորս գերի, որոնց բոլորին եւս սրի անցրին: (– 1,200,000): ըՍպանուածների շարքի մէջ պակաս չէր նաեւ թիւը ականաւոր անձերի, ինչպէս Պարսիկ նշանաւոր պալատական բանաստեղծ Նաջմ–ուդ–Դին Կուբրան — Najm ud Din Kubra **)–, որ յայտնի է իր Զահար – Մաղալայ –ով: Նոյն վիճակին ենթարկուեցին եւ Տիրմիդ – Tirmidh – քաղաքի բնակիչները: Իբրեւ անըմբռնելի անգթութեան մի պատկեր, յիշենք, որ այդ քաղաքի բնակիչներից մէկը, մի պառաւ կին, կլլել էր մի շատ թանգագին մարգարիտ, որպէսզի թշնամու ձեռքը չանցնէր: Եւ որովհետեւ անգթութիւնը ժամանակ չունէր աթոռ նստել արդարութեան հետ, կոյր ագահութիւնը հրաւիրուեց խնդիրը լուծելու եւ բոլոր կանանց ստամոքսները անգթօրէն հերձոտեցին՝ կենդանի թէ մեռած, անգին մարգարիտը գտնելու համար:

Մոնղոլների արեան ծարաւի վայրագութիւնը աճելով աճում էր նոցա յաջողութեան հետ զուգահեռ եւ սկսած այդ օրերից Թաթար–Մոնղոլ հրոսակների գթութեան գործ ու արարքի մասին այլ եւս եւ ոչ մի տեղեկութիւն է թողնուած պատմութեան էջերի վրայ: Ուր նոցա ոտքն էր կոխած, որ երկիրն էր մտած, որ քաղաքը գրաւած, որ ազգի ու ցեղի տիրած՝ ամէն տեղ նոյն կնիքն անգթութեան: Բալխ, Նուրատ–քիւհ, Նասա՛, Նիշապուր, Մերվ եւ ամէն տեղ նոյն անգթութեան պատկերն էր պարզւում, նոյն անգութ ջարդը՝ անխուսափելի հետեւանքներով, երբ քաղաքն էր տիրւում եւ կամ կամովին էր յանձնւում: Միայն Մերվի մէջ սպանուածների թիւը, ըստ Իբն–ուլ–Աթիրի, հասնում էր 700,000ի, այն ինչ Ջահան–Գուշայի հեղինակը՝ Աթա–Մալիք Ջուվայնին այդ թիւը հասցնում է 1,300,000–ի, «առանց հաշուի առնելու նոցա, որոնց դիակները մնացին ծածկուած գաղտնի թագստոցների մէջ»: Նիշապուրի

---

*) D'Ohsson: *Hist.* vol. I, p. 262—70.

**) E. G. Brown: A Liter. Hist. of Persia, vol. II, p.336-27. *Տես* Jami–*ի* Nafahatul-Uns, p. 486—87, ed. Lees.

*մէջ սպանուածների գլուխները անջատուեցին մարմիններից, որպէս պատա-
հաբար դեռ ողջ մնացած մէկը չազատուէր եւ այդ կտրած կառափներից կանգ-
նել տուին սոսկումի բուրգեր եւ աշտարակներ՝ կանանց, այրերի եւ փոքրների
գլուխներից առանձին-առանձին կոթողներ կանգնելով: Հերաթի վիճակը հա-
մեմատաբար աւելի լաւ էր, սակայն Բամիյանը –* Bamiyan *–, որի գրաւելու
ժամանակ Մոնղոլ մի իշխան էր զոհ գնացած, կատարելապէս անհետ դարձ-
ուեց, նոյն իսկ քաղաքի աւարն ու կողոպուտը կրակի տալով,– այնպէս որ
հարիւր տարի իսկ յետոյ՝ Բամիյանի տեղն աւեր էր ու աւերակ, առանց շունչ
ու կենդանութեան:*

*Եւ որպէսզի բան չմնար իրենց անցած հետքի յետեւից եւ աւերը կատարեալ
լինէր, Մոնղոլները յաճախ ոչնչացնում եւ այրում էին իրենց պէտք չեղած հա-
ցահատիկները: Յաճախ էր պատահում, որ որեւէ քաղաք աւերելուց եւ հե-
ռանալուց մի քանի օր յետոյ, ուղարկում էին մի հրոսակախումբ, որ գալիս,
կրկին մտնում էին քաղաք եւ եթէ թագստոցներից ելած եւ փախուստի դիմած
խեղճ ու կրակ անձեր եկած, ապաստանած էին աւերի ծոցում, նոցա եւս սրի
անցնէին, կոտորէին եւ անցեալից հետք իսկ չթողնէին: Այսպէս եղաւ, օրինակ
Մերվի չար բախտը, ուր Մոնղոլների հեռանալուց յետոյ շուրջ* 5000 *անձեր,
պրծուած մահից ու ջարդից, հաւաքուել էին, իրենց արեւի ձէնն-ածելու:
Զարդարար հրոսակախումբը մինչեւ վերջին փոքրը կոտորեց, ոչնչացրեց:*

*Տանջանքն ազատ եւ անգթօրէն էր գործադրւում, որպէսզի յաղթուած-
ներն իրենց թագստոց գանձերի տեղը յայտնէին: Եւ ինչպէս պէտք էր ակնկա-
լել, մարդկային կեանքին այնքան անարժէք գին տուող վայրագ Թաթարները
ոչինչ արժէք պիտի տային նաեւ մարդկային մտքի գանձերին՝ գիր ու գրակա-
նութեան, արուեստի ու մշակոյթի արտադրութեան, որոնք պահպանուած էին
այնքան խնամք ու գուրգուրանքով այդ հին քաղաքների ծոցում, որոնց մասին
այնքան յիշատակութիւններ են հասած մեզ,– եւ այդ բոլորն անխնայ ձեռքով
հրոյ ճարակ դարձրին, ոչնչացրին:*

*Աթա-Մալիք Ջուվայնին պատմում է իւր* Tarik-i-Jahan-Gushan-*ի մէջ,
թէ բոլոր այն Մուսուլման երկրների մէջ, ուր Թաթարներն անցան՝ բնակ-
չութեան հազարից մէկը չազատուեց եւ ողբալով ասում է, որ եթէ «մինչեւ
վերջին Դատաստանի օրն անգամ եւ ոչ մի դժբախտութիւն չպատահէր», որ-
պէս զի չարգիլէր Խուրասանի –* Khuraasan *– եւ Իրաք-ի-Աջամ-ի –* Iraq-i-Ajam
*– բնակչութեան աճքը, այնու ամենայնիւ այդ երկու երկրամասերի ազգաբը-
նակութեան թիւը չէր կարող հասնել մի տասներորդին այն քանակի, որ ունէր
Մոնղոլների արշաւանքից առաջ:**) *Մոնղոլների աւերի, անգթութեան սար-
սափի յուշն անգամ մահացու դողով էր պատում ամէնքին եւ երբ նոցա մու-
նետիկի, սովորական բառերի հնչիւնն էր լսւում պաշարուած քաղաքի բնա-
կիչների ականջին,– «Եթէ երեք օրից յետոյ քաղաքը չյանձնէք, անհնար է*

---

*) D'Ohsson: *Hist.* vol. I, p. 350–51.

տանել, թէ ի՞նչ կարող է պատահել: Աստուած միայն գիտէ գալիքը» ,– եւ քաղաքը յանձնւում էր գիտենալով գլխին գալիքը: *)

Մոնղոլների սովորութիւնները, նիստ ու կացը, ինքեան պժգալի էին, բայց աւելի եւս Մահմետական երկրի բնակիչների համար: Նոքա ուտում էին ոչ միայն Իսլամի արգիլած անսուրբ բաները, այլ եւ կենդանիներ, որոնք իրենց էութեամբ զզուելի էին,– մկներ, կատուներ, շներ եւ նոյն իսկ աւելին,– "Cibi eorum" — ասում է Jean Plan de Carpin — "sunt omnia quae mundi possunt; vitimus eos etiam pediculus manducare": f) Ոչ միայն ատում էին լուացուելն ու լողանքը, այլ եւ քրէական յանցանք էին համարում այն, մանաւանդ, եթէ պէտք էր ձեռքերն ու մարմինը եւ զգեստները լուանալ հոսող ջրի մէջ: Քրէական յանցանք էր նաեւ անասունը մորթելը՝ վիզը, կոկորդը կտրելը,– որ միակ օրինական, օրէնքով արտօնուաօ եղանակն էր Իսլամի հետեւողների աչքին, երբ կենդանու միսը պիտի ուտուէր,– դորա փոխարէն սրով պատառւում էր փորը եւ ձեռքը ներս տանելով սիրտն էր դուրս կորզւում եւ ճմլւում: **)

Այս բոլորի հետ ծայրահեղ ազատախոհ էին եւ թոյլատու կրօնական խնդիրների նկատմամբ եւ նոյն իսկ որոշ արտօնութիւններ էին շնորհում, ինչպէս օրինակ ապահարկ դարձնում բոլոր կրօնների պաշտօնեաներին, բժիշկներին եւ որոշ դասի անձերի: Չինգիզ–Խանի համար քաղաքականութեան որոշ սկզբունք էր կրօնների հաւասար վիճակը եւ իւր համակրութիւնն ու հակումը եւ ոչ մէկին չնորհել, միաժամանակ: Քուբլայ–Խանը (1257–1294) առաջինն էր Մոնղոլ Հարստութեան իշխանների մէջ, որ յարեց մի կրօնի, այն է Բուդդայականութեան. այն ինչ Թուղաղար (Ահմէտ) Խանը (1282–84) եւ Խազան կամ Ղազան Խանը (1295–1304) առաջինն էին, որ ընդունեցին Իսլամը, որն եղաւ եւ նոցա յաջորդների կրօնը՝ Պարսկաստանում: Այսպիսով, Քրիստոնեաների ներքին յոյսերն ու երազները,– Մոնղոլներն իրենց հաւատքին բերել եւ իրենց հետ կապել եւ միաժամանակ եւս Իսլամին մի մահացու հարուած տալ,– ջուրն ընկան եւ կորան եւ Քրիստոնէական կրօնի այլ եւ այլ ներկայացուցիչների չարունակ մղած ջանքերի պտուղները մնացին միայն իբրեւ եռանդի եւ յոյսերի յիշատակներ, իսկ Մոնղոլ Պետութեան Գարա–Գորումի արքունիքն ուղարկուած այլ եւ այլ դեսպանութիւնները եւ առաքելութիւնները, որ յիշատակուած եւ գրի են առնուած, իբրեւ պատմական յուշեր ճանապարհորդութիւնների եւ պատմական փորձառութիւնների, գրի առնուած Jean de Plan Carpin–ի (որ աւելի յայտնի է Planocarpi անունով), Ռուբրիքիսի – Rubriguis — (Guillaume de Ruysbrock) եւ այլ վանականների կողմից, որ քաջութեամբ դիմադրեցին

---

*) Նոյնը

f) Նոյնը — vol. I, p. 411.

**) Մոնղոլների այդ սովորութիւնը վերահաստատուեց Քուբլայ–Խանի կողմից, որի մասին խօսում է D'Ohsson-ը vol. II, p. 49–92.

Հազարաւոր դժուարութիւններ ու վտանգների, յոյսը միշտ անշէջ իրենց սրտերի մէջ, թէ Քրիստոնեայ Եկեղեցին մեծագոյն նեցուկը պիտի ունենայ Արեւելքում,– այդ բոլորը յօդս ցնդեցին ու կորան: Սակայն այդ երազանքներն ապրեցին բաւական երկար ու տասնեակ տարիներ, մինչեւ որ Արեւմտեան Քրիստոնէութիւնը, յանձին իւր պապերի ու թագաւորների՝ իրապէս եկաւ այն եզրակացութեան, թէ Թաթարների մեծ Խանի երբեմնակի գրած նամակները՝ Մոնղոլ լեզուով եւ Ույղուր – Uyghur – գրութեամբ, այլ եւս անօգուտ յուշեր են եւ ոչ մի հիմք կարող էին ծառայել, թէ Մոնղոլներին կարելի էր քրիստոնէացնել,– ինչպէս կարելի է պարզօրէն տեսնել Ուլեայտու Խուդաբանդայի – Uljaytu Khuda-banda Անգլիայի Եդուարդ Բ.ի (1284–1327) գրած նամակից, (1307 Թ. Հոկտ. 16–ին: *)

Մոնղոլների արշաւանքը, չը նայած իւր անվերջ կործանումներին եւ կեանքի, գրականութեան, արուեստի եւ մշակոյթի վերայ թողած աւերի հետքերին, մանաւանդ Արաբական քաղաքակրթութեան վրայ, որ ամբողջ վեց դարեր արտասովոր մի կենսունակութեան շունչ էր մտցրել եւ ջիղ, որ տակաւին շարունակեց պահպանել իւր այդ մղիչ արտակարգ–բացառիկ ազդեցութիւնն Արաբների տիրապետութեան անկումից իսկ յետոյ,— Մոնղոլների արշաւը, թերեւս ունէր իւր մէջ որոշ դրդիչ տուող եւ կենդանութիւն արծարծող տարրեր: Պէտք է նկատել, որ Մոնղոլ նկարագիրը,– չը նայած իւր յախուռն ղայրույք–կործանելու ունակութեան, սակայն եւ այնպէս թագցրած էր իւր մէջ որոշ բարիքի ազդեցութիւն եւ կարողութիւն: Սակաւաթիւ այդ բարի հետեւանքներից մէկն էր այն պարագան, որ շնորհիւ նոցա՝ այնքան իրարից բաժան–բաժան ու տարբեր ազգութիւններ, ժողովուրդ ու ցեղեր իրար հետ հաղորդակցութեան մտան եւ խառնուեցին, որով ազգերի անշարժ, իրարից բաժանուած, ճահճացած վիճակը մի նոր մտաւոր կեանքի հոսանք ստացաւ եւ թարմութիւն զգաց անցնող, աւերող այդ փոթորկից յետոյ: Եւրոպայի մէջ, եթէ ոչ գլխաւոր դրդիչը, գոնէ էական պատճառներից մէկն եղաւ Վերածընունդի Դարի, որովհետեւ այդ փոթորիկն էր, որ խլեց Օսման Թուրքերին Խորասանի անյայտութիւնից եւ ձգեց, մղեց Բիւզանդական Կայսրութեան սահմանները, դարձրեց նոցա գլխաւոր եւ գերագոյն պատասխանատուն Բիւզանդական Կայսրութեան կործանման եւ Յոյն ցեղի լաւագոյն մտքերի եւ նոցա գրական հարուստ ժառանգութեան գանձերը սփռեց Եւրոպայի ամէն մի անկիւն: Այդ արշաւանքն էր դարձեալ, որ ոտքի տակ տալով հարիւրաւոր զատուած սահմանների արգելքը եւ իւր մէջ կլանելով բազմաթիւ ու այլազան ցեղեր ու պետութիւններ, մեծ ու փոքր, ուժեղ ու թոյլ, դիւրութիւն տուեց Մարկոյ Պոլոյի նման ճանապարհորդներին հաղորդակից դարձնել Եւրոպան

---

Տես D'Ohsson, vol. IV, p. 592—94.– Նաեւ Abel Remusat: *Memoires sur les relations politiques des Princes chretiens et particulierement des Rois de France avec les Empereurs Mongols.*– Տես նաեւ Ուսումնասիրութեանս Յաւելուած Գ. եւ Դ.–

այն զարմանալի ու հետաքրքրական պարագաներին, որ այնքան յամառ գաղտնապահութեամբ մօտաւոր եւ հեռաւոր Ասիան էր պահում իր ծոցում: Նոյն այդ արշաւանքն էր, որ Ասիայի սրտի եւ կրծքի վերայ ի մի բերեց, նախ իբրեւ յամառ մաքառող տարրեր, ապա իբրեւ խորհրդանիշ իրար հասկացող ոյժեր՝ Պարսիկներն ու Արաբները, Չինացիներն ու Տիբետցիները, *) իրար դէմ առ դէմ կանգնեցնելով, իբրեւ հաւասար հաւասարի հետ, որ գոյութիւն չէր ունեցած հինգ–վեց դարերից ի վեր եւ Քրիստոնէական կրօնի վանականները, Իսլամի ղատիները, Բուդդայական Լամաները, Մոնղոլ bakhshi–ները (– բուժակներ կամ կրօնական արարողութիւն կատարողներ), ինչպէս եւ միւս կրօնների եւ աղանդների ներկայացուցիչները,– իրար հանդիպելու, իրաւախոհ եւ փոխադարձ զիջումների մտայնութեամբ:

Փոխադարձ զիջումների եւ իրաւախոհութեան ուղիներն աւելի հարթուեցին, երբ Հուլաղու–Խանի յաջորդները Պարսկաստանում ընդունեցին Իսլամի վարդապետութիւնը, հրաժարելով իրենց հեթանոս–կռապաշտական հաւատալիքներից, որ շուտով առաջնորդեց Գարագորումի մէջ հաստատուած իրենց արենակիցներից բոլորովին բաժանուելու հետեւանքին եւ ժամանակի ընթացքին եւս վերջնականապէս ձուլուելով եւ միանալով իրենց նուաճած ազգի հետ: Մոնղոլների տիրապետ՝ Հուլաղու–Խանը, չը նայած կրօնական անհանդուրժող ոգուն դէպի Իսլամը, չը նայած որ Բաղդադի աւերը նորա հրամանով կատարուեց, սակայն պաշտպան էր ժամանակի Պարսիկ գրականութեան եւ մեծ յարգանք ունէր դէպի նորա ներկայացուցիչները, ինչպիսիք էին Նասր–էդ–Դին Թուսի աստղագէտ–թուագէտը եւ պատմիչ Աթա–Մալիք Ջուվայնի որ գրած է Tarikh-i-Jahan-Gusha (— Պատմութիւն Աշխարհակալին Աշխարհի, այսինքն Չինգիզ–Խանի): Երկու այլ պատմիչներ,– Աբդուլ–լահ Բին Ֆադլուլ–լահ Շիրազի, որ աւելի ծանօթ է Վասսաֆ–ի–Հադրատ անունով, որ ջատագով էր Մոնղոլ տիրապետութեան եւ վազիր Ռաշիդ–ուդ–Դին Ֆադլուլ–լահ–, որոնք ծաղկեցին աւելի յետոյ, Խազան Խանի ժամանակ (1295–1304), երկուսն եւս Պարսիկ գրականութեան ներկայացուցիչներն են իբրեւ գրող եւ գիտուն:

Պարսիկ գրականութիւնը, պէտք է ասել, հազիւ թէ որ եւ է վնասակար ազդեցութիւն կրեց Մոնղոլ արշաւանքից, քանի որ այդ գրականութեան ա–

---

*) Պարսիկ երկու չափագէտ–ճարտարապետներ,– Ալա–ուդ–Դին եւ Իսմայիլ, 1272 թ. իրենց հմտութիւնն ի սպաս դրին Քուբլայ–Խանին Չինաստանի մէջ, Ֆանչինգի պաշարման ժամանակ (D'Ohsson: Hist. II, p. 389). իսկ Հուլաղու–Խանը 1296 թ. Պարսկաստանի եւ Բաղդադի արշաւանքի ժամանակ, իւր հետ բերեց հազար Չինացի մեքենագէտ–ճարտարապետներ, որպէսզի բաբաններ եւ այլ կառուցուածներ չինեն պաշարման համար. (Նոյն հտ. Գ. էջ 135): Պարսիկ նշանաւոր աստղագէտ եւ փիլիսոփայ Նասր–էդ–Դին Թուսին Չինացի աստղագէտ եւ տոմարագէտ գիտունների օգնութեամբ էր, որ Հուլաղու Խանի համար պատրաստեց աղիւսակը – Zij –, շուրջ 1259 թ. (Նոյն, vol. I, p. 265):

մէնից նշանաւոր երեք բանաստեղծներն, այդ շրջանի, Սաադին Շիրազցի, Ֆարիդ–ուդ–Դին Աթթար եւ Ջալալ–էդ–Դին Ռումի, ինչպէս հետագայ ականաւոր այլ բանաստեղծներ իրար յաջորդեցին՝ պահելով Պարսիկ բանաստեղծութեան հմայքը երկրի մէջ եւ նորա ազդեցութիւնն անարգել տարածելով մօտաւոր, սահմանակից երկրների մէջ, (որոնցից մէկն էր եւ Հայաստանը)։ Միայն Մոնղոլների արշաւանքը Բաղդադի վերայ, Իսլամի այդ նշանաւոր մայրաքաղաքը, դրականութեան, գիտութեան, արուեստի այդ մեծ կեդրոնը՝ զրկեց իւր փառքից ու հմայքից, վերածելով այն գաւառական մի քաղաքի, որով եւ բախտորոշ մի հարուած հասցրեց այն ըստ երեւոյթին գոյութիւն ունեցող միութեան, որ մինչ այն ենթադրւում էր, թէ կար Մահմետական աշխարհի մէջ, ինչպէս եւ Արաբական լեզուի գերակշիռ դերին եւ տիրապետ դրութեան Պարսկաստանի մէջ, որ գլխաւոր ազդակն էր ու մղիչը մշակոյթի մինչ այդ,— այնուհետեւ դարձաւ աստուածաբանական եւ իմաստասէր երկերի լեզու,– այնպէս որ սկսած ԺԳ. դարու վերջերից, Արաբ լեզուն դադարում է ազդեցիկ դեր կատարել Պարսկաստանում եւ նորա դերն ու ազդեցութիւնն անցնում է բուն Պարսիկ լեզուին։

*

* *

Ջինգիզ–Խանի Արշաւանքի ծանր ու խաւար օրերին, երբ Պարսիկ աշխարհի երկինքն էր մութ պատել այրուող քաղաքների եւ աւանների ծխից եւ հողն էր խմմուած իւր զաւակների արիւնով՝ Խուարազմ Շահերի յաջորդ Ջալալ–էդ–Դինի անձը իբրեւ մի կարճօրեայ աստղ՝ երեւում է իւր ամբողջ փայլ ու շողով քաղաքական հորիզոնի վրայ եւ անցնում առանց հետք թողնելու։ Պատմութեան անվեհեր ու արի իշխաններից, թերեւս եւ ոչ մէկն, այնքան յամառութեամբ էր մաքառած անյոյս մի դատի եւ նպատակի համար, որքան Ջալալ–էդ–Դին Խուարազմ–շահը եւ թերեւս շատ աւելի բախտաւոր օրերի արժանի մի տիրապետ լինելու արժանիք ունէր, քան յուսակտուր եւ յուսախաբ, անզօր ու անօգնական մի իշխողի, որ պիտի մեռնէր (1231 թ.) Քուրդ մարդասպանի ձեռքով։

Տեսանք, թէ ինչպէս իւր հայրը Ալա–ուդ–Դին Սուլթան Մահմուտ Խուարազմշահը Մոնղոլների ահ ու սարսափից՝ կատաղի գայլից փոխարկուած փախստական, վախկոտ նապաստակի, մեռաւ 1220 թ. Կասպից Ծովի փոքրիկ մի կղզու վրայ, այն ինչ իւր դաժան ու զոռով տատը, Թուրխան–Խաթունը, Խուարազմը թողնելուց առաջ հրամայել էր կոտորել Սելջուկ իշխանուհի Գուր–ը– Ghur – եւ միւս բոլոր արքայական տան անդամները, որոնք այնտեղ էին իբրեւ պատանդ *),– ինքն եւս իբրեւ գերի վարուեց Ջինգիզ–Խանի ձեռքով Գարագորում, 1223 թուին եւ նորա հրամանով կանգ առաւ սահմանագլխի վրայ՝ վերջին հրաժեշտ հայեացքը ձգելու իւր հայրենի հողի վրայ եւ արցունք թափելու, նախ քան Խուարազմշահերի հողամասից ոտքը դուրս

*) D'Ohsson: *Hist.*, vol. I, p. 258–59.

դնէր : *) Եւ այդ օրերին Ջալալ–էդ–Դինը քաջալերուած իւր հօր օրհնութեամբ, նորա սուրն ածելով իւր մէջքին, վերահաս փոթորկի վտանգից խուսափել կարող էր միայն դէպի Հնդկաստանի սահմանները փախչելով **) եւ այդտեղ էր որ կատարեց իւր արութեան գործերից մէկը, եթէ ոչ մեծագոյնը : Ինքը եւ իւր փոքր բանակն Ինդոսի ափերին բռնուեցին Մոնղոլ հետապնդող աւելի մեծ եւ ուժեղ բանակի կողմից : Այդտեղ յուսահատ դիմադրութիւնից յետոյ, որն առաջնորդեց այնքան մեծ քաջութեամբ, արեւածագից մինչեւ կէսօր եւ տեսնելով, որ ճակատամարտը կորած է անդարձ, նա վերջնական եւ յուսահատ մի գործ կատարեց,– դարձրեց ձիու գլուխը դէպի գետը, զրահ ու աւելորդ զէնքեր մի կողմ նետելով, ձիու հետ խորասուզուեց գետի ջրերի մէջ, լողալով անցաւ գետի միւս ափը· իւր հետեւորդները եւ բանակի մնացորդն օրինակ առնելով նորանից, գետը թափուեցին, ուր շատերը մահ գտան՝ խեղդուելով կամ նետահար եղան Մոնղոլների կողմից : ***)

Ազատուած փոքր բանակի մնացորդները կարգի բերելով՝ առաջին գործը եղաւ յարձակուել Հնդիկ մի իշխանի՝ Ջուդիի դէմ· քաջալերուած այդ առաջին յաջողութիւնից, ուժեղացած նոր յաւելուածական զինուորներով եւ պաշարով, յարձակուեց երկու այլ իշխանների, Սինդի՝ Ղարաջա իշխանի եւ Դելհիի՝ Իլթամիշ իշխանի միացեալ ուժերի դէմ, գրաւեց նոցա երկիրները, պահեց իւր ձեռքի մէջ, մինչեւ որ հետապնդող Մոնղոլ ուժերը յետ քաշուեցին եւ ինքը կարողացաւ կրկին մտնել Պարսկաստան եւ յաջողեց գրաւել իւր հօր պետութիւնը :

Իւր կեանքի մնացած ութ տարիների պատմութիւնը հասել է մեզ իւր անձնական քարտուղարի՝ ան–Նասավիի կողմից գրուած Յուշերի մէջ: *) Ջալալ–էդ–Դինն ստիպուած էր մաքառել ամէնքի դէմ· պիտի պաշտպանուէր ոչ միայն Մոնղոլների դէմ, որոնք կրկին սկսել էին հետապնդել նորան, այլ եւ դիմադրել իւր եղբօր՝ Ղիյաթ–ուդ–Դէնի դաւերի, ինչպէս եւ Քիրմանի կառավարիչ Բուրաղ–Հայիբի էմ : Եւ իբրեւ թէ այսքանը բաւական չէր, ըս–

---

*) Նոյնը — vol. I, p. 322.

**) Նոյնը — vol. I, p. 255.

***) Նոյնը — vol. I, p. 306 չր ·— Ըստ Jahan Gusha–ի հեղինակի, իւր մայրը, կինը եւ միւս ազգակից կանայք, որոնք իւր հետ էին, ընկան Մոնղոլների ձեռքը· բայց ըստ an-Nasawi–ի իւր՝ Ջալալ–էդ–Դինի անձնական քարտուղարի տուած տեղեկութեան համաձայն՝ Ջալալ–էդ–Դինը անկարող լինելով ազատել նոցա, հրամայեց, նոցա իսկ խնդրի համաձայն, խեղդել գետի մէջ, որպէսզի վայրագ թշնամու կողմից աւելի ծանր վիճակի եւ անպատուաբեր մահուան չենթարկուին :

†) Shihad-ud-Din Muhammad an-Nasawi, որ գրած է Ջալալ–էդ–Դինի Յուշերը, (գրուած 1241–42, A.H. 639) · հասած է Արաբ բնագրով, որի Ֆրանս. թարգմանութիւնը կատարած եւ հրատարակած է Houdas, Paris, 1891, 1895.— E. G. Brown: *A Liter. Hist. of Persia*, vol. II. 473.—

տիպուած էր դիմադրել եւ Բաղդադի Խալիֆին, պատժել Թուրքմաններին եւ «Իսմայիլի»-ներին *) եւ ապա արշաւել Վրաստան:

Վրաստանի արշաւանքի մասին մեր պատմիչներից Կիրակոս Գանձակեցին յիշատակելով՝ պատմում է,— «Կալաւ զաթոռն Աղուանից Տէր Յովհան բազում ամս... Հաստատեաց զաթոռ իւր ի սահմանս Զարեքին՝ ի քարի անդ... Նեղեալ յայլազգեաց՝ դիմեաց գալ յաշխարհս Հայոց առ մեծամեծ իշխանսն առ Զաքարէ եւ Իւանէ եղբայր նորա: Եւ նոքա մեծաւ պատուով ընկալան զնա

---

*) Այդ անունով էին յայտնի Իսլամի հետեւողների մի որոշ դասակարգ, որ կապուած էին Բաղդադի Ֆաթիմեան խալիֆների հետ եւ նոցա գլխաւոր պաշտպանն էին, հակառակ Հիւս. Աֆրիկայի կամ Եգիպտոսի Խալիֆայութեան: Այդ անունն էին ստացել եօթներորդ իմամի Մահամմեդ իբն Իսմայէլին ի պատիւ, որի թոռն էր եղած Ֆաթիմեան տան առաջին խալիֆը: Իբրեւ կրօնական աղանդ եւ Իսլամի հետեւողների մէջ որոշ գաղափարի տարածողներ ու քարոզիչ, թերեւս կարելի է զուգադրել Արեւմտեան Քրիստոնեայ աշխարհի Եզուիտների կարգի անդամների հետ: Արեւելքում նոքա ունէին մեծ դեր եւ ազդեցութիւն, ահ ու սարսափի տակ պահելով իրենց հակառակորդներին, ուր էլ լինէին եւ ինչ դիրք եւ գրաւած լինէին վերջիններս, սկսած արքունիքից, մինչեւ համեստ դասերը: Հետեւում էին իրենց նպատակներին յամառ ու անյողդողդ. նոցա համար «նպատակն արդարացնում էր միջոցը» եւ չէին քաշւում ո՛չ մի բանի միջոցից,— սուր, թոյն, խեղդ, առեւանգում՝ ամէն ինչ ներելի էր, միայն նպատակին հասնէին: Արեւելքում նոքա յայտնի էին նաեւ Malahida կամ Molahid («կորուսեալ» Lost one) Jeremiah Curtin: *) — Աղանդաւոր անունով: Մեր Պատմիչները պահպանել են այդ եզրը Մուլհիդիք ձեւով: «Մի ոմն յաւազացն, պատմում է Կիրակոս Գանձակեցին... Օրղան անուն... բազում չարչարանօք նեղէր զբնակիչս քաղաքին Գանձակայ, ոչ միայն զքրիստոնեայսն այլ եւ զՊարսիկս հարկապահանջութեամբ բազմաւ: Եւ սպանաւ ինքն ի նմին քաղաքի ի Մուլհիտացն, որք սրով, նենգութեամբ սպանանեն զմարդիկ. մատեան առ ոմանք՝ մինչդեռ գայր ընդ փողոց քաղաքին, իբր թէ զրկանս կրեալ իցէ նոցա յումեքէ եւ առ նա մատեան տալ իրաւունս, ցուցին նմա թուղթ ի ձեռին ունելով, աղաղակեցին եւ ասեն. «Դա՛տ, դա՛տ»: Եւ իբրեւ տեղի առ նա եւ կամէր հարցանել, թէ ո՞վ իցէ նեղեալ զնոսա, նոքա աստի եւ անտի յարեան ի վերայ եւ սրով, զոր ունէին ի ծածուկ, խոցեալ սպանին զնա... Եւ զսպանողսն նորա հազիւ կարացին սպանանել նետիւք, զի զբաղումս խոցեալ փախեան ի մէջ քաղաքին. զի այսպէս սովոր են առնել ազգն այն, որ բնակեալ են յամուր տեղիս, զոր Թուն եւ Թանջահ (= Tun յիշուած է Ibn-ul-Athir-ի կողմից, իբրեւ «Իսմայէլի»-ների ապաստան վայրերից մէկը, սակայն այդ անունների մէջ չենք հանդիպում Թանջահ անուան, յիշատակուած անունների մէջ կան Khalanjan, այդ նո՞յնն է: X. 109-111. — E. G. Brone: Lit. Hist. of Persia.

*) (The Mongols in History, Boston, 1908, Chapter XI, p. 197):

«եւ բնակեցոյց զնա Իւանէ ի գաւառն Միափոր, ի վանքն, որ կոչի Խաչմի:
«Սա սկսաւ շինել անդ եկեղեցի մեծ եւ հրաշալի եւ մինչեւ աւարտեալ էր՝ խա-
«փանումն եղեւ, զի եկն Սուլտանն Խորասանայ՝ Ջալալատին կոչեցեալ եւ
«եհար զԹագաւորութիւնն Վրաց եւ խոստացաւ մի զկնի միոյ գալ զօրաց այլ-
«ազգեաց եւ աւերել զաշխարհս Հայոց, Աղուանից եւ Վրաց»: (Կիր. Պատ.
Գլ. Է. էջ 171–172. հրտ. Ղուկ. Թիֆ. 1909):

Այս դէպքը, հաւանօրէն, տեղի էր ունեցած 1222 Թ., որովհետեւ հետեւեալ տարին, 1223–ին, Ջալալ–էդ–Դինը տեսնում ենք իւր աւերն ու իշխանութիւնը հասցրած մինչեւ Քիրման, Ֆարս եւ Իսպահան եւ Ռէյ. (այժմեան Թէհրանի մօտ) *): Երկու տարուց յետոյ, 1225 Թուին, պարտութեան է մատնում Խալիֆի զօրապետ Ղուշ–Թէմուրը – Qushtimur–, հալածում է նրան, համարեա, մինչեւ Բաղդադի դարպասը, գրաւում է Թաւրիզը եւ կրկին յարձակում Վրաստանի վրայ, ծանր հարուած հասցնելով ե՛ւ Վրացիներին ե՛ւ նոցա հետ քաղաքական կապերով կապուած Հայերին:

---

հատ. Բ. էջ 204), « այլ եւ ի մայրիսն Լիբանանու առնուն զզինս արեան իւր-
«եանց յիշխանէն իւրեանց, զոր պաշտեն փոխանակ Աստուծոյ եւ տան զորդիս
«եւ զկինս իւրեանց: Եւ նոքա երԹեալ ուր եւ առաքէ իշխան նոցա, բազում
«ժամանակս դեգերին ի կերպս եղեալ, մինչեւ պատեհ ժամանակս գտցեն ըս-
«պանման, եւ սպանանեն զոր եւ կամին: Վասն այսօրիկ երկնչին ի նոցանէ,
«ամենայն իշխանք եւ Թագաւորք տան հարկս նոցա, եւ սաստիկ կատարողք
«են հրամանաց իշխանին իւրեանց, զոր ինչ եւ ասէ՝ մինչ ի մահ անձանց իւր-
«եանց ոչ խնայել եւ այսպէս զբազում մեծամեծս սպանանեն նոքա»: Կիր.
Գանձ. Պատմ. Գլ. ԺԹ. էջ 214–215, Հրատ. Ղուկ. Տփխ. 1909 Թ.

Եւրոպայում դոքա յայտնի էին Assasins անունով, (որից եւ ծագումն է առնում Ֆր. Assasin — սպանող, մարդասպան բառը), իսկ ղեկավարը կոչւում էր Le Grand Assasin, որ հաստատուած էր Լիբանանի լեռնոտ մասի անմատչելի մի բերդի մէջ, ունէր անսահման իշխանութիւն իւր հետեւողների վրայ, որի հրամանը գործադրւում էր անխօս հնազանդութեամբ եւ ճշդութեամբ, որքան եւ անհնարին լինէր կամ համարուէր տուած հրամանը: Նոցա հաւատալիքների, ուսման եւ ձգտումների մասին տես de Sacy *Expose de la Religion des Druzes*, Paris, 1838, երկու հատոր:— Guyard, *Fragments relatifs a la doctrine des Ismaelis ... avec traduction et notes.*— Paris, 1877.— de Goeje: *Memoires sur les Carmathes du Bahrain et les Fatimides.*— Layden, 1886.— *Assassin* բառի ստուգաբանութեան եւ գործունէութեան մասին տես E. G. Browne: *A Liter. History of Persia.* Հտ. Բ. էջ 204 եւ շր.— Այդ ընկերշակութեան սկզբնաւորութեան, աճման եւ բնաջնջման մասին տես Jeremaiah Curtin· *The Mongols, a History,* Bost. 1908 գլ. XI–XII էջ 197–246.—

*) Rei — Rey, Հին օրերի «Ռագա»–ն — Raga, Ragha (ըստ Աւեստայի) կամ Rages, աւերակ այժմ, որն անցեալի իւր փառքի օրերին Եկբատանի հետ

Կրկին պիտի դիմենք Կիրակոս Գանձակեցուն աւելի մանրամասն տեղեկութիւնների համար: Պատմում է, թէ Մխիթար Գօշի օրերին էր, որ Գետկայ վանքի, Նորն Գետկայի մէջ, ձեռնարկեցին «շինել այլ եկեղեցի մի հինգ խորանօք, կոփածոյ եւ տաշած վիմօք, գմբէթաւոր եւ գեղեցիկ շինուածով: Եւ... ընդմիջեցաւ եկեղեցին, խափանումն եղեւ յոլով ժամանակս, քանզի եկն Սուլտանն Խորասանայ Ջալալատինն կոչեցեալ եւ եհար զզօրս «Հայոց եւ Վրաց եւ աւերաց բազում գաւառս»: (Կիր. Պատմ. Գլ. ԺԸ. էʻ, 209–210): Հաւանօրէն այս հարուածը տրուեց 1224–ին վերջերը, որովհետեւ Կ. Գանձակեցին հետեւեալ գլխի մէջ շատ աւելի մանրամասն է պատմում երկրորդ արշաւանքը, որ տեղի ունեցաւ «ի ՈՀԴ թուականին» (:1225 Թ. Փ.):

«Ազգն հիւսիսոյ արեւելից, շարունակում է Գանձակեցին, որ Թաթար
«անուանէր ի նեղ էարկ զՍուլտանն Խորասանայ՝ զՋալալատին եւ եհար զզօրս
«նորա... հանին զնա փախստական ընդ աշխարհն Աղուանից եւ եկն նա ի քա-
«ղաքն Գանձակ եւ առ զնա. եւ կուտեաց իւր զօրս անթիւս ի Պարսից եւ ի Տաճ-
«կաց եւ ի Թուրքաց եւ եկն յաշխարհն Հայոց: Զայն տեսեալ Իւանէի, ազդ
«առնէ Թագաւորին Վրաց եւ ժողովէ զօրս բազումս կալ ընդդէմ Սուլտանին:
«Եւ հպարտութեամբ մեծամեծս փքանային եւ դաշինս եդեալ էին, թէ յաղ-
«թեսցեն նմա, զամենայն Հայ մարդ ի կրօնս Վրաց դարձուսցեն, որք ընդ ըշ-
«խանութեամբ նոցա եւ զընդդիմացեալսն սրով բարձցեն: *)... Եկն Սուլտանն
«ի գաւառն Կոտայից. գնաց եւ Իւանէ զօրօքն Վրաց եւ կայր հանդէպ նոցա
«ի վերոյ եւ տեսեալ զնոսա զանգիտեաց... Իսկ Սուլտանն յառաջ վարեալ
«զզօրս իւր կայր հանդէպ նոցա: Եւ իբրեւ զայն ետես իշխան մի յաւագացն
«Վրաց, Շալուէ անուն... եւ եղբայր իւր Իւանէ, արք քաջք եւ անուանիք եւ
«յաղթողք ի պատերազմի, ասեն ցայլ զօրսն. «Դուք կացէք, մնացէք վայր
«մի եւ մեք երթեալ խառնեսցուք ի նոսա. եթէ դարձուսցուք ի նոցանէ զոմանս

---

Իրանին տիրապետող քաղաքի պատիւն էր վայելում: A. V. Williams Jackson: *Persia Past and Present*, 1906, Lond. էջ 419, 429 – 430.– Ռէյը յայտնի է նաեւ հնագոյն անունով, իբրեւ Հռագայ, Հռագաւ, Հռագիւս (Տովբ. Ա. 16.— Դ. 1. 21.– Ե. 7.— Զ. (3.– Թ. 2): Ռէյը, Ժ. դարում, ըստ Ibn Hawkal-ի Պետական կեանքի կեդրոնն էր Բոյիդների — Buyid — օրով:— G. Le Strange *The Lands of the Eastern Caliphate*: Camb. 1905 — էջ 186.–

*) Ազգերի պատմութեան եւ կեանքի ամենածանր րոպէների մէջ առաջին անգամ չէ, որ կարելի է հանդիպել այսպիսի megalomania–ի օրինակի: Փոխանակ մտածելու, թէ ի՞նչպէս դիմադրեն խուժած թշնամուն, Վրացիք մըտածում էին՝ ի՞նչպէս կրօնափոխ անեն Հայերին, թերեւս նորա համար, որ Իւանէի օրինակն ունէին աչքի առաջ, «զի Իւանէ խոտորեցաւ յաղանդն Քաղկետոնի... եւ սիրեաց զփառսն մարդկան առաւել»: Կիր. Պատմ. Գլ. Ե. էջ, 157:

«յետս, մեր է յաղթութիւն. եկա՛յք եւ դուք. ապա թէ նոքա մեզ յաղթիցեն,
«փախերուք դուք եւ ապրեցուցէք զանձինս ձեր»։ Եւ խառնեցան նոքա... կո–
«տորելով զզօրս Սուլտանին։ Իսկ զօրն Վրաց այնմ ուշ ոչ եդին, այլ փախ–
«եան... մինչ այր զընկեր ի փախուստ ոչ գիտէր, երթեալք առանց ուրուք
«հալածելոյ, ամենեքեան ի վախից ի վայր մղեալք ի ձոր անդր լնուին ի գը–
«լուխս քաղաքագեղն Գառնոյ։ Եւ իբրեւ տեսին զայն զօրքն Սուլտանին, զհետ
«մտեալ բազումս կոտորեցին եւ զայլս գահավէժ արարին։ Եւ եկեալ Սուլտանն
«ի գլուխ ձորոյն եւ ետես զայն ողորմ տեսիլն, զի իբրեւ զբերդուկս քարանց
«կուտեալ կային անդ բազմութիւն մարդկան եւ երիվարաց։ Շարժեալ զգլուխ
«իւր ասէ. «— Այս գործ ոչ է մարդոյ, այլ Աստուծոյ միայն, որ կարողն է
«ամենայնի»։ (Կիր. Պատմ. Գլ. ԺԹ. էջ 211–13)։

Հետեւեալ տարին, 1226 թուին, Ջալալ–էդ–Դինը «աւերեալ զբազում տեղիս գնաց ի քաղաքն Տփխիս եւ ձեռնտու եղեն Պարսիկքն, որ ի նմա եւ առ ըղքաղաքն եւ զբազումս կոտորեաց եւ զե՛ւս բազումս բռնադատէր թողուլ ըղՔրիստոնէութիւն... Հրաման ետ, որք հաւանին եւ որք ո՛չ... բռնութեամբ զամենեսեան թլպատել... եւ ընդ կանայս սխառնակէին... զայս ո՛չ միայն ի Տփխիս, այլ եւ ի Գանձակ եւ ի Նախաջաւան եւ յայլ տեղիս»։ (Կիր. Պատմ. Գլ. ԺԹ. 215)։

Նոյն թուականին Ջալալ–էդ–Դին Խուարազմշահն շտապում է Պարսկաստան վերադառնալ, դիմել դէպի հարաւ–արեւելք եւ պատժել Մոնղոլների հետ դաւադրական գործեր սկսած Բուրաղ–Հաջիբին։ Եւ հետեւեալ, 1227 թուին, կրկին պատժի է ենթարկում Թուրքմաններին եւ «Իսմայիլի»–ներին, պարտութեան է մատնում Մոնղոլներին Դամղանի մօտ – Damghan – (Թեհրան–Մաշադ ճանապարհի վրայ, շուրջ յիսուն մղոն հեռու Աստրաբատից) եւ հրամայում է չորս հոգի սպանել իւր ձեռքն ընկած ականաւոր անձերից, ապա պաշտպանում է Սպահանը Մոնղոլների դէմ եւ լսելով, որ Վրացիները դրացի ազգերի հետ միանալու փորձեր են կատարում, անակնկալ վերադառնում է, անձամբ մի մարտի մէջ յաղթում չորս ականաւոր քաջ մարտիկների, պարտութեան է ենթարկում կրկին Վրացիներին եւ ծանր պատիժների ենթարկում միաժամանակ, որովհետեւ «ընդ այն ժամանակս թագաւորութիւն Վրաց նուազեալ էր, զի էր ընդ ձեռամբ կնոջ, որում անուն էր Ռուզուդան, դուստր Թամարին, քոյր Շալային, թոռն Գէորգայ, վաւաշ եւ կաթոտ... ընդ բազմօք անկեալ եւ այրի մնացեալ, վարէր զիշխանութիւն թագաւորութեանն ի ձեռս զօրագլխացն Իւանէի եւ որդւոյ իւրոյ Աւագին եւ Շահնշահի որդւոյ Զաքարէի եւ Վահրամայ... յառաջ քան զսակաւ ժամանակս մեռեալ էր Իւանէ»։ (Կիր. Պատմ. Գլ. ԻԳ. էջ 224)։

Եւ մինչդեռ մտածում էր մահմետական իշխաններից մի դաշնակցութիւն

կազմել Մոնղոլների դէմ, 1229 թուին Մոնղոլները նորան յանկարծակիի են
բերում 30,000 բանակով Նուին Չարմաղանի – Noyan Charmaghun – առաջ-
նորդութեամբ, «այր խորագէտ եւ իմաստուն եւ յաջողած ի գործ պատերազ-
մի»: (Կիր. Գանձ. էջ 220): Հալածում են նորան եւ Ջալալ-էդ-Դինը քաշւում
է դէպի արեւմուտք, մտնում կրկին արեւելեան Հայաստան, «... Ջալալատին
«Սուլտանն դարձաւ մեծաւ ամօթով յաշխարհն Աղուանից ի բերրի եւ յար-
«դաւանդ դաշտն, որ կոչի Մողան եւ անդ ձմեռեալ, կամէր զօր ժողովել»:
(Կիր. Պատմ. էջ 217):

Ջալալ-էդ-Դինին յաջողում է, սակայն, գրաւել Գանձակը: «Չարմա(ղա)ն
«Նուին, չոգաւ... ի վերայ Ջալալադդնին, որ իշխէր Խորասանայ եւ գաւառացն
«եւ որ շուրջ զնովաւ, եհար, վանեաց զնա եւ զզօրս նորա եւ արար զնա փա-
«խըստական եւ ինքեանք կարգ առեալ (կանգ առեալ?) աւերեցին ամենայն աշ-
«խարհն Պարսից եւ զԱտրպատական եւ զԴիլմաց...»: (Կիր. Պատմ. էջ 220-
21): Բայց մինչ նոքա զբաղուած էին Պարսկաստանում, Ջալալ-էդ-Դինը մըտ-
նում է Գանձակ եւ «յանկարծակի հասին զօրք Թաթարին, պատեցին յամե-
նայն կողմանց», սակայն Ջալալ-էդ-Դինը խուսափում է:

Սորանից յետոյ, թւում է, թէ բախտն այլեւս չէ ժպտում նորան եւ նո-
րա անսահման եռանդը ջլատւում եւ թուլանում է. անձնատուր է լինում ար-
բեցութեան, կեանքը դառնում է աննպատակ, ձաձրոյթն ու մելամաղձոտու-
թիւնը տիրում են նորան, մանաւանդ իւր սիրելու՝ Ղիլիջի – Qilij – մահից
յետոյ: «Ապա Թաթարն, որ եհան զնա յերկրէն իւրմէ փախստական, զհետ
«մտեալ նորա՝ տարեալ վարեաց մինչեւ յԱմիթ, անդ եհար զզօրս նորա սաստ-
«կապէս, կորեաւ եւ անօրէն իշխանն, թէ ի պատերազմի եւ թէ, որպէս ո-
«մանք ասեն, երթայր հետիոտս փախստական, դիմեալ նմա առն միոջ եւ
«գիտացեալ թէ նա է, սպան զնա փոխանակ արեան մերձաւորի իւրոյ, զորս
«սպանեալ էր յայլում աւուր: Եւ այսպէս բարձաւ չարն»: (Կիր. Գանձ. Պատմ.
Գլ. Ի. էջ, 217):

Հայ Պատմիչի տուած այս վերջին տեղեկութիւնը պատահում է Օգոստոս
15-ին, 1231 թիւին, մի քրդական գիւղի մէջ, մի քրդի ձեռքով: Արդեօք ա՞յն
պատճառով, որ տալիս է Գանձակեցին՝ յայտնի չէ, թէեւ ոչ անհաւանական:
Ջալալ-էդ-Դինի կեանքի վերջին շրջանը շատ անորոշ է եւ անյայտութեան
քողով ծածկուած: Նոյն իսկ Արաբ մեծ Պատմիչ Իբն-ուլ-Աթիր, յայտնում է,
որ ինքն անկարող է այդ անորոշութիւնն ստուգել: Քաջարի այդ ռազմիկի
մահից քսան տարիներ իսկ յետոյ, ժողովրդական հաւատալիքը՝ թէ նա մեռած
չէ, երբեմնակի կեանք էր տալիս նորան, նոր պայքարների մղում եւ քիչ չէ
թիւն այն պատրիչների, որոնք իրենց-իրենց իբրեւ Ջալալ-էդ-Դին էին ներ-

կայացնում ժողովրդի առաջ եւ որոնց Մոնղոլ իշխանութիւնը բռնում, քըննում եւ չարաչար մահով էր մեռցնում: *)

Ջալալ–էդ–Դինը ազգային հերոս էր, որոշ նպատակի, գաղափարի մարմնացում,– դուրս քշել իւր երկիրն աւերող թշնամուն իւր երկրից եւ այդ երկիրը կրկին ազատ ժողովրդի հայրենիք դարձնել: Եւ Ջալալ–էդ–Դինի նկատմամբ եղած այս բանաստեղծական պաշտամունք հաւատալիքը եզակի երեւոյթ չէ: Նոյն երեւոյթը տեսնում ենք Անգլիական պատմութեան մէջ, ինչպէս Հարոլդը, կամ Աղէքսանդր Ա. Ռուս պատմութեան մէջ եւ այս զուգահեռ նմանութիւնը նկատելի է այն ժողովրդական հաւատալիքի մէջ, թէ հերոսն անօգուտ եւ յուսահատ մաքառումից յոգնած, քաշւում է աշխարհից, ապրում է իբրեւ մենաւոր ճգնաւոր, եւ մեռնում է տարիքով ծանրաբեռն, սրբութեան հմայքն ու հերոսի, հայրենիքի պաշտպանի հրապոյրն առինքնած:



---

*) D'Ohsson: *Hist. des Mongols.* vol. III. p. 65–66.– Ըստ Ա. Միւլլէրի եւս Խորազմների շահ Ջալալ–էդ–Դինը սպանւում է Ամիթ քաղաքում Օգոստ. 16, 1231 թ. – A. Muller *Istoria Islama* (Ռուսր.) Հտ. Ա. էջ 244:

# ԲԱՌԱՐԱՆ

## ՖՐԻԿԻ ԴԻՒԱՆԻ ՀԱՄԱՌՕՏԱԳՐՈՒԹԻՒՆ

| | | |
|---|---|---|
| *Առ.* | = | *Առձեռն բառարան* |
| *Անգլ.* | = | *Անգլիերէն.* |
| *Աճռ.* | = | *Հ. Աճառեան — Բառարան Արմատական Բառերի.* |
| *Ար.* | = | *Արաբերէն.* |
| *Բառ.* | = | *Բառարան.* |
| *Գիրք Հակ.* | = | *Գիրք Հակաճառութեան, Պոլիս* 1725 ? |
| *Գր.* | = | *Գրաբառ.* |
| *Գր. Աղթ.* | = | *Գրիգոր Կաթողիկոս Աղթամարցի.* |
| *Գրմ.* | = | *Գերմաներէն.* |
| *Գր. Վստ.* | = | *Գիրք Վաստակոց. Թարգ. Նախնեաց յԱրաբացի լեզուէ. Վենետիկ,* 1877. |
| *Դպ.* | = | *Դպիր, Գէորգ Պալատցու–Բառարան, Պարսկ. ի Հայ,* 1826. *Պլս.* |
| *Եր.* | = | *Երեմիա Վարդապետ, Բառարան,*— 1678 *եւ* 1728 *թթ. յԱլիկոռնայ.* |
| *Եղ.* | = | *Եղիշէ, Պատմութիւն.* |
| *Ջնդ.* | = | *Ջենդերէն.* |
| *Թրք.* | = | *Թուրքերէն.* |
| *Թփլ.* | = | *Թիփլիսի բարբառ.* |
| *Լտ.* | = | *Լատիներէն.* |
| *Ծնթ.* | = | *Ծանօթութիւն.* |
| *Կս. Երզ.* | = | *Կոստանդին Երզնկացի, Բանաստեղծ. հրտ. Հ. Մ. Պոտուր–եանի, Վենետիկ,* 1905. |
| *Ղրբ.* | = | *Ղարաբաղի բարբառ.* |
| *Ցաւ.* | = | *Ցաւելուած Ֆրիկի Դիւանի.* |
| *Նխ.* | = | *Նախնեաց.* |
| *Ն. Քուչ.* | = | *Նահապետ Քուչակ, Դիւան. հրատ. Արշ. Չոպանեանի.* |
| *Չին.* | = | *Չինարէն.* |
| *Պհլ.* | = | *Պահլաւերէն.* |
| *Պր.* | = | *Պարսկերէն.* |
| *Վր.* | = | *Վրացերէն.* |
| *Տճ.* | = | *Տաճկերէն.* |
| *Փխ.* | = | *Փոփոխակ.* |
| *Փրպ.* | = | *Ղ. Փարպեցի, Պատմ. Հայոց.* |
| F. Stein. | = | F. Steingass: A Comprehensive Persian-English Diction. London, 1930. 2d ed. |

Ադամ ձայն.— Երգի մի եղանակ. հաւանօրէն, որ սկսւում էր «Ադամ բառով: Անշուշտ այդ Տաղը պիտի լինէր «Ադամ նստէր դուռն դրախտին, լայր եւ ասէր ողորմագին» յայտնի երգը: Այս ենթադրութիւնն ենք անում, որովհետեւ Փրիկի այն Տաղը, որի վերայ նշանակուած է «Ադամ ձայնն ասա» ուղեցոյցը, նոյն Տաղի չափն ունի, այն է 4–4 / 4–4.— «Մինչդեռ ոչինչ էր գոյացել, Ծննդեան Կուսին Հայրն էր վկայ», եւն. ԴԻԻԱՆ է. 3.

Ազիզ.— Պր. ազիզ = սիրելի,, հաճելի, 2. Սուրբ.

«Կուզես որ ազիզ կենաս, որ ամէն մարդ ըզքեզ սիրէ»: ԽԳ. 5.

Աթլաս.— Դիպակ (Գր.), հիւսուածք, գործուածք մետաքսից զգեստի համար:

«Մէկին աթլաս եւ մախմուրնի,
Միոյն չըլէ չուխայ չընկնի»: Յաւ. Դ.— է. 89.

Աժել.— Արժել, արժէք, գին ունենալ:

«Ես ըզքեզ ինձ վարդ գիտացայ,
Փուչ չաժես, լուկ անխելացայ»: Յաւ.— Գ. 66.

Աժնիկ.— արժանի.

«Աժնիկ ես դու այդոր, զինչ որ քաշեցիր ու դեռ կամի գալ»: ԻԳ. 27.

«Ապա թէ լինիս աժնիկ, որ ի լոյս նայել կարենաս»: ԽԱ. 16.

Ալանի.— Ար. Իլ. Իլան = յայտարարութիւն, զեկոյց.— 2. յայտնի, յայտ յանդիման, ամէնքի առաջ.— 3. պարզ, յստակ:

«Գիշեր ու ցորեկ պատրաստ ու արթուն, մըտաւքն ալանի»: Ծ. 31.

Ալէլու.— 1. Երգ օրհնութեան, գոհութեան.— 2. Ծակոտկէն աման, որի մէջ փոքրները ծննդեան «Աւետիս»ին նուէր են ժողովում. (Բղչ.) «Ալէլու դիպիլ» նուիրատուութիւն անել, նուէր տալ.

«Բախտուուրն գայ ճոճկլըտալի,
Գայ եւ նստի յաւագ բարձի,
Լուծն ի փորեն թէ չուրջ անցնի,
Ո՛չ լալէլու մի չի դիպնի»:
Յաւել. Ձ. 191–194.

Ալմաստ.— Պր. ալմաս, քար թանգագին, գոհար:

«Այն բաղընից պատեր, ասեմ, եաղութ, ալմաստ էր լալէզար»: Յաւ. Ը. 18.

Ալուիկ.— Այլ, մի նոր.

«Վերստին նորոգիմ զինչ ալվիկ Ադամ». ԼԸ. 10 (փփխ.)

Ախիք.— Հետեւորդ, ծառայ, սպասաւոր, սպասիկ: (Բառ. Երեմ. էջ 8 ախիմ, ախիտան բառի հետ համեմատելով, որ նշանակում է «խորհուրդ»: 3. Շքախումբ, հետեւորդ, բազմութիւն. Հմմտ. Խոր. Գր. Ա. Գլ. Ժ. «Եւ ինքն խաղայ... այլով ազխիւն ընդ արեւմուտս հիւսիսոյ,

53․— «Զի կամ մեռցուք եւ աղխ մեր ի ծառայութիւն Բէլայ կաց-
ցէ»․ Նոյն Գլ․ ԺԱ․ էջ 56․

«Յորժամ լինէր ժամ մաճլըսի,
Նայ, իմ ախիքն էր մէկ հազար»: ԽԴ․ 50․

Ախտերես․— Ախտալից, ախտով ծածկուած (երես, դէմք)․
«Մէկն է կերպիւ տընազելի, է ախտերես եւ աղտեղի»: Յաւ․ Զ․ 228․

Ած․— Այծ․
«Մէկին հազար ձի եւ ջորի,
Մէկին ոչ ած մի ւ՞ոչ մաքի»: Յաւ․ Է․ 84․

Ականջը խլի անել․— Խուլ ձեւանալ, չլսել դիտմամբ:
«Զականջըդ խըլի արա ու գերկու աչքըս քո կուրի»: ԻԴ․ 47․

Ակնատ․— Թակարդ, որոգայթ, վարմ:
«Թուչի երկնաւքն անցնի, թէ սիրուն ակնատ չընկնէի,
Ակնատն ի ծովուն կըղզուն լարած էր, ու՛ես չի գիտէի»:
ԽԳ․ 24–25․ ԼԲ․ 88․

Աղբտոց․— Աղբակոյտ, աղբանոց, աղբ ժողովելու տեղ․ աղբահար (Դրբ․)
«Գնացի անկայ աղբըտոցնին,
Հաւըն ետուր ի դարէ դար»: ԽԴ․ 75․

Աղէկ․— Լաւ, գեղեցիկ:
«Կչռեցին ու տեսին, առին չափ ու զէն,
Նայ չի կայր այլ աղէկ եւ մեծ զսէր»:
Ա․ 87–88․ Ե․ 71․ Ը․ 28․ Գ․ 29, 33․

Աղէտ․— Գութ, հոգ, խնամք, հոգածութիւն, սէր, աղատ (Դրբ․):
«Հանց գութ ու աղէտ ունիս, Դու Աստուած,
որ այլ չի լինեայ»: ԺԶ․ 20․
«Քան զմայր առաւել աղէտ նա կալել»: ԼԷ․ 70․

Աղիպաթ․— Պր․ աղըբաթ,— վախճան, հետեւանք, վերջ:
«Կամ մինչ դաւէդար խըմող Աղիպաթն ի յիրքմէ հասեր»:
Յաւ․ Գ․ 5․

Աղկ․— Վատ, անարգ․— աղքատ, խեղճ, հմտ․ ժողովրդական ախկ, եախկ․
«Վատ, անարգ, զզուելի» (Դրբ) — Արռ․ չունի: Ունի աղպաղկ
«աղքատ խեղճ»․
«Որ բաժանեն զվատն յաղկէն․․․» Թ․ 36․ (փփխ․):

Աղնձած․— Խարկուած, աղանձուած, բովուած:
«Ոչ ծըլիմ, ոչ բուսանիմ, գերդ գաղընձած սերմ եմ գերիս»: Դ․ 12․

Աղուոր․— Լաւ, գեղեցիկ:
«Երկու ցեղ սէր կայ ի հաւս, զայս աղուոր գիտնալ կու պիտի»: Ծ․ 9․

Աղուորութիւն․— Լաւութիւն, բարիք:
«Շատ աղուոր ու թիճն առնենք մեր մըտաւքս ի յանաւորի»:

*Աճապ.*— *Գր. Աջա՛բ,— արդեօք, միթէ.— 2. Տարօրինակ, օտարոտի. Գր.* **Աջա՛յիբ.**

*«Աճապ ամ յէր կու դատիս յաշխարհիս յերակ, դու Ֆըրիկ»:* **Ի. 36.**

*Ամ. Բացականչութիւն զարմացական. է՜, դէհ, ուրեմն:*

*«Ֆըրիկ, ամ լըսէ բանիս, զայս բարիս քեզ ով կամենայ»:* **ԺԶ. 35. Ի. 36, 38. ԻԳ. 18. ԻԷ. 23.**

*Ամալ.— Ար. Գործ, ձեռքի գործ, աշխատութիւն. 2. Հնարք, միջոց, հնարաւորութիւն.*

*«Եւ զինչ որ ունի ամալ, զայ ի ոտքն փաթաւթի նա այլ»:* **ԻԳ. 9, 34. Ցաւ. Ա. 110.**

*Ամանաթ.— Պր. Ամանա՛թ. Նաեւ Ար. Էմանէթ = էմանէթ Ուլլահ,— «աւանդ աստուծոյ». Աւանդ, պահ դրուած բան:*

*«Մինչեւ եղբայրս երէց եբեր, զամանաթըն Տէրն էառ»:* **Ցաւ. Ը. 26.**

*Այլուի.— Կրկին, այլ եւս:*

*«Այսու թէ կարես զքեզ դու թափել, որ այլուի զթայ»:* **ԺԶ. 29.**

*Այպ.— Պր. Այիբ. պակասութիւն, ամօթանք, թերութիւն, արատ,* défaut, defect, fault:

*«Այլ զինչ որ յայպ յինքն լինի, Նա՜յ, ամենեւին այն չերեւի»:* **Ցաւ. Զ. 211.**

*Այիպ.— Պր. Այիբ, ամօթ, ամօթանք, արատ, թերութիւն, պակասութիւն. Տես՝ Այպ.*

*«Եւ զինչ այիպ առ նա լինի*
*Ամենեւին այն չերեւի»:* **Ցաւ. Զ.** 211 *ծնթ.*

Ան.— *կամ.*

*«Ծառայ մեղաց մի՛ կենար, մի՛ լինիր տխմար, ան յիմար»:* **ԻԸ.** 18 *(փիխ.)*:—

*Անառական.— անառիկ, ամուր (բերդ):*

*«Մարդն ի քաղաք նըման պարըսպած եւ անառական»:* **ԾԱ. 32.**

*Անատակ.— անյատակ, խոր, անեզր.*

*«Մըճուճ ի յառաջ անկեր ու զընա ի հուրն անատակ»:* **ԻԵ. 19.**

*«Գընաս դու անողորմ ի հուրն յահադին, ի գուբն անատակ»:* **ԻԵ. 62.**

*Անդամն.— ազդր (Գր.), բուդ (Թր.).* Cuisse, gigot. *Մասն կոնքի, սկսած ստորին որովայնից մինչեւ ծունկը, յետեւի եւ առաջին մասով, պատած զիստի կամ բարձի ոսկրը* (Femur, os de cuisse. Crux, coxa, femur *(Լտ.), զալչայ (Տճ.)*:

*«Գըլուխն է գեր, ոտքըն փափուկ, անդամքն աղէկ է խորվելու»:* **Ժ. 73.**

*Անդարձ.— Վախճանուած, անդարձ գնացած, ընդ միշտ հեռացած։*
*«Դու չես միայն այդ ցաւի տէր, ամէն անդարձ այդպէս կու-լայ»։* **ԺԱ. 68.**

*Անդէճ լինել.— Պր. Էնդիշէ։ Միտք, մտածութիւն, «թէ բարի, թէ չար». (Բռ. Գէորգ Դպ.)— մտմտուք, հնհնուք, մտահոգութիւն ունենալ։*
*«Մարդն որ շատ անդէճ լինի աշխարհին հոգն կու մաշի»։* **Յա-ւել. Ա. 97.**

*Անդէն.— Հանդերձեալ կեանք, ՚անդերձեալը։*
*«Երբ աստէնին չես կենալու, լաւ զանդէնին հոգսըն տանես»։* **Ե. 44.— Ը. 26.**

*Անդիճել.— Պր. Էնդիյշիյդէն = Մտածել, վարանել, անդրադառնալ. Նոյն ինչ որ անդաճել. (Գր. Եղշ.)։ Տես Անդէճ լինել.*
*«Զանդիճեցի թէ այն ցեղի յետին բանին մըտիկ չարի»։* **Ը. 5.**
*«Էր չես զմահու աւրն անդիճել»։* **ԼԳ. 8.**

*Անըխել.— Անխելք, անխել, յիմար։*
*«Ջաւրն կեր ու խում արիր անըխեալ, յակնատղ էր ընկար»։* **ԼԱ. 6.— (Փոփոխակն ունի.— «էյ, անխել յակնատղ էր ըն-կար»)։ ԼԲ. 88։**

*Անթարտիր.— Անկարգ, անկիրթ, անխրատ.— Թարտիբ (Ար.)= կարգ, կարգաւորութիւն։*
*«Ֆըռանգն խեւ եւ անթարտիր, ըզպոռնըկերն մեղք չասեն»։* **Ջ. 10։**

*Անթափելի.— Որ հնար չէ ազատել, գերի։*
*«Ջկինն եւ զորդին ծառայ տանի, Անայցելու եւ անթափելի»։* **Յաւ. Է. 118.**

*Անթաց.— Չոր, չթրջուած։*
*«Աշխարհն է ի ծով նըման, ով որ գայ, անթաց չի մընայ»։* **Յա-ւել. Ա. 61.— Հմտ. ԻԳ. 6. ծնթ.**

*Անթել.— Թռչել, օդը բարձրանալ։*
*«Նմանեցաւ արծըվուն, որ անթավ (=նթաւ) ու խիստ շըփա-ցար»։* **ԼԱ. 10.— (Տաղի վերի փոփոխակն ունի,—**
*«Նըմանեցար արծուին, ու ի յաւդն ելար ու չփացար»։* **Լ. 70.**

*Անիհուն.— Անհուն, անսահման, անեզր։*
*«Ս. Գրիգոր վիրապին մարդն էր հողեղէն,*
*Անիհուն տանջանաց սիրով համբերէր»։* **Ա. 79–80.— Բ. 40.— ԺԷ. 3.— ԺԸ.— 14.— Ի. 12.—**

*Անիմայ.— Անմիտ, յիմար, գիտակցութիւնից զուրկ։*
*«Տես, դու տրղայ չես անիմայ, աղէկ լըսէ, թէ խելք ունիս»։* **Ե. 71.**

Անխելանալ.— Խելքը պակասել, անխելք դառնալ, անխելքանալ:
«Աւաղ ու հազար բերան, թէ ինչ անխելացայ»: Յաւ. Ա. 23.— Յաւ. Գ. 68, 66.— Հմմտ. Անըխել.
Անհասակ.— Անհաս, անհասանելի: Աբռ. «անձեւ, անկերպարան»:
«Սարսեալ նային զաւրքն երկնաւոր ի կենդանիդ եւ անհասակ»: ԼԴ. 209, 245, 67.—
Անղալատ.— Ար. ղալատ — սխալ, վրիպումն Ան+ղալատ = ան+սխալ, ճշմարիտ, արդար:
«Զամէնն է հաշուով զուգեր անղալատ Աստուած թագաւոր»: Իէ. 61, ԼԵ. 174.
Անմէկ.— ան+մէկ. մէկ իսկ չունեցող. մէկից իսկ զուրկ. անզաւակ.
«Մէկին քըսան դուստր եւ որդի,
Եւ մէկն ամուլ անմէկ որդի»: Յաւ. Է. 58.
Անճարակ.— Խեղճ, անոք, անօգնական, առանց ճարի = Չար (Պր.), մի- ջոց, հնարք:
«Էր ծընայ որդի մեղաց խիստ անճարակ ես այս գերիս»: Դ. 37.
Անմարդի.— Անոպայ, անքաղաքավար, տմարդի, անպատւութիւն բերող, դռեհիկ:
«Մէկն անբերան եւ անմարդի,
Զինչ որ խաւսի, բանն իւր անլի»: Յաւ. Է. 147.
Աննմանակ.— Աննման, գեղեցիկ.
«Դու ես մըտաց զարմանալի, Աննըմանակ, յո՞վ կը նըմանիս»: Ե. 102.— ԼԴ. 11.
Անչառափ.— Հանդիստ, խաղաղ, անվրդով: Հմտ. Ճառափ բառի հետ, (= ժխոր, աղմուկ,— 2. լոյս, չառաւիղ լոյսի), որից Ֆրիկը մի նոր, գեղեցիկ բառ է կերտել,— 1. Անվրդով, անդորր եւ 2. տըմոյն, անլոյս, խաւար իմաստով (Զունին բառարանները):
«Խոցել է զիս ահն ու մահն ու արել սիրտս անչառափ»: Խէ. 19.
Անողջալի.— Ողջանալու, առողջանալու հնարաւորութիւնից զուրկ, անբժըշ- կելի:
«Անդամալոյծ կամ ձեռք չունի, ուրուկ, ցաւաւք անողջալի»: Յաւ. Է. 165.
Անվճար.— Անվերջ, անվախճան, յաւիտենական.
«Իւր աստուածութիւնն անեղ, էութիւնըն իւր անվըճար»: ԼԱ. 6.
Անումեկ.— Անյոյս: Ումեկ, իմիյտ (Պր.): Ումուզ — բէյ+ումետ = բէ+ումետ = անյոյս, (Կ. Երգ. ԻՁ. 32):
«Զայս արի ինձ ապաւէն, թէ անումեկ ես չըմընամ»: Գ. 8.
Անտանելի.— Անպարագրելի, անսահման, անչափ, անհուն (եւ ոչ սովորա- կան իմաստով անհանդուրժելի, անժուժելի, դժուարըմբեր, insupportable, unbearable).
«Դու անհաս ես ու՜անբաւ եւ անտանելի»: ԼԹ. 6.

*Անտեսակ* — անտեսանելի, անտես, ծածուկ, գաղտնի։
«Դու ես ի վեր քան ըղխորհուրդ,
Ո՛Ամենեցուն ես անտեսակ»։ ԼԴ. 15. 37.

*Անուշան* — Անոյշ, քաղցր, համեղ, համով: Արռ. չունի.
«Զանմահն Ինքն ի համ ածէ եւ զնեխածն անուշան ընէ»։ Ցաւ. Ա. 70.

*Անուշ կանչել* — Կեր ու խումի ժամանակ խմողի իւրաքանչիւր բաժակը պարպելուց յետոյ, իբրեւ բարեացակամ արտայայտութիւն ասել «Անուշ»։
«Ուր են այն ամէն ճորտերն, որ կանչ՞ին «Անուշ Պարոնին»։ ԼԶ. 30. Ցաւ. Բ. 9. 15.

*Անվարտի* — Ան+վարտիկ (Արռ. չունի). առանց զգեստի, տկլոր, հոլանի. sans-culotte. բալդըր-չըփլաք (տճ.).
«Մէկըն բոբիկ եւ անվարտի». Ցաւ. Զ. 161. Է. 114.

*Անցել* — Բաց, բացի, ի զատ. «Անցեալ» ձեւից, ինչպէս «Թողեալ» = Թողել, «բացի»։ Excepté, except, but.
«Զատուած անցել զոք մի՛ սիրել,
Որ դու ապա մարդ երեւիս»։ Ե. 73.

*Աչօք առնել* — Ցանկասէր ակնարկ ձգել. խեթ նայել, խեթիւ նայել, թշնամական հայեացք։
«Զգիտէք թէ աչաւքս առնեմ, նայ կու տամ ձեր հողն ի քամիք»։ Ի. 26. ԽԱ. 65.

*Աչօք նայիլ* — Ծուռ, ոչ ուղիղ միտք ու սրտով վերաբերիլ, ցանկասէր մտքով դիտել.
«Աչաւք նայիր ի կին ուտար՝ վանց չընութեան եւ ցանկալոյ»։ Ժ. 10.

*Ապիկի* — Բաժակ ապակեայ — Բաժակ. 2. Ապակի։
«Նստեր ի վարդի չքին, կխմէր ի լուրջ ապիկին»։
(Նահ. Քուչ. Ճժ. էջ 65, 131)։
«Մէկին հազար հատ մարգարտի, մէկին ոչ հուլնիկ ապիկի»։
Ցաւ. Զ. 146.

*Ապով* — Ցուսով, վստահ, ապահով, յուսալից։
«Թէ դու յայն ապով կենաս, թէ զԱստուած դթած դու գիտես»։ Լ. 16.

*Ապրել* — Ազատուիլ, փրկուիլ (Նախնեաց իմաստով)։
«Երթանք զայն տեղին ուզենք, որ ունինք ումէդ, թէ ապրինք»։ Ի. 5.

*Առան* — Ջմերոց, վայր ուր ձմեռն անցնելու են գնում — Արան, (Ըստ Ղրբ. բարբառի)։
«Ջմեռն առան յերթին լալով, Ո՛Ամառն ի քոչըն խաչէին»։ ԼԵ. 68.

Առ իս.— մօտս, քովս. ինձ մօտ:
«Ձեր վարձն առ իսկ կայ ի չահի»: Ը. 40.

Ասլը.— Պր. Ասլը. ասիլ (Տճ.) = իսկական, հարազատ:
«Մարդն որ սիրելի անես, նա զասլը եւ զինքն փնտըռէ»: ԽԳ. 27.

Ասպապ.— Պր. Ասբաբ — Զգեստ, ագանելիք.— 2. Գործիք, զէնք: 3. Գաղտնիք, պատճառ.— 4 կազմ, կազմած:
«Քան զասպապ ի ծալն էր, նա՛յ, տըկուկ—տըկուկ քակեցայ»: Յաւ. Ա. 26:

Աստէն.— Աշխարհ, երկիր, այստեղ.
«Յաստէնս չունիմ հանգստութիւն, անդ վիշապաց կեր լինենամ»: Բ. 34. Ե. 44. Է. 49.

Աստըւոր.— Աշխարհ, երկիր:
«Թէ ունի ճորտ ու ծառայ կամ կարեւոր յաստըւորիս»: Դ. 13.

Աստնուոր.— Երկրի, աշխարհի վերայ բնակող մարդ.— 2. Երկիր, աշխարհ:
«Թէ չար, թէ բարի, թէ դուր, թէ դըժար, որ ի յաստընւոր»: Իէ. 64. Ծ. 7.

Աստուծու հարած.— Աստուծոյ հարուածին արժանացած. խեղճ, անբաղդ, անյաջող, հարեալ:
«Ջարըն դու ի հաշ կենաս, (= հաջում ես) յԱստուծոյ հարած ւ՚անիծած»: ԻԹ. 15.

Ատակ.— Կարող, ընդունակ.— 2. Դիմացկուն.
«Ջանք դիր ւ՚ազատէ ըզքեզ, մինչ դեռ կաս դու յայժմիկ յատակ»: ԻԵ. 26.

Ատակել.— Հողի հետ հաւասարել, տափակել, հարթել:
«Ջանք դիր ւ՚ազատէ ըզքեզ, մինչ դեռ կաս դու յայժմիկ յատակ,
Թէ չէ յատակես յէգուց, հանց լինիս զինչ զողն ի փըլհակ»: ԻԵ. 27.

Ատլաս.— Դիպակ (Գր.), հիւսուածք, կտոր մետաքսեայ (զգեստի համար):
«Մէկին ատլաս եւ ղըրմըզի, Մէկին չապիկ մի չի հասնի»: Յաւ. Զ. 151.

Արահ.— Ուղի, հետ, ճանապարհ: /Փոփոխակների մէջ Ֆրիկի «ԴԻՒԱՆ»ը տալիս է «ճանապարհ որդէ» (= յորդել զճանապարհ), «Արաղ արայ» ձեւերը, այն ինչ Բնագրի մէջ ունի «Եարաղ արայ» ձեւը: Կարծում ենք, որ «Արազ» տարբերակն առաջ է եկած «Արախ» ձեւից, որ նոյնն է ինչ որ «Արահ» ձեւը, որ ենթադրում ենք կրճատ ձեւն է «արահետ» բառի = ուղի, շաւիղ, կածան, նեղ ճանապարհ, որով Բնագիրը պիտի վերականգնուի,—
«Ֆըրիկ, զարթիր ի խոր քընոյդ, արահ արա քեզ գընալու»,
եւ ոչ թէ,
«Ֆըրիկ, զարթիր ի խոր քընոյդ, եարաղ արա քեզ գընալու»: Ժ. 82.
Արահ ձեւը չունինք Բառարանի մէջ. սակայն ի՞նչն է երաշխաւոր, որ Ֆրիկը պահպանած չէ ժողովրդական բառերից մէկն եւս, որ այն-

քան շատ են իր Տաղերի մէջ, ինչպէս օրինակ Ջերմանոց բառը, բոլորովին այլ իմաստով/: Ար = ոտք (որ–ո–գայթ), արա (նոյն «ոտք» իմաստով՝ արագիլ)· Աճառ· Արմտ· Բռր· Ա· 616, որից արահ անել, «ոտք վերցնել», չոպանել, փութալ, աճապարել մտքով(?):

Արագ·— Տես Արահ·

Արար·— Արարած, ստեղծուած, գործ, «արար աշխարհ»·

«Պատկերակից եւ նման՝ իր ձեռաւքն արար դու եղար»: ԼԱ· 45 (փոփոխակի խմբագրութեան մէջ, բնագրի տակ):

Արիւնը վրայ ձգել·— Մեղադրել, մեղքը, սխալը ուրիշին վերագրել:

«Զարիւնդ ի վերաս ձըգես, թէ Ֆալաքն է ծուռ դատաւոր»: Իէ· 50·

Աւտալ·— Հաւատալ, հաւատ ընծայել, վստահիլ:

«Էյ, Զարխ, ամ քեզ ո՞նց աւտամ»: Իէ· 23·

«Այն մարդն, որ այս կենցաղոյս աւատայ, յանտէնն սեւերես, ողորմ ու լալի է նա»: Լ· 42·

Աւտ չաւտ·— Կասկածելի, երկբայելի, կատարեալ հաւատք չունենալով:

«Երբ Բարով–մնայ ինձ ասաց, ես աւաւտ չաւաւտ կենդանի»: Ցաւ· Ե· 27· / Տարբերականի մէջ «աւտալու չէի»/:

Աքցի զարկել·— Աքացի տալ, ոտքերով ամուր խփել դէպի յետեւի կողմը (կենդանիների)· թեքմէ, չիֆթէ վուրմաք (Տճ·), To kick, regimber, donner des cops de pied.— 2· Ընդդիմանալ:

«Զալալէդին էր մընացել, նա կու զարնէր աքցի բանին»· (= խօսքին չէր հնազանդում): ԼԵ· 74·

Բադաշխան·— Badaksan, Երկրամաս Կենտրոնական Ասիայում, նշանաւոր իր շատ յարգի կարկեհան — ruby, rubis — թանկագին քարերով, երգուած Պարսիկ բանաստեղծների բերանով, ինչպէս Ֆարրուխին, իր նշանաւոր Qasida–ի մէջ·—

On the branches of syringa necklaces of pearls we see,
Ruby ear-rings of Badakhshan sparkles on the Judas-tree.—
Ed. G. Browne—A Liter. Hist. of Persia, Lond. 1906, p. 126.

կամ Սանայի–ի երգածը·—

Yemen's blood-stone or Badakhshan's rubies can incarnadine.—
Diwan of Sana'i.— Նոյն· էջ 331.

«Դու լալ մեծագին որ ի Բադաշխան,
Եաղութ ու զըմրութ եւ այլ պատուական»: Ցաւ· Թ· 32–33:

Բախլիլ·— Պր· Բախիլ (= նախանձ, յաչաղկոտ):— Նախանձել, չարակնել, յաչաղկել, մախալ, խանդալ· envier.

«Կու բախլի զմարդուն աղէկն, կու կենայ չարեաւքն ի սըրտի»: Ծ· 41·

Բահաւոր·— Բահ ունեցող, բահով գործող (մշակ):

«Եւ զըղորդ մարդկանց ըզտունըն կու քակես առանց բահաւոր»: Իէ· 14·

Բանը երկու լինել.— Խօսքը երկու անել, հակառակել, դէմ գնալ, չհնազանդել.— 2. Աննահանջ, հաստատ:
«Դու քաղցրութեամբ, սիրով հայեաց, Քո բանն երկու ոչ լինենայ»: Է. 63.

Բաննեհ.— Պր. Բաննահ = Որմնադիր, պատ շարող:
«Էն տեղըն մի բաննեհ մի կայր,— հող կու կըրէր շամռի համար»: Ցու. Ը. 46.

Բասար.— Ար. Բասար, բասըրէթ = Գիտութիւն, խելահասութիւն, միտք, խելամտութիւն.— 2. Տեսք արտաքին, (Ար. Բասեր = հմուտ, գիտուն, տեղեակ):
«Թէ խելք ու բասար ունիս եւ հոգուդ պաշար, դու Ֆըրիկ»: Ի. 46. ԻԱ. 9. Համ. «Զինչ որ խելք կայ ու բասար», Կ. Երզ. ԺՁ. 141.— «Թէ զիմ նուաստութիւնըս հարցանես դուն, չունիմ խելք ու պասար ւ'ոչ իմաստութիւն». Գր. Աղթ. «Ցետ գնալոյ Վարդին». 101–102: «Տըւել եմ քեզ հանց չարպաթ որ զպասարաթ (= Զպասարադ?) ու խելքդ է տարել»: Ն. Քչ. «Ժամ-ժամ զիմ ղարիպութիւնս», տաղի տող 14.

Բաստէ.— Պր. Բասթէ = Կապուած, ի մի զօդուած. նաեւ Պր. Բաս = ահա, ահաւասիկ, օն. Mais voilà.— 2. Երգի մի որոշ եղանակ, յամր, հակառակը՝ չարխի:
«Բաստէ ես այս չարխս դիպիմ, որ ի յառաջ զայս չիմանամ»: Բ. 24.

Բաստիկ.— Պր. Բաս = ուրեմն, արդ, զիարդ. 2. այս պարագաների մէջ. 3. Բաստիկ (Բառ. Եր.) = լաւ, աղէտք [= աղէկ] (Բառ. Աճռ. Հտ. Ա– էջ 991): Ագուլիսի բարբառն ունի բաստիկ. «լաւ, մտքի ու սրտի հաճելի», բարե բաստիկ իմաստով:
«Բաստիկ, որ կըրես հիմիկ, մեծ ամաւթ եւ մերկ խայտառակ»: ԻԵ. 23.

Բարաբար.— հաւասար, միատեղ, իբրեւ ընկեր. Բարաբար (Տճ.) հետը, միասին. Տես՝ պարապար.
«Պաք ւ'ի աղաւթք խօսս կու կենար, որ հրեշտակաց էր պարապար»: ԽԵ. 42. Ծ. 28. Տես Պարապար.

Բարաթ.— Պր. Բարաթ. Պարտաթուղթ, մուրհակ, պահանջագիր, փոխանակագիր:
«Բարաթ մի սատի առնուն, որ յէգուց ի հաւն ցուցանեն»: ԻԱ. 15.

Բարետես աչք.— Բարի աչք (յաջողութիւն բերող), բարենահ. 2. հեգնանական. փոխաբերական մտքով,— չար աչք (դժբախտութիւն բերող), չարենահ;

«Հանց բարեւես աչուի ունենք, որ նոքա այլ գըլխավայրին»:
ԼԵ. 107.

Բարի.— Բարիք, հարստութիւն, ստացուածք:

«Ժողովեցի շատ մի բարի, ըղակ արի զինք Թաթարի»: Ը. 10, 43, 59, Ժ. 85, 99. ԼԵ. 77.

Բարկ—բարկ ծիծաղել.— Բարձրաձայն ծիծաղել, խնդալ քահ-քահ:

«Զքարոզն տնազ անէք, նաեւ բարկ-բարկ ծիծաղէք»: Ի. 19.
Ծնթ.— Յաւ. Դ. 33.

Բարձով նստել.— Առօք-փառօք բազմել, բարձի վրայ նստել (իբրեւ նշան առանձին յարգանք ու պատուի):

«Բարձով նըստեն ի ժամատանն, յորում հրեշտակքն կու սարսին»: Զ. 33.

Բեստէ.— Պր. Բասթէ. Ուստի եւ, ահա, ահաւասիկ.— voilà. Տես Բաստէ:

«Ես տնկեցի հոգոյ ղաւակ, բեստէ հիմիկ քեղ քեղ կեր կու դամ»:
Բ. 18. Զ. 23. Ը. 14.

Բէկլար բէկի. Պր. Բէկ, բէյ, որ ծագումն է առել Չինարէն Բայան բառից, որ նշանակում է,— մեծ, ազնուական եւ ապա նաեւ վարիչ, կառավարիչ, ցեղապետ, որի ազդեցութեամբ նաեւ Ռուսերէն Barin = Բարին բառը, որ նշանակում է,— տէր, իշխան, հրամայող: (Ծագման մասին տես Marco Polo: Travels, հրատ. եւ թարգմ. Col. Henry Yule, Lond. 1874. Հատ. Բ. էջ 132, 133, 202, Բնագիր եւ ծանօթ), որով բառը նշանակում է,— իշխան, իշխանաց-իշխան, երկրի վարիչ, զօրքի հրամանատար:

«Բուղա էիր, չինքսան եղար, Բէկլար-բէկի իր հեծելին»: ԼԵ. 29.

Բէքրու.— Պր. Բէ+քեա“ր = ան+ինչք: Աղքատ, կարօտ, խեղճ.— 2. ան+գործ (բէ+քեա”ր = գործ, անգործ, պարապորդ.— 3. միայնակ, ամուրի:

«Էն տեղըն բէքըրու մարդ մի կայր, գինուս խմեց ու գինովցաւ»:
Յաւ. Ը. 38.

Բըլբուլ.— Պր. Բօլբօլ = սոխակ:

«Կապի քո բըլբուլ լեզուդ, ի յահէն լինիս դու լեզակ»: ԻԵ. 50.

Բըլբուլ լեզու.— Ճարտարախօս, անոյշ լեզուով խօսող.— 2. Գրաւիչ, առինքնող, հրապուրիչ:

«Կապի քո բըլբուլ լեզուդ, ի յահէն լինիս դու լեզակ»: ԻԵ. 50.

Բողազ.— Թրք. պոպորդ, բուկ. gorge, gueulard.— throat, gullet

«Քառսուն տարի պարապ կեցայ,
Քաղցուն լցնին բողազս ի վայր»: Յաւ. Ը. 36.

Բուխէրրկ.— Պր. Բօխարի = Բուխարիկ գաւառական բառով, վառարան սենեակի մէջ, պատի մէջ ագուցած: Գաւառն ունի Ջրմիկ (Մալաթիա) գեղեցիկ, բուն իմաստն արտայայտող բառը, որ ցանկալի է ընդհանրութիւն գտնէր: Cheminée, fire-place. (օջաղ. Թրք.):

«Այն տաք տըներուն փոխան բուխէրիկ վառեն քեզ կըրակ»:
ԻԵ. 31.

Բողազ.— որկոր, կոկորդ, բուկ gorge, — Throat,
«Քասսուն տարի կարաս կեցայ
Քաղցուն լցնին բողազս ի վայր»: Յաւ. Ը. 36.

Բուրճ.— Պր. Բորճ, բուրդ, աշտարակ:
«Մարդոյն երբ Դալեհն ու Բուրճն ի Ֆալաքըն չէ ըղորդած»:
ԻԹ. 4, 9, 10.

Բտած.— Արտակարգ սննդով գիրցրած (հաւ, հնդկահաւ եւայլն).
«Բըտած հաւով է սընուցած, անոյշ պինի տայր խըմելու»:
Ժ. 77, 78.

Բտել.— Կուշտ կերցնել, կերակրել.— հաւերին առատ կուտ տալ, որ շուտ գիրանան:
«Մարմինն անուշ բըտէր յերակ»: Ժ. 76.
«Գընա, դու բըտէ զմարմինդ, որ որդունքն ի հոն դաւրանան»:
ԾԱ. 23.

Բուտ.— Արհեստական կերպով կերակրած, պարարտացրած (հաւ, հնդկահաւ, սագ, բադ), կուշտ կերցրած (մարդ):
«Զմարմինդ ես ի բուտ առել եւ զհոգիդ յերակ մոռանաս»: ԽԱ. 9.

Գահալ.— Ար. kahil, կահիլ ծոյլ, դանդաղ, 2. թոյլ, անոյժ. կը հալ (Դրբ.)
«Աղէկն որ ի քո ձեռացդ ի վեր գայ, գահալ մի կենալ»: ԻԳ. 16.

Գաղտել.— Թաքցնել, պահել, ծածկել: Հմտ. կեղել (Դրբ.) «գաղել, թաքցնել».
«Թէ չէ գաղտէ գայդ քու լեզուդ, որ աւելի շատ չը խաւսիս:
Լ. 78.

Գանձաւոր.— Գանձ, հարստութիւն ունեցող, հարուստ:
«Աղքատ իմաստուն լաւ է, քան հազար անգէտ գանձաւոր»:
Իէ. 66.

Գեթսեմանի.— Դուռն դժոխքի. Γεθσημανή. ծագումը Եբրայեցերէն, որ նշանակում է հնձան եւ ագարակ ձիթենեաց wine press and oil farm. Մատթ. ԻԶ. 36.— Մրկ. ԺԴ. 32 Տես Analytical Concordance to he Bible by Rob. Young LI. D., Fung & Wagnalls Co. N.Y. p. 389.
«Այս դըժոխոց դուռն է կոչել, Գեթսեմանի անուանի սա»: Է. 37.

Գէմ.— Զէ՞ որ, անկասկած, դոնէ:
«Գէմ Աբէլ էր արդար, զաւակն Ադամայ,
Որ սիրովն Աստուծոյ ըղնծայս նուիրէր»: Ա. 7–8. Ա. 13, 40, 82.
Զ. 24, 26. Ը. 17, 28.

Գէշերես.— Տգեղ, անդիւր դէմքով, հակակրելի:
«Մէկ մ'իր կերպիւրն տըհագի, Որ գէշերես է ւ'անտեղի»: Յաւ.
Է. 156.

Գիւլիստանիք.— Պր. Գօլ + ստան = Վարդ + ստան = ծաղկանոց վարդի. 2. Ծաղկազարդ զգեստ:

«Կուլիստանիքն, որ դու հագար»: **ԽԵ**. 18.

Գիւնահքար.— Պր. Գօնահ+քար=մեղս+ա + գործ = մեղաւոր, անարդար: (Ըստ Ղարաբաղի բարբառի — զարմացած, ապշացած):

«Այս քանի բանս յիւրմէն ասեր աշըղ Քոչակըն գիւնահքար»: **Յաւ. Ը**. 56, 52.

Գլխավայրել.— Գլխի վրայ գալ, թաւալ-գլոր լինել, կործանիլ:

«Հանց բարետես աչուի ունենք, որ նոքա այլ գըլխիվայրին»: **ԼԵ**. 107.

Գլուխն ունել.— Կտրել գլուխը, գլխատել:

«Առջեւ նորա կայ եւ փախչի, Հասնի ի հետ եւ զգլուխն ունի»: **Յաւ. Է**. 116.

Գծել.— Փոխանակ ճկել ձեւի. խոնարհել, կորիլ, հնազանդիլ: (Տառերի կամ հնչիւնների սովորական փոփոխութեան օրինակ ժողովրդական խօսք ու բարբառի մէջ, ինչպէս,— ախՇարհ=աՇխարհ, ոխՉար=ոՉխար, գԽԼարկ = գԼխարկ եւայլն):

«Մէջքըդ գըծել ի չար գործոց պոռնըկութեամբ խառնակելոյ»: **Ժ**. 41.

Գնոջ.— Արժէքաւոր, գին ունեցող, թանգագին:

«Զորս բան առ յինէն խըրատ, քան զոսկին ու այլ գընոջ է»: **ԽԳ**. 39.

Գուլ առնել.— Դէմ դնել, դէմ առնել, արգելուլ, զդէմ ունել:

«Երբ հոգոց ես կու հանիմ, զայ դուլ առնու հոգիս բերնիս»: **Դ**. 25.

Գունահ.— Պր. Գօնահ = մեղք, յանցանք:

«Նոցա չի կայր իսկի գունահ, Զինչ քո թերաց կոտորեցին»: **ԼԵ**. 24. **Յաւ. Գ**. 10. **Դ**. 86. = **Գ**. 10.

Գուչ.— Փայտէ աման, կերակրի կամ մէջը բան դնելու համար:

«Ողորմութեան չեմ լեալ ըզգուչ,
Ո՛չ եմ արկեալ ես փող ի գուչ»: **ԽԸ**. 9.

Գրօղ.— Հոգէառ Չար Ոգի:

«Մինչ ածէ զմահն ու մաւտ է եւ անողորմ գըրաւղըն գայ»: **Թ**. 5. **Յաւ. Ա**. 41–42. **Ե**. 31.

Դադար.— Կայան, բոյն, որջ, բնակավայր:

«Հաւք եւ գազանք ինչ կայ վայրի իւրեանց դադարն կերեւի»: **Ը**. 24.

Դալեհ.— Ար. դալէհ, Tali = Բախտ, Դիք Բախտի, Fortune. 2. Պատահար, պատահմունք, վտանգ: Դարաջա ալ Դալեհ = Աղիւսակ Բախտի:

«Մարդոյն երբ Դալեհն ու Բուրջըն ի Ֆալաքըն չէ ըղորդած»: **ԻԹ**. 4. **ԻԷ**. 3. **ԻԹ**. 9, 10, 12.

Դալեֆ.— Նոյն ինչ որ ԴԱԼԵՀ.

«Ամ երբ հանց ընկեր քո Եաղմն ու Դալեֆն ինչ կայ կարիք» : Ի. 35.

Դակաս.— Ֆալաք, Եախտ, Ճակատագիր:

«Զ՚Դակասն եղեր տանուտէր եւ պահէր պամէնն ի դադար»: ԼԱ. 18. / Փոփոխակն ունի,— «զՖալաքն եղիր տանուտէր...»: ԼԹ. 12.

Դամար.— Պր. Դամար = Երակ. 2. Ջիղ, մարմնի այն նուրբ լարերը,—cordon – որ տարածուած են ամէն կողմ եւ ուղեղի հրամաններն են հաղորդում մարմնին, շարժել տալով անդամները.— Nerf, nervus (Լտ.), սինիր (Տճ.), ջիլ, nervure. 2. Դամար-դամար. յուղուած վիճակ, դերադրգիռ, ջղաձիգ.

«Երբ չիրան յիս ի եփ կելնէր, անձս կու լինէր դամար-դամար»: Յաւ. Ը. 37.

Դայռ.— Դեռ, քանի որ.

«Յառաջ ինչ դայռ չէր եղել այս ամէն ի գիր ու համար»: ԼԱ. 38. (Տաղի ներքեւի փոփոխակը):

Դատակ.— Դատող, դատաւոր: (Զունի Արռ.):

«Դու Թագաւոր Թագաւորաց,
Դատաւորաց ես դու դատակ»: ԼԴ. 283.

Դար.— Զառիվայր, զառիթեք տեղ. 2. Տեղ, վայր:

«Քառսուն տարի ծովըն կացի,
Ու՚Ալին եռուր ինձ դարէ դար»: ԽԴ. 65, 75, 80.— Յաւ. Ը. 32, 45.

Դար.— Տանջանք, չարչարանք, նեղութիւն. 2. Փորձանք, պատահար, նեղութիւն. (Աճռ. Բռ. Արմտ. Ա. 434):

«Երթայ, դիպնի հանցեղ դարի, որ ինչուի մահ ո՛չ վըճարի»: Ը. 18. Յաւ. Է. 206.

Դարբաս.— Պր. դա"րբաս = ապարանք, չքեղ տուն, mansion.

«Զմարմինըդ մշակ չինէ եւ պատէ հոգւոյդ դարըպաս»: ԽԱ. 47.— ԽԴ. գ. 25.

Դարտակ.— Դատարկ, պարապ:

«Այն ճիւղն, որ պըտուղն ունի, քան զդարտակըն ի ցած կենայ»: Յաւ. Ա. 68. Է. 211.

Դար քաշել.— Նեղուիլ, չարչարուիլ, տանջանք կրել:

«Գեմ Քրիստոնեայք մեծ մեղուց են, որ հանց երկար դար կու քաշեն»: Զ. 24. ԼԵ. 70.

Դաւէդար.— Պր. Դաւա"դա"ր = Կռուազան, անհանդիստ, դժուարութիւններ յարուցանող: Տես՝ Դաւէfար.

«Կամ զինչ դաւէդար խըռող Աղիպաթն ի յիրքմէ հասեր»: Յաւ. Գ. 4.

Դաւդողանի.— Դաշխուրան, խառնարան (գինու). Jatte, catino (Իտ.), cratère, cratero (Իտ), ըմպանակ:

«Այն մաճկլան, որ դու նըստիս, պաղխադ դինով լըցուի,
Ծովերն այլ դինի դառնայ ու նաւերըն դաւղողանի»: Ցաւ. Ե. 32–33.

***Դուէքար*** — Պր. Դուայ + քար = քա''ր = գործ). Դատ ու դատաստանի գործերի յետեւից վազող, վէճ ու կռիւ սիրող, կռուարար: Տես՝ Դուէզար:

«Թողում երթաս օտար աշխարհ, դաս լինի՞ս մալխս դուաքար»: Ցաւ. Ը. 12.

***Դուլթար*** — Պր. Դա''փթա'' = Մատեան, գիրք, հաշուեմատեան:

«Յորժամ որ դիւան դընեն, դայն դուլթարն յառաջ կու բերեն»: ԻԱ. 12. ԽԲ. 5.

***Դուլաթ*** — Ար. Պր. Գանձ, հարստութիւն — 2. Իշխանութիւն, թագաւորութիւն:

«Թէ լինէր ինձ դուլաթ եւ խելք ի բարի»: ԼԹ. 63. Ծանթ. Ցաւ. Զ. 175, 183.

***Դեկան. Դահեկան*** — Որից եւ դանդ (փոքրագոյնը դրամի.) Պրս. դանկ, չորրորդ մասը դէրհիմի. դէնկ (Թր.). 2. Ընդհանուր առումով դրամ. դահեկանի կրճատուած ձեւը.դանեկանի (վր.):

«Ո՞ւր է ձեր ամէն դեկանն ու թաւերն եւ չատ ծառանին»: ԼԶ. 41.

***Դեղել*** — Թունաւորել, դեղ տալ (մեռցնելու նպատակով):

«Թէ չէին Հայըք նենգաւորք ըղտէր Ներսէսն է՞ր կու դեղեն»: Զ. 42.

***Դժար*** — Դժուար:

«Խիստ դըժար է այս բանս ու դարմանալի»: ԼԹ. 24.

***Դիզակ*** — Դիզուած, կոյտ-կոյտ. իրար վերայ կիտուած. կոյտ. Արբ. չուճի.

«Դո՛ւ հերձեցեր դծովն Կարմիր,
Պաղէ պարիսպ աւեաց դիզակ»: ԼԴ. 111.

***Դիժար*** — Դժուար.

«Տեսն աղքատաց գայ ինձ դիժար»: Ա. 49, 100.

***Դիպենալ*** — Պատահիլ, տեղի ունենալ:

«Ցեղը մաւտեցել է նաւս, վախեմ թէ քարի դիպենայ»: ԻԳ. 6. Ծնթ. Ցաւ. Ա. 63. Դ. 67.

***Դիւան*** — Պր. Դատաստան, ատեան. 2. Գրուածք, քերթուածք, երկ:

«Յորժամ, որ Դիւան դընեն զայն դուլթարն յառաջ կու բերեն»: ԻԱ. 12.

***Դղնայ*** — Դեղին, չէկ, դեղձան (մաղեր):

«Մէկին դըղնայ երեւեցար, Մէկինըն թուխ, մէկին սպիտակ»: ԼԴ. 162.

***Դոն*** — Հացի մի տեսակը.

«Մէկն ոչ ունի, ոչ վայելի, եւ էր կարաւտ դոն մի հացի»: Ցաւ. Զ. 118. Ծնթ.

Դովլաթ — Ար. Պր. Դովլաթ = հարստութիւն, գանձ — 2. Իշխանութիւն, թագաւորութիւն, հարստութիւն:

«Թէ լինէր ինձ դովլաթ եւ խելք ի բանի»: Լթ. 63. Յաւ. Է. 157.
«Ընդդէմ Փալաքին, ի վերայ Չարխի, Դալեհի եւ Դովլաթի եւ վասն Բախտի»: Իէ. 3.
«Զդովլաթն երբ կու տայ Աստուած»: Իթ. 8.— Յաւ. Է. 134.

Դուլխաթ — Դահեկան, դուկաթ, դրամ, ducat. (ինչ որ շատ համապատասխան չէ մտքին. տես՝ Տուլխաթ.

«Աւրի շատ իւր դուլխաթը, հոգոյն այլ վնաս հասանի»: Ծ. 18.

Դուր — Դիւր, հեշտ, հեշտին, դիւրին. 2. Հարթ.

«Թէ չար, թէ բարի, թէ դուր, թէ դըժար, որ ի յաստընուոր»: Իէ. 64.

Դօստ — Պր. դօսթ = ծանօթ, բարեկամ, բարեացակամ:

«Աղէկ մանուկ, մեծ հաւր որդի, ու զարիպ, դաւստ ու խիստ խիկար»: ԽԴ. 42.

Եաղութ — Պր. եաղութ, թանգագին քարի մէ տեսակը, յակինթ, Telesia. Կապույտը շափիւղայ, Saphire, sapphire, Կարմիրը սուտակ, կայծ, կարկեհան, rubs, ruby. Դեղինը յակինթ, jacinthe, hyacinthe, մուգ կարմիրը մեղեսիկ / amethyste, amethyst. Ջերեյլէգում (Այ.):

«Էս բաղընից պատեր, սսեմ, եաղութ, ալմաստ էր լալէզար»: Յաւ. Ը. 18.

Եարաղ — Պր. Եարաղ = երասանակ, սանձ, 2. Զէնք, միջոց, հնարաւորութիւն. 3. Օգուտ, օգտակար. Yarag, (պրս.) «վարժ, քաջընթաց ձի». A well trained horse.— 4. Հանդիպում, meeting, assembly, consultation. deapons, accoutrements, attire: Steing, 1530ա. 1529բ. Տես ԱՐԱՂ, ԵՐԵՂ.

«Ձըրիկ, զարթիր ի խոր քընոյդ, եարաղ արա քեզ դընալու: Ժ. 84.
«Այն մարդն, որ երեղ ունի, նա սիրէ զԱստուած կենդանի: Ե. 29.

Եռանդակ — Եռացող, եռ եկող, եփուող:

«Ջայն որ ի լոյսըն ճեմալու, Անկաւ ի կուպրըն եռանդակ»: ԼԴ. 81.

Երեղ — Պր. Եարաղ = զէնք, սիլահ (Տճ.). 2. Հաղուստ. 3. Ասպարանջան. 4. քաջութիւնը. 5. Եարայ (Պր.) բարեկամ, մերձաւոր: 2. քաջութիւն. Տես՝ Արաղ, Եարաղ.

«Այն մարդն, որ երեղ ունի, նա սիրէ զԱստուած կենդանի»: Ծ. 29.

Երեւնալ — երեւալ, յայտնուիլ.

«Վարդավառին երեւենաս,
Այլակերպիլ զինչ ըզփայլակ»: ԼԴ. 298.

Երնէկ.— Երանի.

«Երնէկ ես նորա ասեմ, որ յաշխարհս ի սուդ կու կենայ»: Ցաւ. Ա. 57.— Ե. 23.

Եւս լինել.— Արածը կրկնել, վերսկսել:— 2. Երապափորձի ենթարկուիլ:

«Մէկն ի տեսոյն (կնոջ ցանկալւոյ) գայ եւ պառկի,
Գիշերն ի քունըն կու փորձի,
ո՞Այն որ կրկին եւըս լինի,
Այլ չի մըտներ յեկեղեցի»: Ցաւ. Է. 195.

Երկայնագուլի.— Երկար պոչ ունեցող, Արու. չունի. Qui a de longue queue. long tailed.

«Կոպիտ, փալիտ, երկայնագուլի»: Ցաւ. Զ. 236.

Երրորդակ.— Երեակ, երեք. (կազմուած՝ ինչպէս միակ, երկեակ, երեակ են.).

«Երրորդակ միութիւն արարին խորհուրդ ու հընար»: ԼԱ. 24. (փոփոխակի մէջ):

Զանգու.— Գր. Զանգու = ասպանդակ, étrier, stirrup, օրզանգու:

«Երբ ոտքն ի զանգուն եդիր, ես հայրան ի վայր մընացի»: Ցաւ. Ե. 28.

Զահլէ.— Գր. զահլէ = Զանձրոյթ, հոգ, սրտնեղութիւն:

«Շատ է չոպանին զահլէն, առիւծին առջեւ կու քալէ»: ԽԳ. 12.

Զապուն.— Գր. Զաբուն = Նիհար, լղար:

«Ֆրիկ, մի լինիր ի քուն, ոչ մեղաց կենալ ի զապուն»: ԺԸ. 11.

Զարդ.— Բացի, ի բաց առեալ. Տես՝ Հազար թէ.

«Դու կեր յամէն պըտղոց, Ադամ,
Զարդ ի մէկէն, որ չէ հրամած»: ԺԱ. 12.
Զարդ է, թէ մանուկ ես դու»: ԻԸ. 16 (փոփխ.)

Զարթ. Բացի, զատ,

«Զարթ ըՔեզ ծանաւթ չունիմ, յայս դըրանէս ուր հեռանամ»: Գ. 32. «Ով է անմեղ զարթ ի Քենէ»: Է. 55.

Զարթել.— Զարթել թէ, բացի, բայց թէ. except, save, but,

«Է՛, խելք, որ ոչ հաց բերես, ոչ թացան զարթել թէ վնաս», ԽԱ. 56 (փփխ.)

Զարթնչել.— Զարթնել, կենդանանալ.

«Զիս յաւդէ ա՛ի խոր բըրէ, որ զարթընչիմ ու զուարթանամ»: Գ. 44.

Զենել.— Մորթել.

«Աբրահամ հիւրընկալ եւ աստուածասէր,
Վասն սիրոյ զԻսահակ կու զենէր»: Ա. 11–12. Զ. 61. ԺԱ. 62.

Զէլ մի.— Կրկին, նորից, մի անգամ եւս. վերստին:

«Աւաղ զայն, որ չատ դատեր, մարդ չի կայ, որ զել մըն ճառէ»: (Թէ պէտք է ուղղել. «Զել մըն ճարէ»: = Մի ելք, հնարք, մի–

ջոց պանէ)։ Յու․ Ա․ 105․

**Զէն**․— Պր․ Զիան = վնաս․

«Կըչուեցին ու տեսան, ո՛րին չահ ու զէն,
Նայ, չի կայր այլ աղէկ եւ մեծ քան զսէր»։ Ա․ 87–88․ Ժ․ 51․ ԻԱ․ 9․ ԻԲ․ 9․ ԻԴ․ 37․ ՀԵ․ 9․

**Զէնէհար**․— Պր․ Զիան † հար = վնասի ենթակայ, խեղճ։

«Եղբայր, տղայ եմ զենէհար, Դեռ չեմ վայլել զայս աստըւորս»։ ԽԴ․ 35, 108․

**Զէնութիւն**․— Պր․ Զիան = վնաս, ոչ օգուտ։

«Խրատս որ տուի ես քեզ, տես չահ է, թէ զէնութիւն»։ ԻԶ․ 77, ԾՆԹ․

**Զէրայ**․— Պր․ Զիրայ = որովհետեւ, վասն զի, քանզի, զի։

«Զէրայ չի կարէ գործել չարասէր մարդըն նայ բարի»։ Ծ․ 39․ «Զերայ չեն ցուցընել զբանն պիտանի ու խորհրդով»։ Կոստ․ Երզ․ Է․ 2․

**Զմբաղիլ**․— Զբաղիլ, մի բանի յետեւից ընկնել, հետապնդել, պարապիլ․ 2․ զուարճանալ, s'amuser.

«Զաւրն կեր ու խում առնէք, զուասնով երթայք զըմպաղիք»։ Ի․ 19․ ԾՆԹ․ «Ով կարդայ զայս բաներս եւ ինքն զըմբաղի»։ ԼԹ․ 69․ ԽԲ․ 12․

**Զնդան**․— Պր․ Զէնդան = բանտ, արգիլափակ, արգելարան, վիրապ, գետնափոր բանտ։

«Լինիս դու ի մեծ զնդան, չար ուզողքն ըղքեզ կու կախեն»։ ԻԱ․ 17․ «Ով ընկեր, ի քո սիրուդ բանտ ու զնդան»։ ԻԵ․ 6․ Կոստ․ ԵՐԶ․ ԻԶ․ 3․

**Զնդանել**․— Պր․ Զէնդան = բանտ․ բանտարկել, արգելափակ անել։

«Ապա նոքա վասն կաշառոյ զմարդ խիյայեն եւ զընդանեն»։ Զ․ 34․ «Հիմիկ զընդան է զաւիւծդ, մինչ ունես մանկան դու երակ»։ ԻԵ․ 63․ ԼԸ․ 48․

**Զնճիլ**․— Պր․ Զեանջիր = շղթայ․

«Զաւիւծն ի զընճիլ գըրած ւ՛ի չոպան կու տան, թէ «քաշէ»։ ԽԳ․ 11․

**Զոհալ**․— Ար․ Զիւհալ = Երեւակ (աստղ)․ Բախտի աստղ (չար, դժբախտութիւն բերող), Saturn, որ համարւում է դժբախտութեան մոլորակ)․ Համմտ․ Շօթա Ռուսթավելիի «Ընձենաւորի» Գլ․ ԻԶ․ 938–րդ Քառեակի հետ,—

«Զոհալ, արցունքի, աստղ անձկանքի,
Ինձ արցունք առատ տուր, հոգ, տանջանքի»,—

ուր եւ յիշատակւում են նաեւ միւս մոլորակները,— Արեւ, Լուսին, Մուշթար, — Mushh'ar (Արդարութեան մոլորակը = Jupiter), Մարեք — Marikh (Վրէժխնդրութեան = Mars), Ասպիրոզ — (Aspiroz = Բժշկութեան — Venus = Hesperus), Օտարիդ — Otarid = Գիտութեան մոլորակը = Mercure, Mercury)․ Տես The

man in the Panther's Skin, A Romantic Epic by Shot'ha Rustha-veli, Rend. by Marjory Scott Wardrop. Lond. 1912, p. 150-151. Ռուսերէն թարգմ. Կ. Գ. Բալմոնտի — Վիտեազ Տիգրովոյ Շկուրէ, Մոսկ.-Լենինգրադ, 1937, էջ 187–188.

«Զոհալըն խիստ ի վեր քաշէ,
Յետեւ դարնէ խիստ ի գետին»: ԼԵ. 34.

Զուգել.— Զարդարել, յարդարել, հագնուիլ, պճնուիլ. 2. Կերտել, դարձնել.

«Լուսոյ զգեստով էր զարդարել, Պըսակ լուսոյ էր քեզ զուգած»: ԺԱ. 7, 14, ԺԶ. 29. ԾնԹ.— Յաւ. Գ. 126.

«Երետ քեզ քուն եւ զուգեց ի կողէդ ընկեր քի համար»: ԼԱ. 50. (փոփոխակ):

Զրեհ.— Պր. Զերահ = զրահ, լանջապանակ, ճօշ:

«Մէկին ըռախտ եւ զըրհնի, ճոխով նըստի ի պէտաւ ձի»: Յաւ. 2. 159. Է. 112.

Զրուցել.— Բամբասել, պարսաւել, խօսել յետեւից:

«Յայն մարդն ի մօտ մի նստեր, երբ երթաս, նայ, քեզ զըրուցէ»: ԽԳ. 16. ԾնԹ.

«Հետ ան մարդուն մի՛ նստիր, որ ելնէ դքեզ զըրուցէ»: ԽԳ. 28.

Էգուց.— Վաղը, յայգուց. demain, tomorrow.

«Էգուց ես այլ հանց լինենամ»: Դ. 8. Ե. 50.

Էհտիբար.— Վստահութիւն, ապաւինութիւն, հաստատ յոյս. Ար. Էհթե-բար = յարգ, վարկ, վարք:

«Զը կայ մալին էհտիբար»: Յաւ. Ը. 50.

Էրի.— Կենդանու մէջքի, ուսերի վրայ եղած տափակ ոսկրը, լայն ու եռան-կիւն, որ կպած է անրակի— clavicule — եւ ուսոսկրի — humerus–ի հետ: Scapulam, Omoplata (Լատին.), = տափակ. Omoplate, omoplata, scapula (Իտ.) = Թիոսկր.— քիւրէք քիմէյի (Տճ.), blade-bone, Lopatka (Ռս.).

«Նա՛յ, խաչհամբոյրն իւր չատ ընկնի, Մուրթ եւ էրի եւ ղաթա-նի»: Յաւ. Զ. 198.

Էրնեկ.— Երանի: նախանձելի, գոհութեան արժանի. Ծ. 28.

Էրնեկելի.— Երանութեան արժանի, նախանձելի, երջանիկ.

«Երկու սէրըն պարապար զինքն էրնէկ ու էրնէկելի»: Ծ. 28.

Ըղորդ.— Ուղիղ, ճշմարիտ, անսուտ:

«Եւ ըղղորդ մարդկանց ըղտունըն կու քակես առանց բահաւոր»: Իէ. 14. ԼԹ. 13. ԽԱ. 13, 46.

Ըռաւաչ.— Տես Ռաւաշ.

Ըռզակ.— Ար. Իրզաղ, arsaq = յոդ. risq = Ապրանք (կով, եզ, ոչխար), հարստութիւն, գանձ, կայք, մԹերք:

«Ժողովեցի չատ մի բարի, ըռզակ արի զինք Թաթարի»: Ը. 10.

«Այսքան ըզզանձ եւ ըռզակ բարութիւն է խիստ պիտեւան»: ԾԱ. 34. Յաւ. Ը. 11.

Թադբիր — Ար․ Թէդբիր = կարգ, խրատ, հրահանգ, կարգաւորութիւն․ 2․ փոփոխութիւն․

«Զարթիր, քեզ թադբիր արա եւ գործէ սակաւ մի բարի»։ Ի․ 26․

Թագաւոր — Իշխան, իշխող, հրամայող։

«Բարսեղ էր հայրապետ եւ մեծ թագաւոր,
Բայց մեծի եւ փոքու սիրով խընամէր»։ Ա․ 59–60․

Թալուհ — Թագուհի․

«Երանեալ, ընտիր թալուհ աննըման,
Մեղայ, քեզ մեղայ, Կոյս անապական»։ Յաւ․ Թ․ 9․

Թալակ — Թակարդ, որոգայթ։

«Անկան ի մեծ թալակ»։ ԼԴ․ 99․

Թալան — Պր․ Թալան = Կողոպուտ, աւար, ալափ։ Եաղմայ, չիքեար (Տճ․)։

«Թալանեց ն՚արար գլխ վերի»։ ԼԶ․ 11․

Թախսիր — Ար․ Թագսիր = Կուսուր․ Մեղք, յանցանք, վնաս։

«Ով որ թախսիր խելաց անէ, թող անհոգ ի քուն չի կենայ»․ Թ․ 75․

Թամամ — Ար․ Թէմամ = Կատարեալ, լրիւ, անթերի, ամբողջ․

«Ես հինգ հարիւր տարի թամամ Մէջ այս հողի արի զարար»։ ԽԴ․ 61, 87, ԼԸ․ 53 (փիխ․) — Յաւ․ Է․ 152․ Հմտ․ Կոստ․ Երզ․ Ի․ 14․ («Հետ բոլին ով հետեւի, բող մ՚է թամամ»)։

Թամաշայ — Պր․ Թամաշա (= Նայել տեսարանի) = Տեսարան, հանդէս, ցուցադրութիւն։

«Կան ու մընան, թէ ե՞րբ կու գայ, Որ մենք անենք մեզ թամաշայ»։ ԺԱ․ 102․ ԺԶ․ 15․

Թանգար — «Վաճառական»․ Սիր․ ԽԲ․ 5 (սեռ․ Թանկարաց․ «Վասն վաճառելոյ կարասւոյ Թանկարաց») — «Հազիւ եթէ ապրեցի վաճառական ի յանցանաց եւ ոչ արդարասցի թանգար ի մեղաց»։ (Սիր․ ԻԶ․ 28), որ նշանակում է «վաճառական», «պանդոկապետ»․ Ասոր․ Taggara.— Մանդայ․ Tangara. Արբ․ Tajir 39. Tujjar. Ասորեստ․ Tamkara, Tamgara։ Բոլորը «վաճառական»-ի իմաստով։ Աճառ․ «Արմտ․ Բռր․ Բ․ 1124 — Պատկան․ հրտր․ Սէբէոս, էջ 203․ մեկնում է Թանկարգար = Պրս․ Tavangar «հարուստ»․ իսկ Թանգար․ Պրս․ Tangar «սափրիչ»․

«Խելաւք ես նոցա ասեմ, որ ողջնութեան թանգար դըրէին»․ ԼԶ․ 62․

Թապայ — Պր․ Թովբայ = Ամենեւին, երբեք, բնաւ։

«Թող թապայ յոր ազգի մեղաց զեկեղեցիքըն հալածեն»։ Զ․ 25․

Թապութ — Պր․ Թաբութ = Դագաղ․

«Մըտիկ դու հիւսանն արա, որ թապութ որրոց չինենայ»։ Յաւ․ Ա․ 35․

**Թապտիր**·— Ար· Թէդբիր = Կարգ, կարգաւորութիւն, 2· Խրատ, հրահանգ, կրթութիւն, դաստիարակութիւն· 2· Պր· Թադբիր = պատրաստութիւն:

«Զկացքը փոխէ, կեղծաւոր ու անդէնին դու թապտիր արա»: ԺԶ· 25–26· «Հազար ցեղ թապտիր կածեմ, որ (բա)ներուս ելնեմ ի հուն»: ԺԷ· 11· Հմտ· «Դարձիր ի յետ նայէ ու գիտ խելօք թատպիր ու ճար»: Կոստ· Երզ· Դ· 16·

**Թացան**·— Կաթնեղէն ուտելիք (Կաթ, մածուն, ժաժիկ, թան, թանապուր):

«Է խելք, որ ոչ հաց բերես, ոչ թացան, այլ միշտ քեզ վընաս»: ԽԱ· 56·

**Թաւ**·— Պր· Թաւ = tab = հրաշալի, գեղեցիկ, ակնահաճոյ· 2· Ցանկալի վիճակ, գերագոյն կէտ, պերճանք, Magnificence, splendor.

«Շատ պարծեցայ ի վերայ ոսկոյս,
Սարվեմ, հագնեմ թաւ եւ խընդում»: ԺԳ· 7·

«Ո՞ւր է ձեր ամէն դեկանն ու թաւերն եւ շատ ծառանին»: ԼԶ· 41·

**Թաւալակ**·— թաւալած, գլորած (Աբռ· չունի)·

«Առ ի խնդրել ըզգերեզմանն
Տեսին ըզվէ՛մըն թաւալակ»: ԴԼ· 252–53·

**Թաւալտել**·— Թաւալել մի քանի անգամ իրար վերայ, թաւալ-գլոր լինել, գլդորուիլ:

«Երթաս թաւալտիս յաղբիսն, հետ թոքաս ու հետ փուք հանես»: Լ· 10·

**Թափել**·— Ազատել, ազատուիլ, հեռանալ, հրաժարիլ:

«Շուտ թափէ ըզգինիդ ու քեզ ճար արա
Եւ հասիր կենդանեացն զոր Գիրքըն ճառէ»: Ա· 103–194· ԼԳ· 45·— ԼԶ· 31· Յաւ· Զ· 166· Նոյնպէս Բ· 50· Է· 51· Թ· 39, 40· Ժ· 52· 29, Ի· 11, ԼԳ· 128·
Մէկ մի չի թափէ ըզքեզ»· ԽԱ· 67·

**Թաքեայ**·— Պր· Թաքեայ = Աղօթատեղի, աղօթարան, մատուռ, Chapelle ardente· 2· Սրբութիւն·

«Ի յայն թաքեայ զարկիր, թէ սըլահ եմ հետ վերուցել»: Յաւ· Գ· 20· (Թաքեայ զարկել = ժամանակաւոր աղօթատեղի կանգնել):

**Թերակ**·— Թերի, թերի մնացած, կիսակոտր, անունով գործ, թերակատար, incomplete, incomplet.

«Ելից ըզտառ մարգարէիցն
Եւ կոտորեաց զամէն թերակ»: ԼԴ· 187·

**Թեր**·— Կողմ, բաժին, մաս ,թարաֆ (Թրք·):

«Նոցա չի կայր իսկի գունահ,
Զինչ քո թերաց կոտորեցին»: ԼԵ· 25· ԼԷ· 13·

*Թեւին տալ.*— *Թեւահարել, թեւերն իրար տալ, թռչել. 2. Շտապել, աճապարել, արտորել, վազվզել։*

«*Ձերդ պաղանի տամ թեւերոյս, ժըտեմ տեղիք հանդիստ ու լոյս*»։ *ԺԳ.* 56.

*Թեւն առնել.*— *Թեւի վերայ ձգել (զգեստ, վերարկու)։*

«*Ուր է քո ոսկի կապայն, որ ծառայքն ի թեւն առնուին*»։ *ԼՁ.* 32.

*Թխած.*— *Ակնածու, կարօտ (որեւէ բանի — ուտելիք, անձն), կարօտակէզ. (Ղարաբաղը գործ է ածում* թխուած *ձեւով)։*

«*Քիմքըդ թըխած կացել յերակ ղամէն պարչ, պիղծ հոտոտելոյ*»։ *Ժ.* 14.

*Թուման.*— *Պր. Թօման = Բիւր, շատ, մեծաքանակ.* miriad.

«*Թուման մի հեծել կանգնի*
*Ու լինի ինքն նետաձիգ*»։ *Ցաւ. Գ.* 227.

*Թուման.*— *Պր. = Թուման = Դրամ Պարսկական, որ հաւասար է* 10 *ղրանի* = $1.85.— 2. *Դրամ = ղրանը* = 20 *չահի*, shahi (=½ cent = 1 *կոպէկ*).— 3. *բիւր* (10,000)։

«*Եւ պարծեցան յիւրեանց մըտին,*
*Թէ մեք չինենք շատ մի թուման,*
*Երթանք կախենք զորքն ու ղայրին*»։ *ԼԵ.* 118.
«*Թուման մի հեծել կանգնի*». *Ցաւ. Գ.* 22).

*Թոքալ.*— *Հազել. 2. Արագ-արագ վազվզել ու արագ շնչել։*

«*Երթաս թաւալտխս յաղբիսն, հետ թոքաս, հետ փուք հանես*»։ *Լ.* 10.

*Ժամուս.*— *Իսկոյն, անմիջապէս.* De suite. (*Ղարաբաղը պահպանել է ոճը ժամը փոխելով սհաթ-ի*)։

*Ժողով կենալ.*— *Ամփոփուիլ, ի մի հաւաքուիլ, 2. Ինքն իրեն հաշիւ տալ, զգաստ լինել։*

«*Այ խելք, ամ ժողով կացիր ու ճապաղ զաւըրն մի կենալ*»։ *ԻԳ.* 18.

*Ժողովակ.*— *Ժողովուած, ի մի գումարուած, խմբուած (Արդ. չունի այս բառը. ունի Ղրբ. բարբառը)։*

«*Ամենեքեան հաւատացին, Զինչ որ կային անդ ժողովակ*»։ *ԼԴ.* 182–83.

*Ժուկ.*— *Ժամանակ, պահ, միջոց։*

«*Գիշերն անհող ի քուն կենայ, ծառայելու ժուկ չէ նորա*»։ *ԺԱ.* 96. *ԼԵ.* 110.

*Ժտել.*— *Համարձակիլ, ժպրհել, ձեռներեց լինել,* Oser, risquer, to dare, affronter. 2. *Ակնկալել.*

«*Ի վիմէդ Իսրայէլեան երաշտացելոյս ջուր կը ժըտեմ*»։ *Գ.* 15.

*Ի բան գալ.*— *Պիտանի լինել, բանի գալ, յարմարել, ձեռնտու լինել։*

«*Եւ մենք քննենք զայս կեանքս ու զայնմ թէ որն հոգոյս ի բան կուգայ*»։ *Թ.* 34, 39, 58.

Իմացք.— Խելք, միտք, իմաստութիւն.

«Հանց հոգի եւ իմացք ու խելք է տըւել»: Լէ. 32. ԽԱ. 54.

Ինչուի.— Մինչեւ, մինչ.

«Երթայ դիպնի հանցեղ պարի (=դժուարութեան),
Որ ինչու ի մահ ոչ վճարի»: Ը. 18.

Ինքնաբուս.— Ինքն-իրեն բուսած, ինքնատեղծ. ինքնաբոյս (Աբռ. 342 ա՜).

«Զաչվերդ ի յետ դու բացիր ինքնաբուս դու քեզ թվեցար»: ԼԱ. 48. (բնագրի տակ).

Իսկի.— Ամենեւին, երբեք, Pas du tout.

«Բարի գործ իսկի չունիմ, որ գոթացել էր Տէրն ի յիս»: Դ. 29. Ջ. 38, 45. Է. 22. Թ. 18, 19. ԽԱ. 25.

Լալ.— Պր. Լալէ. Թանկագին քար, չիկաքարի տեսակից կարմիրը դեղնի հետ խառն գոյնով, ոչ շատ ակնահաճոյ եւ ոչ այնքան սուղ ու յարգի, որքան իւր ցեղակից կարկեհանը—rubis—. Rubis balais. Սամանի եազուբ (Տճ.), balasso, balascio (Իտ.)— Կարկեհան յարդագոյն, պատժախ:

«Դու (Ս. Կոյսն) լալ մեծագին, որ ի Բադաշխան,
Եաղութ եւ զըմրութ ու այլ պատուական
Ակըն լուսատու»: Յու. Թ. 32.

Լալէզար.— Պր. Լալէզար = Լալէ † զար (= կակաչ † տեղ, տեղի, parterre. այսպէս է կոչւում Թեհրանի գլխաւոր պողոտան). Լալէ (=լապտեր) եւ զար (= զարդարուն) = լուսաւոր, լուսաճաճանչ, փայլուն:

«Էն բաղընից պատեր, ասեմ, եաղութ, ալմաստ էր լալէզար»: Յու. Ը. 18.

Լալի.— Լացի արժանի, ողբալի, ողորմելի, խղճուկ:

«Ֆըրիկն ողորմ է ու լալի,
Երկու կենաւքըս կու գըրկի»: Ը. 25, 63.

Լալուն.— Լալիս, ողի մէջ, ողւոր:

«Ճարակ անտէնին արա, որ չի լինիս ի հաւն դու լալուն»: ԺԷ. 20.

Լամք ածել.— Բուսն ածել, ամուր կառչիլ, ամուր բռնել: ԼԱՄՔ բառ չունենք Բառարանի մէջ, հաւանօրէն պէտք է կարդալ ԼԱՄԲՔ (լամբ = օղակ, զօղ), փակչիլ, կպչիլ, S'attacher, to stick to.

«Լամք 'ի (=էի) ածել ես աշխարհի, լուկ վաղեցի հետ շատ չահի»: Ը. 8.

Լաւանալ.— Առողջանալ, ապաքինիլ:

«Հանց ակար 'ի պայրացեալ, որ չաւէի թէ լաւանամ»: Գ. 28.

Լեզին քամիլ.— սարսափիլ, զարհուրիլ, շուարիլ, ափ ի բերան մնալ.

«Երբ յիշեմ զայս բաները՝ լեզիս կու քամի»: ԼԹ. 56.

Լերդ ու լեղի ուտել.— Շատ դժուարութիւններ կրել, արդելքներ ոտքի տակ տալ:

«Շատ լերդ ու լեղի ուտէ ու ապա նա զայս գտանու»: ԺԸ. 6.

Լէքայ.— Պր. Լաքէ = Բիծ, արատ. Tàche, souilloure, spot.

«Սէրն որ հաստ ու կարճ լինի, նայ, յետոյ լէքան կու բացուի»:
Ծ. 17, 20, 48:

Լինալ.— Լինել, դառնալ, մնալ (Արտ. չունի)

«Հինդ դուռն է այս քաղաքիս, ղլայարանք որ բաց կու լինան»:
ԾԱ. 33.

Լինենալ.— Լինել, դառնալ, կատարուիլ.

«Վասն Աստուծոյ ճարակ ցուցէք, ողորմեցայք թ՚ինչ լինենամ»:
Բ. 28, 34, Դ. 8, Է. 9, 18.

Լուլայ.— Պր. Լուլէ. Փողորակ, խողովակ:

«Որմերն ամէն ոսկով ծեփած, ոսկի լուլայքըն ի չարէ չար»:
ԽԴ. 15, 17.

Լուծը փորի չուրջն անցնել.— Լուծ =Ծանրութիւն, նեղութիւն, դժուարութիւն.— այսինքն որքան էլ նեղեն, ստիպեն:

«Լուծն ի փորին թէ չուրջն անցնին ոչ դալէյու մի չի դիպնի»:
Յա. Ջ. 193.

Լուծ ու սամի դնել.— Ծանրաբեռնել, նեղութիւն կրել, դժբախտութեան ենթարկուիլ կամ ենթարկել, կաշկանդել:

«Մէկլին դըրեր լուծ ու սամի,
Արատ աչաւք ի նա չհայի»: Յա. Է. 185.

Լուկ.— Միայն, լոկ.

«Վասըն այնոր չուտ կորնչին, լուկ մէկ զմէկ զարըն անիծեն»:
Ջ. 48. Ը. 8. Յա. Գ. 66.

Լուսի լինել.— Աչքի լոյս ունենալ, տեսնել:

«Մինչ դեռ յուժի ես ու՛ի լուսի»: Ը. 50.

Լսենալ.— Լսել. ականջ դնել.

«Ես աղաչեմ ղամենեսեան, ով իմ ողբանքըս լըսենայ»: Թ. 57.

Խաբար.— Պր. խաբար.— Ար. խաբէր, յոգ. ախարիր, ախբար = զրոյց, տեղ.— Լուր, տեղեկութիւն, զրոյց:

«Էյ մարդ, որ ի յայս բանէս դու խիկի խապար չունենաս»:
ԽԱ. 25. ԽԵ. 26.

Խաբ տալ.— Խաբել. 2. Խուսափել.

«Թէ ճըշմարիտ է բանս ս՛ոդորդ, այս կերցաղըս որ խաբ կու տայ»: Թ. 32.

Խաթայ.— Չինաստան. Միջին Դարերի մէջ յայտնի Cathay անունից: Այսպէս էր կոչւում Հիւս. Չինաստանը, Khitan ցեղի անունով, որ չուրջ երկու հարիւր տարիներ կառավարում էր այդ մասը եւ որը յետոյ կոչուեց Khitai, Khata, Cathay = Խաթայ, որով չուրջ 1000 տարիներ Չինաստանն էր այդ անունով ճանաչւում Միջին Ասիայում: Այստեղից եւ Ռուսական ԿԻՏԱՅ անունը = Չինաստան: Տես The Book of Marco Polo the Venetian, ed. by Col. H. Yule. in two vol., Lond. 1874. Vol. I. p. 11, 15, 114-115 եւայլն.

«Դու մուշկ, որ գովեն Խութայի խուղան»: Յա. Թ. 36:

Խազինա.— Տես՝ Հազինա.

Խալաս.— Ար. Պր. Խալէս = Զուտ, մաքուր, անխառն.— Պր. Խալաս = վերջ, վախճան:

«Ապա զինչ փորձած ոսկի, քուրայէն ի դուրս գաս խալաս»: ԽԱ. 72. Յաւ. Գ. 26, 164.

Խալի.— Պր. Ղալի = Գորգ.

«Բարձր ես նստեր ի վրայ խալուդ,
Յետեւ տի գաս ատկից ի վար»: ԽԵ. 20.

Խալսել.— 1. Ազատիլ, պրծնել, զերծ մնալ. 2. վերջանալ, վերջ գտնել:

«Միթէ կարէք զիս խալըսել ս'ի տանջանացըն ազատել»: ԼԳ. 84–95. ԽԹ. 15. Յաւ. Դ. 27.

Խան.— Պր. Խան = իշխան, իշխանաւոր, տէր ժառանգական:

«Զինչ որ խանորայք կային, յափն ունէր զինչ ըզմի խնձոր»: Իէ. 33.

Խաշու.— Եփած մսի ջուր. արգանակ. Buillon, broth, brodo. Տիգրանակերտցիք ունին աւելի գեղեցիկ բառ — Ջինջ.

«Տեսնուս պհուրըն բորբոքեալ, մեղաց որդունքըն ի հաշու,
Կասեն, թէ «Երբ գայ մեր ծրնաւդն, որ մենք ուտենք անուշ խաշու»: Ժ. 73–74.

Խաչասաց.— Անորոշ, անյայտ մտքով բառ. հաւանօրէն սխալ արտագրութիւն, որ պիտի լինէր խաչոզաց, ինչպէս փոփոխակն է ցոյց տալիս: Յաւել. Է. 9.— Տես Տաղի ծանօթ. 8 տողի:

Խաչհամբոյր.— Խաչ † համբոյր. Խաչը համբուրելուց յետոյ եկեղեցիին, եկեղեցականին տուած դրամական նուէրը:

«Նայ, խաչհամբոյրն իւր չատ ընկնի,
Մորթ եւ էրէ եւ զաթանի»: Յաւ. Զ. 197.

Խապար.— Պր. Խաբար = Լուր, տեղեկութիւն:

«Ի կեր ս'ի խում ի չուրջ կուզար,
Ս'ի անտէնին չունէր խապար»: ԽԵ. 26. ԽԱ. 25. Յաւ. Գ. 146.

Խաս.— Պհ. Խաս = Զուտ, անխառն, իսկական, ոչ-կեղծ.

«Զաւրն կեր ու խում ահիր, ս'հանդար ի բուրդ խաս մուշըր-չըտակ»: ԻԵ. 21.

Խելքն ածել.— Յիմարանալ, խենթ ու խելառ բաներ անել. խելայեղիլ, անխելքանալ.

«Զայս ում գանգատիմ, եղբարք, երբ ածած խելացս ի վերայ»: ԻԸ. 22. (= Որին գանգատեմ, երբ ես եմ անխելքացած):

Խեւ.— Խենթ, գիժ, խելայեղ:

«Ֆըրանկն խեւ ու անթապտիր»: Զ. 10.

Խեւութիւն.— Խենթութիւն, անմտութիւն, յիմարութիւն.

«Զինչ որ Մատիամըն եղեւ, որ ունէր նա չատ խեւութիւն»: ԻԲ. 22.

Խիալ.— Պր. Խիալ = միտք, մտածողութիւն, հոգ. 2. Ար. խիալ, Երազ, երեւակայութիւն, երազանք:

«Եկէն ինձ յերազն ասին, թէ այդ խիալդ, որ քեզ կու թըւի»: ԻԴ. 11.

**Խիլայել** — Պարզեւատրել, խիլայ ընծայել. Խլայ, խիլայ, ղիլայ (Նխ.) — Խիլայ (Պր.) = ցեխ, Ար. Խալաթ = պարգեւ, ընծայ (ստացուած մեծից, իշխանաւորից):

«Ապա նոքա վասն կաչառուց զմարդ խիլայեն եւ ըղնդանեն»: Ձ. 34.

**Խիկար** — Իմաստուն (Խիկար յատուկ անունից), գիտուն, զգօն:

«Աղէկ մանուկ, մեծ հաւր որդի, Ու ղարիպ դաւստ ու խիստ խիկար»: ԺՁ. 42. Հմ. Կոստ. Երզ. ԺԷ. 4 — «Խելօքըդ լեր դու, այդ խիկար»...

**Խիստ** — Շատ, չափազանց:

«Համբարձաւ եւ տարաւ զԱդամ փառաւոր, Վասն այնոր զայն արար, որ խիստ կու սիրէր»: Ա. 41–42. Դ. 37. Ե. 96. Ձ. 26. Ը. 3. Թ. 13. Ի. 28.

**Խլսել** — Վերջանալ (գործի), ազատուիլ, զերծ լինել.

«Այնչափ աղաչեմ զԱստուած, որ տեսնում ես զիս խըլըսած»: ԻԹ. 43. ԼԱ. 77. Յաւ. Գ. 70.

**Խմաճիկ** — Պաճուճապատանք (մարդակերպ). 2. տիկնիկ (խաղալիք փոքրնե-րի), poupée, dolly, պուպրիկ, բեբեք (Տճ.).

«Թուման մի հեծել կանգնի ու լինի ինքըն նետաձիգ,
Նա՛յ, զայն մասխարայ այնէ ու թըքնու զինչ ի խըմաճիկ»:
Յաւ. Գ. 230.

**Խնդալի** — Գեղեցիկ, զբաւիչ, սիրուն. 2. Ուրախ, ուրախութեամբ լի:

«Տարաւ կըղմինտր աղիւս չինեց,
Խիստ խընդալի ծախու համար»: ԽԴ. 84. Յաւ. Բ. 17–18.

**Խնդալից** — Ուրախ, զուարթ, կենսալիր:

«Տարաւ սիրուն կարաս չինեց,
Խիստ խընդալից ջըրի համար»: ԽԴ. 70.

**Խնդանալ** — Խնդալ, ուրախանալ, զուարճանալ.

«Երբ սակաւ մի աստ լամ, նայ, անդ խընդանամ»: ԼԸ. 90.

**Խնդուղ** — Պր. խանդէ = Ծիծաղ, ուրախութիւն. 2. Գրաւիչ, ակնապարար:

«Շատ պարծեցայ ի վերայ ոսկոյս,
Սարվեմ, հագնեմ թաւ ու խընդուղ»: ԺԳ. 7.

**Խուդայ** — Պր. Տէր, Աստուած, (Խուդայ վերտի = Աստուած†ա†տուր: (Տիր†ա†տուր).

«Դու մուչկ, որ գովեն Խաթայի խուդան»: Յաւլ. Թ. 36 — Տես Խաթայի:

**Խութայ** — Տես ԽԱԹԱՅ.

**Խնդրակ** — Որոնող, փնտռող, հրաւիրակ (հարսանիքի, խնճոյքի):

«Ձայս կեանքս ուրացիր, Ֆըրիկ, ւ՚անդէնին դու ել խընդըրակ»: ԻՁ. 74. ԼԴ. 237.

Խուլոր — Խէթ, անհաչտ, անբարեացակամ, խոժոռ:
«Երբ խուլորով յիս կու նայիս, այլ չի լըցուիլ կապիճ չարի»: Ը. 10, Իէ. 58. Լե. 76.

Խուլորել — Խոժոռել, անբարեացակամ լինել, խէթ նայել.
«Ի մէկն սիրով նայի (Ֆալաքն), մէկալին դէմ խուլորած»: ԻԴ. 32.

Խոր — Հոր, գուբ.
«Փորեցի ես խոր այլոց եւ թաղեցայ մինչ ի չըլնիս»: Դ. 18. Ջ. 76.

Խուչակ — Խուչափող, հագագ, շնչափողի վերին մասը, larynx. 2. Կոկորդ.
«Ջխըռչակըդ լայն ես դու բացեր պհարամն անհոգ ի կուլ տալոյ»: Ժ. 25.

Խրել — Խոր մխել, խոթել, կոխել. մացնել ուժով.
«Մըտնուլ գետին հեշտ երկըրի,
Ինչ որ աղէկ մարդըն խըրի»: Ը. 4.

Խօչ. Պր. Խօշ = անոյշ, քաղցր, լաւ, հաճելի, հեշտ:
«Գերի Ֆըրիկ, ողորմելի, խաւչ ես ասեր գըաներս ի չար»: ԽԴ. 102.

Խօսակարգ — Խօսքի կարգ, Կար բանից — 2. խօսակցութիւն, խօսելու ձիրք: (Արռ. չունի).
«Եւ ինք դաւլաթ եւ բաղդ չունի եւ ոչ չընորհ խաւսակարգի»: Յաւ. Ջ. 184.

Ծալ լինել — Խիտ, ամուր լինել, թանձրացած, պիրկ վիճակ ունենալ. 2. Կտրուկ լինել (թրի, սրի).
«Քան զասպապ ի ծալն էի, նայ, տըկուկ-տըկուկ քակեցայ»: Յաւ. Ա. 26.

Ծար — Ծայր. «Դարձեալ եղաւ հրաման, թէ չ'տանի տայ պատուէր ի ծար»: ԼԱ. 41. (Տաղի ներքեւի փոփոխակ):

Ծեծուել — Խեղճութեան մատնուիլ. դժբախտ լինել:
«Այն մարդն, որ Դալեհ ունի, յոչումէ իսկի չէ ծեծուած»: ԻԹ. 16.

Ծուխ ժողովել — Ծխել —
«Շըրթունքովդ ծուխ էր ժողովել, պագշոտէիր հետ ամենոյ»: Ժ. 17.

Ծօ — Բացականչութիւն զարմացական, բաբէ, ա՛յ տղայ. րա՛.
«Ծաւ. ես հանցեղ պարոն էի, որ ինձ նըման պարոն չի կար»: ԽԴ. 45. Յաւ. Ը. 14.

Ծօռ — Ծուռ, ոչ ուղղիղ, կոր.
«Ցէր չես դուն առներ ողորդ դատաստան, է ծօռ դատաւոր»: Իէ. 39. Ծնթ.

Կաթնկեր — Մանուկ, երեխայ, կաթ ուտող.
«Ջհայրն ու մայրըն կու տանի, կաթընկերըն ի տուն մընայ»: Թ. 16.

Կալել․— Բռնել, ունել, փակել, ունենալ, կալանաւորել, արգելափակ անել․ 2․ գնել, գրաւել, իւրացնել:

«Որ զաշխարհս ամենայն Թըրով նա կալել»: Լէ․ 47, 90․

Կալ ու կապ անել․— Դանդաղիլ, յապաղիլ, ոտք կախել:

«Թէ կալ ու կապ անես այսաւր, ձիւնն ի վերայ գայ, դու մըրսիս»: Ե․ 68․

Կամկար․— Ցօժարամիտ, կամակատար, բարեհաճ, սիրալիր, զիջող:

«Ծաւ, Թող ի բաց ըՙարա կամկար, ի սատանի ձին դու հեծար»: ԽԴ․ 94․

«Էր ղաֆիլ կաս յաշխարհիս ըՙանհոգ ի ժուռ գաս կամկար»: ԺԹ․ 6․ Կոստ․ Երզ․

Կապ․— Շարան, շարոց․—

«Մէկկին հազար կապ մարգարտի,
Մէկկին ոչ հլուն մի ապիկի»: Ցաւ․ Է․ 87․

Կապայ․— Վանականների վերնազգեստ, որ հագնում են շապկի վրայից եւ վերարկուի (= Փերեջէ, Տճ․) տակից․— 2․ Զգեստ, հագնելիք:

«Ուր է քո ոսկի կապայն, որ ծառայքն ի Թեւն առնուին»: ԼՁ․ 32․

«Կապայ հագնէր ցեղք ի ցեղաց, փողպատն ամէն մարգարտաշար»: ԽԵ․ 23․

Կապ գալ․— Կապուել, արգելք յարուցանել, դժուարուԹիւն առաջ բերել, արգելք լինել:

«Ժամ ի ժամ ի դէպ կապ կու գայ, չի ընկնիր իմ ջուրն ի յառուն»: ԺԷ․ 12․

Կապիճ․— Չափ, քանակ, տարողուԹիւն (ամանի, չափի), աման (չափելու,— ցորեն, գարի եւայլն):

«Երբ խոլորով յիս կու նայիս, այլ չի լըցուիլ կապիճ չարի»: Ը․ 20․ ԻԵ․ 28․ ԻԷ․ 10․ Լ․ 7․ Ցաւ․ Ձ․ 143․

Կարդալ․— Կարդալ․— 2․ Երգել․

«Աստուած աւրհնէ զայն կարդացաւղն, որ ըզՖըրիկըս յիշենայ»: Թ․ 69․ ԼԹ․ 75․

Կարեւոր․— Ազգական, մխիԹարող, սատարող, ԿԱՐ բառից = ոյժ, մխիԹարուԹիւն․

«Թէ ունի (= ունէի) ճորտ ու ծառայ կամ կարեւոր յասաըւորիս»: Ձ․ «․

Կարկափել․— Լռել, ձայն չհանել․ (Կուրկուփ = լուռ, անձայն, ըստ Ղարաբաղի բարբառի:

«Երբ Դատողըն կու նայիմ, կու կարկափիմ եւ մընջանամ»: Բ․ 26․

Կարվան․— Կարաւան, քէրվան․—

«Ցանդէնին կարվան կերԹար, չալկեցի ըՙի հետ գընացի»: Ցաւ․ Ա․ 46․

Կացք․— Նիստ ու կաց, վարմունք, վերաբերում․ բարոյք (ղրբ․)

«Ցայդ խելաշդ ու յայդ գործոցդ եւ յայդ կացքէդ որ դու ունիս»: Դ․ 23․ ԺՁ․ 26․

Կափայ·— Ար· կաֆֆէ = ամբողջութիւն, կազմ, կազմածք· 2· Երգի յաւելուածք, (որով ամբողջանում է Տաղը)· 3· Յորդորակ (Տաղի)· 4· Երգի վերջին մասի կրկնութիւն· refrain. Ծայրայանգ։

«Ֆրկանն ասացեալ է կափայս վասն հոգոյ»։ ԺԷ· 1–2 Ծնթ·

«Կայֆայ մի կամիմ ասել, որ արժէ գոհար մի բոլոր»։ Յաւ· Գ· 207·

Կենանիլ·— Մնալ, կենալ, կեալ, ապրել։

«Թէ խելք ունի նայ հանց կենանք, զինչ Աստուծոյ սիրան ուզենայ»։ Թ· 63·

Կղակ·— Ծնոտ·

«Սառնամանեաց դողն է կալել ու կու փըշրէ կըղակ ու՚ատամ»։ Բ· 23·

Կթխայ·— Գինու բաժակ (փոքր), գաւաթ։

«Զինչ խըմեցիր յերկրի կըթխայ,
Աստ քեզ առնուլ պիտի մազայ»։ ԺԱ· 61· Յաւ· Բ· 9·

Կթղայ·— Գաւաթ, բաժակ գինու (փոքր), Verre à vin, wine glass.

«Ով կու սիրէ կուժ ու կթղայ,
Դուստր ու որդիք յէգուց մուրայ»։ ԺԲ· 5–6·

Կիսակ·— Բաժին, կէս·

«Յայնժամ զինչ առ քեզ մնայ, զայն արա ի յերկու կիսակ»։ ԻԶ· 72·

Կոխել·— Գրաւել, տիրել, տէր դառնալ։

«Ամէնն առողք են միմեանց, բեստէ աւարք զմեզ կոխեն»։ Զ· 23·

Կոտոր·— Հացի չոր պատառ, փշրանք· կտոր· Կուտուր (Ղարաբաղ)·

«Տառապելքն են ի դուռն եկել, որ խւրեանցն կըտոր մուրային»։ ԼԶ· 26·

«Զաղէկն ի յերկիր ի վար վըտարես, որ ժողվէ կտոր»· ԻԷ· 12·

«Եւ կամ թէ տային կոտոր, որ չըներն զինքըն չուտէին»։ ԼԶ· 47·

Կորդուել·— Համեմել (գրաստ)։ Տես ՊԱՂՆԵԼ·

«Մէկին ձեռուին է զերթ գոտի,
Որ ոչ կարէ կորդուել ջորի»։ Յաւ· Զ· 230· Ծնթ·

Կուման·— Պր· գեաման — կասկած, կարծիք, ակնկալութիւն· 2· տեղեկութիւն, ԱՆ + գուման = անտեղեակ, յանկարծուստ։

«Յանկարծ ինձ ի դէմ ելար, ու՚ես աղոր կուման չունէի»։ Յաւ· Ե· 19·

Կումաչ·— Պր· Դիպակ, կտոր թանգագին Ղումաչ·

«Ասէր՝ Անմահ մընամ, զամէն զանձ ու կումաչըս ինձ մընալու»։ Ժ· 80·

Կուռն տալ·— Ձեռնտու լինել, ձեռք մեկնել, օգնութեան հասնել· ձեռն տալ (Նխ·)· 2· Դաւել, հակառակել, մեքենայութիւն լարել մէկի դէմ (բուն Ղարաբաղի ոճաբանութեամբ։ Երբ պայքարի ժամանակ ըմբշամարտը հակառակորդին յաղթելու հնարաւորութիւն չունի,

դիմում է ոչ օրինական միջոցի, այն է կամ «կոռն ա տամ» եւ կամ «վէնն ա տամ», այսինքն կամ թեւով է դաւում կամ ոտքով,— հակառակորդի գլուխն իր թեւի տակ առնելով կամ ոտքը դաւադիր թափով միւսի ոտքերի մէջ դնում, գետին տապալում):

«Ով կուռըն տայ թագաւորաց, Ջիւրըն բերէ կործանութիւն»: ԼԵ. 42. (= Ով դաւէ, հակառակ օրէնքի վարուի թագաւորների հետ, ինքն իր կործանման պատճառ պիտի դառնայ):

Կուտակ.— Դիզուած, իրար վերայ կիտած, խճողած. 2. փոքր դէզ (խոտի):

«Ապրեցուցեր զերիս մանկունս ի բորբոքեալ հրոյն կուտակ»: ԼԴ. 141. Կիւտակ (Ղրբ.).

Կտել.— Կտրել.

«Ջղանակն եդիր ի վրայ պըկին, թէ կու կըտեմ, որ չի կայ ճար»: ԽԴ. 27.

Կտապել.— մանր կտրտել, իրար մօտ դասաւորել. խճողել. (որից եւ Ղրբ. կուտապ).

«Զտարտարոսն են քեզ պահել,
Անքուն որդունքն են կըտապել»: ՃԳ. 31. (փոփոխակը):

Հազար թէ.— Որչափ եւ, որքան էլ, չնայած որ.... In spite of, not withstaiding. malgré, nonobstant. Տես՝ Զարդ.

«Հազար թէ մանուկ ես դեռ, ես կասեմ դու քեզ ճար արա»: ԻԸ. 16.

«Հազար թէ իրաւ է բանս, դուք անհոգ ի քուն մի՛ լինիք»: ԽԲ. 24.

Հագինայ.— Պր. Խազանէ = Գանձ, հարստութիւն. 2. Գանձարան:

«Փարթամութեանըն չէ մաւայ,
Ոչ մայն, ոչ մուլքն ոչ հագինայ»: ԺԲ. 114.

Հալ.— Ար. հալ, ահվալ = որպիսութիւն, վիճակ, դրութիւն:

«Զիմ գըլխուն անցած հալն ասեմ, ապա զենէ զքո եղբայր»: Յաւ. Ը. 15.

Հալալ.— Պր. հալալ = մաքուր, արդար, անարատ, անխարդախ, զուտ:

«Յառաջն Աստուծոյ դու հան ի հալալ արդեանց քո տասնակ»: ԻՋ. 71. Յաւ. Ա. 38. Ջ. 154. Է. 106.

Հալաւ.— Կանանց, աղջիկների երկայն, չապկաձեւ լայն ազալենիք, լայն թեւերով, հասնում է մինչեւ ոտքերը. սովորական օրերի համար հասարակ կտորից, կարմիր գոյնով, իսկ տօնական օրերին կարմիր կամ դեղնագոյն ու վարդագոյն, մետաքս կտորից:

«Նայ չէր ի տար հալաւիկ մի, Ո՛չ հաց մի իւր հոգուն համար»: ԽԵ. 31.

Հալեւոր.— Ծեր, ալեւոր:

«Ֆալաքն պացխուն կուտայ,— Մի հաջիր անդէտ հալեւոր»: Իէ. 47.

*Հաղխաթ.— Ար. Հաղիղաթ = հաղիղաթ = ճշմարտութիւն, ստոյգը (իրողութեան), ճշմարտիւ, ստոյգ.*

*«Գէմ զայս հաղխաթըս գիտեմ, չի մնալ կեանքս մարդուն»:* ԺԷ. 19. ԻԳ. 36.

*Համասփիւռ.— Բոյս խոտեղէն, երկարակեաց, պարզ մանր տերեւներով եւ մեծ, գեղեցիկ ծաղիկներով, սեւ հատիկներով: Տեսակները երեսնի չափ, որոնցից ոմանք մշակւում են պարտէզներում, իբրեւ զրաւիչ ծաղիկներ,—* Croix de Malte *կամ* Lychnyde de Chalcedoine,— *կարմրագոյն խաչաձեւ ձաղիկներով: Դաշտայինը կոչւում է* Lychnide des près *կամ* fleur de coucou *կամ* Amourette — *Համապրամ մարդաց. բուսնում է խոնաւ վայրերում, մանուշակագոյն ծաղիկներով:* Lychnis (*Լտ.*), = *ջահ*, campion, lamp .ower, Maltede cross (*Անգ.*), Pechnelke (*Գր.*), Licnide, croce di Malta.— խաշ, էշշիրախ (*Ար.*), Իալաճ գարաճփիլ չիչէյի (*Տճ.*).

*«Այս է համասփիւռ ծաղիկն, որ թափէ զմարդն ի մահու»:* ԺԸ. 3. Յաւ. Թ. 40.

*Համաւոր.— Համ ունեցող, անոյշ, քաղցր, հաճելի համով:*

*«Ծնաւղ Կենդանոյն Յիսուսի յիշման,*
*Համաւոր բաժակ, Ջեռըն փրկութեան»:* Յաւլ. Թ. 14.

*Համէ.— Հրամայէ՛, ասա, ցոյց տուր.*

*«Ջղաւվլաթն համէ՝ թէ ո՞ւր լինի*
*Եւ ղբաղղն ցոյց, թէ ո՞ւր գլտուի»:* Յաւ. Ջ. 175.

*Համբեր տալ.— Ժամանակ, պատեհութիւն տալ, առթել.*

*«Ոչ մեծատան, ոչ աղքատի յորժամ հասնի համբեր չը տայ»:* Թ. 25.

*Հայնց.— Այնպէս, այնպիսի.*

*«....... Միթէ ահեղ աւրն Ատենի,*
*Մէկ բարեխաւս իւրն չերեւի, հայնց որ վստահ ի Տէր հայի»:*

*Հայրան.— Ար. Հայրան = ապշած, պուչ, պուչ-պուչ նայելով տարուած, յապուշ կրթեալ (Նխ.).*

*«Երբ ոտքն ի զանգուած եդիր, ես հայրան ի վար մընացի»:* Յաւ. Ե. 28. *«Առջեւ աչերուս քայլես, Ես խեւ ու հայրան եմ քեզ»:* Կոստ. Երզ. ԻՋ. 24. ԻՋ. 4.

*Հանգամայ.— Պր. Հանգամէ = արտասովոր, արտակարգ (դրութիւն, վիճակ). 2. Աղմուկ, աղաղակ, ահանգ (= ձայն):*

*«Անդ ժողովէր ինք հանգամայ,*
*Նոցա ժանեացն ո՞վ դիմանայ»:* ԺԱ. 103.

*Հանչաք.— Այնչափ, այնքան.*

*«Հանչաք վազէ դըռնէ ի դուռ, Մինչ որ անկնի ի մէջ դըրին»:* ԼԵ. 92, 95. ԽԱ. 71.

*Հանց.— Այնպիսի.*

*«Հանց կըրակ մի վառեր, որ յինքն դու այրիս,*

*Չէ մեղաց կերպարանըն կենդանի սէր»*։ **Ա**․ 109–110․ **Գ**․ 28․ **Դ**․ 8․ **Ե**․ 64․ *եւայլն*․

*Հանգդուն*․— *Այնպէս, ինչպէս, որպէս*․

*«Ամպարտաւան կեցաւ զամէն, Ցետեւ մեռաւ հանգդուն յիմար»*։ **ԽԵ**․ 28․

*Հանց ցեղ*․— *Այնպէս, այնպիսի, այն տեսակ*․

*«Երբ հանց ցեղ էր լինելոց, էր հանդիպեցայ ես այս չարիս»*։ **Դ**․ 40․ **Ը**․ 18, **ԺՁ**․ 45․

*Հաշարի*․— *Ար․ հաշարի*, Hasari = *անզուսպ, խարստի (ձի), ցանկասէր*․ violent, impetuous.

*«Շատ ոք դիպին կընոջ չարի,*
*Բոզ ու՚անառակ եւ հաշարի»*։ **Ցաւ**․ **Է**․ 198․

*Հաշու*․— *Պր․ Աշու* = Ashu =ashob = *աբշոբ* = *Խառնակ վիճակ, իրար անցած, տակն ու վրայ, եռ ու զեռի մէջ*․ trouble, hurt. (F. Steingass: A Comprehensive Persian-English Dictn. Lond. 1930, 2nd ed.)

*«Տեսնուս ըղձուրըն բորբոքեալ մեղաց որդունքըն ի հաշու»*։ **Ժ**․ 13․

*Հաշուեց*․— *Հաշուիր, համարիր, սեպիր, ենթադրիր*․

*«Հողոցդ երբ վարիր ոռճիկ, նա՛յ, հաշուեց, թէ իսկի չի դառ»*։ **ԽԱ**․ 59․

*Հաշտելութիւն*․— *Հաշտութիւն, հաճութիւն*․

*«Հաշտելութիւնն է ի լոյս եւ իւր բարկութիւնն է խաւար»*։ **ԼԱ**․ 9․

*Հաստատիլ*․— *Հաստատուիլ, ամրանալ, տեղ գտնել, դիւրութիւն գտնել*։

*«Թէ չուտ ելնես ի հաւսկէ դնաս, դու փառք առնուս եւ հաստա– տիս»*։ **Ե**․ 82․

*Հասրաթ*․— *Ար․ Պր․ Հասրէթ* = *Իղձ, կարօտ, փափագ, անձկութիւն*․— 2․ *Նեղ վիճակ (Դրամական, կեանքի)*։

*«Գընաց մանկութեան հասրաթն ու երեկ ինձ հող անիհուն»*։ **ԺԷ**․ 3․ **ԻԹ**․ 28, 33․ **ԽԱ**․ 45․

*«Կարաւտ կարաւտովդ էի հասրաթովդ ի չուռ կու գայի»*։ **Ցաւ**․ **Ե**․ 18․

*«Քո սիրոդ ի յաշխարհիս ի հասրաթէն է հուր վառել»*։ **Թ**․ 6․ *Կոստ․ Երզ*․— *Նոյն* **ԺԱ**․ 3․

*Հարած*․— Հարկանել *բայից․ ծեծած,, մնասուած, պատժուած․ Հմտ․ Ղրբ․* Աստրծու թակած․ *նոյն իմաստը․ կամ* Աստրծու — hարած, վարած (*Ղրբ*․) *«Աստուծոյ պատճած — հալածուած»*․

*«Ջաւրըն դու ի հաղ կենաս,*
*յԱստուծոյ հարած ու՝անիծած»*։ **ԻԹ**․ 15․

*Հարամ*․— *Ար․ հարամ* = *անիրաւ, չար, չարագործ, չարաբեր*․ 2․ *անսուրբ, անմաքուր, պիղծ, մեղաւոր*։

«Հալալ ու հարամ այն են, հոս թողուն ու՛ի հոն գընան»: Յաւ. Ա. 28. Զ. 153. Է. 105.

Հարամի.— Ար. Հարամ (=անիրաւ, չարագործ, չարաբեր). Չարագործ, թշնամի, աւազակ, անիրաւ անձն.

«ըՋայս որ հետ ինձ արիր, չէր արեր հազար հարամի»: ԽԳ. 47.

Հարամիկ.— Ար. Հարամ. Չարագործ, գող, անիրաւ, յափշտակող:

«Հոգիս է տրտում նստեր, զով տեսնու՝ լալով զանգատի,
Թ՚եղայ հարամկի ընկեր, թալանեց, ո՛արար գիս գերի»: ԼԶ. 11.

«Վրացին է գող եւ հարամիկ, գդատ, գիրաւո՛ւնքըն չը գիտեն»: Զ. 15.

Հարբած ուղտ.— Կատաղի, անզուսպ, կրքոտ (անձն): Ղրբ.

«Դու զատամունքդ կըրճըտէիր զինչ նենգաւոր, հարբած ուղտոյ»: Ժ. 19.

Հարկիք անել.— Պատուել, հիւրասիրել, մեծարել:

«Ասեմ, թէ ինձ հարկիք արէք, գէմ ձեր ծնաւղն եմ, որ կուլամ»: Բ. 18.

Հաւանական.— Հաճելի, սիրելի, ախորժելի, հաճոյական:

«Բաներ ասեմ հաւանական, ուր գան գիտունք՝ ականջ դընեն»: Զ. 6.

Հաւաս.— Պր. Հա՚՚ւաս = տրամադրութիւն, փափագ, յօժարութիւն, ջերմ ցանկութիւն, envie.

«Զհաւասն ի մաճլիս արեր՝ թէ չինեմ զտունն աւերեր»: Յաւ. Գ. 6.

Հաւասնալ.— Փափագիլ, ցանկութիւն ունենալ, ըղձալ, եռանդ ցուցադրել.

«Կամ հաւասնայ տուն կու չինէ»: ԺԹ. 6 (փոփոխակի մէջ):

Հաւսար.— Հաւասար. 2 Ամէնքը, միաբան:

«Հաւսար ամէնքս զՏէրն աղաչենք, որ զմեր հոգոյ աչքըն բանայ»: Թ. 41.

«Հաց խնդրեցին զերդ ի կատակ,
Դեռ ի բերանն էր կերակուրն՝
Հաւսար եղեն աղգաց առակ»: ԼԴ. 123.

Հեծել.— Հեծեալ, ձիաւոր, հեծելազօր: (Հիծիլ (Ղրբ.)

«Թուման մի հեծել կանգնի
Ու լինի ինքն նետաձիգ»: Յաւ. Գ. 227.

Հետ.— Անգամ. 2. Երբեմն, կամ:

«Փառք Աստուծոյ վեր առաքեմ եւ բիւր հազար հետ գոհանամ»: Բ. 46. Գ. 67.

«Երթաս թաւալտիս յաղբիսն՝ հետ թոքաս, եւ հետ փուք հանես» Լ. 10.

Հերիք ածել.— Բաւականանալ, գոհանալ:

«Զինչ Տէրն երետ՝ հերիք չածի,
Այլ մեծութեան սիրտ ունէի»: Ը. 9.

Հերկակ·— Հերկ, արտ, ցանք, վար։

«Որ իւրենըն լըծակցին ոյժ չառնէ՝ չի ցելուի հերկակ»։ ԻԵ· 65·

Հզորակ· – Հզօր, ուժեղ, աննկուն· (Արռ· չունի)·

«Ի վերայ խաչին տարածեցեր,
Տէր, ըզբաղուկ քո հըզաւրակ»։ ԼԴ· 229·

Հիմիկ·— Այժմ, հիմայ։

«Հիմիկ մեզ այլ դառել չի կայ»։ Է· 61·

«Ջինչ որ կու քաշեմք հիմիկ»։ ԻԸ· 21· Ծ· 47·

Հլուն·— Ուլունք, յուլունք· beads, grain de collier.

«Մէկին հազար կայ մարգարտի,
Մէկին ոչ հլուն մի ապիկի»։ Է· 88·

Հնանալ·— Հնհնուքի մատնուիլ, վշտահար լինել, անձկալ, սրտամաշ լինել։

«Թող մաշիմ ի յայս հոգս եւ խիստ հընանամ»։ ԼԸ· 86·

Հոգցող·— Խնամարկու, խնամատար, պետութեան վարիչ։ Ըստ Ք· Պատկանեանի· Տես Պատմ· Մաղաքիա Աբեղայի Ռուս Թարգ·— Istoria Mongolov: Inoka Maghakii. S. Petersb. 1876. p. 104/105.

«Ի գուռն Ապաղայ ղանին… տաճիկ ամիրայք էին հոգցողք եւ բեղեչիք Ղանին»։ Մաղաքիա Աբ· Պատմ· Նետողաց· Ս· Պետր· 1870,
«Կու հրամայէ հոգցող անուն՝ Թաչար, Ղազան, Սաղաղուլին», ԼԵ· 156·

Հմմտ· «Եթէ լինի որ հոգցօղն կամ կապլվորն անհանդըստէ զլիճ ճորտն ի վճարելն եւ ունենայ զիր վճարն ի լման»։ Ասեզզ Անտիոքայ· էջ 41· — Ֆրանսերէնի վերածողը «Հոգցող» թարգմանել է Procureur = «գործակալ արքունի կամ ատէրութեան» ի դարպասս — cour—, յատեանս»։ Ըստ Ն· Բիւզանդացու, «Բառն· Ֆր· Հայր· էջ 994ա·—

Հողվարք·— Գերեզմանատուն·

«Անցան ի Տաճիկ հողվարքն եւ տեսաւ զոսկերս մեռելոցն գրուած յարեւն»։ Դ· 2·

Հոն·— Այնտեղ·—

«Այս տանջանաց վըճար չը կայ, ես յաւիտեան ի հոն մընամ»։
Բ· 29, 35· Գ· 34· Է· 45 եւն·

Հոս·— Այստեղ·

«Թէ չուտ ելնես ի հաւսկէ, դու փառք առնուս եւ հաստատիս»։
Ե· 82· Ծ· 45·

Հով·— Պաղ, սառն, զով·

«Հով ջուրըն կըրակ թուի եւ յահէն դերդ մոմ կու հալի»։
Ցու· Ա· 99·

Հորդէ·— Պր· Խուրդէ բառից արդեօք· khwurda = աննշան, մանր, նուաստ, դոյզն· mince, slender, minute. Հմմտ· F. Steingass: Persian English Dict. Lond. 1930.— 2· Գերի, աննշան, անարգատ, անկամ, նուաստ, ինչպէս Պարսկերէն բառի իմաստն է։

«Հորդէ Ֆըրիկ, մի մարդ խաբել, մի սուտ վարուք կեղծաւո-
րիս»։ Ե. 60 / Տաղի փոփոխակի մէջ ունենք— «Գերի Ֆըրիկ, մի մարդ խաբել»..., որից պէտք է եզրակացնել, որ հորդէ նշանակում է գերի, անչան անձն, անազատ, ճորտ եւլն.

Հուլնիկ.— Ուլունք, յուլունք ապակուց պատրաստած. beads. Հմտ. Ագաթանգղ. Պատմ. ԺԳ. էջ 123. Վենտ. 1662 Թ. «Բայց մի ոմն ի նոցանէ (ի կուսանացն) ունէր արուեստ ապակագործութեան՝ առնել ուլունս ապակեղէնս»։

«Մէկին հազար հատ մարգարտի,
Մէկին ոչ հուլնիկ ապիկի»։ Յաւ. Զ. 146.

Հունար.— Պր. հոնեար = հնարք, միջոց, կարողութիւն, հայթայթանք, պատճառ, աղագ, ելի աղագք. moyen.

«Թէ չէ դու ի նա հայեաց, որ չունի հունար հոգեւոր»։ Իէ. 41.

Հունկայ.— Այնտեղ, ահա.

«Դարանակալն հունկայ թաքել, ճարտար քայլէ, որ չըմբըռնիս»։ Լ. 63.

Հուսկայ.— Այստեղ, ահա.

«Պաղատիմ վըստահ ի Քեզ յետին մըշակս հուսկայ կու գամ»։ Գ. 64.

Հրամայել.— Ասել, պատուէր տալ.

«Հրամայեցեր թէ Գամ, խնդրեմ եւ ոչ թողում որ մոլորիս»։ Ե. 87.

Հօն.— Այնտեղ, հոն.

«Զինչ խոստացել Աստուած սըրբոցն, զայն անխըռնայ ի հաւն կու տայ»։ Թ. 47.

Ձախել.— Ձախողել, անյաջողութեան մատնուիլ, կորուստ ունենալ. Հմտ.

«Ողբանք ի վերայ գալստեան եւ ձախելոյ»։ ԼԱ. 3.

Ձենել.— Ձայն տալ, կանչել, հրաւիրել։ Ձէնել = ձայնել. Է այ փոխուած. Արտ. չունի.

«Մանկտիք, երբ ի հաց նըստիք՝ ձենեցէք աղքատք ձեզ ընկեր»։ Յաւ. Ա. 44.

Ձեռնաւոր.—Ձեռքն իշխանութիւն ունեցող. Իշխանաւոր, ոյժի տէր, գլխաւոր.

«Զանգէտ եւ գնաքաս մարդըն յաստընուորս առնես ձեռնաւոր»։ Իէ. 17.

Ձոխել.— Ծռել, չեղել, խոտորել. (Նր. Բառ. ձոխել = թիւրել, 190. ձոխել = ծռել, 188.— Ձախ բառից = ձախել, ձախողել, չեղել)։

«Միտք ի բազում ի փորձութեանց էր պաշարեալ ի հաւատոց եւս ձոխէին»։ Ոսկ. Մեկ. Եբր.

Ձրի.— Աւելորդ, անարժէք, անտեղի.

«Քանի ձրրի խաւսք գրրուցես, որ ամենեւին շահ չունես»։ Ե. 79.

Ղադր.— Պր. Ղա՛՛դր = Արժէք, գին. 2. չափ, արժանիք, գնահատութիւն.

«Երթայ ի յաւսար երկիր՝ զղարիպին ղադրըն գիտենայ»: Յաւ. Գ. 58, 144.

Ղալատ.— Ար. Պր. ղալաթ = սխալ, վրիպումն, յանցանք, վնաս, վրիպանք, պակասութիւն. faute, fault, deficiency.

«Բանիկ մի ղալաթ արի, որ ղուձու ձագըն սիրեցի»: ԽԴ. 43.

Ղալամ.— Պր. ղալամ = գրիչ.

«Ոչ թուղթ, ոչ ղալամն օգնէ, ւ՚ոչ հարիւր հազար ձիաւոր»: Իէ. 28. Յաւ. Ե. 24.

Ղամազ.— Ար. ղամմազ = ghammaz = քսու, բանսարկու, դաւող, դաւաճան, մատնիչ. 2. Անհասկացող, անդէտ, տգէտ. Տես F. Steingass: Persian English Dict. էջ 894ա.

«Մէկըն նըման է Յուդայի, Սպանող, ղամազ, գործող չարի»: Յաւ. Զ. 240.

Ղան.— Մջ. Իշխանաւոր, տէր, աւատական տիրապետ, թագաւոր, որից եւ Պր. Խան բառը, նոյն իմաստով:

«Արղուն ղանըն Աստուած եղիր, ո՞վ է յաղթող Արղուն ղանին»: Լե. 11–14, 31.

Ղապուլ առնել.— Ար. ղաբուլ = հաճութիւն, հաւանութիւն. 2. ընդունելի, հաւանելի, հաճելի դարձնել:

«Հողըն այլ դիս ղապուլ չէրաւ, տարաւ դետնին երեսն եհան»: Յաւ. Ը. 28. «Զայս բանքս ի Կոստանդեայ ղապուլ արա, որ քեզ տըւի»: Կոստ. Երզ. ԻԱ. 11.

Ղարար.— Պր. ղա՛՛րար = տեղաւորուիլ, տեղ գտնել. 2. հանգիստ,, խաղաղ. 3. վճիռ, որոշումն.

«Թ՚ղ արինդ երթայ անդունդք ի վար,
Սիրտս ի փորիս առնու ղարար»: ԽԴ. 30, 62.

Ղարիպ.— Պր. ղարիբ = օտար, օտարական, անծանօթ.

«Աղէկ մանուկ, մեծ հաւր որդի, Ու ղարիպ դաւստ ու խիկար»: ԽԴ. 43. Յաւ. Գ. 56, 58, 59.

Ղարիպուկ.— Ղարիբ = ղարիբ = օտար, խեղճ, խղճուկ, օտարական. արգահատելի.

«Անբաղդըրն ճորտ է աւաղի եւ ղարիպուկ՝ դերթ րգդերի»: Յաւ. Զ. 200.

Ղարխ լինել.— Ղարղ. Ար. մեղրու = ղարղ. խորասոյզ, խորասոյզ լինել, ամբանալ (մի բանի մէջ), տնկուիլ, ընկղմիլ.

«Երբ ծովու ի միջին ես ղարղ լինենամ»: ԼԸ. 68.

Ղարղ.— Տես ղարխ.

Ղբյել.— Ար. ղաբուլ = հաճելի, հաւանելի, ընդունելի. 2. հաճութիւն, հաւանութիւն, 2. հաճելի լինել, ընդունելի լինել.

«Ձնիհարն եւ զվտառւժն, եղբարք, Աստուծոյ զայն ե՞րբ ղըբլեն»: ԻԱ. 4. ԻԱ. 10.

Ղիպն — Խիպ, ամօթ, խղճահարութիւն, պատկառանք, կարեկցութիւն. Այստեղից եւ ղպնահար.

«Այս ի՞նչ պատեհ, որ կու լինի
Եւ ղիպն ի Քո սիրտըդ չընկնի»: Յաւ. Ձ. 72: Յաւ. Է. (= «Որ խիպ և սիրտըն չանկանի»: Փոփոխակն ունի. «Կսկիծ ի սիրտ չի անկանի»): «Երբ որ զգերիս տեսնուս չատ ղիպն ու Նամուս առնուս»: Կոստ. Երգ. ԻՁ. 34.

Ղորդ — Ուղիղ, ճշմարիտ, ուղղորդ = ըղորդ.

«Բանին ղորդն ու ծուռն, գէշ ու աղէկըն ի Չարխն է կապած»: ԻԹ. 6.

Ղումաշ — Պր. ղումաշ = դիպակ, թանգագին գործուածք:

«Տուր աղքատաց զինչ որ քեզ կայ,
Գանձ ու ղումաշըն չի մընայ»: ԺԱ. 112. Ի. 40.

Ղուսայ — Ար. ղուսսայ, ղուսսէ = վիշտ, հոգ, ցաւ, նեղութիւն.

«Քանց զիս պզտիկ ձագուկ հօն զիմ ղուսան չի քաշէ»: ԽԳ. 16. ԾՆԹ.

«Եւ յերակ զօրն ի ղուսայ հօզօք մաշեմ զիս անդադար»: Կոստ. Երգ. ԺԹ. 1.

Ղաւաշ — Պր. ղարաւաշ=Աղախին, նաժիշտ, սպասուհի. զարաւէշ (Տճ.)= աղախին արծաթագին.

«Ճորտեր են կանգնած յառաջեւդ՝ ղարաւաշ գինին լընուին»: ԼՁ. 25.

Ղրմըզի — Պր. ղէրմէզ, կէրմէս. կարմիր, որդան — 2. Կարմիր գոյնի դիպակ.

«Մէկին ատլաս եւ ղըրմըզի,
Մէկին չապիկ մի չի հասնի»: Յաւ. Ձ. 152.

Ղօլ — Ար. ղօլ, աւղալ (յոգ.) = խոստումն. 2. Երկիր յուռթի, արգաւանդ. promission.

«Ոչ ղաւլ, ո՛չ երդումն ունիս, ո՛չ հաւատ, ո՛վ դու նենգաւոր»: ԻԷ. 24.

Ճախ — Ճահ. h խ դարձած, պատշաճ, յարմար, շնորհալի (կերպով), ի ճահ.

«Մէկին ըռախտ եւ զըրեհնի,
Ճախով նըստի ի պէտաւ ձի»: Յաւ. Ձ. 160.

Ճաղար = կապոյտի եւ կանաչի խառն գոյնով աչք ունեցող, որից խուսափում են, իբրեւ «Չար աչք տուող»: Ճղրիկ, բաղրիկ.

«Մէկն է ճաղար, կապոտաչուի,
Կարճահասակ եւ փանաքի»: Յաւ. Ձ. 133.

Ճամի — Պր. Ջամի = աղօթատուն (մահմետականների). ջամ = ամբողջ լրիւ. 2. Ժողովարան.

«Ես այլ մանդիլ մի կապէի Մըսրայ քաղքին ճամին կուգար»: Յաւ. Ը. 20.

**Ճար** — Պր. Չար. չարայ (Տճ.) = միջոց, հնարք, դեղ.
«Մութն ու խաւարն է գիս պատել, որ այլ լուսոյ ճար չունենամ»:
Բ. 21. Գ. 25. Ե. 87, Ա. 104.

**Ճարակ** — Պր. Չար, միջոց, հնարք, ճար.
«Վասն Աստուծոյ ճարակ ցուցէք, ողորմեցէք, Թ՚ինչ լինենայ»:
Բ. 28. ԺԷ. 20. Ի. 34, 42.
Ի ճարկէ ճարակ ընկնի՝ չի գտնի ճար խալըսելոյն»: ԽԹ. 15.

**Ճարակ գնել**, ապաւինիլ, յուսալ.
«Ցայն, որ ինքն ճարակ դըրեր, նա՛յ, իւր մահն ի յանգից եղեր»:
Ցու. Գ. 24–25.

**Ճարպիկ** — Հետապնդող, հետեւող, յարատեւ, հետախոյզ.
«Բայց մէկ իրաւք խիստ ճարպիկ են, որ ի յաղաւթքըն յաւծարեն»: Զ. 65.

**Ճարտար** — Ուղիղ, անշեղ, չիտակ. 2. Ճշմարիտ, անխաբ. 3. արագ.
«Դարանակալն հունկայ թաքել, ճարտար քայլէ, որ չըմբըռնիս»: Ե. 63. ԺԹ. 15.
«Ցըրիկ, ամ, ճարտար կացիր ու եղիր բարեաց դու մըշակ»: ԻԶ. 66. ԼԶ. 59. ԽԱ. 32. ԽԴ. 60.

**Ճարտարութիւն** — Ճշմարտութիւն, ուղղամտութիւն, արդարութիւն:
«Թէ ճարտարութեամբ ուտէր մարդ ըղհացն, զինչ իւր տուած,
Տըխմար յաշխարհիս վերայ չի պիտէր մէկիկ մի ապրած»:
ԻԹ. 20–21.

**Ճոճկտալի** — Ճոճելով, օրօրուելով. 2. Փքուած, հպարտ, ուռած.
«Բաղդաւորն գայ ճոճկըտալի,
Գայ ու նըստի յաւագ բարձի»: Ցու. Զ. 191.

**Ճորով** — Ուժով, բռնադատ կերպով, զօրով, ակամայ. Տես՝ Ուժով ու ճորով.
«Ուժով ու ճորով սիրէ, նա՛յ, յետոյ չաւտով ցամաքի,
Դաւիթ մարգարէն երգեց, Թէ սէրըն ճորով գի լինի»: Ծ. 24–25.
«Այն սէրըն որ ճորով լինի, կըրակով զինքն էրել պիտի»: Ծ. 26.

**Ճորտ** — Գերի, ստրուկ ծառայ, գործաւոր, մշակ (բռնադատ):
«Թէ ուն՚ի ճորտ ու ծառայ կամ կարեւոր յասալըւորիս»: Դ. 13. ԼԶ. 25, 30, 44. Ցու. Զ. 199.

**Ճուապ** — Պր. Ջաւաբ = պատասխան. Ջուղաբ (Թամկ.):
«Ադամ զայն ճուապն երետ,
Թ՚ինչ տեսար քո փառքն անիծած»: ԽԳ. 33.

**Ճուղապ** — Պր. Ջաւաբ = Պատասխան.

**Ճօշալ** — Բամբասել. (Ճօշ = բամբասանք, այպանանք). այպանել, ծաղրել, հեգնել, վերեւից նայել.
«Ով յանմեղուց մարդ կու ճաւշայ,
Դուք նայեցէք հետ իւր բանին»: ԼԵ. 112.

*Մալ.*— *Պր. Մալ = ապրանք, հարստութիւն, պաճարեղէն.*

*«Փարթամութեանըն չի մաւայ,*

*Ոչ մալ, ոչ մուլքն, ոչ հալինայ»:* ԺԲ. 11. ԺՁ. 43, ԽԴ. 32. Մաւ. Ը. 11.

*Մակար.*— *Պր. Մա"գեար = արգեօք, միթէ.*

*«Մակար չէր մայրն գլխ բերել, որ չի գլխել այս տառօսխ»:* Դ. 41. ԻԵ. 47.

*Մահրում.*— *Պր. Մա"հրում = զրկուած, անիրաւուած. 2. Զրկանք, անիրաւութիւն, թշուառութիւն, դժբախտութիւն.*

*«Երկուսն այլ աւեր թողեր ւ'Երկուսէն մահրում դընացեր»:* Յաւել. Գ. 9.

*Մաճլիս.*— *Պր. Մաջլիս = մաժլիս = ժողով, հաւաքոյթ, կոչունք, խրախճանք, ընկերակցութիւն.*

*«Յորժամ լինէր ժամ մաճլըսի, Նայ, իմ ախիքն էր մէկ հազար»:* ԽԴ. 49. Յաւ. Գ. 6, 86.

*«Առնուն գլխ եւ տանին՝ սիրով փլուեն ի մըճլիսնին»: Կոստ. Երգ.* ԺԱ. 15.— *«Մըճլիս զուգէ եւ մեծ ժողով...»:* ԺԵ. 26.

*Մայրի.*— *Անտառ. մէրի (Լոռի):*

*«Զինչ անպիտան փայտն ի մայրին չէ՛ չինուածոյ նա պիտանի»:* Ը. 37.

*Մանդիլ.*— *Ար. մա"նդիլ = անձեռոց, սրբիչ. 2. գօտի. 3. Արգելակ, փականք (դռան), սողնակ, կեռ:*

*«Ես այլ մանդիլ մի կապէի, Մըսրայ քաղքին ճամին կու գայր»:* Յաւ. Ը. 20.

*Մանկութիւն.*— *Քաջութիւն, կտրճութիւն, առնականութիւն. Նախնեաց «մանուկ»ի իմաստով:*

*«Յորժամ մանկութիւն ցուցնէ, ի Ղանէն պարգեւք դըտանէ»:* ԺԹ. 23.

*Մանուկ.*— *Կտրիճ, քաջ, (Նխ. իմաստով), երիտասարդ. Հմտ. Նախնեաց նոյն իմաստի հետ. Յովհ.* ԻԱ. 5 *եւն.*

*«Ծատ մանկտիք հասրաթով դէմ կտն ներքեւ ի հողին պառկած»:* ԻԹ. 28. ԽԴ. 41. Յաւ. Է. 52.

*Մասալ.*— *Ար. Մասալ = միսլ = նմանութիւն = Առակ, պատմուածք.* conte, *զրոյց, պատմուածք մտացածին,* tale, story.

*«Ուր են քո ամէն բաներդ հայերէն մասալ ու առակ»:* ԻԵ. 51.

*«Խելաւքնուն սաստ մասալ է»:* ԽԳ. 21.

*Մասաս.*— *Պայմանական խօսք կամ գաղտնի լեզուի արտայայտութիւն, որ նշանակում է* ՀԱՅ, *ազգակից, արիւնակից, ցեղակից:*

*(Տես Ուսումնասիրութեան գլ. Գ.* §27):

*Բառիս ծագումն անյայտ է. սակայն, ենթադրում ենք, որ նշանակում է* խթանող, ծակող, անհանգիստ, դիւրաւ չհամաձայնող:— *Ունինք*

գաւառական մասսայ, մասուսայ բառերը, որոնք երկուսն եւս նոյն իմաստն ունին, այն է գաւազան, որի ծայրը սրածայր բեւեռ է անցրած՝ դրաստները, եզները խթելու, առաջ վարելու համար, այսինքն՝ խթան, որից եւ փոխաբերական միտքը,— խթանիչ, հըրահող, արթուն, անքուն պահող, յառաջ մղող: (Տես մեր «Գաւառական Բառարան»ը):

«Զինչ Մասսա (որ) չի կան՝ հաւասար ամենեքեան թող ժողովին»: ԼԵ. 150.

«Աւուրքս անցան հետ Մասսախս (= Ֆրիկխս),
Եղբր չի կայ, հուն չերեւին»: ԼԵ. 184.

**Մասսաչիք**.— Ծածկալեզու բառ, որ նշանակում է ոչ — ՀԱՅ, օտար, թշնամի: (Տես Ուսումնասիրութեան Գլ. Գ. §27).

«Գէմ չի մընաց լեռներ ու դաշտք,
«Որ Մասսաչիքըն չ'կոխեցին»: ԼԵ. 64.

«Ապա զայս այլ կամիմ ասել, զինչ Մասսաչիքըն գործեցին»: ԼԵ. 114.

«Զինչ Մասսաչեց չար կամէին»: ԼԵ. 134.

**Մասխարայ**.— Ար. մասխարայ = հեգնանք, ծաղր, կատակ. 2. զուարճաբան, կատակաբան, հտպիտ, ծաղրածու:

«Նա՛յ, զայն մասխարայ այնէ,
Ու թըքնու զինչ ի խըմաճիք»: Յաւ. Գ. 229.

**Մատահարել**.— Ձեռք, մատ կպցնել, շօշափել մատօք. 2. ամրացնել (Ղրբ.)

«Ժողվես ու չիշան լընուս, Քո աջովդ մատահարես»: Յաւ. Դ. 21.

**Մարդախաբ**.— Խաբեբայ, մարդ խաբող, անվստահելի անձն.

«Է, Ֆըրիկ, թող ի բաց զայս սուտդ ի ձեռաց, թէ դու չես մարդախաբ եւ կամ ցաւի տէր»: Ա. 105-106.

**Մաւայ**.— Արբ: մավայ = mawa = ապաստան, ապաւէն, տեղի փախստեան. refuge, shelter, asylum. Տես F. Steingass. Persian—Eng. Dict. էջ 1145 բ.— 2. Ապաւէն, յոյս, օգնութիւն, փրկութիւն:

«Քէ 'ի (= էի) մաւայ»: (Ղարաբ.).

«Փարթամութեանըն չէ մաւայ, Ոչ մալն, ոչ մուլքն, ոչ հաղինայ»: ԺԲ. 113.

**Մեկու**.— Տես՝ մէկու.

**Մեղանչանալ**.— Մեղանչել, սխալ գործել, սխալիլ. վրիպել, être en défaut.

«Գէմ Պետրոս եհարց ի Տէրն, թէ եղբայր իմ մեղանչանայ»: ԺԶ. 31.

**Մերան**.— Մակարդ (կաթի, պանրի եւայլն)

«Լինիս դու չարեաց մերան՝ գեհենին կամիս լինենալ»: ԻԳ. 23.

**Մէկմէկանալ**.— Բաժանուիլ, զատուիլ, անջատուիլ.

«Քակտի իմ աղուոր շինուածս, Տէր, տախտակս մէկմէկանայ»: ԻԳ. 6. ԾՆԹ.

«Քակտի իմ աղուոր շինուածս ու տախտակըս մէկմէկանայ»։ Յաւ. Ա. 64. (Պլուզ Վարդապետ)։ Յաւ. Դ. 69. (Անանուն), ուր ակնյայտնի երեւում է երկուսի եւս փոխառութիւնը Ֆրիկից է)։

*Մէկու.*— Միայնակ, մենակ, մենուոր, առանձին.

«Ասցիր, թէ մէկու ի դրախտն՝ ընկեր կամեցար»։ ԼԱ. 49. (բնագրի տակ նոր խմբագրութիւն)։

*Մթխալ.*— Պր. մսխալ. Ար. մըսքալ = ծանրութեան չափ, մսխալ, որ հաւասար է 4·414 գարեհատի, grain.

«Աստուած երբ զաշխարհս արար զաւդն եւ զհուրն եւ զհողըն Ջըրով,
Մըթխալ մ'աւելի չարար, այլ կըշռեց զամէնըն չափով»։ Յաւ. Ա. 75–76.

*Միալար.*— Շարունակ, անընդհատ, անվերջ, անդադար։

«ԶԱստուածութեան հանգամանքն ո՞վ կարէ պատմել միալար»։ ԼԱ. 5.

*Միակեցք.*— Միայնակեաց, վանական.

«Վանական եւ միակեցք եւ ճգնաւորք կրաւնաւոր են»։ Զ. 39.

*Միրաթ.*— Ար. միրաթ = ուսումն. դաստիարակութիւն, կրթութիւն.

«Ոչ ի հաւրէ առեր միրաթ, այս յԱստուծոյ տուած նորա»։ Է. 71.

*Միաւոր.*— Միայնակ, առանձին, մենակ.— Տես՝ մեկու, մէկու.— 2. Միասին, միմեանց հետ, միացած։

«Դու իր, Եւայ միաւոր, ի դրախտին այլ ոք մի չկայր». ԼԱ. 51. (բնագրի տակ)։

*Միտնի.*— Մի ոտք ունեցող.

«Կամ խեղ ու ծուռ ու միտնի»։ Յաւ. Զ. 210.

*Մլքել.*— Պր. մուլք = միւլք = կալուած, հաստատութիւն. Հարստանալ, տիրել, գրաւել, իշխել։

«Սահիպ դիւանին ասենք, որ մըլքեց զերկիր նա բոլոր»։ Իէ. 31.

*Մկրատել.*— Կտրել մկրատով, կրճատել, կարճել.

«Մէկին աթլասըն մըկրատի,
Միոյն չուխայ չընկնի ասուի»։ Յաւ. Է. 89. (Փոփոխակի մէջ)։

*Մղրըպի.*— Մղրուպի հագուստ. Մղրուպ Արաբական մի ցեղ հիւս.— արեւմտ. Աֆրիկայի.

«Մէկին ատլաս եւ մղրըպի,
Մէկին չապիք մի չհասանի». Յաւել. Զ. 151. ծնթ.

*Մճուճ.*— Շփոթ, իրար անցած, խառնակ վիճակ, անդոհի մատնուած։

«Մըճուճ ի յառաջ անկիր, ու գնա ի հուրն անատակ»։ ԻԵ. 19.
«Մըճուճ երբ հանցգուն ես դու, է՞ր չերթաս ՚այլ իսկի չի գաս»։ ԽԱ. 59.

*Մորի*․— *Անտառ, մէրի (Լոռի)*։

*«Բաղան ի յանտառ մորին, Թէպէտ բու, թէպէտ բաղայ է»*։ **ԽԳ**․ 17․

*Մորմոքալ*․— *Մորմոքիլ, ցաւել, տանջուիլ, կսկիծ ունենալ*․—

*«Արդարքն ի լոյս ուրախանան, ես ի խաւա՛րըն մորմոքամ»*։ **Բ**․ 30․

*Մորուս ոլորել*․— *Ձեռք առնել, խաղացնել, բանի տեղ չդնել, արհամարհել, խաղաբանել, մքթալ*․ se (faire) moquer.

*«Շատ ոլորեցի մարդու մորոյս,*
*Երեկ ինձ բեռն եղաւ գերոյս»*։ **ԺԳ**․ 4–5․

*Մոլք*․— *Գր․ Մոլք = կալուածք, ստացուածք (հող, այգի, տուն, արտ), հարստութիւն*․ possession.

*«Փարթամութեանըն չէ մաւայ,*
*Ոչ մալն, ոչ մուլքն, ոչ հաղինայ»*։ **ԺԲ**․ 114․ **Յաւ**․ **Ը**․ 7․

*Մուլք*․— *Տես՝ Մոլք*․

*«Այս մալ ու մուլքս ինձի լաւ է,*
*Քան դքեզ հարիւր հազար եղբայր»*․ **ԽԴ**․ 21–22․

*Մուրատ*․— *Ար․ Միւրադ․ Գր․ Մորադ = մուրադ = Իղձ, բաղձանք, փափաք, խնդրուածք, տենչանք, անձկանք*․ désir.

*«Դառն եւ ողորմ եինք (= էինք) մընացել,*
*Թէ ե՞րբ հասնենք մեր մուրատին»*։ **ԼԵ**․ 140․

*«Ոչ հեծնան ձի, ոչ դահեն մուրատով,*
*Այլ դեղեցիկ երեւին սուրաթով»*։ *Կոստ․ Երզ*․ **ԺԴ**․ 18․

*Մռել*․— *Խօսք լսել, անսալ (Նխ․), ականջ դնել, բանի տեղ դնել*, consider. 2․ *Կսկծիլ, մորմոքիլ, ափսոսալ*․

*«Տաս ի վիզն ւ՚ի վայր ձըգես, զի չի մըռես զոք ոք թագաւոր»*։ **Իէ**․ 29․

*«Ոչ եղբայր (= եղբաւր) սիրոյն մըռէ,*
*Ոչ սիրելի եւ կամ օտար»*։ *Կոստ․ Երզ*․ **ԺԹ**․ 7․

*«Ուրուրն աւարէ զինչ Թաթար, Մարդ չը մըռէր եւ ի ժուռ գայր»*։ **Յովհ**․ *Վարդապետ, Տաղ Թուչնոց*։

*Մսել*․— *Մրսել, պաղիլ*․ avoir froid.

*«Թէ կոլ ու կաս անես այսաւր, ձիւնն ի վերայ գայ՝ դու մըսիս»*։ **Ե**․ 68․

*Մտիլ*․— *Մտնել, ներս գնալ*․ entrer, to go in.

*«Երբ գայ փեսայն առագաստի,*
*Ի հետ մըտիս դու վըստահի»*։ **Ը**․ 36․

*Մազայ*․— *Ազանդեր (խմելիքի) (Տճ․) մէզէ*․

*«Զինչ խըմեցիր յերկրի կըթխայ,*
*Ասա քեզ առնուլ պիտի մազայ»*։ **ԺԱ**․ 62․

*Յանձին տալ*·— *Յանձնել, ապաւինիլ*· fier, se fier, to trust, to entrust, to rely (on).

*«Մեղաւորաց թափող է Նա եւ զիս յինքըն յանձին կուտամ»։ Բ*· 60·

*Յայպ*·— *Տես՝ Այպ*·

*Յաւանի*·— *Քսու, նենգ, մատնիչ, նենգաւոր· անվստահելի։ Արս*· չուճի·

*«Մէկըն նման է Յուդայի,*
*Որ է մատնող եւ յաւանի»։ Յաւ· Զ*· 240·

*Յերակ*·— *Միշտ, երկար ժամանակ· յարակ, յարակայ (Գր·)*·

*«Թէ դու ի սըրտանց քըննես՝ այս կենցաղս յերակ խաբող է»։ Ժթ*· 4· *Իե*· 4, 47, 57, 60· *ԻԶ*· 76· *ԽՄ*· 49·— *«Եւ յերակ զօրն ի ղուսայ հոգօք մաշեմ զսի անդադար»· Կ· Երզ· Ժթ*· 1· (*էջ* 147)· — *ԻԴ*· 2 (*էջ* 169)·

*Յիմացք*·— *Տես՝* իմացք·

*«Է՛ խելք ու յիմացք չարի, որ յերակ առ իս կու կենաս»։ ԽԱ*· 54·

*Յիշենալ*·— *Յիշել, յիշատակել, մտաբերել*·

*«Աստուած աւրհնէ զայն կարդացողն, որ ըզՖրրիկըս յիշենայ»։ Թ*· 69· */Թերեւս ոմանք պիտի կամենային «յիշենայ» ձեւի մէջ տեսնել «յիշէ նա»· սակայն գերադաս համարեցինք «յիշենայ» Ֆրիկեան ձեւը, հետեւելով նորա նման բայերի կազմութեան — լինենալ, նայենալ, չահենալ, չինենալ եւլն·, որոնք ինքնուրոյն նորութիւններ են լեզուական։*

*Յիշոցնատու*·— *Հայհոյող, յիշոց տուող*·

*«Հայք բամբասողք ու՝ յիշոցնատուք, որ ամենայն ազգ կու ատեն»։ Զ*· 22·

*Յիշոց տալ*·— *Հայհոյել, անարգ բառեր ուղղել մէկին*·

*«Զլեզուդ միել ես չար ու սուր, չես ձանձրանալ յիշոց տալոյ»։ Ժ*· 21·

*Յիս ի մօտ*·— *Ինձ մօտ*·

*«Որ դուք չի գայք ի յիս ի մօտ,*
*«Ես ի հրրոյ ծով կու ծըփամ»։ Բ*· 32·

*Յիստակ*·— *Մաքուր, ջինջ, պայծառ, յստակ*·

*«Քանց զկաթն յիստակ էի, քան զդարնան ջուր պըղտորեցայ»։ Յաւ· Ա*· 24·

*«Յորժամ չամանդաղ ձգի ի լեռնատանէ ի ծայրք լերանցն երեւին յիստակ՝ պարզոյ նշան է»։ Անանիա Շիրակացի, Կէ*· 8·

*«Ի մէջ քաղաքիս յիստակ եւ բարով կենայ»։ Առակ Վարդ· ԾԽԴ*· 173·

*Յիրար*·— *Մօտ, դասակից, զուգակից*·

*«Դու մարդ էիր փառաւոր ի վերին դասուցն էիր յիրար»։ ԼԱ*· 58 (*բնագրի տակ*)։

Նախ․— Պր․ Նախ = Թել (մետաքսի, կանեփի, վուշի, բրդի), դերձան․ fil, thread. Նախի (Պր․) = ձեռագործ, ասեղնագործ, բանուածք broderie, embroidery. Նախ (Պր․) = աննշան, չնչին, փոքր, դոյզն․

«Նախ ու նասիճ իմ ճոխալուս,
Ջաւհար չարեմ՝ թագ իմ գլխուս»։ ԺԳ․ 8–9․

Նայ․— ահա, տես, նայիր․

«Ի մահու գերեզման եղեալ կամեցաւ,
Որ նստէր ի Քրովբէս յանդունդք, նա՛յ, հայէր»։ Ա․ 33–34․
«Որ զսէրն առաւել նա՛յ սերտ կու պահէր»։
Ա․ 50, 100․ Գ․ 41․ Դ․ 34․ Թ․ 43․ ԺԸ․ 10․
«Եթէ ուրդի ի գեղակն աղբիւր քաղցրահամ՝ արժան բաւականալ այնու, եթէ ոչ՝ նա անձրեւին ջրին պարտ է ճար առնել»։ Գիրք Վաստակոց․ Ե․ 4․

Նայելք․— Աչքեր, հայեացք, ակնարկ։ Regard, look, glance.

«Նայելքըդ Տիգրիս, Եփրատ գընացման»։ Յաւ․ Թ․ 86․

Նայենալ․— Նայել, հայել, մտիկ տալ․

«Ի՞նչ պատասխան ունիս, երբ Դատողն ի քեզ նայենայ»։ ԺԶ․ 21․

Նասիճ․— Ար․ Նասիջ = nasij = հիւսուածք․ Նասջ = nasj = գործել, կկել, հինուլ, ոստայնանկել․ tisser, to weave.= Աճառ․ Արմտ․ Բառ․ Ե․ 48․

«Է՞ր ես հագել դու նասիճ ու նըստել զինչ մէկ ի նըւին»։ ԼԶ․ 24․
«Նախ ու նասիճ իմ ճոխալուս,
Ջաւհար չարեմ թագ իմ գլխուս»։ ԺԳ․ 8–9․
«Ապաւինեցայ ես ի Ս․ Նշանս Հաղբատայ եւ կազմեցի Խաչ մի արծաթի ոսկէզօծ եւ Բ․ Նափորտ նասիճ եւ ատլաս վառ»։ Սարգիս Եպս․ Ջալալեան, Ճանապարհ․ Ա․ էջ 61․

Նամուս․— Պր․ Ար․ Նամուս = Պատիւ, ամօթանք, անուն յարգական, հըռչակ․ 2․ Պատկառանք, օրէնք․

«Զի պիտի սատ առնել նամուս,
Դուստր եւ որդիք ջ̂աւգտէ պապուս»։ ԺԳ․ 24․
«Երբ որ զգերիս տեսնուս,
Շատ դիպն ու նամուս առնուս»։ Կոստ․ Երգ․ ԻԶ․ 34․

Նասիֆ․— Ար․ նասիֆ = nasif = շշնկոց, փսփսուք, գաղտնի խօսք․ secret, anything spoken in a whisper. Տես F. Steingass: Pers. English Dict. էջ 1401բ․—

«Նախ ու նասիֆ, քեմխայ ու սաւֆ
Կուլիստանիքն, որ դու հագար»։ ԽԵ․ 17–18 (Ամենայն հաւանականութեամբ պիտի կարդալ — «Նախ ու նասիճ»)․ Տես ՆԱՍԻՃ․

Նաքաս․— Ար․ նաքաս = ժլատ, կծծի, ագահ, avare, stingy, miser, niggard.
Պր․ Նա + քէս, Տ + մարդ = ամարդի, անարդ։

«Զանգէտ ու գնաքաս մարդըն յաստըւորս առնես ձեռնաւոր»: Իէ. 17.

Նափաղայ.— Ար. Նափաղայ = Ապրուստ, միջոց (կեանքի), հայթայթանք. moyen, means.

«Ո՛չ տառպելի տուիր կապայ,
Ո՛չ ղըրկեցիր քեզ նափաղայ»: ԺԲ. 20.

«Ով աղքատաց բաժին չը տայ,
Ղըրկէ որդանցըն նափաղայ»: ԺԲ. 34.

Նեաթ.— Արբ. نیت. մտադրութիւն, դիտումն, նպատակ, ձգտումն. Intention, dessin, but, purpose, aim.

«Քո դատաստանն է յիրաւի,
Նեաթով կու տաս ամէն մէկի»: Յաւլ. Զ. 246.

Նեխակ.— Նեխած, հոտած, պարշահոտ. putrefait, rotten, putrefied.

«Դո՛ւ յարուցեր ըղՂազարոս, Չորեքօրեայ հոտած, նեխակ»: ԼԴ. 101.

Նու.— Պրս. nav.— 1. Հերոս, քաջ, առնի. A hero, brave man. 2. Ողբացող, սգացող, մելամաղձոտ, տխուր— crying, weeping. Հմմ. van արմատը nawidan բառի, «սգաւոր, ընկճուած».— F. Stein. 1428 Բ.

«Է՞ր ես հաղել դու նասիճ ու նստել զինչ մէկ ի նըւին»: ԼԶ. 24.

Նաէփ.— Պր. Նէֆս = նաֆաս (տճ.), Ոգի, հոգի. 2. Արբ. Նէֆս = նէֆէս = շունչ, հոգի. Գիտակցութիւն, զգացում, յոյզ. Soul, spirit, sentiment. Տես F. Steingass: Pers. English Dic.

«Սիրեւ զմանկութեան անունն ու նըսէֆ մանկան չունենաս»: Յաւ. Գ. 154.

Շալակ.— Մէջք, կռնակ. dos. спина back. 2. Ծանրութիւն, բեռ (մէջքով կրելու, տանելու). poids, weigrt. 3. ձանձրոյթ.

«Գործեւ անաւգուտ բաներ եւ բառնաս հոգոյդ քո շալակ»: ԻԵ. 17.

Շալակ չինել.— Ծանրութիւն դառնալ, բեռն ունել, ձանձրոյթ լինել մէկի համար:

«Շալակ չինեց խաբեցելոյս,
Զմահն մոռանալ երեւ մարմնոյս»: ԺԳ. 18.

Շալկել.— Ծանրութիւն կրել մէջքին, բեռ տանել կռնակով.

«Յանդէնըն կարլան կերթար, շալկեցի ու՛ի հետ գընացի»: Յաւ. Ա. 46.

Շահ.— Օգուտ, յաւելեալ դումար, տոկոս.

«Եկայք որդեակք իմ Սիոնի, ձեր վարձն առ իս կայ ի շահի»: Ը. 40. Ժ. 84. ԻԴ. 37. ԻԵ. 9.

Շահենալ.— Շահել, վաստակել.

«Աղէկ վաճրկան պիտի՝ տասնէն մէկ կարէ շահենալ»: ԻԳ. 38.

Շառ.— Պր. Շառ, նոյն եւ Ար. = վնաս, վնասակար. 2. ամբաստանութիւն.

«Աստ տապակի եւ խիստ դողայ
Ամէն քո շառդ, Աստուած վըկայ»: ԺԲ. 59–60. ԽԳ. 9 (փփխ.)

